ՆԻԿՈՂԱՅՈՍ ԱԴՈՆՑ

# ՀԱՅԱՍՏԱՆԸ ՅՈՒՍՏԻՆԻԱՆՈՍԻ ԴԱՐԱՇՐՋԱՆՈՒՄ

## ՔԱՂԱՔԱԿԱՆ ԿԱՑՈՒԹՅՈՒՆԸ ԸՍՏ ՆԱԽԱՐԱՐԱԿԱՆ ԿԱՐԳԵՐԻ



ԵՐԵՎԱՆ
«ՀԱՅԱՍՏԱՆ»
1987

9(САЗ)1 ինդեքս ԳՄԴ 63-3(2Հ)1
Ա 205

Ռուսերենից թարգմանեցին՝
Ա. Թ. ԽՈՆԴԿԱՐՅԱՆ և Է. Հ. ԽՈՆԴԿԱՐՅԱՆ
Մասնագիտական խմբագիր՝ Շ. Վ. ՍՄԲԱՏՅԱՆ

Հրատարակչության պատրաստեց
Է. Հ. ԽՈՆԴԿԱՐՅԱՆԸ

**Ադոնց Ն.**
Ա 205 *Հայաստանը Հուստինիանոսի դարաշրջանում։ Քաղաքական կացությունը ըստ նախարարական կարգերի /Ռուս. թարգմ. Ա. Թ. Խոնդկարյանը և Է. Հ. Խոնդկարյանը.— Եր.: Հայաստան, 1987, 639 էջ, քարտեզներ։*

*Աշխատությունը բաղկացած է երկու մասից. առաջին մասը նվիրված է Արևմտյան կամ Բյուզանդական Հայաստանին, իսկ երկրորդը՝ Արևելյան կամ Պարսկական Հայաստանին։*

*Աշխատության մեջ ճշգրտվում են I, II, III, IV Հայքերի սահմանները, պատմական նշանակալից դեր խաղացած մեծ քաղաքների ու ավանների տեղագրությունը և Մարզպանական Հայաստանի վարչաքաղաքական իրավիճակը, նախարարությունների ծագումը, քանակը, նրանց տոհմական հիմքերը։ Հեղինակը բացահայտում է նաև Հուստինիանոսի ռեֆորմների դերն ու ազդեցությունը կայսրության սահմաններում գտնվող նախարարությունների ճակատագրի վրա։*

*Անվանի գիտնականի այս աշխատությունը առաջին անգամ է հրատարակվում հայերեն։ Այն օգտակար կլինի պատմության և բանասիրության բնագավառի մասնագետներին, ուսանողությանը, ինչպես նաև հայ մշակույթի պատմությամբ հետաքրքրվողներին։*

Ա $\frac{0504020000}{701(01)87}$ 74—86

ԳՄԴ 63—3(2Հ)1

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



### Արևմտյան Հայաստան



### Արևելյան Հայաստան



### Նախարարության ծագումը

# Ն Ա Խ Ա Բ Ա Ն

*Հուստինիանոսի դարաշրջանը, որ սույն հետազոտության առարկան է, առանձնահատուկ նշանակություն ունի ինչպես Հայաստանի, այնպես էլ Բյուզանդիայի պատմության համար։ Դրա տակ չի հասկացվում միայն Հուստինիանոսի թագավորության տարիները։ Հեղինակը մեծ ինքնակալի անունով կոչում է այն ժամանակահատվածը, որ սահմանագիծ է պատմության հռոմեական և բյուզանդական շրջանների միջև։ Դա անտիկ պետականությունից դեպի միջնադարյան պետականությունն անցնելու մի շրջան է։*

*Ճիշտ է, գիտության մեջ տարբեր կարծիքներ կան այն մասին, թե երբ է սկսվում բյուզանդական դարագլուխը. արդյոք Կոստանդին Մեծի ժամանակվանի՞ց, Թեոդոսիոսի օրոք կայսրության բաժանումի՞ց, թե՞ Հուստինիանոսի դարաշրջանից, բայց այս տարակարծությունները, ըստ էության, իրար չեն բացասում։ Կոստանդնուպոլսի հիմնադրումը Դ դարի սկզբին և պետական կյանքի կենտրոնի փոխադրումն այնտեղ, ինչպես նաև կայսրության բաժանումը երկու մասի Դ և Ե դարերի սահմանագլխին՝ նոր ժամանակաշրջանին անցնելու պրոցեսում առանձին և շատ կարևոր մոմենտներ էին։ Ինչպես էլ որ բնորոշելու լինենք բյուզանդական մշակույթն ու պետականությունը, ի տարբերություն անտիկ շրջանի, չի կարելի ժխտել, որ այն սկզբունքների կազմավորումը, որոնց ամբողջականությունը կոչվում է բ յ ու զ ա ն դ ա կ ա ն ու թ յ ու ն, տեղի է ունեցել քաղաքակիրթ Արևելքի հետ ունեցած սերտ շփման հողի վրա։ Ուստի, մայրաքաղաքի տեղափոխումը արևելք, և ապա արևելյան մասի անջատումը արևմտյանից պետք է դիտել իբրև պետականության արևելականացման նշանակալից ակտեր։*

*Հուստինիանոսի գահակալությունը իրենից ներկայացնում է*

կայսրության վաղեմի ավանդույթները փրկելու վերջին ճիգերի մի շրջան։ Մեծ աշխարհակալը ձգտում էր կրկին միավորել կազմալուծված կայսրությունը՝ երազելով վերադարձնել նրան նախկին վեհությունը։ Ներքին և արտաքին քաղաքականության բնագավառում ձեռք բերված աղմկալի հաջողությունները կարծես թե արդարացնում էին ինքնակալի հույսերը, և մի պահ թվաց, թե հարություն են առել հռոմեական հզորության լավագույն ժամանակները։ Բայց անհատներին վիճակված չէ ետ դարձնել պատմության անիվը։ Հուստինիանոսի երազանքները չիրականացան, և նրա ձգտումները, վերջին հաշվով, ավելի շուտ հակառակ արդյունքներ տվին։ Հռոմեական ավանդույթների, հռոմեական ոգու պահպանման համար մղվող պայքարում անտիկ հեթանոսական աշխարհայացքը աննկատելիորեն փոխակերպվեց քրիստոնեական-բյուզանդականի։ Ինքը՝ Հուստինիանոսը, մի այնպիսի միապետի կերպար էր, որ համատեղում էր թե՛ հռոմեական և թե՛ բյուզանդական շրջանի կայսրին հատուկ բնավորության գծերը։ Քրիստոնեություն ընդունելու հետևանքով պետական կյանքում առաջ եկած բեկումը այդ ժամանակ այնպիսի լարվածության հասավ, որ Հուստինիանոսի դարը կարող ենք համարել սահմանորոշ մի շրջան, որը փակում է պատմության հին դարագլուխը և բացում նորը՝ բյուզանդականը։

Ուսումնասիրության առարկա ընտրելով հատկապես այդ անցման ժամանակաշրջանը, մենք ելակետ ենք ունեցել նախ և առաջ հայոց պատմության համար նրա ունեցած կարևորությունը։

Հայոց պատմությունը բառի բուն իմաստով սկսվում է Հայաստանում քրիստոնեության հաստատման ժամանակներից։ Եթե պատմություն ասելով հասկանալու լինենք մի գիտություն, որը հնարավորություն է տալիս երևան հանելու տվյալ ժողովրդի անցյալն այնքանով և այնպիսի գծերով, որ կարելի լինի գաղափար կազմել նրա հոգևոր նկարագրի մասին, ապա հայերի համար այդպիսի պատմություն գոյություն ունի միայն հիշյալ շրջանից սկսած։ Հայոց նախաքրիստոնեական կյանքը, գոնե պատմագիտության ներկա վիճակում, ծածկված է խավարով. մեզ հայտնի են մեծ մասամբ հայերի և հարևան տերությունների հարաբերություններին վերաբերող առանձին փաստեր, կցկտուր, երբեմն էլ հանգամանալից տեղեկություններ։ Այդ կարգի նյութերը իբրև աղոտ, բեկբեկուն ճառագայթներ, թերևս, հնարավորություն են տալիս որսալու ընդհանուր

քաղաքական կյանքի ուրվագիծը, բայց միանգամայն անզոր են լուսավորելու կենցաղի ներքին և իրական կողմերը։

Ժողովուրդների պատմական կյանքի ամենալավ վկան և նրա մեկնաբանը լեզուն ու դպրությունն են։ Պատմագիտությունը ամուր հողի վրա է կանգնում այն պահից, երբ իր տրամադրության տակ ունենում է տվյալ ժողովրդի լեզվով խոսող փաստաթղթեր։ Այդ տեսակետից հայ պատմագրությունը սկսվում է, խիստ ասած, դպրության երևան գալու ժամանակվանից։

Հայերի գիր ունենալու հոգսը սկիզբ է առնում Հայաստանում քրիստոնեության հաստատման հետ միաժամանակ՝ Դ դարի սկզբին։ Այբուբենը վերջնականապես մշակվում է Ե դարի սկզբին։ Իսկ դպրության առաջին հուշարձանները, ավելի ճիշտ· մեզ հասած պատմական գրականությունը վերաբերում է Ե դարի վերջերին։ Քրիստոնեական գրականության սկզբնական վավերագրերը հակվում էին գերազանցապես դեպի ասորա-պարսկական եկեղեցական աշխարհը, բյուզանդական եկեղեցու հետ նրա առավել սերտ շփումը սկսվում է Զ դարից։

Հիշյալ երեք հիմնակետերը՝ Դ դարի սկիզբը, Ե և Զ դարերը հայերի համար նույնպիսի նշանակություն ունեն, ինչպես Բյուզանդիայի համար։ Դրանք դեպի բյուզանդականությունը կատարվող շրջադարձի ամենացայտուն պահերն են։ Հայաստանը, հաղորդակից լինելով քրիստոնեական մշակույթին, դարձավ լայնածավալ բյուզանդական աշխարհի մի մասը։ Ի՞նչ էր ներկայացնում Հայաստանը Բյուզանդական կայսրության կազմավորման նախօրյակին, ինչպիսի՞ն էր նրա վիճակը, գերազանցապես քաղաքական վիճակը այն ժամանակ, երբ նա կայսրության շահերի շրջանակն էր ներգրավվում,— ահա այն հիմնական խնդիրը, որ սույն աշխատության քննության առարկան է։ Սույն խնդրի ուսումնասիրությունը թելադրվում է ոչ միայն ելնելով հայոց պատմության շահերից, այլ, ինչպես ասվեց, նաև Բյուզանդիայի շահերից։

Բյուզանդական կայսրությունը բնավ էլ միատարր չէր ո՛չ իր էթնիկական կազմով և ո՛չ էլ նույնիսկ մշակութային ու կենցաղային տեսակետից։ Պետության ամբողջականությունը հիմնված չէր որևէ միջուկի, էթնիկական որևէ տարրի մյուս ժողովուրդների վրա ունեցած գերակշռության վրա։ Այստեղ գոյություն չուներ, ինչպես հռոմեացիների մոտ, հաղթողներին պարտվածներից տարբերող սահման։ Հույն ազգն իր ուժով ու նշանակությամբ, անկասկած, գանը-

վում էր հատուկ վիճակում, բայց ասել, թե բյուզանդականությունը նրա արարչությունն է, այնքան էլ ճիշտ չէր լինի։ Համենայն դեպս այդ ժամանակաշրջանը բազմակողմանիորեն ուսումնասիրելու և ճիշտ բնորոշելու համար անհրաժեշտ է հաշվի առնել այն ամենը, որ ցեղային առանձին աշխարհները ներդնում էին պետական և հոգևոր կյանքի ընդհանուր գանձարանը։ Նրանց մեջ հայոց աշխարհին և առհասարակ արևելյան ծայրերկրին պատկանում էր առաջին տեղերից մեկը. նրա ավանդը կայսրության ընդհանուր կյանքի մեջ չափազանց մեծ էր։ Մյուս կողմից, նույնքան ճիշտ է և այն, որ կայսրության հունի մեջ ներգրավված արևելյան երկրները իրենց հերթին կրում էին կայսրության կրթական հզոր ազդեցությունը։ Այդ իմաստով Հայաստանի հարաբերությունը Բյուզանդիայի հետ մասի հարաբերությունն է ամբողջի հետ։ Հետազոտել հայկականը Բյուզանդիայում և բյուզանդականը՝ Հայաստանում, մի խնդիր է, որի մեջ հավասարապես շահագրգռված են և՛ հայագիտությունը, և՛ բյուզանդագիտությունը։ Այստեղ անհրաժեշտ է հաշվի նստել երկու տեսակետների հետ էլ. կանգնելով բացառապես կայսրության տեսակետի վրա, կարելի է շատ բան չնկատել և ընդհակառակը՝ հնարավոր է նույնպիսի վտանգ նեղ հայկական տեսակետից։ Երևույթները ըստ արժանվույն գնահատելու համար պետք է հաշվի առնել ինչպես կայսրության, այնպես էլ տեղական չափանիշը։

Համապետական շահերից բացի հայերն ունեին նաև իրենց ազգային և շատ կողմերով ինքնատիպ կյանքը։ Մենք չենք կարող սահմանափակվել հայկական կյանքի միայն այն կողմերի քննությամբ, որոնցով նա շփվում էր կայսրության հետ։ Նույնիսկ Բյուզանդիայում ծագած հայկական հոսանքները հատուկ նպատակով ուսումնասիրելու համար ավելի արգասավոր կլիներ ելնել հայկական հողերի ընդհանուր վիճակից, չխոսելով արդեն այն մասին, որ դա է պահանջում նաև հայերով զբաղվող դիսցիպլինի ինքնուրույնությունը։ Այդ պատճառով էլ մենք վերցնում ենք հայկական հողերը in toto և քննում ենք ոչ միայն Բյուզանդիայի գերիշխանության տակ եղածները, այլև մյուսները՝ նրանց պարսկական մասերը։ Քաղաքականապես մասնատված Հայաստանը մյուս տեսակետներից ներկայացնում էր մի ամբողջական մեծություն։ Իհարկե, երկրի վրա ծանրացած քաղաքական վարչակարգը փոխում էր նրա նկարագիրը՝ կախված այն քաղաքական իրավիճակից, որի մեջ գտնվում էին երկրի տարբեր մասերը և համապատասխան փոփոխություններ

էին տեղի ունենում նրա ներքին կյանքում։ Արշակունիների անկումից ի վեր երկրի քաղաքական մասնատվածությունը կարծես դառնում է կեցության բնականոն ձև։ Այդ հանգամանքը իր ազդեցությունն է թողնում կյանքի մյուս բնագավառների վրա և խանգարում երկրում համընդհանուր տրամադրություն ստեղծելուն, որի բացակայությունը մշտապես ողբում են հայ պատմիչները և որը համարում են Հայաստանի գլխին թափված բոլոր աղետների գլխավոր պատճառը։ Բայց այս ամենի կողքին կար և մի ինչ-որ ընդհանուր բան՝ ամենից առաջ լեզուն, դպրությունը և պատմական ավանդույթները, որոնք քաղաքական-տերիտորիալ սահմանագատումներից դուրս հանդիսանում էին ազգային միասնության շաղախ։ Հայոց պատմությունը պատշաճ ձևով լուսաբանելու համար պետք է հաշվի առնել այդ հանգամանքը և հայկական հողերի բաղկացուցիչ մասերի ճակատագիրը քննության առնել ամբողջությամբ և յուրաքանչյուր հատվածինը՝ առանձին, այսպես ասած՝ ընդհանուր և մասնավոր խրադրության մեջ։ Այլապես անխուսափելի կլինեն սխալները, որոնք կարող են առաջ գալ ոչ ճիշտ ընդհանրացումներից և ամբողջ երկրին այնպիսի բաներ վերագրելուց, որը ճիշտ է միայն նրա մի որևէ մասի վերաբերյալ։ Սույն աշխատության մեջ հայկական հողերը քննության են առնված նրանց մասնատվածության և քաղաքական վիճակի տեսակետից, և կազմված է համապատասխան աշխարհագրական քարտեզ*։

Մեր աշխատության հիմքում ընկած են որակով ու ծագումով տարբեր նյութեր, որ քաղված են ազգային և օտար աղբյուրներից։ Ընդունելով Հայաստանի մասին դասական գրականության տվյալների ամբողջ արժեքը, մենք չենք բաժանում հայկական նյութերի նկատմամբ շատ հետազոտողների կողմից սեփականացրած բացասական տեսակետը։ Մենք հեռու ենք այս կամ այն կողմի՝ դասական կամ հայկական աղբյուրների տվյալների նկատմամբ կանխակալ կարծիք ունենալուց։ Վիճելի դեպքերում հավասարապես քննադա-

* Պետք է ափսոսալ, որ մեզնից անկախ մի շարք պատճառներով տպագրության պատրաստ քարտեզը հնարավոր չեղավ հրատարակել սույն աշխատության հետ միաժամանակ։

Ծանոթություն.— Հրատարակության պատրաստելով ներկա հայերեն թարգմանությունը՝ կատարում ենք հեղինակի ցանկությունը. աշխատությանը կցում ենք երեք քարտեզ, որ պատրաստել է Հայկական ՍՍՀ ԳԱ ակադեմիկոս Ս. Տ. Երեմյանը։

(Է. Հ. Խոնդկարյան)

տորեն ենք վերաբերվում մեր ձեռքի տակ եղած նյութերին, անկախ նրանց ծագումից։ Հայ մատենագրության տվյալների անբավարար լինելը պայմանավորված է Հայաստանի ճակատագրի առանձնահատկությամբ։ Հայ ժողովրդի հոգևոր կյանքը մեծ բեկումներ է ունեցել և այնպիսի անակնկալների է ենթարկվել, որ երբեմն ուղղակի ընդհատվել է՝ ամբողջովին կորցնելով կապը նախկինի հետ։ Քաղաքական տագնապալից հեղաշրջումները այնպես էին փշրում պատմական հաջորդականության շղթան, որ երբեմն հաջորդ սերունդը ոչ հեռավոր անցյալի նկատմամբ այնքան անտեղյակ և այնպիսի անօգնական վիճակի մեջ էր ընկնում, ինչպես մենք այսօր։ Երկրի մասնատված վիճակը և կյանքի բնականոն ընթացքի հաճախակի ընդհատումները խանգարում էին միասնական ավանդույթների մշակմանն ու պահպանմանը։

Հենց որ հանդարտվում էին քաղաքական փոթորիկները, ետևում էին մնում ձախորդությունների սուր շրջանները, և կյանքը սովորական հունի մեջ էր մտնում, արթնանում էր հետաքրքրությունն անցյալի նկատմամբ, սկսվում էր տագնապալից ժամանակներից փրկված հուշարձանների ուսումնասիրությունը՝ հին ժամանակների հետ եղած կապը հաստատելու, ներկան անցյալի հետ որևէ կերպ շաղկապելու նպատակով։ Այդպիսի դեպքերում անցած օրերին սևեռված միտքը սովորաբար տրամադրվում է ռոմանտիկորեն։ Որքան ավելի քիչ է հաջողվում որսալ անցյալի ուրվագծերը, որքան ավելի մշուշապատ են վեր բարձրանում հարազատ դեմքերը ժամանակների խավարի միջից, այնքան ավելի շեշտված է արտահայտվում ռոմանտիկ տրամադրությունը։ Բագրատունիների դարաշրջանի մարդիկ կարծես չէին նկատում իրենց ժամանակի ուրախալի երևույթները, այն փայլը, որի մասին վկայում են այժմ պեղումների ժամանակ գտնված մշակութային արժեքները, և մտքով թռչում էին հեռուն, դեպի այն ժամանակները, երբ իշխում էին Արշակունի թագավորները, երբ գործում էր սուրբ Լուսավորիչը։ Նման հանգամանքներում, իհարկե, չի կարելի սպասել ճիշտ հայացք ու սեփական անցյալի ճիշտ ըմբռնում։ Նախնիների գրական ժառանգությունը վերամշակվում էր ժամանակի տրամադրություններին ու հայացքներին համապատասխան, տվյալ տրամադրության տեսակետից անկարևոր համարվող երկերը կամ մոռացության էին մատնվում կամ ոչնչացվում էին։ Քիչ հուշարձաններ զոհ չդարձան դավանական և քաղաքական անհամերաշխության հողի վրա բորբոքված կուսակցական կրքերի։

*Այդպիսի պայմանների հետևանքն այն եղավ, որ պատմական հարցերի վերաբերյալ մի կողմից շատ շուտ հաստատվեցին չոր կաղապարներ, որ հետո կրկնում էին դյուրահավատ հեղինակները, իսկ մյուս կողմից ազատ հրապարակ էր մնում սուբյեկտիվ մեկնաբանությունների համար՝ նման դեպքերում պատմական հեռանկարների նկատմամբ անխուսափելի սխալներով կամ հետագա երևույթները հնացնելու, կամ էլ հին երևույթները նոր հայացքների ու շահերի լույսի տակ վերամեկնաբանելու պատճառով։ Գլուխ հանել այս հարցերից, արձակել այս բոլոր արհեստական հանգույցները՝ մասնագիտության պատմության խնդիրն է. այնուամենայնիվ մենք չենք խուսափել դրանք քննության առնել և աշխատել ենք ուժերը ներածին չափ պատասխանել դրանց, որքանով այդ պահանջել է մեր աշխատանքի ընթացքը։ Մեզ համար գերազանցապես կարևոր է վիճելի հարցերի պատմական կողմը։ Այդ պատճառով ոչ միշտ մտնելով գրական քննադատության մանրամասների մեջ, մենք կանգ ենք առել փաստական նյութերի հավաստիության աստիճանի և համեմատական հնության վրա։ Մենք աշխատել ենք գրավոր հուշարձաններում փնտրել մեր խնդրի համար պիտանի նյութեր, այն խմբագրական պայմանականություններից ու մշակումներից դուրս, որոնցով դրանք հասել են մեզ։ Շրջանցելով սխեմայացման ավանդական սովորույթը, մենք թանկ ենք գնահատել միայն պատմական արժեքը, թեկուզև այն չի համապատասխանել գրական արժեքին։*

*Վերլուծության գործը բարդանում էր նաև նրանով, որ պատմական նյութերն անհրաժեշտ էր լինում քննել ոչ թե նրանց հավաստիության տեսակետից ընդհանրապես, այլ գլխավորապես մեր կողմից ուսումնասիրվող շրջանի կապակցությամբ։ Երևույթների զարգացման մեջ համապատասխան պահը որոշելու համար շատ անգամ հարկ եղավ դիմել ծագումնաբանական հետազոտման մեթոդի օգնությանը, այսինքն՝ հարցերը լուսաբանել պատմականորեն, դրանց զարգացման հաջորդական փուլերը դիտել մինչև մեզ զբաղեցնող դարաշրջանը։ Այս ձևով հնարավոր եղավ կողմնորոշվել բազմաթիվ հակասական, երբեմն անհամատեղելի տվյալների մեջ և համոզվել, որ տարակարծությունը հաճախ ծագում է պատմական գիծը չպահպանելուց և տարբեր ժամանակներին ու տարբեր վայրերին վերաբերող տվյալները իրար հետ շփոթելուց։ Այդ պատճառով մեր աշխատանքը հաճախ դուրս է եկել նախագծված սահմաններից, թերևս ի վնաս նրա կառուցվածքի։ Առանց ծագումնաբանական տեսու-*

*թյան և առկա նյութերն իրենց ամբողջությամբ օգտագործելու դըժվար կլիներ որսալ Հայաստանում եկեղեցական կազմակերպության և նախարարական վարչակարգի հիմնական գծերը տվյալ փուլում։ Նախարարությունը հայոց պատմական կյանքում շատ բնորոշ երևույթ է և հսկայական կարևորություն ունեցող մի գործոն։ Հայաստանում քաղաքական ազատության վախճանը վրա հասավ իսկապես ոչ թե Արշակունիների կամ Բագրատունիների թագավորական հարստությունների անկումով, այլ մոնղոլների արշավանքի շրջանում նախարարական տոհմերի կործանումով։*

*Արևելյան Հայաստանում նախարարության և Արևմտյան Հայաստանում ներքին վարչակարգերի քննարկումով մենք ուրվագծել ենք հայկական հողերի գոյավիճակը մեզ հետաքրքրող դարաշրջանում, քանի որ այդ անհրաժեշտ էր քաղաքական և այլ կարգի իրադարձությունները հասկանալու համար, որոնց շարադրանքին նվիրված է լինելու մեր աշխատության հաջորդ մասը։*

*Ի վերջո, թերևս ավելորդ չէր լինի նկատել, որ, հրատարակելով սույն աշխատությունը, մենք շատ հեռու ենք այն կատարյալ համարելու մտքից։ Հայ բանասիրությունը գտնվում է այնպիսի վիճակում, որ դեռևս խոսք չի կարող լինել անառարկելիորեն ճիշտ որևէ եզրակացության ու տեսության մասին։ Հայոց անցյալն ուսումնասիրողները հարկադրված են պատմական բազմաթիվ հարցերին մոտենալ խարխափելով, ավելի կամ պակաս հաջող կռահումներ անելով, որոնց մի մասը կարող է հետագայում հաստատվել, մյուսը՝ ոչ։ Մեր աշխատության նկատմամբ մենք համակված ենք այն գիտակցությամբ, որը կարող է արտահայտվել եվրոպական ֆեոդալիզմը ուսումնասիրողներից մեկի խոսքերով.* für eine Zeit, in welcher die Quellen aus Fragmenten bestehen, wird niemand das allein Richtige gefunden zu haben glauben.

Ն. Ադոնց

# ԳԼՈՒԽ I

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԲԱԺԱՆՈՒՄԸ

Հայաստանի պատմական պայմանները և նրա դիրքը հարևան երկրների շարքում։ Հայաստանի բաժանումը՝ Արևմտյան կամ Բյուզանդական Հայաստան և Արևելյան կամ Պարսկական Հայաստան։ Սահմանագիծը Դարայից մինչև Թեոդոսուպոլիս և այնուհետև մինչև Սև ծով։ Սահմանագծի վրա ընկած գլխավոր կետերը և սահմանապահ պահականոցները։ Դարա և Մծբին։ Մարտիրոսուպոլիս, Փիսոն, Արքախ և Կղեսուրք։ Ակբա, Քղիմար և Փում։ Կիթառիճ և Արտալեսոն։ Երեզ և Ողնուտ։ *Արտադիք-Ննդերիս բնակավայրերը։ Թեոդոսուպոլիս և Դու։ Բողոն և Փառանգիոն։ Շաղագոմ և Ոքաղե, Ճանիք և Տայք։ Եգեր։

*Տերիտորիալ իրադրությունը այն գիտության կարևոր բնագավառներից մեկն է, որ զբաղվում է արտաքին պատմությամբ։ Հանրահայտ է, որ այն նյութական միջավայրը, որտեղ զարգանում է տվյալ ժողովուրդը, նրա կյանքի պատմական ընթացքը պայմանավորող գործոններից մեկն է։ Գերազանցապես այդ միջավայրում են թաքնված արտադրողական այն պայմանները, որոնց առկայությամբ ձևավորվում է ժողովուրդների անհատական դիմագիծը և որոշվում նրանց անցած պատմական ճանապարհի առանձնահատկությունը։ Ուստի հասկանալի է, որ տերիտորիալ իրադրության վերլուծությունը պետք է նախորդի պատմության վերաբերյալ որևէ այլ հետազոտության։*

*Հայաստանի, ինչպես և յուրաքանչյուր այլ երկրի համար, որին վիճակված չի եղել աշխարհակալական դեր խաղալ համաշխարհային քաղաքակրթության մեջ, այդպիսի վերլուծությունն ունի առանձնահատուկ նշանակություն։ Նյութական իրադրություն ասելով մենք հասկանում ենք, իհարկե, ոչ միայն աշխարհագրական միջավայրը, այլև պատմական իրադրությունն ընդհանրապես, այսինքն՝ ոչ միայն երկրի բնական պայմանների ամբողջությունը, այլ նաև այն դիրքը, որ նա գրավում է շրջապատող երկրների և ժողովուրդների խմբերի միջև։ Հայաստանը գտնվել է փոքր երկրների՝*

Վիրքի, Աղվանքի, Ատրպատականի, Ասորիքի և Կապադովկիայի միջև, որոնց հետ նա այս կամ այն չափով մշակութային կապի և ցեղային ազգակցության մեջ է եղել և նույն քաղաքական ճակատագիրն է ունեցել։ Այդ երկրները տերիտորիալ առումով միշտ միևնույն կայուն մեծությունը չեն ունեցել։ Նրանց սահմանները հաճախ փոփոխվել և որոշվել են յուրաքանչյուր տվյալ դարաշրջանում գոյություն ունեցող ուժերի փոխհարաբերությամբ։ Հայերի բնակության գոտին կամ տարածվել է այս կամ այն ուղղությամբ և կամ կրճատվել՝ նայած մշակութային և քաղաքական պայմաններին։ Պատմության ասպարեզում երևան գալու պահից ի վեր Հայաստանը հայտնվեց միմյանց հետ մրցող հզոր պետությունների միջև, որոնց ազդեցությունը շատ մեծ եղավ նրա ներքին կյանքի վրա։ Քաղաքական ուժը մեկ անգամ չէ, որ խաթարել է Հայաստանի օրգանական աճը, կտրելով և ձևափոխելով երկրի զարգացման բնականոն ընթացքը։ Այս կամ այն պետության քաղաքական գերակշռության ազդեցության տակ Հայաստանում հաճախ փոփոխվում էին մշակութային կյանքի կենտրոններն ու նրա ամբողջ բնույթը։ Այդ փոփոխությունները առաջացնում էին բնակչության նորանոր տեղաշարժեր՝ տարբեր կողմեր նետելով ցեղային ալիքները։ Սխալմամբ հաճախ Հայաստան է տեսնում այնտեղ, որտեղ աշխարհագրական տերմինները այլևս չեն արդարանում նախկին ցեղային բովանդակությամբ և, ընդհակառակը, աչքաթող է անում կամ ճիշտ չի գնահատում հայերի նշանակությունը այլ շրջաններում։

Սկզբում հայերի տեղաշարժը կատարվում էր արևելյան ուղղությամբ և Արշակունիների ժամանակ հասավ առավելագույն սահմանների։ Հայաստանում քրիստոնեություն ընդունելու նախօրյակին հայ Արշակունիների տիրապետությունը տարածվում էր մինչև Ատրպատականի մայրաքաղաքը՝ Գանձակ[1], այսինքն՝ ընդգրկում էր հին Մարաստանի ճիշտ կեսը։ Ճիշտ է, այդքան հեռուն էին տարածվում միայն քաղաքական սահմանները, բայց այստեղ չի կարելի ժխտել նաև ցեղային հիմքը՝ հայկական տարրի ճնշումը Ատրպատականի ծայրամասում։

---

[1] Չպետք է շփոթել Ուտիքի կամ Օտենի գավառում գտնվող նույնանուն քաղաքի՝ Գանձակ-Ելիզավետոպոլի հետ։ Ատրպատականի Գանձակը գտնվում էր այժմյան Թավրիզից բավական հարավ։ Գիտնականները այն նույնացնում են այժմյան Թախտի-Սուլեյմանի հետ, Ջենջանի մոտ։ Հայաստանի սահմանների հարցը կքննվի ստորև։

Ավելի ուշ տեղաշարժ է նկատվում հակառակ ուղղությամբ. Հուստինիանոսի դարաշրջանում ուժեղանում է ձգտումը դեպի արևմուտք, և նախկին Կապադովկիայի մի զգալի մասն այն աստիճան է հայացվում, որ պաշտոնապես նրան տրվում է Հայաստան անունը։ Հայ ազգաբնակչության տեղաշարժը կամ հասարակական կյանքի կենտրոնի տեղափոխությունը ուղեկցվում էր հարևան ժողովուրդների կողմից Հայաստանի վրա համապատասխան կողմերից գործադրվող ճնշմամբ, նրա տերիտորիայի մասնակի կորուստով։ Էթնիկական մակընթացությունների և տեղատվությունների այդպիսի երևույթներ էին տեղի ունենում նաև Հայաստանի հարավում ու հյուսիսային ծայրամասերում, որտեղ, դրա հետևանքով, նրա սահմանները նույնպես աչքի չէին ընկնում իրենց կայունությամբ։

Այս պայմաններում որոշել Հայաստանի, իբրև աշխարհագրական մեծության, դիրքը սահմանակից երկրների՝ Վիրքի, Աղվանքի, Ատրպատականի, Ասորիքի և Կապադովկիայի միջև և հետևել նրանց տերիտորիալ փոխհարաբերություններին պատմական հեռանկարում, յուրաքանչյուր դարաշրջանում փոփոխված տվյալների համաձայն, մի բարդ խնդիր է, որ կարող է հատուկ ուսումնասիրության նյութ դառնալ։ Մեր խնդիրը այս առումով սահմանափակվում է գերազանցապես մեզ հետաքրքրող Հուստինիանոսի դարաշրջանի շրջանակներով և կայանում է նրանում, որ նախապես ուրվագծենք պատմական այն թատերաբեմը, որի վրա ծավալվել է հայ ժողովրդի կյանքը նշված ժամանակաշրջանում։

Հռոմեացիների և պարսիկների դարավոր պայքարը Հայաստանի համար Դ դարի վերջում հանգեցրեց նրա բաժանմանը երկու մրցակիցների միջև, ապա նաև արքայական թագի վերացմանը Հայաստանում։ Այն դրությունը, որ ստեղծվեց բաժանման ժամանակ դաշնագրային համաձայնությամբ, պահպանվեց նաև հետագա դարերում՝ մինչև Զ դարի վերջը, երբ Հայաստանի կենտրոնական նահանգները Սասանյաններից անցան Բյուզանդիային։ Երկրի քաղաքական բաժանումը երկու՝ արևելյան և արևմտյան մասերի հայ ժողովրդի կյանքում առաջ բերեց նաև մշակութային երկատվածություն, որ պայմանավորված էր բյուզանդական և իրանական պետականությունների տարբերությամբ։ Տիրապետող տերությունները զգալի ազդեցություն ունեցան Հայաստանի՝ իրենց ենթակա մասերի հասարակական կառուցվածքի և հայ իրականության շատ կողմերի վրա։ Այսպես, օրինակ՝ հայերի անհավասար, ուղղակի ասած, երկա-

կի վերաբերմունքը այդ ժամանակ ամբողջ քաղաքակիրթ աշխարհն ալեկոծող ընդհանուր եկեղեցական կյանքի երևույթների նկատմամբ պետք է քննվի ու լուսաբանվի քաղաքական կյանքի ոչ միատարր պայմանների հետ կապված։ Հայտնի է, թե որքան հաճախ իշխանությունները խուժում էին եկեղեցական կյանքի բնագավառը ոչ միայն Բյուզանդիայում, այլև Պարսկաստանում և տիրաբար ազդում դավանաբանական վեճերի լուծման վրա՝ հօգուտ քաղաքական տարբեր ըմբռնումների։ Այս պատճառով էլ Հայաստանում բյուզանդական և պարսկական իշխանությունների ազդեցության գոտիների ամենախիստ սահմանազատումը ներկայացնում է ոչ միայն աշխարհագրական, այլ նաև մշակութային մեծ հետաքրքրություն։

Հայաստանի բյուզանդական կամ, ինչպես կոչում էին Արևելքում, հռոմեական և պարսկական մասերը միմյանցից բաժանող սահմանագիծը հյուսիսում անցնում էր Թեոդոսուպոլիս-Էրզրումի և հարավում՝ Մծբինի մոտով՝ ընդ որում առաջինը մնում էր հռոմեական, իսկ երկրորդը՝ պարսկական բաժնում։ Մծբինի դիմաց, մի քիչ ավելի հյուսիս, բյուզանդական մասում գտնվում էր Դարա ավանը, որ Անաստաս կայսեր օրոք վեր էր ածվել բերդաքաղաքի և նրա անունով կոչվում էր Անաստասուպոլիս։ Ժամանակակից պատմաբանի վկայությամբ Դարան գտնվում էր Մծբինից 98, իսկ պարսկական սահմանից՝ 28 ստադիոն հեռավորության վրա[1]։ Այժմ քաղաքի ավերակների վրա կանգնած է աննշան մի գյուղ Դարա կամ Կարա-Դարա անունով, որ մոտավորապես նույն հեռավորության վրա է գտնվում այժմյան Նիզիբին-Մծբինից։ Քսանութ ստադիոնը հավասար է մոտավորապես 4,5 վերստի, նշանակում է, Դարան համարյա թե պարսկական սահմանի վրա է գտնվել[2]։

---

[1] Proc. *Pers.* I, 10, p. 49. Kiepert, *Kleinasien.*

[2] Պրոկոպիոսը *De Aedificiis*-ի մեջ (II, 1, p. 210) ճշտում է Դարայի տեղը հետևյալ խոսքերով. Ἄγχιστα τῇ τῶν Περσικῶν ὅρων… Δάρας։ Ըստ Գևորգ Կիպրացու տեղեկության պարսկական սահմանը գտնվում էր Դարայից 6 մղոն հեռավորության վրա։ ἀπὸ ζ μιλίων τῆς αὐτῆς πόλεως (sc. Δαρᾶς) εἰσὶ τὰ μεθόρια καὶ οἱ ὅροι Πέρσιδος καὶ Συρίας p. 46. Հռոմեական մղոնը հավասար է 7 ստադիոնի, 6 մղոնը կազմում է 42 ստադիոն։ Պրոկոպիոսը նույն տարածությունը համարում է 28 ստադիոն։ Հազիվ թե Կիպրացու ցուցումը վերաբերում է ուրիշ ժամանակի։ Ավելի հավանականն այն է, որ Պրոկոպիոսի ստադիոնը 210 մետրից՝ ստադիոնի սովորական չափից ավելի է։ Ուղիղ գծով Դարայի և Մծբինի միջև եղած տարածությունը 30 կիլոմետր է, իսկ Պրոկոպիոսի մոտ՝ 98 ստադիոն։

*Բյուզանդիայի և Պարսկաստանի միջև Հայաստանին առավել մոտիկ սահմանը Նիմփիոս գետն էր, որի ափին գտնվում էր Մարտիրոսուպոլիսը՝ սահմանային կարևոր պահականոցներից մեկը։ «Հայաստանում, որ կոչվում է Սոփանենե (Ծոփք),—ասում է պատմագիրը,— կա մի քաղաք՝ Մարտիրոսուպոլիս, որ գտնվում է Նիմփիոս գետի ափին, թշնամու սահմաններին շատ մոտ, քանի որ Նիմփիոսն այդ տեղում հռոմեական տիրույթները բաժանում է պարսկականից։ Գետի մյուս կողմում ընկած է Արքսանա երկիրը* (sc. *Արզան-են-ե), որ հնուց ի վեր ենթակա է պարսիկներին»*[1]։

*Նույնը կրկնվում է մի ուրիշ տեղ. «Մարտիրոսուպոլիս քաղաքը գտնվում է Սոփանենե (Ծոփք) կոչվող շրջանում, Ամիդից հյուսիս, նրանից 240 ստադիոն հեռավորության վրա։ Այն գտնվում է Նիմփիոս գետի ափին, որը հռոմեական տիրույթները բաժանում է պարսկականից»։ «Նիմփիոս գետը հոսում է Մարտիրոսուպոլսի մոտով և Ամիդից գտնվում է մոտավորապես 300 ստադիոն հեռավորության վրա»*[2]։

*Մի ուրիշ անգամ հեղինակը Մարտիրոսուպոլսի և Ամիդի միջև եղած տարածությունը հաշվում է «արագաքայլ հետիոտնի մեկ օրվա ճանապարհից մի քիչ ավելի», որ համապատասխանում է նախորդ տարածությանը՝ 240 ստադիոն, քանի որ համաձայն նույն հեղինակի վկայության մեկ օրվա ճանապարհը, իբրև չափ, հավասար է 210 ստադիոնի*[3]։

*Մարտիրոսուպոլսից ոչ հեռու, նրանից 100 ստադիոն հեռավորության վրա էր գտնվում Աթթախ գյուղը*[4]։

---

[1] Proc. Aed. III 2 p. 248. ἐν 'Αρμενίᾳ τῇ Σοφανήνῃ καλουμένῃ πόλις εστί που Μαρτυρόπολις ὄνομα παρ' αὐτὸν ποταμὸν Νυμφίον κειμένη καὶ τοῖς πολεμίοις ὡς ἀγχοτάτω πρόσοικος οὖσα' ἐπεὶ ὁ Νυμφίος ποταμὸς διορίζει ἐνταῦθα τὰ 'Ρωμαίων τε καὶ Περσῶν ἤθη. ἐπὶ θάτερα γὰρ τοῦ ποταμοῦ Α ρ ξ ά ν η ἡ χώρα οἰκεῖται Περσῶν κατήκοος ἐκ παλαιοῦ οὖσα. *Արզանենայի մասին, իբրև պարսկական հարուստ նահանգի, տեղյակ է նաև* Հովհան Եփեսացին. *Եկեղեց. պատմութ., VI, 15, գերմ. թարգմ. էջ 243, ինչպես նաև՝ De beatis,* p. 191, Arzanene Persarum.

[2] Proc. Pers. I 21 p. 107. *Ib.* I 9 p. 42. ἔστι δὲ ὁ ποταμὸς οὗτος Μαρτυροπόλεως μὲν ἀγχοτάτω, 'Αμίδης δὲ ὅσον σταδίων τριακοσίων.

[3] *Aed.* III, 1, p. 249. *Vand* I, 1, p. 312.

[4] *Pers.* I 21 p. 108. χωρίον 'Ατταχᾶς. Georg. Cypr. κάστρον 'Ατταχᾶς, p. *47, նաև* Ասողիկ, *Գ, 36, երկրաշարժից վնասված վայրերի թվում հիշատակած «խարխարեալ ճապաղչուր բերդին Դկլաթայ եւ Աթթախայ եւ Ամթայ»։*

*Հին Ամիդը, որ թուրքերեն կոչվում է նաև Կարա-Ամիդ*[1]*, եղել է այժմյան Դիարբեքիրի տեղում։ Իսկ Մարտիրոսուպոլիսը նույնացվում է Մայաֆարկին քաղաքի հետ, որ գտնվում է Բաթման գետից ոչ հեռու, Սասնա բարձունքներից դեպի Ամիդ ձգվող լեռնաշղթայի լանջերից մեկի վրա։ Մայաֆարկինից դեպի հյուսիս, լեռներում այսօր էլ կանգուն է Աթթախը։ Բաթմանը՝ Տիգրիսի կարևոր վտակներից մեկը, պետք է ենթադրել, որ Մարտիրոսուպոլսի մոտով հոսող հին Նիմփիոսն է։ Մարտիրոսուպոլիսը գտնվում էր Ամիդից 240 ստադիոն, իսկ Նիմփիոս գետը՝ 300 ստադիոն հեռավորության վրա, որից երևում է, որ քաղաքը, չնայած հեղինակի* ἀγχοτάτω *արտահայտության, անմիջապես գետի ափին չի եղել, այլ նրանից 60 ստադիոն՝ մոտավորապես 10 վերստ հեռավորության վրա։ Ճիշտ այսպիսի տեղադրություն ունի Մայաֆարկինը Բաթման գետի նկատմամբ։ Հայկական գրավոր հուշարձաններում քաղաքի անունը հնչում է Նփրկերտ, և նրա հիմնումը վերագրվում է Մարութա անունով մի եպիսկոպոսի, որն այդ քաղաքը որպես թե կառուցել է ի պատիվ մարտիրոսների իր ձեռքով հավաքած մասունքների*[2]*։ Այս ավանդությունը կապվում է քաղաքի* Μαρτυρ-ο-πολις *անվան հետ, որ հասկացվել է որպես «նահատակների քաղաք»։ Հայկական ձևը՝ Նփրկերտ* (nēfērkert)*, համապատասխանում է ասորական* mēfrkt*-ին, իսկ հայկական* մուհարկին muharkin *և ասորերեն* mēfarkin*-ը համազոր են արաբական* miyyafārkīn*-ին։ Առաջին ձևը պետք է համարել ավելի հին։ Վերջին վան-*

---

[1] قرا *սև ածականը արաբ հեղինակները բացատրում են նրանով, որ քաղաքը շինված է եղել սև գույնի քարերով,* le Strange, *The lands of the Eastern Caliphate*, p. *108։ Իր այժմյան անվան համար քաղաքը պարտական է ոմն Բեքրի, այդ շրջանի կառավարիչն է եղել,* دیاربکر *նշանակում է Բեքրի շրջան, որ սկզբում ամբողջ շրջանի անունն է եղել, իսկ հետո փոխանցվել է նրա մայրաքաղաքին։*

[2] *726 թ. ժողովին ներկա է եղել «Աթանաս Նփրկերտոյ եպիսկոպոս»։* Գիրք թղթոց, *էջ 224,* Ասողիկ, *էջ 193, «քաղաք Մարտիրոսաց պօլիս, որ է Նփրկերտ»։* Հովհ. Դրասխանակերտցի, *էջ 47։ «Զորրորդն կոչեցեալ Հայք, յորում մայրաքաղաք Մարտիրոսաց պօլիս, այսինքն՝ Նփրկերտ»։ Սրբ. Մարութայի վարքի մեջ ասվում է, որ նա ժողովեց մինչև 280.000 մասունք. 120.000 հռոմեական կայսրությունից, 20.000 Ասորիքից, 80.000 Պարսկաստանից և 60.000 հայկական հողերից։* Վարք Սրբոց, *1874, II, էջ 31։ Յառմաւուրք Տերենցի, 28 մայիս և Իսրայելի 25 փետրվար։ Կասկածից դուրս է, որ այս թվերն առասպելական են։ Ղփթական Յառմաւուրքում քաղաքի անունը ծագում է Մարութայից.* die Stadt einen von dem namen des heiligen Marutha abgeleiteten namen erhielt, *թարգմ.* Wüstenfeld, 1879, p. 312.

կը՝ kert, kat իրանական բառ է, որ նշանակում է fաղաf: Հավանորեն առաջին մասի մեջ ևս տեղական ծագում ունեցող որևէ բառ է թաքնված[1]։ Վերոհիշյալ ձևերը, անկասկած, ընդհանուր ծագում ունեն։ Դրանց թվին է պատկանում, ըստ երևույթին, նաև Մարեպտիկ-ոնը, որ հանդիպում է բյուզանդական հեղինակ Մենանդրի մոտ, եթե, իհարկե, դրա տակ չտեսնել հայկական Մարդպետականը։ Պատմագիրը հաղորդում է, որ պարսից Խոսրով թագավորը կայսեր դեսպանին դիտմամբ պահում է Դարայում, իսկ ինքը ճանապարհ է ընկնում և անցնելով այսպես կոչված Առեստոն և Մարեպտիկոն գավառներով, հասնում է Պարսկահայք[2]։ Կարծես թե խոսքը այստեղ Արզնի և Մայֆարկատի մասին է։ Խոսրովը Հայաստան է մեկնում Դարայից և իրոք, ինչպես այնուհետև երևում է պատմագրի խոսքերից, գալիս է Բագրևանդ և Տարոն։ Նրա ճանապարհը անցնում էր Արզանենեի վրայով՝ Մայֆարկատի մոտով։ Թվում է, հենց դրանք էլ պետք է համարել փնտրված վայրերը՝ 'Αρρεστῶν և Μα-ρεπ-τικῶν փոխանակ 'Αρρεσῶν և Μα-περ-κιτῶν։ Սեն-Մարտենը ենթադրում էր, որ հիշյալ բնակավայրերից առաջինը

[1] Լաստիվերտցի, էջ 100, Մուհարկին։ Ասողիկ, էջ 193, Մուֆարղին։ Աշխարհացույցի մեջ հանդիպող Նփրկտ ընթերցումը, եթե միայն Նփր(կ)ետի վրիպակը չէ, կարելի է համարել ասորերեն mēfarakt-ի հետ,* mēfaratt-ի միջոցով։ Արաբները maifar-kat-ը տառադարձելով miyya-farkin համանաբար կամեցել են տեսնել նրա մեջ میاه ջուր բառի հոգնակին ماء -ից (ջուր) նման Meiacarira-ի, որը ավան է Տիգրիսի աջ ափին, Մարդինի մոտ, և իր անունը ստացել է սառն աղբյուրներից, Meiacarire nomine... cui fontes dedere vocabulum gelidi. Amm. XVIII, 6, 16. Tab. Peut-ի մեջ p. 305, հիշատակվում է Aquae Frigidae թարգմանության մեջ։ Քաղաքի մոտ գտնվում են ակունքները عين حوض, Djehan-numa, Chaimoy-ի մոտ, t. I, pr. I, p. 143, որոնք մի գետակ են կազմում, որը քաղաքի միջով հոսում է դեպի Բաթման գետը։ Հնարավոր է, որ հենց այդ ջրերի գոյությունը դեր է խաղացել հիշյալ ստուգաբանության ժամանակ։ Եթե ճիշտ են գիտնականների կռահումներն այն մասին, որ հին Տիգրանակերտը գտնվում էր Մայաֆարկին-Մարտիրոսուպոլսի տեղում, ինչպես ենթադրում են W. Belck և C. Lehmann, *Zeit. für Ethnologie*, 1899, Bd. XXXI, p. 263, ապա Բաթման գետը համապատասխանում է Նիկեփորիոս գետին, որի վրա կանգնած էր Տիգրանակերտը, Tac. XV, 4։ Արդյոք կապ չկա nicephor-ius-ի և հայկ. Նըփըր-ի, ասոր. maifar *nakfar-ի միջև։ Մարկվարտը Nicep-hor-ius-ը արտածում է իրանական nēvak-farr ἀγαθότυχος-ից։ Ավելի պակաս հաջող է վերջին վանկի համադրությունը հայկական փոր-ի (ձոր, կիրճ) հետ։ Eranšahr, pp. 161—162։

[2] Menand. p. 393. διὰ τοῦ λεγομένου 'Αρεστῶν κλίματος καὶ τοῦ Μαρεπτικῶν ἀφίκετο ἐν Περσαρμενίᾳ.

*հայկական Առեստն է, իսկ երկրորդը հրաժարվել է բացատրել*[1]*։* Κλίμα *արտահայտությունը ավելի շուտ համապատասխանում է Ոշտունիքին, որ ավելի հայտնի էր, քան Առեստը, որ մի աննշան քաղաք էր Վանա լճի ափին։ Ըստ պատմագրի Խոսրովը գալիս է Բագրևանդ և Տարոն։ Եթե միայն պատմագրի կողմից ճիշտ է տըրված պարսից թագավորի երթուղին, ապա նա Դարայից Բագրևանդի վրայով Տարոն գալու համար պիտի անցներ լճի արևելյան ափով։ Այդ ճանապարհի վրա ընկած էին թե Ոշտունիքը, և թե Մարդպետականը։ Խոսրովը, պետք է ենթադրել, Դարայից գնացել է Ոշտունիք, շրջանցել է լիճը և մտել Մարդպետական, այնտեղից թեքվել է ձախ՝ Բագրևանդ և իջել Տարոն։ Այս դեպքում Առեստոնն ու Մարեպտիկոնը կարելի է համարել Վասպուրականի հայտնի գավառները՝ Ոշտունիքը և Մարդպետականը։*

Աշխարհացույցի *մեջ Նիմփիոս գետը կոչվում է Քաղիրթ և ըստ Պրոկոպիոսի հռոմների երկիրը պարսկականից բաժանող սահմանագիծն էր։ Ըստ* Աշխարհացույցի *Աղձնիքում «զՆփռետ և զԱղձն, ընդ որոց մէջն իջանէ գետն Քաղիրթ. զոր Տիթ<իթ>մա կոչեն տաճիկք, այսինքն՝ արինարբու»*[2]*...«Քաղիրթ բղխէ ի լերանց Սալնայ եւ Սանասնոյ եւ իջեալ կորէ յիրերաց զՆփրկերտ եւ զՔղիմար, որով բաժանեցան հռոմք եւ պարսիկք եւ կոչի այժմ Տիթիթմա, որ է արինարբու»*[3]*։*

*Ինչու Սյունակյացը գիտե* Kalad *գետը Ամիդի մոտ, որ համապատասխանում է Քաղիրթին։ Այն քաջ ծանոթ է նաև Հովհան Եփեսացուն, ըստ որի Մայֆերակտի դիմաց՝ գետի մյուս ափին, վեր է խոյանում մի բարձր ու դիք լեռ, որի վրա կանգնած է եղել պարսկական Ակբա ամրոցը*[4]*։ Մի այլ հեղինակ ճիշտ նույն բառերով է նկարագրում այդ անառիկ ամրոցի դիրքը, «որ կանգնած էր Մարտիրոսուպոլսի դեմաղեմ, գետի մյուս կողմում գտնվող բարձունքի վրա»*[5]*։*

---

[1] Lebeau, *Bas-Empire*, X, p. 132.

[2] Աշխարհացույց, *էջ 30* (Ս. Երեմյան, Աշխարհացույց, *էջ 107*)։

[3] *Նույն տեղում. էջ 37*։

[4] Եփեսեց. պատմ. *VI, 36, գերմաներեն թարգմ.* p. 265. Jenseits des Flusses Kalat aber auf der grenze gegen Maipheract zu ist ein steiler Berg auf dem...Akba։

[5] Evagr. *Hist.* IV 15. Τὸ Ὄχβας ὀχυρώτατον φρούριον, ἀντικρὺ Μαρτυροπόλεως ἐς τὴν ἀντιπέρας ὄχθην διακείμενον ἐπί τινος σκοπέλου

*Այդ ամրոցը գտնվում էր Նիմփիոսի ափին և պաշարվել էր հռոմեական զորավար Հովհանի[1] կողմից, որ նշանակում է, թե այն պատկանել է պարսիկներին։ Ըստ այդ տվյալների հին Ակբան կարելի է նույնացնել այժմյան Անուշիրվան-կալայի հետ։ Հովհան Եփեսացու ասելով պարսիկները վաղուց էին ուզում Ակբա լեռան վրա ամրոց կառուցել, բայց այդ նրանց չէր հաջողվում, որովհետև լեռը գտնվում էր հռոմների հողից ընդամենը մի քանի մղոն հեռավորության վրա, և հռոմները նրանց խանգարում էին։ Վերջապես, օգտվելով հարմար առիթից, նրանք իրագործեցին իրենց ծրագիրը, բայց շուտով հռոմները գրավեցին և կործանեցին ամրոցը։ Այս պատմությունը վերաբերում է Խոսրով Անուշիրվանի ժամանակին և իր անվամբ ամրոցն անշուշտ պարտական է նրա հիմնադրին՝ Անուշիրվան Թագավորին։*

*Ակբայից բացի, սահմանագծի վրա պարսիկներն ունեին երկու ուրիշ ամրություններ ևս՝ Աֆում և Քղիմար[2]։ Այդ երեք ամրությունների դեմ էլ գլխավորապես գործում էին հռոմների զորքերը այն երկարատև պատերազմների ժամանակ, որ սկսվեցին Զ դարի վերջին և ավարտվեցին, ի միջի այլոց, նրանով, որ 591 Թվականին, Խոսրովի գահ բարձրանալու ժամանակ Արզանենեն (Աղձնիքը) անցավ Բյուզանդիային։ Աֆումի դիրքը ստույգ հայտնի է։ Իլիջա լեռան ստորոտին, որտեղից սկիզբ է առնում Բաթման գետը կազմող գետակներից մեկը, կա մի ավան, որ մինչև այժմ էլ կոչվում է Փում։*

---

ἀποτόμου, ὅθεν καὶ ἄποπτος ἡ πᾶσα καθειστήκει πόλις.

[1] Simoc. I 12, ἧκε πλήσιον τοῦ Νυμφίου, καὶ τὸ 'Ακβᾶς ἐνεχείρει αἱρήσειν.

[2] Τὸ 'Α φ ο ύ μ ω ν καλούμενον φρούριον, Sim. III 15 և II 9. 'Αφουμῶν φρούριον, Menand. pp. 410 և 415. Κάστρον 'Αφουμῶν, Georg. Cypr. p. 47. Χλομαρῶν, Sim. II 7 և 8. Χλωμάρων, Menand. p. 329. Fum և Klimar, Հովհ. Եփեսացի, *VI, էջ 34,* Klimar=*հայ Քղիմար-ին։* Աշխարհացոյցի *մեջ Քղիմար կոչվում է նաև Կուտեմռան=«Աղձնիք հայոց, յորում քաղաք Կուտեմռան, որ է Քղմար եւ Քիշ եւ Ճուկառրա», էջ 37։ Արդյո՞ք Կուտեմռան* Χλωμαρῶν-*ի աղճատված ձևը չէ՝ Կուշեմռան։ Մարկվարտը Աֆումը և Քղիմարը համարում է ասորեստանյան արձանագրություններում հիշված* U-bu-mu-*ն և* Ku-li-me-ri-*ն,* *Eranšahr*, p. 158։ *Քիշը, որի մասին սույն գիտնականը. ասում է, թե ոչ մի տեղ չի հիշատակված, եպիսկոպոսանիստ* Qīš *քաղաքն է, որի ներկայացուցիչը մասնակցել է 544 թ. եկեղեցական ժողովին։* Chabot, *Syn. Orien.* p. 322—323։ *Շաբոն այդ քաղաքը փնտրում է Խորասանում։* ib. p. *680, մինչդեռ այն գտնվում էր Աղձնիքում (Արզանենե) և, հավանորեն, նույնն է, ինչ որ Ջոխ քաղաքի մոտ գտնվող այժմյան Քուշը։*

Ափումից ոչ հեռու ընկած էր Քղիմարը։ 586 թվականին հռոմեական զորավար Փիլիպիկոսը, որ պաշարել էր Քղիմարը, կեղծ տագնապի հետևանքով թողեց պաշարումը ու փախավ Ափում և այնտեղից էլ, անցնելով Նիմփիոս գետը, եկավ Ամիդ[1]։ Այստեղից հետևում է, որ պաշարված Քղիմար բերդը գտնվում էր Փումից արևելք։ Իբրև սահմանապահ կետ, նա ընկնում է Ակրա-Ափում պաշտպանական գծի վրա և հավանորեն գտնվում էր այժմյան Ներչիքի և Տալվորիկի շրջանում։ Այդ նույնը երևում է նաև Աշխարհացույցից, ըստ որի նույն Քաղիրթ գետը Արզն-Աղձնիքի շրջանը բաժանում է Մայաֆարկինից և Քղիմար-Քղոմարից, իսկ այդ հնարավոր է այն դեպքում, եթե Քղիմարը գտնվեր գետի մյուս ափին, Մայաֆարկինից հյուսիս, որովհետև հիշյալ գետը շրջանցում էր քաղաքը հյուսիսարևելյան կողմից, և նրա արևելյան ափին՝ Մայաֆարկինի դիմաց գտնվում էր Արզնը[2]։

Քղիմարը և Ափումը գտնվում էին պարսկական մասում։ Մորիկ կայսրը 578 թվականին Ափումը խլեց պարսիկներից և այնտեղ պահակ կարգեց։ Բայց մինչ այդ այն պատկանել է պարսիկներին։

Պարսկական ամրությունների դիմաց՝ գետի մյուս ափին գտնվում էին հռոմների ոչ պակաս ամուր պահականոցները՝ Մարտիրոսուպոլսից ու Աթթախից բացի, նաև Փիսոնը իր անմատչելի կապաններով։ «Մարտիրոսուպոլսից դեպի արևմուտք,—գրում է Պրոկոպիոսը,—այդ նույն Սոփանենե կոչվող Հայաստանում Մարտիրոսուպոլսից մեկ օրվա ճանապարհից մի քիչ պակաս հեռավորության վրա կա Փեյսոն անունով բնակավայր։ Դրանից այն կողմ՝ մոտավորապես ութ մղոն հեռավորության վրա, զառիթափ և բոլորովին

---

[1] Simoc, II, 9։

[2] Հմմտ. Hoffman Գելցերի մոտ, Georg. Cypr. p. 167։ Հնարավոր է, որ Νικηφόριος-Νυμφιος, Kalaθ-šiθiθma սկզբնապես նշանակել են միևնույն գետի տարբեր հոսանքները կամ վտակները։ Քանի որ առաջին անունը համարվել է Մայֆար-կատի հետ, թերևս կարելի է կապ տեսնել նաև kalaθ-ի և καρκαθιοκερτα-ի միջև karraθ-ի միջոցով։ Šiθiθma-ն հանդիպում է նաև Իբն Սերապիոնի մոտ, Jour. Roy. As. Soc., 1895, p. 18, [illegible] ձևով, փոխանակ [illegible], որը Մարկվարտը համարում է ոչ թե արաբական, այլ արամեական ծագում ունեցող և իրոք որ նշանակում է «ջրամբարը», կազմված šadi-ից և dema-ից, Eranšahr, p. 161։ Այդ անվանումը Մարկվարտի կարծիքով կարելի է բացատրել նրանով, որ այդ գետի ափերը բազմիցս հանդիսացել են արյունահեղ պատերազմների թատերաբեմ։

*անանցանելի լեռները միանալով՝ կազմում են երկու կիրճ, որոնք իրարից հեռու չեն գտնվում և կոչվում են Կղեսուրք: Եթե մարդ ուզենա Պարսկահայքից գնալ Սոփանենե, լինի դա պարսկական սահմաններից, թե Կիթառիճ բերդի կողմից, նա չի կարող այնտեղ հասնել այլ կերպ, քան հիշյալ երկու կիրճերով: Տեղական բնակիչները դրանցից մեկը կոչում են Իլլիրիս, իսկ մյուսը՝ Սափխաս»: Նույն պատմագրի ասելով՝ Հուստինիանոս կայսրը ամրացրեց Փեյսոնն ու Կղեսուրքը նոր կառույցներով և պահակ կարգեց, որպեսզի խափա փակի ճանապարհը թշնամու առջև*[1]*:*

*Մայաֆարկինից ոչ հեռու, Գինի և Գաղրուի միջև, մինչև այժմ էլ իրոք գտնվում է Փիսոն անունով մի փոքրիկ գյուղ: Նրա հյուսիսային կողմում մի ամբողջ մղոն տարածության վրա գտնվում են հին բերդի վեհապանծ ավերակները, որոնց 1861 թվականին այցելության է գնացել Դիարբեքիրի անգլիական հյուպատոս Թեյլորը*[2]*:*

*Փիսոնի շրջակայքում էր գտնվում Կղեսուրքը: Վերևում հիշատակված Փիլիպիկոսը Ափումից Ամիդ նահանջելիս կառուցապատեց Իզալա լեռներում գտնվող Ցատտախ և Ալալեյս ամրոցները և այնտեղ պահակ կարգեց: Այդ ամրությունները, անկասկած, համապատասխանում են հռչակավոր Կղեսուրքին: Դրանցից մեկի անունը հայերենում հնչում է Ոլոր, ասորերենում՝* Halōras, *այն հանդիպում է նաև արաբ. հեղինակների մոտ՝* Halūris *ձևով*[3]*:*

---

[1] *Aed.* III 3, p. 250, χωρίον ἐστὶ Φ ε ι σ ῶ ν ὄνομα, *ինչպես նաև Pers.* II p. 262, τῷ Φ ε ι σ ῶ ν καλουμένῳ φρουρίῳ ὅπερ ἄγχιστά πῃ τῶν Μαρτυροπόλεως ὁρίων ἐστί. καλοῦσι δὲ αὐτῶν οἱ ἐπιχώριοι Ἰ λ λ ύ ρ ι σ ι ν μὲν τὸν ἕτερον, τὸν δὲ ἄλλον Σ α φ χ ά ς.

[2] J. Taylor, *Trovels in Kurdistan* p. 39, a mass of ruins that cowered the slopes of the hill for a space of one mile, fragments of thick walls and neatly-cut blocks of stone were strewed over the road and impeded our progress, the remains of the old city of Fees. A small village near them is also called Fees, Affis and Afisios'. *Փշփաշ վայրը Մարտիրոսուպոլսի մոտ հիշատակում է Ասողիկը (ի տեղին, որ Փշփաշն կոչի, էջ 193), կարող է պատահել, որ վրիպակ է՝ Փիշ փաշ, Փիշի փոխարեն:*

[3] Simoc. II 9. τὸ μὲν προσαγορεύεται Θαθαχῶν, τὸ δ' ἕτερον Αλαλεισός. Վարդան, Մեկնութ. Ծննդ. *(ըստ Ինճիճյանի* Հնախօս Հայաստան. *էջ 44) «Տիգրիս, որ Դկլաթ կոչի, ելանէ ի Չորրորդ Հայոց ի Հաշտէն գաւառէ եւ ի գեղջէ Ոլորայ». Նաև Գրիգոր Խլաթեցի, Տաշյանի* Ցուցակը, *ձեռագիր № 167: Հմմտ.* Աշխարհացույց. *էջ 30. «զՀաշտէնս յորմէ բղխեն աղբիւրք Տիգրիս գետոյ»: Ասոր.* Haloras, wo der Tigris entspringt, Nöldeke, *Alexanderroman,* p. 28, Denkschrift. d. Wiener

*Հյուսիսից Փիսոնի վրա իջնում են Հայկական Տավրոս լեռնաշղթայի ճյուղավորությունները, որոնք մեծ աղեղի ձևով ձգվում էին Մուրադ գետի երկարությամբ՝ Եփրատից մինչև Վանա լճի ափերը և ավելի հեռու։ Ջեֆթլա և Դարկոշ բարձր լեռնաշղթայով արտահայտված աղեղի գագաթն իջնում է Լիջա՝ Տիգրիսի ակունքների շրջանը։ Նրանց ճյուղավորությունները իջնում են մինչև նույն այդ Փիսոնը։ Ըստ Պրոկոպիոսի և հայ հեղինակ Վարդանի հենց այս շրջանում պետք է փնտրել լեռնանցքները։ Կղեսուրքը այն միակ լեռնանցքն էր, որտեղով կարելի էր Սոփենե մտնել հյուսիսից։ Ներկայումս Դիարբեքիրի շրջանը Մուրադ գետի հովտին միացնող ճանապարհը անցնում է Փիսոն (կամ Գէնի)-Լիջա-Շավերդյան գծով։ Շավերդյանից ներքև, Զիբանա-Տիգրիսի ակունքների մոտ, գտնվում է մի հետաքրքրական լեռնանցք, որը երկու մղոն երկարությամբ և 80 ոտնաչափ բարձրությամբ ստալակտիտե քարայրեր ունեցող մի բնական թունել է, որի միջով հորդում է հիշյալ գետը։ Այդ տեղը այժմ կոչվում է Բաքիրեյն։*

*Շավերդյանից ճանապարհը զառիվեր բարձրանում է լեռը և զգալի բարձրության վրա անցնում է Տիգրիսի և Եփրատի ջրբաժան գիծը կազմող լերկ ու ժայռոտ լեռնանցքով, որտեղից ճանապարհը մտնում է Ջուլ-Կարնեյն կիրճը և սարալանջերով իջնում դեպի Մուրադ գետը, հենց գետի ափին գտնվող Թիմուր-աղա գյուղի մոտ։ Ինչպես Բաքիրեյնի մոտ, նույնպես և Ջուլ-Կարնեյնի մուտքի մոտ մինչև օրս պահպանվել են լեռնանցքները պաշտպանող հին ամրությունների և պահակակետերի մնացորդները։ Հենց այս կիրճերն էլ պետք է ընդունել որպես պատմական Կղեսուրք*[1]։

Ak. 1890, Bd. 38։ *Ըստ Ալ-Կիսրավիի* خلدوس *Տիգրիսի ակունքներում է,* Tomaschek, *Sasun*, p. 23։ *Ըստ Յակուտի,* Halūras-*ը Տիգրիսի ակունքների մոտ է, որտեղ նահատակվեց հայազգի Ալին,* Le Strange, *Eastern Calaphate*, p. 110։ *Արդյո՞ք հայերեն ոլորք բառը* h-olor *(հոլորել) բառից չէ, Ոլորիսը՝ ոլորիքից։*

[1] *Թեյլորի նկարագրությունը Travels*, p. 42 *և* Wilson, *Handbook for Travellers in Asia Minor*, 1895, p. 247—248։ Խորենացին, *Բ, ը. նույնպես ծանոթ է Կղեսուրքին. «զլեառն Տաւրոս, որ եւ Սիմ եւ զԿղեսուրն ամենայն»,* Ասողիկը *Գ, 36, վկայում է, որ երկրաշարժից «շարժեցաւ երկիր, բայց սաստկագոյն աշխարհն Չորրորդ Հայոց, Հաշտեանք, Խորձեան, Սոփք, Բալու, եւ Պաղնատուն եւ բոլորովին փլան շինուածք ամենայն... եւ բերդն Բալու հանդերձ շինուածովն եւ քարն եւս փլուզանիւր, խարխարեալ ծապադշտր բերդին Դկլաթայ»։ Ըստ երևույթին* Fur-*ը այստեղ որոշակի վայրի նշանակություն ունի և կարող է նույնացվել Կղեսուրքի հետ։*

Կղեսուրքի և հանդիպակաց պարսկական Ափում բերդի տեղերը պարզելով՝ ճշգրտվում է երկու պետությունների սահմանը Նիմփիոսի վերին հոսանքում և առհասարակ Տիգրիսի ավազանում։ Այն անցնում էր Նիմփիոսի առավել արևմուտք ընկած վտակների հոսանքով, այսինքն՝ Իլիջա-Խուլփ-Բաթման։

Եփրատ-Արածանու հովտում և այնուհետև Թեոդոսուպոլսի ուղղությամբ Հաշտյանք և Խորձյան գավառներում, Կիթառիճ-Արտալես ամրոցների գծով բյուզանդական հողը հարում էր պարսկականին։ «Հաշտյանքում գտնվում էր Կիթառիճ գյուղը, որտեղ բլրաձև մի բարձունքի վրա Հուստինիանոսը կառուցեց բոլորովին անմատչելի մի բերդ, որ մինչ այդ այնտեղ չկար, որը չէր կարելի գրավել ոչ մի միջոցով։ Այնտեղ էլ նա առատ ջուր բերեց և բնակիչներին ապահովեց անհրաժեշտ ամեն բանով։ Կիթառիճից դեպի Թեոդոսուպոլսի և մյուս Հայաստանի կողմն ընկած գավառը կոչվում է Խորձյան։ Նրա երկարությունը ոտքով երեք օրվա ճանապարհ է, ընդ որում այն ոչնչով բաժանված չէ պարսկական հողից, ո՛չ ճահճուտներով, ո՛չ գետի հունով, ո՛չ էլ լեռնային կապաններով, և նրանց սահմանները խառն են։ Դրա հետևանքով էլ տեղական բնակիչները, լինեն նրանք հռոմեացիներին ենթակա, թե պարսիկներին, չեն վախենում միմյանցից և չեն կասկածում միմյանց որևէ չար դիտավորության մեջ։ Նրանք միմյանց հետ ամուսնանում են, ապրանքներ փոխանակում և միասին էլ մշակում են դաշտերը։ Եթե պատահում է, որ մի կողմի տիրակալը(ἄρχοντες) իր թագավորի հրամանով պատերազմի է ելնում մյուս կողմի դեմ, նրանք մերձակա բնակիչներին միշտ էլ անպաշտպան են գտնում։ Եվ իրոք, երկու կողմերում էլ, մեկը մյուսին շատ մոտ տարածության վրա, փռված են խիտ բնակչություն ունեցող գյուղեր, իսկ հին ժամանակներից սկսած ոչ մի կողմում ամրություն չի եղել։ Այդ պատճառով էլ պարսից թագավորը հնարավորություն ուներ ազատ և համարձակ ասպատակելու հռոմեական հպատակների երկիրը, մինչև որ Հուստինիանոս կայսրը վերջապես ձեռք առավ նախազգուշական միջոցներ, այսինքն՝ այդ երկրի կենտրոնում գտնվող Արտալես անունով գյուղը պատեց ամուր պարիսպներով և դարձրեց առաջնակարգ բերդ՝ մըշտական պահակազորքով»[1]։

---

[1] *Aed.* III 3, p. 20: ἐν δὲ τῷ Κιθαρίζων χωρίῳ, ὅπερ ἐπι 'Ασθιανήνης τῆς καλουμένης ἐστι.... ἐκ δὲ Κιθαρίζων ἔς τε Θεοδοσιόυπολιν καὶ 'Αρμενίαν

*Սրանից հետևում է, որ Կիթառիճն ու Արտալեսը այն կետերն են, որոնց վրայով անցնում էր երկու պետությունները միմյանցից բաժանող սահմանագիծը։ Բերդերից մեկը նախատեսված էր Հաշտյանքի, իսկ մյուսը՝ Խորձյանի պաշտպանության համար։ Այդ երկու գավառներն էլ գտնվում էին կողք-կողքի, պարսից տերիտորիային սահմանակից, ընդ որում մեկը հարում էր մյուսին հյուսիսից, Թեոդոսուպոլսի կողմից։ Ըստ Պրոկոպիոսի Կիթառիճից Թեոդոսուպոլիս չորս օրվա ճանապարհ է, իսկ Խորձյանը գտնվում էր այդ նույն կետից դեպի Թեոդոսուպոլիս երեք օրվա ճանապարհի վրա, ուրեմն՝ նա մինչև քաղաք չէր հասնում, այլ գտնվում էր նրանից մեկ օրվա ճանապարհի վրա։ Էրզրումից՝ հին Թեոդոսուպոլսից մոտավորապես նույն հեռավորության վրա (մոտ 40 կմ) են գտնվում Խալխալ և Խաչ լեռները, որոնք պարսպի նման գրկում են Քըղի կամ Լիճիկ գետի ակունքները. այդ բնական սահմաններով էլ հյուսիսում փակվում էր Խորձյանի սահմանագիծը։ Նույ իրոք, վկայություններ կան այն մասին, որ այդ լեռների ստորոտում տեղավորված Մորմերան քաղաքը համարվում էր Խորձյանի սահմանագլուխը*[1]*։ Գավառը, այդպիսով, գտնվում էր Քըղի գետի հովտում։ Ըստ* Աշխարհացոյցի, *Խորձայնը այն վայրն է, որի միջով Կողոբերդի մոտով ցած է սլանում Գայլ գետը։ Գայլը այն գետի հին անունն է, որը հին Կող կամ Կողո-բերդ ամրոցի անունով այժմ կոչվում է Քըղի։*

*Ըստ Պրոկոպիոսի նկարագրության Խորձյանը հարավից միանում էր Հաշտյանքին, իսկ ըստ* Աշխարհացոյցի *այն գրավում էր Չորրորդ Հայքի հյուսիսարևելյան մասը, այսինքն՝ այն երկրամասի, որի մեջ էր մտնում նաև հարևան Հաշտյանքը։ Խորձյանից արևմուտք՝ Քըղի գետի վտակներից մեկի վրա է գտնվում Պաղնատուն կամ Պաղանակամ-տուն, Պաղան գավառը, Պաղին քաղաքով, որ մինչև այժմ էլ պահպանվել է Պերի քաղաքի մատերքում որպես մի*

---

τὴν ἑτέραν ἰόντι Κορζάνη μέν ἡ χώρα καλεῖται... χωρίον ἦν ἐπί μέσης τῆς χώρας Ἀρταλέσων ὄνομα. *նաև* *Pers.* II 24 p. 261. Κιθαρίζων τὸ φρούριον *և* χωρία τῆς Χορζιανήνης.

[1] Վատիկերացի, *էջ 93, «Եղին ընդ Խորձայն ի վերս»... էջ 94 «Եւ եկին մինչև ի գլուխ դաշտին ի գեօղն, որ կոչի Մորրանն»։ Ինճիճյանի մոտ որպես տարբերակ ունենք Մորմրանս ձերս»,* Հնախոս., *էջ 43։ Մենք այն համարում ենք ներկա Մկոմերան քաղաքը, որ հավանորեն սխալ ստուգաբանության հետևանքով քարտեզներում նշվում է* Molla Omer *կամ* Mulla Omar *ձևով, ինչպես Լինչի քարտեզում։*

փոքրիկ գյուղ։ Պաղնատուն գավառից հարավ է գտնվում Բալահովիտի, Մուրադ-Արածանիի վրա գտնվող այժմյան Բալուի շրջակայքը։ Ինչ վերաբերում է Հաշտյանքին, Աշխարհացույցը սահմանափակվում է հիշատակելով միայն, որ այնտեղ են գտնվում Տիգրիսի աղբյուրները[1]։ Դրանով իսկ Հաշտյանքի կենտրոնը տեղափոխվում է Արածանիի հովիտը։ Իր այդ դիրքով Հաշտյանքը, ըստ Պրոկոպիոսի, ընկնում է Ծոփքյանից հարավ և տարածվելով Մուրադ գետի երկարությամբ՝ միաժամանակ հարում է նաև Ծոփքյանին այնպես, ինչպես արևմուտքից նրան հարող Բալահովիտը՝ Պաղնատանը։ Կիթառիճ և Արտալեսս ամրությունների դիրքը ճշտորոշելու համար կարևոր է իմանալ, թե որքան էր այն գետափնյա շերտի լայնությունը, որ գրավում էր Հաշտյանքը, այլ կերպ ասած՝ որտե՞ղ էր այն սահմանազատվում Ծոփքյանից։

Նկատի առնելով այն հանգամանքը, որ սովորաբար գավառները միմյանցից բաժանվում էին բնական սահմաններով՝ լեռներով և գետերի ավազաններով, բնական կլիներ ենթադրել, որ Հաշտյանքը գրավում էր Գոյնուկ գետի հովիտը։ Մի քանի նկատառումներ, սակայն, ստիպում են ընդունել, որ հիշյալ գետի ամբողջ հոսանքը չէր, որ պատկանում էր Հաշտյանքին, որ նրա ակունքները գտնվում էին Ծոփքյանում կամ պարսկական մասի հարևան գավառներում[2]։ Այդ կողմից Հաշտյանքին հարում էր Արշամունիքը։ Վահան Մամիկոնյանը օգնություն ստանալու համար կամենում էր գնալ Հաշտյանք, ուստի ուղևորվում է Արշամունիք և հասնելով այնտեղ, կանգ է առնում Երեզ քաղաքում[3]։ Որ Երեզը գտնվում էր Հաշտյանքի ճիշտ

[1] Աշխարհացույց, էջ 30 «ղԾոփայն յելից հիւսիսոյ, ընդ որ իջանէ միւս Գայլ գետ առ Կողոբերդովն. զՀաշտէնս, յորմէ բղխեն աղբիւրք Տիգրիս գետոյ. իսկ ի մտից Ծոփայնոյ է Պաղնատուն գաւառ, հանդէպ հոմանուն բերդով. և հանդէպ նորա ի հարաւ՝ Բալահովիտ գաւառ։ Կողոյ բերդ, Կողոյ ամրոց. այստեղից՝ Կեօղ, Կեղ, սեռական՝ Քղի, այժմ՝ Քղի-կասաբա, որ համապատասխանում է հին Կողոբերդին։ Քղի է կոչվում նաև ամբողջ շրջանը՝ հին Ծոփքյանը։

[2] Hübschmann, *Ortsname*, p. 293, Հաշտյանքի տեղը որոշում է Գոյնուկ գետի վրա և կարծում է, որ Կիթառիճ բերդը այժմյան Կոնտրիչ ավանն է, որ տարածարկում է կարդալ Կոտարիչ։ Այդ դեպքում միայն Հաշտյանքը կրոներ սահմանային ամբողջ գոտին և Ծոփքյանը կդառնար ներքին գավառ, մինչդեռ Պրոկոպիոսը թշնամու համար սահմանային բաց գոտին վերագրում է Ծոփքյանին, որի պաշտպանության համար կառուցվել էր Արտալեսս ամրոցը։ Բացի այդ, ըստ Աշխարհացույցի նկարագրության Հաշտյանքը հարավից հարում էր Ծոփքյանին։

[3] Ղազար Փարպեցի, էջ 149, Վահան գնայր ի սահմանս Հաշտենից, ըստ յառաջագրեալ խորհրդոյն իւրոյ, (էջ 148, կամեցեալ անցանել ի կողմն սահմանակցու-

սահմանագլխին, այդ երևում է նաև նրանից, որ պատմիչները այդ գյուղը մերթ վերագրում են Արշամունիքին, մերթ Հաշտյանքին։ Վասիլ կայսրը, 1001 թվականին անցնելով Անձիտով և Բալուով, բարձրանում է Կոհեր լեռը և այնտեղից գալիս Արշամունիք գավառի Երիզ քաղաքը։ Կոհերը, անկասկած, Գոյնուկ գետի աջ ափին ընկած այժմյան Կարեր լեռներն են։ Նրանց դիմաց՝ մյուս ափին, գտնվում է Ողնուտ գյուղը՝ պատմական Եղանց ամրոցը, որ կոչվում էր նաև Եղնուտ կամ Ողնուտ։ 1056 թվականին Իվանե իշխանը՝ Հաշտյանքի Երիզ քաղաքի տերը, օգտվելով հարմար առիթից, հարձակվում է Եղանց ամրոցի վրա և խաբեությամբ գրավում այն, բայց շուտով պատժվում է իր ինքնագլուխ քայլի համար և նետվում Եղնուտի բանտը[1]։ Երկու դեպքում էլ խոսքը միևնույն ամրոցի մասին է։ Երկու անունների նույնության մասին է վկայում նաև Հովհան Մամիկոնյանը[2]։ Լաստիվերտցու խոսքերից կարելի է կռահել, որ Իվանեի գրաված ամրոցը շատ հեռու չէր Երիզից։

---

թեանն Հաշտենից, յաղագս գտանելոյ ի նոցանէ օգնութիւն) եւ հասեալ բնակէր ի գաւառին Արշամունեաց, ի գիւղն, որ կոչի Երէզ։

[1] Ասողիկ, էջ 276. Եւ անցեալ թագաւորն ընդ Բալու, ելանէ ի լեառն Կոհերայ եւ անդուստ գայ հասանէ ի գաւառն Արշամունեաց ի քաղաքն Երիզայ։ Լաստիվերտցի, էջ 82. Որդի Լիպարիտին Իւանէ անուն, որում տուեալ էին ի պարգեւ ի տեղիս բնակութեան զմեծ աւանն Երիզայ ի գաւառին Հաշտենից... գնաց եւ խաբանօք էառ զամուրն Եղանց բերդ կոչեցեալ. էջ 83. զատաւորն...զինքն եդ ի յԵղնուտն ի բանտի։

[2] Հովհան Մամիկոնյան, էջ 25. Եւ տանել յԵղանց բերդն (տարընթերցվածք՝ յՈղնութերդն), զոր ընա Եղնուտն (տարընթերցվածք՝ Ողնուտն) կոչեն։ Զենոբ Գլակի մոտ 26-րդ էջում հիշատակված Ողկան բերդը ավելի շուտ մեզ հետաքրքրող վայրն է, քան Տարոնի հռչակավոր Ողականը՝ Մամիկոնյանների ամրոցը։ Գլակի պատմությունից երևում է, որ Ողկանը գտնվում էր Կուառսից (այժմ Գովառս՝ Բողլանի մոտ) ոչ հեռու, աղբյուրի այն կողմում, որի տակ պետք է հասկանալ ներկայիս Կուառսից հյուսիս գտնվող այսպես կոչված «տասն եղբայրների աղբյուրը»։ Մամիկոնյանների ամրոցը գտնվում էր Եփրատի վրա «Ողական, որ կայ ի վերայ գետոյն Եփրատայ», Փավստոս, Ե, գ, ուստի չի կարելի շփոթել Ողականը Ողնուտի հետ, մանավանդ որ Հովհ. Մամիկոնյանը տարբերում է Եղնուտը Ողկանից։ Միայն թե նշված դեպքում, ինչպես մեզ թվում է, Ողկանը գործ է ածվում Ողնուտի իմաստով։ Tomaschek-ը *Sasun*, p. 21, Ողականը թարգմանում է *rundlich*՝ շփոթելով հայերեն աւղը=օղ, ող-ի հետ, ինչպես ճիշտ նկատել է Հյուբշմանը, *Ortsname*, p. 460։ Բայց Հյուբշմանը ևս նման մի սխալ է գործում, երբ Եղնուտ, Եղանց բերդը թարգմանում է *Burg der Hirschkühe* և *Hirschkuhreich*, ib. p. 423։ Սկզբնական ձևով Ողնուտ, Ողին, նաև Ողական ծագում են հայերեն ողն-ից (ողնաշար, մեջք), որ գործ է ածվում նաև լեռների համար «ամենայն ողունք, ձորք եւ ծործորք եւ սարք» Գր. Նյուսացի, ըստ Հայկազյան բառարանի Ողնուտ նշանակում է պարզապես բլրա-

Ղազար Փարպեցին Երիզի մոտ հիշատակում է Ողին, հին տառադարձությամբ՝ Օլին գյուղը։ Պարսից ճամբարի վրա կատարած գիշերային հարձակումից հետո Վահան Մամիկոնյանը գնում է Ողին գյուղը՝ այնտեղ գիշերելու։ Ակներև է, որ այդ գյուղը շատ մոտ էր Երիզին, ուստի Վահանը հասցնում է գրոհել թշնամու վրա, կոտորած սարքել և ապա «երթեալ հանգչէր զմնացեալ մասն ի գիշերոյն»,— ինչպես ասում է պատմիչը[1]։ Ողինը թե՛ Երիզից ունեցած հեռավորությամբ, և թե՛ իր անունով միանգամայն նույնանում է Ողնուտի՝ Ողնու-բերդի հետ։

Ողնուտից 6—7 վերստ ներքև կա մի ավան, որ Կիպերտի նոր քարտեզի վրա ընթերցվում է Aziran, Լինչի մոտ՝ Azizan, այս երկու ընթերցումներն էլ, ամենայն հավանականությամբ, արդյունք են թուրքական տառերի սխալ կետադրության. ճիշտը կլինի Arizan[2]։ Թվում է, թե մենք գտել ենք պատմական Երիզի հետքը, առկա են բոլոր տվյալները՝ Արիզ-անը գտնվում է Կոհեր-Կարեր լեռների դիմաց (ըստ Ասողիկի), այն մոտ է Ողին-Ողնուտին ու ընկած է Հաշտյանքի և Արշամունքի սահմանի վրա։ Ըստ Փարպեցու Ողինը գտնվում էր Երիզից հյուսիս, որովհետև Երիզի մոտ տեղի ունեցած գիշերային ճակատամարտից հետո Վահան Մամիկոնյանը գնում է Ողին, այնտեղից էլ Վաղարշապատ և ապա՝ Դվին. և դա համապատասխանում է Արիզանի դիրքին, որն իրոք ընկած է Ողնուտից հարավ։

Երիզը նույնացնելով այժմյան Արիզանի հետ, կանխորոշվում է նաև այն հարցը, թե որտե՞ղ պետք է տեղադրել Գոյնուկ գետի վերին հոսանքը։ Բանն այն է, որ Վահան Մամիկոնյանը Երեզ է գալիս Կարինի մասերքից (Արծաթի գյուղից, որն այժմ էլ գոյություն ունի

վոր, Եղանց բերդ, փոխ. Ողանց բերդ, նշանակում է բերդ բլուրների վրա։ Ողինը Ղազար Փարպեցու մոտ Ողնի սեռական հոլովն է, ուղիղ Ողին, ինչպես ուղիղ Երիզայ։ Ող անդամանացված արմատից կազմվում է Ող-ական (ինչպես ձեռ-ն-ից ձեռական). բերդ Ողին=բերդ Ողական պետք է համեմատել Երէզ, Երիզայ=Երեզ-ական=այժմյան Երզնկա, որ ծագում է Երզնկան-ից, համեմ. այժմյան Երևանյան, փոխ. Երևանի նահանգ։ Ողինի և Ողականի նույնության օգտին է խոսում նաև այն, որ դասական հեղինակները Տարոնի Ողականը կոչում են Ολάνη, *Strabon*, p. 743, Volan(d)um validissimum castellum, Tacit, XIII, 39։

[1] Փարպեցի, էջ 150. Վահան Մամիկոնեան դարձեալ ի կոտորածէ թշնամեացն երթեալ հանգչէր զմնացեալ մասն ի գիշերոյն յՈղին գեղջն, զոր Տուեայ անուանեն, ի գոմս անկեալն... եւ ի ծագել լուսոյն՝ երթեալ բնակէր ի գիւղն Տուէոյ։

[2] Այսինքն տաճկերեն ازیزن և ازیرن փոխ. اریزن։

Էրզրումի հյուսիսում), իսկ Էրզրումից Արիզան տանող ճանապարհն անցնում է Գոյնուկ գետի ափով՝ սկսած նրա ակունքներից մինչև Արիզան-Ողնուտ։ Հավանորեն այդպես էր նաև հին ժամանակ, համենայն դեպս ճանապարհը չէր կարող անցնել ավելի արևելք, որտեղ վեր են բարձրանում Բինգյոլի բարձր սարերը։

Մինչև Երեզ հասնելը Վահանը պետք է անցներ Գոյնուկ գետի վերին հովտով։ Եվ եթե նա Երեզ հասնելով միայն հայտնվում է Հաշտյանք գավառի սահմանի վրա, ապա պարզ է, որ հիշյալ գետի վերին հոսանքները չէին մտնում Հաշտյանքի մեջ։ Նրանք չէին կարող պատկանել նաև Հարևան գավառին, այլապես կստացվեր, որ Վահանը Երեզ է եկել Հաշտյանքի կամ հռոմների տերիտորիայի վրայով, ինչ որ հակասում է պատմիչի վկայությանը, ըստ որի Մամիկոնյան իշխանը չի անցել սահմանի այն կողմը։ Նա ուզում էր միայն «անցանել ի կողմն սահմանակցութեանն Հաշտենից», այսինքն՝ Արշամունիք, և իրոք, նա «գնայր ի սահմանս Հաշտենից և հասեալ բնակէր ի գաւառին Արշամունեաց, ի գիւղն որ կոչի Երեզ»։

Ըստ Աշխարհացույցի Արշամունիք գավառը ընկած էր Տարոնից հյուսիս, Սրմանց՝ այժմյան Բինգյոլ լեռան մոտ։ Այդ տվյալներով Արշամունիքին կարելի է հատկացնել Բինգյոլ գետակի ջրային տարածությունը և Գոյնուկ գետի վերին հոսանքները։

Հարավից նրան հարևան Տարոնի և Հաշտյանքի միջև ընկած մի փոքրիկ շերտ կազմում էր Պալունյաց գավառը, որի գլխավոր քաղաքն էր Կուառքը կամ Կուառսը, այժմյան Գուվառսը, Բողլանի մոտ, որով հոսում է Պալունիքի տեղը Մենասկուտ գետակի վրա։ Աշխարհացույցի հեղինակը չգիտե Պալունյաց գավառը և նրա գրաված տարածությունը վերագրում է Տարոնին։ Ի միջի այլոց Պալունիքի և Տարոնի տեղադրությանը քաջատեղյակ Տարոնի նախարարական տոհմի պատմիչը Պորպես քաղաքը տեղադրում է «ի գլուխ Տարօնոյ», այնինչ Պորպեսը՝ այժմյան Բորբասը, գտնվում էր Մենասկուտ գետի վրա Կուառսից հարավ և, նշանակում է, մտնում էր Պալունիքի մեջ։ Մի այլ տեղացի հեղինակ՝ Զենոբ Գլակը, Կուառսը համարում է Պալունիքի մայրաքաղաք և այն տեղադրում է Մամիկոնյան իշխանների կալվածքում, այսինքն՝ Տարոնում[1]։ Ըստ երևույթին, Պալունյաց

---

[1] Զենոբ Գլակ, էջ 25, «զգացուցին սրբոյն Գրիգորի, եթէ ի գաւառն Տարօնոյ երկուս բագինս մնացեալ են... իսկ նորա դէմ եդեալ գայր, զի և զայնս քանդեսցէ. և եկեալ յերկիրն Պալունեաց յաւանն մեծ Գիսանէ ի քաղաքագեւղն Կուառս»,

գավառը հետագայում անցել է Մամիկոնյաններին և այդ պատճառով էլ, իբրև ինքնուրույն գավառ, տեղ չի գտել Աշխարհացույցի մեջ։ Արևմուտքից Պալունիքը սահմանակից էր Հաշտյանքին, որից բաժանվում էր բնական սահմանագծով՝ Նավչանի (4636 մտն. բարձրություն) կիրճով։ Արշամունիքն ու Պալունիքը ընկած էին պարսկական մասում կամ Արևելյան Հայաստանում, քանի որ դրանք հիշատակված են պարսիկների դեմ ուղղված Ե դարի շարժումների կապակցությամբ։ Այդ երկու գավառներն էլ կազմում էին սահմանամերձ շերտը։

Այսպիսով, Արևմտյան Հայաստանը և Արևելյան Հայաստանը միմյանցից բաժանող սահմանագիծը անցնում էր Փումից Ջաֆթլա լեռների վրայով, Նավչանի լեռնանցքով դեպի Արիղան-Ողնուտ և, կտրելով Գոյնուկ գետը, նրա աջ ափով բարձրանում էր դեպի Բինգյոլ-Սրմանց լեռնազանգվածի արևմտյան զառիվայրերը։ Այդ ուղղությամբ սահմանագիծը համընկնում է Եփրատից դեպի Բինգյոլի լեռները ձգվող լեռնաշղթայի գծին, իսկ այն հանգամանքը, որ քաղաքական սահմանագիծը համընկնում է բնականին, մեր եզրակացությունների հաստատումն է։

Կիթառիճի և Արտալեսի տեղադրության հարցը մնում է չլուծված։ Մեզ համար պարզ է միայն, որ այն գավառները, որտեղ դրանք գտնվում էին, միմյանցից բաժանվում էին Երիզ-Ողնուտին հանդիպակաց Կարեր լեռներով։ Պրոկոպիոսի նկարագրած սահմանամերձ երկու կողմից էլ անպաշտպան տարածությունը հենց այն հովիտն է, որ ոռոգվում էր Գոյնուկ գետով։

Հետևելով Պրոկոպիոսի ցուցումներին՝ Կիթառիճ բերդը պետք է փնտրել Կարեր լեռներում, նույնացնելով այն ներկայիս ամրացված տեղանքներից մեկին՝ Շեյխ-Սելիմ-Կալային կամ Ազնաբերդին, կամ Ասաեղաբերդին (ավելի ճիշտ՝ Շեյխ-Սելիմ բերդին, Ազն և Ասաղ ամրոցներին), որոնք գտնվում էին հիշյալ լեռների հյուսիսային լանջերին՝ միմյանցից ոչ հեռու։ Այդ դեպքում Արտալեսը, ըստ նույն պատմագրի, կլինի մի քիչ հյուսիս, ավելի մոտիկ Մանազկերտին։

---

էջ 43, «դային հասանէին ընդ գաւառն Պալունեաց եւ երկուս աւուրս մնացին ի մեծ աւանն Հոռեանս եւ անտի եկին եկին ի գիւղն Կուառս»։ Մամիկոնյանների կալվածների թվում հիշատակվում է «Կուառս, որպէս կայ ի գրի իշխանացն Մամիկոնէից», էջ 37։ **Հովհ. Մամիկոնյան**, էջ 31, «եկն ի գլուխ Տարօնոյ, եւ շինէ դաւերեալն Ձիւնկերտ քաղաք մեծ, եւ փոխէ զանուն... Պորպէս»։

Αρταλεσ-ων-ը հայերեն պետք է հնչի artali-s, artali-ǩ արտաղիս, արտաղիք, բառ, որ իր կազմությամբ հակվում է դեպի mardali-ǩ, manali-ǩ, Մարդաղի-ք, Մանաղի-ք՝ խորձյանին հարևան գավառների անվանումներին։ Մարդաղիքը տարածվում էր Բինգյոլի լեռների հյուսիսային զառիվայրերին, մինչև Կարինի սահմանները. այլ խոսքով՝ Բինգյոլի նկատմամբ հյուսիսից գրավում էր այնպիսի դիրք, ինչպիսին Արշամունիքը՝ հարավից։ Մարդաղիքից էր սկիզբ առնում Բինգյոլ լեռներից բխող Մուրցը՝ Արաքսի առաջին վտակը, որ այժմ կոչվում է Եգրի կամ Արաղ (Արաքս)։ Արևմուտքից Մարդաղիքը հարում էր Մեղեդուխ լեռանը, որ նույնացվում է Խալխալ լեռներին, որոնց մասին մենք առիթ ունեցանք հիշատակելու, իսկ հյուսիսում այն Կարինից բաժանվում էր Այծ-պտկունք լեռով, որի տակ պետք է հասկանալ Էրզրումը հարավից կիսալուսնի նման շրջապատող լեռնաշղթան[1]։

Այսպիսով, Մարդաղիքը ընդգրկում էր երեք գետերի՝ Արաքսի, Լիճիկի և Թուզլուի ջրբաժան շրջանը, ըստ որում Խալխալ լեռը մի բնական պատնեշ էր Մարդաղիքի և միաժամանակ Արևելյան կամ Պարսկական Հայաստանի համար։ Արևմուտքից Խալխալ լեռանը իր մի ծայրով հարում էր Մարդաղիքը, հարավից՝ Խորձյանը։ Մեզ թվում է, որ Խորձյանի մի մասը, որ Խալխալ լեռան մոտ հարում էր Մանրաղիքին և Մարդաղիքին, հին ժամանակ կրում էր նրանց աղգակից Արտաղիք Artali-ǩ անունը, ’Αρταλεσ-ών համանուն բերդով։

576 թ. Խոսրով Անուշիրվանի արշավանքի ժամանակ հիշատակված ’Αραβεσσων գյուղը իր տեղադրությամբ համապատասխանում է Արտալեսին։ Այդ թվականին Խոսրովը Արզնի և Նփրկերտի վրայով մտավ Հայաստան, անցավ Բագրևանդ և Տարոն գա-

---

[1] Աշխարհացոյց, էջ 31, Աշմունիք առ Սրմանց լերամբ, որ կոչի կատար երկրի, յորմէ ոյժ բղխեն աղբիւրք (հմմտ. այժմյան بینگول Բինգյոլ, Բիւրակն անվանումը, որոց ըստ հիւսիսի Մարդաղի առ Մեղեդուխ լերամբ, մինչեւ ցնոյն Այծպտկունս, որ բաժանէ ընդ Կարին եւ ընդ Նմա... յորոյ ցելից բղխե Մուրց գետ Սրմանց անունը կարելի է բաղդատել Սրեմ, Սրենց ձոր, Սրեմաձոր, Սերեմաձորի հետ Հովհ. Մամիկոնյան, էջ 41—42։ Այծ-պտկունք (այծի պտուկներ), այսպես են կոչված լեռները, ըստ երևույթին, նրանց մերկ, ատամնավոր կատարների պատճառով (հմմտ. Էրզրումի տակ գտնվող Թէքքէ-գէօլ՝ այծի հովիտի հետ, եթե միայն تكّه այստեղ նշանակում է այծ և ոչ թե  վանք կամ գերեզմանատուն)։ Այժմյան անունը՝ Փալան-Թյոքեն, այսինքն՝ թամբ վայր նետող, նույնպես բնորոշում է լեռների զառիթափ լինելը։

վաները և առաջանալով դեպի Բասեն՝ Թեոդոսուպոլսի կողմից ներխուժեց Հռոմեական Հայաստան։ Հռոմների համար անսպասելիորեն նա «բանակեց մի գյուղում, որ կոչվում էր Ա ր ա բ ե ս և գտնըվում էր քաղաքից դեպի հարավ ընկած գավառում, իսկ հռոմների զորքերը, ինչքան որ այդ պահին այնտեղ կային, եռ քաշվեցին հյուսիս՝ < > կոչվող շրջանում գտնվող մի լեռան ստորոտը»[1]։

Դատելով տեղագրությունից, Արաբեսը այլ վայր չէ, եթե ոչ Արտալեսը։ Դեպքերի պատմիչը հաղորդում է, որ պարսից թագավորը բարձր գնահատելով Թեոդոսուպոլսի ստրատեգիական նշանակությունը, որն իշխում էր ամբողջ Հայաստանի և Իբերիայի վրա, ձգտում էր գրավել այն։ Ընդ որում, ինչպես երևում է, նրա տակտիկական նպատակն էր եղել Թեոդոսուպոլիսը կտրել մերձակա ռազմական պահականոցներից՝ Արտալեսոնից և Կիթառիճից։ Այդ նպատակով նա կանգ է առնում Թեոդոսուպոլսից հարավ ընկած մի վայրում, որը մենք անվանեցինք Արտաղիք։ Այդ հիման վրա էլ կարծում ենք, որ Արաբեսը պարզապես Արտալեսի աղավաղումն է՝ Ἀραβησσ-ῶν, փոխ. Αρ<τ>αλησσ-ων։ Այս աղավաղումը, ինչպես երևում է, տեղի է ունեցել Կապադովկիայի Ἀράβισσος հայտնի

[1] Menand, p. 394. προβαίνοντι δὲ Χοσρόη ἀνὰ τὰ πρόσω οἱ ἐν τῷ κλίματι Μακραβανδῶν καὶ Ταραννῶν ἥκιστα ἔμενον. p. 395, εἶτα ἐς τὰ πρόσω ἤλαυνε διὰ τῆς καλουμένης Βαδιανῆς... ἐσβάλλει τε ἐις τὴν Ῥωμαίων Ἀρμενίαν κατὰ Θεοδοσιούπολιν... ἐστρατοπεδεύσατο ἐς τὸ Ἀ ρ α β η σ σ ῶ ν ἐπικεκλημένον χωρίον, ἀμφὶ τὸ μεσημβρίνον κλίμα τοῦ ἄστεος, τὸ δὲ δὴ Ῥωμαίων στράτευμα, αὐτό γε δήπου τὸ συναθροισθὲν, ὡς πρὸς ἄ ρ κ τ ο ν περὶ τὸ κλίμα τὸ καλούμενον < > συναγόμενον ἐς ὑπώρειάν τινα ὄρους. *Ս. Մարտենը, ուղղելով լատին թարգմանչի սխալը, որ* ἄρκτον-*ը դարձրել է հատուկ անուն* (ad Arctum), *ինքն էլ նույնպիսի սխալ է թույլ տվել,* συναγομενον-*ը համարելով աշխարհագրական տերմին՝* à Synagomenon!! Lebeau, *X, 135։ Իրականում գավառի անունը բնագրից դուրս է ընկել։ Դարայի մոտից դեպի Հայաստան և Թեոդոսուպոլսի վրայով դեպի Կեսարիա Խոսրովի արշավանքի մասին պատմում է* նաև Հովհ. Եփեսացին, *Եկեղ. պատմ. VI, 8։ Այն մասում, որտեղ խոսվում է Թեոդոսուպոլսի մոտ տեղի ունեցած ընդհարման մասին, բնագիրը խաթարված է, որի հետևանքով բնագրի* bgr-*ն սխալ է մեկնաբանվում գերմանացի թարգմանչի կողմից (էջ 232)։ Բար-Հեբրեյի մոտ այդ նույն բառը կարդացվում է* Bagrava։ *Տարակույս չի կարող լինել, որ այստեղ թաքնված է ճակատամարտի տեղի անունը։ Հեղինակը ի նկատի է ունեցել, անկասկած, հայոց Բագրևանդը՝ Մենանդրի* Μακραβανδ-ῶν *(փոխանակ* Μ-β-ακραβανδῶν-*ի, որտեղ* μβ *արտահայտում է հին-*β), *որից ոչ հեռու, հռոմեացիների մասում տեղի ունեցավ ընդհարում նրանց և պարսից զորքերի միջև։*

*քաղաքի անվան աղդեցությամբ։ Այն վայրը, որտեղ մենք տեղադրում ենք Արտաղիքը, այժմ հայտնի է Ե ն դ ե ր ի ս անունով, որ հավանորեն Արտալեսի թուրքական արտասանությունն է[1]։ Այստեղ՝ խաչ լեռան ստորոտում էլ գտնվում է Արտալեսոն բերդը, մոտավորապես այժմյան Մելիքանի շրջակայքում։*

*Արտալեսի և Կիթառիճի միջև եղած տարածությունը մեծ չէր՝ մոտավորապես մեկ օրվա ճանապարհ։ 542 թվականի Դվինի արշավանքի նախօրեին հռոմների զորքերը տեղավորված էին սահմանապահ կետերում. զորամասերից մեկը կանգնած էր Կիթառիճում, մյուսը՝ նրանից ոչ շատ հեռու՝ Խորձյանում՝ այն է՝ Արտալեսում, իսկ երրորդը՝ Փիսոնում։ Խորձյանի զորամասը, առանց մյուսներին նախազգուշացնելու, առաջինն անցավ սահմանը. Կիթառիճի զորամասը, այդ իմանալով, հենց մյուս օրը շարժվեց նրա ետևից, իսկ Փիսոնում եղած զորքերը ներխուժման մասին ուշ իմացան, քանի որ «մյուս զորքերից հեռու էին գտնվում»[2]։ Այստեղից հետևում է, որ Կիթառիճը ավելի մոտ էր Արտալեսին, քան Փիսոնը՝ Կիթառիճին, մի հանգամանք, որ չի հակասում Կիթառիճի և Արտալեսոնի դիրքի մասին մեր հանգած եզրակացություններին։*

*Ըստ մի հետաքրքրական վկայության Կիթառիճն ընկած էր Ասորիքի և Հայաստանի միջև[3]։ Եթե հայկական հավակնությունները հասնում էին մինչև Մծբին, ապա հասկանալի է, որ այդ կարգի չափազանցություններ կարող էին թույլ տալ նաև ասորիները։ Այդ իմաստով Մուրադ-Արածանի գետը ընդունելով իբրև Ասորիքի սահման, մենք պետք է որ Կիթառիճը տեղաշարժեինք դեպի Մուրադի ափերը։ Ներկայումս Ճապաղջրում գտնվող Դարեգոա ավանի համադրությունը Կիթառիճի հետ կարող է նույնիսկ գայթակղեցնել (Կ-Թառիճից սկզբի հնչյունի անկումով)։*

*Մեզ ավելի հավանական է թվում, որ ասորի պատմագիրը Ասորիքի սահմանների մեջ է մտցրել հայկական հինգ սատրապություն-*

---

[1] *Ենդե-ր-իսը կամ Խենդերիսը Արդա-լ-իսի աղավաղումն է։ Թուրքերի խոսքում տեղական լ հնչյունը r-ի փոխվելու մի ուրիշ օրինակ է տալիս Պե-r-ին, հին Պե-լ-ի=Π ά λ ι ο ς κάστρον, հայերեն՝ Պաղի-Ն։*

[2] Proc. *Pers,* II, 24, p. 261—263.

[3] Հովհ. Եփեսացի, *Եկեղ. պատմ. VI, 14։ Մորիկը, պատերազմի ելնելով պարսից դեմ, «եկավ և կանգ առավ Հայաստանի և Ասորիքի միջև, այսինքն՝ Կիթառիճում»։ Գերմ. թարգմ.,* p. 242։

ները, որոնց թվին էր պատկանում, ինչպես հայտնի է, նաև Հաշտյանքը։ Այդ դեպքում հասկանալի է դառնում, որ Հաշտյանքի հյուսիսային ծայրում ընկած Կիթառիճը կարող էր սահման համարվել Ասորիքի և Հայաստանի միջև։

Մարդաղիքի մյուս կողմում՝ Թեոդոսուպոլսի շրջանում և ավելի այն կողմ սահմանագիծը անցնում էր Թեոդոսուպոլսից մինչև Ճորոխ գետը ընկած լեռնաշղթայով. Էրզրումի աջ կողմից դեպի հյուսիս ձգվում են նախ Դեվե-բոյնուի և ապա Կարգաբաղարի լեռները, որոնք իրենց վերջնակետում, Կանդիլ գագաթի մոտ (10230 ոտնաչափ), որ ամենաբարձր կետն էր ամբողջ լեռնաշղթայում, շրջվում են դեպի արևմուտք և ձուլվում Դումլի լեռնաշղթային։ Դումլին ձգվում է Էրզրումի վերևից դեպի Ճորոխի ափերը՝ Սպերից վերև։ Վերոհիշյալ գծին հարում էին պարսից կողմից Բասենը և Տայքի Բուխա և Ոքաղե գավառները, որոնք ընկած էին հռոմեների մասում գտնվող Կարինի և Շաղագոմի դիմաց։ Ճիշտ սահմանի վրա, Թեոդոսուպոլսի դեմ հանդիման ընկած էր Դու գյուղը, որը միաժամանակ սահման էր Կարինի և Բասենի միջև։

Վահան Մամիկոնյանի պատմությունից հայտնի է, որ պարսիկ զորապետը, հետապնդելով հայ ապստամբներին, կանգ է առնում Դու գյուղում, որը պատմիչը համարում է երկու պետությունների միջև սահմանային կետ։ Վահանը՝ ապստամբների ղեկավարը, կանգնած էր ոչ հեռու՝ Մկնառինճ գյուղում։ Մյուս զորավարը՝ Հազարավուխտը, Վահանի հետքերով գալիս է Ոքաղե գավառը՝ Գյուղիկ և Վարդիշեն գյուղերը։ Իսկ այդ ժամանակ Վահանն արդեն գտնվում էր սահմանի մյուս կողմում, բայց Հազարավուխտին մոտիկ՝ հռոմեական Շաղագոմ գավառում։ Պարսիկների հետապնդումը ոչինչ չհասցրեց, և նրանք Ոքաղեից իջան Բասենի Դու գյուղը, իսկ Վահանը գնաց Ծաղիկ գյուղը, որ Մամիկոնյանների սեփականությունն էր, որտեղից էլ մտադիր էր անցնել Հաշտյանքի կողմը[1]։

[1] Փարպեցի, էջ 136, «եւ էր բանակ սաստկութեան զօրուն Արեաց ի գեօղն, որ անուանի Դու, ի սահմանակցութեան պարսից եւ հոռոմոց. եւ զօրավարն հայոց Մամիկոնեանն Վահան մերձ ի նա իբրեւ երկուք հրասախօք, ի գեօղ մի, որ կոչի Մկնառինճ», էջ 145. «յՈքաղն բնակէր մօտ ի գեօղն, որում անուն էր միումն Գիւղիկ եւ միւսումն՝ Վարդաշէն. եւ բանակեալ 'անդ զօրն զայն՝ լսէր ի վաղին, թէ Մամիկոնեանն Վահան մօտ է ի նա ի Վարայրվարոյն ի հոռոմ տան, ի գաւառին, որ կոչի Շաղագոմ», էջ 148. «Վահան...բանակէր ի գիւղ մի մերձ, որ էր ընդ իշխանութեամբն Մամիկոնէից, որում անուն էր Ծաղիկ», Լաստիվերտցի, էջ 67. «գայ ի գլուխն

*Հիշյալ գյուղերը գոյություն ունեն մինչև այժմ. Դուն էրզրումի մոտ, Կարգաբազար լեռների ստորոտում, և այժմյան արտասանությամբ կոչվում է Տու-եա, որ հավանորեն սեռական հոլովաձևն է։ Երկու Դու կա՝ Մեծ և Փոքր, գրեթե կողք կողքի։ Դրանցից մի քիչ դեպի արևելք ընկած է Կունիճ գյուղը, որն, անկասկած, պատմական Մկնառինճն է։ Ըստ պատմիչի, նրա հեռավորությունը Դուից երկու փարսախ է՝ մոտ 12 կիլոմետր, որ և համապատասխանում է Կունիճի դիրքին։*

*Ավելի հյուսիս, Կենդիլ լեռան մոտ, ճիշտ սահմանագլխին, գտնվում է Ծաղկի գյուղը (ծաղիկ բառի սեռական հոլով)։ Մյուս երկու գյուղերը տեղադրված են ավելի վերև, Թորթում գետի հովտում, Թորթումի մոտ և առաջվա նման կոչվում են Գյուղիկ և Վարդիշեն։ Այդ գյուղերն էլ որոշում են Ոքաղեի և միաժամանակ հռոմական Շաղագոմ գավառի դիրքը, որ ընկած էր նրա մոտերքում՝ «մատ ի նմա» և նշանակում է, թե գտնվում էր լեռների մյուս կողմում, Սերչամ գետի հովտում՝ Կարինի և Սպերի միջև։*

*Ի հակակշիռ հռոմների Թեոդոսուպոլիս ամրության, պարսկական հողում, Թեոդոսուպոլսից ոչ հեռու՝ Բասենի գավառում գտնվում էր Բող (Բող-բերդ) ամրոցը։ Այստեղ բանտարկված էին Կամսարական իշխանների կանայք, որոնց Վահան Մամիկոնյանի օրոք ձերբակալել էին պարսիկները։ Բողը ծանոթ է նաև արևմտյան պատմագիրներին և հսկայական դեր է խաղացել Զ դարի քաղաքական իրադարձությունների ժամանակ։ Նրա տեղը մեզ ճշտությամբ հայտնի չէ։ Մի վկայությամբ նա գտնվել է Բասենում, մի այլ վկայությամբ՝*

---

*Բասենոյն, մերձ ի գեօղն, որ կոչի Դու»։ Դուն հիշատակվում է նաև Սեբեոսի մոտ Որդրուի հետ միասին «... եղեւ պատերազմ մեծ ի Դու եւ յՈրդրու», էջ 77։ Որդրուն հայտնի է Փավստոսին, որպես Որդունեաց տոհմի կալվածք. «զրուն դիւղն Որդունեաց, որոյ անունն էր Որդորու», էջ 10։ Ինճիճյանը և նրան հետևելով՝ ուրիշները Դուն և Որդրուն համարում են այժմյան Մեծ և Փոքր Տու-ն. Ինճիճեան, Աշխարհագր., էջ 90։*

*Բայց ինձ թվում է, որ Որդրուն այս երկու Դուերից և ոչ մեկը չէ, այլ համապատասխանում է դեռևս Վահան Մամիկոնյանի պատմությունից հայտնի նույն Բասենում, Օրտու-սու գետակի վրայի՝ այժմյան Օրտուին՝ Օլտար գյուղից արևելք,* Փարպեցի, *էջ 154. «ի գաւառն Բասենոյ, ի գիւղն, զոր Ալուարն կոչեն»։ Իսկ Ինճիճյանը Ծաղիկ գյուղը տեղադրում է Հաշտյանքի սահմաններում,* Ստորագր., *էջ 104, մինչդեռ Փարպեցու պատմությունից երևում է, որ այն ընկած էր Ոքաղեից ոչ հեռու «ի գիւղ մի մերձ Հազարավուխտին, որ նստած էր Ոքաղեում», էջ 148 և դեպի Կարին ու մոտակա Արծաթի գյուղը տանող ճանապարհին։*

«Թեոդոսուպոլսի սահմանների մոտ»[1]։ Սովորաբար այն համարում են այժմյան Հասան-կալան։ Հասան-կալայի տեղում գտնվում էր Վաղարշակերտը, որտեղ Ներսես Շինող կաթողիկոսը կառուցեց սուրբ Աստվածածին եկեղեցին[2]։ Քիչ է հավանական, որ նախկին Բող բերդը հետո կոչվեր Վաղարշակերտ, որովհետև վերջին անունը ըստ էության չէր կարող հին ծագում ունենալ. մնում է թերևս ենթադրել, որ նախքան Անաստաս կայսեր կողմից Թեոդոսուպոլիսն ամրացնելը պարսից Վաղաշ (կամ Վաղարշ, 484—488 թթ.) թագավորը վերականգնել է Բող ամրոցը և վերանվանել Վաղարշակերտ, այսինքն՝ Վաղարշի քաղաք։

Մեզ թվում է, ավելի ճշմարտացի կլիներ Բողը փնտրել հարևան Տայքի Բուխա գավառի սահմանների մոտ, նկատի առնելով նրանց անունների համահնչյունությունը։ Բուխան ընկած էր Օլթի գետի վտակներից մեկի ակունքների մոտ Բասենի հարևանությամբ։ Ի միջի այլոց, Կարգաբազարի լեռներում, երկու գավառների սահմանի վրա, այժմ էլ գտնվում է մի բերդ, որ կոչվում է Բուա-կալա։ Եթե Բուան ծագում է Բուհա, Բուխայից, ապա Բուա-կալայի մեջ ունենք հին Բողը[3]։

Բող ամրոցի հետ անբաժանելիորեն կապված էր Փառանգիոն վայրի քաղաքական բախտը, որտեղ ոսկի էր արդյունահանվում

---

[1] Փարպեցի, էջ 146. «Շապհոյ տարեալ զկանայս Կամսարականացն յամուր բերդն Բասենոյ, զոր Բողբերդն կոչեն», նաև Proc. *Pers.* I 15, p. 77. Βῶλον τὸ φρούριον, ἄγχιστά πη ὂν τῶν Θεοδοσιου πόλεως ὁρίων, I 22, p. 112 և 114. Goth. IV 13, p. 526.

[2] Հովհ. Մամիկոնյան, էջ 57—58. «Ներսես կաթողիկոս, որ ի Տայոց էր ծննդեամբ, այն որ զՎաղարշակերտոյ Սուրբ Աստուածածինն շինեաց»։ Հասանկալայի մոտ այժմ էլ գտնվում է Սուրբ Աստվածածին եկեղեցին։ Ժ դարում Վաղարշակերտում նստում էր վրաց եպիսկոպոսը, Լաստիվերտցի, էջ 9։

[3] Բուխա անունը հանդիպում է Աշխարհացույցի մեջ, էջ 35, «Բուխա եւ Աղորդացփորս» և Գահնամակում, Բուխա Դիմաքսեան։ Երկու դեպքում էլ կարելի է ընդունել որպես Բուխի սեռական հոլովը։ Ձեռագրերի մեջ հանդիպում է նաև Բոխա ընթերցումը. Ինճիճյան, Հնախոս, էջ 371։ Բողը կամ Բոլը այնպես է վերաբերում Բուխա-ին, ինչպես Ուխտի-քը (Ուղտի-ք-ից)՝ Օլթիին։ Լաստիվերտցու մոտ՝ Ուխտիք, էջ 4 և 6, և Ուխթիք, էջ 9։ Ասողիկի մոտ, «Քաղաք Ուխթեաց», էջ 189, 278։ Այժմյան Օլթի ձևը ցույց է տալիս, որ Ուխթիքի մեջ խ հնչյունը ծագել է ղ-ից՝ Ուղտի։ Ի միջի այլոց պետք է նկատել, որ Օլթիից արևմուտք, Թորթում լճակի ափին, դեռ այսօր էլ կա Ուխտա գյուղ, որի անունը ավելի է մոտենում Ուխթիին. Լինչի մոտ Okhda։

պարսից թագավորի համար։ Սա ընկած էր հայկական հողում՝ Ճանիքի սահմանների մոտ, այնտեղ, որտեղից սկիզբ էր առնում Բոա կամ Վոա գետը։ Բոան համապատասխանում է Աշխարհացույցի Voh-Վոհ-ին, որ Ճորոխն է կամ, ավելի ճիշտ, նրա վերին հոսանքը. Ճորոխի ակունքները սկիզբ են առնում Սպերի շրջակայքում։ Հին հեղինակների վկայությամբ Սիսպիրիտիդում ոսկու հանքեր կային, որոնք հետաքրքրել էին նույնիսկ Ալեքսանդր Մակեդոնացուն։ Ըստ այս տվյալների Փառանգիոնը համընկնում է հայկական Սպերին՝ դասական Սիսպիր-իտիդին։ Ոսկի արդյունահանելու գործով Վահան Մամիկոնյանի նկատմամբ արված մատնությունը հավանորեն վերաբերում է Սպերի հանքերին[1]։

Փառանգիոնը պարսիկների սեփականությունն էր։ Կավատի օրոք ոսկու հանքերը կառավարում էր Սիմեոն անունով մի հայ, որը Հուստինիանոսի ժամանակ անցավ հռոմեների կողմը և նրանց հանձնեց Փառանգիոնը։ Այդ ժամանակ էր, որ Կամսարական Իսահակ-իշխանն էլ նրանց հանձնեց Բող բերդը։

Ճիշտն ասած՝ Փառանգիոնի մոտ պարսիկները սահմանակից էին ոչ թե հռոմեների երկրին, այլ Ճանիքին։ Ճանիքը կամ Խաղտիքը, ճաների կամ խաղտիների երկիրը, գրավում էր լեռնային այն շրջանը, որ ընկած էր Ճորոխի ու Սև ծովի առափնյա շերտի մինչև Տրապիզոն ձգվող Պարխար լեռների միջև։ Ճորոխի հովտում Ճանեկեն (Ճանիքը) սահմանակից էր պարսից տիրույթներին և Տայոց գավառին՝ սկսած Փառանգիոն-Սպերից մինչև Թուխարս բերդը, այժմյան Խերխեր, այնուհետև Գուգարք գավառին ու Կղարջ(ետ)քին՝ Արտա-

[1] Proc. *Pers.* I 15. p. 77. φρούριόν τε τὸ Βῶλον καὶ τὸ Φαράγγιον καλούμενον, ὅθεν δὴ τὸν χρυσὸν Πέρσαι ὀρύσσοντες βασιλεῖ φέρουσιν, նաև I 22, p. 112 և 114. *Goth.* p. 526. *Pers.* II p. 288. Βόας ὁ ποταμὸς ἔξεισιν ἄγχιστά πη τῶν Τζανικῆς ὁρίων ἐν Ἀρμενίοις, οἳ δὴ ἀμφὶ τὸ Φαράγγιον ᾤκηνται. Βόα-ς= Աշխարհացույցի Վոհին, էջ 30 կամ Յոհին, էջ 35։ Այստեղ յ-ն նախդիր է — Յոհը Վոհի բարբառային դրությունն է, եթե նկատի ունենանք, որ բառասկզբում ո-ն կարդացվում էր — վո: Strab. p. 744։ Μέταλλα δ' ἐν μὲν τῇ Συσπιρίτιδι ἐστι χρυσοῦ κατὰ τὰ Καβαλλα. Փառանգիոնի ծագումը մշուշապատ է։ Գեստոնինսը կարծում է, թե հնարավոր է, որ այն առաջացած լինի հունարեն φάραγξ, ձորակ, հովիտ բառից։ Պրոկոպիոս, I, p. 189, Ծանոթ.։ Ինճիճյանը կապում է Արդնի հետ, կարդալով φόργανον Հնախոս., *I, 188*։ Պատմագրի τὸ Φαράγγιον καλούμενον արտահայտությունից երևում է, որ *Far angius*-ը պարսկ. *farhang*, հայերեն՝ հրահանգ բառն է, արդյունահանություն, մշակում իմաստով, այլ խոսքով՝ գործարան, հանք, որ համապատասխանում է Փարպեցու «գործ ոսկեհատոց»-ին. էջ 117։

նուջ գետի երկարությամբ։ Այնուհետև Ճորոխ գետը, ինչպես նկարագրում է Աշխարհացույցը, մտնում է Եգեր, և հոսելով Նիգալ, Մրուղ և Մրիտ գավառների միջով, թափվում է ծովը[1]։ Նիգալ անունը, ինչպես մեզ թվում է, պահպանել է Մուրղուլ գետակը, որ Ճորոխ է թափվում ձախ կողմից, Արդվինից ներքև։ Աճարա գետի վտակներից մեկը կոչվում է Մարատ, որ նույնն է, ինչ որ Մրիտը, իսկ Մրուղը կարելի է համեմատել Իմեր-խևի, *Մեր-ուլի հետ։ Ուրեմն՝ երեք գավառները գրավում էին համապատասխան գետակների հովիտները՝ Ճորոխի ստորին հոսանքում, Իմեր-խևի գետաբերանից մինչև ծով, կազմելով Եգեր նահանգը par exellence։

Եգեր, Եգերիա անվանումը պահպանվել է մինչև այսօր Աճար-խա ձևով, ընդ որում սովորական տառադարձությամբ կոկորդային գ-ն դարձել է քմային ճ։ Եգեր տերմինը Աշխարհացույցի մեջ գործ է ածվում դեռևս լայն իմաստով և նշանակում է արևելյան ամբողջ ծովափը՝ Ափխազիայից մինչև Տրապիզոն՝ ընդգրկելով նաև Ճանիքը։ Ճորոխի արևելյան ափը, որտեղ ընկած էին Տայքն ու Կղարջքը, պատկանում էր պարսիկներին, ըստ որում, չի կարելի հաստատապես ասել, թե Տայքը սահմանափակվու՞մ էր արդյոք միայն արևելյան ափով, թե՞ գրավում էր նաև մյուս ափի մի մասը, ինչպես որ կարելի է եզրակացնել մի շարք տվյալներից[2]։ Վերջին դեպքում պարսկական տիրույթների վերջին սահմանը պիտի համարել Պարխարի ստորոտը։ Դրանից հետո սկսվում էր Ճանիքը։ Վերջինս, և առհասարակ Եգերը, նշված լայն իմաստով, իսկապես, թողնված էր ինքն իրեն։ Համենայն դեպս Փարպեցին գտնում է, որ Ճաները, այնուամե-

---

[1] Աշխարհացոյց, էջ 35. «Անցանէ առ Թուխարս բերդով ի Կլարճս եւ անտի յԵգր, ընդ Նիգալ, ընդ Մրիտ գաւառս ի Պոնտոս ծով»։ Թուխարսը հիշատակում է Ղևոնդը, էջ 26։ Վախուշտին՝ էջ 112։ ციხე თუხარისი։ Թուխարսից ներքև գտնվում է Իրխանը, Փավստոսի էջ 112. հիշատակված պատմական Էրախանին։ Իրխանից հարավ ընկած էր Իշխանը Սեբեոս, էջ 140, իսկ սրանց միջև՝ Ավարեսը՝ Թերևս, Արահեզը, որ Գիտ կաթողիկոսի ծննդավայրն էր, Փարպեցի, էջ 110։ Ավելի մոտ Սպերին գտնվում էր Ոշնաղը—Որջնհաղը, Փարպեցի, էջ 74։

[2] Աշխարհացոյց, Արսեաց փորը, որ Տայքի գավառներից մեկն էր, դնում է «առ Պարխար լերամբ», իսկ Պարխար լեռները գետի ձախ ափին են։ Ըստ Փարպեցու, էջ 74, Պարխար լեռները ընկնում են «մերձ առ սահմանակցութիւն Խաղտեաց» և ոչ թե բուն Խաղտիքի մեջ, ինչպես որ կարելի էր սպասել։ Պարխար լեռներում գտնվող ամրոցները, որտեղ, Փարպեցու ասելով, ապաստան է գտնում Համազասպ Մամիկոնյանը, հավանաբար պատկանում էին Մամիկոնյաններին և կազմում էին Տայքի մի մասը։

նայնիվ, «բնակվում էին հռոմների երկրում», թեև օգտվում էին ազատությունից[1]։ Նրանք նվաճվեցին և հարկադրված եղան ճանաչել կայսեր իշխանությունը միայն Հուստինիանոսի օրոք, որը Լազիկեի ծայրում, Ճորոխի գետաբերանից հյուսիս՝ ծովի ափին կառուցեց Պետրա բերդը, որը կարելի է համարել տվյալ ժամանակաշրջանում կայսրության սահմանագլուխը ոչ այնքան հողային տիրույթների, որքան կայսրերի և պարսից թագավորների ազդեցությունը սահմանազատելու իմաստով։ Իրականում մի ամբողջ հարյուրամյակի ընթացքում այդ երկրամասին տիրանալու համար կայսրերի և պարսից թագավորների միջև փոփոխակի հաջողությամբ կատաղի պայքար էր գնում։

Այսպիսով, Մծբինից մինչև Ճորոխ անցկացրած գծով հայկական հողերը բաժանված էին երկու մասի՝ **Արևմտյան** կամ **Հռոմեական Հայաստանի** և **Արևելյան** կամ **Պարսկական Հայաստանի:**

---

[1] *Pers.* I 15. p. 77, τὸ Τζανικὸς ἔθνος, οἳ ἐν γῇ τῇ Ῥωμαίων αὐτόνομοι ἐκ παλαιοῦ ἵδρυντο.

# ԱՐԵՎՄՏՅԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ

## ԳԼՈՒԽ II

## ԻՆՔՆԱՎԱՐ ԻՇԽԱՆՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

## SATRAPIAE

Ինքնավար իշխանությունները: Նրանց տեղագրությունը ծագումնաբանական ուրվագծով: Հաշտյանք և Բալահովիտ: Սոփենեն լայն առումով: Անգիտենեի դիրքը — Ծոփք, Խարբերդ, Աշմուշատ և Անձիտ: Անձիտը Ծոփքի մաս: Ծոփքի բաժանումը. Մեծ Ծոփք և Շահունյաց Ծոփք կամ Սոփանենե և Սոփենե: Անգեղենեն Մեծ Ծոփքի մաս: Ինքնավար սատրապությունների ծագումը:

Հաշտյանքի և Բալահովտի միացումը սատրապություններին 378 թվականին:

*Արևմտյան Հայաստանը ո՛չ քաղաքական և ո՛չ էլ մշակութային տեսակետից համասեռ միություն չէր։ Այս հանգամանքը պայմանավորված էր գլխավորապես նրանով, որ նա կայսրության կազմի մեջ մտավ ոչ միանգամից, այլ մաս առ մաս, տարբեր ժամանակներում և ոչ միևնույն պայմաններով։ Կայսրությունը Արևմտյան Հայաստանում տարբերում էր հողերի երեք շրջան, նայած ինչ աստիճանի էր նրանց կախվածությունը կայսերական իշխանությունից՝ ինքնավար իշխանություններ, Ներքին Հայք և Փոքր Հայք։*

*Փոքր Հայք էին կոչվում հայկական անդրեփրատյան հողերը։ Այն Հռոմեական կայսրության մեջ մտավ շատ վաղ, կարելի է ասել դեռևս իր քաղաքական կյանքի արշալույսին։ Իսկ այն հողերը, որ տարածվում էին մինչև Եփրատ, կազմում էին այսպես կոչված Մեծ Հայքը՝ հայ Արշակունիների տիրույթները։ Հռոմի և Պարսկաստանի միջև պայքարը մղվում էր բացառապես Մեծ Հայքի համար։ Փոքր Հայքում հռոմեական իշխանությունը ամուր կերպով հաստատվել էր նախքան Հայաստանում Արշակունիների երևան գալը։*

*387 թվականին վեճի և բաժանման առարկա դարձան հենց Արշակունիների տիրույթները։ Այն գավառներից մի քանիսը, որոնք բաժին ընկան հռոմեներին, փաստորեն, արդեն նրանց էին համար-*

վում 374 թվականից՝ Արշակի անկման ժամանակվանից ի վեր։ Այդ գավառները մանր ինքնավար իշխանություններ էին՝ կայսերի գերագույն հովանավորության տակ և իրենց արտոնյալ վիճակը կարողացան պահել մինչև Հուստինիանոսի ժամանակները։ Դրանց կոչում էին ինքնավար սատրապություններ կամ հաճախ՝ պարզապես ազգք, ἔθνη, gentes։ Նախկին Մեծ Հայքի մաս կազմող մյուս գավառները, որոնք 387 թվականի դաշնագրով անցել էին կայսրությանը, հռոմները շարունակում էին կոչել Մեծ Հայք, որպես pars pro toto։ Մինչդեռ Մեծ Հայքի հիմնական մասը, որ մնաց պարսիկներին, կրում էր Պ ա ր ս կ ա հ ա յ ք անունը։ Հռոմեական Մեծ Հայքի պաշտոնական անունը, ըստ երևույթին, եղել է Ն ե ր ք ի ն Հ ա յ ք, այդպես էլ մենք պիտի կոչենք այն՝ Մեծ Հայք տերմինի տակ թողնելով նրա իսկական նշանակությունը։

Ինքնավար իշխանությունները կամ, ինչպես կոչվում էին դրանք, սատրապությունները գտնվում էին Հայաստանի հարավում, Տիգրիսի և Եփրատի միջև։ Մեծ կամ Ներքին Հայքից տարբերելու համար Հուստինիանոսի պատմագիրը նրանց տալիս է Մ յ ո ւ ս Հ ա յ ք անունը. «պարփակված լինելով Եփրատի ծոցում, այն տարածվում է Ամիդ քաղաքի կողմերը, և այնտեղ իշխում են հինգ հայ սատրապներ» — τὰ μὲν οὖν ἀμφὶ τῇ μεγάλῃ καλουμένῃ 'Αρμενίᾳ... τῇ δὲ ἄλλῃ 'Αρμενίᾳ, ἥπερ ἐντὸς Εὐφράτου ποταμοῦ οὖσα διήκει εἰς 'Αμίδαν πόλιν, σατράπεις εφεστήκεισαν 'Αρμένιοι πέντε[1]. Իր իսկ՝ Հուստինիանոսի հրատարակած պաշտոնական վավերագրերում այդ նույն իշխանությունները կոչվում են gentes և ἔθνη, ի հակադրություն Armenia Magna կամ Interior և թվարկվում են անուն առ անուն՝ Magnam Armeniam, quae interior dicebatur et gentes: Anzetenam videlicet, Ingilenam, Asthianenam, Sophenam, Sophanenam, in qua est Martyropolis, Balabitenam. *C. J. De off. mag. mil.* I 29, 5.

Τῶν ἐθνῶν... Τζοφανηνή τε καὶ 'Ανζητηνὴ καὶ Τζοφανή, καὶ 'Ασθιανηνὴ καὶ Βαλαβιτηνὴ καλουμένη καὶ ὑπὸ σατράπαις οὖσα. Iust. *Novella* XXXI[2].

---

[1] Proc. *Aed.*, III, 1. p., 246—247։

[2] Նովելլաների Bib. Teub. շարքի նոր հրատարակության մեջ *Nov.* XXXI=Cons. XLV։ Այստեղ և մյուս հրատարակություններում կարդացվում է Τζοφανηνή τε καὶ 'Ανζητηνὴ ἤ Τζοφανὴ καὶ 'Ασθιανηνὶ ἢ καὶ Βαλαβιτηνή. Անզիտենեի և Սոփենեի միջև ἢ նշանը բոլորովին անտեղի է և առաջ է եկել

Sancimus itaque, si quidem ab Aegyptiaco.., vel Armenis et gentibus... C. J. *De temp. et rep. app.* VII 63, 5.

*Ուշադրություն դարձնենք այն բանի վրա, որ սատրապների թվի վերաբերյալ տվյալները չեն համընկնում. պատմագրի վկայությամբ դրանց թիվը եղել է հինգ, բայց մեջ բերված վավերագրերից մեկում հիշատակված է հինգ անուն, իսկ մյուսում՝ վեց անուն։ Սակայն նախ և առաջ ծանոթանանք հիշյալ գավառների տեղադրությանը։*

*Աշտիանենեն և Բալաբիտենեն, որոնց մասին մենք արդեն առիթ ունեցանք խոսելու, հայկական Հաշտյանքն ու Բալահովիտն են, որ գտնվում են Եփրատի վտակի՝ Արածանի-Մուրադ գետի վրա. և այն հանգամանքը, որ այդ գավառները դասված են սատրապությունների շարքը, ցույց է տալիս, որ նրանք գրավում էին գետի ոչ միայն աջ, այլև ձախ ափը։ Հաշտյանքը համապատասխանում է մոտավորապես այժմյան Գենջ և Ճապաղ-ջուր կազաներին, իսկ Բալահովիտը՝ Պալուին։ Բալահովիտ հայերեն նշանակում է բալի հովիտ՝ բալ և հովիտ բառերից։ Դրանից երևում է, որ տեղի անունը իսկապես Բալ է, որից առաջ է գալիս Բալու սեռական հոլովաձևը*[1]*։ Թերևս Աշտի-անեն կապ ունի Աշտի-շատի հետ. այդ դեպքում պետք է ընդունել, որ ինչ-որ ժամանակ Աշտիշատը համարվել է Հաշտյանքի քաղաքը և Տարոնին է վերագրվել հետագայում*[2]*։ Մնացած գավառները ընկած էին ավելի հարավ՝ Եփրատի և Արևմտյան Տիգրիսի միջև։ Սոփենե, Անզիտենե և Սոփանենե, ինչպես նաև Անգելենե կոչվող տերիտորիան ավելի հին ժամանակներում հայտնի է եղել Սոփենե ընդհանուր անունով։ Ըստ Ստրաբոնի, նրա արևմտյան սահ-*

*հավանորեն, նախորդ բառի վերջին* η-*ից։ Նույնը կարելի է ասել նաև Բալաբիտենեին նախորդող* ἠ καὶ-*ի մասին, որտեղ* η-*ի անջատումը ավելի է աչքի ընկնում։ Ոմանք առաջարկում են* ἠ καὶ-*ն ուղղել* καὶ ἡ-*ի.* Güterbock, p. 30, not. 3։ *Բայց հիմք չկա ենթադրելու* ἡ-*ի գոյությունը Բալաբիտենեի հետ, երբ մյուս գավառների անունները գրված են առանց այդպիսի հոդի։ Ուշագրավ է, որ հին հրատարակություններից մեկում կարդացվում է այնպես, ինչպես մենք ենք ենթադրում. հմմտ.* Haloander *1531 թ.*։

[1] *Պալու բառը ծագում է բալոյ-ից* (sc. *քաղաք կամ հովիտ*), κάστρον Βα(ΐου)λοῦος, Georg Cypr. p. 49.

[2] Ագաթանգեղոսը, *էջ 469, քաղաքի անունը համարում է առաջացած «յաշտից տեղիքս»-ից, որ նշանակում է զոհաբերության վայր, Յաշտիշատ։ Բայց այս մեկնությունը լուրջ նշանակություն չունի։* Ağti—ǯat-*ի հետ, որտեղ* ǯat-*ը հին համարժեքն է* ǯahr-*ի երկիր, քաղաք, կապ ունի, գուցե, նաև Շտեայն, որ նույն Հաշտյանքում գտնվող Ոգին գյուղի մի այլ անունն է։*

մանն էր Եփրատի հոսանքը, հարավային կողմում նա Միջագետքից բաժանվում էր Տավրոսի գլխավոր լեռնաշղթաներից մեկով՝ Մասիոնով, որ անցնում է Մծբինի վերևով։ Հյուսիսում Սոփենեն ձգվում էր մինչև Ակիլեսենե, նրա արևելյան սահմանները ճշտորոշվում էին այն դիրքով, որ գրավում էր նրա մայրաքաղաք Կարկաթիոկերտը, որը «հարում էր Տիգրիսին» և, հավանորեն, ընկած էր Մարտիրոսուպոլսի տեղում[1]։

Փավստոսը Սոփենեի մեջ է դնում Բնաբեղ բերդը, որտեղ պահվում էին Արշակունի թագավորների գանձերը, որ Գեորգ Կիպրացու κάστρον Βαναβήλων է, այժմ Մարդինից մի քանի վերստ հեռավորության վրա ընկած Բենաբիլ անունով մի փոքրիկ գյուղ։ Սոփենեում էր գտնվում նաև Phtr—Փիտար գյուղը՝ Հաբիբ երանելու ծննդավայրը, որ այժմյան Փիտարն է, նույնպես ընկած է Մարդինից ոչ հեռու, նրանից դեպի արևմուտք[2]։ Սրանից երևում է, որ Ստրաբոնի գծած Սոփենեի՝ Միջագետքի կողմի սահմանները բնավ էլ չափազանցված չեն։

Սոփենեն վերոհիշյալ սահմաններով ավելի շատ քաղաքական տերմին է. ազգագրական տեսակետից այն ներկայացնում էր տարբեր ազգությունների մի խառնուրդ։ Ստրաբոնի մոտ, որ լավ ծանոթ էր Սոփենեին, չի հիշատակվում նրա ստորաբաժանումների մասին. Երկրի՝ տարբեր գավառների տրոհվելը տեղի ունեցավ հետո՝ ֆեոդալական նախարարական կարգերի զարգացմանը զուգընթաց։ Ամենից առաջ, ինչպես մեզ է թվում, անջատվեց Անզիտենե գավառը, շնորհիվ իր ցեղային յուրահատուկ կազմի։ Դեռևս Զ դարում այստեղ

---

[1] Str. XII 2 p. 751, (Μελιτηνή) ἀντίκειται δὲ τῇ Σωφηνῇ, μέσον ἔχουσα τὸν Εὐφράτην ποταμόν. XI 4 p. 733, Ταῦρος, διορίζων τὴν Σωφανήν καὶ τήν ἄλλην Ἀρμενιάν ἀπό τῆς Μεσοποταμίας... ἐν δὲ τούτοις καὶ τὸ Μάσιον, τὸ ὑπερκείμενον τῆς Νισίβιος ὄρος καὶ τῶν Τιγρανοκέρτων; Եփրատն ունի ἀριστερᾷ δὲ τὴν Ἀκιλισηνὴν καὶ Σωφηνὴν τῆς Μεγάλης Ἀρμενιάς; ib. p. 741, βασίλειον δὲ τῆς Σωφηνῆς Καρκαθιόκερτα. Plin. *Nat. hist.* VI 26. Tigri proximum Carcathiocerta.

[2] Փավստոս, Ե, Է, յերկրին Ծոփաց ի Բնաբեղ բերդին Գ, ժբ, ի Բնաբեղ բերդ արքունի Մեծ Ծոփաց գաւառին. Georg. Cyp. p. 49, κάστρον Βαναβήλων Ioan. Erhess. *De beatis,* p. 3,Habib... e regione Sophenorum oriundus... erat natus in vico cui nomen Phitar նաև p. *149,* monasterio Pilarensi, բառ իմաստի, in terra Sopheniorum, այստեղ են գտնվել Beth-rummantha, p. 148 և locus Curtha գյուղերը, p. *41*։

ապրում էր օրտա ժողովուրդը, որ լեզվով տարբերվում էր հայերից և ասորիներից[1]։ Դասական հեղինակներից Անզիտենեի մասին առաջին անգամ հիշատակում է Պտղոմեոսը որպես Հայաստանի հարավային մասում, Եփրատի և Տիգրիսի ակունքների միջև գտնվող երեք գավառներից մեկը[2]։

Ընդունված կարծիքի համաձայն Անզիտենեն ընկած է եղել Հաշտյանքից հարավ, Տիգրիսի վտակներից մեկի՝ Ջիբանա գետի վրա[3]։ Բայց ուշադիր զննությունը ցույց է տալիս, որ այդ տեղադրությունը ճիշտ չէ։

Հովհան Եփեսացին, իբրև բնիկ Անգեղտունցի, քաջ ծանոթ է այդ գավառին և Անզիտենեում ի թիվս այլոց հիշատակում է նաև Ուլա, Հուլա, Hula վանք և գյուղ, որտեղ ծնվել էր երանելին Մարան[4]։ Խարբերդի մոտ այժմ գտնվում է Հուլվենք, Hulvenk անունով մի գյուղ մոտ 2000 բնակչով[5]։ Ինչպես ցույց է տալիս վերջին վանկը, որ հայերեն վանք բառն է, այն նշանակում է Hul վանք։ Որևէ կասկած չի կարող լինել, որ Hul-ը պատմական Hula-ն է։ Նույն Խարբերդից ոչ հեռու կա մի ուրիշ գյուղ, որ կոչվում է Թիլենզիտ, Thil-enzit. այս հետաքրքրական անվան վերջին մասի մեջ չի կարելի չտեսնել գավառի հին անվանումը՝ Thil-enzit ասորերեն նշանակում է բլուր—enzit։ Այս երկու օրինակները մեզ հիմք են տալիս

---

[1] Ioan. Ephes. *De beatis*, p. 122, in Anzitene Urtaeorum, p. 184, in finibus Urtaeorum in agro Anziteno, p. 182, ըստ Յոհան, ծագումով ասորի, այնպես լավ էր տիրապետում օրտաների լեզվին sermonem Urtaeorum, որ դժվար էր հավատալ, թե նա ասորի էր։ Հմմտ. Nöldeke, *Zwei Völker Vorderasiens*, ZDMG, 35, p. 163։

[2] Ptol. V 12. ἐν δὲ τῷ... τμήματι μεταξύ μέν Εὐφράτου καὶ τῶν Τίγριδος πηγῶν.

[3] Kiepert, *Die Landschaften. Berichte d. Berl. Acad.* 1873, p. 197 և այլք։ Թեյլորը, նկարագրելով Ջիբանա գետի ակունքները, ասում է this part of the Diarbekir Pashalik was a few years ago known by the name of Khanchoot, a corruption of the old name of Handth, *Jour. Roy. As. Soc.* 35, p. 43, ըստ որում նա հենվում է արաբ գրող Իբն ալ-Ասիրի վրա։ Այդ կարծիքը, ինչպես երևում է, ի նկատի է առնվել Անձիտի տեղը որոշելիս։

[4] *De beatis*, p. 75, beatus Maras clericus in ecclesia vici haud exigui in partibus Anzitenes, qui Hula vocatur, նաև p. 147։ Այստեղ էին գտնվում նաև Paradisus (=պարտեզ), p. 45 և Nanas p. 122, գյուղերը, բայց նրանց տեղադրությունը հայտնի չէ։

[5] Cuinet, II, p. 352.

Անզիտեննե Տիգրիսի համակարգից փոխադրելու Խարբերդի դաշտավայր։ Տվյալ դեպքում համընկնում են ինչպես հնագույն, այնպես էլ համեմատաբար ավելի ուշ շրջանի հեղինակների պատմական տըվյալները։ Ըստ Պտղոմեոսի Անզիտեննեի շրջանում էին գտնվում ի միջի այլոց նաև Մազարա, Անզիտա, Բելկանիա, Արսամոսատա — Μαζαρα, Ἄνζιτα, Βελκανία, Αρσαμόσατα, քաղաքները, իսկ ըստ Աշխարհացույցի՝ Մոլքը և Հոռէ բերդերը։ 1073 թվականին հոռոմ զորապետ Փիլարտոսը, որ քաղկեդոնիկ հայ էր, կանգ է առնում Մշարում և Սասունի Թոռնիկ իշխանից պահանջում հպատակվել իրեն. մերժում ստանալով՝ Փիլարտոսը հարձակվում է նրա վրա։ Թոռնիկը պարտասվելով դիմադրություն ցույց տալ և գնաց Ծապաղ-ջուր, այնտեղից էլ Աշմուշատ քաղաքը՝ նրան ընդառաջ և Ալելուա դաշտում ընդհարվեց թշնամու հետ։ Փիլարտոսը պարտություն կրեց ու փախավ Խարբերդ, իսկ Թոռնիկը վերադարձավ Սասուն. «Այս եղեւ ի Հանձիթ գաւառին ի յԱլելուա դաշտին»,— գրում է պատմիչը[1]։ Նշանակում է, ուրեմն, որ Խարբերդը, Աշմուշատը և Ալելուան գտնըվում էին Անզիտենեի գավառում։

Մշարը, որտեղ իր ճամբարն էր խփել Փիլարտոսը, այսօրվա Մուշարյան լեռների շրջանն է, Եփրատի ափին, Մալաթիայի դիմաց, որտեղ գտնվում է հայկական Սուրբ Ահարոն վանքը։ Մշարի և Խարբերդի միջև նույնանուն լեռների ստորոտում հայտնի է Բելխան քաղաքը՝ Պտղոմեոսի Βελκανία-ն։ Նրանից հարավ, Եփրատ թափվող գետի վրա, ընկած է Մազարա գյուղը, որ նույնն է, ինչ որ պատմական Mazara-ն։ *Tab. Peut* հայտնի ուղեցույցի մեջ Mazara-ն նշվում է իբրև չորրորդ կայան՝ Մելիտենեից հետո։

Melentines VIII Ad aras IX Thirtoma VIII Mazara. Ad aras-ի տակ պետք է հասկանալ Եփրատի ափը՝ Իզ-օղլու ավանի մոտ, որտեղ ինչպես այժմ, հավանորեն նաև վաղ ժամանակներում կատարվում է գետանցը։ Այստեղից մինչև այժմյան Մազարա գյուղը 40 կիլոմետրից ավելի չէ, որ համապատասխանում է գետափից մինչև Մազարա 25 մղոն տարածությանը, ինչպես նշված է հիշյալ ուղեցույցի մեջ[1]։

---

[1] Մատթեոս Ուռհայեցի, էջ 248—251, «Փիլարտոս... եկեալ բնակեցաւ ի Մշարն... Թոռնիկ գայր ի Ծապղ-ջուր... ի յԱշմուշատ քաղաքն եւ յԱլելուա դաշտին հանդիպեցան զօրքն Փիլարտոսին... եւ գնաց փախստական ի Խարբերդ։ Այս եղեւ ի Հանձիթ գաւառին ի յԱլելուա դաշտին»։

[2] Hübschmann-ը *Orstname*, p. 301 և Kiepert-ը, *Kleinasien*, հին Մազարան,

Հայկական Ծովքը թուրքերեն այժմ կոչվում է Գյոլջիկ. այն մի փոքրիկ ալպյան լիճ է Խարբերդից ոչ հեռու, արևմտյան Տիգրիսի ակունքների մոտ[1]։ Որոշ հավանականությամբ Hore berd-ն էլ կարող է համեմատվել Khar-berd-ի հետ, մանավանդ, եթե ընդունենք, որ արաբական հեղինակների Խարտա-բերդը պետք է կարդալ Խարե-բերդ[2]։ Խարբերդը, ինչպես տեսանք, գտնվում էր Անզիտենեում՝ Ալելուա դաշտում. այստեղ էր գտնվում նաև Ծամուշատը։ Ա լ ե լ ու ա դ ա շ տ ը համապատասխանում է այն դաշտին, որ հին հեղինակները կոչում էին Գ ե ղ ե ց ի կ, որտեղ և գտնվում էր Արսամոսատ քաղաքը[3]։ Այդ փաղաքշական անվանը

ինչպես մեզ թվում է, անհիմն կերպով նույնացնում են Խարբերդի մոտ գտնվող Մեզրեի հետ։ Բանն այն է, որ Խարփութի Մեզրեի ծագումը բոլորովին նոր է. այն հիմնել են Խարբերդից դաղթածները։ Կինեի բացատրությամբ II, 355 և շար. քաղաքի դիրքը ժայռոտ լեռան վրա, ջրի պակասությունը քաղաքային կարիքների համար, նեղ փողոցները, շինափայտի սակավությունը և այս կարգի այլ անհարմարությունները ստիպել են բնակիչներին տեղափոխվել քաղաքին մոտիկ դաշտավայրը, որտեղ այդ անհարմարությունները չկան։ Վիլայեթի կենտրոն հայտարարվելուց հետո Մեզրեն Խարփութից ավելի շատ ժողովուրդ գրավեց դեպի իրեն։ 1864 թ. սուլթան Աբդուլ-Ազիզի թագավորության օրոք այն վերանվանվեց Մամուրեթուլ-Ազիզ, որ նշանակում է Ազիզից բարեշնորհված, կամ Ազիզի շնորհիվ երջանիկ դարձած քաղաք։ Հակառակ Հյուբշմանի նախազգուշացմանը, թե «Մեզրեի անունը պետք տարբերել սովորական mezre-ից, որ նշանակում է վարելահող, մենք կարծում ենք, որ Մեզրեն հենց հիշյալ բառից է ծագում։ Մեզրէ, արաբերեն مزرعه վարելու դաշտ, յայլաղի և կշլաղի հետ նույն նշանակությունն ունի։ Իր տեղադրությամբ Մեզրեն լեռնոտ Խարբերդի համեմատությամբ իրոք որ mezra է։

[1] Գյոլջիկը کولجك, փոքրիկ լճակ, մակերեսն է 50 քառ. կիլոմետր և խորությունը՝ 70—90 մետր, Cuinet, II, p. 399։ Համանուն մի բերդի մասին հիշատակում է Մատթ. Ուռհայեցին, էջ 544, «Ի բերդն կաթողիկոսի, որ Ծով ասի»։ Այն կանգնած էր հավանաբար կղզու վրա, որտեղ այժմ էլ կա հայկական փոքրիկ մի գյուղ, Ինճիճյան, Աշխարհագր. էջ 240։

[2] Գրությամբ թույլատրելի է خرتبرت ընթերցումը փոխ. خربرت-ի հայերեն՝ *խարե-բերդ. եթե միայն մուսուլմանական Խարտաբերդը չի ծագում հայ խար(տ)-բերդից, ինչ-որ հնարավոր է, հմմտ. Ճանիքի Խարտ բերդի հետ։

[3] Polyb. VIII 25, Ἀρσαμόσατα, ἣ κεῖται πρὸς τῷ Καλῷ πεδίῳ καλουμένῳ μέσον Εὐφράτου καὶ Τίγριδος, հմմտ. «Մատթ. Ուռհ. «յԱշմուշատ... ի յԱլելուա դաշտին»։ Մի ուրիշ տեղ նույն հեղինակը գրում է. դնան ի Հանձիթ գաւառ եւ յաշու? ունէին դամուր բերդն Խարբերդոյ, էջ 443։ Խոսքն այստեղ, իհարկե, նույն Ալելուայի մասին է։ Յաշու պետք է կարդալ յալուս Ինճիճյանի օգտագործած ձեռագրերում Աշխարհագր., էջ 50, եղել է նաև Ալէուա։ Մենք կարծում ենք, որ ալէու, ալելու, ալու, թուրքական ulu اولو, կապ ունեն Hul-ի,

միանգամայն արժանի է Խարբերդի դաշտավայրը, որը մեր օրերում էլ աչքի է ընկնում իր բարրիությամբ և բնակչության խտությամբ։ Խարբերդի կազայում եղած 300 գյուղերի մեծ մասը գտնվում է այս դաշտավայրում։ Թուրքերեն այն կոչվում է Օլու-օվա, այսինքն՝ Մեծ դաշտ, բայց ակներև է, որ Օլուն ծագում է հին Ա լ ե լ ու ա անունից և միայն իմաստավորվել է թուրքական ձևով։

Անգիտենեի մյուս քաղաքը՝ Շամոշատը, գտնվում էր Արածանի-Մուրադ գետի վրա, Խարբերդից ոչ հեռու։ Ըստ Ժ դարի արաբ գրող Իբն-Սերապիոնի նկարագրության Արզանաս գետը, որ կոչվում էր նաև Շամշատ, «հոսում է Շամոշատ քաղաքի պարսպի կողքով, իսկ այնուհետև Հիսն-Զիադի պարսպի մոտով»։

Որ «Շամշատը հեռու չէ Հիսն-Զիադից», հաստատում է նաև Թ դարի գրող Իբն-Խորդադբեհը։ Նույն տեսակետին է հակված նաև Յակուտին, ըստ Նրա հայկական Շիմշատ քաղաքը, որ նրա ժամանակ՝ ԺԳ դարի սկզբին, արդեն ավերված էր և շատ քիչ բնակչություն ուներ, ընկած էր Խարտաբերդի և Բալուի միջև։ Ինչպես շատերի հետ վկայում է նաև Յակուտը՝ Հիսն-Զիադը, այսինքն Զիադ ամրոցը նույն Խարտաբերդի կամ Խարբերդի մի այլ անվանումն է[1]։

Խարբերդի դաշտում Գյոլջեկի և Արածանիի միջև գտնվում է Շամուշի, Շամուշիա կամ Շամշեյ գյուղը, որի անունը հիշեցնում է հին Շամշատը։ Նրանց կատարյալ նույնացմանը խանգարում է, թերևս, միայն այն պատկերացումը, որ գոյություն ունի Սամոսատի մասին որպես լեռների մեջ գտնվող բերդի։ Ըստ Իբն-Սերապիոնի «քաղաքից վերև մի բարձր լեռ կա, որ պարփակում էր քաղաքը»։ Տակիտոսը այն անվանում է castellum։ Բայց հնարավոր է, որ պատմական այդ քաղաքը գտնվել է նույն այդ շրջանում, լեռներին ավելի մոտ և նրա կործանումից հետո ազատված բնակիչները հաստատվել են մերձակա դաշտավայրում և, ինչպես հաճախ պատահում է, իրենց նոր բնակավայրին են փոխանցել հայրենի քաղաքի անունը։ Համենայն դեպս մեզ

---

Hul վանքի հետ։ Գուցե սրան է վերաբերում նաև Պտղոմեոսի հիշատակած Η λ έ-γερδα քաղաքը Անգիտենեում։

[1] Plin. *Nat. hist.* VI 26, in Majore Armenia Arsamosata Euphrati proximum. Մատթ. Ուռհայեցի, *էջ 251, «ի բերդն իւր յԱշմուշատ քաղաք, ի յԱրծնոյ վերայ»*. Իբն-Սերապիոն, *JRAS, 1895*, p. *11.* Իբն-Խորդադբեհ, *Geog. Arab.* VI, p. 123. Le Strange, *op. cit.* p. 117։

*անհայտ է Շամուշիայի տեղադրությունը. թերևս այն իրենից ներկայացնում է մի ամրացված վայր։ Եթե պարզվի, որ այդ տեսակետից Շամուշիան չի կարելի ընդունել որպես հին քաղաք, ապա, համենայն դեպս, նա այն կետն է, որի շրջակայքում պետք է որոնել մեզ հետաքրքրող հնավայրը։ Այս եզրակացությունը հաստատվում է նաև նրանով, որ Սամոսատը, ինչպես պարզվում է Պետոսի և Վաղարշի միջև տեղի ունեցած պատերազմների պատմությունից, ընկած էր այն գլխավոր ճանապարհի վրա, որ տանում էր Մելիտենեից դեպի Ամիդ և Տիգրանակերտ։ Շամուշիան իրոք գտնվում է այդ գծի վրա։ Վաղարշի դեմ ուղարկված հռոմեական զորավար Պետոսը շարժվեց Կապադովկիայից և կանգ առավ Արսամոսատի շրջանում։ Թշնամու ճամփան կտրելու նպատակով «իր ընտիր հետևակը նա տեղավորեց մոտակա Տավրոսի լեռներում, իսկ դաշտավայրի մի մասը զբաղեցրեց նրա հեծելազորքը, կնոջը և որդուն փակեց մի ամրոցում, որ կոչվում էր Արսամոսատ... Նրա ճամբարի առջևով հոսում էր Արսանիա գետը»*[1]*։*

*Երբ Վաղարշը հարձակման անցավ, լեռնանցքներում տեղավորված հռոմեացիները չկարողացան դիմանալ թշնամու ճնշմանը և ետ շպրտվեցին. ողջ մնացածները փախան խուլ տեղեր, իսկ վիրավորները շտապեցին ճամբար։ Վաղարշը պաշարեց Արսամոսատ ամրոցը, ուր պաշտպանություն էին գտել զենք կրելու անընդունակ անձինք և որտեղ, ըստ երևույթին, պատսպարվել էր ոչ միայն Պետոսի ընտանիքը։ Պետոսը ստիպված եղավ բանակցություններ սկսել և հասավ պաշարման վերացմանը, խոստանալով, որ բոլոր զինվորները կհեռանան Հայաստանի սահմաններից և բերդը կհանձնեն պարթևներին։ Արսանիա գետն անցնելու համար Պետոսը կամուրջ գցեց, բայց պարթևները, գրավելով կամուրջը, խանգարեցին նրան։ Հռոմեացիները հարկադրված եղան գնալ այլ ուղղությամբ։ Պետոսը արագ նահանջեց և Եփրատի ափին հանդիպեց Կորբուլոնին, որը մինչ այդ Ասորիքում էր և Կոմագենեի ու Կապադովկիայի վրայով օգնության էր գալիս նրան։ Այս բոլորից երևում է, որ Պետոսի գրաված լեռնանցքները գտնվում էին Տավրոսյան լեռների այն մասում, որ տարածվում էր Արղանա-Մադանի վերևով դեպի Արածանի։ Վաղարշը, անցնելով լեռների մյուս կող-*

[1] Tacit, *Ann.* XV *10,* flumini Arsaniae (etinim is castra praefluebat) pontem imposuit, *և շար.* XV *13.*

մը, պաշարեց Արսամոսատ-Շամուշիան, որից ոչ հեռու գտնվում էր Պետոսի բանակը։ Վերջինս կամենում էր անցնել Արսանիան և գնալ դեպի հյուսիս, բայց պարթևները ստիպեցին նրան բռնել դեպի արևմուտք՝ Մալաթիա տանող ճանապարհը։ Եփրատն անցնելու ժամանակ էլ հենց նա հանդիպեց Կորբուլոնին։ Դիոն Կասիոսի հաղորդած տեղեկություններից իմանում ենք, որ Վաղարշը «փակում է Պետոսի ճանապարհը դեպի Հռանդեա, որ գտնվում էր Արսանիայի ափին»։ Ուրեմն, այն կետը, դեպի ուր սկզբում դիմեց Պետոսը, բայց պարթևների կողմից հանդիպեց արգելքի, Հռանդեան էր. հիշյալ պատմությունից երևում է, որ այն գտնվում էր Արսամոսատի հանդիպակաց ափին, այսինքն՝ գետի աջ կողմում։ Արսանիայի գետանցը կատարվում է Շամուշայից վերև՝ Պիստեկ քաղաքի մոտ։ Այստեղ, գետի ափին, գտնվում են մի հինավուրց անհայտ քաղաքի ավերակներ, որոնք համապատասխանում են Հռանդեային, հայկական Եռանդ-ին, որ հիշվում է Հայոց Պապ թագավորի մասին Փավստոսի արած պատմության մեջ[1]։

Պտղոմեոսը Անզիտենեում հիշատակում է նաև ῎Ανζιτα բնակավայր, որի տեղադրությունը ավելի անորոշ է, քան Սամոսատինը։ Եփրեմ Ասորին իր երգերի մեջ ողբում է Անզիտ բերդի ճակատագիրը, որ նրա օրոք, ի թիվս այլ քաղաքների, ենթարկվել է պարսիկների հարձակմանը։ Դա, անկասկած, Ամմիանոսի հիշատակած Զիաթա բերդն է, որը 359 թվականին, իրոք գրավեց պարսից Շապուհ թագավորը։ Բայց castellum Ziata-ն կարծես թե համապատասխանում է արաբ հեղինակների hisn Ziad-ին, որոնք այս անվան տակ նկատի ունեն Խարբերդը։ Թե ինչ կապ ունի Զիաթան Եփրեմի Անզիտի և այս երկուսը՝ ῎Ανζιτα-ի հետ, բոլորովին պարզ չէ։ Հարցը բարդանում է նաև նրանով, որ Իբն-Սերապիոնը նույնպես գիտե և խոսում է մի ինչ-որ Անզիտա քաղաքի մասին, բայց այն դնում է բոլորովին ոչ այն վայրում, որտեղ որ Խարբերդն է։ Ըստ նրա տեղեկության Եփրատ գետը սկիզբ է առնում Ակրադխիս լեռից, ողողում է Միաֆին լեռների ստորոտը և անցնում Կամախ քաղաքի միջով ու Մինշար բերդի

---

[1] Dio Cass. LXII 21, φεύγοντα δὲ αὐτόν (sc. Παῖτον) ἐπιδιώξας τὴν τε ἐπὶ τοῦ Ταύρου καταλειφθεῖσαν ὑπ' αὐτῶν φρουρὰν ἐξέκοψε καὶ ἐκεῖνον ἐς Ῥάνδειαν πρὸς τῷ 'Αρσανίᾳ ποταμῷ οὖσαν κατέκλεισει. Փավստոս, Դ, ա, «յԵռանդ եւ ի Բախիշն», նույն տեղում, Ե, գ, «յԵռանդին ի Բախշանն»։

*մոտով, ապա հոսում է Մալաթիայից երկու մղոն հեռավորության վրա և այնուհետև անցնում է Անզիտ ու ապա Սումայսատ քաղաքների միջով... և այլն»։ Ըստ այս նկարագրության, Անզիտը ընկած էր Եփրատի մոտ, Մալաթիայի և սարական Սումայսատ-Արսամոսատի միջև։ Եփրատի վտակներից մեկը, նույն հեղինակի ասելով, բխում է 62°20′ երկարության և 41°5′ լայնության տակ գտնվող լեռից, անցնում է Անզիտ քաղաքի և նրա գավառի միջով և թափվում է Եփրատի մեջ 61°30′ երկարության և 39°20′ լայնության տակ։ Դատելով վերոհիշյալ աստիճանաչափերից, այն վտակը, որի վրա գտնվում էր Անզիտը, հոսում էր արևելքից դեպի հարավ-արևմուտք և ուրեմն, քաղաքի հետ միասին գտընվում էր Եփրատի արևելյան ափին։ Թե ո՞ր վտակի մասին է խոսքը, դժվար է ասել, բայց իր դիրքով նրան ավելի մոտենում է Ձալգար գետը, որի մոտ գտնվում է Մազարան և որտեղ պետք է փնտրել Անզիտ քաղաքը։ Այդ կողմից Անզիտենեի գավառը տարածվում էր մինչև Եփրատի գետափը, ինչպես երևում է այն ցուցումից, թե Մալաթիայից այն կողմ, Եփրատի մյուս ափից անմիջապես սկսվում էր Անզիտի հովիտը[1]։*

*Անզիտենեի ստույգ դիրքի ճշտումը շատ կարևոր է, քանի որ այն Սոփենեի երկու մասի բաժանվելու հավանական պատճառն է եղել։ Նա գրավում էր հին Սոփենեի միջին շերտը և, դուրս գալով նրա կազմից, Սոփենեն բաժանեց արևելյան և արևմտյան կամ ավելի ճիշտ՝ հյուսիս-արևմտյան և հարավ-արևելյան մասերի։ Առաջինը ընկած էր Արածանիի վրա, Բալավիտենեի կողքին՝ Մուզուր և Եփրատ գետերի միջև և տարածվում էր դեպի հյուսիս՝ Չմշկածագի, Մեծկերտի, Խոզանի ուղղությամբ մինչև բնական սահմանը՝ Կաղիկլինյան լեռները և կոչվում էր Ծահունյաց Ծոփք կամ Ծահե, երբեմն էլ՝ Փոքր Ծոփք ի տարբերություն Մեծ Ծոփքի, այսինքն՝ հարավ-արևելյան մասի, որը գտնվում էր Հաշտյանքից հարավ, արևմտյան Տիգրիսի երկու ափերին, ընդ որում, ինչպես մենք տեսանք, աջ կողմից հասնում էր մինչև Ինաբեղ և Փիտար։*

[1] Ephr. Syr. *Carmina Nisibena,* ed. Bickell, p. 93, Carmen... de An (a)-zit castello=Amm. XIX 6, 1 Ziata capto castello. Իբն-Սերապիոն, *loc. cit.* Bar-Heb. *Chron. Syr.* p. 506, venit usque ad Euphratem in - limite Malatiae et transiit in vallem Hanzith, Հմմտ. *Chr. Ecc.* I, p. 412։

*Շահունյաց Ծոփքը, ըստ Փավստոսի (Դ, իդ), գտնվում էր Անզիտենեի և Մուզուրի միջև: Աշխարհացույցի մեջ Ծոփքն այն գավառն է, որ ընկած է «Պաղնատունից և Բալահովիտից արևմուտք, այսինքն՝ համապատասխանում է Շահունյաց Ծոփքին: Հետաքրքրական է, որ Պտղոմեոսն էլ Սոփենե անելով հասկանում էր միայն Փոքր Սոփենեն. ըստ նրա էլ Սոփենեն Եփրատի և նրա վտակ Արածանիի միջև պարփակված գավառներից մեկն է և գտնվում է Ակիլիսենեի և Աշտիանենեի մոտ, գետի միևնույն վտակի, այսինքն՝ Արածանիի ուղղությամբ*[1]:

*Հայ պատմիչներից միայն Փավստոսն է, որ տեղյակ է և միմյանցից տարբերում է երկու Ծոփք: Արևմտյան գրականության մեջ երկու Ծոփք հիշատակվում են 451 թ. Քաղկեդոնի ժողովի արձանագրությունների մեջ: Ժողովին մասնակցող երկրների շարքում հիշվում է Միջագետքը յուր վեց ներկայացուցիչներով՝ Ամիդի, Սոփենեի (Ծոփքի), Անզիտենեի, Մարտիրոսուպոլսի, Ինգելա-Անգելենեի և Սոփան-ենեի եպիսկոպոսներով*[2]: *Այդ երկու գավառ-*

---

[1] Փավստոս, Դ, *իդ «Ծոփք Մեծ և Ծոփք Շահունեաց» (ավելի ճիշտ՝ Շահունեաց, ինչպես Ինճիճյանի մոտ,* Ստորագր. *էջ 48), Ծոփք Շահէի, Գ, ժբ, Շահունի:* Վարդան, Աշխարհագր. *«Ծոփաց գաւառն Մեծկերտ եւ Ձմշկածագ է»:* Պատմ. Երուս. վանքերի *«Ծոփաց գաւառն, որ այժմ կոչի Ձմշկածագ»,* Ասողիկ, *էջ 63, «յաշխարհն Ծոփաց ի գիւղաքաղաքին Խողան»:* Ptol. V 12, πρὸς αὐτῆ τῆ ἐκτροπῆ τοῦ ποταμοῦ ἡ Σωφηνή.

[2] Mansi, VII p. 403, provinciae Mesopotamiae ep. *VI*: Symeon Amudensis, Noe Cesariensis, Z e p h a n e n s i s, Maras Azetiniensis, Zebennos Martyropolitanus Gaiumas Inseles, Inreles *(sc.* Ingeles*)*, Eusenius *(sc.* Eusebius*)* Rufuniensis, S u p h a n i e n s i s. *Գավառների ժողովի մասնակիցների ցանկը հայտնի է միայն մեկ կոդեքսից* Cod. Malfeai, *ինչպես վկայում է հրատարակիչ Լաբբեն: Անունները մի քիչ աղավաղված են,* Cesariensis-*ը հավանորեն* Zephanensis-*ի աղավաղումն է, բայց այդ դեպքում այնքան էլ հասկանալի չէ երկու Ծոփքերի (Սոփանենեների) կողքին նշանակությունը Մարտիրոսուպոլսի առկայության դեպքում, քանի որ այս վերջինս, ինչպես հայտնի է, համարվում էր Սոփանենեի քաղաք: Ժողովի նիստերի ստորագրությունների մեջ Սիմեոն Ամիդացուց բացի հիշատակվում է նաև Զավեն Մարտիրոսուպոլսեցին, իսկ VI նիստի ստորագրության մեջ ասվում է.* Συμεώνης ἐπίσκοπος 'Αμίδης τῆς μητροπόλεως, ὑπέγραψα καὶ ὑπὲρ τῶν ὑπ'ἐμὲ, Εὐσεβίου Μαρονουπόλεως, Καιουμᾶ Οὐαλαρσεκουπόλεως, Σηριχίου πόλεως... δία Πετρου πρετβυτέρου. Mansi, VII p. 166—167.

*Վերը հիշված Եվսեբիոսը և Կայուման Սոփանենեի և Անգելենեի եպիսկոպոսներն են, որից էլ պետք է եզրակացնել, որ Անգել ամրոցը այլ կերպ կոչվում էր Վաղարսեկոպոլիս, իսկ Մարոնոպոլիսը մեզ անծանոթ քաղաք է Սոփանենեում:*

ների տարբերությունը շատ որոշակի կերպով երևան է գալիս Հուստինիանոսի դեկրետներում, ընդ որում այստեղ ևս այդ տարբերությունն արտահայտվում է Սոփենե և Սոփանենե տեղանուններով։ Այսպիսով, արևմտյան վավերագրերը զանազանություն են դնում երկու տեղանունների միջև, որոնք, ըստ էության, միևնույն տերմինի լոկ երկու տարբեր ձևերն են։ Հունա-հռոմեական տեսակետից Սոփենե ձևը Սոփանենեից ավելի հին է և ավելի գործածական։ Այն հանդիպում է Ստրաբոնի, Պլինիոսի, Հովսեպոս Փլավիոսի, Պլուտարքոսի, Ապպիանոսի, Դիոդորոսի, Պտղոմեոսի և ուրիշների մոտ։ Սոփանենե ձևն ըստ Ստեփանոս Բյուզանդացու վկայության առաջին անգամ հանդիպում է Բ դարի գրող Արրիանոսի մոտ[1]։ Թե ի՞նչ իմաստ ուներ Սոփանենեն Արրիանոսի մոտ, մենք չգիտենք, բայց Ե դարի գրողը օգտվել է Արրիանոսից և էական տարբերություն չի դրել երկու ձևերի միջև։ Տարակուսելի է նաև, թե Դիոն Կասիոսը, որի մոտ հանդիպում է Սոփանենե ձևը, գործածած լիներ այն ի տարբերություն Սոփ-ենեի։ Ճիշտն այն է, որ ըստ Կասիոսի և մյուսների Սոփանենեն հավասարազոր է եղել Սոփենեին, որոնց տակ հասկանում էին ավելի կամ պակաս չափով իրենց ծանոթ միևնույն երկիրը, առանց որևէ տերիտորիալ սահմանազատման։ Հետագայում դրանց մեջ առաջացած տարբերությունը միանգամայն պայմանական է։ Մեզ զբաղեցնող երկիրը մեր թվարկությունից շատ առաջ հայտնի էր Supani անունով, որին համապատասխանում է Σωφαν-ηνή

ի պատասխան Քաղկեդոնի ժողովի վերաբերյալ Լևոն կայսեր արած հարցումին Միջագետքի եպիսկոպոսների պատասխան նամակը ստորագրված է հետևյալ ութ եպիսկոպոսների կողմից՝ Zoras (ավելի ճիշտ՝ Maras, ինչպես վկայված է նամակի վերնագրում), Maronius, Noe, Eusebius, Reticius, Valaras, Maras, Abrahamus. Mansi, VII, p. 555. Այս անձերից Maras-ը, Noe-ն և Eusebius-ը Անզիտենեի, Սոփանենեի և Սոփենեի վերը հիշված եպիսկոպոսներն են, Reticius-ն, անկասկած, Պետրոս երեցի ստորագրության մեջ հիշված Σηρίκιος-ը կամ Tyricius-ն է։ Մեզ թվում է, որ Μαρονου] πόλεως-ը և Οὐαλαρσεκου] πόλεως-ը ևս պետք է հասկանալ որպես Maronius և Valaras եպիսկոպոսների անուն (հայ. Վաղարշ, Վաղարշակ Οὐαλαρσεκ), ընդ որում այն քաղաքների անունները, որոնց ներկայացուցիչները էին հիշյալ եպիսկոպոսները, ձեռագրերից դուրս են ընկել, Σηικίου πόλεως... Այդ դեպքում Valarsecopolis-ը կդառնա աշխարհագրական շինծու անուն։

[1] Steph. Byz. Σωφηνή, χώρα τῶν πρός 'Αρμενίαν, ὡς Στράβων ἐν ἑνδεκάτῃ. παρὰ δ' 'Αρριανῷ Σῶφανηνή τετρασυλλάβως. οἱ κατοικοῦντες Σωφηνοί.

ձևը և այս պատճառով եթե հունա-հռոմեական տեսակետից Σωφ-ηνή ավելի գործածական է, քան Սոփենեն, ապա պատմականորեն վերջին ձևը անշուշտ ավելի հին է։ Նախահայկական Supani տեղանունը անցել է հայոց լեզվին Ծոփք ձևով, որի մեջ վերջին ք-ն ani-ի պարզ համարժեքն է, որ հայերից առաջ այդ երկրում ապրող բնիկների լեզվում հոգնակիի նշանն էր։

Supani անվանումը հարազատորեն պահպանվել է ասորական Sofan-aje ձևի մեջ՝ հավանորեն հնարնակների հետ ասորիների ավելի մոտիկ ազգակցություն ունենալու հետևանքով։ Հայկական և ասորական ձևերը իրապես, այսինքն՝ աշխարհագրական ըմբռնումով, համընկնում են և նշանակում միևնույն երկիրը, որ բնակեցված էր գերազանցապես հայ և ասորի ծագում ունեցող ժողովուրդներով։ Հույները Սոփենեին առաջին անգամ ծանոթացան Հայաստանի կողմից, այսինքն՝ նրա հյուսիս-արևմտյան մասերից, որոնք հարում էին Եփրատին և որտեղ գերազանցապես հայեր էին բնակվում, և ամբողջ երկիրը սկսեցին Սոփ-ենե կոչել հայկական Ծոփ-ք-ի ազդեցությամբ (ինչպես Գուգար-ք Γωγαρηνή)։ Իսկ երբ մեր թվարկության երկրորդ դարում, Տրայանոսի օրոք Միջագետքը դարձավ հռոմեական պրովինցիա, և հռոմեացիները սերտ շփման մեջ մտան Սոփենեի հետ նաև այս կողմից, ապա յուրացրին նաև այդ երկրի անվանման ասորական ձևը, և Սոփանենեն սկսեց գործածվել Սոփենեի հետ իբրև նույնիմաստ հասկացություն։

Սոփենեի բաժանումից հետո նրա մասերը հայերի մոտ պահեցին իրենց նախկին անունը՝ զանազանելով դրանք Շահունյաց կամ Փոքր և Մեծ մակդիրներով։ Հունա-հռոմեական աշխարհում տվյալ իրադրության մեջ հնարավոր եղավ կողմնորոշվել միայն 298 թվականից հետո, երբ երկու Ծոփքերի վերին հոսանքները անցան կայսրերի իշխանության տակ։ Վերին Սոփենեին տրվեց Հայկական Ծոփ-ք Soph-ena, իսկ ներքին Սոփենեին, որ հարում էր Ասորիքին՝ ասորական անվանումը՝ Sufan, Sophan-ena։ Ասորիները հայկական Սոփենեն նույնպես սկսեցին կոչել Sof[1]։ Այս անունների վերջնական հաստատագրումը կատարվեց, թեև

---

[1] Օրինակ, Ինչու Այունահեաց, էջ 39, «Կատող ավերեց Agel-ը, Sūph-ը և Armenia-ն». այստեղ Սոփ=Սոփենեին, որ հայոց Շահունյաց Ծոփ-քն է։

ճիշտ է, ոչ միանգամից, այնպես որ, նույնիսկ Ե դարում, ինչպես այդ երևում է Ստեփանոս Բյուզանդացու օրինակից, այն դեռևս բոլորին հայտնի չէր։ Սոփանեննն իր նոր իմաստով, այսինքն՝ հայկական Մեծ Ծոփքի նշանակությամբ, առաջին անգամ հիշատակվում է 387 թվականին Gaddanae satrapae Sophanenae անունով տրված կայսրական դեկրետի մեջ։ Սատրապի սատրական անունը ցույց է տալիս, որ խոսքը Մեծ Սոփենեի մասին է, որտեղ ուժեղ էր սատրական ազդեցությունը։

Սոփանենեի մի մասը կոչվում էր Անգեղենե։ Թվում է, թե նրա ծագումը վերաբերում է Սոփենեի տրոհումից հետո ընկած ժամանակաշրջանին և առաջացել է Մեծ Ծոփքից ճիշտ այնպես, ինչպես Անզիտեննեն չտրոհված Սոփենեից։ Քրիստոնյա Արշակունիների ժամանակ, Դ դարում Անգեղտունը արքունի կալվածք էր։ Արշակի թագավորության ժամանակ ընդհանուր դժգոհությունների դժվարին օրերին, երբ նախարարները սկսեցին պառակտվել և հեռանալ նրանից, Անգեղտունը թագավորին հավատարիմ մնաց, և երբ Մուշեղ Մամիկոնյանը վերականգնեց Արշակունիների իրավունքները ապստամբած գավառների վրա, Անգեղտունը անպատիժ մնաց, «քանի որ ամբողջ նահանգը հնուց ի վեր արքայական կալվածք լինելով՝ հնազանդ մնաց»։ Արծրունյաց գավաճան իշխան Մերուժանի ավերիչ ասպատակությունների ժամանակ Արշակը նստած էր Անգեղտանը։ Ինչպես երևում է, այդ գավառը ժամանակավորապես եղել է Արշակունի թագավորների բնակության վայրը։ «Այստեղ էին գտնվում Արշակունիների գերեզմանները, և պահվում էին նրանց հարուստ գանձերը, որ վաղ ժամանակներից ի վեր կուտակել էին նրանց նախնիները», այդ պատճառով էլ Մերուժանը, ասպատակելով Աղձնիքն ու Մեծ Ծոփքը, խուժեց Անգեղտուն և պաշարեց Անգեղ բերդը։

Արշակի և նրա հոր՝ Տիրանի ժամանակ Անգեղտան իշխանն էր Դրաստամատը։ Բայց իրականում նա այդ գավառին իշխում էր ոչ թե սեփական իրավունքով, այլ ավելի շուտ կառավարում էր այն՝ նշանակված լինելով թագավորի կողմից, որի բարեհաճությունն էր նա վայելում։ Նրան էր հանձնված արքունի գանձերի և ամրոցների պաշտպանությունը։ Նրա իսկական կոչումը ոստիկան էր (ostikan), որը կապ ունի ոստան-ի հետ և համանաբար նշանակում է թագավորական ոստան-կալվածքի վերա-

կացու։ Իր այդ պաշտոնով էլ նա մյուս իշխանների շարքում գրավում էր բարձր դիրք[1]։

Արշակունիներին անհրաժեշտ էր հենակետ ձեռք բերել հարավում՝ այնպիսի վայրում, որը այնքան մեծ դեր էր խաղում պարսկա-հռոմեական ընդհարումների մեջ, ուստի նրանք հաստատվեցին Անգեղ բերդում, որով հիմք դրվեց բերդի անունով Անգեղտուն նոր գավառի ստեղծմանը։ Նրան անցավ Անգեղ բերդի շուրջն ընկած Սոփանենեի մի մասը՝ Ջիբանա և Արղանա գետակների միջև։ Հոչակավոր Անգեղ բերդի ավերակները գտնվում են այժմյան Ագիլ ավանի մոտ, որ պահել է հին անունը։

Անգեղտան անջատումով Ծոփքի սահմանները այդ կողմից նշանակալիորեն կրճատվեցին. Տիգրիսի ձախ ափին նրան մնաց միայն Մարտիրոսուպոլսի գավառը և այն էլ, ինչպես երևում է Աշխարհացույցից, հետագայում հանձնվեց Արղանեններին։

Այսպիսով, նկարագրված գավառները ընկած էին Տիգրիսի և Եփրատի միջև այն դասավորությամբ, ինչպես դրանք բերված են Փավստոսի մոտ։ Դավաճան Մերուժանը, պարսից զորքերի գլուխն անցած, ասպատակեց ու ավերեց Աղձնիքը, Մեծ Ծոփքը, Անգեղտունը, Անձիտը, Շահունյաց Ծոփքը և ապա նաև հյուսիսում՝ Մզուրը, Դարանաղիքը և Եկեղիքը։ Երկու Ծոփքերը, Անգեղտունը և Անձիտը Հաշտյանքի և Բալահովիտի հետ միասին կազմում էին վեց ինքնավար սատրապություններ, որոնք հիշատակված են վերոհիշյալ պաշտոնական վավերագրի մեջ։ Բայց մենք տեսանք, որ ժամանակակից պատմագիր Պրոկոպիոսը հաշվում է հինգ ինքնավար սատրապություններ։ Որտեղի՞ց է այդ թյուրիմացությունը։ Հինգ թիվը պատմագրի գլխում ծագել է, ակներևաբար, այսպես կոչված անդրտիգրիսյան այն հինգ երկրների մասին պատմական

---

[1] Փավստոս, Ե, ժը, «ոստանն արքունի լեալ»... Դ, իդ, «Արշակ... յԱնգեղ տանն էր յուտեստ», Դ, իդ, «յԱնգեղտան գերեզմանք շիրմացն արանցն Արշակունեաց. բազում դանձք մթերեալ մնացեալ կային», Ե, է, «ոստիկան հաւատարիմ»։ Այս բառի իմաստը պարզվում է պատմիչի հետևյալ խոսքերից. «վերակացու եւ ոստիկանս յերկրին Աղձնեաց թողուին», Ե, ժգ, որտեղ վերակացուն ճշտորոշում է ոստիկան-ը: Ասորինները ոստիկանի իշխանության տակ գտնվող Արզանենեն կոչում էին Arzon, իսկ նրա մի մասը Արզանենեն κατἐξοχήν, Ostan Arzon կամ նույնիսկ beθ Ostan (Aoustan)։ 410 թ. եկեղեցական ժողովում ներկա էին Arzōn-ի Դանիել եպիսկոպոսը և Arzōn de Beth de Aoustan-ի Սամուել եպիսկոպոսը (Chabot, Syn. Or. p. 274)։

հիշողություններից, որոնք այնքան լավ հայտնի են պարսկա-հռոմեական հարաբերությունների պատմությունից։ 298 թվականին, այն բանից հետո, երբ Գալերիոս Մաքսիմիանոսը պարսից Ներսեհ թագավորին ամոթալի պարտության մատնեց, հռոմեացիներն անցան «Անգեղտունը Ծոփքի ու Աղձնիքի՝ Կորդուքի ու Ծավդեքի հետ», այսինքն՝ ընդամենը հինգ գավառ։ 363 թվականին պարսիկները վրեժխնդիր եղան, և ահեղ Շապուհը հաղթելով Հովիանոսին, «համառորենետ պահանջեց իր նախկին նահանգները, որոնք, ինչպես ինքն էր ասում, խլել էր Մաքսիմիանոսը, այսինքն՝ անդրտիգրիսյան հինգ երկրները՝ Աղձնիքը, Մոկքը, Ծավդեքը, Ռեհիմենեն և Կորդուքը»[1]։

Պատմագիրը բանն այնպես է ներկայացնում, որ կարծես թե երկու դեպքում էլ խոսքը վերաբերում է միևնույն նահանգներին։ Իրականում 363 թ. վերադարձվելու ենթակա էին պարսիկներից 298 թ. խլված նահանգներից միայն երեքը՝ Աղձնիքը, Կորդուքը և Ծավդեքը, իսկ երկուսը՝ Անգեղտունը և Ծոփքը, մնացին հռոմեացիներին։ Վերադարձված նահանգներին ավելացնելով Մոկքը և Ռեհիմենեն, պատմագիրը դրանց թիվը հասցնում է հինգի, ընդ որում կամ անգիտությամբ կամ դիտավորյալ ձևացնում է, թե իբրև դրանք նույն այն հինգ նահանգներն են, որոնք 298 թ. գրավել էին հռոմեացիները։ Մոկքը Աղձնիքի մասն է, իսկ Ռեհիմենեն՝ Ծավդեքի. դրանք, իհարկե, մտնում էին այն հողերի մեջ, որոնք 298 թվականին պարսիկները զիջեցին հռոմեացիներին, բայց եթե դրանք հաշվելու լինենք առանձին-առանձին, ապա կստացվի, որ 298 թվականին հռոմեացիները ստացան ոչ թե հինգ, այլ յոթ նահանգ, որոնցից հինգը վերադարձրին 363 թվականին։

Պետրոս Պատրիկիոսից և Ամմիանոսից բացի անդրտիգրիսյան հինգ փոքր ազգությունների՝ quinque gentium trans Tigridem մասին խոսում է նաև Պրոկոպիոսը։ Կասկած չկա, որ Պրոկոպիոսը շփոթել է հայկական հինգ ինքնավար սատրապությունները «անդրտիգրիսյան հինգ երկրների հետ»։ Արտոնյալ իշխանու-

[1] Petr. Pat. p. 135, Ἰγγηληνήν μετὰ Σοφηνῆς καὶ Ἀρζανηνήν μετὰ Καρδουηνῶν καὶ Ζαβδικηνῆς. Amm. XXV 7 9, petebat autem rex, ut ipse aiebat, sua dudum a Maximiano erepta... quinque regiones Transtigritanas: Arzanenan, et Moxoenam, et Zabdicenam itidemque Rehimenam, et Corduenam.

թյունների թիվը իսկապես եղել է վեց։ Նրանցից երկուսը՝ Հաշտյանքը և Բալահովիտը անջատվեցին Մյուս Հայաստանից և դասվեցին ազատ սատրապությունների շարքը փոքր-ինչ ուշ, մեր կարծիքով 377 թվականին։ 363 թվականին կնքված հաշտությունը արձակեց պարսիկների ձեռքերը Հայաստանի նկատմամբ. Շապուհը պատերազմ հայտարարեց հայոց Արշակ թագավորին, որը բավական երկար տևեց և ավարտվեց վերջինիս տապալումով։ Վաղես կայսրը անհրաժեշտ համարեց միջամտել հայոց գործերին։ Նա դեսպանություն ուղարկեց Շապուհի մոտ և նրան հասկացնել տվեց, որ Հայաստանի նկատմամբ պարսիկների մտադրությունները ապօրինի են, և որ 363 թ. դաշնագրով նրա բնակիչներին ինքնուրույնություն է տրված։ Դեսպանները՝ հեծելազորի պետ Վիկտորը և Միջագետքի դուքս Ուրբիցիոսը, անմիջապես ու արժանավայել ձևով կատարեցին կայսեր հանձնարարությունը, բայց դրա հետ միասին, ինչպես նկատում է պատմագիրը, նրանք ստանձնած առաքելությունից մի փոքր շեղում թույլ տվին և ընդունեցին Հայաստանից իրենց առաջարկված ոչ մեծ հողատարածություններ absque mandatis oblatas sibi regiones in eadem Armenia suscepit exiguas։ Դրանից անմիջապես հետո կայսրի մոտ ուղարկվեց պատասխան մի դեսպանություն, որը նրան առաջարկեց նույն այն հողատարածությունները, որոնք, առանց երկար մտածելու, ընդունել էին հռոմեական դեսպանները, easdem Imperatori offerens partes, quas audacter nostri sumsere legati[1] բանակցությունները չկանխեցին ընդհարումը։ Երկու կողմերն էլ դժգոհ էին բանակցությունների արդյունքներից և պատրաստվեցին պատերազմի։ Շապուհը նույնիսկ հրամայեց «խլել Վիկտորին և Ուրբիցիոսին վիճած հողատարածությունները». Հրամանը կատարվեց, իսկ հռոմեացիները չկարողացան ընդդիմանալ, որովհետև գոթերի արշավանքը Թրակիա կայսրի ուշադրությունը շեղեց Արևելքից։ Նա ստիպված եղավ խնդիրը հաշտությամբ վերջացնել և նորից Վիկտորին ուղարկեց պարսիկների մոտ, ut super Armeniae statu pro captu rerum conponeret inpendentium[2], իսկ ինքը Անտիոքից մեկնեց մայրաքաղաք։ Համաձայնությունը տեղի ունեցավ, և խաղաղությունը վերա-

[1] Amm. XXX, 2, 4—5։

[2] ibid. XXXI 7, 1։

*կանգնվեց, բայց ի՞նչ պայմաններով՝ անհայտ է։ Ըստ երևույթին, հռոմեացիները ընդունեցին պարսից դեսպան Սուրենի առաջարկը, որը դրանից առաջ մերժել էր Վաղեսը, այսինքն՝ համաձայնեցին Հայաստանի այն մի քանի փոքր հողատարածությունների բռնագրավման հետ, որոնց մասին խոսվում էր բանակցությունները սկսվելու ժամանակից։*

*Այդ փոքր հողատարածությունները,* regiones exiguae, *հենց Հաշտյանքն ու Բալահովիտն են։ Չէ՞ որ ընդհարումը առաջ էր եկել 363 թվականի դաշնագրով հաստատված հարաբերությունների հողի վրա. դաշնագիրը վերաբերում էր Հայաստանին ընդհանրապես և մերձտիգրիսյան հողերին՝ մասնավորապես։ Շուտով հայտնի դարձավ, որ Հայաստանին վերաբերող հոդվածը տարբեր ձևերով են մեկնաբանել հակառակորդները։ Պարսից թագավորը Հայաստանի նկատմամբ իրեն ազատ էր համարում, իսկ Վաղես կայսրը պնդում էր Հայաստանի անձեռնմխելիության վրա.—* ad arbitrium suum vivere cultoribus eius permissis։ *Պարսիկները Հայաստանում իրենց զգում էին տեր ու տնօրեն և որպեսզի կանխեն կայսրի հավակնությունները, հենց սկզբից համաձայնեցին զիջել նրան Հայաստանի իրենց ենթակա տերիտորիաներից Հաշտյանքն ու Բալահովիտը, որոնք սահմանակից էին կայսերական սատրապություններին։ Այդ իրադարձության թվականը կարելի է ճշտությամբ որոշել։ Վաղեսը, որ Արևելք էր եկել պատերազմելու նպատակով, 377 թվականին*[1] *գտնվում էր Անտիոքում։ Հենց այդ ժամանակ էլ պարսից թագավորի մոտ ուղարկվեց Վիկտորի երկրորդ դեսպանությունը։ Այդ ժամանակին էլ վերաբերում է վերոհիշյալ գավառների միացումը սատրապություններին։ Ամմիանոսը, պատմելով 359—360 թթ. դեպքերի մասին, ասում է, որ անդրտիգրիսյան ազգությունները անջատվում են Հայաստանից Տավրոսյան լեռներով*[2]. *Նշանակում է 360 թվականին Տավրոսից այն կողմ ընկած գավառները՝ Հաշտյանքն ու Բալահովիտը, դեռևս չէին միացվել սատրապություններին։ Նրանց միացումը տեղի ունեցավ միայն 377—378 թվականին։*

[1] Amm. XXXI 7, 1. *Այդ ժամանակ են հրապարակված նրա դեկրետները.* C. J. XII 33 2. D. VIII k. Febr. A n t i o c h i a e; ib. XII 37 6. D. prid. non. April. A n t i o c h i a e.

[2] ibid. XVIII 8 1, verticibus Taurinis.., gentes Transtigritanas dirimentibus et Armeniam.

## ԳԼՈՒԽ III

# ՆԵՐՔԻՆ ՀԱՅՔ

## ARMENIA INTERIOR

Ներքին Հայքի մաս կազմող գավառները և նրանց տեղադրությունը Եփրատի ուղղությամբ: Խորձյան և Պաղնատուն՝ այժմ Քղիի կազա. Մրձուր՝ Մուզուր գետի վրա. Դարանաղին Կամախի շրջակայք: Եկեղիքը (Եկեղեանց) Երզնկայի մարզ: Դերջանը այժմյան Թերջանի մի մաս: Մանաղին և նրա տեղադրությունը ըստ պատմիչ Լաստիվերտցու: Կարին և Շաղագոմ: Աղիւն-Անալիբա: Արևմտյան հեղինակների տեղեկությունները Ներքին Հայքի գավառների մասին: Այդ գավառների տեղադրությունը ավելի վաղ ժամանակներում: Մի քանի անունների վերլուծությունը. —ali, —eli բնորոշ քեֆածանցը և նրա նշանակությունը: Նրա առնչությունը Aliun-ի և Aly-s-ի և Aly-bi և Chaly-bi-ի հետ: Ներքին Հայքը և Ճանիքը սահմանաբաժան ջրա հայկական և ճանական հողերի միջև: Ճաները և նրանց երկրի տեղադրությունը. գլխավոր կետերը և նրանց տեղադրությունը:

*Արշակունիների նախկին կալվածքների մի մասը, որ շրջանցվում էր Եփրատի վերին հոսանքով և հետագայում դարձավ Հռոմեական կայսրության ժառանգությունը, կազմում էր Մեծ կամ Ներքին Հայքը—* Magnam Armeniam, quae interior dicebatur *կամ* τήν μὲν ἐνδοτάτην, *ինչպես այն անվանված է Հուստինիանոսի Նովելլայում: Նրա մեջ մտնում էին Արշակունյաց Մեծ Հայքի հետևյալ տասնմեկ գավառները՝* Խորձիան-են-են, Պաղնատունը, Մուձուրը, Դարանաղին, Եկեղես-են-են, Աղիւնը, Մանաղին, Դերջանը, Կարինը, Շաղագոմը և Սպերը:

*Սրանցից Փավստոսը հիշատակում է 1. Դարանաղին՝ Թորդան և Անի գյուղերով, 2. Եկեղյաց գավառը՝ Թիլ և Խախ գյուղերով, 3. Կարինը՝ Մարագ գյուղով, 4. Մզուրը և 5. Սպերը:*

*Ագաթանգեղոսին հայտնի են Դարանաղին՝ Թորդան գյուղով, Եկեղյաց գավառը՝ Երեզ և Թիլ ավաններով, ինչպես նաև 6. Դերջանը և նրա մեջ՝ Բագայառիճ գյուղը: Կորյունը Եկեղյաց և Դեր-*

*ջան գավառներից բացի հիշատակում է նաև 7. Խորձյան գավառը և 8. Պաղնական տունը։ Մնացած գավառներից 9. Ճաղագոմը առաջին անգամ հիշատակում է Ղազար Փարպեցին, իսկ 10. Մանաղին՝ Սեբեոսը և, վերջապես 11. Աղիւնը հայ մատենագրության մեջ հայտնի է միայն* Աշխարհացույցից, *ընդ որում մի քանի ընթերցումներում կարդացվում է Առիւծ*[1]։

*Հայկական աղբյուրների տվյալների համաձայն հիշյալ գավառները դասավորված էին Եփրատ գետի ուղղությամբ. Խորձյանը, ինչպես հիշատակվեց վերը, ընկնում էր Գայլ՝ այժմյան Քըղի կամ Բերի-սու գետի վրա և համապատասխանում է մոտավորապես ներկայիս Թուրքական Քըղի կազային։*

*Պաղնատունը գտնվում էր Խորձյանի կողքին այդ նույն Գայլ գետի ստորին հոսանքի ուղղությամբ՝ մինչև Մզուր գետի հետ միանալը և արևմուտքից պարփակված էր Մեծկերտի լեռներով, հյուսիսից՝ Սիփլուս՝ հայկական Սուրբ լույս լեռներով և հիշյալ գետի ափերով։ Գավառն իր անունը ստացել էր Պաղին կամ Պաղան գլխավոր քաղաքից, որը որպես մի փոքրիկ ավան պահպանվել է մինչև մեր օրերը*[2]։ *Պաղինը և հարևան Բալուն համար-*

---

[1] Փավստոս, Գ, բ և ժա, Դարանաղեաց գաւառին, ի գիւղն Թորդան։ Գ, ժա և Դ, իդ յԱնին յեկեղեցագաւառն Դարանաղեաց։ Գ, բ և ժդ, Ե, իզ և իե, յԵկեղեաց գաւառի ի Թիլն աւանի։ Ե, իդ, յապարանս իւր ի Խախ աւանի յԵկեղեաց գաւառի։ Դ, ժբ ի Կարին գաւառէ ի գեղջէ Մարագայ։ Ե, լէ, դաշտ Կարնոյ։ Ե, խդ, ի գաւառն Կարնոյ։ Դ, իզ, Մզուր գաւառ։ Ե, խդ, Սպեր գաւառ։ Ագաթանգ. էջ 455 և 496, ի Դարանաղեաց գաւառն, ի գեաւղն Թորդան։ էջ 39, յԵկեղեաց գաւառ ի գիւղն Երիզայ։ էջ 457, յԵրէզն աւանի, Թիլն աւան։ էջ 459, ի գաւառն Դերջան... ի գեւղն Բագայառիճ։ Կորյուն, էջ 12, Եկեղեցեաց գաւառ, էջ 27, Դերջան, էջ 24, Խորձենական գաւառ, էջ 19, Պաղանական տուն Պաղան կամ Պաղին քաղաքի անունով, այստեղից՝ Պաղին-տուն, Պաղան-ական տուն։ էջ 24, ընթերցվում է «ի կայենականն» հավանորեն Կարինականն-ի փոխարեն։ Փարպեցի, էջ 145, ի գաւառին, որ կոչի Ճաղագոմ։ Խորենացի, Գ, կ. Ճաղագոմք։ Սեբեոս, էջ 139, իշխանքն Մանաղայքն եւ Դարանաղայքն, Փարպեցի, էջ 44, տէր Ձաւէն Ման(ան) աղւոյ պետք է ուղղել տէր Ձաւէն-ի Մարդաղւոյ, ինչպես Եղիշեի բնագրում է, թեև վերջինիս մոտ եպիսկոպոսի անունը ոչ թե Ձաւէն է, այլ Եղաղ, Եղիշե, էջ 49։ Առիւծ ընթերցումը նշում է Ինճիճյանը, Ստորագր., էջ 2։

[2] Հիշատակվում է զեռևս սեպագիր արձանագրությունների մեջ, Lehmann, *Verh. d. Berl. Anthr. Gesel.* 1900, p. 572 Huntington, *Zeit. f. Ethnologie,* 1901, p. 173 և շար. Ասողիկի մոտ՝ էջ 144, Ասաղին փխ. Պաղին, ինչպես ճիշտ գտնում ենք 177 էջում։

վում էին կարևոր ամրոցներ։ Գևորգ Կիպրացին երկու ամրոցներն էլ՝ Պաղին և Բալու հիշատակել է Պաղին և Բիլավիտենե գավառներում[1]։

Պաղինի կողքին գտնվում էր Մուզուր գավառը՝ մինչև այժմ էլ Մուզուր կոչվող գետի վրա և նույնանուն լեռների մոտ։

Մյուս գավառները ձգվում էին Եփրատի երկայնքով Կամախից մինչև նրա ակունքները՝ Թեոդոսուպոլսի մոտ։ Մուզուրից հյուսիս՝ Եփրատի վրա կողք կողքի ընկած էին Դարանաղին և Եկեղյաց գավառները։ Սրանք դիրքորոշվում էին առաջինը՝ Կամախ քաղաքով՝ հին Անի, երկրորդը՝ Երզինջան կամ Երզնկա՝ հին Երեզ քաղաքով։ Սրանց միմյանցից բաժանում էին Գոհանամ կամ Սեպուհ լեռները՝ հին Մանայայրք[2]։ Դարանաղին գրավում էր Քյոմուր գետի հովիտը, իսկ Եկեղյաց գավառը՝ հարևան հարթավայ-

[1] Georg. Cypr. p. 49. κάστρον Πάλιος և Βα(ῖου)λοῦς, κλίμα Παλινῆς և Βιλαβητινῆς. Παλι-ος-ի, այսինքն Պաղի-ն ոչ ռնգայնացած ձևի առկայության դեպքում կարելի՞ է արդյոք կապ փնտրել նրա և Բալուի մեջ. հմմտ. Պա-լունի, որ իշխանական տոհմի անուն է։

[2] Գոհանամ-ը այժմյան անունն է։ Այդ լեռները ս. Հռիփսիմեի վարքի մեջ կոչվում են Սեպուհ և նույնացվում են Մանեայ այրքին (ի խորշ լերինն Սեպուհ կոչեցեալ, որ անուանեցաւ Մանեայ այրք, Ալիշան, Հայապատում, էջ 77)։ Լեռան անունը Ագաթանգեղոսի մոտ հնչում է Մանայարք, որ Խորենացին մեկնաբանում է իբրև Մանեի այր՝ Մանեայ այրք, բայց հազիվ թե հիմնավոր է այդ։ Սկզբի մանա-ն ավելի շուտ ազգակից է Մանաղիի հետ։ Ըստ Կիպերտի Գոհանամը գտնվում է Քյոմուր գետի ակունքների մոտ, այսինքն՝ Կամախից դեպի հյուսիս, իսկ Լինչի մոտ՝ Կամախից դեպի արևելք, Կամախի և Երզնկայի միջև։ Այստեղ է գտնվում Սուրբ Լուսավորիչ վանքը։ Ասողիկի ասելով, էջ 168, Հովհաննես կաթողիկոսը ապաստանեց «ի մենաստան սրբոյ լուսաւորչին մերոյ ի լեառն, որ Մանեայ այրք ասի, ի Դարանաղեաց գաւառին ի վանս Գառնկայ» տարընթերցվածք՝ Կառնոյ։ Եփրատի ափին գտնվող այժմյան Գառնին ցույց է տալիս, որ Մանեայ այրքը իսկապես այն լեռներն են, որ Լինչի մոտ կոչվում են Գոհանամ և Սեպուհ։ Հովհ. Երզնկացին Սափերք, Ե, էջ 127, Սեպուհ լեռը դնում է «ի միջոցս սահմանին երկուց գաւառացն Եկեղեաց և Դարանաղեաց», այնտեղ, որտեղ, նրա ասելով, գործել է սուրբ Մանիան։ Գոհանամ է կոչվում նաև Սպերի մոտ գտնվող լեռը, որի վրա կա եպիսկոպոսական աթոռանիստ Սուրբ Հովհաննես վանքը, Ինճիճյան, Աշխարհագր., էջ 94։ Կիննեի մոտ այդ նույն լեռները կրում են Սեպուհ անունը։ Նրա նկարագրության համաձայն Ճորոխը սկիզբ է առնում dans la haute montagne de Sebouh dans la casa d'Ispir, I p. 171։ Ըստ երևույթին, թյուրիմացություն է տեղի ունեցել. հնարավոր է, որ Կիննեի աղբյուրների մեջ խոսքը գնացել է Ճորոխի արևմտյան վտակի մասին, որ հոսում է Սիպիկոր՝ հայկ. Սուրբ Գրիգոր լեռից, որը հարևան է Գոհանամ-Սեպուհին, իսկ նա սխալմամբ վերագրել է Սպերի վտակին։

րը, որ ոռոգվում էր Սիպիկոր հայկական սուրբ Գրիգոր լեռներից (այսինքն՝ սուրբ Գրիգորի լեռ) դեպի Եփրատ հոսող մանր վտակներով։ Այդ լեռների ստորոտում, Եփրատի ափին, այժմ էլ կանգուն են Թորդան ու Գառնի գյուղերը, որոնք մտնում էին Դարանաղիի մեջ։ Այդ նույն լեռների մյուս կողմում՝ հնում Գայլ կոչվող գետի ափին ներկայումս էլ գտնվում են Եկեղյաց գավառի Թիլ և Խախ ավանները[1]։ Արևելյան կողմից Եկեղյաց գավառը հասնում էր մինչև Եփրատի ծունկը և այստեղ սահմանակից էր դառնում Մանաղիին և Դերջանին։ Այս վերջինիս անվանումը պահպանվել է տաճկական Թերջան կազայի անվան մեջ, որի գլխավոր քաղաքն է Մամախաթունը։ Այժմյան Թերջանը տարածվում է Եփրատի երկու կողմում, ներառնելով Թուզլու և Պուլկ գետակների հոսանքները, որոնցից առաջինը Եփրատ է թափվում ձախից, իսկ երկրորդը՝ աջից։ Իր տարածությամբ այն գերազանցում է հին Դերջանին և ընդգրկում է ոչ միայն Դերջանը, այլև Մանաղին։ Մամախաթունի մոտ գտնվող այժմյան Պեկերիջ գյուղը, որ Դերջանի հին Բագայ-առիճն է, ցույց է տալիս, որ այդ գավառը գտնվել է Թուզլու գետից հյուսիս, բայց թե Դերջանը սահմանակից Մանաղիից որտե՞ղ էր բաժանվում, այդ մասին ստույգ տվյալներ չկան։ Արիստակես Լաստիվերտցու մոտ գտնում ենք մի քանի տվյալներ, որոնք պարզաբանում են Մանաղիի կապը Դերջան և Եկեղյաց գավառների հետ։

«Թե որպէս եւ ի Մանանաղւոյ սահմանսն բորբոքեցաւ հրդեհ մոլորութեանն» գլխում Լաստիվերտցին պատմում է աղանդավոր Կունծիկի քարոզչության մասին, «ումն շնանուն աբեղայի, որ բնակէր մօտ ի բերդաքաղաքն, որ կոչի Շիրի, որ դեռ եւս այսօր ագարակին զնորայն անուն կոչեն»։ Աբեղան իր աղանդին է դարձնում ուրիշների թվում նաև երեք ազնվազարմ կանանց՝ Խաշե և Աղյուս գյուղերի տերերին։ Մի անգամ աղանդավորները հարձակվում են Պախիր լեռան ճյուղավորություններում գտնվող Բաղմաղբյուր գյուղի սուրբ խաչի վրա և ջարդուփշուր անում այն. «որ և զանուն գեղջն ի նոյն փոխեալ Խաչ անուանին մինչև ցայսօր»։ Հանցագործության վայրն է գալիս Սամվել եպիսկոպոսը,

---

[1] Ագաթանգեղոս, էջ 457, Սուրբ Գրիգոր Լուսավորիչը Եկեղից Թիլ գնալու համար պետք է անցներ Գայլ գետի մյուս կողմը, «ընդ գետն Գայլ յայնկոյս անցանելս», որի տակ պիտի հասկանալ Երզնկայի գետը։

*ձերբակալում է աղանդավորներին, տանում Ջերմա քաղաքը և պատժում՝ անարգանքի կնիք խարանելով նրանց դեմքին։ Դրանից անմիջապես հետո քննիչ է ուղարկվում գործը քննելու։ Նա գալիս է Եկեղյաց գավառը և իր մոտ կանչում եպիսկոպոսին։ Սամվելը բազմության ուղեկցությամբ գնում է նրա մոտ։ Նա հասնում է «մինչև յեզր գետոյն Եփրատայ, որ Մանանաղի ի նմա խառնի» և նավակով անցնում է «յայնկոյս յաւանն, որ կոչի Կոթեր, քանզի դատաւորն անդ իսկ էր»։ Դատավորը, այն նույն քննիչը, Կոթերից գնում է եպիսկոպոսարան, որ գտնվում էր Փրրխում և այնտեղ էլ քննում է գործը*[1]*։*

*Պատմության խորագրի իմաստից երևում է, որ Շիրի, Կաշե, Աղյուս, Ջերմա, Խաչ գյուղերը և Պախիր լեռը գտնվում են Ման-ան-աղիում կամ, ինչպես հեղինակն է արտահայտվում, Մանանաղիի սահմաններում։ Իսկ Կոթերը գտնվում էր Եկեղյաց գավառում, քանի որ նա է «երթեալ ի գաւառն Եկեղեաց» ընդհանուր արտահայտության ամենամոտիկ որոշիչը։ Ման-ան-աղի գետը, որ խառնվում է Եփրատին, իր անվան համար, ըստ երևույթին, պարտական է այն գավառին, որի միջով հոսում է և նույնն է ինչ այսօրվա Թուզլու գետը։ Դժբախտաբար Թուզլու գետի հոսանքը դեռ բավականաչափ ուսումնասիրված չէ։ Ոմանց նկարագրությամբ նա կազմվում է մի քանի վտակներից, որոնք իրար են միանում Մամախաթունի մոտ և թափվում Եփրատ՝ ճիշտ այնտեղ, որտեղ կանգուն է Կոթուր հին կամուրջը. ոմանք էլ տարբերում են գետի երկու գլխավոր բազուկներ, որոնք իրար են միանում Մամախաթուն չհասած և թափվում են Եփրատ նույն կամրջի մոտ, բայց Կոթուր գյուղից մի փոքր վերև*[2]*։*

[1] Լաստիվերտցի, *գլ. 23, թե որպես եւ ի Մանանաղւոյ սահմանսն բորբոքեցաւ հրդեհ մոլորութեան, էջ 101, Կումիկ ոմն չնանուն արեղայ, որ բնակէր մօտ ի բերդաքաղաքն, որ կոչի Շիրի, որ դեռեւս այսօր ազարակին զնորայն անուն կոչեն, էջ 103, զագարակսն... որոց անուանք կոչին միումն Կաշէ եւ միւսումն Աղիւսոյ, էջ 103—104, ի հաստաւծս լերինն Պախրայ... աւան ինչ էր զոր Բազմաղբիւր կոչեն, ուր զաստուածային նշանն... կանգնեալ էին, որ եւ զանուն գեղջն ի նոյն փոխեալ Խաչ անուանեն մինչեւ ցայսօր, էջ 105, երթեալ... մինչեւ յեզր գետոյն Եփրատայ, ուր Մանանաղի ի նմա խառնի, յայնկոյս յաւանն, որ կոչի Կոթէր... քանզի եւ դատաւորն անդ իսկ էր։*

[2] *Տե՛ս* Լինչի «Armenia»*-ի և Կիպերտի* Kleinasien *քարտեզները*; Cuinet *1, 198,* Khotour, où passe la route d'Erzeroum à Erzindjan, à *13* kil. *750*

*Կոթուրը կամ Կյոթյուրը, անկասկած, հայ պատմիչի հիշատակած Կոթերն է։ Բայց պատմական Կոթերը ընկած էր Եփրատի աջ ափին, մինչդեռ այժմյան գյուղը գտնվում է հակառակ ափին։ Որ հին Կոթերը գտնվում էր Եփրատի արևմտյան ափին, երևում է նրանից, որ Մանազկի գետաբերանից այնտեղ գնալու համար անհրաժեշտ էր անցնել Եփրատ գետը։ Բացի այդ, Սամվելի Կոթեր հասնելու հետևյալ օրն իսկ դատավորը նրա հետ միասին գնում է Փրրիս, ընդ որում նրանք կարիք չունեցան անցնելու Եփրատը, նշանակում է Փրրիսի եպիսկոպոսարանը գտնվում էր այն նույն ափին, որտեղ՝ Կոթերը։ Փրրիսը գոյություն ունի մինչև այսօր, հնչվում է Փիրիս*[1] *և ընկած է գետի արևմտյան ափին։ Ելնելով դրանից, կարծում ենք, որ ժամանակակից Կոթերը հիմնադրվել է հին Կոթերի կործանումից հետո։*

*Թուզլու գետի հարավային և գլխավոր բազուկի վրա ներկայումս նշվում են Ջերմե, նրանից մի քիչ արևմուտք՝ Շիրին և այս վերջինից դեպի հարավ՝ Կունշա գյուղերը։ Վերջիններս գտնվում են միմյանց շատ մոտ և դժվար չէ կռահել, որ դրանք հին Ջերման, Շիրի և Կաշե գյուղերն են։ Այդ անուններից առաջինը հնչյունափոխական օրինաչափությունների համաձայն այժմ պետք է հնչի Ջերմե։ Շիրիի կողքին ձեռագրերում հանդիպում ենք նաև Շիրնի*[2] *Շիրին-ի սեռական հոլովը, որ այժմ կոչվում է նաև Շիրինի։ Ինչ վերաբերում է Կաշեին, ապա քանի որ, ինչպես վկայում է պատմիչը, մի կողմից նրա սեփականատերը Շիրիում բնակվող Կունծիկի հարևանուհին էր, իսկ մյուս կողմից Կունշան գտնվում է Շիրինից ոչ հեռու, ապա ավելի քան հավանական է, որ Կունշան հին Կաշեն է։*

---

mètres au sud-ouest de Momakhatoun; on y voit un très beau pont sur l'Euphrate.

[1] Լաստիվերտցի, *էջ 107, ի լուսանալ աւուրն... երթեալ յեպիսկոպոսարանն, որ Փ ր ր ի ս ն կոչի։ Ի նկատի ունենալով ներկա անունը՝ գերադասելի է Փիրիս ընթերցումը փոխ. Փրրիսի։*

[2] *Վենետիկում կա հինգ ձեռագիր. Ինճիճյանի օգտագործած ձեռագրում ընթերցվում է Շիրնի,* **Ստորագր.** *հին Հայաստանի, էջ 23։* **Երիցյանը** *Շիրինին համարում է թուրքերէն (*sc. *պարսկ.)* **քաղցր**, *բայց ճիշտ չէ. Изв. Кавк. От. Имп. Рус. Геогр. Общ. 8-րդ հատորի առաջին պրակի 1883 թ. հավելված,* **Էրզրումի նահանգի** *բնակավայրերի ցուցակի լրացումներ,* p. *97։*

*Ջերմեից հյուսիս-արևելք, Դումանլու*[1] *լեռան ստորոտում, գտնվում է այժմ հայաբնակ Խաչ գյուղը, իսկ մի փոքր հարավ Խաչ, Խաչ-դաղ լեռները, որոնք ուղիղ շղթայով ձգվում են դեպի արևմուտք մինչև Եփրատ և այնտեղ կրում Բաղիր անունը։ Այդ էլ հենց պատմական Պախրա լեռն է, Պախիր-ի սեռական հոլովը, որի մի ճյուղը, ինչպես նշում է պատմիչը, իրոք Խաչ-դաղն է, որտեղ կանգնեցված է եղել աղանդավորների կողմից անարգված խաչը։ Խաչ-դաղը Թուզլու և Լիճիկ գետերի ջրբաժանն է և առատ ջուր է մատակարարում այդ երկու գետերին հյուսիս և հարավ ուղղությամբ, դրա հետևանքով էլ նրա մոտ գտնվող գյուղը իրավամբ կարող է կոչվել Բազմ-աղբյուր, այսինքն՝ բազում աղբյուրներ կամ վտակներ ունեցող։ Հետո վերանվանվել է Խաչ՝ ի պատիվ այնտեղ կանգնեցված խաչի։ Իսկ այսօրվա Խաչ գյուղը, որ գտնվում է Թուզլու գետի մյուս կողմում, Դումանլու լեռան ստորոտում, հավանորեն, իսկական հին Խաչի հետ այնպիսի հարաբերության մեջ է, ինչպես այժմյան Կոթուրը՝ պատմականի հետ։*

*Վերոհիշյալ կետերի ուսումնասիրությունից բավականաչափ պարզվում է Մանանաղիի դիրքը. այն տարածվում էր Բաղիր-Խաչ լեռներից դեպի հյուսիս մինչև Թուզլու գետը, ընդ որում, գետի հարավային և գլխավոր վտակը անջատում էր Մանանաղին Դերջանից, իսկ Եփրատի հոսանքը մինչև Կոթեր՝ Եկեղյաց գավառից։ Կոթերից և Թուզլուից այն կողմ սկսվում էին Դերջանի սահմանները։ Դերջանը Խաղտոյ-առիճ բերդի մոտ սահմանակից էր Կարինին, որը և հանդիսանում էր Կարինի ծայրակետը։ Խաղտոյ-առիճը այժմյան Կալդառիճն է, որ գտնվում է Սերչամ գետի և Եփրատի խառնվելու տեղում, Աշկալայի մոտ*[2]*։ Խաղտոյ-առիճի մոտ հիշատակվում են ինչ-որ կղեսուրներ, որ, հավանորեն, այժմյան Բոնակապանն է. հայերեն կապան-ից, որ ընկած է*

[1] *Խաչ-քիոյ, 32 ծուխով,* Երիցյան, *նույն տեղ., էջ 96։*

[2] Լաստիվերտցի, *էջ 15, մինչեւ յամուրն, որ կոչի Խաղտոյ առիճ ի սպառուածն Կարնոյ։* Cuinet-*ի մոտ, 1, 159,* Kiaghid-aridj*։ Ըստ Ինճիճյանի* Աշխարհագրության, *էջ 79, կա Գաղտառիճ անունով՝ միմյանցից ոչ հեռու հայկական և մահմեդական երկու գյուղ։* Ասողիկ, *էջ 192 և 278, տալ նմա զԽաղտոյ առիճ կղէսուրաւն, զՁորմայրի եւ զԿարին, զԲասեան։ Ձորմայրին Ճորոխի ակունքների շրջանն է՝ Ճորոխ ելանէ ի հյուսիսոյ լերանց քաղաքիս ի թաւ մայրեաց միջոյ ի գաւառէն Ձորմայրոյ,* Հակոբ Կարնեցի, *էջ 51։*

Աշկալայից դեպի արևելք, Կոպ լեռան տակ, Էրզրում-Բայբուրթ հաղորդակցության գլխավոր գծի վրա։ Բռնակապանի մոտ սկըսվում է Կոպ լեռների հայտնի լեռնանցքը 7,5 մղոն երկարությամբ, 8040 ոտնաչափ բարձրությամբ[1]։

Կալղաուճից դեպի արևելք Եփրատ (Կարա-սու) գետի վերին հոսանքներում տարածվում է Կարինը, Կարին-Թեոդոսուպոլիս-էրզրում գլխավոր քաղաքով։ Նրան հարում էր Շատգոմը Սերչամ գետի վրա, իսկ այս վերջինի կողքին և Տայքի հարևանությամբ՝ Ծորոխ գետի վրա՝ այժմյան Իսպիրի շրջանում գտնվում էր Սպերը։

Ուսումնասիրվող գրեթե բոլոր բնակավայրերը հայտնի են նաև ավելի վաղ ժամանակների դասական գրականության մեջ։ Ստրաբոնին շատ լավ ծանոթ են Կարինը՝ Կարեն-իտ-իս, Դերջան, Քսերքսենե, pro Դերքսենե և Ակիլիսենե գավառները, որոնք հայերը նվաճել են հարևան խալիբներից, մոսինոյկներից և կատաոնացիներից, ինչպես նաև ոսկու հանքավայր Սպերը՝ Սիսպիր-իտ-իդը։ Կարինը, ըստ Պլինիոսի, այն գավառն է, որտեղից Եփրատը հոսում է դեպի Կապոտես լեռան ստորոտը և անցնում է սկզբում Դերզենեով և ապա՝ Անաիտիկայով։ Անաիտիկան Եկեղյաց գավառի մի ուրիշ անունն էր և ի պատիվ Անահիտ դիցուհու այդպես էլ կոչվում էր՝ Անահտական, որի պաշտամունքը առանձնապես հարգվում էր այնտեղ։ Եկեղիքը Անահտական է կոչվում նաև Ագաթանգեղոսի մոտ, իսկ Դիոն Կասիոսի մոտ՝ Անահիտի երկիր։ Պաղոմեոսին այդ գավառը հայտնի է Ակիլիսենե, Պրոկոպիոսին՝ Եկելեսենե ձևով, որ ավելի մոտ է հայկական անվանմանը։ Դարանաղին հիշատակվում է 680 թ. վեցերորդ տիեզերական ժողովի արձանագրությունների մեջ. այդ ժողովին ներկա է եղել «Գևորգը՝ Մեծ Հայքի Դարանաղիի կամ Կամախի եպիսկոպոսը»։ Ուշագրավ է, որ լատինական թարգմանության մեջ Դարանաղին նույնացվում է Անալիբլային. «Գևորգ՝ եպիսկոպոս վիճակին Դարանաղեաց կամ Անալիբլայի գաւառին Մեծին Հայոց»։ Խորձյանը առաջին անգամ հիշատակված է Պրոկոպիոսի մոտ և այն էլ երկու ձևով՝ Խորձիան-են-ե և Կորզանե, որ համապատասխանում է հայկական Խորձյանին և Խորձայնին։ Գևորգ Կիպրացին

[1] Lynch, Armenia, II, 230։

*հայկական գավառների թվում հիշատակում է Օրզիանենեն, Մուզուրան և Պալինան*[1]*։*

*Եթե ընդունենք հայկական Աղինի նույնությունը Անալիբլայի կամ Անալիբայի հետ, որի համար, ինչպես կտեսնենք, որոշ հիմքեր կան, ապա Ներքին Հայքի հիշյալ տասը գավառներից արտաքին աղբյուրներին անծանոթ կմնա միայն Շաղագոմը կամ Շատգոմը, որը ըստ էության հանդիսանում է Կարինի մի մասը։*

*Շատգոմից բացի, մնացած անունները նախահայկական ծագում ունեն։ Այդ գավառները, որ հայերը խլեցին հարևան ցեղերից, պահպանեցին իրենց անունները, որոնցից շատերը ավելի շուտ աշխարհագրական տերմիններ են։ Անվանումների, ինչպես նաև տեղագրության խնդրում դասական հեղինակները համաձայն են հայկական աղբյուրներին։ Աննշան տարբերությունները բացատրվում են նրանով, որ դասականների տվյալները համապատասխանում են ավելի հին ժամանակների իրադրություններին։ Ստրաբոնի ասելով՝ Կարեն-իտ-իեն և Դերքսենեն սահմանակից են Փոքր Հայքին և նույնիսկ նրա մի մասն են կազմում, և որովհետև Մեծ և Փոքր Հայքերի միջև սահման նա համարում է Եփրատ գետը, ապա նշանակում է, որ երկու գավառներն էլ մի մասով ընկած էին գետի աջ, իսկ մյուս մասով՝ ձախ ափին*[2]*։ Այսպիսի ճշգրտումը համապատասխանում է հայկական աղբյուրների տվյալներին, որոնց համաձայն հիշյալ գավառների*

---

[1] Str. XI, 14 p. 743 և 744. Καρηνῖτις, Ξερξήνη (sc. Δερξήνη) Ἀκιλισηνή, Συσπιρῖτις=*Հերոդոտի* Σάσπειρες-*ին և Քսենոփոնի* Ἑσπερῖται-*ին*, *Anab.* Plin. Nat. hist. V. 83, oritur in praefectura Armeniae Majoris Caranitide... sub radicibus montis quem Capoten appellat... fluit Derzenen primum, mox Anaeticam Armeniae regiones a Cappadocia excludens. Str. p. 748, τὰ τῆς Ἀναΐτιδος διαφερόντες Ἀρμένιοι, ἔν τε ἄλλοις ἱδρυσάμενοι τόποις καὶ δὴ καὶ ἐν τῇ Ἀκιλισινῇ. Dio Cass. 31, 36. ἡ Ἀναΐτις χώρα. Ptol. V, 12, 6. Proc. *Pers.* 1, 17, ὁ ποταμὸς (*Եփրատ*) πρόεισι εἰς τὴν Ἐκελεσηνὴν καλουμένην χώραν, οὗ δὴ τὸ ἐν Ταύροις τῆς Ἀρτέμιδος ἱερὸν ἦν. Mansi, XI p. 645, Γεοργίου ἐπισκόπου Δαρανάλεως ἤτοι τῶν Καμάχων. Γεωργίου... ἐπίσκοπος τοῦ κλίματος Δαρανάλεως τῆς Μεγάλης Ἀρμενίας. Georgius... episcopus territorii Daranalis sive Analiblae, Magnae Armeniae regionis. Georg. Cypr. p. 49, κλίμα Ὀρζιανινῆς, κλίμα Μουζουρῶν, κλίμα Παλινῆς.

[2] Str. XI 14 p. 743, Καρηνῖτιν καὶ Ξερξήνην, ἃ τῇ Μικρᾷ Ἀρμενίᾳ ἐστὶν ὅμορα ἢ καὶ μέρη αὐτῆς ἐστι.

*մի մասը գտնվում էր Եփրատի աջ ափին՝ Սերշամ և Պուլկ գետերի վրա։*

*Ստրաբոնը Ակիլիսենեն տեղադրում է Եփրատի ձախ ափին. «Եփրատը սկիզբ առնելով Տավրոսի հյուսիսային կողմից, Հայաստանի միջով, որ Մեծ է կոչվում, հոսում է դեպի արևմուտք մինչև Փոքրը՝ իր աջ կողմում ունենալով այս վերջինս, իսկ ձախ կողմում՝ Ակիլիսենեն և ապա թեքվում է դեպի հարավ և այդ թեքվելու ժամանակ շփվում է Կապադովկիայի սահմաններին»։ Հետևաբար Ակիլիսենեն տարածվում էր Կամախից շատ հեռու՝ մինչև Եգինի՝ հայկական Ակնի սահմանները, որտեղից էլ հենց սկսվում է Եփրատի աղեղը։ Հալածվելով Պոմպեոսից՝ Միհրդատը, ինչպես գրում է նույն հեղինակը, «փախավ Պոնտոսի թագավորության ծայրամասը և Եփրատից ոչ հեռու՝ Դաստեյրայի մոտ, գրավեց Ակիլիսենեի ջրառատ լեռը, որ Ակիլիսենեն բաժանում է Փոքր Հայքից»։ Դաստեյրան ոչ այլ ինչ է, եթե ոչ այսօրվա Դոստալը Եփրատի վրա, Կամախի և Ակնի միջև։ Մի այլ անգամ Ստրաբոնը Ակիլիսենեն տեղադրում է Տավրոսի և Եփրատի միջև՝ մինչև նրա թեքվելը դեպի հարավ։ Այստեղ սխալմամբ Անտիտավրոսի փոխարեն գրված է Տավրոսը, ինչպես պարզ երևում է վերջինիս բուն նկարագրությունից. Անտիտավրոսը, սկսվելով Եփրատի և Տավրոսի մոտից, վերջանում է Հայաստանի արևելյան մասում, կտրում Սոփենեն «իր մյուս կողմում ունենալով Ակիլիսենեն Տավրոսի (հմա. Անտիտավրոսի) և Եփրատի միջև՝ նախքան գետի թեքվելը դեպի հարավ»։ Ստրաբոնի պատկերացմամբ Ակիլիսենեն տարածված էր Եփրատի ուղղությամբ Դերքսենեից մինչև Դոստալի մոտ գետի թեքվելը, ընդ որում հարավից այն սահմանակից էր Սոփենեին։ Այստեղից հասկանալի է դառնում Ստրաբոնի այն վկայությունը, թե Ակիլիսենեն առաջ գտնվում էր սոփեններ տիրապետության տակ, մտնում էր «Սոփենեի, *Ակիսենեի, Օդոմանտիսի և ուրիշ այլ գավառների» թագավորի՝ Զարիադրեսի տիրույթների մեջ[1]։*

---

[1] Str. XI 12 p. 732, ὁ Εὐφράτης... ῥέων δ' ἐπὶ δύσιν διὰ τῆς 'Αρμενίας τῆς Μεγάλης καλουμένης μέχρι τῆς Μικρᾶς, ἐν δεξιᾷ ἔχων ταύτην ἐν ἀριστερᾷ δὲ τὴν 'Ακιλισηνήν. εἶτα ἐπιστρέφει πρὸς νότον. p. 780, καὶ τῆς 'Ακιλισηνῆς κατὰ Δάστειρα εὔυδρον ὄρος καταλαβόμενος (πλησίον δ' ἦν καὶ ὁ Εὐφράτης ὁ διορίζων τὴν 'Ακιλισηνὴν ἀπὸ τῆς Μικρᾶς 'Αρμενίας). p. 741, ἐκ θατέρου δὲ μέρους,

*Այս սահմաններով Ակիլիսենեն բավականին ընդարձակ մի երկիր էր, որ ընդգրկում էր այն բոլոր տերիտորիաները, որ հետագայում գրավում էին Ակիլիսենեն (Եկեղյաց գավառը), Դարանաղին, Մանաղին, Աղիւնը և Մուզուրը։ Իր կազմությամբ* ak-ilis-ene-*ն հարազատ է* daran-ali-*ին,* man-ali-*ին*[1], mard-ali-*ին, այսինքն՝ բաղկացած է* Ake-*ից և* ali-*ից՝ *ակե-աղի։ Հունարեն* ilis *ձևում վերջին* s-*ն համապատասխանում է կամ հայերեն* ց-*ին,* resp. *նախագրաբարյան սեռական հոլովի* ս-*ին կամ հայցական հոլովի* ս *ձևույթին։ Մի շարք աշխարհագրական տեղանուններ ունեն* ali *ածանցը. արդյո՞ք հնում համապատասխան տերիտորիայի միջև ընդհանուր կապ չի եղել։ Նրանց շարքին է պատկանում նաև Աղիւնը՝* Աշխարհացույցի *Աղի-ւնը և* Analibna, Analiba *կամ* Analibla-*ն՝ ինչպես Պտղոմեոսի մոտ է.* An-alibna-*ի վերջին մասի մեջ չի կարելի չտեսնել հայերեն* աղիւն-*ը, որտեղ* ւ-*ն հանդիսանում է սկզբնական* բ-*ի փափկացումը։*

*Աղիւնը գավառ է, իսկ Անալիբնան՝ ավան. Պտղոմեոսը այն հիշատակում է Փոքր Հայքի քաղաքների թվում։ Ըստ* Itin. Ant.-*ի Անալիբնան գտնվում է Զիմարայից 16, իսկ ըստ* Tab. Peut.-*ի 15 մղոն հեռավորության վրա։ Հին* Zimara-*ի ավերակները մինչև այժմ էլ կարելի է տեսնել նույնանուն Զիմար գյուղի մոտ՝ վերը հիշված Դոստալի կողքին։ Աղիւնի դիրքը ստույգ հայտնի չէ. քանի որ* Աշխարհացույցի *մեջ այն դրվում է Դարանաղիից անմիջապես հետո, ուստի հավանական է, որ սա սահմանակից է նրան։ Այդ դեպքում Աղիւնը նույնանում է այն շրջանի հետ, որտեղ գտնվում էր Անալիբնան։ Իր կազմությամբ* An-alibna-*ն մոտ է Դարանաղիին, Ակե-աղիին և ուրիշներին։*

*Փոքր Հայքի գավառներից մեկը, որ ընկած էր Լիկոս գետի՝ այժմյան Կելկիթի ուղղությամբ և սահմանակից էր Ակիլիսենեին, կոչվում էր Օրբալիսենե,* 'Ορβαλισηνή, *մյուսը, որ գտնվում էր նրանից մի փոքր հարավ, կոչվում էր Օրբիսենե,* 'Ορβισηνή։ *Բացի դրանից, Զարիադրեսի տիրապետության տակ գտնվող գա-*

ἔχων τὴν 'Ακιλισηνὴν μεταξὺ ἱδρυμένην τοῦ <'Αντι>ταύρου τε καὶ τῆς τοῦ Εὐφράτου ποταμίας πρὶν ἢ κάμπτειν αὐτὴν ἐπὶ νότον. *Համմ.* p. 743, 'Ακιλισηνὴν καὶ τὴν περὶ τὸν 'Αντίταυρον.

[1] *Ճիշտ ձևը՝ Մանաղի, ինչպես Սեբեոսի մոտ, էջ 139, իսկ Ման-ան-աղին կրում է Դարանաղիի ազդեցությունը։*

վառներից մեկը Ստրաբոնի մոտ մի տեղ հիշատակված է 'Ακιλισηνή, իսկ մի ուրիշ տեղ՝ *'Ακισηνή անունով[1]։ Եթե միայն սա վրիպակ չէ փոխ. Ակիլիսենե, ապա երկու ձևն էլ ըստ կազմության պիտի համարել համանման Orbalisena-ին և Orbisena-ին։ Իսկ Orbisena-ի առկայության դեպքում հասկանալի է դառնում orb-alis-ena-ի կազմությունը. նրա մեջ մանում է մեզ հետաքրքրող ali-s բառը[2]։

Իսկ ի՞նչ է նշանակում ali-s-ը։ ԺԳ դարի վերջի հայ գրող Հովհաննես Երզնկացին կարծում է, թե Դարան-աղին առաջ է եկել այդ գավառում եղած աղի քարանձավներից[3]։ Բայց այս ժողովրդական ստուգաբանություն է։ Հավանորեն այսպիսի ստուգաբանության հետևանքով էլ հին Մանաղի գետը վերանվանված է թուրքերեն Թուզլու-սու, որ նշանակում է աղի գետ։ Ալիս գետի ակունքներից մինչև Արաքս տարածվող ընդարձակ շրջանը, ինչպես գիտենք, չափազանց հարուստ է աղահանքերով, և թվում է, որ այս հանգամանքը կարող էր անդրադառնալ տեղական տերմինաբանության վրա։ Եվ սակայն քիչ հավանական է, որ հիշյալ բառերում alis-ը առաջ եկած լինի հայերեն աղի բառից։

Ավելի ճիշտն այն է, որ *ali ածականակերտ ածանցը նախագրաբարյան ծագում ունի և համազոր է վրացական ელი-ին ու գրաբարի եղ-ին. ըստ այդմ Մարդ-աղի պարզապես նշանակում է Մարդ-յան (գավառ), Ման-աղի՝ Մանյան, Ակ-իլիսենե՝ Ակիլյան (հմմտ. Վասպուրականի Ակէ գավառի հետ)։ Իր տեղում կտեսնենք, որ հին ժամանակներում Ատրպատականում ապրում էր մի փոքր ժողովուրդ 'Αινία-νοι, որի անունով էլ Փայտակարան նահան-

---

[1] Str. p. 745, τὴν 'Ακιλισηνήν, τὴν ὑπὸ τοῖς Σωφηνοῖς πρότερον οὖσαν. p. 742. τῆς Σωφηνῆς καὶ τῆς 'Ακισηνῆς καὶ 'Οδομαντίδος καὶ ἄλλων τινῶν.

[2] *Akis-ena, *ակի-ս, resp., ակեաց, ակի-ք, Akilis-ena, *ակի-աղի-ս, ակիաղեաց, ակիաղի-ք։ Orbis-ena, *որբի-ս, Orbalis-ena, *որբ-աղի-ս։ Թերևս սրանց կարգը պիտի դասել Պտղոմեոսի Βασιλισηνή-ն՝ Եփրատի վրա ընկած գավառներից մեկի անունը։ Պետք է սակայն ավելացնենք, որ եթե միայն դա Բասեանի վրիպակը չէ, ապա երկու անուններն էլ այնպես են վերաբերում միմյանց, ինչպես Օրբիսենե և Օրբալիսենե=Բասիան, բասի-աղիս, βασιλισ-ηνή։ Հայ մատենագրությանը անծանոթ է այդ ձևը. արդյո՞ք այդ Բասիանի հարևան գավառի ավելի հին անվանումը չէ, որ հետո կոչվեց Մարդաղի, գաղթական մարդերի՝ Μάρδοι, այնտեղ բնակության հաստատելու հետևանքով։

[3] Հովհ. Երզնկացի, Սոփերք, Ե, էջ 143, «ի ծործորս քո լերանց ի ներքոյ երկրէ աղբիւրս աղի զարանացեալ ունիս... եւ Դարան աղի կոչիս յայսմ ներգործութենէ»։

դի գավառներից մեկը կոչվում էր Hani։ Ստրաբոնը հայտնում է, որ նրանց մի մասը գաղթեց Հայաստան և բնակություն հաստատեց «հայերից վեր՝ Արոսի և Նիբարոսի վերևում»։ Աշխարհագրի նկարագրությունից երևում է, որ Արոս և Նիբարոս ասելով նա ի նկատի ունի Արարատի գագաթները։ Սրանցից ավելի վերև գտնվող Անի ամրոցը՝ հետագայում Բագրատունիների հռչակավոր մայրաքաղաքը, ըստ երևույթին իր անվան համար պարտական է Aenia-ni ժողովրդին։ Ani անվան կողքին, ինչպես հայտնի է, Խորենացին ունի Hani ձևը, որ համապատասխանում է Փայտակարանի Hani-ին։ Մենք ենթադրում ենք, որ Դարանաղիի Անին էլ նույն ծագումն ունի. ճիշտ այնպես, ինչպես որ նույն այդ Ատրպատականից գաղթած մարդերը հանդիպում են Հայաստանի երկու տարբեր վայրերում՝ Մարդաստանում և Մարդաղիում, այնպես էլ այնիանները դեպի արևմուտք շարժվելով՝ տեղ են գրավել Շիրակում և Դարանաղիում։

Հնարավոր է նույնիսկ, որ այդ երկու ցեղերի գաղթը Հայաստանի մի ծայրից դեպի մյուսը պայմանավորված է եղել միևնույն պատճառներով։ Այնիանների նոր հայրենիքը Եփրատի վրա պետք է կոչվեր Անաղի, ani-ali Մարդ-աղիի նմանությամբ. այստեղից էլ՝ արևմտյան հեղինակների Analiba-ն կամ Analibna-ն. այստեղ վերջի b-ն ուրիշ բան չէ, եթե ոչ վրացերեն հոգնակիի նշան ები-ն։ Անալիբա նշանակում է անեցիք, ինչպես վրացիք՝ վիր-ք-ից, որոնց ք-ն համազոր է b-ին։ Ինչպես արդեն նշվեց, տիեզերական ժողովների արձանագրությունների մեջ Դարանաղին, Կամախը և Անալիբան կարծես թե հոմանիշներ են և նշանակում են միևնույն գավառը։ Կամախը Դարանաղիում գտնվող Անի քաղաքի մի այլ անվանումն է և այդ պատճառով հասկանալի է նրանց նույնացումը։ Բայց ի՞նչ առնչություն ունի Դարանաղին Անալիբայի հետ։ Չպե՞տք է արդյոք բաժանել daranali-ն dar-anali-ի. այդ դեպքում դժվար չէ վերջին մասը դիտել իբրև analiba-ի եզակի ձևը, իսկ dar-ը համադրել Դերջան-ի, der-xene-ի առաջին վանկի՝ der-ի հետ, նկատի ունենալով, որ Դերջանը սահմանակից էր ճաների երկրին, ճան-ը կամ xene-ն կարելի է մոտեցնել Τζάν-οι-ին՝ Խորենացու Ճանիւք-ին, որտեղ ւ-ն ծագել է b-ից, šan-ebi-ǩ: Ինչ վերաբերում է սկզբի der վանկին, ապա նա կապ ունի, թերևս, Δρίλοι-ի հետ՝ հարևան

*կոլխիդյան ցեղերից մեկի անվան հետ,* *dar-ili, *որտեղ վերջին* -ili-*ն մեր քննության առած* -eli, ელი *ածանցն է։ Այս բացատրությամբ Դերջանը էթնիկական երկու տերմինների զուգակցում է, ինչպես, օրինակ, Պլինիոսի մոտ՝* Armeno-chalybes.

*Դերջանը պահպանվել է ներկայիս Տերջան և Դերսիմ ձևով։ Դերսիմի մի փոքրիկ շրջանը կոչվում է Կողլիջան։ Մեր կարծիքով Դերսիմն ու Կողլիջանը հայկական Դերջանի և Եկեղիքի ինչպես և միջնադարյան Կեցենի (*եկե-ղես-ական-ից, հմմտ. Երզինջան *Երիզականից) արաբա-պարսկական ձևերն են։*

*Աղիւն տերմինը սակայն չի հաստատում մեր ենթադրությունը* -ali-*ի մասին, որից կարելի էր եզրակացնել, որ* ali-*ն ավելի շուտ ինքնուրույն բառ է, քան հասարակ թեքածանց։ Աղիւնը չի կարելի համարել վերջնականապես հաստատված ընթերցում, և հնարավոր է նաև <ան> աղիւն ձևը։ Բայց հաշվի առնելով առայժմ գոյություն ունեցող ընթերցումը՝ կարելի է առաջարկել տվյալ հարցի մի քիչ այլ լուսաբանություն։*

*Մեզ հետաքրքրող* *alis-*ը շատ է հիշեցնում* ʽΑλυ-ς, *Haly-s* *ծանոթ գետի անունը, որ հոսում է Դարանաղիի սահմաններում գտնվող լեռներից։ Այդ լեռները հանդիսանում են Ալիսի, Եփրատի և Լիկոսի ջրբաժանը։ Ստրաբոնը գտնում է, որ Ալիս գետի անունը առաջացել է այն աղահանքերից, որոնք գտնվում էին նրա հոսանքի մոտ*[1]*։ Ստուգաբանորեն Ալիսին մոտ է* Ἀλί-ζωνες-*ը, որ նույն գետի ավազանում ապրող ժողովրդի անունն է, և որի մասին հիշատակում է Հոմերոսը։ Ստրաբոնը, մեջ բերելով բանաստեղծի տողերը, ենթադրում է, թե ալիզոնները հենց հին*

---

[1] Str. p. 767, ὀνόμασται δ' (Ἄλυς) ἀπὸ τῶν ἁλῶν ἃς παραρρεῖ. p. 788, εἰσὶ δ' ἐν τῇ Ξιμήνῃ ἅλαι ὀρυκτῶν ἁλῶν, ἀφ ὧν εἰκάζουσιν εἰρῆσθαι Ἅλυν τὸν ποταμὸν, *նաև,* Κουλουπηνήν τε καὶ τὴν Καμισηνήν ὁμόρους οὔσας τῇ τε Μικρᾷ Ἀρμενίᾳ... ἔχουσας ὀρύκτους ἅλας καὶ ἔρυμα ἀρχαῖον τὰ κάμισα νῦν κατεσπασμένον, Str. 786։ Kulup-ena *Պլինիոսի մոտ* Kolop-ena-*ն հետաքրքրական է համեմատել հայերեն Կող-ըի հետ, ուր նույնպես աղահանք կա։ Դիոնիսիոսի ոտանավորի 784 տան իր մեկնության մեջ, որի խոսքերով* ῥοαὶ Ἅλυος ποταμοῦ ἀπὸ τῶν Ἀρμενίων ὀρῶν *Եվստաթիոսը Ստրաբոնի ստուգաբանության առթիվ նշում է, որ եթե աշխարհագրագրի կարծիքը ճիշտ համարվի, ապա* Ἅλυς-*ը միշտ պետք է գրել* spiritus asper-*ով, բայց ովքեր հնչում են առանց այդ նշանի, նրանք անունը համարում են առաջ եկած* ἄλη, *թափառել բառից, այն իմաստով, որ գետը հոսում է բազմաթիվ երկրների միջով։* *Gr. Min.* II, p. 354։

խալիբներն են, որոնք նրա ժամանակ կոչվում էին խալդեյներ. նա նույնիսկ հակված է Հոմերոսի ’Αλύβη-ն ուղղելու Χαλύβη-ի: Մեծ աշխարհագետը, անկասկած, իրավացի է, երբ նույնացնում է Chal-ybes-ը և Chal-daei-ն. այդ երկու բառերը համադր են նաև քերականորեն, քանի որ -ib-ն և -di-ն հոգնակիի հավասարազոր նշաններ են, ինչպես վրաց. ებ-ը և հայերեն տի-ն[1]։ Նշանների տարբերությունը թերևս ցույց է տալիս, որ այդ ցեղերը բնակվելիս են եղել տարբեր շրջաններում և կամ պատմական կյանքի տարբեր շրջաններում կրել են կոլխերի ու հայերի ազդեցությունը։ Հայերին հարևան խալիբներին Պլինիոսը անվանում է Armenochalybes։ Chal-di-ն, հավանորեն, հայ խալիբների անվանումն է։ Խալդիան երբեմն կոչվում է Հայոց աշխարհ[2]։ Ինչ վերաբերում է ալիբներին, ապա այն կարծիքը, թե նրանք և խալիբները նույնն են, նվազ համոզիչ է թվում։ Ստրաբոնը իր ենթադրությունը հիմնում է այն բանի վրա, որ երկուսն էլ տիրում էին մետաղահանքերի։ Բայց Հոմերոսի ալիբները արդյունահանում էին արծաթ, իսկ խալիբները Ստրաբոնի ժամանակ արդյունահանում էին միայն երկաթ։ Մեկը մյուսին հակասող այդ երկու փաստերը հաշտեցնելու նպատակով նա ենթադրում է, թե «խալիբների հանքերը սկզբում տալիս էին նաև արծաթ»[3]։ Դժվար է, իհարկե, ստուգել Ստրաբոնի կարծիքը. ըստ էության անհավանական ոչինչ չկա այն բանում, որ chal-ը և al-ը resp. hal միևնույն անվան բարբառային տարբերակներ լինեն։ Գուտշմիդը ենթադրում է, որ խալիբների անունը առաջ է գալիս հունարեն χαλυψ, պղինձ բառից, և որ այդպես էին կոչվում մետաղամշակությամբ զբաղվող պոնտական ժողովուրդները[4]։ Առավել հավանական կլիներ հակադարձ հարաբերությունը. այն է՝ հունարեն բառը իր ծագումով պարտական է այն ժողովրդին, կամ երկրին, որտեղից հույները պղինձ էին հայթայթում։ Հասկանալի է, որ այդ չի բացառում, որ chal-ը որևէ առնչություն ունենա հանքային արդյունաբերության հետ. կարող է պատահել, որ այդ

---

1 Н. Марр, *Грамматика древнеармянского языка*, с. 98.

2 Steph. Byz. v. Χαλδία χώρα τῆς ’Αρμενίας, հմմտ. Eustath. *Op. cit.* p. 350.

3 Str. p. 751, τὰ μέταλλα νῦν μὲν σιδήρου πρότερον δὲ καὶ ἀργύρου.

4 Gutschmidt, *Kleine Schriften*, III p. 487.

*բառը Պոնտոսի որևէ արխայիկ լեզվում նշանակում էր մետաղ։*

*Ալիզոնների խալիբների հետ համեմատելը սոսկ անհիմն ենթադրություն է։* Hali-zoni *և* Alibi-*ն* *ali-ibi-*ից արդյոք չե՞ն նշանակում այն ժողովուրդը, որ զբաղվում էր աղահանքերի մշակությամբ* Halis *գետի վրա և նրան հարևան խալիբների հետ շփոթելը տեղի չի՞ ունեցել արդյոք նրանց լեռնաարդյունաբերական նույն բնույթը կրող զբաղմունքի հետևանքով։ Այդ դեպքում դասական* Alyb-*ին կհամապատասխաներ հայկական Աղին*-Aliun, *alibn-*ին և թերևս* an-aliba-*ին։* Haly-s *գետի անվանումն էլ, անկախ ամեն բանից, մոտիկ ազգակցություն ունի լազերեն* ğala-*ի «գետ», վրացերեն* წყალი, *«ջուր»-ի հետ։*

*Մեր քննության ենթակա Հայաստանի մասը՝ Ներքին Հայքը հյուսիսից սահմանակից էր ճաների երկրին։ Նրա ծայրամասային գավառներից՝ Եկեղյաց, Դերջան և Սպեր գավառներից այն կողմ տարածվում էր Լիկոս-Գելկիթի և Ճորոխի հովիտը, որը հյուսիսից և հարավից շրջապատված էր բարձր լեռներով։ Ըստ* Աշխարհացույցի *այդ հովիտը Մեծ Հայքի սահմաններից դուրս էր գտնվում և ավելի շուտ պատկանում էր Փոքր Հայքին։ Պրոկոպիոսը այն հայկական հող է համարում և այնտեղ նշում է մի շարք քաղաքներ ու ամրություններ։ Այստեղ էր գտնվում Սատալա քաղաքը, որից «ոչ հեռու՝ Օսրոյեն գավառում Հուստինիանոսը կառուցեց մի բերդ»։ Նույն գավառում մի բլրակի վրա հին ժամանակներից ի վեր գտնվում էր մի փոքրիկ ամրոց, որը գրավելով՝ Պոմպեոսը լավ ամրացրեց և կոչեց Կողոնիա։ Այստեղ են գտնվում նաև Բայբերդ և Առե, ինչպես նաև Լիսիորմ և Լիթարարիզ բերդերը։ Հուստինիանոսը մի նոր ամրոց կառուցեց Գերմանոսի փոսսա կոչվող վայրում։ Դրանց շարքում պատմագիրը հիշատակում է հայկական Սեբաստիա և Նիկոպոլիս քաղաքները*[1]*։ Հիշատակած բոլոր այս բնակավայրերը Պրոկոպիոսը վերագրում է այն «Հայքին, որն ընկնում է Եփրատից աջ»՝ ի հա-*

---

[1] Proc. *Aed.* III 4, Σάταλα πόλις, p. 253, φρούριον δὲ Σατάλων οὐ πολλῷ ἄποθεν ἐν χώρᾳ 'Οσροηνῶν καλουμένῃ. *Այս շրջանը, որտեղ, ի միջի այլոց, գտնվում էր նաև Սատալան, Պտղոմեոսը անվանում է Օրբալիսենե, իսկ նրանից քիչ հարավ ընկած մյուս գավառը՝ Օրսենե։ Պրոկոպիոսի Օսրոենեն ընդհանուր ոչինչ չունի սրանց հետ և այն կարելի է ավելի շուտ նույնացնել Հայոց Երեզի հետ. կա* 'Ορσοηνῶν. *տարընթերցվածք* ib., p. 253 not.։ *Այստեղ է նաև* φρούριον

*կառրությունն Մեծ Հայքի, որտեղ գտնվում են Թեոդոսուպոլիսը, Վիժանը և Ծումինան*[1]։

*Այնուհետև պատմագիրն անցնում է Ճանիքի նկարագրությանը. «Ճանական ցեղերը հարևան են հայերին»։ Ճաների երկրում կա Սքիմալանիքոն վայրը, որտեղ Հուստինիանոսը քրիստոնեությունը նոր ընդունած ճաների համար կառուցեց առաջին եկեղեցին։ Այստեղ երկիրը բաժանվում է երեք մասի։ Հենց այստեղ սկսվում և այստեղ էլ բաժանվում են հոռոմների, պարսկահայերի և ճաների սահմանները։ Հենց այստեղ էր, որ Հուստինիանոսը կառուցեց Օրոն բերդը՝ առաջինը այդ երկրում, և որը խաղաղության սկիզբ ծառայեց, որովհետև այստեղից հոռոմներն առաջին անգամ մուտք գործեցին Ճանիք»։ Օրոնից երկու օրվա ճանապարհի վրա է գտնվում Խարտ գյուղը, ճանական բազմաթիվ ցեղերից մեկի՝ Օկենիտ ճաների հողում։ Խարտից դեպի արևելք բացվում է մի զառիթափ կիրճ, որ ձգվում է հյուսիսային ուղղությամբ, որտեղ և գտնվում է Բարխ բերդը։ Քիչ ավելի հեռու՝ լեռնալանջերին փարախներ կան, որտեղ գիշերները հավաքվում են օկենիտյան ճաների անասունները և այստեղ էլ արածում են։ Լեռան ստորոտից այն կողմ՝ մի տափարակ վայրում, գտնվում է Կենա գյուղը, իսկ այստեղից արևմուտք՝ Սիսիլիս ամրոցը։ Սրա ձախ կողմում՝ դեպի հյուսիս Լոնգինոսի փոսատ կոչված վայրն է, որ այդպես է կոչվում հոռոմեացի զորավար Լոնգինոս Իսավրացու անունով, որը հին ժամանակներում արշավել էր ճաների երկիրը և ճամբար էր խփել այդ նույն տեղում։ Այստեղ Հուստինիանոսի օրոք, Սիսիլիսից մեկ օրվա ճանապարհ հեռավորության վրա, կառուցվեց Բուրգ բերդը։ Այնուհետև գալիս են Կոկսիլինյան ճաների սահմանները, որտեղ երկու ամրություն կա՝ Սքիմալանիքոն և Ծ ա ն ղ ա կ*[2]։

---

Κολώνεια, φρούρια τὸ Βαιβερδῶν καὶ τὸ 'Αρέων, καὶ τὸ Λυσίορμον σὺν τῷ Λυταραρίζων. ἐν τε χωρίῳ, ὅπερ Γερμανοῦ καλοῦσι φοσσᾶτον, φρούριον νέον. ἀλλὰ καὶ Σεβαστείας καὶ Νικοπόλεως τῶν 'Αρμενίας πόλεων.

[1] *Aed.* III 5, ταῦτα μὲν οὖν ἐν 'Αρμενίᾳ, ἥτις ἐστὶν ἐν δεξιᾷ Εὐφράτου ποταμοῦ. ὅσα δέ οἱ ἐν 'Αρμενίᾳ τῇ μεγάλῃ... Θεοδοσιούπολις, τὰ Β ι ζ α ν ά... ἐν χωρίῳ Τ ζ ο υ μ ι ν ᾷ.

[2] *Aed.* III 6, p. 257, τὰ Τζανῶν ἔθνη... πρόσοικοι 'Αρμενίοις εἰσίν p. 258, ἐκκλησίαν ἐν χωρίῳ Σ χ α μ α λ ι ν ί χ ω ν καλουμένῳ δειμάμενος, p. 259, ἐνταῦθα φρούριον 'Ο ρ ο ν ῶ ν ... ἐν χωριῳ δὲ ὁδῷ ἡμέραιν δυεῖν 'Ορονῶν

*Ճաների հողերից այն կողմ մի երկիր կա, որ տարածվում է Եվքսինյան ծովի երկարությամբ, նրա գլխավոր քաղաքը Տրապիզոնն է*[1]*։ Տրապիզոնցիների սահմանները հասնում են մինչև Սուսարմենե և Ռիզե, որոնք գտնվում են Տրապիզոնից երկու օրվա ճանապարհ հեռավորության վրա։ Սրանցից դեպի աջ բարձրանում են Ճանիքի լեռները, որտեղից հոսում է ՈՀ գետը, իսկ նրանցից այն կողմ ապրում են հռոմներին հպատակ հայերը։ Ճաները բնակվում էին ծովափից բավականին հեռու՝ հայերի հարևանությամբ, նրանց միջև բարձրանում են բազմաթիվ անմատչելի խիստ զառիթափ լեռներ։ Այստեղ մի ընդարձակ տարածություն բոլորովին անմարդաբնակ է. անանցանելի խորխորատներն ու անդունդները, անտառապատ բլուրները ճաներին բաժանում են ծովից*[2]*։ Ճաների զորաջոկատը, որ մասնակցեց 550 թ. Պետրայի պաշարմանը, հայրենիք վերադառնալիս ծովափով անցավ դեպի Ռիզե, այնտեղից՝ Աթենք և Տրապիզոնի վրայով վերադարձավ տուն*[3]*։ Այս նկարագրությունից երևում է, որ ճաները, իսկապես, ապրում էին ծովափից հեռու, մայրցամաքի խորքում։*

*Տրապիզոնից մինչև Ռիզե ծովափնյա շերտը պատկանում էր տրապիզոնցիներին, դրանից այն կողմը՝ լազական ցեղերին, իսկ այդ շերտի լեռնային մասը՝ դեպի ներս, մինչև ՈՀ գետի ակունքները ճաների երկիրն էր։ Վերոհիշյալ գետի ակունքները Ճանիքում էին գտնվում, թե Հայաստանում, այնքան էլ պարզ չէ, որովհետև ըստ մի տեղեկության գետը հոսում էր ճանական լեռներից, իսկ ըստ մի այլ տեղեկության՝ Ճանիքին սահմանամերձ Փառանգիոնի մոտ բնակվող հայերի երկրից։ Բայբերդ և*

---

διέχοντι, οὗ δὴ Τζανῶν τῶν Ὠ κ ε ν ι τ ῶ ν καλουμένων τὰ ὅρια... ὀχύρωμα Χαρτὼν... τῷ δὲ ἐνθένδε ἰόντι πρὸς ἀνίσχοντα ἥλιον φάραγξ... οὗ δὴ φρούριον Β α ρ χ ὼ ν... ἐπέκεινα δὲ κατὰ τοῦ ὄρους τὴν ὑπώρειαν ἐπαύλεις εἰσὶν, ἵνα δὴ οἱ Τζανῶν τῶν Ὠκενιτῶν βόες αὐλίζονται... μετὰ δὲ τοῦ ὄρους τὸν πρόποδα, οὗ Κενὰ τὸ χωρίον ἐν τῷ ὁμαλῷ... ἐνθένδε τοι ἰόν τι ἐπὶ δύοντά που τὸν ἥλιον τὸ Σ ι σ ι λ ι σ σ ῶ ν ὄνομα φρούριον... ἐνθένδε δὲ ἰόντι ἐν ἀριστερᾷ πρὸς βορρᾶν ἄνεμον... Λ ο γ γ ί ν ο υ φοσσᾶτον... ἐνταῦθα φρούριον... Βούργους ἡμέρας ὁδῷ Σισιλισσῶν διέχον... ἐντεῦθεν ὅρια τῶν Τζανῶν τῶν Κ ο ξ υ λ ί ν ω ν... οὗ δὴ φρούρια Σχιμαλανίχων καὶ Τ ζ α ν ζ ά κ ω ν.

[1] *Aed.* III 7 p. 260.

[2] Proc. *Goth.* IV 2 p. 463—4.

[3] *Pers,* II 30, p. 294.

Սատաղ քաղաքները, որոնց դիրքը ստույգ հայտնի է, քանի որ մինչև այսօր էլ դրանք գոյություն ունեն՝ մեկը Ճորոխի վրա, իսկ Սատաղը՝ այժմյան Սադաղ գյուղը, Կելկիթ գետի մոտ, Պրոկոպիոսը երկուսն էլ վերագրում է Հայաստանին։

Սատաղի և Բայբերդի վերևից ձգվում է մի երկար լեռնաշղթա, որ Շապին-Կարահիսարի կողմից ծովափին զուգահեռ անցնում է դեպի Ճորոխի ակունքները։ Հնում սա կոչվում էր Պարխարյան կամ Պարիադրեսյան լեռներ, և Ճորոխի երկարությամբ տարածվող նրա մի մասը այսօր էլ կրում է հին Պարխալ կամ Բոլխար անունը։ Քանի որ Սատաղը և Բայբերդը, ինչպես նաև հիշյալ շղթայի հարավային ճյուղերի վրա ընկած Կողոնիան՝ այժմյան Կոյլի-հիսարը, մտնում էին Հայաստանի մեջ, ուստի այդ լեռները պետք է համարել Հայաստանի և Ճանիքի միջև բնական սահման։ Ճաների երկիրը ընկնում էր այդ լեռներից հյուսիս և գրավում էր լեռնոտ մի տարածություն, որ, պատմագրի վկայությամբ, ծածկված էր անտառներով, այդ պատճառով էլ ճաները երկրագործությամբ չէին զբաղվում և իրենց ապրուստը հոգում էին կողոպուտով և անասնապահությամբ[1]։

Ճաների երկրի ընդհանուր դիրքը որոշելուց հետո հնարավոր է ճշտել նրա՝ վերը հիշատակված վայրերի տեղադրությունը։ Ճաները բաղկացած էին բազմաթիվ ցեղերից, որոնցից պատմագիրը հիշատակում է օկենիտներին և կոկսիլիններին. առաջինները բնակվում էին կոկսիլիններից ավելի հարավ։ Օկենիտյան ճաների բնակավայրը որոշվում է Խարտի դիրքով. վերջինս այժմյան Խարտն է, Բայբուրթից վերև, Ճորոխի արևմտյան վտակի վրա, Խարտի դաշտավայրում, որ այժմ կոչվում է Խարտ-օվասի։ Խարտից արևմուտք, ինչպես նշում է Պրոկոպիոսը, մեկ օրվա ճանապարհի վրա գտնվում էր Օրոն ամրոցը, որը ճաներին նվաճելու ժամանակ հռոմների համար ռազմական հենակետ էր ծառայել, որտեղից էլ ճանապարհները բաժանվում էին երեք ուղղությամբ՝ դեպի Հռոմական Հայաստան, Պարսկական Հայաստան և Ճանիք։

Ներկայումս Տաճկահայաստանից դեպի Տրապիզոն տանող հաղորդակցության երկու գլխավոր գծերը, որոնցից մեկը Էրզրումից անցնում էր Բայբուրթի վրայով և Խարտի մոտով, իսկ մյուսը՝ Երզինգյանից Սատաղի վրայով, Գյումիշ-խանեից ոչ հեռու,

[1] Aed. III 6, p. 257 և Pers I 15, p. 77.

*իրար են միանում։ Պրոկոպիոսի խոսքերի իմաստից երևում է, որ Օրոնը գտնվել է այդ հանգուցային կետում։ Իսկապես, հենց այնտեղ, որտեղ հատվում են հիշյալ գծերը, կա մի վայր, որ թուրքերեն կոչվում է խալանեն խանլար, այսինքն՝ խալանի կայարան, իսկ խալանը ոչ այլ ինչ է, եթե ոչ հին Օրոնը* spiritus asper-*ով։ Այս եզրակացության ստույգ լինելը հաստատվում է նրանով, որ խալանը գտնվում է Խարտից այնպիսի հեռավորության վրա, ինչ որ նշել է Պրոկոպիոսը, այսինքն՝ մոտավորապես 40 կիլոմետրի վրա, որին հավասար է Պրոկոպիոսի մեկ օրվա ճանապարհը։ Գտնվելով երկու լեռնանցքների դիմաց, որտեղով անցնում են Երզնկայի և Բայբուրթի ճանապարհները, և ծառայելով որպես պաշտպանական ամրոց՝ Օրոն-խալանը, ինչպես վկայում է պատմագիրը, իսկապես կարող էր կարևոր դեր խաղալ Ճանիքի նվաճման գործում։*

*Խարտի մյուս կողմում, հյուսիսային ուղղությամբ ձգվում էր մի ձոր, որը հայերը կոչում են Խաղտոյ ձոր, և որը հենց Ճորոխ գետի հովիտն է։ Այստեղ էր գտնվում Բարխը, որի տեղը հայտնի չէ. հավանաբար* Βαρχων-*ը ինչ-որ չափով առնչություն ունի ձորի վրա բարձրացող Պարխար լեռների հետ։ Այդ լեռներում էլ, Պարխարյան լեռնաշղթայի հենց այն մասում, որ անցնում էր Խարտից վերև, գտնվում էին օկենիտյան ճանների փարախներն ու արոտավայրերը, քանի որ Խարտը հիշյալ ճանների կենտրոնն էր։ Իսկ այն հարթավայրը, որտեղ գտնվում էր Կենա,* resp. *Օկենա ավանը, պետք է համարել նույն այդ լեռների վերջավորությունը։ Կենան, ըստ էության,* Τζαν-*-ի ավելի հին ձևն է. կոկորդային* k-*ը հնչյունը ձայնավորից առաջ կամ ետնալեզվայինի կողքին փոխվել է քմային* τζ-*ի։ Նախընտրելի է *Օկենա ընթերցումը, որտեղ* o-*ն,* *ho-*ն տեղ ցույց տվող նախածանց է, վրացական* sa-*ին համապատասխան։ Օկենա նշանակում է կեների կամ օկենիտյան ճանների բնակավայր։ Այսպիսով, հենց Օկենան էլ եղել է օկենիտյան ճան կոչվող ցեղի իսկական հայրենիքը և այդ պատճառով էլ հարում էր օկենիտների արոտավայրերին և փարախներին։*

*Օկենայից արևմուտք գտնվում է Սիսիլիսը։ Արդյոք որևէ ընդհանուր բան կա՞ Սիսիլիսի և Tab. Peut.-ի և Ant.-ի Զիգիոլայի միջև, այնքան էլ պարզ չէ։ Զիգիոլան,* Ziziola, *ինչպես կտեսնենք*

ատրև, Նիկոպոլիս—Սատաղ գծի վերջին կայանն է, վերջինից 18 մղոն հեռավորության վրա։ Ճանապարհն անցնում էր Գայլ-Կելկիդ գետի հոսանքով և այդ պատճառով էլ Ձիզիոլան ընկնում է այժմյան Կելկիդի շրջակայքում՝ Սատաղից ոչ հեռու։ Ըստ Պրոկոպիոսի Սիսիլիսը, ինչպես և Կենան, ընկած էր Պարխարյան լեռների հյուսիսային վերջավորությունների վրա, մինչդեռ Ձիզիոլան և Սատաղը գտնվում էին հակառակ կողմում։ Բացի դրանից, Ձիզիոլան ծանոթ է նաև Not. dign.-ից։ Այստեղ դեռևս Հուստինիանոսից շատ առաջ կանգնած էր հռոմեական պահակազորք, մինչդեռ ճաները առաջին անգամ նվաճվեցին Հուստինիանոսի օրոք, ուրեմն՝ Սիսիլիս քաղաքը չէր կարող հռոմեական պահակազորի համար կայան ծառայել։ Սրանից հետևում է, որ կամ Ձիզիոլան Սիսիլիսից տարբեր մի վայր էր և գտնվում էր ոչ թե Ճանիքում, այլ Հայաստանում, իսկ Սիսիլիսը և Օկենան պետք է փնտրել Պարխար լեռների հյուսիսային ստորոտում, կամ էլ, եթե անառարկելիորեն ընդունելու լինենք Ziziola-ի և Σισιλίσσ-ων-ի հնչյունային նմանությունը, պետք է ընդունենք, որ Սիսիլիսը նույն Ձիզիոլան է, և այս դեպքում նշանակում է, Օկենան ևս պետք է փնտրել Ձիզիոլայի հարևանությամբ՝ արևելյան կողմում, այսինքն՝ Բայբուրթի դաշտավայրում, հաշտվելով Պրոկոպիոսի որոշ անհետևողականության հետ, որը Սատաղը վերագրում է Հայաստանին, իսկ նրան կից Սիսիլիս-Ձիզիոլան՝ Ճանիքին։ Ասենք, կարող է պատահել, որ Սիսիլիսը Սատաղի կողմից Ճանիքի ծայրակետն է եղել, ճիշտ այնպես, ինչպես Խարտը՝ Բայբերթի կողմից։ Ճաների երկիրը գտնվում էր առհասարակ Պարխարյան լեռներից հյուսիս, մինչդեռ Խարտը՝ օկենիտյանների կենտրոնը, այդ լեռների հարավային ստորոտում՝ Բայբերդի և Սատաղի դիմաց։ Երևի Ճանիքի նկատմամբ այդպիսի դիրք ուներ Սիսիլիս-Ձիզիոլան, որպես ճանական ամենահարավային բնակավայր։

Սիսիլիսից մեկ օրվա ճանապարհի վրա էր Բուրգը՝ Լոնգինոսի փոսատից ոչ հեռու։ Բուրգից այն կողմ սկսվում էր կոկսիլիններ ցեղի երկրամասը՝ Սքիմալանիքոն և Ծանդակ քաղաքներով։ Ծովափին մոտիկ, Սուրմենեի մոտ, Կարա-դերե գետի ափին ներկայումս գտնվում է Ջավզագա գյուղը, որն իր գրաված դիրքով համապատասխանում է Պրոկոպիոսի Τζανζάκ-ων-ին[1]։ Ջավզագայից

[1] Կարող է պատահել Τζαυζάκων-ի փոխարեն պետք է կարդալ՝ Τζανζάκων.

*հարավ, նույն գետի մոտ նշվում է մի այլ գյուղ՝ Ջիմլա, որի անունը հիշեցնում է հին* Σχιμαλα-νίχ-ων-*ը։ Այսպես դատելով՝ կարելի է եզրակացնել, որ կոկսիլինյան ճանբը գրավում էին Կարա-դերե գետի հովիտը։* Κοξ-υλι-νοι-*ն բաղկացած է *koks արմատից և uli, վրաց. ულო-ից։ Արևմուտքից Տրապիզոնին հարող շրջանը այժմ կոչվում է Կոշ, որի մեջ չի կարելի չտեսնել հին* Κοξ-*ը։ Ինչպես հայտնի է, ճանբի մասին հիշողություն պահպանվել է աշխարհագրական այժմ էլ կենդանի Ջանիք տերմինի մեջ, որն ընդգրկում է Խարշուտ գետի ստորին ավազանը։ Ճանբը այստեղ են քշվել հետագայում, իսկ մինչ այդ նրանք բնակվում էին Խարշուտ գետից արևելք, Արդասայի և Գյումիշ-խանեի սահմաններից ընդհուպ մինչև Համշեն, այդպիսով զբաղեցնելով Պարխարի ամբողջ սարահարթը, մասամբ էլ իջնելով լեռների մյուս կողմը՝ Ոհ-Ճորոխի և Գայլ-Գելկիդ գետերի հովիտը։ Արդասայից հյուսիս նույնանուն լեռների ստորոտում, Տրապիզոն տանող գլխավոր ճանապարհի վրա գտնվում է Զիգանան։ Զիգանան հնում մի կարևոր կետ էր և Լազիկեի թեմի հինգ եպիսկոպոսներից մեկի աթոռանիստը[1]։ Եկեղեցական առումով Ճանիքը պատկանում էր Լազիկեին։ Ճանբը այդ երկրում, որ հնագույն ժամանակներում ծանոթ էր Խալդիա անունով, բնակվող բազմաթիվ ցեղերից մեկն էին։ Զ դարում ճանբի քաղաքական նշանակության ուժեղանալու հետ միասին ամբողջ երկիրը սկսեց կոչվել Ճանիք։ Փոքր-ինչ ուշ՝ Ը դարում հին անունը վերակենդանացավ. հայտնի է, որ Արմենիակոն թեմի տրոհման ժամանակ նրա մի մասը կոչվում էր Խալդիա։*

[1] Georg. Cypr. p. 24, ὁ τῆς Ζιγανέων.

## ԳԼՈՒԽ IV

# ՓՈՔՐ ՀԱՅՔ

# ARMENIA MINOR

**Փոքր Հայքի հողերի պատմական ճակատագիրը։ Նրանց տեղը հայոց պատմության մեջ։ Հայաստանը Կապադովկիայի կազմում։ Մեծ և Մերձպոնտական Կապադովկիա։ Մեծ Կապադովկիայի բաժանումը ստրատեգիաների։ Մերձպոնտական Կապադովկիա։ Կապադովկիական հողերի բաժանումը ըստ Պտղոմեոսի. ստրատեգիաների նկարագրությունը և նրանց տարբերությունը Ստրաբոնից։ Փոքր Հայքի առանձնացումը։ Փոքր Հայքը** *proprie dicta* **և նրա հինգ ճահանգները՝ Օրբալիսենե, Հայտուլանե, Հայրեթիկե, Օրսենե և Օրբիսենե։ Նրանց տեղագրությունը. քաղաքները ըստ Պտղոմեոսի, կայանային պահականոցները հաղորդակցության գծերի վրա ըստ** *Itin. Ant.*-**ի և** *Tab. Peul.*-**ի։ Գլխավոր շրջանաձև ճանապարհը. ներքին ճանապարհները։ Սրանց քննությունը և բաղդատությունը այժմյան հաղորդակցության գծերի հետ։ Հին կետերի տեղագրության ճշգրտումը։ Փոքր Հայքի սահմանների մոտավոր ճշտորոշումը։ Փոքր Հայքը իբրև կայսրության վարչական միավոր։ Վերոնյան ցուցակը և Պոլեմիոսի Լատերկուլոսը։ Եկեղեցական աշխարհագրության տվյալները։ Փոքր Հայքի բաժանումը I և II Հայքերի։ Նրանց գլխավոր քաղաքները։**

*Եփրատի արևմտյան ափին գտնվող հայկական հողերը հին ժամանակներից ի վեր կոչվում էին Փոքր Հայք,* ἡ μικρὰ Ἀρμενία, *ի հակադրություն Մեծ Հայքի։ Հայոց պատմության մեջ այդ երկրի վիճակը մի քիչ արտասովոր է։ Հանդիսանալով, կարելի է ասել, ազգային քաղաքական կյանքի օրրան՝ Փոքր Հայքը հետագայում անջատվեց հարևան հայերից և դրվեց ապազգայնացման ուղու վրա։ Նա առաջինն էր, որ Աքեմենյան կայսրության փլատակների վրա պայքարեց իր քաղաքական անկախության համար և սեփական թագավորական իշխանություն ձեռք բերեց շատ ավելի վաղ, քան Ծոփքում Զարեհի և Արաքսի հովտում Արտաշեսի թագավորությունների հիմնումը։ «Փոքր Հայքը բավական բախտավոր երկիր է,— ասում է Ստրաբոնը,— Սոփենեի նման սա էլ միշտ սեփական թագավորներ է*

*ունեցել, որոնք կամ բարեկամական հարաբերության մեջ էին մյուս հայերի հետ, կամ էլ իրենց անկախ էին պահում։ Նրանք իրենց տիրապետության տակ էին պահում նաև խաղտիններին և տիբարեններին, այնպես որ նրանց իշխանությունը տարածվում էր մինչև Տրապիզոն և Փառնակիա»*[1]*։*

*Նրա բախտը, սակայն, կարճատև եղավ։ Շուտով վրա հասավ Միհրդատի փոթորկալից ժամանակաշրջանը, և Պոնտոսի մեծ աշխարհակալի հզորանալու հետևանքով Փոքր Հայքը նույնպես ենթարկվեց նրան, իսկ նրա անկումից հետո անցավ հռոմեացիներին։ Մեկ անգամ ընկնելով Հռոմի համաշխարհային քաղաքականության ոլորտը, նա այլևս չկարողացավ ազատվել կամ դուրս գալ նրա ազդեցությունից և հնազանդությամբ կրեց բախտի քմահաճույքները, իր այդ ճակատագիրը բաժանելով Կապադովկիայի և պոնտական մյուս սահմանակից երկրների հետ։ Սկզբում նա ձեռքից ձեռք էր անցնում հռոմեական իշխանությունների քմահաճույքով, որոնք այն նվիրաբերում էին մեկ այս, մեկ այն վասալ թագավորներին. այսպես՝ Պոմպեոսը Փոքր Հայքը նվիրեց Գաղատիայի քառապետ Դեյոտարոսին, Կեսարը՝ Կապադովկիայի թագավոր Արիոբարզանեսին, Անտոնիոսը՝ Պոնտոսի Պողեմոն թագավորին, Օգոստոսը՝ Արքեղայոս Կապադովկիացուն, Կալիգուլլան՝ Թրակիայի իշխան Կոտիսին, Ներոնը՝ Արիստոբուլոսին և, վերջապես, առաջին անգամ Տիբերիոսի և, վերջնականապես, Վեսպասիանոսի օրոք այն դարձավ հռոմեական պրովինցիա*[2]*։*

*Փոքր Հայքի հողերի նշանակությունը հայոց պատմության մեջ ըստ արժանվույն չի գնահատված։ Ըստ տարածված կարծիքի, վաղ ժամանակներում անջատված լինելով Հայաստանից, Փոքր Հայքը ոչ միայն կտրված էր հայերից, այլև խորթ մնաց նրանց պատմական մշակույթին։ Այս տեսակետը այն աստիճան հաստատված է*

---

[1] Str. XII 3, p. 779, [Μικρὰ 'Αρμενία] δ' ἐστὶν εὐδαίμων ἱκανῶς χώρα. δυνάσται δ' αὐτὴν κατεῖχον ἀεὶ, καθάπερ τὴν Σωφηνὴν, τοτὲ μὲν φίλοι τοῖς ἄλλοις 'Αρμενίοις ὄντες τοτὲ δὲ ἰδιοπραγουντες· ὑπηκόους δ' εἶχον καὶ τοὺς Χαλδαίους καὶ Τιβαρηνούς, ὥστε μέχρι Τραπεζοῦντος καὶ Φαρνακίας διατείνειν τὴν ἀρχὴν αὐτῶν.

[2] Str. XII 3, p. 768 և 780, τὴν μὲν οὖν Μικρὰν 'Αρμενίαν ἄλλοτ' ἄλλων ἐχόντων, ὡς ἐβούλοντο 'Ρωμαῖοι. Dio-Cass. XLI 63; XLIX 33, 44; LIX, 12. Tacit. XI 9 և XIII, 7. Jos. Fl. *Ant.* XIX 8, 1 և XX 8, 4.

համարվում, որ պատմաբանները առանց այլևայլության Փոքր Հայքը դուրս են հանում հայկական շահերի շրջանակից։ Փոքր Հայքի մասին կազմված ավանդական պատկերացումները դեռևս կարիք ունեն քննադատական ստուգման, որովհետև հիմք չկա հայոց պատմությունից դուրս հանելու վաղուց ի վեր բնիկ հայ բնակչություն ունեցող մի ամբողջ շրջան։ Իրականում հայոց պատմական կյանքում Փոքր Հայքին վիճակվել է մի շատ լուրջ առաքելություն, և այն արդարացի գնահատել կարելի է միայն այն դեպքում, եթե հրաժարվենք եկեղեցական այն գաղափարախոսությունից, որին հարել և մինչև այսօր էլ հարում է հայ պատմագիտությունը։ Այդ միակողմանի վերաբերմունքն էլ խանգարել է Փոքր Հայքի ուսումնասիրությանը հայկական տեսակետից։ Նրա մասին գոյություն ունեցող պատկերացումներն այնքան աղոտ են, որ շատերը չեն տարբերում Փոքր Հայքը Կապադովկիայից, և նույնիսկ մասնագետները հաճախ շփոթում են այն կամ Ծոփքի, կամ էլ Կիլիկիայի հայկական հետագա տիրապետությունների հետ։ Այդ նկատառումով անհրաժեշտ ենք համարում կանգ առնել Փոքր Հայքի տեղագրության վրա, որպեսզի ճշտենք նրա նշանակությունը պատմական հաջորդականության մեջ նախ և առաջ որպես աշխարհագրական հասկացություն։

Փոքր Հայքի հողերը հռոմեական նահանգների շարքն անցան որպես Կապադովկիայի բաղկացուցիչ մաս։ Այդ վիճակում նա մնաց մինչև Դիոկղետիանոսը, մինչև Գ դարի վերջը, երբ Փոքր Հայքը առանձնացվեց որպես ինքնուրույն նահանգ։ Հաջորդ դարի վերջերին, Թեոդոսիոս Մեծի ժամանակ, այն բաժանվեց I և II Հայքի, իսկ Հուստինիանոսի թագավորության օրոք Փոքր Հայքի հողերը նախկին Մեծ Հայքի արևմտյան մասի հետ միասին նոր բաժանումների ենթարկվեցին։

Այն պայմաններում, որոնց մեջ ընթացավ Փոքր Հայքի պատմական կյանքը, նրա էթնիկական սահմանները, հասկանալի է, չէին կարող անաղարտ մնալ և պիտի կորչեին հարևան հողերի հետ ունեցած շփումների ընթացքում։ Հռոմեական նահանգային բաժանումները, համենայն դեպս, ազգագրական սկզբունքի հիման վրա չէին կատարվում, և խոսելով Փոքր Հայքի մասին, այն պետք է հասկանալ ավելի շատ որպես վարչական միավոր և ոչ թե ինչ-որ ցեղային ամբողջություն։ Նրա վարչական սահմանները հաճախ տատան-

*վում էին՝ նեղանալով կամ լայնանալով նրան սահմանակից գավառների միջև։*

*Փոքր Հայքը սկզբում մտավ Կապադովկիայի կազմի մեջ։ Կապադովկիայի նահանգը կազմվեց փոքրասիական մանր թագավորություններին պատկանող տիրույթներից։ Կապադովկիան, մինչև նրա մեջ կմտներ Փոքր Հայքը, բաղկացած էր երկու մասից՝ բուն Կապադովկիայից և Պոնտոսից։ Առաջինի մեջ մտնում էին Տավրոսին հարող հողերը, այդ պատճառով էլ այն կոչում էին Մերձտավրոսյան Կապադովկիա կամ Մեծ Կապադովկիա, իսկ երկրորդ մասը կազմում էին Պոնտոսի ծովափնյա հողերը. այն կոչվում էր Մերձպոնտական Կապադովկիա։ Մեծ Կապադովկիան՝ Արքելայոս թագավորի ժառանգությունը, դեռևս տեղական թագավորների օրոք բաժանված էր տասը շրջանների կամ ստրատեգիաների. դրանցից Մելիտենեն, Կատաոնիան, Կիլիկիան, Տիան-իտ-իան և Գարսավր-իտ-իան ընկած էին Տավրոսի երկարությամբ, իսկ դրանցից ավելի վեր մյուս հինգը՝ Լավիանսենեն, Սարգարավ-սենեն, Սարավենեն, Խամանենեն և Մորիմենեն՝ Ալիս գետի ուղղությամբ։ Մինչև հռոմեական նահանգի վերածվելը Կիլիկիայի որոշ մասերից կազմվեց նաև տասնմեկերորդ ստրատեգիան[1]։*

*Կապադովկյան Պոնտոսը գրավում էր Պափլագոնիայից կամ Ալիսի գետաբերանից մինչև Կողքիսն ընկած ծովափնյա տարածությունը։ Այն բուն Կապադովկիայից բաժանվում էր Տավրոսին զուգահեռ ձգվող մի լեռնաշղթայով, որի արևմտյան ծայրում գտնվում էր Խամանենեն, իսկ արևելյան ծայրում՝ Լավիանսենեն, ընդ որում երկու ստրատեգիաներն էլ պատկանում էին Կապադովկիային[2]։*

*Կապադովկիայի թագավորության վերացումից հետո տեղական նախահռոմեական բաժանումները, ըստ երևույթին, փոփո-*

---

[1] Str. XII 1 p. 750—1, εἰς δέκα στρατηγίας διῃρεμένης τῆς χώρας, πέντε μὲν ἐξητάζοντο αἱ πρὸς τῷ Ταύρῳ, Μελιτηνὴ Καταονία Κιλικία Τυανῖτις Γαρσαυρῖτις, πέντε δὲ λοιπαὶ Λαουιανσηνὴ Σαργαραυσηνὴ Σαραουηνὴ Χαμανηνὴ Μοριμηνή. προσεγένετο δ᾽ ὕστερον παρὰ Ῥωμαίων ἐκ τῆς Κιλικίας τοῖς πρὸ Ἀρχελάου καὶ ἑνδεκάτη στρατηγία... p. 760, Καππαδόκων τῶν πρὸς τῷ Πόντῳ.

[2] Str. XII 2, p. 758, ὅριον δ᾽ ἐστὶ τοῦ Πόντου καὶ τῆς Καππαδοκίας ὀρεινή τις παράλληλος τῷ Ταύρῳ, τὴν ἀρχὴν ἔχουσα ἀπὸ τῶν ἑσπερίων ἄκρων τῆς Χαμμανήνης... μέχρι τῶν ἑωθινῶν τῆς Λαουιανσηνῆς.

խության չենթարկվեցին։ Դատելով Պտղոմեոսի նկարագրությունից՝ դրանք պահպանվեցին անփոփոխ մինչև Բ դարի վերջը։ Պտղոմեոսի աշխարհագրության մեջ նույնպես տարբերվում են նահանգի պոնտական մասերը և բուն Կապադովկիան։ Մի տարբերություն կա միայն, որ այն ժամանակ պոնտական հողերը արևմուտքից մի փոքր կրճատվեցին, իսկ Կապադովկիան, ընդհակառակը, Լիկաոնիայի հաշվին ընդարձակվեց։ Պոնտոսի սահմանները Ալիս գետից ձգվեցին մինչև Իրիսի գետաբերանը. Իրիսից մինչև Հերակլեայի հրվանդանը ձգվող շերտը կոչվում էր Գաղատական Պոնտոս, այստեղից մինչև Կերասուն՝ Պոլեմոնական Պոնտոս, իսկ այնուհետև մինչև Կողքիս՝ Կապադովկյան Պոնտոս՝ Pontus Galaticus, Polemoniacus և Cappadocus։ Գաղատական Պոնտոսում գտնվում էին Ամասիան, Պիդան՝ այժմ Ցիդի, Պոնտական Կոմանան՝ այժմյան Գյումենեկը Թոխաթի մոտ և Սեբաստուպոլիսը, որը նույնացվում է Զեբերեք-սուի՝ հին Scylax-ի ակունքների մոտ գտնվող Սուլուսերայի հետ։ Սկյուլաքսը Իրիսի վտակն է և Ալիսից բաժանված է Չամլի-բել լեռներով, որոնք Գաղատիայի և Կապադովկիայի բնական սահմանն են։

Պտղոմեոսը Նեոկեսարիան և Սեբաստիան տեղադրում է Պոլեմոնական Պոնտոսում. ուրեմն՝ այն տարածվում էր դեպի հարավ, մինչև Ալիս գետը, որի հյուսիսային ափին գտնվում է Սըվազ-Սեբաստիան։ Այն շրջանը, որտեղ գտնվում էր Սեբաստիան, կոչվում էր Կողոպենե։ Նրա մեջ էր մտնում նաև Սեբաստուպոլիսը[1]։ Կողոպենեին սահմանակից էր Կամիսենեն՝ Կամիսա ավանով, այժմյան Կեմիս, որն ընկած էր Սըվազից արևելք՝ Ալիս գետի ափին։ Այս երկու շրջանները ծանոթ են Ստրաբոնին, և նա դրանք համարում է Փոքր Հայքին և Մեծ Կապադովկիայի Լավիանսենե ստրատեգիային սահմանակից[2]։ Կամիսենեն հանգուցային շրջան էր. նրանից հյուսիս ընկած էր Կապադովկյան Պոնտոսը, դեպի արևելք՝ Փոքր Հայքը, ուստի Լավիանսենեն նրա հետ կա-

[1] Plin. *Nat. hist.* VI 3, 3, in Colopene vero Sebastiam et Sebastopolim.

[2] Str. XII 3, p. 786, Κουλουπηνὴν καὶ τὴν Καμισηνήν, ὁμόρους οὔσας τῇ τε Μικρᾷ Ἀρμενίᾳ καὶ τῇ Λαουιανσηνῇ. Դրա հետևանքով ոմանք Ալիսի ակունքները դնում են Մեծ Կապադովկիայում, ինչպես Ստրաբոնը, էջ 767, իսկ ոմանք էլ՝ Հայաստանում, ինչպես Հերոդոտ I, 72, ῥεῖ δὲ ἐξ Ἀρμενίου ὄρους; հմմտ. Դիոնիսիոս V, 786, ῥοαὶ Ἅλυος... ἀρξάμεναι τὸ πρῶτον ἀπ᾽ οὔρεος Ἀρμενίου.

*բող էր շփվել միայն հարավից, ավելի ճիշտ՝ հարավ-արևմուտքից։ Լավիանսեննի այդ դիրքը հաստատվում է նաև Ստրաբոնի վերը բերված այն տեղեկությամբ, թե Լավիանսեննն Մեծ Կապադովկիայի ամենաարևելյան ստրատեգիան է և գտնվում է այն լեռնաշղթայի վրա, որի մյուս ծայրում գտնվում էր Խամանեննն։*

*Թեև Պտղոմեոսը պահպանում է ստրատեգիաների հին բաժանումները, սակայն դրանցից մի քանիսի, այդ թվում և Լավիանսեննի տակ հասկանում է բոլորովին այլ շրջաններ, քան Ստրաբոնը։ Այս վերջինիս մոտ ստրատեգիաները բերված են որոշակի կարգով։ Տասից հինգը գտնվում են Տավրոսի գոգավորություններում, իսկ մնացած հինգը հարում են Ալիսին։ Հարավից Լավիանսեննին սահմանակից էր Սարգարավսեննն, որ տարածվում էր Կարմալա-սու՝ այժմյան Զամանտի-սու գետի ուղղությամբ։ Խաման-ենեի՝ այժմյան Անկյուրայի վիլայեթի Այման կազայի նկատմամբ նույնպիսի դիրք էր գրավում Մուրիմեննն՝ այժմ Քոչ-հիսար Տատտ լճի մոտ։ Խամանեննի և Լավիանսեննի միջև Ալիսի ուղղությամբ ընկած էր Սարավեննն։ Լեռնային հինգ ստրատեգիաները արևելքից արևմուտք տարածվում էին հետևյալ կարգով՝ Մելիտենն՝ այժմ Մալաթիա, ամենածայրինը Եփրատի մոտ, նրանից դեպի արևմուտք՝ Կատաոնիան Պիրամոս, այժմ Ջահան, գետի ուղղությամբ՝ Կոմանա քաղաքով Սարոս, Սարիս-սու կամ Գյոք-սու գետի ափին, այնուհետև Կիլիկիան՝ Արգեոս, այժմյան Արճիշ լեռան ստորոտում ընկած Մաժաք քաղաքով, որ կոչվեց Եվսեբիա և հետո՝ Կեսարիա. Կիլիկիայից հետո՝ Տիան-իտ-իք և Գարսավր-իտ-իք՝ մինչև Տատտ լիճը*[1]*։*

*Պտղոմեոսը Կապադովկիայի նահանգում հիշատակում է 13 գավառ.*

| | | |
|---|---|---|
| *Ստրատեգիա* | **Խամանենե** | **Փոքր Հայք** |
| » | **Սարգավրասենե** | **Մելիտենե** |

[1] Str. XII 2, p. 754, ἐν τῇ Σαργαραυσηνῇ πολίχνιόν ἐστι Ἥρπα καὶ ποταμὸς Καρμάλας, ὃς καὶ αὐτὸς εἰς τὴν Κιλικίαν ἐκδίδωσιν; p. 797, ἥ τε Λίμνη ἐστὶ ἡ Τάττα παρακειμένη τῇ μεγάλῃ Καππαδοκίᾳ τῇ κατὰ τοὺς Μοριμηνούς; p. 752, διὰ δὲ τῆς Καταονίας ὁ Πύραμος. *նույն տեղում՝* διὰ μὲν οὖν τῆς πόλεως ταύτης (sc. τὰ Κόμανα) ὁ Σάρος ῥεῖ ποταμός. p. 755, ἐν δὴ τῇ Κιλικίᾳ καλουμένῃ τὰ Μάζακα ἡ μητρόπολις του ἔθνους. καλεῖται δ' Εὐσέβεια καὶ αὕτη ἐπίκλησιν ἡ πρὸς τῷ 'Αργαίῳ.

| | | | |
|---|---|---|---|
| Ստրատեգիա | Գարսավր-իտ-իա | ստրատեգիա | Կատաոնիա |
| » | Կիլիկիա | » | Մուրիմենե |
| » | Լիկաոնիա | » | Լավիանսենե |
| » | Անտիոքիանե | » | Արավենե[1]: |
| » | Տիան-իտ-իա | | |

*Այս ցանկի մեջ, Ստրաբոնի համեմատությամբ, ավել են Փոքր Հայքը, Լիկաոնիան և Անտիոքիանեն։ Վերջին երկու ստրատեգիաները ըստ էության կազմված են այն տերիտորիայից, որ Ստրաբոնի մոտ գրավում էր տասնմեկերորդ ստրատեգիան. տարբերության գլխավոր կետը մնում է Փոքր Հայքը։ Պտղոմեոսի հրատարակիչները Փոքր Հայքի և հաջորդ հինգ գավառների նկարագրությունը սովորաբար առանձնացնում են հատուկ գլխում, ենթադրելով, որ այդ գավառները այն ժամանակ մտնում էին Փոքր Հայքի մեջ։ Մյուլլերի վերջին քննական հրատարակության մեջ նախորդ հրատարակիչների սխալն ուղղված է այն իմաստով, որ Փոքր Հայքը դասված է Կապադովկիայի գավառների շարքը։ Բայց կարծում ենք, դրանով դեռևս չի լուծվում Փոքր Հայքի տարածքի հարցը, որովհետև խնդիրը ոչ թե գավառների քաղաքական խմբավորման, այլ տերիտորիալ ամբողջության մեջ է. Մելիտենեն, Կատաոնիան, Մուրիմենեն, Լավիանսենեն և Արավենեն ըստ վարչական բաժանման կարող էին վերագրվել Կապադովկիային, ինչպես նաև Փոքր Հայքը, մնալով, սակայն, այս վերջինի հետ միասին իբրև ամբողջական միավոր այլ առումով։ Վերոհիշյալ գավառներից առաջինը՝ Մելիտենեն, հակառակ Ստրաբոնի, Պտղոմեոսի մոտ ստրատեգիա չի կոչվում և հազիվ թե ստրատեգիա բառը բաց է թողնված պատահաբար. Պտղոմեոսը Մելիտենեն համարել է Փոքր Հայքի մաս։ Բացի դրանից, մյուս ստրատեգիաներից միայն Կատաոնիան է, որ իր դիրքով համապատասխանում է Ստրաբոնի նույնանուն գավառին, իսկ Մուրիմենեն, Լավիանսենեն և Արավենեն, հակառակ Ստրաբոնի, Պտղոմեոսի մոտ բոլորովին այլ գավառներ են։ Լավիանսենեն և Արավենեն, ըստ Պտղոմեոսի, հարում են Եփրատին, առաջինը՝* πρὸς μὲν

[1] Ptol. V 6, στρατηγία Χαμανηνή, 2 στ. Σαργαυρασηνή, 3 στ. Γαρσαυηρίτις, 4 στ. Κιλικία, 5 στ. Λυκαονία, 6 στ. 'Αντιοχιανή, 7 στ. Τυανίτις, 8. Μικρὰ 'Αρμενία, 9. Μελιτινή, 10 στ. Καταονία, 11 στ. Μουριμενή, 12 στ. Λαουιανσηνή, 13 στ. 'Αραυηνή.

τῷ Εὐφράτῃ, *իսկ երկրորդը՝* παρὰ μὲν τὸν Εὐφράτην *և նրանց մեջ նշված են հետևյալ վայրերը՝ Կոմնե, Մեսիտա, Կլավդիա, Հուլիոպոլիս և Բարզալո, որոնք ըստ հռոմեական ուղեցույցների կայաններ էին Եփրատի աջ ափին՝ Մելիտենե-Մալաթիայի և Սամոսատի միջև*[1]*: Մինչդեռ, ըստ Ստրաբոնի, այդ գավառները, ինչպես տեսանք, պատկանում էին ոչ թե Եփրատին, այլ Ալիս գետի ավազանին: Որ Լավիանսենեն և Առավենեն ըստ Պտղոմեոսի իրոք որ ընկած էին Եփրատի վրա, երևում է նաև նրանից, որ նրանք գտնվում են երկարության նույն աստիճանի տակ, ինչ որ Մելիտենեն, այսինքն՝ 71°: Կատաոնիան նույնպես հարում էր Մելիտենեին, նրա մի մասը ավելի ուշ կոչվում էր Լիկանդոս և տարածվում էր Պիրամոս գետի վերին հոսանքներում Պլաստա՝ այժմ Ալբիստան գլխավոր քաղաքով: Այստեղ հայ տարրը ուժեղ էր դեռևս Թ—ԺԱ. դդ.*[2]*:*

*Վերջապես Մուրիմենեն նույնպես շատ հեռու չէր այդ վայրերից: Դատելով միջօրեական հաշվումներով՝ 67°30′—69°20′, այն ընկնում էր Կեսարիա-Մաժաքից արևելք 66°30′: Պտղոմեոսը Մուրիմենեի մեջ է դնում, օրինակ, Արաասքսա քաղաքը, որ համապատասխանում է այժմյան Սերեսերին, Կեսարիայից դեպի արևելք յոթ ժամվա հեռավորության վրա: Միաժամանակ նրա մեջ նշվում են այնպիսի կետեր, ինչպես Նիսսան, այժմ Նիսե կամ Նարսե՝ եկեղեցու նշանավոր հայրերից մեկի ծննդավայրը, ինչպես նաև Զորոպասոսը, հավանորեն Ստրաբոնի Կորոպասսը՝ Կեսարիայից դեպի արևմուտք, որոնք ցույց են տալիս Մուրիմենեի իսկական դիրքը Ալիսի երկարությամբ՝ Խամանենեի մոտ: Այսպիսով, քանի որ Մուրիմենեն Պտղոմեոսի մոտ տեղաշարժվում է դեպի արևելք, իսկ Լավիանսենեն և*

---

[1] *Առավենեն, ըստ Մյուլլերի, այժմյան Առաբան-օվասին է Սամոսատից ներքև, Եփրատի մեջ թափվող Առաբան գետի հովտում: Նա ենթադրում է, որ այդ հովտը հնում հավանաբար կոչվել է Առավենե, որը Պտղոմեոսին հիմք է տվել նույնացնելու այն Ստրաբոնի Սարավենեի հետ* (cf. Ptol. I, 2, *էջ* 876, not. 6)*: Մյուլլերի այս ենթադրությունը, սակայն, հակասում է Պտղոմեոսի այն ցուցումին, որի համաձայն Սամոսատի գավառը, հետևապես նաև Առաբանը մտնում էին Կոմագենեի մեջ* (Ptol. *IV, 14): Պտղոմեոսի Առավենեն, անկասկած, համազոր է Ստրաբոնի Սարավենեին, որ նա տեղափոխել է Եփրատի ավազանը նույն այն պատճառներով, որոնք առիթ են ծառայել Լավիանսենեի սխալ տեղադրության:*

[2] Tomaschek, *Euphrat und Ost-Kappad.* Festschrift für Kiepert, p. 145 *և շար.:*

Առավելն Ալիսի հովտից ուղղակի փոխադրվում են Եփրատի հովիտը՝ Փոքր Հայքին հարևան Մելիտենեի և Կատաոնիայի շրջակայքը, ապա մասամբ իրավացի են Պտղոմեոսի այն հրատարակիչները, որոնք Փոքր Հայքի և հիշյալ գավառների նկարագրությունն առանձնացնում են հատուկ գլխում։ Փոքր Հայքի անջատումը Կապադովկիայից ձևականորեն վերաբերում է ետպտղոմեոսյան ժամանակին, որ տեղի ունեցավ Դիոկղետիանոսի օրոք։ Բայց քանի որ նրա անջատումից հետո էլ վերոհիշյալ տերիտորիաները մնացին գերազանցապես իբրև Փոքր Հայքի մաս, ապա կարելի է ենթադրել, որ այդ ինչ-որ բանի վրա հիմնված միասնականությունը գոյություն է ունեցել նաև նախկինում՝ նախքան Փոքր Հայք նահանգի կազմվելը։

Ստրաբոնի և Պտղոմեոսի վկայությունների անհամապատասխանությունները կարող են վերջինիս կողմից թույլ տրված հաճախակի սխալների հետևանք լինել։ Ստրատեգիաները, իբրև հաստատություն, պետք է կորցնեին իրենց քաղաքական կարևորությունը այն բանից հետո, երբ Կապադովկիան միացվեց Հռոմեական կայսրությանը։ Չունենալով վարչական նշանակություն՝ ստրատեգիաները թե՛ Պտղոմեոսի օրոք, թե՛ նրանից հետո զուտ պատմական հետաքրքրություն էին ներկայացնում։ Երբ մի բան պատմության գիրկն է անցնում, տարակարծությունները նրա վերաբերյալ միանգամայն հնարավոր են և նույնիսկ անխուսափելի։ Պտղոմեոսը իր աշխատությունը կազմելիս օգտվել է ոչ միայն իրենից առաջ գոյություն ունեցող աշխարհագրական գրականությունից, այլ նաև մեզ հասած ղանաղան ուղեցույցների նման այլ ուղեցույցներից։ Ի վիճակի չլինելով հաղթահարել աղբյուրների հակասական տեղեկությունները՝ նա, բնականաբար, կարող էր սխալների մեջ ընկնել։ Ստույգ հայտնի է, որ Կապադովկիայից անջատվելուց հետո Փոքր Հայքի գլխավոր քաղաքը դարձավ Մելիտենեն[1], իսկ երբ բաժանվեց I և II Հայքի, ապա նրա մեջ մտան ոչ միայն Սեբաստիա-Սըվազը, այլև Արաբիսոն-Յարփուզը, Կոկիսոն-Գյոքսունը և նույնիսկ Կոմանա-Շահրը ու Արիարաթիա-Ազիզիեն։

Համենայն դեպս տերիտորիայի նշանակալի մասը, չնայած սահմանային բոլոր փոփոխություններին, մշտապես մնաց Փոքր

[1] Amm. *XIX 8 12*, Melitinam minoris Armeniae oppidum. *XX 11 4*, a Cappadocia per Melitinam, minoris Armeniae oppidum.

*Հայքի կազմի մեջ իբրև նրա անկապտելի սեփականություն։ Այդ մասը կարելի է անվանել Փոքր Հայք՝* proprie dicta։ *Այդ միանգամայն որոշակի նշված է Պտղոմեոսի մոտ, այսինքն՝ այն ժամանակ, երբ Փոքր Հայքը դեռևս միացված էր Կապադովկիային, և որ հիմք է տալիս ենթադրելու, թե այդ մասի բնակչությունը եթե ոչ ամբողջությամբ, ապա գերազանցապես բաղկացած էր հայերից։ Այս իմաստով Փոքր Հայք ասելով Պտղոմեոսը հասկանում է հետևյալ հինգ շրջանների ամբողջությունը. ամենահյուսիսայինը՝ Օրբալիսենե, նրանից ներքև՝ Հայթուլանե, այնուհետև՝ Հայրեթիկե, ավելի ներքև՝ Օրսենե և ամենահարավայինը՝ Օրսենեից հետո Օրբիսենե։ Փոքր Հայքում կային Եփրատի հոսանքի ուղղությամբ ընկած հետևյալ քաղաքները՝ Սիներվա, Ազիրիս, Դալանա, Սիսմարա, Զիմարա, Դասկուսա, իսկ խորքում, լեռնոտ վայրերում՝ Սատաղ, Դոմանա, Տապուրա, Նիկոպոլիս, Խորսաբիա, Խարաքս, Դագոնա, Սելեոբերիա, Կալտիորիսսա, Անալիբլա, Պիսինգարա, Գոդասա, Եվդոյքսատա, Կարապե, Կասարա, Օրոմանդոս, Հիսպա, Ֆուֆենա, Առանե, Ֆուֆագենա, Մարդարա, Վարսապա և Օրսա*[1]։

*Այս կայաններից շատերը անհետ կորել են. մի մասը ծանոթ է դարձյալ հռոմեական հին* Itinerarium-*քարտեզներից կամ ուղեցույցներից, իսկ մի քանիսն էլ պահպանվել են մինչև մեր օրերը։ Այսպես կոչված Անտոնինոս Օգոստոսի ուղեցույցը և Պևտինգերյան քարտեզը*[2] *Փոքր Հայքի տեղագրության վերաբերյալ այնքան հարուստ նյութ են պարունակում, որ գիտական հետազոտությունները տեղում անկասկած հիանալի արդյունքներ կտային։ Առայժմ ստիպված ենք սահմանափակվել գրավոր վավերագրերի վկայություններով, որոնց շնորհիվ հաջողվում է ճշտել միայն հաղորդակցության ճանապարհների ընդհանուր ուղղությու-*

---

1 Ptol. V 6, 18 p. 882, Ἀρμενίας Μικρᾶς ἡ μὲν ἀρκτικωτάτη καλεῖται Ὀρβαλισηνή, ἡ δ' ὑπ' αὐτὴν Αἰτουλάνη, εἶτα Αἱρετική καὶ ὑπ' αὐτὴν Ὀρσηνή καὶ μεσημβρινωτάτη μετὰ τὴν Ὀρσηνὴν Ὀρβισηνή, πόλεις δὲ εἰσὶ παρὰ μὲν αὐτὸν τὸν Εὐφράτην αἵδε. Σινήρα, Ἀζιρίς, Δάλανα, Σίσμαρα, Ζίμαρα, Δασκοῦσα. ἐντὸς δὲ καὶ παρὰ ὀρεινάς. Σάταλα, Δόμανα, Τάπουρα, Νικόπολις, Χορσαβία, Χαραξ, Δάγωνα, Σελεοβέρεια, Καλτιόρισσα, Ἀνάλιβλα, Πισιγγάρα, Γοδάσα, Εὐδόιξατα, Καράπη, Κασάρα, Ὀρόμανδος, Ἴσπα, Φούφηνα, Ἀράνη, Φουφάγηνα, Μάρδαρα, Οὐαρσάπα, Ὄρσα.

2 Itinerarium Imp. Antonini Augusti և Tabula Peutingeriana, *հրատ.* *Recueil des itinéraires anciens*, publié par De Fortia D'urban։

նը և նրանց վրա գտնվող կայանների տեղերը։ Նույն տվյալները հնարավորություն են տալիս մոտավորապես որոշել Փոքր Հայքի տերիտորիան, որ ընկած էր Սեբաստիայի, Նիկոպոլիսի, Սատաղի և Մելիտենեի սահմանային կետերի միջև։ Սեբաստիան և Մելիտենեն լավ հայտնի են. Սըվազն ու Մալաթիան մինչև այսօր էլ Առաջավոր Ասիայի կարևոր կենտրոններն են և նույնանուն վիլայեթների մայրաքաղաքները։ Դեռևս հին ժամանակներից հայտնի Նիկոպոլիսը, որ հիմնադրել է Պոմպեոսը ի պատիվ Միհրդատի դեմ տարած հաղթանակի, գտնվում էր Լիկոս գետի ափին. նրա դիրքը նույնացվում է Ենդերեսի մոտ գտնվող Պյուրկ ավանի հետ, շնորհիվ այնտեղ հայտնաբերված մի արձանագրության, որի մեջ հիշատակված է Νικόπολις անունը[1]։ Սատալան հայկական Սատաղն է, որ գտնվում է Երզնկայից դեպի հյուսիս՝ Տրապիզոնի ճանապարհի վրա, որտեղ էլ կանգուն է Սատաղ գյուղը։ Երզնկայից հարավ՝ Եփրատի ափին, Կամախի և Դիվրիգի միջև ընկած է Զիմարան, որը, ըստ երևույթին, հնում կարևոր պահակակետ է եղել։

Փոքր Հայքի ծայրամասերում ընկած այդ բոլոր քաղաքները միմյանց հետ կապված էին շրջանաձև ճանապարհով, այնպես որ Փոքր Հայքը գտնվում էր ռազմական գլխավոր ճանապարհների հանգույցում։ Սեբաստիայից ճանապարհը գնում էր Նիկոպոլիս, Նիկոպոլսից՝ Սատաղ, այնուհետև՝ Զիմարա, Զիմարայից՝ Մելիտենե և ապա՝ մինչև Սեբաստիա։ Այդ գիծը Անտոնինոսի ուղեցույցի մեջ և Պևտինգերյան քարտեզում ներկայացված է հետևյալ ձևով.

| *Itin. Ant.*[2] | *Tab. Peut.*[3] |
| --- | --- |
| **Sebastia** | **Sevastia** |
| Camisa | Comassa |
| Zara | Doganis |

[1] Taylor, *Jour. of a tour in Armenia* JRGS. 1868, t. 38-ի մեջ է բերում Ե. Բորեի 1840-ական թվականներին հայտնաբերած մի արձանագրություն. ինքը նույնպես Պյուրկից մի քիչ հեռու ընկած Ակշեհիրում հայտնաբերել է մի այլ արձանագրություն, որտեղ կարդացվում է Nicopolita, ib. p. 302։

[2] *Recueil des itinéraires*, p. 60 և 64։

[3] *ib.* pp. 265, 266 և 267։

| | | | |
|---|---|---|---|
| | Dagolasso | | Megalasso i |
| | | | Mesorome |
| | **Nicopoli** | | **Nicopoli** |
| Olotoedariza | | Carsat | Caltiorissa |
| Dracones | | Arauracos | Draconis |
| | | Suissa | Cunissa |
| Aza | | | Hassis |
| | | | Ziziola |
| **Satala** | | **Satala** | **Satala** |
| | Suissa | | |
| | Arauracos | | |
| | Garsagis | | |
| | Sinervas | | |
| | Analiba | | |
| | **Zimara** | | **Zimara** |
| | Teucila | | Zenocopi |
| | | | Vereuso |
| | Sabus | | Saba |
| | Dascusa | | Dascusa |
| | | | Hispa |
| | | | Arangas |
| | Ciaca | | Craca |
| | **Melitena** | | **Melentenis** |
| | **Pisonos** | | |
| | **Ad Praetorium** | | |

Aranis

Euspoena

Blandes

Sebastia

*Նշված հանգուցային կետերը՝ Սեբաստիան, Նիկոպոլիսը, Սատաղը և Մելիտենեն այժմ էլ գտնվում են գլխավոր ճանապարհի վրա, որ գոտևորում է հին Փոքր Հայքը։ Կարելի է պնդել, առանց մեծ սխալի մեջ ընկնելու վախենալու, որ այժմյան հաղորդակցության գիծը եղել է դեռևս ամենահեռավոր ժամանակներում։ Բնական պայմանների հետևանքով ճանապարհները Հայաստանում և առհասարակ Առաջավոր Ասիայում պետք է համարել երկրի անփոփոխ սեփականություններից մեկը։ Փոքր Ասիան՝ այդ լեռնաշխարհը, որ բոլոր ուղղություններով կտրտված է ձյունապատ Տավրոսյան լեռներով, որոնք առաջացնում են անհամար խոր ձորեր և գետային նեղ, հաճախ բոլորովին անանցանելի կիրճեր, հաղորդակցության համար շատ անհարմար է։ Մեկ անգամ արդեն գծված ճանապարհը, որ թելադրվում էր բնական պայմաններով, պետք է հետագա բոլոր ժամանակներում անփոփոխ մնար, մանավանդ, եթե դրա վրա այս կամ այն չափով մարդկային աշխատանք էր թափվել։*

*Սեբաստիա-Նիկոպոլիս գծի սկզբի կայանները՝ այն է՝* Camis-*ը և* Zara-*ն, մինչև այժմ էլ գոյություն ունեն Ալիս-Կըզըլ-Իրմակ գետի վրա Կեմիս և Զարա հին անուններով, առաջինը՝ Սըվազից* 30 *կիլոմետր հեռավորության վրա, իսկ երկրորդը՝ Կեմիսից նույնքան հեռու։*

*Կեմիսից և Զարայից վեր, ընդհուպ մինչև Ենդերես ձգվում են Քյոսե (լերկ) և Հարեշ լեռները։ Այս լեռների հյուսիսային լանջերով Զարայից դեպի Ենդերես այժմ խճուղի է անցնում։ Մի ուղեցույցի համաձայն Զարայի և Նիկոպոլիսի միջև միայն մեկ կայան է՝* Dagalassus-*ը, իսկ ըստ մեկ ուրիշի՝ երեք կայան՝* Dagan, Megalass-us, Mesorome։ *Ըստ երևույթին դրանք երկու տարբեր ճանապարհներ են, որոնցից մեկը ընթանում էր Ալիս գետի երկարությամբ, իսկ մյուսը՝ Կամիսից այն կողմ, դեռ Զարային չհասած, այժմյան խճուղու ուղղությամբ թեքվում էր դեպի լեռները։ Բայց քանի որ Նիկոպոլիսը ընկած էր Ենդե-*

*րեսից մի քիչ հարավ, ապա հավանական է, որ հին ճանապարհն էլ ընթանում էր հիշյալ Քյոսե և Հարեշ լեռների ոչ թե հյուսիսային, ինչպես այժմ է, այլ հարավային լանջերով։ Այդ են վկայում նաև հիշյալ լեռների լանջերին գտնվող մինչև այժմ պահպանված մի շարք իջևաններն ու կայանները։ Այդ գծի վրա առաջին լեռնային իջևանը կլինի Դագանը, իսկ Մեգալասը, պարզվում է, որ Դագալասից տարբեր կետ է։ Անտոնինոսի ուղեցույցում նկարագրված մյուս ճանապարհը ձգվում էր Ալիսի հովտով և գետի հոսանքն ի վար գնում մինչև այն ոչ մեծ լեռնապարը, որ Ալիսի ջրերը բաժանում էր Լիկոսից, ավելի ճիշտ՝ նրա Անկշեհիր-սու վտակից, որի ափին էլ գտնվում էր Նիկոպոլիսը. այնուհետև ճանապարհը այդ լեռնապարի վրայով իջնում էր դեպի այս վերջին գետը և նրա հոսանքի ուղղությամբ հասնում Նիկոպոլիս։ Դագալասը պետք է որ եղած լինի Ալիսից դեպի Նիկոպոլիսի գետն իջնելու վայրում։*

*Երկու ճանապարհների գոյության օգտին է խոսում նաև այն, որ Պտղոմեոսը, որին ծանոթ էին Դագոնան, Մեգալասը և Մեղորոման, առաջին կետը դնում է Փոքր Հայքում, իսկ մյուս երկուսը՝ Պողեմոնական Պոնտոսում՝ Սեբաստիայի շրջանում։ Փոքր Հայքի և Պողեմոնական Պոնտոսի բնական սահմանը պիտի համարել Քյոսե և Հարեշ լեռնաշղթան, որի մի ծայրում գտնվում էր Դագանը, իսկ մյուսում՝ Նիկոպոլիսը, որոնք պատկանում էին Փոքր Հայքին։ Որպեսզի միջանկյալ Մեգալաս և Մեղորոմա իջևանները պատկանեին Պոնտոսին, պետք է որ գտնվեին այդ լեռնաշղթայի կատարներին, բայց ոչ ավելի հարավ։ Հակառակ դեպքում, այսինքն՝ եթե գտնվեին այն նույն գետային ճանապարհի վրա, որ նկարագրում է Անտոնինոսը, ապա կհայտնվեին Փոքր Հայքում*[1]*։*

---

[1] *Հաշվի չառնելով այս պարագան՝ Կիպերտը,* Kleinasien, Ant. Peut.*-ի երկու գծերը համարում է միևնույնը և* Megalass-us*-ը նույնացնում է* Dagalass-us*-ի հետ։* Allas-us *վերջավորությամբ կան մի քանի անուններ։ Բացի դրանցից, կա նաև* Salm-allasus *Peut. և* Σαβαλασσός*-ը Պտղոմեոսի մոտ, էջ 877։* Tab. Peut.*-ի մեջ նշվում է մի ուրիշ վայր՝* Megalassus *անունով, որ գտնվում է Սեբաստիայի մոտ, բայց հակառակ կողմում՝ դեպի Կեսարիա տանող ճանապարհի վրա։ Այդ, հավանորեն, այն կայանն է, որ Պտղոմեոսը անվանում է* Σαβαλασσ-ος*։ Եթե միայն* allass-us*-ը չի նշանակում տափ, դյուզ, ապա այն պետք է դասել* ali *վերջածանց ունեցող տերմինների շարքը՝ որպես սեռական հոլովի վերջավորություն։*

Նիկոպոլսից Սատալա տանող ճանապարհը, ըստ Ant.-ի նկարագրության, ճյուղավորվում էր Նիկոպոլսից հետո՝ հաջորդ իջևանից՝ Օլոտոդարիզայից. մի գիծն անցնում էր Լիկոսի ափով, իսկ մյուսը՝ նրանցից ավելի հարավ՝ լեռներով։ Առաջին գիծը համապատասխանում է այն ճանապարհին, որ նկարագրված է Peut.-ի մեջ։

*Ant.* Nicopoli 24 Olotoedariza 26 Dracones 24 Aza 26 Satala.
*Peut.* Nicopoli 14 Caltiorissa—Draconis 13 Cunissa 10 Hassis 13 Ziziola 12 Satala.

Եվ իրոք, Hassis-ը ոչ այլ ինչ է, քան Aza-ն գործիական հոլովով, ինչպես որ սովորաբար ուղեցույցների մեջ բերվում են իջևանների անունները։ Cunissa-ն և Ziziola-ն միջանկյալ կայաններ են՝ առաջինը Draconis-ի և Aza-ի, իսկ երկրորդը՝ Aza-ի և Satala-ի միջև։ Այդ բանի ապացույց է իջևանների միջև ընկած տարածությունը. ըստ Ant.-ի Դրակոնից մինչև Ազա 24 m. p. է, իսկ այնտեղից մինչև Սատալա՝ 26, բայց ըստ Peut.-ի Դրակոնից մինչև Կունիսա 13 m. p. է, իսկ այնտեղից մինչև Hassis՝ 10, ընդամենը՝ 23 Ant.-ի դիմաց, իսկ Hassis-ի և Ziziola-ի միջև ընկած տարածությունը 13 է, և այնտեղից մինչև Սատալա՝ 12, ընդամենը՝ 25 Ant.-ի 26-ի դիմաց։ Տարբերությունը շատ աննշան է։ Ինչ վերաբերում է երկրորդ իջևանին, որը մի վավերագրի մեջ Olotoedariza է, իսկ մյուսի մեջ՝ Caltiorissa, ապա երկու դեպքում էլ, ըստ երևույթին, խոսքը միևնույն կետի մասին է։ Caltiorissa-ի ընթերցումը չի ճշտված, և նրա հեռավորությունը Draconis-ից ձեռագրերում ցույց չի տրված։

Նիկոպոլսից Սատալա տանող երկրորդ ճանապարհը Օլոտոդարիզայի մոտ թեքվում էր դեպի հարավ և այժմ Չիմեն-դաղ կոչվող լեռան լանջերով անցնում էր Garsat 24 Arauracos 24 Suissa 26 Satala կայաններով։ Որ այդ գծի ուղղությունը մեր կողմից ճիշտ է ցույց տրված, հաստատվում է նրանով, որ այն ծառայել է որպես հաղորդակցության միջոց Սատալայի և Զիմարայի միջև — Satala Suissa 18 Arauracos 24 Garsagis 28 Sinervas 28 Analiba 16 Zimara։ Քանի որ Սատալայից Նիկոպոլիս Եփրատի վրա Զիմարա տանող ճանապարհը անցնում էր միևնույն իջևաններով՝ Suissa, Arauracos և Garsagis կամ Carsat, ապա պետք է ենթադրել, որ հիշյալ կայանները գտնվում էին Լիկոս և Եփրատ գետերի

միջև, նրանց հոսանքին զուգահեռ, այլ խոսքով, վերոհիշյալ Չեմեն լեռնաշղթայի ուղղությամբ։ Ենդերեսից Երզինգյան տանող խճուղին այժմ անցնում է Գերջանիսի մոտով։ Այդ կայանը, որի անունը աղավաղված է, Garsanis փոխ. Garsagis կամ Garsat, կարող է նույնացվել այժմյան Գերջանիսի հետ։

Peut.-ին անծանոթ է Սատալայից Զիմարա տանող ճանապարհը, բայց մեջ են բերված երկու ուրիշ գծեր, որոնք ուղղակի միացնում էին Զիմարան Նիկոպոլսի և հարևան Դրակոնի հետ։
Nicopoli 21 Oleoberda 15 Caleorsissa 24 Analiba 15 Zimara.

Draconis 16 Haris 17 Elegarsina 8 Bubalia 27 Zimara.
Նիկոպոլսի գիծը ամենայն հավանականությամբ անցնում էր Ակշեհիր-սուի ձախ ափով և համապատասխանում է ներկայումս գոյություն ունեցող ճանապարհին, որի վրա, ի միջի այլոց, Սինի-բել լեռներում կա նաև Գոլարես գյուղը։ Դա պատմական Galeor-s-issa-ն է, որ գտնվում է Կարաբուղաղ գետի ակունքների մոտ և Զիմարայի մոտերքից հոսում է դեպի Եփրատ։ Դրակոնյան գիծը ընկնում էր առաջինից մի քիչ ավելի արևելք։ Եթե թույլատրելի է ընդունել, որ Elegarsina-ն առաջ է եկել հայերեն եղեգ-առին-ից՝ եղեգնյա գյուղ, ապա *eleg-aris-ina-ն Elegaris-ից կազմված ածական է, ուրեմն այն կարելի է կապել այժմյան Կամըշլը-դերեին, որ հին հայկական անվան թարգմանությունն է և նշանակում է եղեգնյա ձոր։ Կամըշլի-դերեն գտնվում է Գերջանիս գետակի մոտ, որ նույնպես Լիկոսի վտակներից մեկն է. ըստ երևույթին մեր փնտրած ճանապարհը անցնում էր այդ գետակի ուղղությամբ և շատ հավանական է, որ Draconis-ը գտնվում էր Խափուլ-Քյոփրու-ի տեղում՝ այնտեղ, որտեղ Գերջանիսը թափվում էր Լիկոսի մեջ։ Նախավերջին Bubalia կայանն ընկնում էր Դարանաղիի գավառում, Analibla-ի կամ Analibna-ի հարևանությամբ, ինչպես որ ցույց է տալիս նրա անվանումը[1]։

Զիմարայի և Մելիտենեի միջև Եփրատի ուղղությամբ ընկած էին՝

*Ant.* Zimara 16 Teucila 26 Saba 16 Dascusa 32 Ciaka 18 Melitena.

---

[1] Bub-*ali*-ից, ինչպես որ an-*ali* և an-alibna։ Տոմաշեկ, Kiepert's *Festschrift*. p. 139, analibla-ն (pro analibna) առաջ եկած է համարում հայերեն անաղի-բղխ *salzloser sprudel*։

*Tab.* Zimara 18 Zenocopi 18 Vereuso 13 Saba 18 Dascusa 18 Hispa 18 Arangas 9 Craca 28 (18) Melentenis.

*Երկու վավերագրերն էլ ըստ էության միևնույն ճանապարհըն են ցույց տալիս։ Այդ ճանապարհի վրա այժմ քիչ թե շատ նշանավոր կետերն են Դիվրիգը, Էգինը, Արաբկիրը, Արգուվանը, ինչպես նաև Շեփիկն ու Աղինը. սրանց միջով դեպի Մալաթիա են ձգվում խաչաձևվող ճանապարհներ։ 1868 թ. հետազոտողներից մեկը հռոմեական շրջանի ճանապարհի հետքեր է հայտնաբերել Սարը-չիչեկյան լեռներում՝ Դիվրիգի և Արաբկիրի միջև*[1]*։ Դիվրիգից ոչ հեռու, որտեղ Չալթա-իրմակ գետը թափվում է Եփրատի մեջ, կա մի իջևանատուն, որ կոչվում է Ռուումիա՝ մի կայան, որն անկասկած հռոմական կամ նույնիսկ հռոմեական ծագում ունի։ Զիմարայից ճանապարհը հավանորեն այդտեղով անցնում էր դեպի վերոհիշյալ լեռները և այնուհետև Արաբկիրի ու Արգուվանի մոտով ձգվում դեպի Մելիտենե։ Կայանների դասավորության վերաբերյալ ստույգ տվյալներ չկան։* Teucila *փոխ.* Teucira, *Teurica-*ից կարելի է համեմատել Դիվրիգի, հայոց Տիվրիկ, բյուզանդական Տեփրիկայի հետ*[2]*։*

Saba-*ն կարծես թե համապատասխանում է Շեփիկին, որ գտնվում է Արաբկիրից մի քիչ հյուսիս.* Dascusa-*ն գտնվում է Աղինի շրջակայքում՝ Անգու գետի վրա, որտեղ մինչև օրս մնացել է բյուզանդական արձանագրությամբ մի կամուրջ, իսկ* Hispa-*ն Սերաչիկի տեղում է։* Aranga-*ն հիշեցնում է Արգուվանը, ըստ բյուզանդական հեղինակների՝ Ա ր գ ա ո ւ ն ը*[3]*։* Ciaca-*ն կամ*

---

[1] Taylor, *Journal of a Tour in Armenia*, 1866, t. 38, p. 309.

[2] Theoph. Cont, Τεφρική, p. 166 *և շար.։* Sym. Mag., p. 690 *փոխ.* Τεφρική-*ի ընթերցում է* Ἀφρική *համապատասխան արաբ հեղինակների* qa'a Abrig-*ի,* Le Strange, p. *119։ Քաղաքի անունը հիշեցնում է հայերենի տափարակը, եթե միայն այն *տաւրիկ չէ՝ Տավրոսի նվազականը։ Ըստ Իբն-Սերապիոնի գետը նույնպես* Abrig *էր կոչվում։ Նա թափվում է Եփրատ, ինչպես ինքն է նկարագրում, բերդի մոտ։ Հավանական է, որ հին բերդը գտնվում էր Եփրատին ավելի մոտ, ներկա Ռուումիա իջևանատան տեղում։ Մյուս վայրի՝* Zenocapi-*ի անունը կարծես թե իր մեջ ունի հայերեն կապ, կապան բառը. Հմմտ. կամր-կապ, Կամարկապ, որ մի գյուղ է Էգինի մոտ.* Ինճիճյան, *էջ 307, որտեղ և մոտավորապես գտնվում էր պատմական* Zenocopi-*ն։*

[3] Theoph. Cont. Ἀργαοῦν, p. *166. Անգու-սուի սկզբնական հոսանքը կոչվում է Գորտուկ,* գետ։ *Արդյո՞ք* Aranga-*ն հայոց արանքը՝ մոզեսը չէ*

Craca-ն նույնացվում է Եփրատի ափին գտնվող Ջերմուկին[1]։ Siniscolon-ը քաղաք է Մելիտենեում և, հավանորեն, Եփրատի ափին Քեբան-մադենի մոտ գտնվող այժմյան Սինեքլուն է։

Մելիտենեից Սեբաստիա տանող հին ճանապարհը, հավանաբար, համապատասխանել է այժմյան ճանապարհին։ Ant.-ի մեջ թվարկված կայանները կարելի է մոտավորապես նույնացնել այժմյան շատ թե քիչ հայտնի իջևանների հետ, որոնք գտնվում են այդ գծի վրա. այսպես՝ Pisonos-ը՝ Հասան-բադրիքի հետ, Ad praetorium-ը՝ Հասան-Չելեբիի, Aranis-ը՝ Ալաջա-խանի, Euspoena-ն՝ Դելիքլու-դաշի, Blandos-ը՝ Թախթուկի[2] հետ։ Ճանապարհը ձգվում է Կուրու-չայ գետի հոսանքով, անցնում Թերջիկյան լեռների միջով և մի փոքրիկ գետակի ափերով հասնում է մինչև Սըվազ։ Այս կայաններից Aranis-ը և Euspoena-ն հայտնի էին դեռևս Ժ դարում։ 906 թվականին Եվստաթիոսը՝ Արգիրոս մականունով, աքսորվեց Խարսիանոն. նա փորձեց փախչել հավանաբար արաբների մոտ՝ դավաճանությունը գերադասելով աքսորից, բայց Առանայում նրա ուղեկիցները թունավորեցին, և թաղվեց Սպունիոնում[3]։ Պտղոմեոսը ևս Փոքր Հայքի քաղաքների շարքում հիշատակում է Aranis-ը Առանա ձևով։ Թախթուկ կայանից ոչ հեռու գտնվում է Գյունդուզ բնակավայրը. եթե Գյունդուզը թուրքերեն բառ չէ, ապա կարող է համեմատվել Ant.-ի Գունդուզայի և Պտղոմեոսի Գոդասայի հետ։ Gundusa-ն ընկած էր Զարայից

---

(Н. Марр, *Физиолог*, p. 50) և չի՞ համընկնում արդյոք Գորատուկ գետի հին համանունը։

[1] Tomaschek, *loc. cit*, p. 139 և շարունակությունը։

[2] Ինճիճյանի Աշխարհագրության մեջ Թախթուկ, էջ 293, և Թախթուբ, էջ 288, Կիպերտի քարտեզում Tahdud, *Kleinasien*։ Ահա այսպիսին են գլխավոր կայանները ըստ թուրքական *Djahan Numa*-ի, Ինճիճյան, էջ 293։ Կիպերտը վերցնում է Թութմաջը, Կանգալը, Ալաջա-խանը, Բալըկայան և Հասան-Բադրիքը։ Վերջին կայանի փոխարեն Ինճիճյանի մոտ Հեքիմ-խան է, բայց քանի որ այն կառուցվել է վերջին ժամանակներս, ինչպես մատնանշում է ինքը՝ Ինճիճյանը, էջ 323, ապա գերադասելի է Հասան-բադրիքը, որ ծանոթ էր դեռևս արաբական հեղինակներին։ Tomaschek, *op. cit*., p. 140։

[3] Theoph. Cont. p. 374, καθ ὁδοῦ δὲ εἰς τὸ Ἄραν φάρμακον παρὰ ἀνθρώπου οὑτοῦλαβὼν τέθνηκεν, καὶ θάπτεται εἰς τὸ Σπυνὶν τοῦ Ἄρα<ν> τήν κορυφὴν. Tomaschek, *op. cit*. p. 147.

Կարող է պատահել, որ Պտղոմեոսի Φουφήνη pro Φου<σ>φήνη և Φουσί-παρα հավասարազոր է Euspoena և Pisonos *Peut*։

*Տոնոս տանող ճանապարհի վրա։*

Zara 18 Eumeis 30 Gundusa 23 Zoana 25 Tonosa. Tonosa-*ն այժմյան Տոնուսն է, համանուն Կարատոնուս լեռան ստորոտում, Սըվազից դեպի հարավ։ Մեր մատնանշած Գյունդուզը իր դիրքով համապատասխանում է պատմական Գունդուզային։*

*Քննարկված հաղորդակցության ճանապարհները կայանային պահակակետերով հանդիսանում են Փոքր Հայքի համար նաև սահմանային գծեր։ Հաստատապես գիտենք, որ Դազոնը Սեբաստիա-Նիկոպոլիս գծի վրա մտնում էր Փոքր Հայքի մեջ։ Պտղոմեոսի մոտ Նիկոպոլիս-Սատալա գծի վրա գտնվող Ազա իջևանը դուրս է մնում Փոքր Հայքի սահմաններից և մտնում է Կապադովկյան Պոնտոսի մեջ։ Մինչդեռ Պլինիոսը այն Նիկոպոլիսի հետ համարում է Փոքր Հայքինը*[1]*, ըստ երևույթին Ազան գտնվում էր սահմանագլխին և այդ պատճառով էլ այն վերագրում էին մերթ Պոնտոսին, մերթ էլ Փոքր Հայքին։ Մելիտենեի կողմից Դասկուսան և Իսպան Պտղոմեոսի մոտ դասված են Փոքր Հայքի քաղաքների շարքը, իսկ Կիական և նրա հարևան Սինիսկոլոն-Սինեքյուն՝ Մելիտենեի ստրատեգիայի շարքը։ Առանա կայանը Մելիտենե-Սեբաստիա գծի վրա մնում է Փոքր Հայքում, նրան է պատկանում նաև Գոդասա-Գունդուզան։*

*Այսպիսով՝ Փոքր Հայքը, նեղ կամ պտղոմեոսյան իմաստով, ընդգրկում էր հյուսիսում Լիկոս-Կելկիթ գետի ավազանը՝ սկսած նրա ակունքներից մինչև Նիկոպոլիս և Ալիս-Կըզըլ-իրմակի վերին հոսանքը՝ մինչև Կեմիս, իսկ հարավում՝ Կանգալ-սու և Ջալթա-իրմակ կոչվող Դիվրիկյան գետի ողջ համակարգը։ Կուրուսու գետը կամ գոնե նրա ստորին հոսանքը ընկնում էր արդեն Մելիտենեի ստրատեգիայի մեջ։ Փոքր Հայքի բաղկացուցիչ մասերը կազմող հինգ գավառներից հյուսիսային Օրբալիսենեն ընկած էր Լիկոս գետի ուղղությամբ։ Հետևյալ երկուսը՝ Հայթուլանեն և Հայրեթիկեն, հարում էին Ալիսին, մեկը՝ աջ, իսկ մյուսը՝ ձախ կողմից։ Օրսենեն և Օրբիսենեն գրավում էին Կանգալ գետի շրջանը, առաջինը՝ հավանաբար, հյուսիսում, իսկ երկրորդը՝ հարավում։*

*Փոքր Հայքում Օրսա քաղաքը, որ գիտնականները սխալմամբ մոտեցնում են* Orsdara-*ին, անկասկած, կարևոր կետ է Օրսենեում*

[1] Plin. *Nat. hist.* VI 26, oppida celebrantur in minore (sc. Armenia) Caesarea, Aza, Nicopolis.

*և իր անունը տվել է ամբողջ գավառին։ Թվում է, թե իր անվան համար Օրսեններին է պարտական նաև բյուզանդական թեմերից (բանակաթեմերից) մեկը՝ Խ ա ր ս ի ա ն - ո ն ը, որն այդպես էր կոչվում նույն թեմում գտնվող Խարսիան* κάστρον Χαρσιανόν *ամրոցի անունով։ Վերջինիս դիրքը մեզ ստույգ հայտնի չէ։ Անհաջող փորձ է կատարվել մոտեցնելու այն* Karissa, Garsi-*ին, որ գտնվում էր Ամասիայից ոչ հեռու*[1]*։ Բյուզանդական պատմագիրների տվյալներից երևում է, որ հիշյալ ամրոցը գտնվում էր Իպսալայից ոչ հեռու. արաբները իրենց խիզախ ձեռնարկումների ժամանակ հասել են մինչև Խարսիան-ոն և Իպսալա բերդերը*[2]*, Իպսալան նույն անունով մինչև այժմ էլ կանգնած է Կեմխից և Զարայից հյուսիս՝ դեպի Ենդերես տանող խճուղուց դուրս։ Սըվազի և Կեմխի միջև Ալիսի ձախ ափին գտնվում է հայաբնակ Խորսանա գյուղը*[3]*։ Հենց դա էլ, անկասկած, պատմական* Χαρσιανόν-*ն է։ Արաբ աշխարհագիրների վկայությունների համաձայն Խարսիանից մինչև Կեմխ մեկ օրվա ճանապարհ էր, որը խոսում է մեր ասածների օգտին*[4]*։ Կարիք չկա Խորսիանը տանել հասցնել մինչև Պտղոմեոսի Օրսան, թեև դրա համար արգելքներ չկան։ Պտղոմեոսը Օրսան հիշատակում է Վարսապայից անմիջապես հետո և այդ երկու վայրերն էլ տեղադրում է Փոքր Հայքում։ Ոմանք առաջարկում են կարդալ Վարպասա՝ այն Արաբիսոնի հետ նույնացնելու համար, ուրիշները ուղղում են Սարսապայի և այն համապատասխանեցնում են բյուզանդական* Σαρσάπιον *ամրոցի հետ, որ գտնվում էր Լիկանդա-Ալբիստանում՝ Արաբիս-Յարփուզի մոտերքում, այժմյան Սարսաբ-սուի ափին։ Իսկ Օրսան, ինչպես ասվեց, հնարավոր են համարում նույնացնել* Osdara-*ին, որ Մելիտենեից Կոկիսոն-Գյոքսուն տանող ճանապարհի վրա գտնվող կայաններից մեկն է.* Melitena 26 Arcas 24 Dandaxena 24 Osdara 24 Ptandari 38 Cocuso.

---

[1] Ramsay, *Asia Minor* p. 249—250.

[2] Theoph. p. 630, παρέλαβεν δόλῳ τὸ Χαρσιανοῦ. κάστρον. Theoph. Cont. p. 354, ἡ πόλις ἡ ἐπώνυμος 'Υψηλή. Cedr. II p. 250, ἡ κατὰ τὸ Χαρσιανὸν διακειμένη πόλις ἡ 'Υψηλή. Tomaschek-*ը վերոհիշյալ տվյալների հիման վրա Խարսիան փնտրում է Քոչ-հիսարի և Իպսալայի միջև* *op. cit.*, p. 149։

[3] Ինճիճյան, Աշխարհագրություն, *էջ 288, Խորսանա, Կիպերտի քաղաքում՝* Ghorzana.

[4] Tomaschek, p. 149.

Արկան գոյություն ունի մինչև այժմ և գտնվում է Մելիտենեից արևմուտք։ Ptandari-ն իրավամբ նույնացնում են Յարփուզից հյուսիս գտնվող Տանիրին։ Դանդաքսենեն և Օսդարան գտնվում են վերոհիշյալ երկու կետերի միջև։ Osdara-ն սովորաբար նմանեցնում են Դերենդե, նախկին Տարանտե քաղաքի հարևանությամբ ընկած Արսլան-դաշին, որն իրենից ներկայացնում է զույգ առյուծների նմանվող ժայռ։ Թե՛ մեկ և թե՛ մյուս ճշտումը չի կարող բավարար համարվել։ Ptandaris-ը համապատասխանում է Պտղոմեոսի Tanadaris քաղաքին, որ գտնվում է Կատաոնիայի ստրատեգիայում։ Արսլան-դաշը և Սարսաբան գտնվում են Մելիտենեի և Կատաոնիայի ստրատեգիաների սահմանագլխին, մինչդեռ Օրսան և Վարսապան հիշատակվում են Փոքր Հայքի՝ նեղ իմաստով վերցրած բնակավայրերի շարքում։ Եթե հնարավոր է Վարսապայի փոխարեն Սարսապա ընթերցումը, ապա ավելի հիմնավոր է այն նույնացնել Կուրու-չայ գետի վրա գտնվող նույնպես Սարսապ կոչվող գյուղի հետ։ Ինչ վերաբերում է Orsa-ին, ապա կասկածից դուրս է, որ այն գտնվում էր Օրսենեում, անկախ նրանից կընդունե՞նք նրա նույնությունը այժմյան Խորսանա գյուղի հետ, թե՞ ոչ։ Տեղագրական տեսակետից Խորսանան ավելի հարմար է գալիս Փոքր Հայքում գտնվող Օրսա քաղաքին, քան Օսդարան, որ գտնվում է նրա սահմաններից դուրս։

Հայաստանի տեղագրությանը վերաբերող Ant.-ի և Peut.-ի տվյալները թեև բավական անորոշ են կայանների տեղերը ճշտելու տեսակետից, սակայն ընդհանուր առմամբ բուն Փոքր Հայքը գծագրում են այնքան հստակ, որ բացառում են Արաբկիր — 'Αραβρακή[1] կամ Οὐαρσαπα—'Αραβισσός-ի նման սխալ համեմատությունները։ Նման վրիպումները հետևանք են Փոքր Հայք տերմինի նեղ և ավելի լայն իմաստների մասին ոչ այնքան հստակ պատկերացում ունենալու։ Փոքր Հայքը որպես Կապադովկիայի մաս և Փոքր Հայքը որպես ուրույն նահանգ՝ բոլորովին տարբեր մեծություններ են։

Փոքր Հայքը Կապադովկիայի կազմից անջատվեց Դիոկղետիանոսի օրոք։ Նրան են վերագրվում նահանգների վարչական խոշոր վերակազմությունները։ Այդ ռեֆորմներից դժգոհ ժամա-

[1] Ինչպես, օրինակ, Le Strange-ի մոտ op. cit. p. 119։

նակակիցներից մեկի ասելով՝ «նահանգները մասնատվեցին փոքրիկ կտորների և ոչ միայն գավառները, այլև քաղաքները ծանրաբեռնվեցին բազմաթիվ կառավարիչներով ու դիվանատներով»[1]։

1862 թվականին առաջին անգամ հրատարակվեց մի հետաքրքիր հիշատակարան՝ հռոմեական պրովինցիաների, այսպես կոչված, Վերոնյան ցուցակը, որ ձեռագրերի մեջ կրում է nomina provinciarum omnium վերնագիրը։ Ինչպես պարզվում է հրատարակչի քննական վերլուծությունից, պրովինցիաների այդ համառոտ ցուցակը իր ներքին կազմով վերաբերում է երրորդ հարյուրամյակի վերջին՝ 297 թվականին։ Ենթադրում են, որ Վերոնյան ցուցակը Դիոկղետիանոսի նահանգային ռեֆորմն է[2]։ Այդ ցուցակով ամբողջ կայսրությունը բաժանվում էր 12 դիոցեզների, որոնցից երկուսը, այն է O r i e n s և P o n t i c a դիոցեզները կազմված էին ասիական ծայրագույն տիրույթներից։ Պոնտական դիոցեզը բաղկացած էր յոթ նահանգից, որոնց թվում հիշվում է և Փոքր Հայքը։

Diocensis Pontica habet provincias numero VII.
Bithinia
Cappadocia
Galatia
Paphlagonia, nunc in duas divisa
Diospontus
Pontus Polemiacus
Armenia minor, nunc et maior addita.

Բոլոր 12 դիոցեզները միասին ունեին 95 նահանգ, մինչդեռ, երբ Դիոկղետիանոսը գահ բարձրացավ, Հռոմեական կայսրությունը, որ Տրայանոսի ժամանակվանից սկսած ընդարձակվել էր ևս 15 նահանգով, ուներ ընդամենը 57 նահանգ։ 38 նոր նահանգներից (95—57) Դիոկղետիանոսին հաստատապես վերագրվում է գլխավորապես ասիական 15 նահանգների, որոնց թվում նաև Փոքր Հայքի[3] ստեղծումը։

---

[1] Lact. *De morte persec. cap.* 7, provinciae quoque in frusta concisae, multi praesides et plura officia singulis regionibus ac paene jam civitatibus incubare, Migne, *VII 204*. Lat.

[2] Mommsen, *Abhand. d. Akad. d. Wiss. zu Berlin*, 1862, p. 489.

[3] Camille Jullian, De la réforme provinciale attribuée à Dioclétian, Revue Historique, t. XIX, 1882.

Կա Վերոնյան ցուցակի նման մի այլ հիշատակարան ևս. մենք նկատի ունենք Laterculus Polemii Silvii-ն, որի հեղինակը՝ Պոլեմիոս Սիլվիոսը, թեև ապրել է Ե դարի առաջին կեսին և ինչպես ինքն է ասում, իր աշխատությունը գրել է Զենոնի և Պոստումեոսի հյուպատոսության ժամանակ, այսինքն՝ 448 թվականին, բայց նրա Լատերկուլը իր բովանդակությամբ ավելի հին ժամանակների է վերաբերում։ Մոմզենը կարծում է, որ այն կազմված է 386 թվականից ոչ ուշ, որովհետև այնտեղ չեն հիշատակված մի քանի նահանգներ, որոնք այդ թվականին արդեն հայտնի էին[1]։ Ըստ Լատերկուլի Պոնտոսն ունեցել է 8 նահանգ՝ in Ponto VIII։

1 Pontus Polemiacus
2 Pontus Amasia
3 Honoriada
4 Bithynia
5 Paflagonia
6 Armenia minor
7 Armenia maior
8 Cappadocia.

Pontus Amasia-ն, Պոնտոսը՝ Ամասիա քաղաքով, համապատասխանում է Վերոնյան ցուցակի Դիոսպոնտոսին, որը Կոստանդին Մեծի օրոք ի պատիվ նրա մոր՝ Հեղինեի վերանվանվեց Helenopontus[2]։ Հոնորիադան կազմվել է Թեոդոս Ա-ի օրոք, գլխավորապես Բյութանիայի հողերից՝ ի պատիվ Հոնորիոսի, հավանորեն, նրա ծննդյան օրվա առթիվ՝ 384 թ.[3]։

Հակառակ պատմական իրականության Փոքր Հայքի հետ միասին նահանգների շարքն է դասված նաև Մեծ Հայքը։ Բայց սխալ համարակալումը.

Septima: Armenia minor
Sexta: Armenia maior

արդեն կասկածի տակ է առնում մեզ հասած ցուցակի ճշտությունը։ Ենթադրում են, որ խոսքը վերաբերում է I և II Հայքերին, որոնք Laterculus-ի հեղինակը կարող էր կոչել Փոքր և Մեծ, որովհետև II Հայքը իսկապես բավականին մեծ էր Փոքր Հայքից[4]։ Այս մեկնության դեպքում թվահամարների տեղափոխությունն այնուամենայնիվ անհասկանալի է մնում։ Մեր կար-

[1] Abhand. *d. Sachs, Ges. d. Wiss. 1857*. p. 233 և *Abh. d. Berl. Acad.* 1862 էջ 489.

[2] Just. *Nov*. 28.

[3] Malala, p. 365, սխալ կերպով վերագրում է Թեոդոսիոս Բ-ին։

[4] K. Güterbock, *Römisch-Armenien*, p. 25.

ծիքով դա բացատրվում է նրանով, որ Պողեմիոսի ցուցակում բաց է թողնված Գաղատիա նահանգը։ Վերոնյան ցուցակում, ինչպես հետո նաև Not. dign.-ում, Գաղատիան դրված է Պոնտոսի թեմի մեջ, մինչդեռ Laterculus-ի մեջ այն փոխադրված է Ասիայի թեմը, թերևս այն բանի հետևանքով, որ Լատերկուլը կազմելու ժամանակ Գաղատիան հարևան Հելլեսպոնտոսի հետ միասին ժամանակավորապես կառավարվում էր միևնույն կառավարչի կողմից։ Ինչպես էլ բացատրելու լինենք Գաղատիայի տեղաշարժը, մի բան պարզ է, որ նա է նահանգների ցանկի մեջ տեղի ունեցած թվահամարների հիշյալ տեղափոխության պատճառ դարձել։ Երկու հիշատակարաններն էլ բավականին նման են միմյանց. Լատերկուլի հեղինակը իր տրամադրության տակ ունեցել է Վերոնյան ցուցակին շատ մոտ աղբյուր։ Այս վերջինի մեջ Armenia minor բառերից հետո ընթերցվում է nunc et maior addita։ Այս դիտողությունը մտել է Լատերկուլի մեջ, և երբ Գաղատիան այս կամ այն պատճառով դուրս է մնացել ցուցակից, որի հետևանքով էլ գավառների թիվը վերնագրում ցույց տրված 8-ի փոխարեն իջել է 7-ի, ապա այդ ճեղքը լրացնելու համար բաց թողնված նահանգի փոխարեն առաջ է քաշվել Մեծ Հայքը որպես առանձին նահանգ։ Դրա հետ մեկտեղ այն պահել է իր նախկին տեղը և նրան տրվել է Sexta թվահամարը, որի տակ ցանկում սկզբում դրված է եղել Գաղատիան։ Սկզբնական տեքստը եղել է այսպես.

Ponto VIII. 1 Pontus Polemiacus, 2 Pontus Amasia, 3 Honoriada, 4 Bithinia, 5 Paflagonia, <6 Galatia>, 7 Armenia minor, nunc et maior, 8 Cappadocia.

Ինչ վերաբերում է nunc et maior-ի հավելման վավերականությանը, ապա այդ մասին, անշուշտ, կարելի է վիճել։ Եթե անգամ սա ներմուծվել է հետո, համենայն դեպս, այդ տեղի է ունեցել շատ վաղուց, նկատի առնելով նրա առկայությունը Պողեմիոս Սիլվիոսի Լատերկուլում։ Վերոնյան ցուցակը և Լատերկուլը պատկանում են այն ժամանակներին, երբ Հայաստանի ճակատագրի մեջ տեղի էին ունենում մեծ փոփոխություններ։ Մեծ Հայքին վերաբերող կասկածելի հավելումը, ճիշտ է, զուրկ է պատմական հիմքից, բայց Վերոնյան ցուցակում այն կարող էր ունենալ 298 թվականի քաղաքական դեպքերի որոշակի ակնարկի բնույթ, երբ Սասանյանների կողմից ցնցված հայ Արշակունիների գահը հռոմեացիների օգնությամբ նորից վերականգնվեց Մեծ Հայքում։

Այդ ժամանակվանից սկսած՝ Հայաստանն ընկավ կայսրերի քաղաքական ազդեցության տակ կամ, ինչպես պատմագիրն է արտահայտվում, դարձավ juri Romano obnoxia[1] և սկսեց օգտվել նրանց հովանավորությունից։ Վերոնյան ցուցակի նշումը ընդօրինակեց Սիլվիոսը, որովհետև նա համապատասխանում էր այն նոր իրավիճակին, որ ստեղծվել էր նրա օրոք Դ դարի վերջին, և որի հետևանքով Հայաստանը բաժանվեց երկու մասի, որոնցից մեկը անցավ հռոմեացիներին։

Նոր կազմված Փոքր Հայք նահանգը իբրև ուրույն վարչական միավոր ներկայացված է Նիկիայի 325 թ. տիեզերական ժողովում Մեծ Հայքի, Կապադովկիայի և հարևան մյուս նահանգների շարքում։

Վաղես կայսրը 371 թ. Կապադովկիան բաժանեց երկու նահանգի՝ Առաջին և Երկրորդ Կապադովկիաների[2]։ Թեոդոսիոս Մեծի 386 թ. հրամանագրում II Հայքը Կոմանա և Արիարաթիա քաղաքներով առաջին անգամ հիշատակվում է Երկրորդ Կապադովկիայի և Հելլենոպոնտոսի կողքին[3]։ Բնական է ենթադրել, որ Փոքր Հայքի բաժանումը տեղի է ունեցել Կապադովկիայի հետ միաժամանակ, այսինքն՝ 371 թվականին։ Բայց դրան խանգարում է այն հանգամանքը, որ Ամմիանոսը, որն իր աշխատությունը հասցնում է մինչև 378 թ., խոսում է միայն Փոքր Հայքի մասին և, ըստ երևույթին, գիտե նրա մասին որպես դեռևս մի ամբողջություն[4]։ Այդ ձևով է ներկայանում մեզ Փոքր Հայքը նաև 381 թվականի Կոստանդնուպոլսի տիեզերական ժողովում։ Սակայն այստեղ Կապադովկիան էլ ներկայացված է իբրև դեռևս անբաժան երկրամաս, հակառակ տասը տարի առաջ կատարված բաժանման։ Եկեղեցական հիերարխիան, ըստ երևույթին, դեռևս չէր կարողացել համարվել նոր իրավիճակին, և եկեղեցական տեսակետից

[1] Amm. XXIII, 5։

[2] Greg. Theol. *Oratio*, XLIII 58, τῆς γὰρ πατρίδος ἡμῶν εἰσ δύο διαιρεθείσης ἡγεμονίας καὶ μητροπόλεις; հմմտ. Malala, p. 342, Βάλης καὶ τὴν δεύτεραν Καππαδοκίαν ἐπόιησεν ἐπαρχίαν, ἀπομερίσας αὐτὴν ἀπὸ τῆς πρώτης.

[3] Cod. Theod. XIII II 2=Cod. Iust. XI 47. *10*; per. Commanensium et Ariarathensium Armeniae secundae, Amasenorum Helenoponti et Diocaesarensium Cappadociae secundae urbes. D. *VI* k. April. Cpli. Honorio et Euodio conss (a. 386). Թեոդոսիոսի 420 թ. դեկրետը C. I. VIII 10. 10, գիտե utramque Armeniam, այսինքն՝ I և II Հայքը

[4] Amm. XIX 9, 12. XX 11, 4։

*Կապադովկիան շարունակում էր մնալ իբրև մեկ նահանգ*[1]*։*

*Բարսեղ Կեսարացին բողոքեց Կապադովկիայի բաժանման դեմ*[2]*, համարելով այն անմտություն. ըստ նրա սուր համեմատության, դա նույնն է, եթե մեկը իր ձին կամ եզը երկու կես անի, մեկի փոխարեն երկուսն ունենալու հույսով, չհասկանալով, որ իրականում նա զրկվում է իր ունեցածից։ Երկրում տիրող դժգոհությունը, որի արտահայտիչը եղավ Բարսեղ Կեսարացին, հավանաբար անուղղակիորեն այն ազդեցությունն ունեցավ, որ Փոքր Հայքի վերակազմությունը առժամանակ հետաձգվեց։*

*Քանի որ 386 թվականին, ինչպես ցույց տրվեց, արդեն հիշատակվում է Փոքր Հայքը, ապա պետք է ենթադրել, որ Վաղեսի մտադրությունը իրագործվել է նրա հաջորդի՝ Թեոդոսիոսի օրոք՝ 378 և 386 թթ. միջև ընկած ժամանակամիջոցում։ Փոքր Հայքը բաժանվեց երկու մասի՝ I և II Հայքի։ I Հայքը կազմված էր Սեբաստիայի շրջանից՝ իր մեջ ունենալով Սեբաստիա մայրաքաղաքից բացի, Նիկոպոլիս, Կողոնիա, Սատալա, Սեբաստոպոլիս և Վերիսա քաղաքները։ Իսկ II Հայքի մեջ մտնում էին Մելիտենեն, Արկան, Արաբիսոսը, Կուկուսոնը, Կոմանան և Արիարաթիան։ I Հայքին սահմանակից Պողեմոնական Պոնտոս նահանգը գրավում էր Նեոկեսարիա, Կոմանա (Պոնտական), Պողեմոնիոն, Կերասուս և Տրապիզոն քաղաքների շրջանները։*

*Նորակազմ նահանգների գրաված տերիտորիայի մասին տվյալներ հաղորդում է գլխավորապես եկեղեցական աշխարհագրությունը։ Եկեղեցական բաժանումները աչքի են ընկնում իրենց առավել կայունությամբ։ Արտացոլելով Թեոդոսիոսի ժամանակների վարչական ճիշտ պատկերը, նրանք հետագայում էլ մնացին անփոփոխ և կարողացան խուսափել Հուստինիանոսի կատարած նահանգային փոփոխություններից։*

---

[1] *Ժողովի մասնակիցների ցուցակը տե՛ս* Mansi-*ի մոտ, III 568։ Հունական բնագիրը հրատարակել է պ. Բեննեշևիչը XIV տիտղոսների կանոնավոր ժողովածուի հավելվածում, էջ 87.* Ἀρμενία μικρά Μελιτηνή *և* Ἀραβισσός *քաղաքներով,* Καππαδοκία Καισαρεία, Νύση, Τυάνα, Κολωνία, Παρνασός Ναζιανζός *քաղաքներով։*

[2] Bas. Mag. *epist.* 74, μήτοι νομίζειν αὐτοὺς δύο κεκτῆσθαι ἀντὶ μιας ἐπαρχίας... ἄλλα παραπλήσιόν τι πεποιήκασιν, ὥσπερ ἂν εἴ τις ἵππον ἤ βοῦν κεκτημένος, εἶτα διχῇ διελῶν, δύο νομίζοι ἔχειν ἕνος ἄντι. οὔτε γάρ δύο ἐποίησε, καὶ τὸν ἕνα διέφθειρεν, Migne XXXII p. 445.

*Է դարի հեղինակ Գեորգ Կիպրացու տեղեկությունները համապատասխանում են Ե դարի եկեղեցական ժողովների արձանագրությունների աշխարհագրական տվյալներին, ինչպես կարելի է համոզվել սորև բերված ցուցակից։ Քաղկեդոնի ժողովից հետո Ալեքսանդրիայում ծագած խռովությունների հետևանքով Լևոն կայսրը հարցումով դիմեց եկեղեցական բոլոր թեմերին։ Մեզ հասել են թեմերի պատասխան գրությունները մասնակիցների՝ եպիսկոպոսական աթոռների ներկայացուցիչների ստորագրություններով։ Նրանց մեջ I և II Հայքերը ներկայացված են ավելի լրիվ, քան Քաղկեդոնի ժողովի արձանագրություններում, այդ պատճառով էլ աղյուսակում մեջ ենք բերում գրությունների տվյալները։*

| ad Leonem[1] 453 *թ.* | Hierocl. *մոտ.* 530 *Տ.* | G. Cyprii VII *դ.* |
|---|---|---|
| | **I Հայքի եկեղեցական թեմը** | |
| 1 Sebastia | Σεβάστια | Σεβάστεια |
| 2 Nicopolis | Νικόπολις | Νικόπολις |
| 5 Colona | Κολόνια | Κολωνεία |
| 6 S-Ataleni | Σατάλα | Σάταλα |
| 3 Sebastopolis | Σεβαστούπολις | Σεβαστούπολις |
| 4 Bariss-ar-a | — | Βηρισσή. |
| | **II Հայքի եկեղեցական թեմը** | |
| 1 Melitena | Μελιτινή | Μελιτινή |
| 2 Arca | ῎Αρκα | ῎Αρκα |
| 3 Arabissus | ᾿Αράβισος | ᾿Αραβισσός |
| 4 <Cucusus> | Κοκουσός | Κουκουσόν |
| 5 <Comana> | Κομάνα | Κεομάνα |
| 6 Ariaratha | ᾿Αραραθία | ᾿Αριαράθη. |

*I և II Հայքերը իրենց տարածությամբ նախկին Փոքր Հայքից ավելի մեծ էին։ Սահմանները ընդարձակվեցին գլխավորապես երկու մասի բաժանվելու ժամանակ։ Կողոնիան դեռևս 381 թ. համարվում էր Կապադովկիայի մասը, ինչպես այդ երևում է ժողովին մասնակցած հայրերի ցուցակից։ Մենք արդեն նշել ենք, որ սահմանների մասնակի ընդարձակում տեղի ունեցավ նաև Կապադովկիայի կողմից անջատվելու ժամանակ։*

*Փոքր Հայքի բաժանումը այս ձևով մնաց մինչև Հուստինիանոսի ժամանակները։*

---

[1] Mansi, VII p. 590.

## ԳԼՈՒԽ V

# ԱՐԵՎՄՏՅԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՔԱՂԱՔԱՑԻԱԿԱՆ ԿԱՑՈՒԹՅՈՒՆԸ ՀՈՒՍՏԻՆԻԱՆՈՍԻՑ ԱՌԱՋ

Կայսրության ընդհանուր վարչակարգը: Քաղաքացիական և զինվորական իշխանությունները, նրանց գլխավոր մարմինները: I. *I և II Հայքերը* վարչական հիերարխիայի մեջ: Նրանց զինվորական դրությունը: *Dux Armeniae.* Նրանց հրամանատարության տակ գտնվող զորամասերը և սրանց քանակը: Զորքերի դասավորությունը երկրում: Զինվորական պահակակետերը՝ գլխավոր և երկրորդական: Հրամանատարների աստիճանները: Հայաստանի դուքսի դիրքը հիերարխիայի մեջ: Նրա դիվանատները: Պոնտիկայի փոխանորդի և Հայաստանի դուքսի *Codicillus dignitatum:* II. **Սատրապությունների և Ներքին Հայքի** պետական և իրավական վիճակը: Ֆեդերատի հաստատությունը *foedus non aequum*-ի հիման վրա: Այդ հաստատության տարբերակները: Ֆեդերատ հասկացությունը բյուզանդական աշխարհում: Սատրապներ — ֆեդերատներ: Կայսրության նկատմամբ դաշնակցային հարաբերության գծերը: Սատրապական իրավունքի ծագումը: Դաշնագրային ակտի տարր կայսրությանը միանալու դեպքում: Ներքին Հայքը ֆեդերատային երկիր: Նրա միացումը կայսրությանը: Միացման պայմանները և դրանց դաշնագրային սկզբունքը: Ապահարկում և *aurum coronarium*: φόροι δημόσιοι-ի մասին հարցը. *Comes Armeniae*: Կոմեսի աստիճանը, նրա իրավասության սահմանները: δημόσια ἀρμενιακά-ի մասին հարցը: Կոմեսի վերաբերմունքը նախարարության նկատմամբ: Նախարարությունները Ներքին Հայքում:

Հռոմեական կայսրության ներքին կառուցվածքը Հուստինիանոսի դարում իր հիմքում սկիզբ է առնում այն կարգերից, որոնց ստեղծողը իրավամբ համարվում է Դիոկղետիանոսը[1]: Պետական ընդհանուր կառուցվածքի նորոգման ուղղությամբ նրա սկսած գործը շարունակեցին հաջորդները: Այն հատկապես մեծ թափ ստացավ Թեոդոսիոս Ա կայսեր օրոք: Դարավոր աշխատանքի արդյունքնե-

[1] cf. Gibbon, *Decline and fall of the Roman empire*, c. XIII, like Augustus, Diocletian may be considered as the founder of a new empire ed. Bury, I p. 351:

ըր որոշ ձև ու կերպարանք ստացան, որոնք արտացոլված են Notitia dignitatum կոչվող հայտնի հուշարձանում[1]։ Վերջինս վերաբերում է հինգերորդ դարի սկզբին։ Այդ յուրահատուկ վավերագիրը ոչ այլ ինչ է, քան կայսրության քաղաքացիական և զինվորական բոլոր պաշտոնների ու աստիճանների մանրամասն թվարկումը։ Այն հստակ գաղափար է տալիս քրիստոնյա միապետների կողմից ստեղծված պետական մեքենայի մասին, որը կարելի է բնութագրել այժմյան բյուրոկրատիզմ բառով։ Կայսրության հռչակած միահեծանության սկզբունքը անխուսափելիորեն պետք է հանգեցներ ղեկավարման այնպիսի համակարգի, որ համապատասխաներ միահեծանության նպատակներին. պաշտոնատարների մի ամբողջ ցանցի ստեղծումով ըստ էության ավելանում էր այն մարմինների թիվը, որոնց միջոցով գործում էր իշխանությունը։ Մյուս կողմից, իշխանությունը բաժանելով բազմաթիվ պաշտոնատարների միջև, որոնք ստորադասությամբ ենթարկվում էին մեկը մյուսին, ուժեղացվում էր հսկողությունը նրանց վրա, և դրանով կանխվում էր դիմադրության որևէ հնարավորություն։

Not. dign.-ի մեջ քաղաքացիական իշխանությունը անջատված է զինվորականից, նրանցից յուրաքանչյուրը առանձին վարչական գերատեսչություն էր։ Այդ ռեֆորմը վերագրվում է Կոստանդին Մեծին[2]։

Քաղաքացիական առումով ամբողջ կայսրությունը բաժանված էր չորս երկրամասի, որոնց գլուխը կանգնած էին պրետորիական պրեֆեկտները, praefecti praetorio։ Երկրամասերը

---

[1] *Notitia dignitatum et administrationum omnium tam civilium quam* militarium in partibus Orientis et Occidentis, ed. E. Böcking, 1839։ Բյոկինգի հրատարակությունը, շնորհիվ մանրամասն և պատմական վերին աստիճանի արժեքավոր մեկնաբանությունների, չի կարելի համարել Սեկի լույս ընծայած նոր և, անտարակույս, ավելի քննական հրատարակության կողմից դուրս մղված. Seeck, 1872 թ.։ Իր մի առանձին ուսումնասիրության մեջ *Uber die Not. dig.* 1834 թ. Բյոկինգը, քննության ենթարկելով իրենից առաջ գոյություն ունեցող բոլոր կարծիքները Not.-ի կազմության ժամանակի մասին, գալիս է այն եզրակացության, որ այդ հուշարձանը ստեղծվել է 399 թվից հետո, Թեոդոսիոս Բ-ի ժամանակ, մոտավորապես 404 թվին։ Այդ ժամանակվան է վերագրում նաև Tillemont-ը, *Hist. des empreurs* VI, 476 և 733—6։ Այժմ ավելի հավանական է համարվում Սեկի կարծիքը, որը Not.-ը թվագրում է 413—415 թթ., տե՛ս *Questiones de Not. dign.* 1872։

[2] Zosim. II, 33.

կամ պրեֆեկտուրաները բաժանվում էին դիոցեզների, որոնք կառավարում էին պրեֆեկտների տեղակալները vicarii praefectorum։ Վերջապես, դիոցեզներն էլ իրենց հերթին տրոհվում էին նահանգների, որոնցից յուրաքանչյուրը ուներ իր կառավարիչը, որ սովորաբար կոչվում էր praeses, հունարեն՝ ἄρχων։

Կայսրության արևելյան մասը բաղկացած էր երկու պրեֆեկտուրայից՝ praefectus praetorio Orientis և p.p. Illyrici։ Դրանցից առաջինը, այսինքն՝ Արևելքի պրեֆեկտուրան բաղկացած էր հետևյալ հինգ դիոցեզներից՝ Oriens, Aegyptus, Asiana, Pontica, Thracia։

Պոնտոսի դիոցեզը ուներ տասնմեկ նահանգ, որոնց թվում նշվում են հայկական հողերը՝ I Հայքը և II Հայքը, ինչպես նաև Պոլեմոնական Պոնտոսը։

Sub dispositione viri spectabilis Vicarii dioceseos Ponticae provinciae infrascriptae: 1 Bithynia, 2 Galatia, 3 Paflagonia, 4 Honorias, 5 Galatia Salutaris, 6 Cappadocia prima, 7 Cappadocia secunda, 8 Helenopontus, 9 Pontus Polemoniacus, 10 Armenia prima, 11 Armenia secunda.

## I

I և II Հայքի գլուխ կանգնած էին պրեզիդները, որոնք ենթարկվում էին պրեֆեկտի տեղակալին։ Զինվորական բաժանումները ամեն տեղ չէ, որ համապատասխանում էին քաղաքացիականին։ Բարձրագույն իշխանությունը բաժանվում էր մի քանի զորապետների՝ Magistri militum-ների միջև։ Ըստ Not. dign.-ի կայսրության արևելյան մասում կային այդպիսի հինգ զորապետներ. նրանցից երկուսը գտնվում էին մայրաքաղաքում՝ արքունիքին կից, և կոչվում էին magistri militum praesentales, իսկ երեքը՝ նահանգներում՝ Թրակիայում, Իլլիրիայում և Արևելքում և կոչվում էին magistri militum per Thracias, per Illyricum, per Orientem.

Magister militum զորապետը զինվորական իշխանության նույնպիսի ներկայացուցիչ էր, ինչպիսին էր պրետորիական պրեֆեկտը՝ praefectus praetorio-ն, քաղաքացիական գծով։ Մագիստրոսներից հետո հաջորդ աստիճանը դուքսերն ու կոմեսներն էին, duces, comites, rei militaris։ Իրենց հիերարխիկ դիրքով նրանք

համապատասխանեցված էին պրեֆեկտի տեղակալներին, քանի որ թե՛ մեկը, և թե՛ մյուսը spectabilis-ի աստիճան ունեին, բայց նրանց ենթակա օկրուգներն իրենց չափերով նշանակալիորեն զիջում էին դիոցեզներին. այդ տեսակետից դուքսերն ավելի շուտ նմանվում էին նահանգների կառավարիչներին՝ praesides։ Թե ինչպիսի հարաբերության մեջ էին դուքսերն ու կոմեսները զորապետների նկատմամբ, հայտնի չէ. *Not. dign.*-ի մեջ այդ մասին ոչ մի տեղեկություն չկա։ Ենթադրվում է, որ նրանք ենթարկվում էին այս վերջիններին, բայց ինչպե՞ս և ի՞նչ չափով, անորոշ է[1]։

Ինչպես զորապետները, այնպես էլ դուքսերը իրենց տրամադրության տակ ունեին որոշակի քանակությամբ զինվորական ուժեր։ Արևելքի զորապետի զինվորական ուժը որոշվում էր հետևյալ ձևով.

Sub dispositione viri illistris magistri militum per Orientem:
Vexillationes comitatenses decem
Auxilia palatino duo
Legiones comitatenses IX
Item pseudocomitatenses X[2]

Ինչպես հայտնի է, լեգեոնները հանդիսանում էին կանոնավոր բանակ։ *Not. dign.*-ը տարբերում է երեք լեգեոն՝ palatinae՝ պալատական, comitatenses՝ ճամբարային և pseudocomitatenses՝ կեղծ ճամբարային։ Առաջին երկու անվանումներով սկզբնապես հայտնի էին այն զինվորականները, որոնցից կազմված էր կայսրի թիկնապահ զորքը, առաջինները՝ արքունիքում, իսկ մյուսները՝ արշավանքի ժամանակ։ Այն ժամանակ նրանց թիվը սահմանափակ էր։ Հետագայում palatinae և comitatenses-ները աճեցին ու գերազանցեցին իրենց ստուգաբանական նշանակությանը և ի տարբերություն սահմանային և բերդապահ զորքերի՝ milites limitanei կազմեցին գործող բանակի կորիզը։ Կեղծ ճամբարային էին կոչվում այն լե-

[1] Bethman Hollweg, *Civilprocess*, III, § 135, p. 83.

[2] *Not. dign.*-ը թվարկում է լեգեոնները անուն առ անուն, բերում ենք միայն pseudo-comitatenses-ի ցուցակը.

Prima Armeniaca.
Secunda Armeniaca.
Fortenses auxiliarii.
Funditores.
Prima Italica.
Quarta Italica.
Sexta Parthica.
Prima Isauria sagittaria.
Balistarii Theodosiaci.
Transtigritani.

գնդերը, որոնք կազմվել էին ճամբարայինների օրինակով, բայց չունեին նրանց իրավունքները. Նրանք չէին ստանում majus stipendium, ինչպես պալատական և ճամբարային լեգեոնները։

Not. dign.-ին ժամանակակից զինվորական գրող Վեգետիուս Ռենատուսի (383—450) վկայությամբ լեգեոնը բաղկացած էր 6100 հետևակ զինվորից և 726 հեծյալից։ Զ դարի հեղինակ Հովհան Լյուդացին լեգեոնում նույնպես հաշվում էր 6000 զինվոր։ Դարձյալ նրա վկայությամբ vexillatio-ն 500 հեծյալից բաղկացած մի գումարտակ էր, իսկ ala-ն՝ 600 հեծյալից բաղկացած ջոկատ[1]։ Not. dign.-ի մեջ հիշատակված են vexillationes palatinae և vexillationes comitatenses-ը, բայց ոչինչ չի ասված vexillationes pseudocomitatenses-ի մասին։ Հավանորեն այն ժամանակ առաջին երկու զորատեսակների լեգեոնների կազմից հեծելազորն առանձնացվել է, և նրանցից կազմվել է հատուկ հեծյալ գումարտակ, մինչդեռ pseudocomitatenses-ում այն պահպանված է հին ձևով։ Նույն Վեգետիուսի մեկնաբանությամբ auxilia-ները այն զորամասերն էին, որոնք կազմվում էին կայսրության այլազգի հպատակներից։

Այսպիսով՝

10 vexillatationes յուրաքանչյուրը 500 հոգուց՝ կազմում է 5000 զինվոր.

9 comitatenses յուրաքանչյուրը 6000 հոգուց՝ կազմում է 54000 զինվոր.

10 pseudo-comit. յուրաքանչյուրը 6000 հոգուց՝ կազմում է 60000 զինվոր.

և յուրաքանչյուրը 726, resp. 500 հեծյալ՝ կազմում է 7260 resp. 5000 հեծյալ.

2 auxilia, որոնց թիվը անորոշ է[2]։

---

[1] Vegetii Renati, *Epitoma rei militaris*, II 6։ Հովհան Լյուդացին, որ ծանոթ է եղել Ռենատուսի գործին, Ῥενάτον, *De mag*, p. 159, ἄλας ἀπὸ ἑξακοσίων ἱππέων, βηξιλλατίωνας ἀπὸ πεντακοσίων τοξοτῶν ἱππέων, καὶ λεγιῶνας ἀπὸ ἑξακισχιλίων πεζῶν καὶ ῥητῶν ἱππέων. ib. p. 157, գտնում է, որ vexillationes անունը ծագում է *vexillum*, դրոշ-ից. Նրանք կազմված են նախկին vexilla, veteranorum կամ vexillarii զորամասերից, որոնք կազմվում էին 20 տարի ծառայած վետերաններից։

[2] Renatus, ib. II 1, auxilia a sociis vel foederatis gentibus mitteban-

Նկատի ունենալով, որ լեգեոնները միշտ չէ, որ լրիվ կազմ էին ունենում, կարելի է ասել, որ Արևելքի զորապետի հրամանատարության տակ գտնվում էր կլորացված թվով 100.000 հոգուց բաղկացած մի բանակ։ Ենթադրում են, որ բանակը շրջաններում տեղաբաշխված էր դիվիզիաներով, որոնց գլուխ կանգնած էին viri spectabiles duces կամ comites rei militaris-ները[1]։ Այս ենթադրությամբ կարելի կլիներ նախապես պարզել մագիստրոսների և դուքսերի հարաբերության հարցը, սակայն այդ ճիշտ կլիներ միայն Արևմտյան կայսրության վերաբերյալ, որտեղ, ինչպես ասված է *Not. dign.*-ում, դուքսերն ու կոմեսները ենթարկվում էին մագիստրոսներին․ sub dispositione viri illustris magistri peditum praesentalis comites militum sex, duces limitum decem։ Մինչդեռ կայսրության Արևելյան մասի վերաբերյալ նման տեղեկություններ չկան, և դուքսերի ու զինվորական կոմեսների զորագնդերը չեն հիշատակվում այն լեգեոնական ուժերի թվում, որոնք դրված էին sub disposition magistri-ի տրամադրության տակ, մի հանգամանք, որ ավելի շուտ խոսում է դուքսերի՝ որպես որոշակի անկախություն ունեցող զինվորական հրամանատարների օգտին։

Պոնտական դիոցեզում, որ բաղկացած էր տասնմեկ նահանգից, կար միայն մեկ դուքս՝ dux Armeniae, որի իշխանությունը տարածվում էր երեք նահանգների՝ I Հայքի, II Հայքի ու Պողեմոնական Պոնտոսի վրա։ Մյուս նահանգների, ինչպես նաև դիոցեզների զինվորական կազմակերպության մասին ոչինչ հայտնի չէ։ Արևելքի դիոցեզում, որն ուներ տասնհինգ նահանգ, միայն մի քանիսը՝ dux Palestinae Foenices, Arabiae, Euphratensis et Syriae, Osrhoenae, Mesopotamiae, ունեին հատուկ դուքսեր, մնացած նահանգները, որտեղ զինվորական հատուկ ներկայացուցիչներ չկային, հավանորեն գտնվում էին magistri militum-ի անմիջական հսկողության տակ, և նրա զորամասերը տեղաբաշխված էին հենց այդ շրջաններում։

Ինչ վերաբերում է դուքսերի կախմանը մագիստրոսից, ապա այդ ավելի շատ արտահայտվում էր դատական, քան զինվորական գործերում։ Քրեական հանցագործության մեջ մեղադրվող

---

tur... II 2, auxiliares ex diversis locis, ex diversis numeris venientes, nec disciplina inter se nec notitia nec affectione consentiunt.

[1] Виллемсъ, *Римское госуд. право*, ռուս. թարգմ. էջ 714։

*զինվորականները ենթակա էին մագիստրոսի կամ դուքսի դատաստանին՝ նայած ում բանակում էին ծառայում։ Եթե մեղադրվում էր ինքը՝ դուքսը կամ զինվորական կոմեսը, ապա այդ դեպքում գործը քննում էր անձամբ մագիստրոսը։ Այսպիսով նա դուքսերի նկատմամբ դատական իրավասություն ուներ[1]։*

*Not. dign.-ի Համաձայն Հայաստանի դուքսն իր տրամադրության տակ ուներ հետևյալ ուժերը.*

Sub dispositione viri spectabilis ducis Armeniae.

Equites sagitarii, S a b b u.

Equites sagitarii, D o m a n a.

Praefectus legionis quintaedecimae Apollinaris, **S a t a l a.**

Praefectus legionis duodecimae fulminatae, **M e l i t e n a.**

In Ponto:

Praefectus legionis primae Ponticae, T r a p e z u n t a.

Ala Rizena, Aladaleariza.

Ala Theodosiana, apud A u a **x a m.**

Ala felix Theodosiana, S i l u **a n i s.**

Et quae de minore laterculo emittuntur:

Ala prima Augusta Colonorum, C **h i a** c a.

Ala Auriana, D a s c u s a.

Ala prima Ulpia Dacorum, **S u i s s a.**

Ala secunda Gallorum, **A e l i a n a.**

Ala castello T a b l a r i e n s i constituta.

Ala prima praetoria n u p e r constituta.

Cohors tertia Ulpia miliaria Petraeorum, Metita.

Cohors quarta Raetorum, A n **a l i b** a.

Cohors miliaria Bosporiana, A r a u **r i** c a.

Cohors miliaria Germanorum, Sisila.

Ala prima Iovia felix, C h a s z a n e n i c a.

Ala prima felix Theodosiana, P i t h i a e.

Cohors prima Theodosiana, V a l e n t i a.

Cohors Apuleia civium Romanorum, U s i p o r t o.

Cohors prima Lepidiana, C a e n e-P a r e m b o l e.

Cohors prima Claudia equitata. S e b a s t o p o **l i s.**

Cohors secunda Valentiana, Z i g a n n e.

---

[1] Bethman-Hollweg, ib. § 135, p. 85.

Cohors, Mochora.

Officium autem habet ita:

Principem de scola agentum in rebus.

Numerarios et adiutores eorum.

Commentariensem.

Adiutorem.

A libellis sive subscribendarium.

Exceptores et caeteros officiales.

Dux Armeniae VII (evectiones).

*Հայաստանի դուքսի տրամադրության տակ գտնվում էին.*

*Հեծյալ նետաձիգների 2 գունդ,*

*3 լեգեոն կամ հաշվելով յուրաքանչյուրը 6000 մարդ=18000 մարդ,*

*Հեծելազորի 11 ջոկատ՝ յուրաքանչյուրը 600 մարդ=6600 մարդ,*

*Հետևակի 10 կոհորտա՝ յուրաքանչյուրը 600 մարդ=6000 մարդ։*

*Սրանցից հեծելազորը, երկու լեգեոնը, վեց ջոկատ կամ* ala-*ները և չորս կոհորտան կանգնած էին Հայաստանում, իսկ մյուսները՝ մեկ լեգեոն, հինգ ջոկատ և վեց կոհորտա՝ Պոլեմոնական Պոնտոսում։*

*Գլխավոր ուժերը կենտրոնացված էին I Հայքի Սատաղում և II Հայքի մայրաքաղաք Մելիտենեում։ Այդ քաղաքներից յուրաքանչյուրում գտնվում էր մեկական լեգեոն։ Բացի դրանից, Սատաղի տակ՝ Դոմանայում և Մելիտենեին համեմատաբար ավելի մոտ Արաբկիրի մոտ գտնվող Սաբու-Շեփիկում տեղավորված էին մեկական գունդ* equites sagittarii*։ Կոհորտաներն ու ալաները տեղաբաշխված էին երկրի՝ մեզ արդեն ծանոթ մյուս կետերում. մեկական կոհորտա* Analiba-*ում,* Arauraca-*ում,* Sisila-*ում,* Metita-*ում, մեկական ալա՝* Chiaca-Ciaca-*ում,* Dascusa-*ում,* Aeliana-*ում (հավանորեն* Arana*),* Suissa-*ում,* Tablariensis. ala-*ում.* prima praetoria-*ն հավանաբար գտնվում էր այն վայրում, որն ուղեցույցների մեջ նշված է* ad praetorium *անունով*[1]*։*

---

[1] *Հազիվ թե իրավացի լինի Մոմզենը, որ* ala prima praetoria nuper consituta, *արտահայտության մեջ* nuper-*ը համարում է աղավաղված տեղանուն։ Մի քանի ձեռագրերում կա նախամասնիկ* ca, ca-nu-per, *որ Բյոկինգը վերագրում է նախորդ* preatoria *բառին,* preatori-ca*։ Մյուլլերը առաջարկում է* Zopar *ընթերցումը, նկատի ունենալով Պտղոմեոսի* Zoparissos-*ը, որ նույնպես անհիմն է* Geogr. Ptol, ed. Müller, p. 886*։* Not. dign.-*ի մեջ* nuper-*ը նման կապակցությամբ մենք հան-*

*Not. dign.*-ի մեջ առկա Հայաստանի դուքսի բանակը շատ հին ծագում ունի։ Նրա կորիզը կազմող տասնհինգերորդ և տասներկուերորդ լեգեոնները մյուս ուժերի հետ Հայաստան էին փոխադրվել հռոմեա-պարթևական պատերազմների ժամանակ՝ Կորբուլոնի և Տրդատի օրոք և, հավանորեն, այդ ժամանակից սկսած երկրի պաշտպանության համար մնացին Հայաստանի ստրատեգիական երկու գլխավոր կենտրում՝ Սատաղում և Մելիտենեում։ Այդ երկու լեգեոններն իրենց ապոլլոնյան և կայծակնային անվանումներով հայտնի էին Դիոն Կասիոսին, որը նրանց տեղադրում է Կապադովկիայում, այս վերջինիս տակ, ըստ երևույթին, հասկանալով Փոքր Հայքը[1]։ Ant.-ի մեջ կարդացվում է Satala leg. XV Apollinaris, որ ցույց է տալիս այն աղբյուրները, որոնցից օգտվել են ուղեցույցներ կազմողները։ Հուստինիանոսի պատմիչը վկայում է, որ տասներկուերորդ լեգեոնը հնագույն ժամանակներից ի վեր գտնվում է Մելիտենեում[2]։

Ala prima Augusta Colonorum-ը հավանաբար իր անունն ստացել է Պոմպեոսի հիմնած Կողոնիա քաղաքից։ Ala Auriana-ն այդպես է կոչվում կամ Իսպանիայում գտնվող Auria քաղաքի և կամ այդ զորամասի առաջին պետի անունով։ Ըստ Տակիտոսի ala Auriana-ն ուղարկվել է պաշտպանելու ռեթերի և նորիկների միջև[3] հոսող գետի ափերը։ Այս ռեթերից էր կազմված quarta

---

դիպում ենք մի քանի անգամ, այսպես՝ Ala Theodosiana nuper constituta; ala Arcadiana nuper constituta։ Այդ նշանակում է, որ Թեոդոսիոսի և Արկադիոսի անունները կրող հիշյալ զորամասերը ստեղծվել են *Not. dign.*-ը կազմվելուց ոչ շատ առաջ՝ հիշյալ կայսրերի օրոք։ Պետք է ենթադրել, որ նույն ժամանակին է համընկնում նաև ad preatorium. զորամասի նշանակումը։ Անտոնինոսի ուղեցույցի մեջ նշվում են Praetorium անունով շատ զորակայաններ։ Դրանցից մեկը՝ Կեսարիայից Անազարբա տանող ճանապարհի վրա և նույն անունը կրող ինն այլ վայրեր՝ կայսրության մյուս մասերում։

[1] Tac. *Ann.* XV 26. Dio Cass. *Hist.* LV, 23, τὸ δωδέκατον τὸ ἐν Καππαδοκίᾳ τὸ κεραυνοφόρον; τὸ πεντεκαιδέκατον τὸ ᾿Απολλώνειον τὸ ἐν Καππαδοκίᾳ.

[2] Proc. *Aed.* I 7, p. 195, ἐν λεγεῶνι δὲ δυοκαιδεκάτῳ ἐτάττοντο, ἣ ἐν πόλει Μελιτηνῇ τῆς ᾿Αρμενίας τὸ παλαιὸν ἵδρυτο; և III 4 p. 254. *Jud.* VII 1, 3, Փլավիոսի կարծիքով տասներկուերորդ լեգեոնը Մելիտենե է փոխադրվել Պաղեստինից՝ Տիտոսի ժամանակ, Երուսաղեմի վրա կատարած արշավանքից հետո։

[3] Tac. III 5.

Raetorum կոչվող կոհորտան, որ կանգնած էր Անալիբլայում. guinta Raetorum կոհորտան գտնվում էր Եգիպտոսում։

Ala prima Ulpia Dacorum-ը կրում է Ուլպիոս Տրայանոսի անունը, որ նվաճեց դակերին և նրանցից կազմեց մի քանի զորամաս։ Այդպիսի ծագում ունի նաև cohors tertia Ulpia miliaria Petraeorum-ը, որը Հայաստան՝ Մետիտա, փոխադրվեց ոչ թե ուղղակի Դակիայից, այլ Պետրա քաղաքից։

Կոհորտաներին կցված miliaria-ն՝ miliaria Petreorum, miliaria Bosporiana, miliaria Germanorum-ն ըստ Վեգետիոսի մեկնության նշանակում է, որ տվյալ կոհորտան բաղկացած է հազար ընտրյալ զինվորից։ Լեգեոնն ուներ տասը կոհորտա, որոնցից սովորաբար մեկը, և շատ դեպքերում առաջինը, գերազանցում էր մյուսներին ռազմիկների թվով և որակով. նրա մեջ մտնում էին 1105 հետևակ և 132 զրահակիր հեծյալ[1]։

Ինչ վերաբերում է զորամասերի տեղաբաշխմանը, պետք է նկատել, որ Not. dign.-ի խորագրում Հայաստանի չորս զորակայանի կողքին նշված են նաև Պոնտոսում գտնվող երեք գլխավոր զորակայան՝ Տրապիզոն, Ափսարոս և Սիլվանա, իսկ բուն բնագրում դրանց թիվը դուրս է գալիս չորս. բացի թվարկվածներից, նշված է նաև չորրորդը՝ Aladaleariza։ Խորագրի տվյալը հաստատվում է բնագրին կցված նկարով, որտեղ նշված է միայն երեք ամրոց։ Ստիպված ենք ենթադրել, որ բնագիրը աղավաղված է[2]։

---

[1] Veg. Ren. *Epitoma rei militaris, II 6,* in una legione decem cohortes esse debere, sed prima cohors reliquas et numero militum et dignitate praecedit; nam genere atque institutione litterarium viros selectissimos quaerit... habet pedites mille centum quinque, equites loricatos centum triginta duos, et appellatur cohors m i l i a r i a.

[2] Նախապես չլուծելով Aladaleariza (համե. Itin. Aut.-ի մեջ հիշված Olotoedariza-ի հետ) բնակավայրի գոյության հարցը, հարելի է ենթադրել, որ ներկա դեպքում Aladaleariza-ն համընկնում է Ala-Rizena-ի պարզ երկգրությունը (դիտտոգրաֆիա)։ Այդ դեպքում բնագիրը պետք է կարդալ Ala Rizena (Aladaleariza) apud Auaxam

Ala Theodosiana
Ala (Felix) Theodosiana } Siluanis,

այսինքն՝ Ala Rizena-ն գտնվում էր Ավաքսում, իսկ մյուս ala-ն՝ Սիլվանայում։ Այս վերջին զոկատը կրում է Թեոդոսիոսի անունը։ Կրկնությունը տողերի կրկնության հետևանք է և մեկ Theodosiana-ն մյուսից տարբերելու համար ավելացված է

*Զորակայաններից Տրապիզոնը հայտնի ծովափնյա քաղաք է Պիկսիտ* Pyxites *գետի՝ այժմյան Դեիրմեն-դերեի գետաբերանի մոտ։*

Auaxa*-ն, անկասկած, այժմյան Ավազա կամ, ինչպես Լինչն է գրում, Ավզա գյուղն է, որ գտնվում է Գուլաթ կամ Կոլաթ լեռան ստորոտին և հիշյալ գետի ակունքների միջև։*

Siluanis*-ը* Siluana*-ի գործիական հոլովն է և հավանորեն* *Itin. Ant.-ում հիշատակված* Solonenica*-ն է, որը ածական է* Solon*-ից։ Կարելի՞ է, արդյոք, այն զուգադրել այժմյան Սյուլե կամ Սոլու գյուղի հետ, որ գտնվում է Խարշուտ-սու գետի ակունքների մոտ, Կալաչիկի մոտակայքում, որտեղ նշմարվում են հին բերդի ավերակներ*[1]*։*

*Գուլաթ լեռներից արևմուտք ձգվում են Զիգանայի լեռները։ Տրապիզոնից Արզրում տանող ճանապարհը անցնում է Զիգանայի լեռնանցքով, 6640 ոտնաչափ բարձրության վրա։ Լեռնանցքի հարավային մուտքի մոտ Զիգանա ավանում, որ մինչև այժմ էլ կրում է իր հին անունը, կանգնած էր հռոմեական կոհորտա։ Զիգանայից արևելք մինչև հիմա էլ պահպանվել է հին Մ ո խ ո ր ա գյուղը, որ հռոմեական կոհորտայի զորակայան է եղել։* Chaszanenica*-ն նույնն է, ինչ* Peut.*-ի* Gizenenic*-ը (համա.* Ch-iaca=C-iaca*) և կարող է համեմատվել Դեիրմեն-դերե գետի մոտ գտնվող այժմյան Խաձանա գյուղի հետ*[2]*։* Usiportus*-ը Արիանոսի* "Υσσου λιμήν*-ն է՝ հետագայի Սուսարմիա-ն*[3]*, որ Սև ծովի վրա Տրա-*

felix*, որի վավերականությունը տարակուսելի է մանավանդ այն պատճառով, որ* ala prima felix Theodosina*-ն նշված է ներքևում՝* Pithiae*-ում։*

[1] *Ավերակները լուսանկարել է Լինչը,* Armenia, II, p. 236։

[2] *Իր տեղադրությամբ Խաձանան կարծես թե այնքան էլ չի համապատասխանում Խասցանենիկային։ Տրապիզոնից դեպի Սատաղ տանող երկու ճանապարհ կար.*
20 *ad vicesimum* 32 Zigana 24 Thia 17 Sediscapifonti 24 Domana 18 Satala.
20 *Magnana* 10 Gizenenica 18 Bylae (Pylae) 6 Frigdarium 8 Patara 14
Medocia 12 Solonenica 18 Domana 18 Satala։
*Դատելով հեռավորություններից՝ կարելի է եզրակացնել, որ Մագնանան նույնն է, ինչ* vicesimum *կետը, և այն պետք է որ լիներ մոտավորապես Ջևիզլիկի շրջակայքում։* Gizenenica*-ն, որ Մագնանայից հետո հաջորդ կայանն է, պետք է որ, համենայն դեպս, ընկած լիներ նրանից հարավ։ Այս հանգամանքը մի քիչ դժվարացնում է Խասցանենիկայի և Խաձանայի նույնացումը, քանի որ վերջինս ընկնում է Ջևիզլիկից հյուսիս։* Chaszanenica*-ի կամ* Gi-zenenica*-ի մեջ կա ճան ժողովրդի անունը։*

[3] Arrian. § 8. Geogr. Gr. min. I p. 373. Anonymi *Peripl.* ib. p. 411, εἰς Ὕσσον λιμήνα τὸν νῦν λεγομένα Σουσάρμια.

պիզոնից դեպի արևելք ընկած այժմյան Սյուրմենե նավահանգիստն է։ Caena Parembola, Καινή παρεμβολή-ն՝ նոր ճամբար, հազիվ թե հատուկ անուն լինի։ Phitia-ն և Sebastopolis-ը ոմանց կարծիքով լազական Փիտունիտ և Սեբաստուպոլիս ամրություններն են. սակայն դրա դեմ իրավացիորեն առարկում են[1], քանի որ Not. dign.-ի ստեղծման ժամանակ վերոհիշյալ քաղաքները հռոմեացիների կողմից դեռևս գրավված չէին, և դուքսի իշխանությունը չէր կարող տարածվել այդքան հեռու։ Phitia-ի կայը Itin. Ant.-ի Thia-ի հետ հավանական է։ Սեբաստուպոլիս, ինչպես և Valenta ու Caena Parembola անուններով փոխարինված են նախկին տեղանունները, և նրանց տեղը հայտնի չէ։

Սարուսում, Դոմանայում, Սատաղում, Մելիտենեում, Տրապիզոնում (Ալաղալեարիզում), Ավաքսայում և Սիլվանայում գտնվող զորամասերի պետերը գտնվում էին այլ վիճակում, քան մյուս ջոկատների, կոհորտաների և ալաների հրամանատարները։ Առաջինների անունները գրվում էին laterculum maius-ի մեջ, իսկ երկրորդներինը՝ laterculum minus-ի մեջ։ Laterculum էր կոչվում այն հատուկ պաշտոնական մատյանը, որի մեջ ցուցակագրված էին բոլոր պետական ու պալատական պաշտոնյաները, նշված էին նաև նրանց պաշտոնը, աստիճանն ու տիտղոսը։ Աստիճանները շնորհում էր անձամբ կայսրը հատուկ հրովարտակով՝ codicillus dignitatum։ Այնտեղ ճշտությամբ որոշվում էր mandata principis-ը, այսինքն՝ տվյալ պաշտոնի էությունն ու լիազորությունները, ինչպես նաև նշվում էին յուրաքանչյուր պաշտոնի արտաքին տարբերանշանները՝ insignia։ Ապա նոր նշանակված պաշտոնյայի անունը գրանցվում էր լատերկուլի մեջ։ Հրովարտակը ստանալու համար պետք էր անձամբ ներկայանալ կայսրին, որը հանդիսավոր պայմաններում հանձնում էր այն։ Ի միջի այլոց, համեմատաբար ցածր պաշտոնյաներին հրովարտակը հանձնում էր ոչ թե կայսրը, այլ քվեստորը[2]։ Ըստ այդմ էլ տարբերվում էին laterculum maius et minus, մեծ և փոքր մատյանները։ Առաջի-

---

[1] Böcking, I p. 434 not. 47։

[2] Ըստ Not. dign.-ի քվեստորի պարտականությունների մեջ էին մտնում օրինագծերի նախապատրաստումն ու կայսրի անունով տրված խնդրագրերի ընդունումը leges dictandae և Preces։ Հենց նա էլ վավերացնում էր օրենքները՝ quaestor legi կամ subscripsi։

նի մեջ գրանցվում էին այն անձանց անունները, որոնք նշանակվում էին անմիջապես կայսեր կողմից, որը պահվում էր կայսեր դիվանում՝ առաջին քարտուղարի՝ primicerius notariorum-ի մոտ։ Իսկ փոքր լատերկուլի մեջ գրանցվում էին այն աստիճանավորների անունները, որոնք պաշտոն էին ստանում քվեստորի հայեցողությամբ, և այն պահվում էր նրա գրասենյակում։ Հայաստանի դուքսին ենթակա պաշտոնյաներից բոլոր տասը կոհորտաների և ութ ալաների (տասից) պետերը գրանցվում էին փոքր լատերկուլի, կամ, ինչպես ասվում էր, de minore laterculo emittuntur-ի մեջ, իսկ Ավաքսայում և Սիլվանայում գտնվող ալաների պետերը լեգեոնների և հեծելազորի պրեֆեկտների հետ միասին, ինչպես երևում է, գրանցված են եղել մեծ լատերկուլում։

Ինքը՝ Հայաստանի դուքսը, պատվավոր դիրք էր գրավում հիերարխիական սանդուղքի վրա. նա ուներ spectabilis-ի աստիճան։ Նախկին դասային ազնվական պրեդիկատները՝ ծերակուտային clarissimus-ը և հեծյալների perfectissimus-ը, հիմնական փոփոխություն էին կրել։ Հեծյալների դասի անհետացումով perfectissimus պրեդիկատը դարձավ ստորին կարգի պաշտոնյաների սեփականություն։ Ծերակուտային clarissimus-ը ձեռք բերեց երեք երանգ կամ աստիճան՝ առաջինը և ամենաբարձրը՝ clarissimus et illustris, երկրորդը՝ clarissimus et spectabilis և երրորդը՝ սոսկ clarissimus։ Այստեղից առաջ եկան illustris, spectabilis, clarissimus և perfectissimus աստիճանները։ Իլյուստրիսիմատի մեջ էին մտնում ի միջի այլոց նաև բոլոր պրետորական պրեֆեկտներն ու զինվորական մագիստրոսները, սպեկտաբիլիտետի մեջ՝ պրետորական պրեֆեկտների տեղակալները՝ վիկարիոսները և զինվորականներից՝ դուքսերն ու կոմեսները. իսկ clarissimus-ի կարգն էին դասված նահանգների կառավարիչները՝ praesides, և լեգեոնների պրեֆեկտները։ Այսպիսով՝ Հայաստանի դուքսին, ինչպես և մյուս դուքսերին շնորհված էր իր կարևորությամբ երկրորդ՝ spectabilis-ի աստիճան։ Նա, ինչպես և իշխանության յուրաքանչյուր ներկայացուցիչ, իր տրամադրության տակ ուներ որոշակի թվով պաշտոնյաներ, որոնք իրենցից ներկայացնում էին նրա officium-ը կամ, ինչպես այժմ են ասում, դիվանատունը։ Officium-ը գլխավորում էր princeps-ը՝ դիվանատան կառավարիչը։ Նա, ի միջի այլոց, ընտրվում էր scola agentum in rebus-ի միջից, ինչպես նշված է Հայաստանի դուքսի officium-ում։ Սքոլյան

միլիցիայի մի տեսակն է՝ բաղկացած 1100 և ավելի հոգուց, որոնք կոչվում էին agentes in rebus։ Նրանք պաշտոնական հանձնարարություններ էին տանում նահանգները և ենթարկվում էին magistri officiorum-ին՝ արքունիքի մինիստրին։ Դուքսի գրասենյակը բաղկացած էր մի քանի բաժիններից՝ scrinia-ներից, որոնք ղեկավարում էին կառավարման զանազան ճյուղերը. դրանք էին numerarii՝ ֆինանսական բաժնի ծառայողները, commentariensis՝ քրեական գործերի բաժնի պետը, libellis-ը՝ դուքսի անունով տրված խնդրագրերը ընդունող բաժինը, exceptores՝ գործադիր մարմիններ և այլ բաժիններ[1]։

*Not. dign.*-ի մեջ պահպանվել են յուրաքանչյուր պաշտոնի համար սահմանված տարբերանշանները, որ կայսերական հրովարտակի հետ միասին codicillus dignitatum, տրվում էին համապատասխան անձանց։ Սրանցից բերենք Պոնտիկայի վիկարիոսի և Հայաստանի դուքսի տարբերանշանները։ Առաջինի տարբերանշանները իրենցից ներկայացնում են տասնմեկ ֆիգուրներ, որոնք պատկերացնում են վիկարիոսին ենթակա դիոցեզի տասնմեկ նահանգները։ Ֆիգուրները միմյանցից զանազանվում են գույների ներդաշնակությամբ։ Սրանց վերևում գրակալի վրա դրված է մի մատյան. դա Liber mandatorum-ն է, իսկ նրա կողքին՝ մի սյունակ, որ ուրիշ դեպքերում սովորաբար կրում է երկու պատկեր (զույգ կայսրի և կայսրուհու), իսկ երբեմն էլ չորս պատկեր, ինչպես Ասիական դիոցեզի վիկարիոսի տարբերանշանում։

Հայաստանի դուքսի տարբերանշանը իրենից ներկայացնում է յոթ բերդերի նկար, չորսը՝ հայկական և երեքը՝ պոնտական։ Դրանք այն կենտրոնական կայաններն են, որտեղ նստում էին զինվորական իշխանության ներկայացուցիչները laterculi maioris-ից, մինչդեռ minoris lateculi անձանց զորակայանները չէին նշվում տարբերանշանների վրա։ Հայաստանի դուքսի liber mandatorum-ը առանց գրակալի է, ինչպես առհասարակ բոլոր դուքսերի տարբերանշաններում։

Illustris աստիճանի պաշտոնյաների տարբերանշաններում գրքի կազմի վրա կա մի դիմանկար, ըստ երևույթին՝ կայսեր, իսկ մյուս պաշտոնյաների տարբերանշաններում դիմանկարի փոխարեն կա հետևյալ մակագրությունը.

[1] Bethman-Hollweg, *Civilprocess*, III § 142.

FL
INTALL
COMORD
PR

*Այս հանելուկային տառերի իմաստը մեկնաբանելու առաջին փորձը կատարել է հայտնի գիտնական Պանցերոլը, որը կարդացել է*

Felix liber
iniunctus notariis tribunis a laterculo
continens mandata ordine
primicerii.

*Բյոկինգը առաջարկում է մի այլ վերծանում.*

felicitati laetitiae
qui imperatorii numinis, tutelae Augustorum larium
Civitates omnes maiestati obediant regiae domini
populi Romani.

*Ընդ որում Բյոկինգը վկայակոչում է Կեդրինոսի պատմության մի շատ հետաքրքրական տեղը, որտեղ, խոսելով կայսրությունը Հոնորիոսի և Արկադիոսի միջև բաժանելու մասին, պատմագիրը հաղորդում է, որ հռոմեական դրամների վրայի* KONOB[1] *նշանները պետք է կարդալ՝*

civitates omnes nostrae obediant venerationi[2].

*Կարո՞ղ է արդյոք սա դառնալ* liber mandatorum-*ի վրայի խորհրդավոր տառերի հանելուկը լուծելու բանալին։ Վերջին մասի ընթերցումը ավելի կամ պակաս չափով հավանական է թվում, բայց ընդհանրապես հանելուկը դեռ կարոտ է լուծման։*

*Գրքի կողքին կա մագաղաթի մի փաթեթ. թե դա ի՞նչ է նշանակում, դարձյալ հայտնի չէ։*

---

[1] KONOB *տառերի վերծանման վերաբերյալ, օգտվելով Ե. Ի. Սմիռնովի բարեհաճ ցուցումից, նշենք, որ այդ տառերն այժմ կարդացվում են այսպես.* CON<stantinopolis> *և* OB<ryzum> *մաքուր ոսկի։* Pinder et Friedländer, *De la signification des lettres OB sur les monnaies byzantines,* Berlin, 1851, *II հրատ., 1873, նաև* E. Babelon, *Traité des monnaies grecques et romaines* 1901—1907, Paris, t. I p. 880 *և շարունակութ.*

[2] Kedr. I p. 563, τὰ ἐν τοῖς νικαρίοις τοῦ νομίσματος ὑποκείμενα Ῥομαικὰ γράμματα δηλοῦσι ταῦτα: τὸ κ κιβιτάτες, τὸ ο ὄμνις, τὸ ν νόστραι, τὸ ο ὀβέδιαντ, τὸ Β βενερατιόνι, τουτέστιν αἱ πόλεις πᾶσαι τῇ ἡμετέρα πειθαρχείτωσαν προσκυνήσει. *Համեմ.* Böcking, I p. 284.

## II

Այն ժամանակ, երբ Փոքր Հայքի հողերը կազմում էին կայսրության օրգանական մասը՝ նրան շաղկապված պետական կյանքի բոլոր թելերով, նախկին Մեծ Հայքի սատրապության գավառները, ինչպես նաև Ներքին Հայքը, կրում էին ազատ տիրույթների բնույթ, որ թեև արտաքնապես կցված էին կայսրությանը, բայց ներքին կյանքով ու կառուցվածքով միանգամայն ինքնուրույն էին։

Համապետական տեսակետից հիշյալ գավառների իրավական վիճակը կարելի է նույնացնել կայսրության բաղկացուցիչ մասը կազմող այն միավորներին, որոնք վաղ ժամանակներից սկսած կոչվում էին դաշնակցային՝ foederatae և ազատ՝ liberae։ Դաշնակցային տերիտորիաների հարաբերությունները բնորոշվում էին, ինչպես ցույց է տալիս հենց այդ տերմինը, հատուկ պայմանագրի՝ foedus non aequum-ի հիման վրա, որի շնորհիվ նրանք միացվում էին կայսրությանը։ Այդ միջոցով անհավասար կողմը պետության կազմի մեջ մտնելիս իր համար ապահովում էր ինքնավարական որոշ արտոնություններ։ Նման առավելություններ ունեին նաև այսպես կոչված ազատ ազգությունները՝ liberae, որոնք տարբերվում էին դաշնակցային երկրներից կամ ֆեդերատներից նրանով, որ իրենց ազատությունը ստանում էին կայսրության բարձրագույն իշխանությունից, մինչդեռ ֆեդերատների անկախությունը բխում էր պայմանագրից։ Արտահայտվելով իրավաբանական լեզվով՝ ֆեդերատները ազատությունից օգտվում էին իրավունքով, իսկ ազատները՝ օրենքով։ Ֆեդերատներին տրված ինքնիշխանության էությունը հանդիսանում էր libertas՝ վարչական անկախություն և autonomia՝ օրենսդրության ու դատավարության իրավունք։ Սրանք իրենց տերիտորիայի տերն ու տնօրենն էին, ազատ էին հարկատվությունից, չունեին հռոմեական կառավարիչ և իրենց մոտ չէին պահում հռոմեական կայազոր։ Կայսրության հետ նրանց կապող միակ գլխավոր պարտականությունը զինվոր մատակարարելը և առհասարակ կայսրությանը ռազմական օգնություն ցույց տալն էր։

Տեսականորեն այսպես էր իրերի վիճակը, իսկ իրականում ազատ ժողովուրդների հիշյալ պրեդիկատները, որ ճանաչված էին de jure, կոնկրետ դրսևորումներով ընդունում էին զանազան ձևեր.

*հարկատվությունից ազատ ինքնավար ազգությունների* αὐτόνομοι καὶ φόρων ἀτελεῖς *կամ* liberi et immunes *կողքին հանդիպում էին և այնպիսիները, որոնք թեև համարվում էին ազատ, բայց պարտավոր էին իրենց լուման մուծել կայսրության գանձարանը։*

*Ըստ այդմ էլ միմյանցից տարբերվում էին* civitates foederatae, civitates liberae immunes *և* civitates stipendiariae *կամ* ἔνσπενδοι, συμμαχικοί *ժողովուրդներ, հակառակ մյուս* ὑπήκοοι, ἀρχόμενοι[1]*-ի։*

*Հին աշխարհի կործանման հետ և հռոմեական պետության դանդաղ, բայց հաստատուն կերպով բյուզանդականի այլափոխվելու ժամանակաշրջանում ֆեդերատ հասկացությունը և նրա վիճակը, հին իրավունքի բազմաթիվ այլ հաստատությունների նման, կարող էր, իհարկե, փոխվել՝ հարմարվելով պետական նոր իրադրությանը։ Այսուհանդերձ նոր այլացեղ ուժերի ներխուժման և հների խմորումների ալեկոծ դարաշրջանում* φοιδεράτοι *տերմինը գործ էր ածվում ցեղային այն ինքնուրույն խմբակցությունների վերաբերյալ, որոնք հիմնավորվում էին կայսրության ծայրամասերում, զանազան կողմերից ճնշում գործադրելով նրա վրա և նրա հետ մտնելով հարաբերությունների մեջ, որոնք երբեմն խաղաղ բնույթ էին կրում։ Կայսերը նրանց հետ բարեկամության դաշն էին կնքում և իրենց նպատակների համար վարպետորեն օգտագործում էին նրանց ուժերը։ Հուստինիանոսի բանակը իրենից ներկայացնում էր զանազան ազգությունների գնդերից կազմված մի խճանկար, որոնք իրենց ամբողջության մեջ առանձնացվում էին ֆ ե դ ե ր ա տ ն ե ր տերմինով՝ ի տարբերություն կայսրության բուն ուժերից, նրա իսկական զորքից՝* στρατιῶται.

*Աֆրիկյան արշավանքի ժամանակ վանդալների դեմ գործող բանակը, ըստ ժամանակակից հեղինակի նկարագրության, կազմված էր* ἔκ τε στρατιωτῶν καὶ φοιδεράτων *«ֆեդերատների մեջ,— ընդսմին բացատրում է հեղինակը,— սկզբում մտնում էին միայն այլազգիներ — բարբարոսները, որոնք ստրուկների՝ հպատակների թվին չէին պատկանում, բայց քանի որ հռոմեական զենքով չէին նվաճվել, կայսրության կազմի մեջ էին ընդունվում միևնույն*

---

[1] Kuhn. *Röm. Reich. II* p. *14,* Verbündete freie und Unterthänige Gemeinden. Виллемсъ, *Рим. госуд. право,* p. 418—419.

իրավունքներով։ Չէ՞ որ հռոմեացիները φοίδερα, foedera են կոչում թշնամիների հետ կնքած խաղաղության դաշինքը։ Մինչդեռ այժմ յուրաքանչյուրը կամայականորեն իրեն է վերագրում այդ անվանումը»[1]։ Հեղինակը նկատում է, որ ժամանակը հազվադեպ է պահպանում անվանումների սկզբնական նշանակությունը. հասկացություններն ու հանգամանքները անընդհատ փոփոխվում են, իսկ մարդիկ դեռևս անփութորեն շարունակում են գործածել նախկին բառերը։ Պատմագիրը ակնհայտորեն այն կարծիքին է, որ ֆ ե դ ե ր ա տ տերմինը վերապրել է իր բովանդակությունը, բայց թե ինչո՞ւմ է այդ անհամապատասխանությունը՝ մնում է անբացատրելի։ Իր դիտողության մեջ պատմագիրը երևի ելնում է լատիներեն բառի ստուգաբանական նշանակությունից, աչքաթող անելով ֆեդերատ հասկացության իրավական բովանդակությունը՝ civitates foederatae որպես փոքրիկ մի կոլեկտիվ, որ կայսրության մեջ է մտնում ա ն հ ա վ ա ս ա ր դ ա շ ի ն ք ի հ ի մ ա ն վ ր ա՝ foedus non aequum.

Թրակիայում գոթերի բնակություն հաստատելու կապակցությամբ նույն պատմագիրն ասում է, որ «գոթերը Հուստինիանոսի թույլտվությամբ գրավեցին զանազան վայրեր, օգնում էին հռոմեացիներին և մյուս ռազմիկների նման ամեն տարի կայսրից ռոճիկ էին ստանում և կոչվում էին ֆեդերատներ։ Կարծում եմ, որ հռոմեացիները նրանց լատինական այդ բառով են անվանում՝ ցանկանալով դրանով ցույց տալ, որ գոթերը պատերազմում չեն նվաճվել հռոմեացիների կողմից, այլ մտցվել են իրենց դաշնակցության մեջ որոշակի պայմաններով»[2]։ Ուրեմն՝ գոթերը, առանց զոհաբերելու իրենց ազատությունը, կայսրությանը օգնություն էին ցույց տալիս։ Այդպիսի վերաբերմունքը կայսրության նկատմամբ միանգամայն արդարացնում է ֆեդերատ անվանումը բառի իսկական իմաստով և ցույց է տալիս, որ նրա գործածությունը Հուստինիանոսի դարում պետք է բացատրել ոչ միայն այդ բառի կեն-

---

[1] Proc. *Vand* I 11 p. 358, ἐν δὲ δὴ φοιδεράτοις πρότερον μὲν μόνοι βάρβαροι κατελέγοντο, ὅσοι οὐκ ἐπὶ τὸ δοῦλοι εἶναι, ἅτε μὴ πρὸς Ῥωμαίων ἡσσημένοι, ἀλλ᾽ ἐπὶ τῇ ἴσῃ καὶ τῇ ὁμοίᾳ ἐς τὴν πολιτείαν ἀφίκοιντο. φοίδερα γὰρ τὰς πρὸς τοὺς πολεμίους σπονδὰς καλοῦσι Ῥωμαῖοι. τὸ δὲ νῦν ἅπασι τοῦ ονόματος τούτου ἐπιβατεύειν οὐκ ἐν κωλύμῃ ἐστί.

[2] Proc. *Goth.* IV, 5 p. 477—8.

սունակությամբ, այլև դեռևս գոյությունը շարունակող հասկացության կենսականությամբ։ Մեզ հետաքրքրող բառի ոչ ճիշտ գործածությունը, որ նկատել է Պրոկոպիոս պատմագիրը, ըստ երևույթին վերաբերում է մասնակի մի դեպքի և այդ էլ ոչ առանց հիմքի. աֆրիկյան արշավանքի ժամանակ իբրև ֆեդերատների գլուխ կանգնածներ չեն հիշատակվում այլազգի ծագում ունեցող անձնավորություններ, մինչդեռ ֆեդերատները սովորաբար պատերազմ էին գնում իրենց սեփական առաջնորդների հրամանատարությամբ։ Տվյալ դեպքում անհայտ է նաև ֆեդերատների կազմը, հնարավոր է, որ զորամասերը իրոք բաղկացած էին այլազգիներից, բայց այս անգամ նրանք պատերազմ էին գնում հռոմեական զորավարների դրոշների ներքո։

Ֆեդերատների ինը պետերի թվում, և առաջին տեղում, հիշվում է Դորոթեոսը՝ հայկական գնդերի հրամանատարը[1]։ Դորոթեոսը իրոք Հայաստանում գրավում էր Հուստինիանոսի ստեղծած զինվորական պետի՝ magister-ի պաշտոնը, իր այդ պաշտոնում էլ նա պատերազմեց պարսիկների դեմ և 532 թ. հաշտություն կնքելուց հետո ուղարկվեց Աֆրիկա։ Հայաստանի մագիստրոսի տրամադրության տակ, ինչպես կտեսնենք ստորև, կային և՛ հայկական տեղական ջոկատներ, և՛ կայսերական զորամասեր։ Դորոթեոսի հետ միասին Աֆրիկա փոխադրված գնդերը, ըստ երևույթին, նույնպես խառը կազմ ունեին։ Եթե ֆեդերատների մյուս պետերի մոտ էլ վիճակն այդպիսին էր, ապա հասկանալի է պատմագրի կշտամբանքը այն անձանց հասցեին, որոնք ապօրինի կերպով յուրացնում էին ֆեդերատ անունը։

Անկախ վերը քննված մասնակի դեպքից, որ կարող է ճիշտ լինել կամ չլինել, ինքնըստինքյան կարևոր է այն փաստը, որ ֆեդերատների շարքն են դասվել հայկական գնդերը։

Քննելով Ներքին Հայքի և սատրապական հողերի կառավարմանը վերաբերող մեզ հասած աղբյուրի տվյալները, դժվար չէ նկատել, որ ըստ էության որոշ նմանություն կա հիշյալ հողերի և ֆեդերատների միջև։

Պատմագրի բուն խոսքերն են. սատրապական Հայաստանում իշխում էին հինգ հայ սատրապ, որոնք իշխանու-

---

[1] Proc. *Vand. l. c.*, ἄρχοντες δὲ ἦσαν φοιδεράτων μὲν Δωρόθεός τε, ὁ τῶν ἐν Ἀρμενίοις καταλόγων στρατηγός.

*թյան էին կոչվում ժառանգաբար և գրավում էին այն մինչև իրենց մահը։ Նրանք Հռոմեական կայսրից ստանում էին միայն իշխանության տարբերանշաններ։ Հետաքրքրական է նկարագրել այդ տարբերանշանները, որովհետև մարդկանց հայացքին նրանք այլևս չեն ներկայանալու։ Քղամիդ, որ գործված էր բրդից, բայց ոչ այն բրդից, որ տալիս են ոչխարները, այլ այն, որ ստացվում է ծովից։ Պիններ[1] այն կենդանիների սովորական անունն է, որոնցից վերցվում է այդ բուրդը։ Ոսկով էր բանված ծիրանու այն մասը, որտեղ ընդունված է կոճկել ծիրանին։ Քղամիդը վերևում ունի ոսկե ճարմանդ, մեջտեղը ագուցված թանկագին քար, որից ոսկե ճկուն շղթաներով կախված էր երեք հակինթ։ Մետաքսյա պարեգոտ (քիտոն), որ ամբողջովին ծածկված էր լինում ոսկեբանված նախշերով, որոնք սովորաբար փետուր էին կոչվում։ Կարմիր գույնի[2] երկարաճիտ ոտնամաններ, որ հասնում էին մինչև ծնկները, և որը իրավունք ունեին հագնելու միայն Հռոմեական*

σατράπαι ἐφειστήκεισαν Ἀρμένιοι πέντε, καὶ κατὰ γένος μὲν ἐς ἀεὶ ἐς τὰς ἀρχὰς ἐκαλοῦντο ταύτας, ἐχόμενοι αὐτῶν ἄχρι ἐς θάνατον. σύμβολα μέντοι αὐτῶν πρὸς τοῦ Ῥωμαίων βασιλέως ἐδέχοντο μόνον. ἄξιον δὲ τὰ σύμβολα ταῦτα δηλῶσαι λόγῳ, ἐπεὶ οὐκέτι ἐς ἀνθρώπου ὄψιν ἀφίξεται. χλαμύς ἡ ἐξ ἐρίων πεποιημένη, οὐχ οἷα τῶν προβατίων ἐκπέφυκεν, ἀλλ' ἐκ θαλάσσης συνειλεγμένων. πίννους[1] τὰ ζῷα καλεῖν νενομίκασιν, ἐν οἷς ἡ τῶν ἐρίων ἔκφυσις γίνεται. χρυσῷ δὲ ἡ τῆς π ο ρ φ ύ ρ α ς κατείληπτο μοῖρα, ἐφ' ἧς εἴωθεν ἡ τῆς ἁλουργίδος ἐμβολὴ γίνεσθαι. π ε ρ ό ν η χρυσῆ τῇ χλαμύδι ἐπέκειτο, λίθον ἐπὶ μέσης περιφράττουσά τινα ἔντιμον, ἀφ' οὗ δὴ ὑάκινθοι τρεῖς χρυσαῖς τε καὶ χαλαραῖς ταῖς ἁλύσεσιν ἀπεκρέμαντο. χ ι τ ὼ ν ἐκ μετάξης ἐγκαλλωπίσμασι χρυσοῖς πανταχόθεν ὡραϊσμένος, ἃ δὴ νενομίκασι πλουμμία[2] καλεῖν. ὑ π ο δ ή μ α τ α μέχρι ἐς γόνυ φοινικοῦ χρώματος, ἃ δὴ βασιλέα Ῥωμαίων τε καὶ Περσῶν ὑποδεῖσθαι θέμις.

[1] Πίννοι = pinna, πίννη.

[2] Πλουμμία = pluma.

*կայսրերն ու պարսից թագավորները։*

*Ո՛չ հայոց թագավորը, և ո՛չ էլ սատրապները հռոմեական զորք չունեին, և նրանք իրենց ուժերով էին վարում պատերազմական գործերը։ Հետագայում, Զենոնի թագավորության ժամանակ, սատրապներից ոմանք միտք հղացան բացեիբաց անցնել Իլլոսի և Լեոնտիոսի կողմը, որոնք ինքնագլուխ ապստամբել էին կայսեր դեմ։ Զենոնը գերի վերցրեց Լեոնտիոսին և Իլլոսին և այդ ժամանակ էր, որ ամենից թույլ և ամենից քիչ ուշադրության արժանի սատրապին, որ իշխում էր այսպես կոչված Բելաբիտինե գավառում, թողեց նախկին վիճակում, իսկ մնացածներին հեռացրեց և թույլ չտվեց այլևս օգտվել ժառանգաբար իշխելու իրավունքից և կարգադրեց, որ այսուհետև այդ պաշտոնը ես մարդիկ զբաղեցնեն կայսեր ընտրությամբ, ճիշտ այնպես, ինչպես հռոմեական մյուս պաշտոնները։ Նրանց, սակայն, ուղեկցում էին ոչ թե հռոմեական, այլ հայկական զորքեր, ինչպես նախկինում*[1]*։*

Στρατιώτης δὲ Ῥωμαῖος οὔτε τῷ Ἀρμενίων βασιλεῖ οὔτε σατράπαις ἤμυνε πώποτε, ἀλλὰ τὰ πολέμια κατὰ μόνας αὐτοὶ διωκοῦντο. χρόνῳ δὲ ὕστερον ἐπὶ Ζήνωνος βασιλεύντος Ἰλλῷ τε καὶ Λεοντίῳ τετυραννηκόσιν ἐπὶ βασιλέα διαφανῶς συντάσσεσθαί τινες τῶν σατραπῶν ἔγνωσαν. διὸ δὴ Λεόντιόν τε καὶ Ἴλλον Ζήνων βασιλεὺς ὑποχειρίους πεποιημένος, σατράπην μὲν ἕνα φαυλοτάτην ἀρχὴν ἔχοντα καὶ ὡς ἥκιστα λόγου ἀξίαν ἐν χώρῃ τῇ Βελαβιτίνῃ καλουμένῃ, ἐπὶ τοῦ προτέρου σχήματος εἴασε, τοὺς δὲ λοιποὺς καθελὼν ἅπαντας οὐκέτι ἐς τοὺς κατὰ γένος σφίσι προσήκοντας ξυνεχώρησε τὰς ἀρχὰς φέρεσθαι, ἀλλ' ἑτέρους ἀεὶ τὴν ἀρχὴν διαδέχεσθαι διώρισε ταύτην οὓς ἂν βουλομένῳ βασιλεῖ εἴη, ὥσπερ ἐφ' ἁπάσαις ταῖς ἄλλαις διώρισται Ῥωμαίων ἀρχαῖς. στρατιῶται μέντοι οὐδ' ὣς Ῥομαῖοι αὐτοῖς εἵποντο, ἀλλὰ τῶν Ἀρμενίων τινὲς, ἧπερ τὰ πρότερα εἴθιστο.

[1] Proc. *Aed.* III, 1.

*Սատրապությունների մասին այս աղքատիկ տեղեկություններից երևում է, որ դրանք նվաճված հողեր չէին բառի իսկական իմաստով, այլ ավելի շուտ կայսեր դաշնակիցներ, թեև անհավասար։ Նրանց որպես ֆեդերատներ բնորոշող հիմնական գծերն են՝ լիակատար ինքնիշխանություն առանց հռոմեական իշխողների հսկողության և զինվորական ծառայություն կայսրությանը։ Սատրապությունները փոքրիկ պետություններ էին, որ կառավարում էին թագավորներին հավասար դիրք ունեցող սեփական իշխանները։ Այն տարբերանշանները, որ կայսրը ուղարկում էր նրանց, հատուկ էին թագավորական իշխանությանը։ Դրանք էին՝ ծիրանի վերարկու և կարմիր ոտնամաններ, որոնք գերագույն աստիճան ունեցող իշխանավորների զգեստավորման հատկանշական մասն էին կազմում։ Նման պատվանշաններ կայսրերը շնորհում էին նաև լազերի թագավորներին՝ ճերմակ քղամիդից, ճերմակ պատմուճանից և ոտնամաններից բացի հիշատակվում են նաև հռոմեական ձևի պսակ և մարգարտակուռ գոտի[1]։ Այդպիսի գոտի ունեին նաև հայ իշխանները, բայց արդյո՞ք սատրապները գոտին ստանում էին կայսրից, հայտնի չէ։ Նույնը պետք է ասել նաև սատրապական խույրի մասին։*

*Սատրապների իշխանության էությունն ու սկզբնավորությունն իրենց արմատներով գտնվում էին այն իրավահարաբերությունների մեջ, որոնք ծաղկել էին Հայաստանում հատկապես Արշակունիների դարաշրջանում, և որոնց ամբողջությունը հայկական տերմինաբանությամբ կոչվում է նախարարություն, նախարարական իրավունք։*

*Սատրապները հայ նախարարներ էին, իրենց այն տոհմակիցների թվից, որոնք իշխում էին Հայաստանի մյուս մասերում։ Տեղական իրավըմբռնողության տեսակետից նրանք կամ հայոց կամ պարսից թագավորի վասալներն էին և իրենց քաղաքական իրավասության բնույթով միանգամայն համապատասխանում էին կայսրության իրավունքի մեջ սահմանված ֆեդերատ հասկացողությանը։ Նրանց ինքնավարության սկզբնավորումը չպետք է կապել կայսրությանը միանալու պահի հետ, որովհետև այդ ինքնավարությունը բխում էր Հայաստանում տիրող հասարակական-քաղաքական իրավիճակից։ Կայսրությունը չէր փորձում ոտնահա-*

---

[1] Malala, p. 413.

րել սատրապությունների ազատությունը՝ ինարկե ոչ մեծահոգությունից դրդված, նա հարկադրված էր այդպես վարվել բացառապես այն կոնկրետ պայմանների, այն դարավոր մրցակցության թելադրանքով, որ գնում էր հռոմեական և պարսկական ուժերի միջև Հայաստանին տիրելու համար։ Այդ պայքարի մեջ և նրա ելքի համար Հայաստանի հաշիվներն ու համակրանքը, որ ստիպում էին նրան հակվել մեկ այս, մեկ այն կողմը, բնավ էլ աննշան դեր չէին խաղում։ Ըստ հայկական աղբյուրների Արշակ թագավորի անկումից հետո սատրապները իրենք սեփական նախաձեռնությամբ անջատվեցին հայոց թագավորությունից և ենթարկվեցին հունաց կայսրին[1]։ Սատրապների այդ կամավոր հպատակության մեջ չի կարելի չնկատել դաշնագրային ակտի որոշ տարր, որով սատրապների կողմից կայսեր գերիշխանության ճանաչումը պիտի ապահովեր նրանց ունեցած ազատություններն ու իրավունքները։ Պետք չէր ունենալ քաղաքական հատուկ հեռատեսություն՝ սատրապների հարցը կայսրության շահերի տեսակետից ցանկալի ձևով լուծելու համար, այսինքն՝ ընդունել սատրապներին՝ նրանց ինքնավարություն տալով և դրանով իսկ հանձինս նրանց սահմանագըլխում պարսիկների դեմ միանգամայն վստահելի պատվար ունենալ։ Չընդունել սատրապներին կամ ոտնակոխ անել նրանց ազատությունը՝ նշանակում էր վանել հավատարիմ դաշնակիցներին դեպի պարսից թագավորը։

Դաշնագրային սկզբունքը առանձնապես աչքի է զարնում սատրապությունների հետ հարևանության մեջ գտնվող Ներքին Հայքը կայսրությանը միացնելու պատմության մեջ։ Բյուզանդական պատմագրի մոտ պահպանված մի քանի տեղեկության համաձայն Արշակունիների տոհմի վերջին հայ թագավորը մահվանից առաջ կտակում է թագավորությունը բաժանել իր երկու որդիների՝ Արշակի և Տիգրանի միջև, ընդ որում Տիգրանի բաժինը չորս անգամ մեծ էր։ Դրանից վիրավորված՝ Արշակը դիմում է Թեոդոսիոս կայսրին՝ ջանալով նրա օգնությամբ անվավեր հայտարարել հոր կտակը։ Տիգրանն էլ իր հերթին դիմում է պարսից թագավորի հովանավորությանը՝ վախենալով կայսեր վրեժխնդրությունից։ Այդ ժամանակ «Արշակը, որ նույնպես վախենում էր պարսից թագա-

[1] Փավստոս, Դ, ծ. «Եթող զարքային հայոց եւ գնաց Սաղամուտ տէրն Անձտեայ եւ ընդ նմա իշխանն մեծի Ծոփաց եւ գնացին առ թագաւորն յունաց»։

վորի և իր եղբոր դավերից, որոշ պայմաններով հրաժարվեց թագավորությունից հօգուտ Թեոդոսիոս կայսրի ἐπὶ ξυνθήκαις τισίν»[1],-- գրում է պատմագիրը։

Հիշյալ պայմանների էությունը, ինչպես վկայում է հեղինակը, շարադրված է իր մի այլ աշխատության մեջ։ Այնտեղ, իրոք, դրանք դրված են այն հայ իշխանների շուրթերին, որոնք, դժգոհ լինելով Հուստինիանոսի քաղաքականությունից, ներկայանում են պարսից արքունիք և Խոսրով թագավորին ուղղած իրենց աղերսանքի մեջ, ի միջի այլոց, հավաստում են, որ հայոց վերջին Արշակունի թագավորը իր թագավորությունը հոժարակամ զիջել է հռոմեական Թեոդոսիոս կայսրին, պայմանով, որ «ծագումով իրեն մերձավոր բոլոր հաջորդ սերունդները ապագայում միշտ ապրեն լիակատար ազատության մեջ և ոչ մի հարկ չվճարեն» ἅπαντες οἱ κατὰ γένος αὐτῷ μέλλοντες πάντα τὸν αἰῶνα προσήκειν τά τε ἄλλα βιοτεύσουσι κατ' ἐξουσίαν καὶ φόρον ὑποτελεῖς οὐδαμῇ ἔσονται։ Ընդ որում նրանք հավաստիացնում էին, որ հիշյալ պայմանը պահպանվում էր մինչև պարսիկների և հռոմեացիների միջև 532 թ. կնքված հաշտությունը[2]։

Ըստ այս պատմության Հայաստանում Արշակունիների անկման հանգամանքները ներկայացվում են մի փոքր այլ լույսի տակ, քան մեզ հասած հայկական ավանդություններում։ Ոմանց կարծիքով բյուզանդացի պատմագրի ասածները վստահելի չեն։ Այնքան, որքան խոսքը վերաբերում է սույն պատմության մեջ հիշատակված անուններին կամ անձնավորություններին, կասկածներ, անշուշտ, կարող են լինել, և քննադատությանն է մնում դեռ որոշել բյուզանդացի Պրոկոպիոսի և հայ Փավստոսի տվյալների համեմատական արժեքը։ Նոր հետազոտողներից մեկը հակված է, սակայն, մեջ բերված պատմությունը համարել ամբողջովին հերյուրանք. Նրա կարծիքով Պրոկոպիոսը այդ պատմությունը քաղել է պղտոր աղբյուրներից, հավանորեն, հենց հայ նախարարների շուրթերից, որոնց ազգային սնափառությունը իբր թե թույլ չէր տալիս խոստովանելու, որ Հայաստանի բաժանման գաղափարը դուրս է եկել հենց այդ պետություններից[3]։

---

[1] Proc. *Aed.* III 1, p. 245—246.

[2] *Pers.* II 3, p. 163—4.

[3] Güterbock, Römisch-Armenien, p. 19.

Նույնիսկ այդպիսի լուսաբանության դեպքում պատմության ամենագլխավոր հանգամանքը մնում է աննկատելի, էլ չենք խոսում այն մասին, որ այդ լուսաբանությունը ինքնին դուրս է հիմքից։ Պրոկոպիոսի հաղորդած տեղեկությունները Արշակունիների վերջին օրերի մասին, ըստ էության, չեն հակասում այն ամենին, ինչ որ մենք գիտենք այլ աղբյուրներից։ Ազգային ավանդության համաձայն զորավար իշխան Մանվել Մամիկոնյանը, որ գահի խնամակալն էր, անչափահաս արքայորդիների՝ Արշակ և Վաղարշակ եղբայրների օրոք, իր մահվանից առաջ «գրեաց հրովարտակ առ Թագաւորն Յունաց և նմա յանձն արար զաշխարհն Հայոց և զԱրշակ արքայ»[1]։ Բացի այդ, Արշակ և Տիգրան արքայորդիների պետությունները շատ են հիշեցնում Փավստոսի պատմության մեջ հիշատակված գահակից թագավորների՝ Արշակի և Խոսրովի թշնամությունը։ Բոլորովին էլ այն չէ էական, թե ինչպես տեղի ունեցավ Արշակունիների թագավորության բաժանումը՝ շահագրգռված պետությունների բարի կամքո՞վ, թե թագի շուրջը տեղի ունեցող տեղական երկպառակությունների հետևանքով։ Կարևորն այն է, որ բաժանումից հետո Հայաստանի մի մասը միացվեց կայսրությանը այն հստակ պայմանով, որ պահպանվի երկրի Արշակունիների ազատությունը և որ նա չենթարկվի որևէ հարկատվության։ Այսպիսին էր հայերի վիճակը մինչև Հուստինիանոսը, և դրանում չի կարելի տարակուսել։

Ընդունենք նույնիսկ, որ պատմագրի հաղորդածները արդյունք են մի ինչ-որ մեկի հերյուրանքի, բայց չի կարելի հերքել, որ այն, ինչ արտահայտված է հերյուրանքի մեջ, պետք է ընդունվի իբրև երկրի իրական իրավիճակի արտացոլում, քանի որ պատմագիրը հնարավոր է համարում թեկուզ հայերի բերանով ասելը, որ նրանք մինչ այդ օգտվել են հիշյալ շնորհներից։ Պետության մեջ այդպիսի բացառիկ դիրք գրավել, Հռոմեական կայսրության ըմբռնմամբ նշանակում է լինել դաշնակցային երկիր (ֆեդերատ)։ Դրանից հետևում է, որ Ներքին Հայքը մի այնպիսի ազատ երկիր էր, ինչպիսին էին ազատ սատրապությունները։

Ֆեդերատի առանձնահատկություններից մեկը հարկատվությունից ազատ լինելն էր։ Կայսրության և հայկական հողերի միջև եղած ֆինանսական հարաբերությունների մասին որոշակի տվ-

---

[1] Փավստոս, Ե, խզ։

յալներ շատ քիչ կան։ Գոյություն ունի 387 թվականի Սոփանենեի սատրապ Գադդանոսի անունով կայսերական մի հրամանագիր, որի մեջ խնդրվում է թագ նվիրաբերել։

Cod. Th. XII 13 6. Gaddanae satrapae Sophanenae.

Այսու հրամայում ենք. թագի ոսկին ժողովել և ետ տալ նրանց, որոնցից, ինչպես երևում է, գանձված է ապօրինաբար, որպեսզի հնուց հաստատված սովորության համաձայն բոլոր սատրապները, ի նշան անձնվիրության, որ պետք է ցույց տան Հռոմեական կայսրությանը, թագ պատրաստեն իրենց սեփական միջոցներից մեր Մեծությանը հանդիսավոր կերպով մատուցանելու համար։

Aurum coronarium his reddi restituique decernimus, quibus illicite videtur ablatum, ut secundum consuetudinem moris antiqui omnes satrapae pro devotione, quae Romano debetur imperio, c o r o n a m ex propriis facultatibus faciant serenitati nostrae solenniter offerendam. Dat. XVIII kal. Jul. Constant. Valentiniano A. III et Eutropio conss. [387]

Կայսեր այս կարգադրության համար, ըստ երևույթին, առիթ են հանդիսացել իշխանության փութաջան գործակալների կողմից սատրապություններում թույլ տրված չարաշահումները։ Մի քանի տարի դրանից առաջ՝ 384 թվականին, նույն կայսրը մի հրովարտակով ընդհանրապես խստորեն արգելել էր auri coronarii բռնի գանձումը կայսրության մեջ[1]։ Սատրապություններում, հեռու լինելու կամ այլ պատճառներով, կայսերական հրամանը, ըստ երևույթին, չէր գործադրվում, և կարիք է զգացվել հրապարակելու հատուկ կարգադրություն, որով հրամայվում է սատրապություններում հավաքված aurum coronarium-ը վերադարձնել ըստ պատկանելվույն և սատրապներին թույլ տալ գործելու սեփական հայեցողությամբ։ Aurum coronarium կոչվող գանձումները մյուս պետական հարկերից տարբերվում էին նրանով, որ համարվում էին կամավոր նվիրատվություններ և ոչ թե օրենքով պարտադիր։ Հուլիանոսի 362 թվականի հրովարտակներից մեկում ուղղակի

[1] Cod. Theod. XII, 13 5. Ad conlationem auri coronarii placuit neminem absque consuetudinem esse cogendum [a. 384].

*ասված է, որ* aurum coronarium munus est voluntatis[1]*։ Այս տերմինը ծագել է այն բանից, որ սկզբնական շրջանում կայսրին հաղթության կամ որևէ հանդիսության առթիվ մատուցվում էին ոսկե պսակներ։ Այդպիսի նվերներ տալիս էին մանավանդ ազատ համայնքները կամ բարեկամ ժողովուրդները, որոնք կայսրության հետ կապված էին դաշնակցային կապերով։ Այդ ձևով նրանք արտահայտում էին իրենց բարեհաճությունն ու բարեկամությունը։ Հռոմեացիներն երբեմն իրենք էին աշխատում ձեռք բերել* τῶν στεφάνων χρυσῶν, *քանի որ հաղթել էին թշնամուն*[2]*։ «Այն, ինչ որ Հռոդոսի բնակիչները վճարում էին հռոմեացիներին, կոչվում էր* στεφανικὸν τέλεσμα, *որովհետև նրանք ինքնավար էին»,— ասված է մի արժանահավատ աղբյուրում։ Այն աննշան գումարը, որ նրանք ամեն տարի ուղարկում էին Հռոմին, համարում էին ոչ թե «տուրք հաղթողներին», այլ ավելի շուտ, «պսակ բարեկամներին»*[3]*։ Կայսրության հանդեպ այսպիսի կամավոր պարտավորություններ կատարում էին նաև Միջագետքի սարակինոսյան ինքնավար հորդաները։ Այսպես, դեպի արևելք ձեռնարկած արշավանքի ժամանակ Միջագետքում Հուլիանոս Ուրացողին ներկայացան սարակինոսյան ցեղերի առաջնորդները կամ արքայիկները և հայտնեցին իրենց հնազանդությունը՝ մատուցելով ոսկե պսակ*[4]*։* Coronae-*ի ավանդույթը կենդանի էր դեռևս Զ դարում։ Գոթերի Թեոդատ թագավորը Հուստինիանոսի հետ հաշտություն կնքեց ի միջի այլոց այն պայմանով, որ ամեն տարի նրան ուղարկելու է 300 ֆունտ կշռող ոսկե պսակ*[5]*։*

*Կասկած չկա, որ այդպիսի պսակների կարգին է պատկանում*

---

[1] Cod. Theod. XII, 13 1.

[2] Dio Cass. 77, 48, χωρὶς γὰρ τῶν στεφάνων τῶν χρυσῶν, οὓς ὡς καὶ πολεμίους τινὰς ἀεὶ νικῶν πολλάκις ᾔτει.

[3] Suida v. Σ τ ε φ α ν ι κ ὀ ν τ έ λ ε σ μ α παρὰ Ῥοδίοις οὕτως ἐκαλεῖτο, ἐπειδὴ αὐτόνομοι ἦσαν οἱ Ῥοδίοι. Βραχὺ δέ τι μέρος Ῥομαίοις ἐπι τιμῇ πέμποντες ἐτήσιον ὡς οὐ φόρου ἡγεμόσι μᾶλλον ἢ στέφανον φίλοις διδόντες.

[4] Amm. XXIII, 3, 6. Saracenarum reguli gentium genibus supplices nixi, oblata ex auro corona, tamquam mundi nationumque suarum dominum adorarant.

[5] Proc. *Goth.* I 6, p. 29, πέμψει δὲ αὐτῷ καὶ στέφανον χρυσοῦν ἀνὰ πᾶν ἔτος κατὰ τριακοσίας ἕλκοντα λίτρας.

*նաև սատրապների* corona-*ն, որի մասին խոսվում է Թեոդոսիոսի վերոհիշյալ հրովարտակի մեջ։ Դա մի կամավոր նվիրատվություն էր, որ ինքնավար սատրապներն անում էին իրենց վեհապետին։ Իր բնույթով կամավոր և ոչ հարկադիր* corona-*ն դառնում է ժամանակի ու սովորույթի կողմից սրբագործված պարտավորություն և կայսրությունից սատրապությունների կախվածության պատշաճ ձև։*

*Թվում է, թե պսակի նվիրատվությամբ էլ պիտի սահմանափակվեր ոչ հավասարազոր դաշնակիցների ֆինանսական հարաբերությունները, և քանի որ սատրապների ինքնավարությունը շարունակվեց մինչև Հուստինիանոսի թագավորությունը, ապա համենայն դեպս մինչև այդ նրանք պետք է որ ազատ լինեին դրամական այլ կարգի տուրքերից։ Կա, սակայն, դրան հակառակ մի հիշատակություն. 502 թվականի պարսկա-հռոմեական պատերազմների ժամանակ պարսից Կավատ թագավորը մոտենում է Մարտիրոսուպոլսին այն պաշարելու համար։ Քաղաքի բնակիչները, տեսնելով, որ ամեն դիմադրություն անհուսալի է, որոշում են անձնատուր լինել։ Նրանք Սոփանենեի սատրապ Թեոդորոսի հետ միասին դուրս են գալիս թագավորին ընդառաջ՝ «իրենց հետ տանելով երկու տարվա պետական հարկերը* φόρους δημοσίους»[1]։

*Ինչպե՞ս հասկանալ այդ։ Թեոդորոսը, որ Գադդանասի հաջորդներից էր և Սոփանենեի սատրապը, նստում էր նրա մայրաքաղաքում՝ Մարտիրոսուպոլսում։ Իր երկիրը ավերումից փրկելու համար կայսրի վասալը՝ Թեոդորոսը, անձնատուր է լինում պարսից թագավորին և նրա գութը շարժելու համար նախօրոք նրան է հանձնում երկու տարվա ինչ-որ եկամուտներ։ Արդյոք այդ* φόροι-*ն այն հասույթները չէի՞ն, որ պիտի ուղարկվեին կայսրության գանձարանը։ Հնարավոր է, որ դա ավանդական* corona-*ն էր՝ վերածված դրամի,* aurum coronarium*։ Եթե այս բացատրությունը չընդունվի և պարզվի, որ* φόροι δημόσιοι-*ն* corona-*ից տարբեր մի տուրք է, ապա պետք է ենթադրել, որ սատրապությունների ներքին կազմության մեջ Զենոնի կատարած փոփոխությունը շատ էական է եղել։ Մենք վերը մեջ բերինք պատմագրի բուն խոսքերը այն մասին, որ 485 թվականին Լեոնտիոսի և Իլլոսի*

---

[1] Proc. *Aed.* p. 249, φόρους τε τοὺς δημοσίους ἐνιαυτοῖς δυοῖν ἐν χερσὶν ἔχοντες.

ապստամբությանը մասնակցելու համար կայսրը, իբրև պատիժ, վերացրեց սատրապների ժառանգական իրավունքները։ Դրանից հետո սատրապական իշխանությունը այս կամ այն անձնավորությանը տրվում էր կայսրի հայեցողությամբ։ Հնարավոր է, որ այդ ժամանակվանից սկսած՝ կայսրի կողմից նշանակված սատրապներից գանձվում էր մի նոր տեսակի հարկ, որ կոչվում էր φόροι δημόσιοι։ Իրավաբանորեն այդ նշանակում էր սատրապությունները ֆեդերատներից իջեցնել civitas stipendiaria-ի աստիճանի, այսինքն՝ զրկել նրանց immunitas-ից։ Այս հարցը մնում է կասկածելի։

Անաստաս կայսրի 496 թվականի հրամանագրերից մեկում խոսվում է հայկական տուրքերի մասին τὰ ἀρμενιακὰ δημόσια։ Կա՞, արդյոք, որևէ ընդհանուր բան սրանց և φόροι δημόσιοι-ի միջև, հայտնի չէ։ Անվանումից ելնելով, կարելի է ասել, որ այդ պահանջը վերաբերում էր հայերին ընդհանրապես և հավանորեն նաև կայսերական Հայաստանի մյուս ոչ սատրապական մասերին։

Ներքին Հայքը իր վիճակի տեսակետից ընդհանրություններ ուներ ստիպենդիար երկրների հետ։ Նա սատրապությունից տարբերվում էր նրանով, որ այստեղ նստում էր պետական իշխանության ներկայացուցիչը։ Հայաստանի բաժանումից հետո «հռոմեական կայսրը,— ասում է Պրոկոպիոսը,— իր մասում կառավարիչ նշանակում էր իր հայեցողությամբ, ում և երբ որ ցանկանում էր։ Կառավարիչը դեռևս մեր ժամանակ կոչվում էր comes Armeniae»[1]։

Այդ են վկայում նաև հայկական աղբյուրները, որոնց համաձայն վերջին թագավորի՝ Արշակի մահվանից հետո հույները այլևս նրան հաջորդ չնշանակեցին և իրենց մասը հանձնեցին կոմեսներին[2]։

Թագավորական իշխանության վերացումով հայոց քաղաքական կյանքում տեղի ունեցավ որոշ հեղաշրջում։ Բայց այն երկրում գոյություն ունեցող իրավական հարաբերությունների կա-

---

[1] Proc. *Aed.* p. 246, ὁ Ῥωμαίων βασιλεὺς ἄρχοντα τοῖς Ἀρμενίοις ἀεὶ καθίστη ὅντινά ποτε καὶ ὁπηνίκα ἄν αὐτῷ βουλομένῳ εἴη· κόμητά τε τῆς Ἀρμενίας ἐκάλουν καὶ εἰς ἐμὲ τόν ἄρχοντα τοῦτον.

[2] Խորենացի, Գ, խզ, «ոչ ևս կացուցին յոյնք ի բաժնի իւրեանց թագաւոր... և աշխարհին իւրեանց մասինն կացուցին յոյնք կոմէսս իշխանս»

ռուցվածքի մեջ առանձին փոփոխություններ չառաջացրեց։ Ճիշտ ասած, հեղաշրջումը ավելի շատ շոշափում էր թագավորող տան, քան երկրի շահերը։ Վերացնելով Արշակունի թագավորների իշխանությունը՝ կայսրերը իրենց հետագա գործունեության մեջ կիրառեցին զգուշավոր և լուրջ քաղաքականություն, խուսափելով այնպիսի միջոցառումներից, որոնք կարող էին շոշափել երկրի շահերը կամ հայերի ազգային ինքնասիրությունը ու մղել նրանց պարսիկների կողմը։ Նրանք ձեռնպահ մնացին երկրի ներքին կարգերին միջամտելու որևէ փորձից. այդ երկրամասում թագից զատ հասարակական կարգն ու քաղաքական պատկերը մնացին անձեռնմխելի։ Կոմեսի իշխանությունը հաշտ ու համերաշխ էր տեղական ֆեոդալների, նախարարների իրավունքներին։

Դժբախտաբար կոմեսի պաշտոնի էությունը մեզ լրիվ կերպով հայտնի չէ։ Ստույգ գիտենք միայն, որ Հայաստանի կոմեսը իր տրամադրության տակ չուներ զինվորական ուժեր, οὐ παρόντων αὐτῇ στρατιωτικῶν καταλόγων[1]։ Այդ նշանակում է, որ նա քաղաքացիական իշխանության ներկայացուցիչն էր։ Տեղական առումով կոմեսը հավասար էր մարզպանին՝ Արևելյան կամ Պարսկական Հայաստանի բարձրագույն քաղաքացիական պաշտոնյային, որը երկրի կառավարումը իրականացնում էր նախարարների հետ միասին։ Եթե մեզ հայտնի լիներ, թե վարչական հիերարխիայում ինչ դիրք էր գրավում կոմեսը, մենք թերևս կկարողանայինք ավելի ճիշտ գծել նրա պարտականությունների սահմանները։ Հայկական կոմեսը Not. dign.-ի մեջ չկա անշուշտ այն պատճառով, որ այդ պաշտոնը ստեղծվեց 410—413 թթ. լույս տեսած հայտնի հուշարձանից մի քիչ ուշ։ Նրա մեջ հանդիպում են ուրիշ կոմեսներ, բայց նկատի առնելով կայսրության վարչական մարմիններում միօրինակություն և համաչափություն մտցնելու կայսրերի աչքի զարնող ընդհանուր ձգտումը՝ սխալ չէր լինի հայոց կոմեսին համեմատել Not. dign.-ի մեջ նշված կոմեսների որոշ տեսակի հետ։

Չշոշափելով Արևմուտքը և վերցնելով միայն Արևելքը՝ մենք գտնում ենք, որ կոմեսները նստում էին Եգիպտոսում, Իսավրիայում և Արևելյան թեմում։

Comes limitis Aegypti

[1] Proc. *Aed. loc. cit.*

Comes per Isauriam
Comes Orientis.

*Առաջին երկուսը չեն համընկնում Հայաստանի կոմեսին, որովհետև նրանք զինվորական իշխանության կրողներ են, մինչդեռ հայկական կոմեսը ուներ քաղաքացիական ֆունկցիաներ։ Իսավրիայի կոմեսը օժտված էր միաժամանակ և՛ զինվորական, և՛ քաղաքացիական լիազորություններով, ուստի կոչվում էր* comes rei militaris per Isauriam et praeses։ *Իբրև զինվորական պաշտոնյա Իսավրիայի և Եգիպտոսի կոմեսները համապատասխանում էին դուքսերին, որոնք գտնվելով սահմանագծի վրա, ինչպես* dux Arabiae, dux Mesopotamiae, *պարտավոր էին կայսրության սահմանները պաշտպանել Սասանյանների մշտական սպառնալիքներից։*

*Հյուսիսում այդպիսի պաշտոնյաներից էր նաև* dux Armeniae-*ն, որ մյուս դուքսերի նման պարտավոր էր սահմանային պաշտպանության նույն ծառայությունը կատարել։*

*Վերոհիշյալ կոմեսներից միանգամայն տարբերվում էր Արևելքի կոմեսը —* comes Orientis, *որը նախ և առաջ քաղաքացիական վարչության պաշտոնյա էր և իր դիրքով ու պարտականություններով համապատասխանում էր դիոցեզների փոխանորդներին։ Արևելյան թեմում նա փոխարինում էր* vicárius praefecti Orientis-*ին։ Դեռևս Կոստանդին Մեծի ժամանակ երբեմն նահանգներն էին ուղարկվում արտակարգ գործակալներ՝* comites provinciarum։ *Այդպիսիներից էր Արևելքի կոմեսը, որը հետագայում մնաց միակը և գործունեության շրջանակով հավասարվեց դիոցեզի սովորական փոխանորդին՝ պահելով, սակայն, իր հին կոչումը։ Փոխանորդը պրեֆեկտի հասարակ տեղակալը չէր. նշանակվելով անմիջապես կայսեր կողմից՝ նա դիոցեզի սահմաններում գրավում էր ինքնուրույն դիրք և պրեֆեկտի հետ բաժանում էր նրա իրավունքներն ու լիազորությունները։ Նրա պարտականությունն էր գլխավորապես հսկել նահանգների կառավարիչներին կամ պրեզիդներին, գանձել տուրքերը և վարել դատական գործերը։ Փոխանորդները իրավունք ունեին կայսեր անունից դատ վարել՝* vice sacra, *անմիջական կապ պահպանելով նրա հետ*[1]։ *Արևելքի*

[1] Bethman-Hollweg, *Civilprocess* § 132, p. 53—54.

կոմեսը, փոխանորդների նման, դասված էր spectabilis-ի կարգը։

Ըստ իր գրված դիրքի Հայաստանի կոմեսին պետք է դասել Արևելքի կոմեսի և սրա միջոցով թեմերի փոխանորդների կարգը[1]։ Բայց քանի որ Հայաստանը կայսրության նահանգների օրինակով չէր վերակազմված, ուստի նրանց լիակատար զուգադիպության մասին խոսք լինել չի կարող։ Բայց որովհետև պետք է ու հնարավոր Հայաստանի կոմեսին նմանեցնել պետական պաշտոնյաների որևէ տեսակի, ուստի նրա նմանեցումը Արևելքի կոմեսին չի կարելի անհամապատասխան համարել։ Հայաստանի կոմեսին չի կարելի իջեցնել նահանգային կառավարիչի՝ preses-ի աստիճանին, որովհետև նրան ենթակա երկիրը զգալիորեն գերազանցում էր նահանգային մարզերի սովորական չափերին։ Բարձրացնել նրան պրետորյական պրեֆեկտի աստիճանի՝ նույնպես անհիմն կլինի հակառակ նկատառումներով։ Մնում է ընդունել, որ կոմեսի և փոխանորդի իշխանությունները նույնն էին։

Հայաստանի կոմեսին առընթեր նահանգային կառավարիչների՝ պրեզիդների դերը կատարում էին տիրակալ իշխանները, որոնք տիրում և կառավարում էին իրենց գավառը կամ նահանգը նախարարական իրավունքով։ Իշխանների նկատմամբ comes-ը, իբրև բարձրագույն իշխանության ներկայացուցիչ, ինչպես տեսանք, մարզպանին հավասար անձնավորություն էր։

Փոխանորդի և կոմեսի աստիճանների նույնացմամբ էլ որոշվում են կոմեսի իշխանության սահմանները։ Փոխանորդի պարտականությունների շրջանակը սահմանափակող վերը հիշված երեք հոդվածներից ամենակարևորը, հատկապես Հայաստանի կոմեսի վերաբերյալ, պետք է համարել պետական տուրքերը գանձելու խնդրում նրա պատասխանատվությունը, եթե միայն դրանք գոյություն ունեին։ Խնդրի այդ կողմը շատ պրոբլեմային է. Անաստաս կայսեր վերը հիշատակված τὰ ἀρμενιακὰ δημόσια-ի մասին էդիկտի մեջ ասված է հետևյալը.

C. J. X 17 13. Αὐτοκράτωρ 'Αναστάσιος Α. 'Ανθεμίῳ ἐπάρχῳ τῶν πραιτωρίων.

| | |
|---|---|
| ...բոլոր տուրքերը և դրանց թվում, այսպես կոչված, հայկականները, պետք է գանձվեն | ..τριμερῶς δὲ πάντα τὰ δημόσια εἰσφερέσθω, τά τε ἄλλα καὶ τὰ λεγόμενα 'Α ρ μ ε ν ι- |

[1] Güterbock, *Römisch-Armenien*, p. 28.

երեք նվագով, այսինքն՝ հունվարի սկզբին, մայիսի սկզբին և ինդիկտի վերջերին[1], ընդ որում գանձումները բաժանվում են երեք հավասար մասի և հարկատուներին ժամկետների ոչ մի նոր հետաձգում չի արվում։ Նկատի ունենալով, որ հայկական վճարումները կատարվում էին երկու նվագով, ապա նրանց, ովքեր այդպես էին վճարում, եթե նրանք ցանկանում են, թույլ է տրվում գերադասել իրենց նախկին սովորությունը և այսուհետև էլ շարունակել վճարել կես-կես՝ երկու նվագով և երկրորդ կեսը մուծել հաջորդ ինդիկտի սեպտեմբերին։ Բայց եթե կան հայկական վճարումները երեք նվագով վճարել ցանկացողներ, այդպիսիներին տրվում է հետաձգման արտոնություն մինչև հաջորդ ինդիկտի սեպտեմբեր ամիսը։ Նախկին կարգը պահպանելու դեպքում վճարումները կատարվում են ինչպես ընդունված է՝ յուրաքանչյուր ինդիկտի սկզբին, ինչպես այդ երևում է հենց նրանց անվանումից։

α κ ά, τουτέστι καλάνδαις Ἰανουαρίαις καὶ καλάνδαις Μαίαις καὶ πρὸς τῷ τέλει τῆς ἐπινεμήσεως, ἐξ ἴσων τριῶν μερῶν διαιρουμένων τῶν δημοσίων, καὶ μηδεμιᾶς καινοτομίας ἐν τῷ μέσῳ γινομένης κατὰ τῶν συντελῶν. Ἐπειδη δὲ τὰ Ἀρμενιακὰ τελέσματα ἐν δύο καταβολαῖς συνετελεῖτο, ἔξεστι τοῖς ταῦτα συντελοῦσιν, εἰ βούλονται, τὴν προτέραν συνήθειαν προτιμᾶν καὶ ἐν δύο καταβολαῖς ἀνὰ ἥμισυ καταβάλλειν, καὶ τό ἕτερον ἥμισυ ἐν τῷ Σεπτεμβρίῳ τῆς μελλούσης ἐπινεμήσεως καταβάλλειν. Εἰ δὲ καὶ τριμερῶς βούλονται τὰ Ἀρμενιακὰ δημόσια καταβάλλειν, ἐχέτωσαν τὸν Σεπτέμβριον μῆνα τῆς μελλούσης ἐπινεμήσεως πρὸς ὑπέρθεσιν αὐτοῖς δεδομένον. Τὸ δὲ προαπεσταλμένον κατὰ σύνθεσιν εἰσφερέσθω ἐν τῷ προνομίῳ ἑκάστης ἐπινεμήσεως, ἐπειδὴ τοῦτο δηλοῖ καὶ ἡ προσηγορία αὐτοῦ.

Տուրքերը, որոնց մասին այստեղ խոսվում է, հազիվ թե հնարավոր է վերագրել Փոքր Հայքի նահանգներին։ Վերջինները վա-

[1] Cod. Th. XI—1 15, վճարումը կատարվում էր հունվարի մեկին, մայիսի մեկին և սեպտեմբերի մեկին։

ղուց ի վեր ձուլվել էին կայսրությանը, և դժվար է ենթադրել, թե այնտեղ ընդհանուր կարգից շեղումներ էին եղել՝ թեկուզ վճարումների ժամկետների վերաբերյալ։ Կայսրի կարգադրությունը ավելի շուտ վերաբերում է Ներքին Հայքին, որ ենթակա էր կոմեսին, և եթե այն մտել է պրետորիական պրեֆեկտին ուղղված էդիկտի մեջ, ապա դա միայն ապացուցում է, որ կոմեսը որոշ կախում ուներ այս վերջինից, և հաստատում է Հայաստանի կոմեսի հիերարխիայում գրաված դիրքի մասին եղած այն կարծիքը, թե նա յուրատեսակ փոխանորդ էր։

Հուստինիանոսի թագավորության սկզբում Ներքին Հայքում կայսերական իշխանության դեմ առաջ եկավ մի ուժեղ շարժում, և հայերի դժգոհությունը մեծանալով, վերածվեց բացահայտ ապստամբության։ Խռովությունների գլխավոր պատճառը, ժամանակակցի ասելով, ծանր հարկերն էին։

Հայաստանի կառավարիչ Ակակիոսը ապօրինի հարկեր էր հավաքում և երկրի վրա դրեց մինչև այդ չտեսնված՝ մոտ չորս կենտինարի հասնող հարկ[1]։ Ապստամբներին զսպելու նպատակով մայրաքաղաքից ուղարկված Ցիտտան խոստացավ միջնորդել կայսրի առաջ վերացնելու նոր հարկը[2]։ Հենց այդ ժամանակին է վերաբերում Հուստինիանոսի դեմ հայ իշխանների՝ պարսից թագավորին ուղղված բողոքը, որի մեջ նրանք հենվում էին Թեոդոսիոսի հետ Արշակի կնքած պայմանագրի վրա։ Ինչպե՞ս համատեղել ἀρμενιακὰ δημόσια-ի առկայությունը հայերի այն պնդման հետ, թե իրենք մինչև Հուստինիանոսը հարկերից ազատ են եղել։ Կամ Անաստաս կայսրի հրովարտակի մեջ հիշատակված հարկը վերաբերում է Փոքր Հայքին և ոչ թե Ներքին Հայքին և կամ էլ սխալ ենք հասկանում Արշակի պայմանագրի իմաստը։ Իսկապես ի՞նչ է նշանակում իրականում հետևյալ ձևակերպումը, ծագումով Արշակին մերձավոր բոլոր հաջորդ սերունդները, որոնց շահերը ապահովվում են դաշինքով։ Խոսքը այստեղ Արշակին ենթակա Հայաստանի հայ բնակչության մասի՞ն է in toto, թե՞ բառի նեղ իմաստով՝

[1] Proc. *Pers.* III 3, p. 159, τά τε χρήματα ἐληίζητο οὐδενὶ λόγῳ καὶ φόρου αὐτοῖς ἀπαγωγὴν αὔποτε οὖσαν ἐς κεντηνάρια τέσσαρα ἔταξεν.

[2] *ib.* p. 160, πέιθειν βασιλέα ὑποσχόμενος ἀφεῖναι αὐτοῖς τήν καινήν τοῦ φόρου ἀπαγωγήν.

*Արշակունիների հաջորդների և կամ, նույնիսկ, առհասարակ նախարարական տոհմերի, որոնց անվանի ներկայացուցիչները ձգտում էին ազգակցական կապեր հաստատել Արշակունիների տան հետ։ Հնարավոր է, որ ազնվականության վիճակը իսկապես վատացել էր, և մինչև այդ ազատ համարվող դասի իրավունքները սահմանափակվել էին։ Զայրացած իշխանները մեղադրում էին Հուստինիանոսին պայմանագիրը խախտելու մեջ, այն բանում, որ նա իրենց վրա հարկ է նշանակել, մի բան, որ առաջ չկար* φόρου ἀπαγωγὴν ἔταξεν οὐ πρότερον οὖσαν[1]։ *Այդ հարկը հավասար էր չորս կենտինարի կամ 400 ֆունտ ոսկու։ Հռոմեական ֆունտը մերից մի քիչ պակաս էր։ Չորս հարյուր ֆունտ ոսկին, ֆունտը հաշվելով մոտավորապես 500 ռուբլի, մեր դրամով կազմում է 200 հազար ռուբլի։ Եթե այդ հարկը դրված էր ազնվականության՝ նախարարների վրա, ապա պարզ է, որ դա հողային հարկ էր։ Անմտություն է, սակայն, ենթադրել այդպիսի մի անհավատալի բարձր հարկ Ներքին Հայքի համար, որը բաղկացած էր ինը փոքրիկ գավառներից և հավանորեն նույնքան էլ իշխանական տուն ուներ։*

*Այդ տեսակետից էլ չորս կենտինար ոսկին չի կարելի համարել օրինական հարկերից դուրս ամբողջ երկրից գանձվող հավելյալ տուրք՝* τὰ ἀρμενιακά։ *Ընդունելով նույնիսկ, որ Հայաստանից ստացվող պետական ամբողջ հասույթը կազմում է չորս կենտինար ոսկի, ապա այդ էլ երկրի համար պետք է համարել ծանր։ Եվ եթե ճիշտ է, որ չորս կենտինար հարկը Հուստինիանոսի օրոք դրվել է Ակակիոսի կողմից, ապա պետք է անպայման ընդունել, որ մինչ այդ հայերը իրոք որ ազատ էին հարկերից, և որ պայմանագրի մասին եղած պատմությունը առասպել չէ՝ «ծնված հայ իշխանների սնափառությունից», ինչպես թվում է որոշ հետազոտողների։*

*Հայաստանի կոմեսի մյուս պարտականությունների մասին ոչինչ հայտնի չէ։ Երկրում արդարադատության հարցի վերաբերյալ հետաքրքրական է Հուստինիանոսի 529 թվականի դեկրետներից մեկի սկիզբը, որի մեջ կայսրին բողոք ուղղելու իրավունքը շնորհվում է ի շարս մյուս նահանգների նաև Հայաստանի մասերին և ազգաց, այսինքն՝ հայկական նահանգ-*

[1] Proc. *Pers.* III, p. 164.

ների ու սատրապությունների[1]։ Արդյո՞ք այդ իրավունքը ապահովված էր նրանց համար anterioribus legibus-ով, թե Հուստինիանոսը ինքը այն տարածեց նաև հայերի վրա, պարզ չէ։ Նկատի ունենալով, որ հիշյալ որոշումը նախորդում էր Հուստինիանոսի Հայաստանում կատարած ռեֆորմներին, հավանաբար այդպես էր գործի վիճակը նաև նրանից առաջ։ Դրանում էր արտահայտվում արդարադատության գծով կայսեր սուվերեն իշխանությունը դաշնակից երկրների նկատմամբ։

Գոմեսի վարչական իշխանությունը պետք է արտահայտվեր նախարարական իշխանության նկատմամբ նրա ունեցած հարաբերությամբ։ Այդ մասին ուղղակի տվյալներ չունենք։ Երկրում կառավարող այլ մարմինների չունենալու պատճառով, ըստ երևույթին, տեղական նախարարներին էր վերապահված այն պարտականությունների իրագործումը, որ մյուս նահանգներում հանձնըված էին կառավարիչներին, պրեզիդներին կամ արխոնտներին։ Դժբախտաբար պակասում են տվյալներ նաև այն մասին, թե երկիրը ինչպես էր բաժանված իշխանության և իրավունքի տեղական ներկայացուցիչների միջև։ Հին հուշարձանները չեն պահպանել այն իշխանական ընտանիքների անունները, որոնք առհասարակ կալվածքներ ունեին Հայաստանի արևմտյան մասում։ Գիտենք, որ Սպերի գավառը պատկանում էր Բագրատունի իշխաններին[2]։ Հիմք կա կարծելու, որ համենայն դեպս Հայաստանի բաժանման ժամանակվանից Կարինը դարձավ Արշակունիների արքունի կալվածքը։ Մանվել Մամիկոնյանի օրոք և նրա առաջարկությամբ Արշակ և Վաղարշակ արքայորդիները հաստատվեցին Կարինում[3]։ Դրանից առաջ, երբ նույն Մամիկոնյանը ապըստամբեց Արշակունիների վերջին թագավորներից մեկի՝ Վարազ-

[1] C. J. VII 63 5. Cum anterioribus legibus ex omni provincia ad hunc nostrum sacratissimum comitatum similis cursus ad appellationes exercendas impertitus est, necessarium nobis visum est huius modi spatiis iustum imponere libramentum. Sancimus itaque, si quidem ad Aegyptiaco vel Libyco limitevel Orientali tractu usque ad utrasque Cilicias numerando vel Armeniis et gentibus et omni Illprico causo fuerit more appellationum transmissa, primum semestre sratium in antiqua definitione permanere et nihil penitus neque deminui neque adcrescere...

[2] Փավստոս, Ե, խզ, Սեբեոս, էջ 139։

[3] Նույն տեղում։

*դատի դեմ, թշնամական գործողությունները նրանց միջև տեղի ունեցան Կարինի դաշտում*[1], *մի հանգամանք, որից կարելի է եզրակացնել, թե Կարինը պատկանում էր Արշակունիներին։*

*Թագը կորցնելուց հետո Արշակունյաց տոհմը, անշուշտ, չվերացավ։ Նախկին թագավորների հետնորդները իշխանական մյուս տոհմերի նման շարունակեցին օգտվել տիրող իշխանների իրավունքներից։ Հինգերորդ դարի պատմության մեջ բազմիցս հիշատակվում է այսպես կոչված ո ս տ ա ն ի կ բառը, այսինքն՝ արքունի մարդիկ կամ (նախկին) արքայազներ*[2]*։ Նրանք մասնակցում էին տեղի ունեցող իրադարձություններին և գտնվում էին Վասակի բանակում։ Նախարարական հեծելազորը պատերազմի էր գնում առանձին ջոկատներով՝ յուրաքանչյուրն իր իշխանի գլխավորությամբ։ Մինչդեռ պատմիչները հաճախ հանվանե հիշատակելով Ե դարի ապստամբության մասնակից իշխանական տոհմերի առաջնորդներին, ոչ մի խոսք չեն ասում գնդերի պետերի մասին։ Որպես բացառություն անվանապես հիշատակվում է ոստանիկ տնից կամ գավառից ոմն Ջանդաղան*[3]*։ Վասակի փոխարեն նշանակված հայազգի Ատրորմիզդը, գտնելով նրա Արշական մականունից, նույնպես ծագում էր Արշակունիներից*[4]*, որը հայկական Արշակունիի պարսկական համարժեքն է։*

*Արշակունի թագավորների հետնորդների մասին հայ հեղինակների համառ և անհասկանալի լռությունը խզվում է արտաքին աղբյուրների տեղեկություններով, որոնք հավաստում են, որ Արշակունիները առաջվա նման կարևոր դեր են խաղացել երկրի ճակատագրի մեջ։ Այն հայ իշխանները, որոնք Հուստինիանոսի գահակալության սկզբում ղեկավարում էին հայկական շարժումը ընդդեմ բյուզանդական իշխանությունների, պարսից Խոսրով թագավորի առջև պնդում էին, որ «իրենցից շատերը ծագումով Արշակունի են»*[5]*։ Պատմագիրը հիշատակում է նաև ապստամբության*

[1] Փավստոս, Ե, լէ։

[2] Եղիշէ, *էջ 19, յարքունի տանէ ոստանիկ մարդիկ..., նաև էջ 173, հմմտ. 136, ինչպես նաև՝* Փարպեցի, *էջ 67, նաև էջ 73 և այլն, այլք յոստանկաց։*

[3] Փարպեցի, *էջ 61, Ջանդաղան յոստանեայ տանէն։*

[4] *Նույն տեղում, էջ 73, Ատրորմիզդ Արշական, յաշխարհէն Հայոց=*Եղիշէ, *էջ 242, հմմտ. մամական փոխանակ՝ մամիկոնեան։*

[5] Proc. *Pers.* II 3, p. 163. εἰσὶ μὲν ἡμῶν πολλοὶ Ἀρσακίδαι. *Հմմտ.* Փարպեցի, *էջ 18, աշխարհն Հայոց... դրանից է յանաց իշխանութեանն, ընդ որոյ ձեռամբ բազումք են հնազանդեալք յազգէն Արշակունեաց։*

*գլխավորողների՝ Հովհաննեսի և նրա որդի Արտավանի անունները, որոնք Արշակունիների տոհմից էին։ Արտավանը իր եղբոր հետ միասին տեղափոխվում է Բյուզանդիա, որտեղ նրան շուտով վիճակվում է դասվել կայսրության առաջնակարգ գործիչների շարքը։ Հուստինիանոսի ժամանակ էր ապրում նաև սարկավագ Թովմա Երանելին, որ հայտնի էր իր ճգնավորական կյանքով և ժամանակակցի խոսքերով ասած «սերում էր Արշակունի տոհմից և մանկությունից դաստիարակվել էր արքայավայել ու Արևելքում մի ժամանակ շատ հզոր պատրիկ Բարբարիի զավակն էր»*[1]*։*

*Հայազգի մի ուրիշ ճգնավոր, դարձյալ Թովմա անունով, որի հայրը* olim vir nobilissimus et regibus familiaris *էր՝ ամուսնացած Մարիամ անունով մեկի հետ, ծագումով «Արշակունիների նշանավոր տոհմից էր, արքայական շառավիղից»*[2]*։ Այս օրինակները ցրում են հնարավոր կասկածները և հաստատում, որ Արշակունիների տոհմը թագը կորցնելուց հետո շարունակել է իր գոյությունը* **Ե** *դարի սկզբին։ Ծագումով Արշակունի ազնվականների կալվածքների թվին էր պատկանում, անկասկած, նաև Կարինը։*

*Ներքին Հայքի մյուս մասերում կալվածքներ ունեցող իշխանական տոհմերի անունները չեն պահպանվել։ Մեզ հասած հուշարձանների մեջ դրանք կոչվում են գավառների անունով՝ «Սպերացիք, իշխանքն Բագրատունեաց, եւ Մանաղայքն, եւ Դարանաղայքն, եւ որք յԵկեղեաց գաւառէ... եւ Կարնացիք, եւ Տայեցիք», ինչպես նաև Մարդաղայքն, Խորձենիք, Դերջայինք, և նույնիսկ Կամախայք՝ նշանավոր քաղաքի անունով*[3]*։*

*Դարանաղիքը և Եկեղյաց գավառը սովորաբար համարվում են եկեղեցական կալվածքներ։ Դ դարի դեպքերի պատմիչը հաղորդում է, որ Ներսես կաթողիկոսի ժամանակ եկեղեցին տիրում էր ընդարձակ կալվածքների՝ ունենալով 15 գավառ, որոնց թվում,*

---

[1] Ioan. Ephes. *De beaitis*' XIII p. 69, vir fuerat magnificus et fastidiosus, a puero regie educatus, natus genere Arsacidarum, Bar-bar'i, olim patricii omnium in Oriente potentissimi, maximi, et illustrissimi. Bar-*bar'i*=bar *վահրէ?*

[2] *ib* XXI p. 101, feminam nobilem amplissima et clarissima gente Arsacuniorum natam, quae ut ajunt stirps regia nobilissima fuerat, uxorem duxerat։

[3] Սեբեոս, *էջ 139,* Սոփերք. *Զ, Կարնացիք, Խորձենիք, տարընթերցվածք՝ Խորձեանք, Դերջայինք, տարընթերցվածք՝ Դերջանիք և Կամխայք։*

*բացի վերոհիշյալ երկուսից, հիշվում են Այրարատը, Տարոնը, Բզնունիքը և Ծոփքը*[1]*։*

*Մենք կարծում ենք, որ պատմիչի այս խոսքերը չպետք է այնպես հասկանալ, թե այդ բոլոր գավառները ամբողջությամբ պատկանում էին եկեղեցուն, դա չէր համապատասխանի մեր ունեցած ուրիշ տեղեկություններին, այլ պետք է հասկանալ այնպես, որ այդ գավառներում իշխանական կալվածքների կողքին կային նաև եկեղեցական կամ ավելի ճիշտ՝ հոգևոր կալվածքներ։*

*Հայտնի է, որ Եկեղյաց գավառը Գրիգոր Լուսավորչի կաթողիկոսական տան կամ Պահլավունիների տոհմական կալվածքն էր*[2]*։ Սահակ կաթողիկոսի մահից հետո (+439) արու զավակ չունենալու պատճառով կալվածքներն անցան նրա դստերը՝ Մամիկոնյան իշխանուհուն*[3]*։ Այլ գավառների հետ միասին Մամիկոնյանները ժառանգեցին, ըստ երևույթին, նաև Եկեղյաց գավառը։ Այդ ենթադրության օգտին են խոսում հատուկենտ հիշատակություններ, որոնցից կարելի է եզրակացնել, որ Տարոնի և Տայքի Մամիկոնյաններից բացի Հռոմեական Հայաստանում գոյություն ուներ Մամիկոնյանների մի այլ ճյուղ։ Ըստ Եղիշեի վկայության Ե դարում Վասակ մարզպանին դաշնակից էր «Վասակ անունով մի մարդ՝ այն Մամիկոնյաններից, որոնք ծառայության մեջ էին» հույների մոտ*[4]*, այսինքն՝ Հայաստանի կայսրությանը պատկանող մասում։ Բացի դրանից, Ներքին Հայքում 536 թ. տեղի ունեցած ապստամբության գործունյա մասնակիցներից մեկը կոչվում է Վասակ, որ Հովհաննես Արշակունու փեսան էր. նա էր, որ գլխավորում էր պարսից Խոսրով թագավորին ներկայացած հայ իշխանների դեսպանությունը*[5]*։ Այդ ձեռներեց ռազմիկը նույնպես Մամիկոնյանների շառավիղներից էր, և կրում էր նրանց անունը և բուն ոգին, որ այնպես հատուկ էր այդ նշանավոր իշխանական ընտանիքին։ Խոսրովի առջև արտասանած ճառի բովանդակությունից երևում է, որ Վասակը Հուստինիանոսին ենթակա Հայաստանի իշխաններից էր։ Հետագայում նա հաշտվեց Հուստինիանոսի հետ*

[1] Փավստոս, *Դ, ժդ։*

[2] *Նույն տեղում. Գ, բ և շար.*

[3] Փարպեցի, *էջ 37։*

[4] Եղիշե, *էջ 174—5։*

[5] Proc. *Pers.* II 3, p. 163, Βασσάκου σφίσιν ἡγουμένου, δραστηρίου ἀνδρός.

և մյուս ապստամբների հետ միասին տեղափոխվեց Բյուզանդիա։ Եթե այդ նկատառումների հիման վրա պետք է ընդունել Մամիկոնյանների երրորդ ճյուղի գոյությունը կայսերական Հայաստանում, ապա ամենից ավելի հավանական է փնտրել այն Նկեղյաց գավառում[1]։

Կայսրության մեջ գտնվող հայկական հողերի վերը գծված պատկերը գոյատևեց մինչև Հուստինիանոսը, որի օրոք այն ենթարկվեց արմատական փոփոխության։

[1] Ըստ Եղիշեի Վասակ Մամիկոնյանը՝ մարզպանի կուսակիցը, այն ժամանակ, այսինքն՝ 451 թվականին, Ներքին Հայքի սպարապետն էր, և նրան էին հանձնված հռոմեական զորքերը պարսից սահմանագլխին. «այրն այն սպարապետ էր ստորին Հայոց եւ հաւատարիմ զօրացն Հոռոմոց ի սահմանին պարսից», էջ 175։ Ստորին Հայք անվան, ըստ երևույթին, հակադրվել են սատրապությունները, ասացվում է, որ Վասակը սատրապություններից մեկն էր։ Եղիշեի այս անճշտությունը սակայն չի խանգարում հօգուտ Եղիշեի, իբրև Ե դարի պատմիչի։ Հայտնի է, որ ոչ սատրապություններում և ոչ էլ Ներքին Հայքում կայսրերը զորք չէին պահում և սահմանները, ինչպես նաև երկրի պաշտպանության գործը դրված էր տեղական ուժերի վրա մինչև 529 թ., երբ Հուստինիանոսն առաջին անգամ նշանակեց Հայաստանի ստրատեգ և նրան ենթակա երեք դուքս։ Քանի որ պատմիչը խոսում է Հայաստանում հռոմեական զորքերի սպարապետի մասին, ում էլ հավանելու լինենք նրա տակ՝ ստրատեգին թե դուքսերից մեկին, այնուամենայնիվ, նրա գիրքը չի կարող գրված լինել 529 թվականից առաջ։ Այդ Վասակի մասին չգիտե Փարպեցին։ Եղիշեի մոտ եղած անճշտությունը նրա մասին պետք է համարել հետագայի հավելումներից մեկը, որ չկա Փարպեցու բնագրում։ Արդյոք Եղիշեի հիշատակած Վասակի անձնավորության մեջ թաքնված չէ՞ այն պատմական անձնավորության և ապստամբ հայերի պետի հիշատակը, որի մասին պատմում է Պրոկոպիոսը։ Ըստ Պրոկոպիոսի Վասակը մայրաքաղաք է եկել մինչև 544 թ. պարսկական արշավանքը։ Այդ ժամանակ երեք դուքսերից մեկի պաշտոնը վարում էին Կամսարական իշխանները Կիթառիճում։ Կարող է պատահել, որ այն ժամանակ այդպիսի դուքս էր նշանակվել նաև Վասակը, որ քաջ ծանոթ էր տեղական պայմաններին, և ուղարկվել էր Մարտիրոսուպոլիս, որտեղ նստում էր դուքսը, մի հանգամանք, որ հետաքրքրական է Եղիշեի քննության համար։

## ԳԼՈՒԽ VI

# ՀՈՒՍՏԻՆԻԱՆՈՍԻ ՎԵՐԱՓՈԽՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

Հուստինիանոսի և նրա քաղաքականության բնութագիրը: Նրա աշխարհակալական քաղաքականությունը: Նրա ռեֆորմատորական գործունեությունը: Հայաստանի զինվորական վերակազմությունը: Զինվորական իշխանության կենտրոնացումը հանձին Հայաստանի ստրատեգոսի: Հուստինիանոսի դեկրետը ստրատեգոս նշանակելու մասին: Մալալայի հաղորդած տեղեկությունները այդ մասին: Դեկրետի վերլուծությունը: Նրա հրատարակության թվականը: Ստրատեգոսի իշխանության էությունը: Նրա բանակը և զինվորները: Նրան ենթակա դուքսերը: Երկրի ռազմական օկուպացումը: Պաշտպանության համակարգը: Հուստինիանոսի ամրոցաշինությունը՝ Մարտիրոսուպոլիս, Կիթառիզ, Արտալեսոն, Կարին-Թեոդոսուպոլիս, Վիժան-Լեոնտոպոլիս, Ծամին-Հուստինիանոպոլիս, Սատաղ, Կողոնիա, Բայբերդ, Ճանոն, Լիսիորմ-Էկեղ-ռաբիզ, Սեբաստիա, Նիկոպոլիս, Մելիտենե: Հուստինիանոսի կառուցած տաճարները: Ամրաշինական աշխատանքի նպատակները՝ Թեոդոսուպոլսի կառուցումն ըստ Պրոկոպիոսի և ըստ հայկական ավանդությունների: Ամրությունների տեսակները:

*Հուստինիանոսի գահակալությունը կայսրության քաղաքական պատմության մեջ նշանավորում է շատ կողմերից ուշագրավ մի դարաշրջան: Հուստինիանոսը այն անձնավորություններից է, որոնք գահ են բարձրանում որոշակի գաղափարական տրամադրություններով և իրենց գործունեության առաջիկա խնդիրների մասին հստակ պատկերացումով: Առաջին իսկ օրերից նա ձեռնամուխ եղավ մի շարք ռեֆորմների, որոնք շոշափում էին պետական կյանքի զանազան կողմերը: Նրա վերափոխիչ գործունեությունն ընդգրկում էր հավասարապես թե՛ օրենսդրական և թե՛ դատական ու վարչական իրավունքի բնագավառները: Դաստիարակված լինելով հռոմեական ավանդույթներով և մի [illegible] ակնածանք տածելով հռոմեական անցյալի նկատմամբ՝ նա երազում էր վերականգնել կայսրության երբեմնի վեհությունը և նրան վերադարձ-*

նել կեսարների ու օգոստոսների նախկին ժամանակները։ Հռոմեական պետականության վիթխարի շենքի հաստատուն հիմքը, Հուստինիանոսի համոզմամբ, զենքն ու օրենքն էին, որոնցով ապահովվում էր նրա ամբողջականությունն ու հզորությունը։ Դրանք էին հռոմեացիների բարօրության արմատները։ Ավելին՝ նա ենթադրում էր, որ դրանից է ստեղծվում այն ամուր պատվանդանը, որի վրա պիտի հիմնվի յուրաքանչյուր պետականություն։ «'Summa rei publicae tuitio,— հայտարարում է կայսրը,— de stirpe duarum rerum, armorum atque legum, veniens vimque suam exinde muniens felix Romanorum genus»[1]։

Ելնելով այդպիսի ըմբռնումից՝ Հուստինիանոսն իր առաջնահերթ խնդիրը դարձրեց կայսրության ռազմական հզորության և իրավական կարգի բարելավումը։

Armis atque legi-ին ծառայելը, իբրև պետականության պատվանդանի, արտաքին քաղաքականության մեջ անդիմադրելիորեն մղում է դեպի աշխարհակալության, իսկ ներքին քաղաքականության մեջ՝ դեպի միահեծանության։ Եվ Հուստինիանոսը, իդեալականացնելով հռոմեական անցյալը, տարվեց զինվորական նախկին փառքը վերականգնելու անիրագործելի երազներով, ամբողջովին համակվեց հռոմեական վաղուց արդեն մարած ոգու վերակենդանացման երազային գաղափարներով և բնականաբար մի կողմից կանգնեց լայն նվաճումների ուղու վրա, իսկ մյուս կողմից ձգտեց հռոմեական ավանդույթների հիման վրա կենտրոնացնել և ամրապնդել իշխանությունը։ Նրա երկարատև թագավորությունն ընթացավ անընդհատ պատերազմների մեջ՝ մերթ Արևելքում, մերթ Արևմուտքում։ Իր լեգեոնները նետելով կայսրության մի ծայրից մյուսը՝ Հուստինիանոսը պատերազմեց պարսիկների դեմ և հպատակեցրեց իր սահմաններից դուրս գտնվող մի շարք կիսանկախ ազգությունների՝ Միջագետքի սարակինոսներին, հայերին, ճաներին, լազերին, խորտակեց արևմտյան կայսրության սահմանները խուժող նոր ժողովուրդների ուժերը՝ նվաճելով գոթերի, վանդալների, մավրուսների թագավորությունները Իտալիայում, Աֆրիկայում և մինչև իսկ Իսպանիայում։

Հուստինիանոսի և նրա աշխարհակալական քաղաքականության փայլուն բնութագիրը տվել է Պրոկոպիոսն իր երկու ճառում՝

[1] De J. C. *confirmando*, սկզբի բառերը։

պարսից խոսրով թագավորի մոտ ուղարկված գոթական և հայկական դեսպանների բերանով։ «Հուստինիանոսը այնպիսի մարդ է,— ասում են գոթերի դեսպանները,— որ իր էությամբ հակված է հեղաշրջումների և անհագորեն տենչում է տիրանալու այն ամենին, որի վրա բացարձակապես որևէ իրավունք չունի. նա ի վիճակի չէ մնալ պայմանագրով հաստատված սահմաններում, վառվում է ամբողջ տիեզերքը գրավելու կրքով՝ ձգտելով նվաճել բոլոր թագավորությունները»[1]։

Նույնչափ դառն էին հնչում և հայերի խոսքերը։ Հիշատակելով տարբեր ժողովուրդներին Հուստինիանոսի հասցրած բոլոր աղետները՝ հայերը զայրույթով բացականչում են. «Չէ՞ որ ամբողջ աշխարհն անգամ չի տեղավորում այդ մարդուն. կարծես թե քիչ է նրան ամբողջ մարդկության վրա թագավորելը. աչքը դրել է նաև եթերի վրա և նայում է, թե օվկիանոսից այն կողմ չկա՞ն արդյոք թաքնված վայրեր, որպեսզի, ագահաբար, այնտեղ էլ իր համար նոր աշխարհ ձեռք գցի»[2]։

Թե որքան ստույգ է այդ նկարագիրը, որ դուրս է եկել Հուստինիանոսին այնքան լավ ուսումնասիրած ժամանակակցի գրչի տակից, երևում է իր իսկ՝ կայսեր հետևյալ խոսքերից. «Այնքան ծախքերից և պատերազմներից հետո աստված մեզ հնարավորություն տվեց հաշտություն կնքելու պարսիկների հետ, հպատակեցնելու վանդալներին, ալաններին և մավրուսներին, նվաճելու ամբողջ Աֆրիկան և Սիցիլիան. և մենք հույս ունենք, որ Աստծո օգնությամբ կհաջողվի մեր իշխանությունը տարածել նաև երկու օվկիանոսների միջև գտնվող մյուս երկրների վրա, որոնց տիրում էին հին հռոմեացիները, և որոնք հետագայում աստիճանաբար անջատվեցին նրանց անփութության հետևանքով»[3]։

Մտահղացումներով վիթխարի այս ռազմական ձեռնարկումների վրա վատնվեցին կայսրության նյութական և հոգևոր հսկայական ուժերը։ Պետության սահմանների ընդարձակվելուն զուգըն-

---

[1] Proc. *Pers.* II, 2, p. 157.

[2] *id.* p. 164—165, ἡ γῆ τὸν ἄνθρωπον οὐ χωρεῖ ξύμπασα. μικρόν ἐστιν αὐτῷ πάντων ὁμοῦ τῶν ἀνθρώπων κρατεῖν. ὁ δὲ καὶ τὸν αἰθέρα περισκοπεῖ καὶ τοὺς ὑπὲρ τὸν ὠκεανὸν διερευνᾶται μυχοὺς ἄλλην αὐτῷ τινα οἰκουμένην περιποιεῖσθαι βουλόμενος.

[3] Nov. 30=Const, 44-ի վերջը։

*թաց աճում ու իրագործվում էր կենտրոնացման ձգտումը։ Իշխանությունը կենտրոնացնելու սկզբունքը մտնում էր Հուստինիանոսի տեսական հայացքների մեջ, որոնք նա առանց երկմտության բազմիցս արտահայտել էր դեռևս իր առաջին դեկրետներում։ Հուստինիանոսն ի ծնե իր էությամբ բռնապետ էր. նրա բնավորության այդ գիծը սքանչելիորեն արտահայտվում է հին օրենսդրությունը վերանայելու և հռչակավոր օրենսգիրքը մշակելու ու խմբագրելու առթիվ նրա կազմած դեկրետներում։ Վերջիններում հռչակվում է կայսեր անձի սրբազանության սկզբունքը և նրա իշխանության աստվածային ծագումը. կայսրը հանդիսանում է օրենքի և արդարադատության մարմնացումը։ Իշխանությունը ի վերուստ տրված պարգև է.* 'imperium nobis a caelesti maiestate traditum est'[1]։ *Եթե այդպես է, ապա, իհարկե, «ի՞նչը կարող է լինել ավելի վեհ,— շարունակում է կայսրը,— և ավելի սրբազան, քան կայսերական մեծությունը»,* quid enim maius, quid sanctius imperiali est maiestate?

*Նա օրենքի միակ աղբյուրն ու կրողն է. ոչ միայն օրենք հրատարակելու իրավունքը, այլ և՛ օրենքը, և՛ նրա մեկնության իրավունքը հանդիսանում են գերագույն անձի անկապտելի սեփականությունը* tam conditor quam interpres legum solus imperator[2]։ *Այն բոլոր դեպքերում, երբ օրենքի իմաստը հասկանալու հարցում տարակուսանքներ և անորոշություններ են ծագում, անհրաժեշտաբար պետք է դիմել տիրակալին, և նա* numine caelesti erecta emendabat et in competentem formam redigebat[3]. *«Եվ իրոք, կարելի է արդյոք պատկերացնել այնպիսի մի անպատկառ մարդ, որ հանդգնի չընդունել թագավորի դատողությունները այն դեպքում, երբ հին իրավունքի հիմնադիրներն էլ պարզ և չափազանց հստակ որոշել են, որ կայսերական հրամանով արած բոլոր կարգադրությունները օրենքի ուժ ունեն։ Եվ էլ ո՞վ պետք է լուծի օրենքի առեղծվածները և ո՞վ կարող է պարզաբանել դրանք բոլորին, եթե ոչ նա, որին միայն տրված է օրենքի կրողը լինելու իրավունքը»*[4]։

*Հուստինիանոսի վերը բերված բառացի խոսքերով ցայտուն*

---

[1] C. J. 1, 7, 17-ի *սկիզբը*։

[2] C. J. 1, 12։

[3] C. J. 1, 17, 2։

[4] C. J. 1, 12։

կերպով գծագրվում է ինքնակալ և ինքնիշխան վեհապետի կերպարը։ Բնական հակումները վեր են ածվել սկզբունքների, և ներգործուն ձգտումները շղարշված են տեսական հիմնավորումներով։ Այս ամենը պետք է նպաստեին կայսրության ներսում ծավալուն, բայց խիստ կենտրոնացված պետական իշխանություն ստեղծելու նրա իղձերի կենսագործմանը։

Այդ նպատակով Հուստինիանոսը վարչական բնագավառում ձեռնարկեց մի շարք ռեֆորմներ, որոնք, ինչպես արտահայտվում է ինքը՝ ռեֆորմատորը, պետք է հանգեին այն բանին, որ ut nostro moderamine recte gubernetur et firme custodiatur[1]։ Ահա այն նշանաբանը, որ ընկած էր Հուստինիանոսի նահանգային ռեֆորմների, այդ թվում նաև հայկական հողերի վերակազմության հիմքում։

Այն փոփոխությունները, որ Հուստինիանոսը կատարեց Հայաստանում, անկասկած բխում էին նախ և առաջ աշխարհակալական ընդհանուր քաղաքականության ոգուց և ծառայում էին կայսրության միավորման և հզորացման շահերին։ Կայսրության այլատարր մասերը համախմբելու գաղափարը, թեկուզև նրա միակողմանի ըմբռնումով, որ հատուկ է առհասարակ բոլոր ինքնակալներին, պահանջում էր այն առանձնահատկությունների ոչնչացումը, որոնցով հայկական գավառները տարբերվում էին կայսրությունից, ուստի նա առաջ էր քաշում դրանց ինքնուրույնությունը վերացնելու անհրաժեշտությունը։ Հարկավոր էր այդ կիսանկախ երկիրը դարձնել կայսրության սովորական պրովինցիա ընդհանուր հիմունքներով։

Հուստինիանոսի ռեֆորմատորական գործունեության հիմքում ընկած ընդհանուր պատճառներից բացի յուրաքանչյուր առանձին դեպքում գործում էին նաև տեղի և ժամանակի քաղաքական պայմանների հետ կապված մասնակի շարժառիթներ։

Հայաստանի զինվորական վերակազմության համար անմիջական առիթ ծառայեց պարսիկների հետ պատերազմը։ Հուստինիանոսն իր ձեռքը վերցրեց կառավարման ղեկը իր նախորդի ժամանակ սկսված պատերազմի ամենաբուռն շրջանում։ Կայսերական զորքերը հենց նոր անհաջողություն էին կրել պարսիկներին ենթակա հայ իշխանների հետ ունեցած ճակատամարտում։ Հռոմեական զենքի անհաջողությունները վերագրվում էին կայսրության

[1] C. J. I, 27, 2-ի սկիզբը։

տառաջին գծի վրայի գավառների սահմանների անբավարար պաշտպանությանը։ Այդ գործը դրված էր Հայաստանի դուքսի և տեղական իշխանությունների ուժերի վրա, որոնք, ինչպես ցույց տվեց պատերազմը, երևան բերին իրենց կատարյալ անկարողությունը՝ կասեցնելու կայսրության տիրույթների վրա պարսիկների սրընթաց գրոհը։ Բացի այդ, Ներքին Հայքի և սատրապությունների նախարարական զորախմբերը այլատարր կազմ ունենալու հետևանքով չէին կարող ապահովել խիստ կարգապահություն։ Նրանց համար դժվար կլիներ համատեղ գործել դուքսի կանոնավոր զորքերի հետ։

Պատմագրի ասելով՝ Հայաստանի կոմեսը անկարող եղավ ետ մղել թշնամիների ներխուժումը, քանի որ ռազմական ուժ չուներ։ Հուստինիանոսն էլ կռահելով, որ այդօրինակ անկազմակերպվածության պատճառով պարսիկները հեշտությամբ կարող են նվաճել Հայաստանը, վերացրեց կոմեսի պաշտոնը և Հայաստանում նշանակեց ստրատեգ՝ στρατηγὸν δὲ τοῖς 'Αρμενίοις ἐπέστησε, տալով նրան անհրաժեշտ քանակությամբ զորք, որը բավական էր թշնամու հարձակումները ետ մղելու համար։ Այսպես կոչված Մեծ Հայքում[1] կայսրը այդպես լուծեց հարցը։ Ինչ վերաբերում է ինքնավար սատրապություններին, ապա նույն պատմագրից իմանում ենք, որ նրանք ևս հռոմեացիներից օգնություն չէին ստանում. նրանք ունեին հայերից կազմված իրենց սեփական զորքը։ Բայց սատրապները ևս անզոր գտնվեցին դիմադրելու թշնամու հարձակումներին։ «Ծանոթանալով իրերի դրությանը,— ասում է Պրոկոպիոսը,— Հուստինիանոսն այնտեղ անմիջապես վերացրեց սատրապներին և այդ նույն ազգերի վրա նշանակեց երկու, այսպես կոչված, դուքս։ Դուքսերին հռոմեական զորախմբերից կազմված համալրում տրվեց՝ այնքան զորք, որ բավական էր հռոմեական սահմանները պաշտպանելու»[2]։ Բարեբախտաբար պահպանվել է այն հրամանագրի բնագիրը, որի հիման վրա տեղի ունեցան հիշյալ փոփոխությունները։

C. J. I 29 5. Imp. Justinianus A. Zetae viro illustri ma-

---

[1] Proc. *Aed. III 1*, p. *246*։

[2] *ib.* p. 248, ἃ δὴ καταμαθὼν 'Ιουστινιανὸς βασιλεὺς τὸ μὲν τῶν σατραπῶν ὄνομα ἐξήλασεν ἐνθένδε εὐθυς, δοὺκας δὲ τοὺς καλουμένους δύο τοῖς ἔθνεσιν ἐπέστησε τούτοις; οἷς δὴ ξυνεστήσατο μὲν 'Ρωμαίων στρατιωτῶν καταλόγους παμπληθεῖς, ἐφ' ᾧ τὰ 'Ρωμαίων ξυμφυλάξουσι αὐτοῖς ὅρια.

gistro militum per Armeniam et Pontum Polemoniacum et gentes.

*Կամոքն աստուծո ստանալով Հռոմեական իշխանությունը, մենք անձկալից հոգատարությամբ և աշալուրջ փութաջանությամբ քննելով գտանք, որ պետք է նաև Հայաստանի, Պոլեմոնական Պոնտոսի և [այլ] ազգությունների համար այս հրովարտակով սահմանել հատուկ զինվորական պետի (պաշտոն)։ Ուստի ձերդ բարձրության, որ իրեն այնքան հիանալի է դրսևորել նախկին գործունեությամբ, լիակատար վստահությամբ ընտրում ենք այդպիսի մի պատասխանատու պաշտոնի։ Այդ նահանգները, այսինքն՝ Մեծ Հայքը, որ կոչվում է Ներքին և ազգությունները՝ նկատի ունենք Անզիտենեն, Ինգիլենեն, Աշտիանենեն, Սոփենեն, Սոփանենեն՝ Մարտիրոպոլիս քաղաքով և Բալավիտենեն, ինչպես նաև Առաջին և Երկրորդ Հայքերը ու Պոլեմոնյան Պոնտոսը նրանց դուքսերի հետ միասին հանձնում ենք քո տնօրինությանը, ընդ որում բոլորովին վերացվում է կոմեսի պաշտոնը։ Քո իշխանության տակ ենք դնում մի քանի լեգեոններ՝ ոչ միայն նրանք, որ նոր կազմա-*

Cum propitia divinitate Romanum nobis sit deletum imperium, sollicita cura cauta diligentia pertractantes perspeximus oportere etiam partibus Armeniae et Ponto Polemoniaco et gentibus proprium magistrum militum per hanc legem constituere, tuamque magnitudinem, quae nobis ex ante gestis ortime commendata est, idoneam ad talem fore dignitatem confidentes elegimus certasque provincias, id est Magnam Armeniam, quae interior dicebatur et gentes (Anzetenam videlicet, Ingilenam, Asthianenam, Sophenam, Sophanenam, in qua est Martyropolis, Balabitenam) et primam et secundam Armeniam et Pontum Polemoniacum tuae curae cum suis ducibus commisimus, comite Armeniae penitus sublato, certosque subdidimus numeros, non modo quos in praesenti novos constituimus; sed etiam de praesentalibus et Orientalibus et aliis agminibus segregatos, non tamen quantitatem eorum

կերպում ենք այժմ, այլև նրանք, որ մենք առանձնացնում ենք մայրաքաղաքի արևելյան և այլ զորքերի կազմից։ Ընդ որում այս վերջինների կազմի մեջ լեգեոնների թիվը բնավ չի պակասի, որովհետև դրանից առաջ մենք նրանց միացրել էինք շատ լեգեոններ՝ չծանրաբեռնելով սակայն պետությունը և հավելյալ ծախսերի դուռ չբանալով։ Իսկ այժմ մենք վերցնում ենք այնտեղից մի քանի լեգեոններ, բայց այնպես, որ դրանից հետո էլ այնտեղ մնան ավելի, քան կային մեր երջանիկ թագավորությունից առաջ։

agminum minuentes: sed quia plures eis addidimus sine rei publicae gravamine et sine augmento sumptuum, aliquantos subtraximus, ita tamen, ut et post hanc subtractionem ampliores remanserint, quam usque ad nostra felicia fuerant tempora.

*Ժամանակագիր Մալալան ծանոթ է եղել և օգտվել է այդ օրենսդրությունից։ Նա հաղորդում է մի քանի մանրամասնություններ, որոնք բացատրում և լրացնում են պաշտոնական հաղորդագրությունը։ Բերում ենք նրա խոսքերն ամբողջությամբ.*

Հուստինիանոսի թագավորության վերոհիշյալ տարին ստրատելատի պաշտոնով Հայաստան ուղարկվեց Ցիտտան։ Մինչ այդ Հայաստանում ստրատելատ չկար, կային միայն դուքսեր, կառավարիչներ և կոմեսներ։ Այս ստրատելատին կայսրը լեգեոններ տվեց մայրաքաղաքի և Արևելքի զորքերից։ Ստանձնելով իր պաշտոնը՝ Ցիտտան կայսրի թույլտվությամբ տեղացիներից իր համար համա-

Ἐν δὲ τῷ προγεγραμένῳ ἔτει τῆς βασιλείας Ἰουστινιανοῦ κατεπὲμφθη στρατηλάτης Ἀρμενίας ὀνόματι Ζτίτας (sc. Τζίττας). ἐν γὰρ τοῖς προλαβοῦσι χρόνοις οὐκ εἶχεν ἡ αὐτὴ Ἀρμενία στρατηλάτην, ἀλλὰ δοῦκας καὶ ἄρχοντας καὶ κόμητας. δέδωκε δέ ὁ αὐτὸς βασιλεὺς τῷ αὐτῷ στρατηλάτῃ ἀριθμοὺς στρατιωτῶν ἐκ τῶν δύο πραισέντων καὶ ἀνατολῆς. καί' στρατεύσας ἐντοπίους σκρινιαρίους ἐποίησεν ἑαυτῷ σκρινιαρίους

*քեց ստրատելատական սկրինարիումներ և տեղացի բնակիչների համար կայսրից խնդրեց զինվորական ծառայության իրավունք, նկատի ունենալով Հայաստանի տեղանքին նրանց ծանոթ լինելը։ Կայսրը թույլատրեց այդ և նրանց տվեց նաև հայկական այն դուքսերի, կոմեսների և նրանց հիպատների իրավունքները, որոնք առաջ համարվում էին ճամբարային զորքեր։ Վերացվեցին մինչև այդ գոյություն ունեցող բոլոր իշխանությունները։ Իսկ Ցիտտան արևելյան ստրատելատից ստացավ չորս լեգեոն։ Այդ ժամանակներից սկսած՝ ուժեղացավ հռոմեական սահմանների պաշտպանությունը։ Ցիտտան քաջ զինվորական էր. նա հետո ամուսնացավ Թեոդորա կայսրուհու քրոջ՝ Կոմիտոյի հետ։*

στρατηλατιανοὺς ἀπὸ θείας σάκρας, αἰτησάμενος τὸν βασιλέα αὐτόχθονας στρατεῦσαι, ὡς εἰδότας τὰ μέρη τῆς Ἀρμενίας. καὶ παρέσχεν αὐτῷ τοῦτο καὶ τὰ δίκαια τῶν Ἀρμενίων τῶν δουκῶν καὶ τῶν κομήτων καὶ τούς ὑ π ά τ ο υ ς αὐτῶν, πρῴην μὲν ὄντας καστρισιανοὺς στρατιώτας· ἦσαν γὰρ καταλυθεῖσαι αἱ πρῴην οὖσαι ἀρχαί. ἔλαβε δὲ καὶ ἀπὸ τοῦ στρατηλάτου ἀνατολῆς ἀριθμοὺς τέσσαρας. καὶ γέγονεν ἔκτοτε μεγάλη παραφυλακὴ Ῥωμαίοις. ἦν δὲ καὶ ὁ ἀνὴρ πολεμικός· ὅστις καὶ τὴν ἀδελφὴν Θεοδώρας τῆς Αὐγούστας ἠγάγετο πρός γάμον, ὀνόματι Κομιτώ[1].

*Ինչպես պարզվում է պաշտոնական փաստաթղթերից և պատմագրի տված տեղեկություններից, Հայաստանում կատարված զինվորական վերակազմության էությունն այն էր, որ հայկական բոլոր հողերը միավորվեցին զինվորական մեկ պետի՝ ստրատեգոսի կամ մագիստրոսի իշխանության տակ։*

Magister militum-*ը կայսրության ամենաբարձր զինվորական աստիճանն էր։ Ամբողջ կայսրության մեջ այդպիսի հինգ մագիստրոս կար, որոնցից երկուսը՝ մայրաքաղաքում, մեկը՝ արևելքում և երկուսը՝ արևմուտքում։ Հայաստանում այսպիսի մի բարձրաստիճան*

---

[1] Malala, p. *429—430*։

պաշտոնյա նշանակելը ցույց է տալիս, թե այն ժամանակ որքան մեծ կարևորություն էր տրվում կայսրության արևելյան ծայրամասին։

Կայսրի բուն դեկրետից երևում է, որ դուքսերը ենթարկվում էին նոր պետին, մինչդեռ Մալալան պնդում է, որ ստրատելատի նշանակումով մինչ այդ գոյություն ունեցող բոլոր պաշտոնները վերացվեցին։ Պատմագրի տեղեկությունը ճիշտ չէ և թյուրիմացության արդյունք է։ Զինվորական պետ նշանակելու ժամանակ Հայաստանում մի քանի դուքսեր և կոմեսներ չկային, ինչպես ենթադրել է պատմագիրը։ Նա ըստ երևույթին շփոթել է այն, ինչ գոյություն ուներ մինչև զինվորական վերակազմությունը եղած այն կացության հետ, որ ստեղծվեց քաղաքացիական վերակազմությամբ և որը տեղի ունեցավ զինվորական վերակազմությունից մի քանի տարի անց, այսինքն՝ 536 թվականին։

Զինվորական պետ նշանակելու տարին ստույգ հայտնի չէ, հրամանագրի թվականը ընկած է։ Դատելով վերոհիշյալ պաշտոնական վավերագրի առաջին խոսքերից՝ cum Romanorum nobis sit delatum imperium, այն տրված է Հուստինիանոսի գահ բարձրանալուց քիչ առաջ կամ անմիջապես հետո[1]։

530 թվականին պարսիկների հետ Սատաղի տակ տեղի ունեցած ճակատամարտի ժամանակ Հայաստանի ստրատեգն էր Դորոթեոսը՝ խելացի և զինվորական գործին հմուտ մի մարդ։ Իսկ Հայաստանում գտնվող բոլոր զորքերի հրամանատարն էր Սիտտան՝ բյուզանդական զորապետներից մեկը[2]։

Հենց այդ երկու անձնավորություններից մեկն էլ գրավում էր Հուստինիանոսի հաստատած մագիստրոսի պաշտոնը։ Թեև Դորոթեոսն անվանված է Հայաստանի ստրատեգ, այդ տեր-

---

[1] Հուստինիանոսը իր թագավորության սկիզբը համարում էր 527 թվականի ապրիլի 1-ը, Nov. 47=Const. 66, երբ նշանակվեց Հուստինոսի գահակիցը։ Ըստ *Hist. Arc.* այդ տեղի ունեցավ զատիկից երեք օր առաջ. 527 թվականին զատիկը ապրիլի 4-ին էր։ Նրա միանձնյա թագավորությունը սկսվում է նույն տարվա օգոստոսի 1-ից. Güterbock-ը *Röm-Arm.*, p. 40, սխալվում է նրա գահակալությունը հաշվելով 528 թվականից։

[2] Proc. *Pers.* I 15 p. 74, ἐτύγχανε δε Ἀρμενίας μὲν στρατηγὸς Δωρόθεος, ὢν ἀνὴρ συνετός τε καὶ πολέμων πολλῶν ἔμπειρος. Σίττας δὲ ἀρχὴν μὲν τὴν στρατηγίδα ἐν Βυζαντίῳ εἶχε, παντὶ δὲ τῷ ἐν Ἀρμενίοις στρατῷ ἐφειστήκει.

*մինով Պրոկոպիոսը արտահայտում է լատինական* magister militum-*ը, այնուամենայնիվ, Ցիտտայի անունը կասկած չի թողնում, որ հենց նա է օժտված եղել մագիստրոսի իշխանությամբ։ Նրան, իբրև բոլոր զորքերի գլխավոր հրամանատարի, միանգամայն համապատասխանում է* magister militum per Armeniam et Pontum Polemoniacum et gentes *տիտղոսը։ Իսկ Դորոթեոսը, ըստ երևույթին, ոչ այլ ոք էր, քան Հայաստանի դուքսը։ Այդ նույն ժամանակ* magister per Orientem *էր Բելիսարիոսը։ Կալլինիկայի տակ 531 թվականին տեղի ունեցած ճակատամարտում Բելիսարիոսը անհաջողություն կրեց. Հուստինիանոսը դժգոհ դրանից, ետ կանչեց նրան մայրաքաղաք և ազատեց Արևելքի մագիստրոսի պաշտոնից, իսկ «Արևելքի պաշտպանության համար կայսրի կարգադրությամբ այնտեղ մեկնեց Ցիտտան»[1]։ Եվ իրոք, հռոմեական զորքերի գլուխն անցած՝ Ցիտտան շուտով հայտնվեց Աբթախ գյուղում, պարսիկների կողմից պաշարված Մարտիրոսուպոլսին օգնություն հասցնելու համար[2]։ Թվում է, թե Ցիտտան փոխարինեց Բելիսարիոսին՝ ստանձնելով Արևելքի մագիստրոսի պաշտոնը։ Մի այլ պատմագիր՝ Մալալան, նույնպես վկայում է, որ տեղեկանալով Կալլինիկայի տակ իր բանակի կրած պարտության մասին, Հուստինիանոսը «գրավոր հրաման տվեց* Praesentis-*ի պետ Ցիտտային, որ այդ ժամանակ ժամանել էր Հայաստան, մեկնել Արևելք՝ մասնակցելու պատերազմին։ Ցիտտան գրավեց պարսից հողերը և, անցնելով հայկական լեռները, հասավ Սամոսատ»[3]։*

*Նույն պատմագրի տեղեկությունների համաձայն միաժամանակ պատերազմական գործողությունների թատերաբեմ է ուղարկվում հատուկ պաշտոնյա՝ պարզելու պատերազմի մասին ճշմարտությունը։ Սրա տված զեկուցագրի հիման վրա Հուստինիանոսը Բելիսարիոսին ազատում է զորահրամանատարությունից և նրա փոխարեն Ա ր և ե լ ք ի ս տ ր ա տ ե լ ա տ* στρατηλάτην ἀνατολῆς

[1] Proc. *Pers.* I 21 p. 107, Σίττα δὲ ᾿Ιουστινιανῷ βασιλεῖ τοῦτο δεδογμένον, ὡς φυλάξων τὴν ἑῴαν ἐνταῦθα ἦλθε.

[2] ib. p. *108.*

[3] Malala p. 465, κελεύσας διὰ γραμμάτων Τζίττᾳ τῷ στρατηλάτῃ πραισέντου, ἐν ᾿Αρμενίᾳ διάγοντι, καταλαβεῖν τὴν ἀνατολὴν πρός συμμαχίαν. Magister mili tiae praesentis, *որ համազոր է Պրոկոպիոսի* ἀρχὴν μὲν τὴν στρατηγίδα ἐν Βυζαντίῳ εἶχει *արտահայտությանը։*

է նշանակում Մ ու ն դ ո ւ ս ի ն¹: Ի՞նչ եղավ Ցիտասը, այնքան էլ պարզ չէ: Մալալայից էլ հայտնի են Մարտիրոպոլսի առաջ նրա գործողությունները²: Նրա անհետ այդ ժամանակ Հայաստանի ստրատելատ էր Դորոթեոսը: Այս պաշտոնում եղած ժամանակ նա Պարսկահայաստանում³ գրավում է մի ինչ-որ բերդ և հետ է մղում հո ն ն ե ր ի-ս ա վ ի ր ն ե ր ի հարձակումը⁴: Կալլինիկեայի ճակատամարտը տեղի ունեցավ Զատկի շաբաթ օրը, ապրիլի 19-ին, որը համապատասխանում էր 531 թվականին: Ցիտասը Հայաստանից մեկնեց այդ ճակատամարտից հետո. արդյո՞ք նա նշանակվեց Արևելքի մագիստրոս, ինչպես այդ երևում է Պրոկոպիոսի խոսքերից, թե վերադարձավ մայրաքաղաք, որտեղ և այդ պաշտոնը, ինչպես հայտնում է Մալալան, տրվեց Մունդուսին, մեր նպատակի համար նշանակություն չունի: Կարևոր և կասկածից վեր է այն, որ Ցիտասը Հայաստանում մնացել է մագիստրոսի պաշտոնով մինչև 531 թվականի ապրիլի 19-ը: Հայտնի է նաև, որ Հայաստանում է գտնվել նաև նախորդ՝ 530 թվականին և Սատալայի առաջ կռվել է պարսիկների դեմ:

Այս ամենից հետևում է, որ Հայաստանի զինվորական վերակազմությունը, որ կապված է Ցիտասին magister militum per Armeniam պաշտոնում նշանակելու հետ, պետք է վերագրել Հուստինիանոսի գահակալությունից մինչև 530 թվականն ընկած ժամանակաշրջանին, հավանաբար 529 թվականին:

Վերոհիշյալ վերակազմության հետևանքով չվերացվեցին «դքսության ունեցած բոլոր իշխանությունները», ինչպես ասում է Մալալան: Լուծարքի ենթարկվեցին միայն Հայաստանի կոմեսի պաշտոնը և սատրապների իրավասությունը: Անձեռնմխելի մնացին ոչ միայն I և II Հայքերի դքսերը կամ քաղաքական կառավարիչները, այլև Հայաստանի դուքսը: Կոմեսի և սատրապների փոխարեն նշանակվեցին երեք նոր դուքսեր, որոնք ենթարկվում էին զինվորական պետին՝ մագիստրոսին: Վերջինս իր իշխանության լիիրավությամբ և բնույթով կարող է համեմատության մեջ դրվել այժմյան գեներալ-նահանգապետի հետ:

Հայաստանի մագիստրոսի տրամադրության տակ կային

¹ Malala, p. 466.

² ib. p. 470.

³ ib. p. 469.

⁴ ib. p. 472.

զինվորական զգալի մաս էր և officium։ Դժբախտաբար նրանց կարգ-մի վերաբերյալ հավաստի տեղեկություններ չկան։ Հետաքրքրական է Մալալասի վկայությունը սկրինիարների մասին։ Scriniarii-ն նույն official-ներն են, որ ծառայում էին դիվանատանը և կամ նրա բաժանմունքներում՝ սկրինիումներում։ Մագիստրոսի officium-ը նրա շտաբն ու գրասենյակն էր։ Դիվանատան պաշտոնյաները համարվում էին զինվորականների նման. նրանց ծառայությունը կոչվում է militia, բայց նրանք, այնուամենայնիվ, զինվորականներ չէին։ Սկզբում դիվանատան պաշտոնյաները, ըստ երևույթին, կատարում էին զինվորական ծառայություն։ Այսպես՝ Not. dign.-ի մեջ մայրաքաղաքի և Թրակիայի մագիստրոսների դիվանատների մասին magister militum praesentalis et mag. mil. per Thracias et Illyricum-ում ասված է, որ in numeris militat et in officio deputatur. Այդ ավելի էին նաև հայկական մագիստրոսի կից սկրինիարումները։ Այդ բանը հաստատելու խնդրել էր Ցիտասը։ Նրա միջնորդությունը կայսեր առաջ, ինչպես հետևում է պատմագրի խոսքերից, վերաբերում է երկու բանի. նախ՝ իրենց իրավունք տալ տեղացիներից, այսինքն՝ հայերից կազմել officium և երկրորդ՝ որ այդ ձևով իր կողմից պաշտոնի կանչված մագիստրոսական սկրինիարներին թույլատրվի նաև militare, στρατεῦσαι։ Պետք է պաշտոնում նոր նշանակված Ցիտասն, որ մինչ այդ եղել էր Հայաստանում և այստեղ էլ զինվորական իր առաջին քայլերն էր արել, քաջ գիտակցում էր, որ առանց տեղական ուժերի աջակցության դժվար կլինեն կատարել իր վրա դրված պատասխանատու գործը։ Հետաքրքիր է, նույնիսկ, որ նա իր ծագումով օտար չէր Արևելքին։ Ցիտաս կամ Սիտտաս ըստ երևույթին մականուն է. ստուգված իսկական անունը Ուրսիկիոս էր։ Վերջերս հրապարակված մի հետաքրքրական հաղորդման մեջ[1] այդ անու-

[1] Վարք սրբ. Թեոդորի, էջ 3. σὺν στρατηγῷ Οὐρσικίῳ, ἀνδρί γε πάνυ ὄντι περὶ τὰ πολεμικὰ ἱκανώτατον, ὃν διὰ τὸ περίδοξον τῆς μονομαχίας βασιλεὺς Ἰουστινιανὸς ἔζευξεν αὐτῷ γυναῖκα τὴν ἀδελφὴν Θεοδώρας τῆς αὐγούστης, ὀνόματι Κομιτώ հրատ. Լոպարևի, Зап. Кл. От. Имп. Рус. Арх. Об., հատ. I, 1904 թ.։ Ենթադրվում է, որ Ուրսիկիոս Ցիտասի համանմանացված անունն է (տե՛ս նույն տեղում, առաջաբանը)։ Իսկական անունն ավելի շուտ Սիտտաս է, որ հարազատ է սլավոնական astrjk-ին, որ նշանակում է հողեր պաշտպանող։ Հմմ. Ա ր ս ա կ-ե ն՝ եպիսկոպոսի անուն՝ հիշատակված Ագաթանգեղոսի մոտ և Աարոնի, որ հաղ եպիսկոպոսի հայորդն էր, հիշատակված Փավստոսի մոտ

*նով հայտնի է այն բարձրաստիճան պաշտոնյան և պետը, որ ամուսնացավ Հուստինիանոսի քենու, Թեոդորայի քրոջ՝ Կոմիտոյի հետ։ Մալալայի վկայությունից հայտնի է, որ այդ բարձրաստիճան պաշտոնյան՝ Թեոդորայի քեռայրը, հենց ինքը Ցիտտան է։*

*Ցիտտայի արդարացի միջնորդությունն արժանացավ կայսեր հավանությանը։ Թերևս տեղացիներից կազմված սկրինիարները մտնում էին այն* numeros novos-*ի մեջ, որոնց մասին խոսվում է կայսրի հրովարտակում։*

Numeri novi-*ից բացի, Հայաստանի մագիստրոսի զորքերի մեջ կային նաև* segregati de praesentalibus, orientalibus et alliis agminibus, *այսինքն՝ մայրաքաղաքի և արևելքի մագիստրոսների հրամանատարության տակ* magistri mil. praesentalis et per Orientem, *գտնվող լեգեոններից առանձնացվել էին մի քանի զորամասեր և հանձնվել Հայաստանի մագիստրոսին։* Not. dign.-*ի մեջ մայրաքաղաքի զորքերի շարքում ի թիվս այլոց հիշատակվում են նաև* sagittarii Armeni, *հայկական նետաձիգները, իսկ արևելքի զորքերի շարքում՝* prima Armeniaca, secunda Armeniaca *և* Transtigritani *լեգեոնները։ Հնարավոր է, որ հենց այդ զորամասերն էլ կազմում էին վերոհիշյալ* segregati-*ն կամ համենայն դեպս մտնում էին նրա մեջ։ Մալալան նույնպես հաստատում է, որ Ցիտտայի բանակը բաղկացած էր այն զորամասերից, որոնք առանձնացված էին* ἐκ τῶν δύο πραισέντων καὶ ἀνατολῆς, *այսինքն՝* praesentalibus et orientalibus, *ընդ որում հենց նրա տեղեկությունների համաձայն վերջիններից վերցվեց չորս լեգեոն*[1]*։* Numeri novi et allia agmina *հրահանգի փոխարեն նույն պատմագիրը հիշատակում է սկրինիարների և* τοὺς ὑπάτους *նախկին* καστρισιανούς στρατιώτας, castrensiani milites. *արդյոք դրանք համարժեք հասկացություններ չե՞ն և չե՞ն հաստատում այն ենթադրությունը, թե* numeri novi *նշանակում են* scriniarii[2]

[1] *Ըստ* **Կեդրինոսի**, *I, էջ 643, չորս* numeri-*ները ունեին յուրաքանչյուրը 1000 մարդ, որը սակայն ստուգման կարիք ունի։*

[2] *Թեոփանը արտագրում է Մալալայից, բայց սկրինիարների մասին արտահայտվում է իր ձևով.* προεβάλετο δὲ ὁ β. στρατηλάτην Ἀρμενίας Τζίταν ἄνδρα πολεμικὸν καὶ ἱκανώτατον. οὐ γὰρ εἶχεν ἡ Ἀρμενία στρατηλάτην, ἀλλὰ δοῦκας καὶ κόμητας. ἐστράτευσεν δὲ ὑπ' αὐτὸν Ἀρμενίων πλῆθος, ὡς εἰδότας τὰ μέρη τῆς Ἀρμενίας ἔδωκεν δὴ αὐτῷ καὶ ἀπὸ τῆς ἀνατολῆς στρατοῦ ἀριθμοὺς τέσσαρας *և այլն։*

և հետևաքար՝ allia agmina նույնն է, ինչ որ milites castrensiani։

Եղած տվյալների հիման վրա այժմ դժվար է որոշել Հայաստանի մագիստրոսի տրամադրության տակ գտնվող զորքերի քանակը։ Գիտենք, որ Ցիտտան 530 թվականին պարսիկների դեմ Սատաղի տակ կռվում էր իր տրամադրության տակ ունենալով միայն 15.000 զինվոր[1]։ Մի քիչ ավելի ուշ՝ Դվինի արշավանքի ժամանակ, զործող բանակը, որ բաղկացած էր Հայաստանի մագիստրոս Վալերիանոսի և արևելյան մասի մագիստրոս Մարտինի ուժերից, ուներ 30.000 զինվոր[2]։ Բայց այս թվերով սխալ կլիներ չափել կայսրության ռազմական ուժը արևելքում։ Հնարավոր բան չէ, որ երկու մագիստրոսներ միասին ունենային ավելի քիչ զորք, քան, օրինակ՝ Հայաստանի դուքսը, որի ուժերը ըստ Not. d.gn.-ի 30.000-ից ավելի էին։

Հայաստանի ստրատեգոսի նստավայր դարձավ Թեոդոսուպոլիսը, որ գտնվում էր Ներքին Հայքում. մինչ այդ զինվորական կենտրոն էր ծառայում Մելիտենեն՝ Փոքր Հայքի մայրաքաղաքը։ Այստեղ էր նստում Հայաստանի դուքսը։ Զ դարի սկզբին պարսկահռոմեական պատերազմի ժամանակ հռոմեացի առաջնորդներից մեկը՝ Եվգենիոսը, որ Միջագետքում և Հայաստանում գործում էր պարսիկների դեմ, ուղղակի կոչվում էր Մելիտենեի դուքս[3]։ Նա ոչ այլ ոք էր, եթե ոչ Հայաստանի դուքսը։

Հայկական գավառները կայսրությանը միացվելուց հետո ռազմական ուժերի կենտրոնը փոխադրվեց սահմանամերձ Թեոդոսուպոլիս քաղաքը։ Ստրատեգոսին ենթակա նոր նշանակված դուքսերից մեկը նստում էր Արտալեսում, երկուսը՝ սատրապությունների հողում՝ Կիթառիճում և Մարտիրոսուպոլսում, և երկուսը՝ Պոնտոսում կամ Ճանիքում՝ Օրոնում և Աքիմալանիքում կամ Ծանզակում։ Այդ վայրերի տեղադրությունը մենք քննության ենք առել վերը։

Ընտրված կետերը նախատեսված էին նախ և առաջ ստրատեգիական նպատակների համար, և այդ պատճառով էլ Հուստինիանոսն էլ ավելի ամրացրեց դրանք նոր կառուցումներով։ Հայաս-

[1] Proc. *Pers.* I 15 p. 75, պարսիկները οὐχ ἧσσον ἢ τρισμυρίους էին, իսկ հռոմեացիք μόλις ἐς τὸ ἥμισυ ἐξικνούμενοι.

[2] Proc. *Pers.* II 24, p. 262, ξυνῄει δὲ ὁ στρατὸς ἅπας εἰς τρισμυρίους.

[3] Joshua the Stylite ed. Wright, p. 40 և 41։

*նի է, որ Հուստինիանոսի գործունեության ուշագրավ և զարմանքի արժանի կողմերից մեկը նրա շինարարական ձեռնարկումներն էին, որոնք ապշեցնում էին ժամանակակիցներին։ Նրանք կարծում էին, թե հետագա սերունդը չի հավատա, թե այսպիսի խոշոր և անհամար կառուցումները կարող են մեկ մարդու կատարած գործ լինել*[1]։

*Կատարված աշխատանքները հիրավի վիթխարի էին և իրենց չափերով հավասարը չունեն պատմության մեջ։ Ընդարձակ կայսրությունը և մանավանդ նրա ծայրագավառները ծածկվեցին կառուցումների խիտ ցանցով։ Ամրությունների կառուցման և զորքերի տեղավորման վայրերը ընտրվում էին երկրի պաշտպանական նկատառումներով։ Առհասարակ կայսրի ամրոցաշինական աշխատանքները սերտորեն կապված էին պաշտպանության համակարգի հետ։ Հռոմեացիների ռազմական ստրատեգիան, ինչպես կարելի է տեսնել Փոքր Ասիայի տեղագրության վերևում կատարված քննությունից, այն էր, որ նրանք գրավում էին գլխավոր ճամբարներում գտնվող առավել կարևոր պահակակետերը։ Հուստինիանոսի դարաշրջանում այդ բավական չէր երկրի անվտանգությունն ապահովելու համար։ Կայսրությունն այնքան ընդարձակվեց և գտնվում էր այնպիսի տագնապալից պայմաններում, որ պետության ընդարձակ տարածությունները պահպանելու համար անհրաժեշտ էին հսկայական պաշտպանական ուժեր։ Զինված ուժերի պակասը լրացնելու համար Հուստինիանոսը պետք է ավելացներ ամուր դիրքերի և հաստատուն կառուցումների թիվը, որոնք կհեշտացնեին պետության խնդիրը թե՛ պաշտպանության, և թե՛ հարձակման ժամանակ։ Նա այդպես վարվեց նաև կայսրության արևելյան ծայրամասի՝ Հայաստանի նկատմամբ։ Անհրաժեշտ էր նախ և առաջ ամրացնել սահմանային գիծը և այդ նպատակով էլ ամբողջ սահմանի երկարությամբ՝ Դարայից մինչև Տրապիզոն կառուցեց մի շարք բերդեր։ Դա պաշտպանական առաջավոր գիծն էր, որ կազմված էր վերը հիշատակված պահակակետերից, որտեղ հինգ դուքսերի և ստրատեգի հրամանատարության տակ մշտական զորք էր պահվում։ Այդ կետերն են՝ Մարտիրոսուպոլիս, Կիթառիճ, Արտալես, Թեոդոսուպոլիս, Օրոն և Ծանդակ։*

---

[1] Proc. *Aed.* I 1 p. 172, ὡς μὴ ἀπιστεῖν τῷ τε πλήθει καὶ τῷ μεγέθει... ὅτι δὴ ἀνδρὸς ἑνὸς ἔργα τυγχάνει ὄντα.

Ստրատեգիական գլխավոր կետերն էին Մարտիրոսուպոլիսը և Թեոդոսուպոլիսը. դրանց պաշտպանությունը ապահովելու համար կառուցվեցին ուրիշ ավելի փոքր ամրոցներ։ Մարտիրոսուպոլսից այն կողմ գտնվում էին Փիտոն ոչ մեծ ամրոցը և հռչակավոր կղեսուրները՝ բնական անմատչելի կապանները, որոնք Հուստինիանոսը կառուցապատեց նոր շինություններով և այնտեղ դրեց պահակախումբ՝ Մարտիրոսուպոլսի և Կիթառիճի պաշտպանության համար։ Նույն նպատակին էին ծառայում Թեոդոսուպոլսի նկատմամբ Բայբերդի, Խարտի, Առե-ոնի և Բարխի ամրությունները, որոնք կառուցված էին արևելքից և հյուսիսից կատարվող հարձակումները կասեցնելու համար։ Բացի դրանից, ճանական ցուցքերին օգնելու նպատակով կառուցվեցին Սիսիլիսը, Բուրգը և այսպես կոչված Լոնգինոսի փոսատը։

Ամրությունների առաջին գծի ետևում ձգվում էր երկրորդը՝ Մելիտենե և Սատաղ երկու գլխավոր կենտրոններով, որոնք իրենց դիրքով հավասարազոր էին Մարտիրոսուպոլսին և Թեոդոսուպոլսին։

Վերջինների կառուցումով այդ հին քաղաքների նշանակությունը նույնիսկ ռազմական տեսակետից ամենևին չէր նվազում։ Հուստինիանոսը բարձր էր գնահատում դրանց դիրքը, ուստի վերակառուցեց այդ հինավուրց ամրությունները։ Մելիտենեին նա այնպիսի փայլ տվեց, որ ժամանակակիցները այն կոչում էին Հայաստանի զարդ։ Սատաղը դարձավ առաջնակարգ բերդ։ Վերակառուցվեցին նաև Սատաղի շրջակայքում գտնվող հին վայրերը՝ Օրոսեն ամրոցը, Լիթարարիզը, Լիսիորմը, Գերմանոսի փոսատը, Վիժանը և Ծումինան, ինչպես նաև Սեբաստիա, Նիկոպոլիս և Կողոնիա հին քաղաքները։

Պրոկոպիոսը Հուստինիանոսի շինարարական գործունեությանը նվիրել է չորս գրքից բաղկացած հատուկ աշխատություն՝ «Կառուցումների մասին» (Գիրք շինուածոց) վերնագրով, որոնցից մեկը ամբողջովին վերաբերում է Հայաստանին։

Թե ինչ շինարարություն ծավալեց Հուստինիանոսը Հայաստանում, երևում է հետևյալից։

Մ ա ր տ ի ր ո ս ո ւ պ ո լ ի ս քաղաքը, ըստ հեղինակի տեղեկությունների, հնուց ի վեր վատ էր պաշտպանված։ Այդ պատճառով Թեոդորոս սատրապը 502 թվականին մտքով անգամ չանցկացրեց, թե կարելի է դիմադրել Կավատին և առանց այլևայլության անձնատուր եղավ։ Անաստաս կայսրը, որ ծանոթ էր քաղաքի վիճա-

կին, բնավ չմեղադրեց նրան այդ վարմունքի համար, այլ, ընդհակառակն՝ այդ քայլը համարեց խելամիտ և գովասանքի արժանի։ Դաս առնելով այդ փորձից՝ Անաստասը քաղաքը շրջապատեց քսան ոտնաչափ բարձրությամբ և չորս ոտնաչափ լայնությամբ պարիսպով։ Բայց պարիսպը բավականաչափ ամուր չէր, որ կարողանար դիմանալ պաշարողական և պարսպակործան մեքենաներին. ասենք նա այնքան էլ բարձր չէր և նրա վրայով կարելի էր քաղաք ներխուժել։

«Գիտակցելով այս ամենը՝ Հուստինիանոսը հրամայեց փորել գետինը պարիսպներից դուրս և նոր պարսպի հիմք դնել, որը և անցկացրեց նախկինին զուգահեռ չորս ոտնաչափ հաստությամբ և քսան ոտնաչափ բարձրությամբ՝ թողնելով երկուսի միջև մի տարածություն, որի լայնությունը նույնպես չորս ոտնաչափ էր. ստացվեց նախկինին բոլորովին նման մի նոր պարիսպ։ Այնուհետև երկու պարիսպների միջև եղած տարածությունը լցրեց քար ու կրով, որի հետևանքով ստացվեց տասներկու ոտնաչափ լայնությամբ մի միաձույլ կառույց։ Իսկ վերևում շարունակելով պարիսպը իր ամբողջ հաստությամբ՝ ավելացրեց նրա բարձրությունը այնքան, որքան նա ուներ առաջ։ Բացի դրանից, քաղաքը շրջապատեց հոյակապ ու հիանալի պրոտեյխիզմով՝ նախապարիսպով և այնպիսի նոր կառույցներով, որոնք անհրաժեշտ էին համարվում ամրացված քաղաքի համար»։

Այսպիսով՝ Մարտիրոպոլսի նեղ և ցածր պարիսպը Հուստինիանոսը վերափոխեց և դարձրեց տասներկու ոտնաչափ լայնությամբ և քառասուն ոտնաչափ բարձրությամբ մի ամուր կառույց։

Փիսոն ավանը և կղեսուրները, որոնց տեղը մեզ արդեն հայտնի է, Հուստինիանոսը «կառուցապատեց հզոր ամրություններով, կարգեց այնտեղ պահակազորք և դրանով կապանը դարձրեց անառիկ, իսկ երկիրը՝ թշնամիների համար միանգամայն անմատչելի»։

Կիթառիճ գյուղը ամրություններ չուներ, և կայսրը «նրա բարձրադիր վայրում կառուցեց արտակարգ և ամեն տեսակ ուժերի համար անմատչելի մի նոր ամրոց։ Նա այստեղ առատ ջուր բերել տվեց և բնակիչներին ապահովեց ամեն տեսակ անհրաժեշտ բաներով։ Հենց այստեղ էլ նշանակեց վերը հիշված դուքսերից մեկին՝ տալով նրան անհրաժեշտ թվով պահակազորք։ Այսպիսով նա ապահովեց հայկական ազգությունների անվտանգությունը»։

Նույն ձևով «Հուստինիանոսը առավել ամուր պարսպով շըրջապատեց Արտալես գյուղը և այն դարձրեց անառիկ ամրոց։ Այնտեղ դրեց մի զորամաս՝ հրամայելով նրան ենթարկվել իրենց պետին, որին լատիներեն կոչում էին դուքս»։

Թեոդոսուպոլիսը, ինչպես պատմում է Պրոկոպիոսը, իր հիմնադրման համար պարտական է այն Թեոդոսիոսին, որ ժառանգեց հայոց վերջին արքա Արշակի թագավորությունը։ Նա «բլուրներից մեկի վրա կառուցեց մի ամրոց, որ ամուր չէր և մատչելի էր թշնամուն և այն անվանեց Թեոդոսուպոլիս»։ Քաղաքի հայկական անունը Կարին էր, որը նահանգի հին անվանը համապատասխան ցույց է տալիս, որ Թեոդոսիոսի ամրոցի տեղում հնուց գոյություն է ունեցել եթե ոչ քաղաք, համենայն դեպս մի գյուղ։ Եթե այդ վայրը սկզբից հայերին ծանոթ լիներ Թեոդոսուպոլիս անունով, ապա հազիվ թե կարիք լիներ նրան մի երկրորդ և հայկական անուն տալ։ Թեոդոսիոս կայսրին պատկանում է միայն հայկական գյուղի տեղում ամրոց կառուցելու նախաձեռնությունը։ Եվ իրոք, յուր մի այլ աշխատության մեջ նույն պատմագիրը ասում է, որ Անաստասը Պարսկահայքի սահմանին մոտ կառուցեց մի քաղաք, «որ հնուց ի վեր գյուղ էր եղել»։

Թեոդոսիոսի կառուցումները, համենայն դեպս Կավատի պատերազմների ժամանակ, ռազմական նպատակների համար պիտանի չեղան։ Մարտիրոսուպոլսի նման Թեոդոսուպոլիսն էլ չդիմացավ պաշարմանը և գրավվեց պարսիկների կողմից։ Պատմագիրը հաղորդում է, որ «հետագայում Անաստաս կայսրը այնտեղ հիմնադրեց մի քաղաք և պարսպապատեց այն բլուրը, որտեղ կանգնած էր Թեոդոսիոսի բերդը։ Նա քաղաքին տվեց իր անունը, բայց նրան չհաջողվեց վերացնել նախկին հիմնադրի՝ Թեոդոսիոսի անունը։ Չէ որ կյանքում հաճախ է պատահում, որ հասկացությունները փոփոխվում են, բայց արդեն ընդունված անվանումը դժվար է լինում վերացնել։ Թեոդոսուպոլսի պարիսպները բավականաչափ լայն էին, բայց չունեին համապատասխան բարձրություն. դրանց բարձրությունը հազիվ հասնում էր երեսուն ոտնաչափի։ Այդ պատճառով էլ դյուրին էր թշնամիների, մանավանդ պարսիկների համար գրավել քաղաքը՝ պաշարելով այն։ Քաղաքը մատչելի էր նաև այն պատճառով, որ այն պաշտպանված չէր ոչ նախապարսպով և ոչ էլ խրամով։ Չարիքներից մեկն էլ այն էր, որ քաղաքի ճիշտ դիմացը գտնվում էր մի ինչ-որ բարձրություն, որ իշխում էր քաղա-

*քի պարսպի վրա։ Հուստինիանոսը որոշեց վերակառուցել և ամրացնել քաղաքը։ Նախ և առաջ նա հրամայեց քաղաքի շուրջը որքան հնարավոր է խոր խրամ փորել՝ տալով նրան լեռների զառիթափների արանքում բացվող կիրճի ձև։ Ապա այն բլուրը, որ ցցված էր քաղաքի վրա, կտրատելով վերածեց անմատչելի զառիթափների և անանցանելի խորխորատների։ Իսկ պարիսպները էլ ավելի բարձրացնելու և հարձակման դեպքում անմատչելի դարձնելու համար կայսրը դրանց վրա կառուցել տվեց այնպիսի ամրություններ, ինչպիսիք կառուցված էին Դարայում։ Պարսպի ատամնաձև մասերը միմյանց մոտեցնելով՝ նա դրանց միջև եղած տարածությունն այնքան փոքրացրեց, որքան անհրաժեշտ էր պաշարողների վրա նետ արձակելու համար, և քարեր շարելով՝ ստեղծեց շուրջանակի կամարակապ սյունասրահ, որի վրա կառուցեց ատամնաձև երկրորդ շարքը։ Քաղաքի շուրջը կառուցեց նախապարիսպ, ինչպես Դարայում, և յուրաքանչյուր աշտարակ դարձավ իսկական բերդ։ Այս քաղաքը դարձրեց զինվորական բոլոր ուժերի և Հայաստանի ստրատեգի նստավայր և հայերին դրեց այնպիսի նպաստավոր պայմաններում, որ նրանք այլևս որևէ երկյուղ չէին կարող ունենալ պարսիկների ասպատակություններից»։*

*Պատմագիրն այնուհետև պատմում է, որ կայսրը Վիզանում ոչ մի կառուցում չարեց, որովհետև «այդ գյուղը գտնվում էր հարթ վայրում՝ չորս կողմը ձիավարության համար ընդարձակ դաշտեր էին և այնտեղ շատ ճահճուտներ և նեխած ջրափոսեր կային։ Այսպիսով, գյուղը մի կողմից նպաստավոր էր թշնամու գործողությունների համար, իսկ մյուս կողմից՝ վարակիչ ու վնասակար էր բնակիչների համար։ Դրա համար էլ Հուստինիանոսը ուշադրություն չդարձրեց դրա վրա և մի այլ վայրում՝ Ծումինա կոչվող գյուղում իր անունով մի հոյակապ և անմատչելի քաղաք կառուցեց։ Ծումինան գտնվում էր Վիզանից երեք մղոն հեռու խիստ զառիվայր լանջի վրա և հռչակված էր իր առողջարար օդով»։*

Τὰ Βιζανά-ն *այն քաղաքն է, որ Հուստինիանոսի նովելլայում կոչվում է* Βάζανις *կամ* Λεοντόπολις։ *Հետազոտողները ճիշտ չեն ցույց տալիս նրա տեղը՝ նույնացնելով կամ Թեոդոսուպոլսին կամ Երզնկային։ Իրականում Վիզանը գտնվում էր այդ երկուսի մեջտեղում և ոչ այլ ինչ է, քան հայկական Վիժանը, որ մինչև օրս էլ գոյություն ունի Եփրատի ափին, ճիշտ այնտեղ, որ-*

*տեղ Եկեղյաց գավառը սահմանակից է Մանաղիին։ Այն վերանվանվեց Լեոնտուպոլիս հավանորեն ի պատիվ Լեոն կայսեր (457—474), բայց թե ի՞նչ առիթով, հայտնի չէ։ Մենք հնարավորություն չունենք ստուգելու, թե պատմագրի նկարագրած տեղագրական պայմանները որքանով են համապատասխանում իրականությանը։ Նկարագրության ճիշտ լինելը հաստատվում է, ըստ երևույթին, տեղի Վիժան անունով, որ հայերեն նշանակում է հեղեղում, ողողում*[1]։

*Վիզանից ոչ հեռու՝ Երզնկային ավելի մոտ, Քեշիշ-դաղի ստորոտում գտնվում է Ջիմին ավանը, որն, ի միջի այլոց, հայտնի է իր հիանալի գինիով։ Սա էլ հենց պատմական Ծումինան է*[2]*, Կայսրը ընդարձակելով այն՝ վերանվանեց Հուստինիանուպոլիս ու դարձրեց քաղաքացիական վարչության կենտրոն։ Այստեղ նստում էր նաև նահանգի եպիսկոպոսը, որ կոչվում էր Հուստինիանուպոլսի եպիսկոպոս կամ շրջանի անունով՝ Եկեղյաց եպիսկոպոս*[3]։

*Իրար մոտիկ լինելու պատճառով հնագույն ժամանակներից սկսած Թեոդոսուպոլիս, Լեոնտուպոլիս և Հուստինիանուպոլիս քաղաքները իրար հետ շփոթել են. նույնիսկ պաշտոնական վավերագրում՝ 31-րդ նովելլայում, սպրդել է մի սխալ, ըստ որի Հուստինիանուպոլիսը համարվում է Լեոնտուպոլսի նոր անունը։ Այժմ*

---

[1] *Վիժել բառից. Պրոկոպիոսի* τὰ Βιζανά (ἐν Βιζανοῖς, *Aed.* p. 254) *ձևը համապատասխանում է հայերեն վիժան-քին, իսկ* Βίζανις*-ը՝ Վիժանին։ Այժմյան արտասանությունը վիժան է և ոչ թե վժան, ինչպես Ինճիճյանի մոտ,* Աշխարհագրութիւն, *էջ 91։ Վիզանը հիշատակվում է նաև* Nova tactica*-ի մեջ ի թիվս Տրապիզոնի թեմական քաղաքների* ὁ (θρόνος) Βιζάνων։ *Ըստ իր բաղադրության այն կարելի է համարել իբրև* Βιζάνα*-ի ուղղական կամ սեռական հոլովը* Georg. Cypri, p. 78։ *Այստեղ Կամախի միտրոպոլությունում* Βαρζανίσσα*-ի կողքին նշվում է նաև* Κελιτζινή *քաղաքը, որ դյուրությամբ կարելի է շփոթել Վիզանի հետ։ Նախընտրում ենք կարդալ* Γαρζανίσσα, *այժմ Գերջանիս, որ գտնվում է Երզնկայից վեր։ Այս քաղաքը չի կարելի նույնացնել Վիզանի հետ, որովհետև վերջինս նշված է Տրապիզոնի միտրոպոլությունում։*

[2] *Հուն.* τζ*-ն համապատասխանում է քմային ջ հնչյունին։ Ինճիճյան,* Աշխարհագրութիւն, *էջ 101, ծիմին արևմտահայերի արտասանությամբ արևելահայերի Ջիմինն է։ Հմմտ.* Τζάνοι *և Ճանիք-Ջանիք։*

[3] *553 թ., Տիեզ. V ժողովում հիշվում է Գրիգոր Հուստինիանուպոլսո,* Mansi, *IX, 391, VI ժողովում՝ Թեոդորոս եպիսկոպոս,* Ἐκελενζίνης ἤτοι Ἰουστινιανου-πόλεως. *id.* XI 613։

պետք է պարզ լինի, որ Հուստինիանուպոլիսը Ջիմինն է, Լեոնտուպոլիսը՝ Վիզանը, իսկ Թեոդոսուպոլիսը՝ Կարինը։

Հուստինիանոսը վերակառուցեց նաև Սատաղ քաղաքը։ «Սատաղ քաղաքը մինչև այդ գտնվում էր այնպիսի վիճակում, որ լուրջ երկյուղ էր ներշնչում։ Այն գտնվում էր թշնամու երկրից ոչ հեռու մի հարթ վայրում, որ շրջապատված էր բազմաթիվ բլուրներով. բավական էր միայն պարսպապատել քաղաքը, և նա հարձակվողների համար միանգամայն անառիկ կդառնար։ Եվ սակայն, չնայած այդպիսի բնական դիրքին, քաղաքը որպես ամրություն շատ անհուսալի էր։ Նրա պարիսպները, որ հենց սկզբից կառուցել էին մի կերպ ու շատ անփութորեն, տարիների ընթացքում խարխլվել էին, ճաքեր տվել և փուլ էին գալիս։ Հուստինիանոսը քանդեց ամբողջ պարիսպը և կառուցեց նորը, ընդ որում այնքան բարձր, որ թվում էր, թե շրջապատող բլուրներից էլ բարձր է. հասկանալի է, որ լայնությունը նույնպես արված էր այն հաշվով, որպեսզի այդքան բարձր պարսպի զանգվածը նրա վրա հուսալի լինի։ Բացի դրանից, ի մեծ զարմանս թշնամիների, կայսրը կառուցեց հոյակապ նախապարիսպ։ Սատաղից ոչ հեռու Օրոսեն կոչվող վայրում կառուցեց նաև մի չափազանց ամուր բերդ»։

Այդ նույն տեղում, ըստ պատմագրի նկարագրության, գտնվում էր Կողոնիա քաղաքը։ Նախապես այդ մի ամրոց էր՝ զառիթափ բլրի գագաթին, որ գոյություն ուներ շատ հին ժամանակներից ի վեր[1]։ Հռոմի զորավար Պոմպեոսը, նվաճելով այդ երկիրը, գրավեց նաև վերոհիշյալ բերդը, ամրացրեց այն և կոչեց Կողոնիա։ «Այդքան երկար ժամանակվա ընթացքում քաղաքը բոլորովին խարխլվել էր, բայց Հուստինիանոսը վերականգնեց նրա նախկին հզորությունը։ Նա այդ կողմերի բնակիչներին անհամար միջոցներ բաժանեց և ստիպեց, որ իրենց դաշտերում ամենուրեք ամրություններ կառուցեն կամ էլ վերակառուցեն հին ավերակները։ Կարելի է ասել, որ այդտեղի բոլոր ամրությունները էլ Հուստինիանոսի ձեռքի գործն են։ Այդ նույն տեղում նա կառուցեց Բայբերդ և Աոն-ոն բերդերը, վերանորոգեց նաև Լիսիորմը, որ արդեն սկսել էր խարխլվել, ինչպես նաև Լիթարարիզը։ Գերմանոս փոսատ կոչվող գյուղում կառուցեց նոր ամրոց։ Հայաստանի Սեբաստիա և

[1] Հմմտ. Խորենացի, Բ, ղ, բարձրավանդակ մի բլրով քարագագաթնի, որ այժմ ասի Կողոնիայ։

Նիկոպոլիս քաղաքների պարիսպները, որ խիստ խարխլվել էին երկար տարիների ընթացքում և արդեն փլվելու վրա էին, Հուստինիանոսը վերանորոգեց»։

Մ ե լ ի տ ե ն ե ն, որ շատ կարևոր կենտրոն էր Հայաստանում և ընդհանրապես Առաջավոր Ասիայում, նախկինում մի փոքրիկ ամրություն էր, հռոմեական զորակայան։ Նա կառուցված էր մի հարթ վայրում՝ քառակուսի ձևով։ Տրայանոս կայսրի ժամանակից սկսած՝ Մելիտենեն դարձավ քաղաք և այդ երկրամասի մայրաքաղաքը։ Երբ բնակչությունը այնքան աճեց, որ այլևս չէր տեղավորվում ամրությունների ներսում, մարդիկ սկսեցին բնակվել պարիսպներից դուրս՝ հարթավայրում, որտեղ նրանք կառուցեցին տաճարներ, տներ մագիստրոսների համար, հրապարակ, շուկա, փողոցներ գցեցին, կառուցեցին կամարակապ սրահներ, բաղնիքներ, թատրոններ, և այն ամենը, ինչ հատուկ է բարեկարգ ու մեծ քաղաքին։ Այսպիսով, հիմնվեց արվարձանային Մելիտենեն։ Անաստաս կայսրը միտք հղացավ պարսպապատել ամբողջ քաղաքը, բայց մեռավ առանց իրագործելու իր ցանկությունը։ «Հուստինիանոս կայսրը քաղաքն ամբողջովին պարսպապատեց և Մելիտենեն դարձրեց մի հզոր ամրություն և Հայաստանի զարդը»։

Հուստինիանոսի կառուցումների շարքում հիշատակվում են նաև մի քանի եկեղեցիներ։ «Թեոդոսուպոլսում նա կառուցեց Աստվածածին եկեղեցին և վերանորոգեց այսպես կոչված Պետրիա և Կուկարիզ գյուղերի վանքերը։ Նիկոպոլսում կառուցեց Քառասունհինգ նահատակների վանքը, իսկ Վիրզանում՝ Գևորգ վկայի տաճարը։ Նա վերականգնեց նաև Քառասուն նահատակների վանքը Թեոդոսուպոլսի մոտ»։

Վերոհիշյալ բոլոր վայրերը, բացառությամբ մի քանիսի, քաջ հայտնի են։ Այս վերջինների թվին են պատկանում Աեե-ոնը, Լիխորմը և Պետրիան, որոնք պետք է փնտրել Բայբուրթի մոտակայքում։ Եվ այստեղ էլ Դերջանի կամ Կարինի հարևանությամբ այժմյան Կ ո կ ա ր ի ս ի տեղում[1] գտնվում էր Կ ու կ ա ր ի զ ը։ Լիթա-

[1] Cuinet-ի մոտ, I, էջ 133, Բայբուրթի կազայի 14 nahie-ների շարքում հիշատակված է Kokaris, որ հավանաբար պատմական Κουκαρίζων-ն է, որ հայտնի է նաև Խորենացուն, Բ, կե, որպես Հավուկ եպիսկոպոսի հայրենիք, Հաւուկ ի Կուկայառճոյ։ Դժբախտաբար Կինէի քարտեզում նրա տեղը չի նշված։

բարիզը անկասկած Anl.-ում հիշատակված Օլտոյարիզն[1] է։ Գերմանոսի փոստը մենք նույնացնում ենք Տրապիզոնի մետրոպոլիտության Թ դարի եպիսկոպոսանիստ քաղաքներից մեկի՝ Կ ե ր ա մ ե ո ն ի հետ, որ այժմյան Կրոմն է՝ մի փոքրիկ գյուղ Գյումիշ-խանեից հյուսիս[2]։

Հուստինիանոսի կառույցների վերոհիշյալ նկարագրությունը ոչ միայն տեղագրական հետաքրքրություն է ներկայացնում, այլև մեզ ծանոթացնում է այն ժամանակվա ռազմաշինարարական արվեստին։ Այդ տեսակետից կարևոր է մանավանդ Թեոդոսուպոլսի և մասամբ նաև Մարտիրոսուպոլսի ամրությունների նկարագրությունը։ Նախ և առաջ հետաքրքրական է բաղդատել Հուստինիանոսի պատմագրի տվյալները հայկական նյութերի հետ։ Ազգային ավանդության համաձայն Թեոդոսուպոլիս քաղաքը Թեոդոսիոս կայսեր հրամանով հիմնադրել է Անատոլիոսը «գեղեցկադիր լեռան ստորոտում, որտեղից բխում էին բազմաթիվ փոքրիկ և վճիտ աղբյուրներ։ Նա շուրջբոլորը խոր փոս փորել տվեց և այդ խորության մեջ դրեց պարիսպների հիմքը։ Դրանց վրա կառուցեց բարձրաբերձ աշտարակներ, որոնցից առաջինը Թեոդոսիոսի պատվին անվանեց Թեոդոսիա։ Դրանից քիչ հեռու կառուցեց ելուստավոր աշտարակներ՝ ճիշտ նավացռուկների նման, ինչպես նաև գոգավոր խորշերով անցքեր, որոնք նայում էին լեռանը։ Այդպիսի աշտարակներ կառուցվեցին դաշտի դիմաց նաև հյուսիսում։ Իսկ արևելյան և արևմտյան կողմերում նա կառուցեց բոլորաձև աշտարակներ, քաղաքի կենտրոնում՝ մի բարձր տեղում՝ բազմաթիվ շտեմարաններ, որոնք Օգոստոսի պատվին կոչվեցին Օգոստիոն։ Նա շատ տեղերից գաղտնի ջրանցքներով քաղաք բերեց նոր ջրեր և քաղաքը ապահովեց զենքով ու պահակազորքով և անվանեց այն Թեոդոսուպոլիս»[3]։

---

[1] Դժվար թե հիմք կա Λυταραρίζων-ը համադրել Լուսաթառիճի հետ, որը Աշխարհացույցի մեջ նշված է IV Հայքում՝ Արածանիի և Եփրատի խառնարանում։

[2] Κεραμέων ըստ *Nova tactica*, X—XI դդ.՝ Գելցերի հրատարակած Georg. Cyp.-ի հավելվածում, էջ 78։ Կրոմի մոտակայքում է գտնվում Ուռմլուկը, որ ըստ Cuinet-ի, I, 126, Լերիոնն է՝ ὁ Λερίου, որ նույնպես Տրապիզոնի միտրոպոլիտության եպիսկոպոսանիստ քաղաքներից մեկն էր։

[3] Խորենացի. Գ, ծԹ։

Թեոդոսուպոլսի հիմնադրման մասին շատ հետաքրքրական տեղեկություններ են պահպանվել մի առասպելական, բայց անկասկած իրազեկ աղբյուրներից ծագած Զրույցի մեջ։ Հակառակ նախորդ տեղեկությունների, Զրույցում ասված է, որ քաղաքի հիմնադիրը ոչ թե Անատոլիոսն է, այլ Մովսես և Դավիթ անունով երկու հայ վարդապետներ, որոնք ի թիվս այլոց ուղարկվել էին Բյուզանդիայի մայրաքաղաք՝ սուրբ գրքեր թարգմանելու։ Բյուզանդիայում հուշակ ձեռք բերած այդ երկու անձնավորություններին Թեոդոսիոս Կրտսերը հանձնարարեց Հայաստանում մի նոր քաղաք կառուցել։ Հայրենիք վերադառնալով՝ նրանք գործի անցան։ Նրանք կառուցեցին խոսրովյան տիպի ու պարսպակործան մեքենաների համար անվտանգ աշտարակ և մեկ հիմքի վրա բարձրացրին երեք պարիսպ։ Հրամայվեց փորել և դուրս տանել երեք պարիսպների միջև եղած ամբողջ հողը և փորելով հասնել մինչև քաղաքի կենտրոնը (բառացի՝ պորտը)։ Դրանից հետո խոր փոսը լցրին չտաշված, խոշոր քարերով ու կրով և մեկ հիմքի վրա բարձրացրին երեք պարիսպ։ Որպեսզի պարսպի հիմքը փորելու հետևանքով այդ պարիսպը չխախտվի, քաղաքի կողմից ներսում կառուցեցին պարսպին հենվող երկու հարյուր աստիճան, որոնք հետզհետե իջնում էին ավելի ու ավելի ներքև։ Նույն ձևով էլ այդքան աստիճան՝ մեկը մյուսից ցածր, կառուցեցին դրսի կողմից՝ թշնամու ականներն անվտանգ դարձնելու համար։ Ձեռք առնվեցին նաև այլ միջոցներ թշնամու հարձակման, քաղաքը պաշարելու և քաղաք տանող ճանապարհները կտրելու դեպքում այն պաշտպանելու համար։ Նրանք քաղաքում կառուցեցին ստորերկրյա անցուղիներ և հաջողացրին գետնի տակ խոր փորել և փորվածքը հասցնել մինչև դաշտը՝ քաղաքից կես օրվա ճանապարհ հեռավորության վրա, մինչև այնտեղ, որտեղ ջրերը լճացած են և գոյացնում են շամբուտ, եղեգնով ծածկված ճահիճ։ Այսպիսով, եթե քաղաքը պաշարեին, նրանք կկարողանային անասունների համար կեր և վառելիքի համար եղեգն հայթայթել, իսկ թշնամիները այդ մասին ոչինչ չէին իմանա։ Նույն ձևով էլ քաղաքի մյուս կողմից մինչև Այծ-պտկունք լեռը անցկացրին ստորերկրյա անցք և մուտքը ծածկեցին խոշոր քարերով։ Եթե հեծյալների կարիք զգացվեր, կարող էին մարդ ուղարկել ու կանչել, և այրուձին քաղաք կմտներ թշնամուց աննկատ։

«Ինչ վերաբերում է ջրին, այդ խնդիրը ևս շատ լավ լուծված էր, այսինքն՝ այնպես, ինչպես պետք է լիներ։ Քաղաքում չկար մեկը,

հարուստ, թե աղքատ, որ չկարողանար օգտվել ստորերկրյա ջրատարներից։ Պալատներն ու աշտարակները հոյակապ էին և շինված էին քանդակազարդ քարերով։ Փողոցներն ու հրապարակները, սպանդանոցներն ու շուկաները՝ չափազանց մաքուր, եկեղեցիները հիացնում էին դիտողներին. քաղաքի դռները լայն էին ու բարձր, պատերը կարգին էին, և աշտարակները բոլորն էլ՝ խոսրովյան»[1]։

Ըստ Պրոկոպիոսի նկարագրության, Թեոդոսուպոլսից 42 ասպարեզ հեռավորության վրա՝ ոչ այնքան բարձր մի լեռից սկիզբ է առնում Եփրատ գետը։ «Սկզբում նա հոսում է մի որոշ տարածություն, և շուտով նրա հոսանքը անհետանում է, բայց ոչ թե կորչում է գետնի տակ, այլ մի զարմանալի բան է տեղի ունենում։ Ջրի վրա 50 ասպարեզ երկարություն և 20 ասպարեզ լայնություն ունեցող մի տարածությամբ շատ հաստ շերտով տիղմ է նստում։ Այդ ճահճում փարթամորեն եղեգն է աճում։ Գետինն այդ տեղում այնքան է ամրանում, որ այստեղով անցնողները կարծում են, թե ցամաքի վրա են։ Այդտեղով անվտանգ անցուդարձ է կատարվում ձիով և հետիոտն։ Ավելին՝ ամեն օր այստեղից անցնում են բազմաթիվ սայլեր, և տիղմը դիմանում է նրանց ծանրությանը ու բոլորովին իրեն զգացնել չի տալիս։ Տեղացի բնակիչներն ամեն տարի այրում են եղեգնը, որպեսզի իրենց ճանապարհը չփակվի. ուժեղ քամիների ժամանակ երբեմն կրակը հասնում է մինչև եղեգնի արմատները և միայն այդ ժամանակ մի փոքր տարածության վրա ջուր է դուրս գալիս։ Բայց շատ չանցած՝ տիղմը նորից բարձրանում ծածկում է, և այն նորից ստանում է իր նախկին տեսքը։ Այստեղից գետը շարունակում է հոսել դեպի, այսպես կոչված, Եկեղեսեննի գավառը»[2]։

Այստեղ նկարագրված են այն եղեգնուտները, որ հայերը շամբ են անվանում, և որոնց մասին հայ պատմիչը ասում է, որ Եփրատի մի ճյուղը իր ակունքներից ոչ հեռու «տարածվում է ճահճային լճի նման, և նրա ափերին առաջանում է շամբ, և ա-

[1] Սրբոց վարդապետացն հայոց Մովսէսի եւ Դաւթի հարցմանց ընդ երկաբնակ չարափառսն, Գ. Սրուանձտեանց, Հնոց նորոց, 1874 թ.։ Cohybeare, Հ. Ա., 1903, մայիս։

[2] Proc. Pers. I 17, էջ 82—83, Պրոկոպիոսը Տիգրիսի ակունքները ևս բխեցնում է Թեոդոսուպոլսի մոտակայքից, ըստ երևույթին շփոթելով Արաքսի հետ։

ճում է մեծ քանակությամբ եղեգն, դաշտերն աչքի են „ընկնում խիտ խոտով և կորիզավոր պտուղների առատությամբ»[1]։

Այդ տեղը թուրքերեն կոչվում է ս ա զ լ ը ղ՝ եղեգնուտ և քաղաքից հեռու է մոտավորապես այնքան, որքան ցույց է տալիս Պրոկոպիոսը, այսինքն՝ տասը կիլոմետրից ոչ ավել[2]։

Հակառակ կողմից, այսինքն՝ հարավից, քաղաքը գոտևորվում է Փալանթյոքենի լեռներով, որոնք հենց հին Այծպտկունքն են։ Արևելյան կողմից քաղաքի վրա բարձրանում են Թոփդաղի դագաթները, որոնք այլ կերպ կոչվում են Սուրբ Նշան՝ նույնանուն եկեղեցու անունով։ Քաղաքի միջնաբերդը գտնվում է բլրի վրա, որտեղ և, ի միջի այլոց, գտնվում է զինանոցը։ Միջնաբերդի դեմ դիմաց բարձրանում է Թոփդաղը, որտեղից կարելի է կրակ տեղալ քաղաքի և զինանոցների վրա[3]։ Եվ իրոք, 1878 թ. ռուս-թուրքական պատերազմի ժամանակ ռուսական զորքերը գրավեցին «նախ և առաջ Թոփդաղի ամրությունները՝ Աղիզիեն և Մեջիդիեն, որոնք իշխում էին ամբողջ բերդի վրա»[4]։

Միանգամայն պարզ է ուրեմն, որ քաղաքի դիմաց եղած բարձունքը, որը կտրատել ու փորփրել տվեց Հուստինիանոսը, այժմյան Թոփդաղն է։ Իսկ այն գեղեցկադիր լեռը, որի ստորոտում փռված էր քաղաքը, Խորենացին համարում է ոչ թե Թոփդաղը, այլ Այծպտկունքը, ինչպես կարելի է կռահել նրա այն խոսքերից, թե քաղաքի պարիսպների բոլորաձև աշտարակները նայում էին դեպի արևելք և արևմուտք, իսկ նավացուկի նմանվող եկուստավոր աշտարակները՝ դեպի հյուսիս և դեպի լեռան կողմը, ըստ երևույթին՝ դեպի հարավ։ Թեոդոսուպոլսեցի մի ավելի ուշ շրջանի հեղինակի խոսքերով քաղաքը տեղադրված է մի բարձունքի վրա և որպես մի արքայական գահ բազմել է Տողալար և Գոհանամ բարձր լեռների ստորոտում և նայում է բոլորաձև և գեղեցիկ դաշտին Կան գյուղի

---

[1] Խորենացի, Գ, ծթ։

[2] Տամբ բառի ստուգաբանությունը հայտնի չէ։ Թուրքական անունը ծագում է եղեգն ساز, سازلق կամ سازگول, այսինքն՝ եղեգնյա վայր կամ եղեգնյա լիճ։ Ըստ Հակոբ Կարնեցու, էջ 47, շամբուտի հեռավորությունը քաղաքից կես օրվա ճանապարհ է։

[3] Ինչպես տեղեկացնում է Ինճիճյանը, Աշխարհագր., էջ 66։

[4] Ген. майор С. Духовский, Русские в Эрзеруме в 1878 г., с. 13, Военный Сборник, 1878 г.

*ուղղությունը*[1]*։ Կանը կամ Կյանը գտնվում է քաղաքի հյուսիսային կողմում, իսկ Ծողալարն ու Գոհանամը միևնույն լեռն է, որ գտնվում է քաղաքից հարավ՝ Դեվե-բոյնուի և Փալանթյոքեն լեռնաշղթայի մեջ*[2]*։ Նա համարվում է ամենաբարձր լեռնային կետը ամբողջ շրջանում, որի գագաթից երևում են Արարատն ու Սև ծովը։*

*Ամրոցին վերաբերող տվյալները, սակայն, միմյանց այնքան էլ չեն համապատասխանում։ Պատմագրի նկարագրությամբ Հուստինիանոսի կառուցումները Թեոդոսուպոլսում բաղկացած էին երեք տեսակի պաշտպանական ամրություններից՝ խոր փոսից* ἡ τάφρος βαθύτατος, *պրոտեյխիզմայից կամ նախապարիսպից* προτείχισμα *և հիմնական երկհարկանի ատամնաձև պարսպից՝* περίβολος *կամ* τεῖχος, *որոնք միմյանցից անջատված էին աշտարակավոր սրահի նմանվող ծածկված միջանցքով։ Խորենացին խոսում է միայն խոր փոսի և աշտարակավոր պարսպի մասին, ընդ որում նրա մոտ փոսը, ըստ երևույթին, ինքնուրույն նշանակություն չունի, այլ ծառայում է այն բանին, որպեսզի հնարավոր լինի խորացնել քաղաքի պարիսպների հիմքը, ինչպես այդ երևում է նաև Զրույցից*[3]*։ Այդ տարապելական փաստաթղթի հեղինակը անտարակույս հավաստի աղբյուր է ունեցել և հավանորեն ինքն է մեղավոր նրա նկարագրության մեջ եղած մի քանի անհեթեթությունների համար, որոնք սկզբնաղբյուրը սխալ հասկանալու արդյունք են։ Պարիսպների միջև ընկած հողի փորելը, որի մասին խոսվում է Զրույցի մեջ, հիշեցնում է այն, ինչ արեց Հուստինիանոսը Մարտիրոպոլսի պարիսպների հետ։ Մեկ հիմքի վրա երեք պարիսպներ կառուցելը իսկապես համապատասխանում է պրոտեյխիզմային և երկհարկանի հիմնական պարսպին։ Անանուն Զրույցի նկարագրության համաձայն քաղաքի պարիսպները ներսից և դրսից նման էին 200 աստիճան ունեցող հսկայական սանդուղքի։*

---

[1] Հակոբ Կարնեցի, *էջ 37—38։*

[2] Ինճիճեան, Աշխարհագրութիւն, *էջ 59։ Այս երրորդ դեպքն է, երբ լեռը կոչվում է Գոհանամ՝ մեկ Երզնկայի մոտ, ապա՝ Սպերում և այստեղ։ Այծպտկունք հին անունը, ըստ երևույթին, դուրս է մղվել Ծողալարով։ Ինճիճյանի ասելով, ժողովուրդը* Գոճանամ *է կոչում ամեն մի սեպաձև և բարձր լեռ,* loc. cit.

[3] Խորենացի, Գ, *ծԹ, շրջափակեալ խոր փոսիւ, անդնդալիր հաստատեաց զհիմունս պատուարին, հմմտ. Հ ա ր ց մ ու ն ք, պեղեալ...զվէմս անտաշս խորագոյնս կրով զերեսս անդնդոց փախեցին* (sic) *եւ ի վերայ միոյ հիման կանգնեցին երիս պարիսպս։*

*Այդպիսի կառույցը, անկախ նրա նշանակությունից, որ մատնանիշ է արվում, աննպատակ է արդեն նրանով, որ քաղաքը պաշարող թշնամին հեշտությամբ կարող էր աստիճաններով բարձրանալ պարսպի վրա։ Ուստի այդ վկայությունը բավականին կասկածելի է։*

*Բուն աղբյուրի մեջ ըստ երևույթին խոսք է եղել կամ պարիսպներին կցված առանձին սանդուղքների մասին և կամ թե գործ ունենք քաղաքի պարիսպների երկհարկանիության վերաբերյալ չափազանցված պատկերացման հետ։ Ստորերկրյա անցքերի մասին եղած պատմությունը ևս, եթե այն չհաստատվի տեղում կատարվելիք հետազոտություններով, կարելի է համարել այն փաստի չափազանցում, որ քաղաքը չորս դուռ ուներ, որոնցից երկուսը բացվում էին դեպի հյուսիս, իսկ մյուսները՝ դեպի հարավ՝ Այծպտկունք։*

*Ինչպես Խորենացու, այնպես էլ Զրույցի նկարագրությունը, վերաբերում են Հուստինիանոսի կողմից վերանորոգված Թեոդոսուպոլսին։ Հետագայում քաղաքի պարիսպները բազմիցս խորտակվել և նորից վերականգնվել են*[1]*։ Չնայած դրան քաղաքի ներկա վիճակի հետ համեմատելիս որոշ հին գծեր, այնուամենայնիվ, երևում են։*

*Ներկայիս Էրզրումը բաղկացած է երեք մասից՝ միջնաբերդից, քաղաքից և արվարձաններից, կամ միջնաբերդից, բերդից և քաղաքից։ Քաղաքը միջնաբերդի հետ միասին գտնվում է բարձունքի վրա և արվարձաններից բաժանվում է կրկնակի պարիսպներով, խրամատով և լիցքով։ Պարիսպների բարձրությունը հասնում է 24—30 ոտնաչափի, իսկ լայնությունը՝ մինչև 5 ոտնաչափի. պարիսպներն ունեն 62 աշտարակ։ Քաղաքի շրջագիծը կես ժամվա ճանապարհ է։ Քաղաքի ամենաբարձր մասում, նրա արևմտյան անկյունում, գտնվում է միջնաբերդը, թուրքերեն՝ իչ-կալա, որը արևելյան կողմից շրջափակված է բարձր պարսպով։ Այդ մասը նման է քառանկյունու՝ 180 քայլ երկարությամբ և 80 քայլ լայնությամբ։ Նրա ներսը դատարկ տարածություն է, որտեղ կան միայն մեկ բարձր աշտարակ և մի քանի այլ շենքեր*[2]*։*

---

[1] *Կոստանդին Կոպրոնիմոս կայսրը Ը դարում գրավեց այն և հիմնահատակ քանդեց պարիսպները, Ասողիկ, էջ 132։ Ժ դարի կեսերին Հովհ. Չմշկիկը «պատառեաց զխանդակ քաղաքին եւ փլոյց զբարձրաբերձ աշտարակս» անդ., էջ 179։*

[2] *Բազմաթիվ ճանապարհորդներ են այցելել Էրզրում և նկարագրել այն։ Ամե-*

Ինչ վերաբերում է արվարձանին, ապա այն գտնվում է քաղաքի պարիսպներից դուրս և բաղկացած է չորս մասից կամ մահալից։ Արևելքից նրան հարում են վեց ոտնաչափ լայնություն ունեցող հին պարիսպների մնացորդները, իսկ նրանց առջևում նշմարվում են պատնեշի հետքեր[1]։

Իսկ որտե՞ղ է վերջանում հուստինիանոսյան Թեոդոսուպոլսի շրջագիծը։ Վերևում մենք տեսանք, որ Հուստինիանոսը Թեոդոսուպոլսում կառուցեց Աստվածածնի տաճարը՝ ἕν τε γὰρ τῇ Θεοδοσιουπόλει νεὼν τῇ θεοτόκῳ ἀνέθηκε։ Մինչև այժմ էլ քաղաքի գլխավոր եկեղեցին կոչվում է Աստվածածնի անունով։ Հայկական ավանդությունը նրա հիմնադրումը վերագրում է Դավթին և Մովսեսին, այսինքն՝ նրանց, որոնց հանձնարարվել էր քաղաքի կառուցումը։ Այս հանգամանքը ուղղակի ցույց է տալիս, որ ծագման տեսակետից որոշ կապ կա ներկայիս եկեղեցու և Հուստինիանոսի տաճարի միջև։ Մեզ թվում է, որ քաղաքի մոտերքում Հուստինիանոսի կառուցած 40 նահատակների վանքն էլ իր անվանումով որոշակի կապ ունի էրզրումում գտնվող այժմյան կըրխ-չեշմա՝ քառասունակնյա աղբյուրի և քաղաքից դուրս գտնվող կըրխ-դեյիրմանի՝ քառասուն ջրաղացի հետ։ Նույն կայսրը Նիկոպոլսում կառուցեց 45 նահատակների վանք։ Կարելի՞ է արդյոք վստահել Պրոկոպիոսին, թե Թեոդոսուպոլսի վանքը կոչվել է քառասուն նահատակների անունով, թե այդ անվանումը մի այլ ծագում ունի։

1653 թվականին Աստվածածնի եկեղեցին ուներ 15 քահանա և 10 սարկավագ։ Առաջինների թվին էր պատկանում Հակոբ Կարնեցին, որը մեզ թողել է իր հայրենի գավառի նկարագրությունը։ Նկատի ունենալով, որ Աստվածածնի եկեղեցին գտնվում է բերդի պարիսպներից դուրս՝ քաղաքի արվարձաններից մեկում, պետք է ենթադրել, որ հուստինիանոսյան հին պարիսպները նրանք են, որ շրջափակում էին արվարձանային մասերը, և որոնց մնացորդները

---

նալավ նկարագրությունը Ինճիճյանինն է, Աշխարհագրութիւն, 1806, էջ 65 և շար. ինչպես նաև Կոխինը, D-r K. Koch, *Reise im Pontischen Cebirge*, 1846, II. Մենք օգտվում ենք գլխավորապես Կոխի նկարագրությունից. Ինճիճյանը նշում է 72 աշտարակ Կոխի և Լինչի 62-ի դիմաց։

[1] Koch, II, p. 287, Die Grossartigen Uberreste einer Ringmauer... scheinen mir selbst älter zu sein, als die der Festung [und hatten 6 Fuss im Durchmessen, lagen aber in Trummer. Hinter ihnen ist ein ausgefüllter Wall.].

*հասել են մինչև մեր օրերը։ Մի ճանապարհորդ, որ 40-ական թվականներին այցելել է Էրզրում, արվարձանային պարիսպները համարում է ավելի հին, քան բերդինը։ Աստվածածնի եկեղեցու տեղը լուծում է այն հարցը, թե ինչ տարածություն է ունեցել Հուստինիանոսյան Թեոդոսուպոլիսը. հիմք չկա կարծելու, թե Հուստինիանոսը եկեղեցին կառուցել է իր ամրացրած քաղաքից դուրս։*

*Հուստինիանոսը միայն բարձրացրեց և ամրացրեց իրենից առաջ գոյություն ունեցող պարիսպները։ Դրանք ստեղծվել էին դեռևս նրա նախորդի՝ Անաստասի ժամանակ։ Այս կայսրը «կառուցեց քաղաքը՝ պարիսպների ներսում առնելով այն բլուրը, որի վրա կանգնած էր Թեոդոսիոսի ամրոցը»։ Այժմյան բերդապարիսպները ամենայն հավանականությամբ ճշգրտում են Թեոդոսյան ամրոցի գիծը։ Դրանից չի կարելի եզրակացնել, որ այդ պարիսպները այդքան հին ծագում ունեն։ Ըստ Խորենացու աշտարակներից մեկը կոչվում էր Թեոդոս կամ ավելի ճիշտ Թեոդոսյան*[1]*։ Ըստ երևույթին նկատի է առնվում մինչև այժմ էլ միջնաբերդում միայնակ կանգնած բարձր աշտարակը։ Նրան է վերաբերում նաև Ջրույցի «Խոսրովյան աշտարակ» արտահայտությունը*[2]*։ Թերևս Խորենացու վկայության մեջ կա պատմական ճշմարտություն այն մասին, թե Թեոդոսիոս կայսրին պատկանում է միայն միջնաբերդի և նրա աշտարակի կառուցումը։ Այն ժամանակ Անաստասի և, հետևաբար, Հուստինիանոսի պարիսպները հայտնվում են այն*

---

[1] *Եթե կարդանք՝ Թէոդոսի (փոխ. Թէոդոս) անուանեաց։*

[2] *Հակոբ Կարնեցին Թեոդոսուպոլսի նկարագրությունը անելիս օգտվում է Ջրույցից։ Խոսրովյան աշտարակները նա մեկնաբանում է մի բառով, որի իմաստը դժբախտաբար այնքան էլ պարզ չէ. «պտուճքն խոսրովային է, որ է չեշխանայ».* ششخانه, *հրազենի մի տեսակ է, որ գործ է ածված, ըստ երևույթին, զինանոցի իմաստով։ Միջնաբերդում՝ բարձր աշտարակի կողքին գտնվում էր զինանոցը* جبخانه *կամ վառոդի նկուղը։ Կարնեցին ջանում է Խոսրովյան աշտարակը նույնացնել զինանոցի հետ։*

*Միջնաբերդի այժմյան մթերանոցները աղերս ունեն նրանց հետ, որոնք Խորենացին կոչում է օգոստեոն։ Պրոկոպիոսը օգոստեոն է կոչում ֆորումը, հրապարակը* καλοῦσι δὲ Αὐγουσταῖον τὴν ἀγορὰν οἱ Βυζάντιοι *Aed.* I, 2 p. 181, *հմմտ.* Chr. Pasch. p. 529։ *Սրանով չէր սպառվում տերմինի իմաստը. նա կարող էր նշանակել և այն, ինչ որ մատնանշում է Խորենացին։* Augusteon-*ի իմաստների մասին, տե՛ս* Du Cange. *Famille Byzantine II*, Constantinopol Christiana, p. 70։

գծի վրա, որի ուղղությամբ այժմ անցնում են բերդի կրկնակ պարիսպները։ Ընդունելի է նաև այս կռահումը, թե դրա հետ մեկտեղ ընդունենք, որ Աստվածածնի եկեղեցին սկզբնապես կանգնած է եղել ամրոցում, բայց հետագայում՝ մահմեդական տիրապետության ժամանակ տեղափոխվել է քաղաքի արվարձանը[1]։ Այս հարցը կարող է վերջնականապես լուծվել միայն տեղում հնագիտական հետազոտություններ կատարելով։

Ամրաշինական տեխնիկայի տեսակետից կարևոր է նշել պաշտպանության հետևյալ երեք միջոցները. հիմնական պարիսպը՝ τεῖχος կամ περίβολος, նախապարիսպը՝ προτείχισμα և խրամատը՝ τάφρος[2]։ Ինչպես հիմնական, այնպես էլ առջևի պարիսպները պաշտպանված էին մի ամբողջ շարք աշտարակներով, որոնք ծառայում էին թշնամու գրոհները ետ մղելու հենակետ։ Պարիսպները վերջանում էին ատամներով։ Եթե ուզում էին պարիսպները բարձրացնել, ատամները լցնում էին քարերով՝ տալով սրահի տեսք և շարունակում էին բարձրացնել պարիսպը, որ կրկին վերջացնում էին ատամներով։ Սրահը անցնում էր շուրջանակի ամբողջ պարսպի երկարությամբ և ստացվում էր իսկական երկհարկանի պարիսպ[3]։ Պարիսպը պաշտպանվում էր սրահից, պարիսպների և աշտարակների վերևում։ Այդպես էին կառուցված Դարայի և Թեոդոսուպոլսի, կայսրության ծայրամասի այդ երկու ամենակարևոր ստրատեգիական պահակակետերի պարիսպները։ Սխալ կլիներ կարծել, թե ամրություններ կառուցելու վերոհիշյալ համակարգը Հուստինիանոսն է բերել Արևելք. կասկածից վեր է, որ այն տեղական կուլտուրայի սեփականությունն է։ Շատ հավանական է, որ հայոց լեզվի մեջ սովորական դարձած պարիսպ, պատվար, խանդակ կամ փոս բառերը արտահայտում են ամրության

---

[1] Ըստ Ինճիճյանի Աշխարհագր., էջ 69, քաղաքի արվարձանում Աստվածածնի անունով կան միմյանցից ոչ հեռու երկու եկեղեցի՝ մեկը կոչվում է Վերին, մյուսը՝ Ներքին։ Առաջինը կոչվում է նաև «միաբան Ածածին, սակս ի սմա լինելոյ միաբանութիւն Եզրի կաթուղիկոսի ընդ յունաց»։ Կարնեցին հիշատակում է միայն մեկ եկեղեցի. միաբան Ս. Ածածին անունով։ Այդ բացատրությունը հազիվ թե հիմք ունի. շատ հնարավոր է, որ նույնանուն երկրորդ եկեղեցու ծագումը, եթե նոր ժամանակներում չի առաջ եկել, արդյունք է լուսավորչական և հունադավան հայերի տարաձայնությունների։

[2] Ch. Diehl, *L'Afrique Byzantine*, p. 145.

[3] Texier et Pullan, *Byzantine architecture*, 1864, p. 54.

*երեք տեսակները, որ համապատասխանում են հունարեն* τεῖχος, προτείχισμα *և* τάφρος-*ին։*

*Ոչ բոլոր ամրություններն էին, որ ունեին վերոհիշյալ բոլոր կառույցները։ Առջևի լրացուցիչ պարիսպները սովորաբար կառուցվում էին խոշոր ամրությունների մոտ, որպեսզի շրջակայքի անպաշտպան բնակիչներին հնարավորություն տրվեր պաշտպանվել թշնամու հարձակման ժամանակ։ Դարայի մասին Պրոկոպիոսը ասում է, որ այդ քաղաքը շրջապատված էր երկու պարիսպով, ընդ որում ներքին պարիսպն անհամեմատ ավելի բարձր էր, քան արտաքինը։ Առաջինի բարձրությունը հասնում էր մինչև 60 ոտնաչափի, իսկ աշտարակներինը՝ 100 ոտնաչափի։ Երկու պարիսպների միջև ընկած տարածությունը հաշվվում էր 50 ոտնաչափից ոչ պակաս. Թշնամու ասպատակությունների ժամանակ «Դարայի բնակիչները սովորաբար այնտեղ էին քշում-բերում իրենց եզներն ու մյուս անասունները»*[1]*։*

*Ամրություններն ըստ իրենց մեծության լինում են մի քանի տեսակ՝ ամրացված մեծ քաղաքներ,* πόλεις civitates, *կարևոր ամրոցներ՝* φρουρά *կամ* castella, *աննշան ռեդուտներ՝* byrgi, *խրամատով շրջապատված ճամբար՝* castra *և լեռնանցքները փակող պարիսպներ՝* clisurae[2]*։ Ինչպես տեսանք, ամրությունների այս բոլոր տեսակները կային Հայաստանում։*

---

[1] Proc. *Pers.* II 13, p. 212.

[2] Ch. Diehl. ib. p. 185.

## ԳԼՈՒԽ VII

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ՔԱՂԱՔԱՑԻԱԿԱՆ ՎԵՐԱԿԱԶՄՈՒԹՅՈՒՆԸ

Հայկական հողերի վերակազմության տեսական դրդապատճառները՝ կապված ամբողջ կայսրության նահանգային ռեֆորմի հետ: Պետական մեքենայի խարխլվածությունը և դրա պատճառը ըստ Հուստինիանոսի: *Suffragium*-ը և նրա վերացումը. վարչական ռեֆորմ՝ նահանգների համակենտրոնացման համակարգով: Դատավարական ռեֆորմը: Նովելլա Հայաստանում չորս կառավարիչներ հաստատելու մասին: Նովելլայի վերլուծությունը: Նոր բաժանումներ՝ I, II, III և IV Հայք և նրանց սահմանները: Բարեփոխությունների փորձեր մինչև նովելլան: Սիտտասի և Թովմայի դերը ռեֆորմների գործում: Հայաստանում Հուստինիանոսի հետապնդած նպատակները: *Sacra commonitoria*-ն և հայերի մոտ ժառանգելու կարգին վերաբերող նովելլաները: Նովելլաների վերլուծությունը: Ինչպե՞ս հասկանալ նովելլաներում արծարծված կանանց իրավազրկությունը: Ամուսնության հարցը և օժիտը կայսրության օրենսդրության մեջ՝ φέρνη և δωρεά կամ *dos* և *donatio*, վարձանքն՝ *varđank*-ը և օժիտը՝ *ožit*-ը հայերի մոտ. հայկական պրոյգը և տուայրը՝ *proig* և *tovair* որպես հունական փոխառություն προίξ-ից և δωρεά-ից: Ամուսնական հին սովորույթների ժամանակակից վերապրուկները: Կանանց իրավազրկությունը տոհմային կալվածքներ ժառանգելիս: Աղխարհիզմը հայերի մոտ: Երկու երևույթներն էլ հատուկ են նաև արևմտաեվրոպական ֆեոդալիզմին: Նովելլաների բուն իմաստը: Նախարարական վարչակարգի կործանումը Հուստինիանոսի գլխավոր խնդիրներից մեկն էր: Արքունական գանձարանի շահը որպես բարենորոգչական գործունեության անմիջական դրդապատճառ ընդհանրապես և Հայաստանում՝ մասնավորապես:

*Հուստինիանոսի օրոք Հայաստանի քաղաքացիական վերակազմությունը շատ ավելի էական նշանակություն ունեցավ երկրի համար, քան զինվորական վերակազմությունը, քանի որ այն շոշափում էր կյանքի դարավոր կացութաձևը։ Ռեֆորմները հատուկ Նովելլայի ուժով սկսվեցին 536 թվականին։ Վերակազմության վերջնական նպատակը, անկասկած, երկրի քաղաքական և հասարակական յուրահատուկ կարգերի ոչնչացումը և նրա համեմակա-*

*նացումն էր։ Թվում էր, թե հռոմեականացված Հայաստանը Արևելքի մշտական սպառնալիքների դեմ կծառայեր որպես առավել հուսալի պատվար։ Հուստինիանոսը բնավ չէր թաքցնում իր ցանկությունը, որ «հայերը ամեն բանում հետևեն հռոմեական օրենքներին, և Հայաստանը ոչնչով չտարբերվեր կայսրությունից»։*

*Չնայած բարեփոխիչ կայսեր ասիմիլյատորական ձգտումների ակնհայտությանը, հայկական հողերի վերակազմության գաղափարը առաջին անգամ ծնունդ առավ, ըստ երևույթին, ոչ իբրև հայերի դեմ ուղղված բացառիկ մի միջոցառում, այլ առաջ եկավ բնականորեն՝ կապված Հուստինիանոսի վարչական ընդհանուր ռեֆորմների հետ։*

*Կայսեր ներքին քաղաքականությունը նույնչափ ուշագրավ է, որքան և արտաքինը։ Հուստինիանոսի գահ բարձրանալու ժամանակ կայսրությունն ապրում էր չափազանց ծանր օրեր։ Նրա մերձավոր նախորդների անհոգության հետևանքով պետության ներքին կառուցվածքն այնպիսի վիճակի էր հասել, որ բնավ վայել չէր մի հզոր կայսրության արժանապատվությանը և արդեն նկատվում էին քայքայման նշաններ. կաշառակերություն, արդարադատության բացակայություն, ժողովրդի վճարունակության անկում, երկրի աղքատացում՝ համատարած վտանգի ու անապահովության պայմաններում — ահավասիկ պետական կյանքի անմխիթար պատկերի ցցուն գծերը։ Վարչական բոլոր մարմինները վերակառուցման կարիք ունեին. պահանջվում էին վճռական միջոցներ պետությունը կործանումից փրկելու համար։ Ամեն ձևով ճնշված ու շահագործվող ժողովուրդը հուսահատության էր հասցվել. դժգոհությունն աճում էր օրավուր, և ամբողջ կայսրությունով մեկ ծավալվում էին հուզումներ։ Զանգվածային շարժումները, խռովություններն ու հաճախակի կրկնվող ապստամբությունները կայսրությանը անխուսափելի փլուզում էին սպառնում։ Անհրաժեշտություն էր զգացվում վերակառուցելու և թարմացնելու պետական կյանքի հիմնարկները. դրան էլ ձեռնամուխ եղավ Հուստինիանոսը գահ բարձրանալուց ութ տարի հետո։*

*535 թվականի ապրիլի 15-ին լույս տեսավ Հուստինիանոսի նշանավոր և իր բնույթով եզակի նովելլան[1], որի մեջ կայսրը ար-*

[1] *Nov.* VIII=Cons. 16. Η διάταξις περὶ τοῦ τοὺς ἄρχοντας χωρὶς τῆς οἱασοῦν δόσεως γίνεσθαι.

տասովոր անկեղծությամբ մերկացնում է պետական ծառայողների անկումը, նրանց բարքերի ապականությունը, բացահայտում չինովնիկական միջավայրի բոլոր խոցերը իրենց ամբողջ այլանդակություններով։ Պաշտոնյաների մեջ չափազանց տարածված էին կաշառակերությունն ու արծաթասիրությունից բխող բոլոր արատները՝ «Դրամասիրությունը մայրն է բոլոր չարիքների», τὴν φιλαργυρίαν πάντων εἶναι μητέρα τῶν κακῶν., — հայտարարում է կայսրը նույն նովելլայում։ Արծաթասիրությամբ վարակված էին բոլոր պաշտոնյաները, բայց ոչ թե մարդկային էության ապականության հետևանքով առհասարակ, այլ պետական պաշտոնյաներ կարգելու կորստաբեր, այսպես կոչված սուֆրագիալ սիստեմի պատճառով։ Թափուր տեղերը վաճառվում էին բացահայտ կերպով, համարյա թե աճուրդով։ Գոյություն ուներ մի սովորություն, ըստ որի պետական պաշտոն ստանալը զուգակցվում էր որոշակի գումար վճարելուն, որ կոչվում էր suffragium կամ δόσις։

Բնականաբար պաշտոնները տրվում էին նրանց, ովքեր մեծ գումար էին առաջարկում։ Սուֆրագիումից չէին խորշում նույնիսկ Հուստինիանոսին նախորդող կայսրերը[1]։ Նրանց օրինակին էին հետևում մյուս աստիճանավորները, որոնցից յուրաքանչյուրն իր հերթին կողոպտում էր իր ստորադրյալներին։ Վերջին հաշվով ամբողջ ծանրությունն ընկնում էր ազգաբնակչության վրա, որ օրինական հարկերից բացի, ստիպված էր վճարել նաև զանազան ապօրինի, բայց հարկադիր տուրքեր։

Դրամով իր համար տեղ գտած պաշտոնյան հույսը դնում էր այն բանի վրա, որ պաշտոնին տիրանալուց հետո ոչ միայն կկարողանա ետ գանձել իր վճարած սուֆրագիումը, այլև հարստանալ։ Քանի որ դրա համար ռոճիկը բավական չէր, ուստի նրանք դիմում էին հարստություն կուտակելու բռնի ու ապօրինի միջոցների։ Հաճախ սուֆրագիում վճարելու հնարավորություն չունենալով՝ ոմանք մեծ տոկոսներով պարտք էին վերցնում և երբեմն իրենց պաշտոնատեղն էին մեկնում պարտատիրոջ ուղեկցությամբ։ Իրերի այս աննորմալ վիճակը մարդկանց մղում էր ապօրինության, որն ընդունում էր դրամաշորթության, երեսպաշտության, բռնության ձև. այդ ամենը բացասաբար էր անդրադառնում արդարադատու-

[1] Պատմում են, որ նույնիսկ Հուստինիանոսը չի խորշել այդ տուրքերից, և Հովհաննես պրեֆեկտից վերցրել է 30 կենտինար։ Proc. Hist. arc. p. 119։

թյան վրա, որն իր հերթին նպաստում էր բարքերի քայքայմանը, վարկաբեկում իշխանությունների հեղինակությունը ժողովրդի գիտակցության մեջ, խարխլում ճշմարտության ու օրինականության հավատը։ «Ինչո՞ւ չգողանալ, եթե որևէ վտանգ չի սպառնում քեզ,— բացականչում է Նովելլայի հեղինակը,— կամ թե ինչո՞ւ չկողոպտել, եթե դրա համար ոչ ոքի պատասխան չես տալու։ Երբ նայելով իշխանություններին՝ տեսնում ես, որ նրանց մոտ ամեն ինչ դրամով է փոխանակվում, երբ այն համոզման ես գալիս, թե ամեն տեսակ հանցանք կարելի է հատուցել արծաթով։ Հենց սրանից էլ առաջ են գալիս մարդասպանություններն ու անառակությունները, ապստամբություններն ու հափշտակությունները, կանանց առևանգումները, խռովությունները հավաքույթներում, օրենքների և իշխանությունների քամահրանքը, որովհետև բոլորի մոտ էլ այն կարծիքն է ստեղծվել, թե իշխանությունները վաճառքի են հանված որպես ողորմելի ստրուկներ»[1]։

Կամայականությունից և անիշխանությունից հավասարապես տուժում էին բնակչության բոլոր խավերը։ Իշխանություններից հալածված՝ մայրաքաղաք էին փախչում «և՛ հոգևորականները, և՛ մագիստրոսները, և՛ հողատերերը, և՛ քաղաքի ու գյուղի բնակիչները», բոլորն անխտիր տրտնջում էին իրենց ճակատագրից, իշխանությունների հափշտակություններից ու վիրավորանքներից։ Ընդհանուր զայրույթը երբեմն մեկ այստեղ, մեկ այնտեղ՝ քաղաքներում ու գյուղերում վեր էր ածվում խռովությունների։

Այդ անկարգություններից քիչ չէր տուժում նաև պետական գանձարանը։ Նյութական բարեկեցությունից զրկված ազգաբնակչությունը այնպիսի ողբալի վիճակի էր հասել, որ մեծ դժվարությամբ էր վճարում «սովորական, օրենքով սահմանված, պետական տուրքերը»։ Տուրքերի անկանոն գանձումը ամենից ավելի էր անհանգստացնում Հուստինիանոսին։ Աշխարհակալական քաղաքականությունը, որ նրան պատերազմների մեջ էր քաշել Արևելքում և Արևմուտքում, պահանջում և կլանում էր մեծ գումարներ, ինչպես այդ մասին հայտարարում է ինքը՝ կայսրը, և պետական եկամուտների կանոնավոր գանձումը համարվում էր առաջնակարգ կարևորություն ներկայացնող հարց։ Իր նովելլաների մեջ Հուստինիանոսը բազմիցս

---

[1] Proc. *Hist. arc.*-ի ներածությունը։

անդրադառնում է այդ հարցին՝ ընդգծելով նրա հսկայական նշանակությունը։ Ցինանների նկատմամբ ունեցած նրա մտահոգությունը վերափոխումների գլխավոր խթաններից մեկն էր։

Անհրաժեշտ էր նախ և առաջ արմատախիլ անել չարիքի գլխավոր արմատը՝ պաշտոնները վաճառելու բարոյալքող կարգը։ Կայսրը գիտակցում էր, որ կարգ ու կանոնը կվերականգնվի այն դեպքում, «եթե նահանգի գլուխ կանգնած անձինք մաքուր պահեն իրենց ձեռքերը և հրաժարվեն ամեն տեսակի ընծաներ ընդունելուց՝ գոհանալով միայն պետական գանձարանից ստացած ռոճիկով։ Իսկ այդ հնարավոր կլիներ միայն այն դեպքում, եթե նրանք էլ պաշտոններ ստանային ձրի, առանց suffragium-ի և այլ ծախսերի»[1]։

Հուստինիանոսը վերացրեց suffragium-ը և վերականգնեց հին սովորությունը, որի համաձայն նոր նշանակված կառավարիչները պարտավորվում էին միայն որոշ գումար վճարել այն հիմնարկություններին, որոնք մասնակցում էին նրանց նշանակմանը, այն էլ որպես մի տեսակ վարձատրություն անհրաժեշտ փաստաթղթերը ձևակերպելու և ուղարկելու համար։ Յուրաքանչյուր կառավարչի համար խստորեն սահմանված էր գումարի չափը։ Բացի մի քանի սպեկտաբիլ նահանգներից, մնացածները բաժանվում էին consulares հյուպատոսական և correctoriales կամ praesides պրեզիդեալ նահանգների, որոնցից առաջինները ավելի էին վճարում, քան երկրորդները։ Ութերորդ նովելլային կցված ցուցակից երևում է, որ առաջին կարգով վճարում էին II Հայքի, Մեծ Հայքի և Հելլենոպոնտոսի կառավարիչները, իսկ երկրորդ կարգով՝ I Հայքի կառավարիչը[2]։

Ութերորդ նովելլայի հետ միաժամանակ հրապարակվեց

---

[1] Proc. *Hist. arc.* p. 119. καθαραῖς χρῆσθαι ταῖς χερσὶ καὶ παντὸς ἀπέχεσθαι λήμματος.

[2] *Nov.* VIII, *հավելված,* § 22 ἀπὸ τοῦ ἄρχοντος 'Αρμενιάς δευτέρας. § 23 ἀπὸ τοῦ ἄρχοντος 'Αρμενίας μεγάλης. § 43 ἀπὸ τοῦ ἄρχοντος 'Αρμενίας πρώτης. § 26 ἀπὸ τοῦ ἄρχοντος 'Ελενοπόντου. *Մուծումները կատարվում էին կայսեր գրասենյակ* in sacro cubiculo-*ի առաջին քարտուղարին,* tribunorum notariorum, *նրա օգնականին,* eius adiutori-*ին, նաև պրետորիական պրեֆեկտի դիվանատուն* officio praef. praet։ *Ըստ առաջին կարգի վճարումները համապատասխանաբար կատարվում էին 9, 24, 3 և 40 սոլիդ, իսկ ըստ երկրորդի՝ 9, 15, 3 և 36 սոլիդ։*

De mandatis principis նովելլան, որի մեջ մանրամասն սահմանված էին նահանգային կառավարչի պարտականությունները, որոնց միաժամանակ խստորեն զգուշացվում էր ղեկավարվել հիշյալ հրահանգներով։

Նահանգային կյանքը կանոնավորելու համար Հուստինիանոսի այդ նույն նպատակով ձեռք առած միջոցառումների թվում պետք է նշել հատկապես վարչական բաժանումների փոփոխությունը։ Ութերորդ նովելլան վերացրեց Պոնտական և Ասիական փոխանորդությունները (vicariat)։ Այդ ժամանակ Ասիական փոխանորդը միաժամանակ Պակատյան Փռյուգիայի պրեզիդն էր։ Հուստինիանոսը նրան վերապահեց միայն Փռյուգիայի կառավարչի պաշտոնը կոմեսի տիտղոսով՝ վերացնելով դիոցեզի մյուս նահանգների վրա ունեցած իշխանությունը։ Նա նույն ձևով վարվեց նաև Պոնտիկայի փոխանորդի հետ, վստահելով նրան միայն Գաղատիան՝ միավորելով նրա ձեռքում քաղաքացիական և զինվորական իշխանությունները։ Նույն ձևով սահմանափակվեցին նաև փոխանորդին հավասարազոր Արևելքի կոմեսի լիազորությունները՝ պահպանելով նախկին տիտղոսը։ Թե զինվորական և թե քաղաքացիական իշխանության ներկայացուցիչներին արգելվեց նաև իրենց ենթակա նահանգներում տեղակալներ τοποτηρητὰς ունենալ[1]։

Այդ միջոցառումները ուղղված էին խիստ հիերարխիականության դեմ, որը պարարտ հող էր հանդիսանում վերոհիշյալ չարաշահումների համար. պրեֆեկտները իրենց պաշտոնը գնում էին կայսրից, փոխանորդները՝ պրեֆեկտներից, նահանգային կառավարիչները՝ փոխանորդներից և վերջապես կառավարիչները իրենց տեղակալներ նշանակելով՝ իրենց հերթին պաշտոն տալու համար նրանցից դրամ էին շորթում։ Փոխանորդության վերացումով վերանում էր հիերարխիական սանդուղքի աստիճաններից մեկը, և նահանգների պետերը ուղղակի կապվում էին պրեֆեկտների հետ։

Այնուհետև Հուստինիանոսը ընդարձակեց նահանգային կառավարիչների լիազորությունները, բարձրացրեց նրանց spectabilis-ի աստիճանի և դրանով իսկ նրանց որոշ չափով անկախ դարձրեց պրեֆեկտներից՝ ի վնաս հիերարխիականության։

Հռոմեական ոգով տոգորված՝ Հուստինիանոսը ձգտում էր շատ բաներում նմանվել հին գործիչներին։ Նա ենթադրում էր, որ

[1] ib. c. 2—5։

հին Հռոմը իր վեհության համար մասամբ պարտական էր երկրի նահանգային կառուցվածքին։ Նրա կարծիքով փոքր Հռոմը երբեք չէր դառնա համաշխարհային հզոր տերություն, եթե իրենց նկատմամբ հարգանք ներշնչելու նպատակով նահանգներում չնշանակեին բարձր դիրք ունեցող կառավարիչներ և չշրջապատեին նրանց շուքով՝ նրանց զինվորական և քաղաքացիական լիակատար իշխանություն տալով[1]։ Այդպիսի համոզմունքի բնական հետևանքը եղավ այն, որ ի տարբերություն Դիոկղետիանոսի ժամանակվանից գործող սկզբունքի, ըստ որի կայսրությունը աստիճանաբար բաժանվում էր մանր մասերի, իսկ քաղաքացիական ու զինվորական իշխանությունները անջատվում իրարից, Հուստինիանոսը կիրառեց կայսրության հողերն ու իշխանությունները կենտրոնացնելու սկզբունքը։

Ութերորդ նովելլայից անմիջապես հետո, 535 և այնուհետև 536 թվականներին, հրապարակվեցին նահանգների վերակազմությանը վերաբերող մի շարք այլ նովելլաներ։ Պափլագոնիան, որ Հուստինիանոսի կարծիքով անհիմն կերպով բաժանված էր Պափլագոնիայի և Հոնորիադայի, վերականգնվեց իր նախկին սահմաններում և դրվեց spectabilis-ի[2] աստիճան ունեցող պրետորի իշխանության տակ։ Նա միավորեց երկու Կապադովկիաները և նրանց կառավարումը հանձնեց նույնպես spectabilis-ի աստիճան ունեցող մեկ պրոկոնսուլի (փոխհյուպատոսի)[3]։ Պողեմոնական Պոնտոսը և Հելլենոպոնտոսը միավորվեցին Հելլենոպոնտոս անունով մեկ նահանգի մեջ։ Նրա կառավարիչը կոչվում էր մոդերատոր և ուներ միևնույն աստիճանը[4]։ Նման փոփոխությունների ենթարկվեցին նաև մյուս դիոցեզների նահանգները[5]։ Այդ ժամանակ էլ ընդհանուր վերակազմության կողքին երևան եկավ նաև հայկական հողերի վերակազմության մասին նովելլան։

Նահանգները վերակազմելիս Հուստինիանոսը առաջնորդվում էր ոչ միայն վարչական նկատառումներով, այլ նաև դատարանի

[1] *Nov.* 24.

[2] *Nov.* 29.

[3] *Nov.* 30.

[4] *Nov.* 28.

[5] *Nov.* 24. Praetor Pisidiae. *Nov.* 25, Praetor Lycaoniae. *Nov.* 27, Comes Isaurae. *Nov.* 102, Moderator Arabiae. *Nov.* 103, Proconsul Palestinae. Nov. 104, Praetor Siciliae.

շահերով։ Որպեսզի հասկանալի լինեն նրա ռեֆորմներն ընդհանրապես և Հայաստանում մասնավորապես՝ անհրաժեշտ է նախապես ծանոթանալ դատական օրենսդրության գեթ ընդհանուր ուրվագծին։

Արդարադատությունը Հռոմեական կայսրության մեջ առանձնացված չէր որպես հատուկ գերատեսչություն։ Վարչական մարմինները իրենց մյուս պարտականությունների հետ իրականացնում էին նաև դատավարությունը։ Կառավարիչներից յուրաքանչյուրը, անկախ իր կոչումից ու աստիճանից, միաժամանակ հանդիսանում էր նաև judex։ Կառավարիչների երեք տարբեր աստիճաններին համապատասխան տարբերում էին երեք դատական ատյան՝ սովորական կամ կլարիսիմյան, սպեկտաբիլյան և իլյուստրային՝ judices ordinarii, spectabiles, illustres[1]։ Բարձրագույն ատյանը հանդիսանում էր կայսեր՝ արդարադատության գերագույն պահապանի դատարանը։ Սովորական դատարանից ցած կանգնած էին քաղաքապետական մագիստրատները, բայց նրանց իրավասությունը շատ սահմանափակ էր և կարելի է ասել, որ առհասարակ դատական գործերը քննվում էին առաջին ատյանում՝ սովորական դատավորների կողմից։ Նրանց էին ուղարկվում նաև հիշյալ մագիստրատների վճիռների դեմ տրված բեկման բողոքները, իսկ նրանց միջոցով էլ ուղարկվում էին սպեկտաբիլյան դատավորներին, այսինքն՝ փոխանորդներին։ Պրետորիաների պրեֆեկտների վճիռը վերջնական էր և բեկման ենթակա չէր։ Մինչդեռ փոխանորդների վճիռները ենթակա էին բողոքարկման, ընդ որում այդ բողոքները ուղարկվում էին ոչ թե պրեֆեկտի դատարանը, ինչպես պետք էր սպասել, այլ ուղղակի կայսրին, իբրև sacro judici:

Այդպես էր մինչև Հուստինիանոսը։ Նրա օրոք դատական գործերի հաջորդականությունը ենթարկվեց որոշ փոփոխության։

Սկսած Դ դարի երկրորդ կեսից՝ քաղաքներում, ի հակակշիռ մագիստրատների, գոյություն ուներ ἔκδικος կամ defensor civitatis հատուկ կոչումը։ Նրա պարտականությունների մեջ էր մտնում չքավորների շահերի պաշտպանությունը մագիստրատների՝ իբրև ունևոր դասակարգի մարմինների դեմ։ Դեֆենզորները, սակայն, հետզհետե կորցրին իրենց նշանակությունը։ Նրանք ժողովրդի աչքից այնքան ընկան, որ Հուստինիանոսի բառերով ասած, նրա

---

[1] Bethman-Hollweg, *Civilprocess* III, § 131.

ժամանակ defensor-ը ավելի շուտ հնչում էր որպես վիրավորական մականուն, քան պատվավոր տիտղոս[1]։ Կայսրը վերականգնեց դեֆենզորների անունն ու դիրքը, և եթե առաջ նրանք իրավասու էին քննելու 50 սկուտից ոչ ավելի գումարի դանգատներ[2], ապա այժմ նա բարձրացրեց նրանց իրավասությունը մինչև 300 սկուտի[3]։ 300 սկուտից ավելի գումարի հայցերն ու գանգատները ենթակա էին նահանգային կառավարչի դատարանին։

Հուստինիանոսի նահանգային ռեֆորմների հետևանքով կառավարիչները, հազվագյուտ բացառությամբ, բարձրացվեցին սպեկտաբիլի աստիճանի և դարձան judices spectabiles։ Մեր դիոցեզում նրա 11 նահանգներից, հայկական գավառների հետ միասին, կազմվեցին սպեկտաբիլ իշխանություններ։ Դրանով փաստորեն վերացվեցին judices ordinarii-ն և նրանց փոխարինեցին defensor-ները։

Հուստինիանոսի օրենսդրությամբ սպեկտաբիլյան դատավորները իրավասու էին բողոքարկման ոչ ենթակա վճիռներ կայացնել 500 սկուտից ոչ ավելի գումարի վեճերի վերաբերյալ, իսկ եթե հայցի գումարները ավելի էին դրանից, ապա դատարանի վճիռը կարող էր բողոքարկվել պրեֆեկտի և քվեստորի դատարանում։ Այս հարցին նվիրված նովելլան կորել է, և նրա մասին մենք գիտենք այն հատուկենտ մեջբերումներից, որ հանդիպում են վերջին օրենսդրությունների, ի միջի այլոց նաև հայկական հողերի վերակազմությանը վերաբերող նովելլայի մեջ[4]։

---

[1] *Nov. 37*։

[2] C. J. *I 55, 1*։

[3] *Nov.* 15, c. 3, § 2, *535 թ. հուլիսի 17-ը*։

[4] *Այդ մասին ամենավաղ հիշատակությունը մենք գտնում ենք 535 թվի մայիսի 18-ի 24-րդ և 25-րդ նովելլաների մեջ։ Նույն տարվա ապրիլի 15-ին մեզ հետաքրքրող նովելլան դեռ հայտնի չէր, որովհետև Գաղատիայի և Փռյուգիայի կոմեսներ նշանակելու մասին այն ժամանակ հրապարակված նովելլաներում այդ կոմեսների դատական իրավունքների մասին խոսք չկա։ Նովելլան հրապարակվել է հավանորեն 535 թ. ապրիլի 15-ին և մայիսի 18-ի ժամանակամիջոցում։ Որոշ ժամանակ անց, 536 թ. հունվարին, հրապարակվեց* De appellationibus *կոչված նովելլան, որտեղ հեղինակը դանգատվում է, որ «անկարևոր գործերի համար անհանգստացնում են բարձրագույն դատարաններին և աննշան դատավարությունների համար մարդիկ ուժից վեր ծախսեր են անում, այնպես որ երբեմն վեճի առարկա գումարը չի բավարարում ծածկելու դատական ծախսերը»։ Դրանից հետո մինչև 10 ֆունտ ոսկու հասնող վեճերի բողոքները պետք է ուղարկվեն ոչ թե մայրաքաղաք, այլ մոտակա սպեկտաբիլյան դատարան։ Քանի որ մինչև 536 թ.*

*Հիշյալ ընդհանուր շարժառիթները, որոնք Հուստինիանոսի վերափոխությունների հիմք են հանդիսացել, մեզ հասկանալի են դարձնում նաև այն ռեֆորմները, որ նա կատարեց Հայաստանում։ Մեջ ենք բերում Հայաստանում չորս կառավարիչներ հաստատելու վերաբերյալ 31-րդ նովելլայի բնագիրն ու թարգմանությունը ամբողջությամբ։*

Περὶ διατυπώσεως τῶν τεσσάρων ἀρχόντων ᾿Αρμενίας.
῾Ο αὐτὸς βασιλεὺς ᾿Ιωάννῃ τῷ ἐνδοξοτάτῳ ἐπάρχῳ τῶν ἱερῶν τῆς Ἕω πραιτωρίων τὸ δεύτερον ἀπὸ ὑπάτων καὶ πατρικίῳ.

ՆԵՐԱԾՈՒԹՅՈՒՆ

*Այն ամենը, ինչ որ լքված և անկարգ վիճակի մեջ է, եթե կարգի է բերվում և լավ դասավորվում, բոլորովին այլ տեսք է ընդունում, քան առաջ. անճոռնին դառնում է հաճելի, տգեղը՝ գեղեցիկ, անկազմակերպ ու խառնակ բանը կարգավորվում և պարզորոշ է դառնում։ Տեսնելով, որ այս թերությունը հատուկ է նաև Հայոց աշխարհին, մենք հարկ համարեցինք վերակազմել այն միատեսակ ձևով և բարեկարգելով՝ տալ նրան պատշաճ զորություն, հաստատել այնտեղ արժանավայել կարգ ու կանոն։*

Τὰ μάτην κείμενα καὶ ἐκκεχυμένος εἰ πρὸς τὴν προσήκουσαν ἀφίκοιτο τάξιν καὶ διατεθείη καλῶς, ἑτερά τε ἀνθ᾿ ἑτέρων τὰ πράγματα φαίνοιτο, καλλίω τε ἐκ χειρόνων, ἐξ ἀκόσμων τε κεκοσμημένα, διηρθρωμένα τε καὶ διακεκριμένα ἐκ τῶν ἔμπροσθεν ἀτάκτων τε καὶ συγκεχυμένων. τοῦτο καὶ ἐπὶ τῆς ᾿Αρμενίων χώρας ἁμαρτανόμενον εὑρόντες ᾠήθημεν χρῆναι πρὸς μίαν ἁρμονίαν τάξαι αὐτήν, καὶ ἐκ τῆς εὐταξίας ἰσχύν τε αὐτῇ δοῦναι τὴν προσήκουσαν, τάξιν τε ἐπιθεῖναι τὴν πρέπουσαν.

---

*Հոնվարը դեռ չէին ավարտվել նահանգներում սպեկտաբիլ իշխանությունների հաստատելու ռեֆորմները, այդ պատճառով էլ հայկական գավառներից դիմում են Հելլենոպոնտոսի մոդերատորին որպես ամենամոտիկ սպեկտաբիլի։ Առավելագույն գումարը 500 սկուտի փոխարեն կազմում էր 10 ֆունտ ոսկի, այսինքն՝ 720 սկուտ, մի հանգամանք, որ բացատրվում է կամ ոսկու արժեքի ժամանակավոր անկումով և կամ նրանով, որ դատական գործերի վարումը տարբեր նահանգներում ավելի թանկ էր նստում, և այդ պատճառով էլ գումարը դիտավորյալ կերպով ավելացված է։*

## ԳԼՈՒԽ I

*Այդ նկատառումներով մենք որոշեցինք կազմել* **չորս Հայք. Ներքին,** *որի մայրաքաղաքը իր գեղեցկությամբ փայլում է արդեն մեր բարեպաշտ անունով, իսկ առաջ կոչվում էր Վազան կամ* **Լեոնտոպոլիս:** *Մենք շնորհեցինք նրան (Հայաստանին) պրոկոնսուլություն և կառավարիչ նշանակեցինք Ակակիոս սքանչելուն: Այդ պաշտոնը մենք հայտարարում ենք սպեկտաբիլ՝ օժտելով նրան այն ամենով, ինչ որ սովորաբար պետք է ունենա փոխհյուպատոսությունը: Զարդարում ենք նրան պրոկոնսուլի (փոխհյուպատոսի) գահով* (στολη) *և թույլատրում ենք ունենալու այդ կոչմանը շնորհվող բոլոր գերադասությունները: Մենք հատկացնում ենք նրան հետևյալ քաղաքները՝* **Թեոդոսուպոլիսը,** *որ առաջ էլ նրան էր պատկանում,* **Սատաղը, Նիկոպոլիսը, Կողոնիան՝** *վերցնելով դրանք այսպես կոչված* **Առաջին Հայքից,** *ինչպես նաև Տրապիզոնը և Կերասունը, որ մտնում էին նախկին Պոլեմոնյան Պոնտոսի մեջ: Դրանցից մի քանիսը վերցնելով նահանգի պայծառափայլ կառավարչից, իսկ մյուսները՝ գերամեծար մոդերատորից և յոթ քաղաքներից ու նրանց շրջակա հողերից, կազմում ենք մի ամբողջ նահանգ:*

*§1.* **Երկրորդ Հայքը** *կազմվում է նախկին Առաջին Հայ-*

Τοιγαροῦν τέσσαρας εἶναι πεποιήκαμεν Ἀρμενίας, τὴν μὲν ἐνδοτάτην, ἧς ἡ μητρόπολις τῇ τῆς εὐσεβοῦς ἡμῶν προσηγορίας ἐπωνυμίᾳ κατακεκόσμηται πρότερον Βαζανὶς ἤτοι Λεοντόπολις καλουμένη, ἥνπερ καὶ ἀνθυπατείᾳ τετιμήκαμεν, ἧς Ἀκάκιος προέστηκεν ὁ μεγαλοπρεπέστατος, σπεκταβιλίαν τε ἀποφήναντες τὴν ἀρχὴν καὶ πάντα δόντες αὐτῇ ὁπόσα προσῆκόν ἐστιν ἀνθυπατείαν ἔχειν· στολῇ τε γὰρ αὐτὴν κατεκοσμήσαμεν ἀνθυπάτου καὶ πάντα ἀκόλουθα τούτοις ἔχειν διετυπώσαμεν· καὶ πόλεις αὐτῇ δεδώκαμεν Θεοδοσιούπολίν τε, ἣν καὶ πρότερον εἶχε, Σάταλάν τε καὶ Νικόπολιν καὶ Κολώνειαν ἐκ τῆς πρώτης Ἀρμενίας καλουμένης λαβόντες, Τραπεζοῦντά τε καὶ Κερασοῦντα ἐκ Πόντου τοῦ πρῴην Πολεμωνιακοῦ καλουμένου, χωρίσαντες αὐτῶν τὰς μὲν τοῦ λαμπροτάτου τῆς ἐπαρχίας ἄρχοντος, τὰς δὲ τοῦ περιβλέπτου μοδεράτωρος, ἑπτά τε πόλεσι τὴν ὅλην ἐπαρχίαν περιστήσαντες καὶ ὁπόσα τῆς περιοικίδος ἐστὶν αὐτῶν.

§ I. Δευτέραν δὲ ἐτάξαμεν Ἀρμενίαν τὴν ἔμπροσθεν

*քից,* Սեբաստիա *առաջնակարգ քաղաքով։ Նրան հատկացնում ենք* Սեբաստուպոլիսը, *որ առաջ էլ պատկանում էր նրան, բացի դրանից՝ նախկին Պոլեմոնական Պոնտոսից՝* Կոմանան, Հելլենոպոնտոսից՝ Զելան, *ինչպես նաև* Բրիսան: *Այսպիսով վերոհիշյալ նահանգը կազմվում է հինգ քաղաքից։ Իսկ այնտեղ գոյություն ունեցող պրեզիդալ իշխանությունը մնում է նախկին ձևով, և նրա կառավարչին ավելի բարձր կոչում չի շնորհվում, այլ վերապահվում է նրան այն, ինչ ուներ առաջ։*

§ 2. *Այնուհետև, հիմնում ենք նաև* Երրորդ Հայքը, *որ առաջ կոչվում էր* Երկրորդ, *որի կենտրոնն է* Մելիտենեն *հին քաղաքը, հրաշալի դիրք և օդ ունեցող մի սքանչելի քաղաք, որ գտնվում է Եփրատի հոսանքից ոչ հեռու։ Մենք այժմ անհրաժեշտ ենք գտնում հզորացնել այդ Հայաստանը և այն վերակառուցել գերամեծար նահանգների ձևով։ Նրա կառավարչին մենք շնորհում ենք Հուստինիանոսի կոմես տիտղոսը և նշանակում 700 սկուտ ռոճիկ, նրա օգնականին՝ 72 սկուտ, իսկ դրասենյակային պաշտոնական ծախսերի համար՝ 60 սկուտ. տալիս ենք նրան այն ամենը, ինչ սահմանված է այդ կարգի պաշտոնների համար։ Այսպես կոչված տաքսիոտները շարու-*

πρώτην καλουμένην, ἧς ἡγεῖται Σεβάστεια πόλις, αὐτῇ προσνείμαντες τήν τε τῶν Σεβαστοπολιτῶν ἣν καὶ πρότερον εἶχε, καὶ πρός γε Κόμανά τε ἐκ τοῦ καλουμένου φθμην Πολεμωνιακοῦ Πόντον, καὶ Ζήλαν ἐκ τοῦ Ἑλενοπόντου, καὶ μὴν καὶ Βρίσαν, ὥστε ἐν πέντε πόλεσιν εἶναι τὴν ἐπαρχίαν ταύτην, καὶ τὴν ἀρχήν, ἡγεμονίαν οὖσαν, καταλιπόντες ἐπὶ τοῦ προτέρου σχήματος, καὶ τὸν ἄρχοντα αὐτῆς οὐδενὶ κοσμήσαντες ὀνόματι μείζονι, ἀλλ᾽ ὃ πρότερον εἶχε, τοῦτο αὐτῷ καταλιπόντες.

§ 2. Ἐπὶ τούτοις τε τρίτην Ἀρμενίαν κατεστησάμεθα τὴν πρότερον δευτέραν, ἧς ἡγεῖται Μελιτηνὴ πόλις ἀρχαία, πόλις ἐπίσημος ἐν καλῷ τε γῆς καὶ ἀέρος κειμένη, καὶ οὐδὲ πόῤῥω διεστῶσα τῶν τοῦ Εὐφράτου ῥευμάτων. ταύτην ᾠήθημεν δεῖν κατὰ τὸ παρὸν αὐξῆσαι καὶ εἰς τὸ τῶν σπεκταβιλίων μεταστῆσαι σχῆμα, τόν τε ἄρχοντα ταύτης Ἰουστινιανὸν ὀνομάσαι κόμητα, δοῦναί τε αὐτῷ καὶ ὑπὲρ σιτήσεων solidos septingentos, καὶ τῷ γε αὐτοῦ παρέδρῳ solidos septuaginta duos, καὶ τῇ γε αὐτοῦ τάξει solidos sexaginta, ἅπαντα ἔχειν ὁπόσα τῶν τοιούτων ἐστὶν ἴδια

նակելու են զբաղվել նրանով, ինչ որ առաջ, իսկ գլխավորապես վարելու են հարկահավաքության գործը։ Փոխվում է միայն նրանց անունը՝ կոչվելու են comitiani կոմեսական. մնացած ամեն ինչ մնում է այնպես, ինչպես տաքսիոտների ժամանակ։ Նրան տրըվում են Արկա, Արաբիսոն, Արիարաթիա և մյուս Կոմանան (որ այլ կերպ կոչվում է Ոսկեղեն) և Կուկուսոն քաղաքները, որոնք առաջ էլ նրա սահմանների մեջ էին գտնվում՝ կազմվելով վեց քաղաքների հողերից։

θρόνων. τούς τε πρῴην ὀνομαζομένους ταξεώτας πάντα μὲν πράττειν ὁπόσα καὶ ἔμπροσθεν, καὶ μάλιστα περὶ τὴν δημοσίαν εἴσπραξιν ἠσχολῆσθαι, εἰς δὲ τὴν τῶν κομητιανῶν προσηγορίαν μεταβαλεῖν, πάντων αὐτοῖς οὕτω φυλαττομένων, ὡς ἡνίκα ταξεῶται καθεστήκεσαν. πόλεις δὲ ὑπεκλίναμεν αὐτῇ τοῦτο μὲν Ἄρκαν καὶ Ἀραβισσόν, τοῦτο δὲ Ἀριαράθειαν, καὶ Κώμανα ἑτέραν (καλοῦσι δὲ αὐτὴν καὶ Χρυσῆν), καὶ Κουκουσόν, ἃς καὶ πρότερον εἶχεν ἐν ἕξ πόλεσι συνεστῶσα.

§ 3. Հիմնում ենք նաև Չորրորդ Հայքը, որ մինչև այժմ չուներ նահանգային վարչակարգ։ Բնակեցված լինելով զանազան ազգություններով՝ նա կրում էր մեզ համար խորթ անուններ՝ Սոփանենե, Անզիտենե, Սոփենե, Հաշտիանենե, Բալաբիտենե և գտնվում էր սատրապների իշխանության տակ։ Այս իշխանության անվանումը ոչ հռոմեացիներից է ծագում և ոչ էլ մեր նախորդներից, այլ մտցված է ուրիշ պետության կողմից։ Այդ նույն երկրում մենք հաստատում ենք մեր քաղաքացիական վարչակարգը՝ նշանակելով քաղաքացիական կառավարիչ, և նրան տալիս Մարտիրոսուպոլիս քաղաքն ու Կիթառիճ

§.3. Συνεστησάμεθα δὲ καὶ τετάρτην Ἀρμενίαν, ἣ πρότερον οὐκ εἰς ἐπαρχίας συνέκειτο σχῆμα, ἀλλὰ τῶν τε ἐθνῶν ἦν καὶ ἐκ διαφόρων συνείλεκτο βαρβαρικῶν ὀνοματων, Τζοφανηνή τε καὶ Ἀνζητηνὴ ἢ Τζοφανὴ, καὶ Ἀσθιανηνὴ (ἡ) καὶ Βαλαβιτηνὴ καλουμένη καὶ ὑπὸ σατράπαις οὖσα. ἀρχῆς δέ ὄνομα τοῦτο ἦν οὐδὲ Ῥωμαϊκὸν οὐδὲ τῶν ἡμετέρων προγόνων, ἀλλ' ἐξ ἑτέρας πολιτείας εἰσενηνεγμένον. κἀκείνην τοίνυν ἀρχῆς πολιτικῆς ἐκοσμήσαμεν σχήματι, ἄρχοντά τε πολιτικὸν ἐγκαταστήσαντες, καὶ πόλιν τε αὐτῇ τὴν Μαρτυροπολι-

*բերդը։ Նա պատկանում է սովորական նահանգների կարգին, որովհետև մենք այն դարձրինք կոնսուլական։ Այսպիսով՝ կա չորս Հայք, որոնցից երկուսը սպեկտաբիլ են և կառավարվում են մեկը պրոկոնսուլով, մյուսը՝ կոմեսով, ընդ որում պրոկոնսուլ է հանդիսանում Առաջին Հայքի կառավարիչը, իսկ կոմես՝ Երրորդինը։ Իսկ Երկրորդ և Չորրորդ Հայքի կառավարիչները համարվում են սովորական։ Մենք արդեն հոգացողությամբ կարգադրել ենք, որ մինչև 500 սկուտի բողոքներն ուղարկվեն ոչ թե երջանիկ քաղաքը, այլ մոտակա սպեկտաբիլ իշխանություններին։ Այդ պատճառով էլ մենք որոշում ենք, որ Երկրորդ Հայքից եկող բողոքները ուղարկվեն Առաջին Հայքի կառավարչին, այսինքն՝ պրոկոնսուլին, ուրեմն՝ Սեբաստիայի միջոցով, իսկ Երրորդ Հայքի կոմեսին, որ նստում է Մելիտենեում, մինչև նշված գումարի բողոքները ուղարկվեն Չորրորդ Հայքից։*

τῶν καὶ τὸ Κιθαριζὸν δόντες φρούριον. καὶ αὐτὴ δὲ ἐν τῷ τῶν ὀρδιναρίων ἀρχῶν κατέστη σχήματι κονσουλαρία παρ ἡμῶν γενομένη, ὥστε τεσσάρων Ἀρμενιῶν οὐσῶν δύο μὲν εἶναι σπεκταβιλίας, τήν τε τοῦ ἀνθυπάτου τήν τε τοῦ κόμητος, καὶ ἀνθύπατον μὲν εἶναι τὸν τῆς πρώτης ἡγούμενον Ἀρμενίας, κόμητα δὲ τὸν τῆς τρίτης, τὸν δὲ τῆς δευτέρας καὶ τετάρτης ὀρδιναρίους καθεστάναι. καὶ ἐπειδήπερ τοῦτο ἡμῖν διεσπούδασται, ὥστε τὰς ἄχρι τῶν πεντακοσίων νομισμάτων ἐκκλήτους οὐχὶ πρὸς ταύτην φέρεσθαι τὴν εὐδαίμονα πόλιν, ἀλλ' ἐπὶ τοὺς σύνεγγυς σπεκταβιλίους ἄρχοντας, καὶ τοῦτο διατυποῦμεν, ὥστε τῷ μὲν ἄρχοντι τῆς πρώτης Ἀρμενίας, τουτέστι τῷ ἀνθυπάτῳ, τὰς ἐκ τῆς Ἀρμενίας ἐκκλήτους φέρεσθαι, τουτέστι τὰς κατὰ Σεβάστειαν, τῷ δὲ τῆς τρίτης Ἀρμενίας κόμητι, τῷ κατὰ Μελιτηνήν φαμεν, τὰς ἐκ τῆς τετάρτης Ἀρμενίας ἐκκλήτους μέχρι τοῦ ῥηθέντος ἀνήκειν ποσοῦ.

## ԳԼՈՒԽ II

*Այս ամենը այսպես կարգադրելուց հետո, մեզ արդարացի թվաց սահմանել, որպեսզի Եր-*

Τούτων τοίνυν οὕτως ἡμῖν διατεταγμένων, κἀκεῖνο προσδιορίσαι δίκαιον ἔτι νομίζομεν,

րորդ Հայքում նշանակվի մի այնպիսի ականավոր մարդ, որն իրեն արդեն դրսևորել է ծառայության մեջ և արժանի է այդ դժվար, բայց և կարևոր պաշտոնին։ Նկատի ունենալով, որ պայծառափայլ Թովման Հայոց աշխարհում արդեն վարել է զանազան պաշտոններ, օգտակար մարդ է նաև այլ կողմերով, ազնվորեն ծառայել և այժմ էլ ծառայում է մեզ, նրան առաջ ենք քաշում այդ պաշտոնին, որպեսզի առայժմ նա կառավարի այդ նահանգը մեր կողմից սահմանված ձևով և ուշադիր լինի ինչպես իրեն վստահված նահանգների, այնպես էլ մյուսների նկատմամբ և այն ամենի նկատմամբ, ինչ կհանձնարարենք նրան անձամբ կամ սրբազան commonitoria-ի միջոցով։ Մենք արդեն նրա համար պատրաստել ենք սրբազան commonitoria-ներ բազմաթիվ և բազմատեսակ հարցերի մասին, որոնք նա պետք է կենսագործի նաև մյուս շրջաններում։

ἐφ' ᾧ προστῆσαι τῆς τρίτης Ἀρμενίας ἄνδρα σεμνόν, ὑπουργηκότα τε ἡμῖν ἤδη καὶ ἄξιον τοῦ τῆς ἀρχῆς ὄγκου καὶ προσχήματος. εὑρόντες τοίνυν Θωμᾶν τὸν μεγαλοπρεπέστατον ἤδη μὲν ἀρχὰς ἐπὶ Ἀρμενίων ἀνύσαντα χώρας, καὶ τἄλλα δὲ ἄνδρα χρηστὸν καὶ γνησίως ἡμῖν ὑπηρετησάμενόν τε καὶ ὑπηρετούμενον, αὐτὸν ἐπὶ τῇ τῆς ἀρχῆς ταύτης προβαλλόμεθα διοικήσει, ὥστε τέως μὲν τῆς ἐπαρχίας ταύτης ἡγεῖσθαι κατὰ τό ῥηθὲν ἡμῖν σχῆμα, προνοεῖν δὲ καὶ τῶν ἄλλων, ὁποσα ἂν αὐτῷ ἢ διὰ θείων ἐπιτρέψαιμεν commonitoρίων, εἴτε ἐπὶ τῆς ἐπαρχίας ἣν αὐτῷ παραδεδώκαμεν εἴτε καὶ ἐπ' ἄλλαις· ὅπερ καὶ πεπράχαμεν θεῖα πρὸς αὐτον πεποιημένοι commonitoria περὶ πολλῶν καὶ διαφόρων πράξεων, ἅσπερ αὐτὸν καὶ εἰς ἑτέρας χώρας προσῆκόν ἐστιν εἰς ἔργον ἀγαγεῖν.

§ 1. Ինչ վերաբերում է հոգևորականությանը, ապա, ինչպես բազմիցս ասել ենք, մեր կամքն է, որ նա մնա իր նախկին ձևով։ Ոչ մետրոպոլիտների իրավունքներում և ոչ էլ ձեռնադրության հարցերում ոչինչ չի փոխվում և որևէ նոր բան չի սահմանվում։ Ով մինչև այժմ ուներ ձեռնադրության իրավունք, նա

§ 1. Τὰ μέντοι περὶ τὰς ἱερωσύνας καθὰ πολλάκις εἰρήκαμεν μένειν κατὰ τὸ πρότερον βουλόμεθα σχῆμα, οὐδὲν οὐδὲ περὶ τὸ μητροπολιτικὸν δίκαιον οὐδὲ περὶ τὰς χειροτονίας τοῦ πράγματος ἀμειβομένου ἢ καινιζομένου, ἀλλὰ τῶν πρότερον χειροτονούντων καὶ νῦν ἐχόν-

*օգտվում է դրանից նաև այստուհետև, և նախկին մետրոպոլիտները մնում են իրենց դիրքում։ Մի խոսքով, հոգևորականության վերաբերյալ ոչ մի նոր բան չի սահմանվում։*

των τὴν τῆς χειροτονίας ἐξουσίαν, καὶ τῶν πρότερον μητροπολιτῶν ἐπὶ τῆς ἑαυτῶν μενόντων τάξεως, ὥστε μηδὲν τόγε ἐπ' αὐταῖς καινισθῆναι.

## ԳԼՈՒԽ III

*Քանի որ* Երրորդ Հայքի *կոմեսը մեր կողմից նշանակված է ոչ միայն որպես քաղաքացիական, այլև զինվորական կառավարիչ, ապա խոսք անգամ չի կարող լինել այն մասին, որ նրան անհրաժեշտաբար ենթարկվելու են նաև նրա նահանգում տեղաբաշխված զորքերը։ Նա, ինչպես զինվորական պետերին է վերապահված, իրավունք ունի իր անունից ծառայության կոչել զինվորներին, փնտրել և հոգալ նրանց պարենը, քննություն առնել նրանց կատարած հանցագործությունները, եթե այդպիսիք լինեն, թույլ չտալ, որ զինվորները բռնություններ գործադրեն հպատակների նկատմամբ. ավելի ծանր հանցանքների դեպքում նա քննում է նաև քրեական գործերը, եթե մեղադրյալները զինվորականներ են. մի խոսքով, նա անում է այն ամենը, ինչ վերապահված է զինվորական պետերին։ Ինչպես որ Իսավրիայի կոմեսին, Պակատյան Փռյուգիայի կոմեսին, նույնպես և Լիկաոնիայի, Պիսիդիայի և Թրակիայի պրետորներին մենք զինվորական ուժ տվեցինք, այնպես էլ նա դիվան*

Ἐκεῖνο μέντοι τῶν ἀνωμολογημένων ἐστίν, ὡς ἐπειδήπερ τὸν τῆς τρίτης Ἀρμενίας κόμητα οὐ πολιτικὸν μόνον ἀλλὰ καὶ στρατιωτικὸν πεποιήκαμεν ἄρχοντα, ἀναγκαίως ἔχειν καὶ τοὺς στρατιώτας αὐτῷ τοὺς κατ' αὐτὴν ἱδρυμένους ὑποκεῖσθαι, ἄδειαν ἔχοντι καθὰ τοῖς στρατιωτικοῖς ἄρχουσιν ἐφεῖται καὶ πρὸς ὄνομα καλεῖν αὐτοὺς καὶ ἐπιζητεῖν καὶ προνοεῖν τῶν σιτήσεων αὐτῶν, καὶ ἐπεξιέναι τοῖς κατ' αὐτοὺς εἴπερ ἀδικοῖεν, καὶ μήτε συγχωρεῖν τοῖς στρατιώταις ἀδικεῖν τοὺς ὑπηκόους, εἰ δέ τι πράξαιεν σφοδρότερον καὶ ἐγκληματικῶν ἀκροᾶσθαι δικῶν, κἂν εἰ στρατιῶται καθεστήκοιεν, καὶ ἅπαντα πράττειν, ὁπόσα τοῖς στρατιωτικοῖς δεδώκαμεν ἄρχουσιν. καὶ ὥσπερ τῷ τε Ἰσαυρίας κόμητι τῷ τε τῆς Πακατιανῆς Φρυγίας, καὶ πρός γε τοῖς πραίτωρσι Λυκαονίας τε καὶ Πισιδίας καὶ Θρᾴκης καὶ τό στρατιωτικὸν ὑπεκλίναμεν, οὕτω καὶ αὐτῷ μὴ μόνην εἶναι τὴν τῶν πολιτικῶν

*ունի ոչ միայն քաղաքացիական գործերի համար, այլև իրավունք ու իշխանություն զինվորականների վրա։ Նրան ենթարկվում են զինվորականներն ու քաղաքացիները, երբ նա հրամայում է, նա է կատարում ամեն ինչ որպես իշխանության միակ կրողը։ Կոմեսը պարտավոր է աչալուրջ հետևել, որպեսզի նահանգում հանցանքներ չկատարվեն, և յուրաքանչյուր հանցագործ կրի իր արժանի պատիժը։ Այդ իրավունքը մենք վերապահում ենք կոմեսին նահանգի բնակիչներից յուրաքանչյուրի նկատմամբ, ով էլ որ նա լինի՝ թե՛ մասնավոր անձ, թե՛ զինվորական և թե՛ արքունի կալվածքների (դոմենների) բնակիչ։ Մենք ցանկանում ենք մշտական և միասնական խաղաղություն պահպանել մեր բոլոր հպատակների միջև և ոչ թե մարդկանց մեջ տարբերություն դնել և դրանով արհամարհանք հարուցել դեպի օրենքները։*

πραγμάτων τάξιν, ἀλλὰ καὶ τὴν τῶν στρατιωτικῶν ἐξουσίαν τε καὶ ἀρχήν, καὶ εἶναι σεμνὸν αὐτὸν στρατιώταις τε καὶ ἰδιώταις κελεύοντα καὶ πάντα πράττοντα, ὡς μιᾶς δὴ τῆς ἀρχῆς καθεστώσης. καὶ μίαν τίθεσθαι πρόνοιαν τοῦ μηδὲν ἔγκλημα κατὰ τὴν ἐπαρχίαν ἁμαρτάνεσθαι, ἀλλὰ καὶ σωφρονισμοῖς ὑποβάλλεσθαι τοῖς προσήκουσι. ταύτης δὲ δὴ τῆς ἐξουσίας οὐκ ἀφαιρούμεθα παντελῶς αὐτὸν ἐπ' οὐδενὶ προσώπῳ τῶν κατὰ τὴν ἐπαρχίαν ὄντων, εἴτε ἰδιωτικῷ εἴτε στρατιωτικῷ εἴτε ταμειακῷ· μίαν γὰρ καὶ συνεχῆ τὴν εἰρήνην ἐν ἅπασι τοῖς ὑπηκόοις τοῖς ἡμετέροις φυλάττεσθαι βουλόμεθα, οὐ τῇ διαφορᾷ τῶν προσώπων τὴν κατὰ τῶν νόμων εἰσάγοντες καταφρόνησιν.

## ՎԵՐՋԱԲԱՆ

*Այսպիսով՝ քո գերազանցությունը թող ջանա իրագործել մեր այս որոշումները այժմ և ապագայում չորս Հայք կազմակերպելու, հատկապես Երրորդի վերաբերյալ, որը և այս օրենքի հրապարակման առիթ ծառայեց, և թող իր կողմից էլ հատուկ կարգադրություններ հրապարակելով անի ամեն բան, որպեսզի գանձվի այնքան հարկ, որ-*

Τὰ τοίνυν παραστάντα ἡμῖν ἡ σὴ ὑπεροχὴ κατὰ τὴν τῶν τεσσάρων Ἀρμενιῶν διατύπωσιν, καὶ μάλιστα κατὰ τὴν τῆς τρίτης ἧς κατὰ πρόφασιν τὸν παρόντα θεῖον ἐποιήσαμεν νόμον, νῦν τε καὶ εἰς τὸν ἑξῆς ἅπαντα χρόνον φυλάττεσθαι σπευσάτω, πάντων πραττομένων καὶ ἐγγραφομένων ταῖς

*քան յուրաքանչյուր տարվա համար մենք սահմանում ենք։*

μερικαῖς διατυπώσεσι τῶν θρόνων τῶν σῶν, ὁπόσα δίδοσθαι καθ' ἕκαστον ἔτος προσετάξαμεν.

Dat. XV. Kalend. April. CP. post consul. Bilisarii V. C.

*Վերոհիշյալ նովելլայով հայկական հողերը, այսինքն՝ կայսրության գերիշխանության տակ գտնվող Հայաստանի մի ընդարձակ շրջան, ավելի լայն ծավալով վերցրած՝ քան զինվորական վարչությունը՝* magistri militum *հաստատելու ժամանակ էր, որ ընդհանուր կայսերական հիմունքներով ենթարկվեց վարչական վերաբաժանման և վերակազմության։ Ստեղծվեց չորս նահանգ, որոնք բոլորն էլ կրում էին Հայք անունը։ Այդ նոր բաժանման հետևանքով Պոլեմոնական Պոնտոսի և Հելլենոպոնտոսի որոշ մասեր անցան հայկական նահանգներին, որոնց սահմանները այսպիսով բավականին ընդարձակվեցին՝ տարածվելով նշանակալիորեն հյուսիսի ուղղությամբ դեպի ծով, ինչպես նաև դեպի արևմուտք։ Մեզ հետաքրքրող նովելլան հրապարակվեց ապրիլյան կալենդների 17-ին կամ 536 թվականի մարտի 18-ին։ Դրանից քիչ առաջ, այսինքն՝ 535 թվականի հուլիսի 23-ին հրապարակվեց մի նովելլա Պոլեմոնական Պոնտոսը Հելլենոպոնտոսին միացնելու և նրանց վրա մեկ ընդհանուր կառավարիչ նշանակելու մասին։ Այդ կառավարիչը կոչվում էր* moderator Helenoponti։ *Այս բոլորից բացի կայսրին դուր չէր գալիս Պոլեմոնական Պոնտոս անվանումը, որովհետև այն ծագել էր ինքնակոչի անունից։ Նա կարծում էր, որ «ավելի պատշաճ կլիներ աշխարհագրական վայրերը նշանավորել քրիստոնեական և թագավորական անուններով, քան այնպիսի անուններով, որոնք հիշեցնում են պատերազմ և խռովություն»*[1]։

*Հելլենոպոնտոսում այն ժամանակ կար 8 քաղաք. դրանք էին՝ Ամասիա, Իվորա, Եվխաիտա, Զելա, Անդրապա, Սինոպ, Ամիսոս և Լեոնտոպոլիս, Պոլեմոնական Պոնտոսում՝ հինգ՝ Նեոկեսարիա, Կոմանա, Տրապիզոն, Կերասուս, Պոլեմոնիոն*[2]։ *Հայկական նահանգների վերակազմության ժամանակ Հուստինիանոսը համար*

[1] *Nov.* 28=*Const.* 31.

[2] *ib. Ներածություն. Լեոնտոպոլիսը, որ տարբեր է Հայաստանի նույնանուն քաղաքից, այլ կերպ կոչվում էր Զալիքոս* Ζάλιχος ἤτοι Λεοντόπολις Georg. Cyp. p. 14։

գտավ մողերատորի իշխանությունից վերցնել չորս քաղաք՝ Զելա, Կոմանա, Տրապիզոն, Կերասուս, և միացնել հայկական հողերին։ Առաջին և Ներքին Հայքը այս քաղաքների հետ միասին կազմեցին երկու նոր նահանգ։ Ամբողջ Ներքին Հայքը, նախկին Առաջին Հայքի մի մասը՝ Սատաղի, Նիկոպոլիսի և Կողոնիայի սահմաններով և նոր ձեռք բերված Տրապիզոն և Կերասուս քաղաքների շրջանների հետ միասին կազմեցին մեկ նահանգ, որ ստացավ **Առաջին Հայք** անունը։

Մյուս նահանգը կազմվեց նախկին Առաջին Հայքի մնացած մասից՝ Սեբաստիա, Սեբաստուպոլիս և Վրիսա քաղաքներից, ինչպես նաև Պոնտական Զելա և Կոմանա բնակավայրերից և կոչվեց **Երկրորդ Հայք**:

Նախկին Երկրորդ Հայքը վերանվանվեց **Երրորդ Հայք**, առանց սահմանների փոփոխության։ Նա ընդգրկում էր Մելիտենե, Արկա, Արաբիսոս, Արիարաթիա, Ոսկե Կոմանա և Կուկուսոն քաղաքները։

Վերջապես **Չորրորդ Հայքին** անցան հինգ ինքնավար իշխանությունների հողերը. Սոփանենե, Անզիտենե, Սոփենե, Հաշտիանենե և Բալաբիտենե գավառները միասին կազմեցին մի նահանգ Մարտիրոսուպոլիս մայրաքաղաքով։

Կասկածից վեր է, որ նախկինում ազատ սատրապական երկրները առաջին անգամ կայսրության նահանգի վերածվեցին 536 թվականի նովելլայով, ինչպես այդ մասին պարզ վկայում է պաշտոնական փաստաթուղթը։ Այլ է Ներքին Հայքի հարցը։ Ըստ մի քանի և բավականին անհերկմիտ տվյալների այնտեղ նահանգային վարչաձև մտցնելու փորձեր են արվել մինչև մեր նովելլայի հրապարակումը։ Նովելլաներից մեկում, հրապարակված հայկականի հետ միաժամանակ, այսինքն՝ 536 թվականի մարտի 18-ին, Հայաստանի պրոկոնսուլի մասին հանդիպում է մի հետաքրքրական հիշատակություն։ «Առաջ մենք հաստատեցինք այնտեղ սովորական իշխանություն,— ասված է նովելլայում,— իսկ այժմ ոչինչ չավելացնելով նրան՝ բարձրացրինք այն փոխհյուպատոսության աստիճանի»[1]։ Բացի դրանից, նահանգների 535 թվականի ապրիլի 15-ի սուֆրա-

---

[1] *Nov.* 20=*Const.* 46. γ'. Ταὐτὸ δὲ τοῦτο καὶ ἐπὶ τοῦ τῆς Ἀρμενίας ἀνθυπάτου, ἐπειδὴ πρότερον ἀρχὴν αὐτὴν ὀ ρ δ ι ν α ρ ί α ν ποιήσαντες, νῦν οὐδὲν αὐτῇ προσθέντες εἰς τὸ τῆς ἀνθυπατείας μετηγάγομεν σχῆμα.

*գիալ ցանկում, ինչպես մենք տեսանք, I և II Հայքի կողքին նըշված է նաև* ἄρχων 'Αρμενίας Μεγάλης[1], *Մեծ Հայքի այն մասի կառավարիչը, որ կոչվել է Ներքին Հայք։ Պարզ է, որ 536 թվականի մարտի 18-ի նովելլայի հրապարակումից առաջ Հայաստանի այդ մասում արդեն գոյություն ուներ կայսերական քաղաքացիական իշխանություն՝ հանձին արխոնտի կամ սովորական պրեզիդի։*

*536 թվականին խոսքը գնում էր միայն իշխանությունը ստորադասից գերամեծարության բարձրացնելու և արխոնտին պրոկոնսուլով փոխարինելու մասին։ Կայսեր «բարեպաշտ անունով զարդարված» նոր մայրաքաղաքի ընտրությունը ըստ երևույթին կապ ուներ երկրի քաղաքացիական վերակազմության հետ։ Իսկական մայրաքաղաքը՝ Թեոդոսուպոլիսը, տրամադրվեց զինվորական պետին։ Գտնվելով նահանգի ծայրամասում և թշնամու երկրին մոտ, այն չէր կարող դառնալ քաղաքացիական վարչության կենտրոն։ Ուստի պետք էր ընտրել քիչ թե շատ կենտրոնական դիրք ունեցող մի այլ բնակավայր. այդպիսին հանդիսացավ Վաղանից ոչ հեռու գտնվող ավանը։*

*Նրա կառուցումը և Հուստինիանուպոլիս վերանվանելը նախորդեց նովելլայի հրապարակմանը[2]։ Ճիշտ այդպես էլ Ակակիոսը արդեն Հայաստանի կառավարիչ էր, երբ երևան եկավ նովելլան։ Թե մեկը և թե մյուսը բխում է նույն այս նովելլայի բովանդակությունից։ Հայտնի է նաև, որ Ակակիոսը Ներքին Հայքում կայսերական իշխանության ներկայացուցիչներից առաջինը չէր։ Նրանից առաջ այդ երկիրը կառավարում էր տեղական իշխաններից մեկը՝ Համազասպը, որը հայերի վրա արխոնտ էր նշանակված հենց Հուստինիանոսի կողմից։ Համազասպի մասին չարանենգ մատնություններ անելով՝ Ակակիոսը վերջապես կայսեր համաձայնությամբ սպանեց նրան և ստացավ Հայաստանի կառավարչի պաշտոնը[3]։ Շուտով ինքն էլ սպանվեց հայերի ձեռքով։*

---

[1] *Nov.* 8=*Const.* 16։ *Տե՛ս վերը՝ էջ 198։*

[2] *Ավելորդ չէ մատնանշել, որ Պրոկոպիոսը* Aed.*-ի մեջ հիշատակում է Հուստինիանուպոլիս, երբ, ըստ երևույթին, դեռ չգիտեր Հուստինիանոսի 536 թ. բարենորոգության մասին։*

[3] Proc. *Pers.* II 3 p. 159 ἄρχοντα κατεστήσατο 'Αρμενίοις αὐτόν (sc. τὸν 'Αμαζάσπην) ... γνώμη βασιλέως 'Ακάκιος τὸν 'Αμαζάσπην δόλῳ ἔκτεινε καὶ τὴν 'Αρμενίων ἀρχὴν δόντος βασιλέως ἔσχεν αὐτός.

Համազասպը, սկզբնական շրջանում նաև Ակակիոսը հասարակ կառավարիչներ էին, և նրանց ենթակա Հայաստանը դասվում էր սովորական նահանգների շարքը։ Երբ 536 թվականին այն դարձավ պրոկոնսուլական, ապա իր իսկ՝ կայսեր խոստովանությամբ «նրան ոչինչ չավելացվեց»։ Այդ հայտարարությունը, եթե այն հասկանանք տերիտորիալ իմաստով, իսկ այլ կերպ չի էլ կարելի հասկանալ, տարակուսանք է հարուցում։ Ստացվում է, որ պրոկոնսուլական Հայաստանը իր այն սահմաններով, որոնք, թվում է, թե առաջին անգամ նշված են 31-րդ նովելլայում, իրականում սահմանագծված է եղել դրանից առաջ, այսինքն՝ նախկին կառավարիչը իշխել է նույնպիսի ամբողջական տերիտորիայի, ինչ որ պրոկոնսուլը։ 535 թվականի հուլիսի 23-ի 28-րդ նովելլայից մենք իմանում ենք, որ պրոկոնսուլական Հայաստանի կազմի մեջ մտնող Տրապիզոն և Կերասուս քաղաքները այն ժամանակ դեռևս գտնվում էին Պոնտոսի մոդերատորի իշխանության տակ։ Հետևաբար, եթե տվյալ հարցի վերաբերյալ ընդհանրապես գոյություն են ունեցել ինչ-որ կարգադրություններ, որոնք մեզ չեն հասել, ապա դրանք պետք է եղած լինեն 535 թվականի հուլիսի 23-ի և 536 թվականի մարտի 18-ի միջև ընկած ժամանակամիջոցում[1]։

Կոմեսի պաշտոնը վերացվելուց հետո Համազասպը Ներքին Հայքի առաջին կառավարիչն էր և կայսերական իշխանության կրողը. նա այդ պաշտոնին նշանակվեց, ըստ երևույթին, 532 թ. հաշտությամբ ավարտված պարսկական պատերազմից հետո հայ իշխանների միջև ծագած երկպառակությունների առիթով։ Պատահական չէ, որ պարսից Խոսրով թագավորին ներկայացած հայոց դեսպանությունն այդ թվականին է վերագրում Հուստինիանոսի կողմից ձեռնարկված հալածանքների սկիզբը։ Հայերի վկայությունները, անշուշտ, նպատակ ունեին ընդգծելու հաշտության աննպատակ լինելը այնքանով, որքանով այն ծառայեց հօգուտ Հուստինիանոսի, բայց այն բանում, որ հաշտության տարին հայ նախարարները դիտում էին որպես իրենց հասած աղետների սկիզբ ու պատճառ, բացի ագիտացիոն դիտավորությունից չի կարելի չտեսնել նաև փաստական որոշ ճշմարտություն այն իմաստով, որ, ըստ երևույթին, կայսրը այդ ժամանակվանից սկսեց միջամտել երկրի ներքին գործերին՝ մտցնելով այնտեղ կայսերական

[1] Հմմտ. նովելլաների հրատարակիչների ծանոթ. Const. 45. Teub. I p. 277։

*իշխանության մարմին։ Հնարավոր է, որ դրանից հետո փորձ արված լինի ընդարձակելու Ներքին Հայքի սահմանները, բայց ամբողջ Հայաստանի լիակատար վերակազմությունը, տերիտորիալ փոփոխություններով, պետք է վերագրել 536 թվականին, երբ հրապարակվեց նշանավոր նովելլան։*

*Թվում է, թե հայկական հողերը չորս մասի բաժանելը հակասում է այն միավորող ձգտումներին, որ մենք նշեցինք Հուստինիանոսի նահանգային քաղաքականության մեջ։ Իրականում այս դեպքում ևս ընդհանուր սկզբունքը պահպանվեց այն չափով, ինչ չափով որ այն անհրաժեշտ էր արդարադատության տեսակետից։ Դատական տեսակետից չորս գավառները կազմում էին երկու մեծ շրջան, որոնք ենթակա էին պրոկոնսուլին և կոմեսին։ Սրանք երկուսն էլ սպեկտաբիլյան իշխանության կրողներ են և ունեն իրենց աստիճանին համապատասխան իրավասություններ, ընդհուպ մինչև սահմանված 500 սկուտի բեկման ոչ ենթակա վճիռներ կայացնելը։ Պրոկոնսուլին բողոքարկումներ էին ուղարկվում II Հայքից, իսկ կոմեսին՝ IV Հայքից։*

*Հյուսիսում երկու նահանգներից սպեկտաբիլ դարձավ նա, որն ընկած էր ավելի արևելք։ Կարելի է մտածել, որ այստեղ դեր է խաղացել թշնամու տերիտորիային հարող ծայրամասում իշխանությունն ուժեղացնելու մտահոգությունը։ Այդ դեպքում մենք իրավացի կլինեինք սպասելու, որ օրենսդիրը նման վերաբերմունք ցույց տար նաև հարավի նկատմամբ, մինչդեռ Հուստինիանոսը կոմես է կարգում ոչ թե IV, այլ III Հայքում։ Նա այդպես վարվեց ամենևին էլ նկատի չունենալով Մելիտենե մայրաքաղաքի բնական առավելությունները, որի գեղատեսիլ դիրքը և առողջարար օդը այնքան դուր էին եկել կայսրին։ Թե՛ այս, և թե՛ մյուս դեպքում Հուստինիանոսն առաջնորդվել է ոչ թե ինչ-որ լուրջ գաղափարներով, այլ պարզ հաշիվներով՝ վարձահատույց լինել կայսեր սիրեցյալներ Ակակիոսին և Թովմային։ Նովելլայի հրապարակման պահին և՛ Ակակիոսը, և՛ Թովման պաշտոնավարում էին Հայաստանում։ Կայսրը հիշյալ նահանգներին ուշադրություն դարձրեց ոչ թե հաշվի առնելով նրանց համեմատական առավելությունները, այլ ի սեր նրանց՝ այն ժամանակվա կառավարիչների։*

*Ակակիոսի անձնավորությունը բավականաչափ ծանոթ է Պրոկոպիոսի պատմությունից։ Ջնայած նա ծագումով հայ էր, սակայն*

*շատ հեռու էր իր հայրենիքի շահերը պաշտպանելուց։ Իբրև Հայաստանի կառավարիչ նա չկարողացավ դահի հանդեպ ունեցած հավատարմությունը զուգակցել օրինավոր մարդու ոչ բարդ հատկությունների հետ։ Կառավարչի պաշտոնը նա ձեռք ձգեց նենգությամբ և իր մերձավորի արյան գնով, որ թափեց հենց ինքը։ Ի ծնե լինելով դաժան բնավորության տեր՝ նա անհասկանալի չարությամբ էր լցված իր ազգակիցների նկատմամբ[1] և իր կարճատև իշխանության ժամանակ այնքան չարիքներ գործեց, որ հայերը այլևս չկարողացան տանել նրա հասցրած անարգանքները, և նա իր մահը գտավ նրանց ձեռքով։*

*Ինչ վերաբերում է Թովմային, ապա նրա մասին Հուստինիանոսի հայտնած գովասանական կարծիքները՝ որպես շատ օգտակար և ազնիվ գործչի, ավելի շուտ ապացուցում են այն, որ իր հատկանիշներով ու տրամադրություններով նա Ակակիոսից ոչնչով չէր տարբերվում, և երկրի ու ազգաբնակչության շահերի տեսակետից նրա գործունեությունը նույնպես պետք է բացասական համարել. Նրանց մատուցած ծառայությունների համար կայսրը այդ երկու կամակատար ծառաներին ի տրիտուր շնորհեց սպեկտաբիլության աստիճան։ Թովմա կոմեսին նշանակեց 700 սկուտի ռոճիկ, որը զգալիորեն գերազանցում էր սովորական 300 սկուտի դրույքին, որ ստանում էին կոչումով ու դիրքով նրան հավասար մյուս նահանգների՝ Պիսիդիայի, Լիկաոնիայի, Թրակիայի պրեֆեկտները կամ Իսավրիայի կոմեսը[2]։ Իսկ նրա ընթերակային ռոճիկ սահմանվել էր այդ կարգի աստիճանավորների համար ընդունված չափով, այն է՝ 72 սկուտ։ Նրա դիվանը կամ դիվանատունը ավելի քիչ էր ստանում, քան սահմանված էր՝ ընդամենը 60 սկուտ, մյուսների երկու լիտր*

---

[1] Proc. *Pers.* II, 3, p. 159, γέγονεν οὖν ἐς τοὺς ἀρχομένους ὠμότατος ἀνθρώπων ἁπάντων.

[2] *Միայն Պոնտոսի մոդերատորն էր ստանում 725 սկուտից մի քիչ ավելի։ Կապադովկիայի պրոկոնսուլը ստանում էր մյուսներից ավելի՝ 20 ֆունտ ոսկի (*var. 10*)։ Այդ շրջանում գտնվում էին արքունի ընդարձակ հողեր (*ταμειακὴ κτῆσις*), և պրոկոնսուլը բացի իր անմիջական պարտականություններից, կառավարում էր նաև այդ կալվածքները և նրանց հասույթներից,* τῶν ταμειακῶν πόρων, *տարեկան 50 ֆունտ ոսկի տալիս էր կայսեր և կայսրուհու անձնական ծախսերի համար։* *Nov.* 30=*Const.* 44. *դրանով էլ բացատրվում է պրոկոնսուլի չափից ավելի բարձր ռոճիկը։*

*ոսկու դիմաց[1]։ Դիվանատների քանակական կազմը փոփոխվում էր՝ նայած ժամանակին և պաշտոնի բնույթին։ Հուստինիանոսը հակված էր առհասարակ պակասեցնել այն. այսպես, կառավարիչներին կից դիվանատների, զինվորական և քաղաքացիական իշխանությամբ օժտված պրետորների և կոմեսների թիվը նա հասցրեց 100 հոգու[2]։*

*Ականկիտս պրոկոնսուլը ևս հավանորեն մեծ պատիվ ուներ։ Նրա պատվո տարբերանշաններից հիշատակվում է* stola-*ն և այլ արտոնություններ։ Այս վերջինների տակ պետք է հասկանալ* sella currulis, fasces *և* securis-*ի իրավունքը, որ պրոկոնսուլական իշխանության վաղեմի ատրիբուտներն էին։ Այդ արտոնությունների ունեին, օրինակ, Կապադովկիայի պրոկոնսուլը և Պիսիդիայի պրետորը[3]։*

*Մենք տեսանք, որ դուքսերից մեկը նստում էր Մելիտենեում։ Կոմես նշանակելու հետ, որի վրա դրվեցին նաև զինվորական պետի պարտականությունները, դուքսի պաշտոնը ինքնաբերաբար վերացվեց։ Պարտականությունների բարդությունն էր մասամբ հենց պատճառներից մեկը, որ կոմեսի պաշտոնը համարվում էր դժվարին և խիստ պատասխանատու։ Իր աշխատանքային փորձառությամբ այդ խիստ պահանջներին համապատասխան պաշտոնի ամենահարմար թեկնածուն եղավ Թովմանը։ Սա նույնպես հայ էր, և, անկասկած, այն Թովման է, որ ծառայում էր Լազիկեում։ Այստեղ նա «կայսեր հրամանով» կառուցեց բազմաթիվ ամրություններ, վարեց տեղական զորքերի հրամանատարությունը և կայսեր մոտ ձեռք բերեց գործունյա մարդու համբավ։ Նա ուներ Հովհաննես անունով մի որդի՝ Գուզես մականունով, մի արտակարգ խիզախ տղամարդ, որ դեռևս երիտասարդ հասակում՝ 550 թվականին, Պետրայի պաշարման ժամանակ, հիշյալ քաղաքը գրավելիս աչքի ընկավ իր սխրանքով[4]։*

---

[1] *Արդյո՞ք պետք է այդ բացատրել դիվանատան փոքրաթիվ կազմով, թե բնագրի անճշտությամբ։ Մյուս նովելլաներում ևս թվերը ամեն տեղ չէ, որ ճիշտ են, ինչպես այդ երևում է* Teub-*ի նոր հրատարակության մեջ կատարված ուղղումներից։*

[2] *Nov.* 25=*Cost.* 26. *տե՛ս* Bethmann-Hollweg, III, p. 137։

[3] Nov. 30=Const. 44 ζ', ὄχημα ἐξ ἀργύρου καὶ πέλεκυν καὶ ῥάβδους ἔχων. *Պրետորի մասին* Nov. 24=Const. 23 δ', δίφρον ἐξ ἀργύρου καὶ πέλεκυν καὶ ῥάβδους.

[4] Proc. *Pers.* II 30 p. 293, νεανίας τις Ἀρμένιος γένος, Ἰωάννης ὄνομα

Լինելով տեղացի, Թովման լավ գիտեր այն երկրամասը, նրա առանձնահատկությունները, որտեղ նա նշանակվեց, մանավանդ, որ արդեն այնտեղ ծառայել էր։ Այդ մարդն էլ հենց հարմար զենք հանդիսացավ կենսագործելու կայսեր ձեռնարկումները և ավարտելու երկրի կերպարանափոխությունը։ Նրան խիստ զգուշացվեց, որ իր գործունեությունը համապատասխանեցնի բարձրագույն հրահանգներին, sacra commonitoria։ Պետք էր հետևել նրանց իրագործմանը ոչ միայն կոմեսական նահանգի սահմաններում, այլև նրանից դուրս, գլխավորապես հարևան IV Հայքում։

Թե իրենցից ինչ էին ներկայացնում commonitoria-ները, անհայտ է։ Կարելի է կռահել, սակայն, որ սրանց միջոցով անց էին կացվում բացահայտ կամ գաղտնի միջոցառումներ կայսրության կարգ ու կանոնը այն նահանգներում հաստատելու համար, որոնք աչքի էին ընկնում իրենց առանձնահատուկ վարչակարգով։ Ներքին Հայքն ու սատրապական հողերը կամ I և IV Հայքերը գտնվում էին հասարակական-քաղաքական կեցության այն փուլում, որը բնութագրվում է նախարարություն տեղական տերմինով։ Որն է նրա արմատական էությունը՝ հանգամանորեն կպարզաբանենք ստորև. առայժմ սահմանափակվենք ընդհանուր առմամբ նշելով, որ իր հիմքում նախարարությունը ոչ այլ ինչ է, եթե ոչ համաշխարհային այն երևույթի տեղական այլաձևությունը, որ Արևմուտքում հայտնի է ֆեոդալիզմ անունով։

Այն ընդարձակ տերիտորիայից, որտեղ տիրում էին նախարարական կարգ ու կանոնը, կայսրության սահմաններում էր գտնվում համեմատաբար մի փոքր կտոր։ Արշակունիների ժառանգությունը բաժանելիս կայսրերին բաժին ընկավ մեկ քառորդ մասը, իսկ երեք քառորդը անցավ Պարսկաստանին։ Ներքին Հայքը և սատրապությունները հանդիսանում էին նախարարական Հայաստանի արևմտյան ծայրամասերը։ Նախարարականությունը, որպես հասարակական կարգ, պայմանավորում էր մշակութային և կենցաղային այն իրադրությունը, որ Հայաստանը մոտեցնում էր Իրանին։ Նրա մեջ էին թաքնված հայերի և պարսիկների փո-

Θωμᾶ υἱός, ὅνπερ Γούζην ἐπίκλησιν ἐκάλουν. οὗτος ὁ Θωμᾶς πολλὰ τῶν ἀμφὶ τὴν Λαζικὴν ὀχυρωμάτων ἐδείματο... καὶ τῶν ἐκείνῃ στρατιωτῶν ἦρξεν, ἔμφρων τε βασιλεῖ ἔδοξεν εἶναι. *Goth.* IV 8 p. 493, Ἰωάννης Ἀρμένος, διαφερόντως ἀγαθὸς τὰ πολέμια, Θωμᾶ υἱός, ὅνπερ ἐπίκλησιν ἐκάλον Γούζην.

*խաղարձ կապի հիմնական թելերը։ Նախարարական կենցաղի տեսակետից Հայաստանի կայսերական և պարսկական մասերը, չնայած նրանց իրարից բաժանող քաղաքական պայմաններին, իրենցից ներկայացնում էին ինչ-որ ամբողջություն։ Նախարարները՝ Հռոմեական Հայաստանի կալվածատեր-իշխանները, անքակտելի կապերով կապված էին Պարսկական Հայաստանի իրենց եղբայրակիցների հետ և նրանց հետ միասին պետք է որ որոշ հակում ցուցաբերեին դեպի պարսիկները։ Կայսրության համար անցանկալի այդ երևույթի հետ պետք էր հաշվի նստել։ Բնական է, որ Հուստինիանոս կայսրը, որ համակված էր բարենորոգումների կըրքով, աչքաթող չարեց այդ հանգամանքը և միջոցներ ձեռք առավ ոչնչացնելու կամ խախտելու ֆեոդալական կարգերի հիմքերը Հայաստանում։ Ըստ երևույթին ոչ քիչ թվով տխրահռչակ* commonitoria-*ներ նվիրվեցին այս գործին։ Մեզ է հասել երկու վավերագիր, որոնք, անկասկած, պատկանում են ֆեոդալական կարգերի դեմ ուղղված միջոցառումների թվին, և երկուսն էլ վերաբերում են հայերի մոտ այն ժամանակ գործող ժառանգական իրավունքին։ Առաջին հայացքից կարծես թե նրանք ընդհանուր ոչինչ չունեն ֆեոդալական հարցի հետ, սակայն ըստ էության դրանք հանդիսանում են Հուստինիանոսի բարենորոգումների էության բացահայտող բանալի։*

*Դրանցից մեկը խոսում է* Հայերի ժառանգական իրավունքի *մասին, իսկ մյուսը՝* Այն մասին, որ հայերն էլ ամեն բանում հետևեն Հռոմեական օրենքներին: *Մանրամասնենք դրանց բնագրերին.*

Const. 73=Ed. 3 Περὶ τῆς τῶν 'Αρμενίων διαδοχῆς.

ՆԵՐԱԾՈՒԹՅՈՒՆ

| | |
|---|---|
| *Մենք ցանկանում ենք հայերին ևս, ազատելով նախկին անարդարություններից, ամբողջովին փոխադրել մեր օրենքներին և տալ նրանց հարկ եղած հավասարությունը։* | Καὶ 'Αρμενίους βουλόμεθα τῆς προτέρας ἀπαλλάξαντες ἀδικίας ἐπὶ τούς ἡμετέρους διὰ πάντων ἀγαγεῖν νόμους, καὶ δοῦναι αὐτοῖς ἰσότητα τὴν πρέπουσαν. |

ԳԼՈՒԽ I

| | |
|---|---|
| *Վերջերս մենք իմացանք, որ նրանց մոտ գոյություն* | Καὶ ἐπειδὴ μεμαθήκαμεν ἔναγχος βαρβαρικόν τινα καὶ θρα- |

ունի մի բարբարոս և դաժան օրենք, որ վայել չէ ոչ հռոմեացիներին և ոչ էլ մեր պետության արդարամիտ ոգուն. այդ այն է, որ ծնողներին ժառանգել կարող են տղամարդիկ, իսկ կանայք՝ ոչ մի դեպքում։ Այդ պատճառով մենք քո բարձրափայլության անունով հրատարակված սույն սրբազան օրենքով հրամայում ենք, որ ժառանգումը պիտի լինի միատեսակ, և այն ամենը, որ հռոմեական օրենքներով հաստատված է տղամարդկանց և կանանց վերաբերյալ, ուժ ունի նաև Հայաստանում։ Հենց դրա համար էլ հղեցինք այնտեղ մեր օրենքները, որպեսզի կենցաղավարության մեջ ղեկավարվեն նրանով։

§ 1. Քանի որ արդեն անցյալի գիրկն անցած գործերը կրկին հարուցելը դժվարությունների հետ է կապված, ուստի հրամայում ենք այս օրենքը ուժի մեջ համարել մեր երջանկավետ գահակալության օրից սկսած և այդ ժամանակվանից մինչև այժմ մեռած մարդկանց ժառանգության հետ վարվել ըստ այս օրենքի, ի բաց առյալ այն դեպքերը, երբ գործը վճռված է և կամ որևէ ձևով հարթված։ Եթե դրա նման ինչ-որ բան տեղի է ունեցել, ապա հրամայում ենք թողնել այն ուժի մեջ և բոլորովին ձեռք չտալ։

§ 2. Մենք ցանկանում ենք, որ կանայք նույնպես մաս ստանան տոհմական կալ-

σὺν εἶναι παρ' αὐτοῖς νόμον, οὐ Ῥωμαίοις οὐδὲ τῇ δικαιοσύνῃ τῆς ἡμετέρας πρέποντα πολιτείας, ὅπως ἂν ἄῤῥενες μὲν κληρονομοῖεν τῶν γονέων, θήλειαι δὲ μηκέτι, διὰ τοῦτο θεσπίζομεν τῷ παρόντι θείῳ χρώμενοι νόμῳ πρὸς τὴν σὴν μεγαλοπρέπειαν, ὁμοίας εἶναι τὰς διαδοχάς, καὶ ὅσα τοῖς Ῥωμαίων διατέτακται νόμοις ἐπί τε ἀνδρῶν ἐπί τε γυναικῶν ταῦτα καὶ ἐν Ἀρμενίᾳ κρατεῖν. διὰ τοῦτο γὰρ δὴ καὶ τοὺς ἡμετέρους ἐκεῖσε κατεπέμψαμεν νόμους, ἵνα εἰς αὐτοὺς ἀφορῶντες οὕτω πολιτεύοιντο.

§ 1. Ἐπειδὴ δὲ τὰ ἤδη προειληφότα ἅπαντα ἀνακινεῖν τῶν ἀτοπωτάτων ἐστὶ, διὰ τοῦτο θεσπίζομεν, τόνδε τὸν νόμον κρατεῖν ἀπὸ τοῦ καιροῦ τῆς εὐσεβοῦς ἡμῶν βασιλείας, ὥστε τὰς τῶν ἐξ ἐκείνου τελευτησάντων μέχρι νῦν διαδοχὰς κατὰ τοῦτον πολιτεύεσθαι τὸν τρόπον, πλὴν εἰ μὴ ἔτυχον διαλυσάμενοι ἢ ἄλλως πρὸς ἀλλήλους ἀπαλλαγέντες. εἰ γάρ τι τοιοῦτον γέγονε, τοῦτο ἐπὶ τῆς οἰκείας μένειν ἰσχύος καὶ μηδαμῶς ἀνακινεῖσθαι θεσπίζομεν.

§ 2. Μετέχειν δὲ αὐτὰς καὶ τῶν καλουμένων γενεαρχικῶν χωρίων ἀπὸ τοῦ εἰρημένου χρό-

*վածքներից՝ նշված ժամանակվանից սկսած։ Նթե պատահաբար գտնվեն անհատներ, որոնք իրենց աղջիկներին, որ թեև իրենց մոտ սովորական դարձած աղխաթետական օրենքով ժառանգ չեն համարվում, այնուամենայնիվ կգրեն ժառանգների թվում, ապա և՛ սրանք, և՛ սրանցից ծնված զավակները պետք է մասնակցեն տոհմական ունեցվածքի ժառանգմանը։*

νου βουλόμεθα. εἰ μέντοι συμβαίη τινὰς εὑρεθῆναι, οἵπερ καίτοι μὴ καλουμένας τὰς θυγατέρας εἰς τὴν ἐξ ἔθους ἀδιαθέτου διαδοχὴν ἔγραψαν ὅμως κληρονόμους, μετεῖναι κἀκείναις καὶ τοῖς ἐξ αὐτῶν γενομένοις τῆς τῶν γενεαρχικῶν πραγμάτων διαδοχῆς.

## ՎԵՐՋԱԲԱՆ

*Այսպիսով, սույն օրենքով ազդարարված մեր կամքի արտահայտությունը թող քո գերազանցությունը պահպանի և իրագործի։ Մեր բոլոր օրենքները պետք է ուժ և իշխանություն ունենան բոլոր բնագավառներում։ Իսկ սույն օրենքը, ինչպես քիչ առաջ նշեցինք, գործողության մեջ է մտնում մեր գահակալության օրից սկսած. անցյալ բոլոր, ինչպես և՛ այսուհետև, և՛ ապագա ժամանակներում պետք է խստորեն առաջնորդվել նրանով և պահպանել այն։*

Τὰ τοίνυν παραστάντα ἡμῖν καὶ διὰ τοῦδε τοῦ θείου δηλούμενα νόμου ἡ σὴ ὑπεροχὴ καὶ παραφυλάξαι καὶ πέρατι παραδοῦναι σπευσάτω, ὥστε τοὺς ἡμετέρους νόμους διὰ πάντων κρατεῖν καὶ εἶναι κυρίους, ἀρχομένου μὲν τοῦ παρόντος νόμου καθάπερ εἰπόντες ἔφθημεν ἐκ τῶν προοιμίων τῆς ἡμετέρας βασιλείας, τῷ παντὶ δὲ συμπαρατεθησομένου χρόνῳ καὶ εἰς τὸ λοιπὸν ἅπασι πολιτευσομένου τρόποις, καὶ παρὰ πάντων φυλαχθησομένου.

Dat. XVII. K. Aug. Bilisario V. C. Cons.

Const. 47 = Nov. 21. Περὶ Ἀρμενίων ὥστε καὶ αὐτοὺς ἐν πᾶσι τοῖς Ῥωμαίων ἀκολουθεῖν νόμοις.

Ὁ αὐτὸς βασιλεὺς Ἀκακίῳ τῷ μεγαλοπρεπεστάτῳ ἀνθυπάτῳ Ἀρμενίας.

## ՆԵՐԱԾՈՒԹՅՈՒՆ

*Ցանկանալով, որ Հայոց աշխարհը միանգամայն բարե-*

Τὴν Ἀρμενίων χώραν τελείως εὐνομεῖσθαι βουλόμενοι καὶ

կարգվի և ոչնչով չտարբերվի մեր պետությունից, մենք այնտեղ հաստատեցինք հռոմեական հիմնարկություններ, վերացնելով նրա նախկին անվանումները և վարժեցրինք նրանց օգտվելու հռոմեական կարգ ու կանոնից և սահմանեցինք, որ նրանք այլ օրենքներ չունենան բացի նրանցից, որոնք հարգվում են հռոմեացիների մոտ։

Մենք միաժամանակ անհրաժեշտ համարեցինք սույն օրենսդրությամբ ուղղել նրանց կյանքի կոպիտ թերությունը, որպեսզի բռի սովորության համաձայն ծնողների, եղբայրների և մյուս ազգականների թողած ժառանգությունը չպատկանի միայն տղամարդկանց և երբեք՝ կանանց, ինչպես նաև այն պատճառով, որպեսզի կանայք առանց օժիտի չամուսնանան և չգնվեն իրենց փեսացուների կողմից. խիստ անկուլտուրականության այս հատկանիշները մինչև այժմ էլ գոյություն ունեն նրանց մոտ։ Ասենք նման վայրենի բարքեր ընդունված են ոչ միայն նրանց մոտ։ Կան ուրիշ ժողովուրդներ ևս, որոնք նույնպես անհարգալից վերաբերմունք ունեն դեպի բնությունը և ստորացնում են իգական սեռը, կարծես թե նրան աստված չի ստեղծել, և նա չի ծառայում մարդկային ցեղը շարունակելուն, այլ որպես ինչ-որ անկարևոր և արհամարհելի դատապարտված է պատվազուրկ վիճակի։

μηδὲν τῆς ἄλλης ἡμῶν διεστάναι πολιτείας, ἀρχαῖς τε Ῥωμαϊκαῖς ἐκοσμήσαμεν τῶν, προτέρων αὐτὴν ἀπαλλάξαντες ὀνομάτων, σχήμασί τε χρῆσθαι τοῖς Ῥωμαίων συνειθίσαμεν, θεσμούς τε οὐκ ἄλλους εἶναι παρ' αὐτοῖς ἢ οὓς Ῥωμαῖοι ὀνομάζουσιν ἐτάξαμεν. καὶ φήθημεν χρῆναι ῥητῷ νόμῳ κἀκεῖνο ἐπανορθῶσαι τὸ κακῶς παρ' αὐτοῖς ἁμαρτανόμενον, καὶ μὴ κατὰ τό βαρβαρικὸν ἔθος ἄνδρων μὲν εἶναι τὰς διαδοχὰς τῶν τε γονέων τῶν τε ἀδελφῶν τοῦ τε ἄλλου γένους, γυναικῶν δὲ οὐκ ἔτι, μηδὲ χωρὶς προικὸς αὐτάς εἰς ἀνδρὸς φοιτᾶν, μηδὲ ἀγοράζεσθαι παρὰ τῶν συνοικεῖν μελλόντων, τοῦτο ὅπερ βαρβαρικώτερον μέχρι τοῦ νῦν παρ' αὐτοῖς ἐνομίσθη, οὐκ αὐτῶν μόνων ταῦτα ἀγριώτερον δοξασάντων, ἀλλὰ καὶ ἑτέρων ἐθνῶν οὕτως ἀτιμασάντων τὴν φύσιν καὶ τὸ θῆλυ περιυβρισάντων ὡς οὐ παρὰ θεοῦ γενόμενον οὐδὲ συντελοῦν τῇ γενεσιουργίᾳ, ἀλλ' ὡς εὐτελές τε καὶ ἠτιμασμένον καὶ πάσης ἔξω προσῆκον καθεστάναι τιμῆς.

## Գ Լ ՈՒ Խ I

*Նկատի ունենալով այդ՝ մենք այս սրբազան օրենքի ուժով հրամայում ենք, որպեսզի հայերի մեջ ևս կիրառվի այն, ինչ որ կանանց ժառանգական իրավունքի վերաբերյալ ընդունված է մեզ մոտ՝ առանց որևէ խտրություն դնելու արական և իգական սեռերի միջև։ Այդ հարցը ինչպես որ դրված է մեր օրենսդրության մեջ, և ինչ ձևով որ ծնողներին ժառանգում են վերընթաց գծով, այսինքն՝ հորը կամ մորը և կամ պապին ու տատին, նույնը և վարընթաց գծով, այսինքն՝ որդուն կամ աղջկան, ինչպես որ այստեղ կատարվում է ժառանգումը, այդպես էլ պիտի լինի հայերի մոտ։ Հայաստանում իրավական նորմերը ոչ մի բանով չպետք է տարբերվեն հռոմեականից։ Քանի որ հայերը մեր պետության մեջ են մտնում, մյուս ժողովուրդների նման ենթարկվում են մեզ և ճաշակում մեր բարիքները, ապա և նրանց կանայք չպիտի զրկվեն մեզ մոտ գոյություն ունեցող իրավահավասարությունից։ Բոլորի համար հավասարապես պարտադիր պիտի լինեն մեր օրենքները, ինչպես նրանք, որ մենք հավաքել ենք հին ակտերից և մտցրել մեր Ինստիտուցիաների և Դիգեստների մեջ, այնպես էլ նախկին կայսրերի և մեր կողմից հրատարակված մյուս օրենսդրությունները։*

Θεσπίζομεν τοίνυν διὰ τοῦδε τοῦ θείου νόμου, ὥστε καὶ παρὰ Ἀρμενίοις τὰ αὐτὰ κρατεῖν ἅπερ καὶ παρ' ἡμῖν προφάσει τῆς τῶν θηλειῶν διαδοχῆς, καὶ μηδεμίαν εἶναι διαφορὰν ἄῤῥενός τε καὶ θηλείας, ἀλλ' ὥσπερ ἐν τοῖς ἡμετέροις νόμοις τέτακται, κατὰ ποῖον μὲν σχῆμα κληρονομοῦσι γονεῖς, ἤγουν πατέρα καὶ μητέρα καὶ πάππον καὶ μάμμην καὶ τοὺς ἔτι ποῤῥωτέρω, ἢ καὶ τοὺς μετ' αὐτούς, τουτέστιν υἱὸν καὶ θυγατέρα, ὅπως τε αὐτοὶ κληρονομοῦνται, αὕτως καὶ παρὰ Ἀρμενίοις εἶναι, καὶ μηδὲν τὰ Ἀρμενίας νόμιμα τῶν Ῥωμαίων διεστάναι. εἰ γὰρ τῆς ἡμετέρας πολιτείας εἰσί, δουλεύουσί τε ἡμῖν μετὰ τῶν ἄλλων ἐθνῶν καὶ πάντων ἀπολαύουσι τῶν ἡμετέρων, οὐ δή που μόναι παρ' αὐτοῖς αἱ θήλειαι τῆς παρ' ἡμῖν ἰσότητος ἐκβληθήσονται, ἀλλὰ πᾶσιν ἐν ἴσῳ τὰ τῶν ἡμετέρων ἔσται νόμων, ὅσα τε ἐκ τῶν παλαιῶν συνηθροίσαμεν καὶ ἐν τοῖς ἡμετέροις ἐτάξαμεν ἰνστιτούτοις τε καὶ διγέστοις, ὅσα τε ἐκ τῆς βασιλικῆς νομοθεσίας τῶν τε ἔμπροσθεν αὐτοκρατόρων καὶ ἡμῶν τε αὐτῶν ἀπογέγραπται.

## Գ Լ ՈՒ Խ II

*Այսպիսով՝ մենք հրամայում ենք, որ այս ամենը ուժ ունենա ապագա ժամանակների համար՝ սկսած ընթացիկ 14-րդ ինդիկտից, երբ ստեղծվեց այս օրենքը։ Քրքրել ավելի հին գործերը և ետ դառնալ դեպի անցյալ ժամանակները, նշանակում է ավելի շատ խառնաշփոթություն մտցնել, քան կարգ ու կանոն։ Ինչպես այժմ հիշատակեցինք, 14-րդ ինդիկտից սկսած բոլոր գալիք ժամանակներում ժառանգումը պետք է լինի հավասար, և այն ամենը, ինչ օրենքով ենթակա է ժառանգման, այսուհետև պետք է պահպանել նույնությամբ՝ ինչպես կանանց, նույնպես և տղամարդկանց վերաբերյալ։ Իսկ ինչ որ տեղի է ունեցել առաջներում, այդ ամենը թույլ ենք տալիս թողնել անփոփոխ, նախկին վիճակում՝ անկախ նրանից, թե գործը վերաբերում է տոհմական տիրույթների, թե այլ բաների։ Եվ իգական սեռին պատկանող անձիք ոչ մի ձևով չպետք է մասնակից համարվեն արդեն բաժանված տոհմական կալվածքներին կամ ժառանգումներին մինչև 13 ինդիկտը ներառյալ։ Նշված ժամանակներից էլ, այսինքն՝ 14-րդ ինդիկտից գործում է այն, ինչ սահմանված է մեր կողմից։*

Ταῦτα τοίνυν ἅπαντα κρατεῖν εἰς τὸν ἅπαντα θεσπίζομεν χρόνον, ἀρχόμενα ἐκ προοιμίων τῆς παρούσης τεσσαρεσκαιδεκάτης ἐπινεμήσεως καὶ αὐτῆς, καθ' ἣν τόνδε γράφομεν τὸν νόμον· τό γὰρ καὶ τὰ παλαιότερα περιεργάσασθαι καὶ πρὸς τοὺς ἄνω χρόνους ἀνελθεῖν συγχύσεως μᾶλλον ἢ νομοθεσίας ἐστίν. ἀλλ' ἐκ τῶν χρόνων καθάπερ εἰπόντες ἔφθημεν τῆς παρούσης τεσσαρεσκαιδεκάτης ἐπινεμήσεως καὶ αὐτῆς καὶ κατὰ τὸν ἑξῆς ἅπαντα χρόνον αἱ διαδοχαὶ μενέτωσαν ὅμοιαι, τῶν ἐκ πάσης αἰτίας εἰς διαδοχάς φερομένων ὁμοίως μὲν ἐπὶ γυναικῶν ὁμοίως δὲ ἐπὶ ἀνδρῶν τοῦ λοιποῦ φυλαττομένων. τὸ δὲ ἔμπροσθεν γενομένον ἅπαν μένειν ἐπὶ τοῦ προτὲρου σχήματος ἐῶμεν, εἴτε ἐπὶ γενεαρχικῶν εἴτε ἐπὶ τῶν ἄλλων γὲγονεν, οὐδ' ὁτιοῦν ἐπικοινωνούντων τῶν θηλειῶν προσώπων ἐπὶ τοῖς ἤδη διανεμηθεῖσι γενεσιαρχικοῖς χωρίοις ἢ ταῖς γενομέναις διαδοχαῖς μέχρι τῆς τρισκαιδεκάτης ἐπινεμήσεως καὶ αὐτῆς, ἀλλ' ἐκ τοῦ ῥηθέντος χρόνου τουτέστιν ἀπὸ τεσσαρεσκαιδεκάτης ἐπινεμήσεως κρατεῖν τὰ παρ' ἡμῶν νομοθετηθέντα θεσπίζομεν.

### ՎԵՐՋԱԲԱՆ

*Սույն օրենքով հայտարարված մեր բարեհաճությունը թող քո բարձրափայլությունը, և նրանք, ովքեր քեզանից հետո պիտի գրավեն այդ պաշտոնը, ջանան կատարել հավիտյանս հավիտենից։*

Τὰ τοίνυν παραστάντα ἡμῖν καὶ διὰ τοῦδε τοῦ θείου δηλούμενα νόμου ἡ σὴ μεγαλοπρέπεια καὶ οἱ μετ' αὐτὴν τῆς ἀρχῆς ἀντιληψόμενοι παραφυλάττειν εἰς τὸ διηνεκὲς σπουδασάτωσαν.

Dat. XV. K. Apr. Constantinop. post. Bilisarii V. C. consul.

*Երկու վավերագրերն էլ միևնույն հարցն են շոշափում։ Նրանցից մեկը, որ ուղղված է Ակակիոսին, թվագրված է 536 թ. մարտի 16, նշանակում է հրապարակվել է Հայաստանի բարենորոգումներին վերաբերող նովելլայի հետ միաժամանակ։ Մյուս վավերագրի հրապարակման տարին ստույգ հայտնի չէ. ձեռագրերից մեկում միայն նշված է 23 հուլիս 535 թ., որը մեր կարծիքով կարելի է ճիշտ համարել։ Համենայն դեպս այն հրապարակված պետք է լինի մինչև 536 թ. մարտի 18-ը, երբ հրապարակվեց ժառանգական հարցին վերաբերող երկրորդ նովելլան։ Առաջին նովելլայի համաձայն ժառանգման նոր կարգը պետք է գործողության մեջ մտներ Հուստինիանոսի գահակալության օրից սկսած։ Նոր օրենքի կիրառումը անցած տարիների համար, ըստ երևույթին, բարդություններ էր առաջացնում. դրանք հարթելու համար պետք եղավ մի նոր կարգադրություն, որը և արվեց ժառանգմանը վերաբերող նոր նովելլայի հրապարակումով, որտեղ օրենքի գործադրությունը սահմանափակվում է 14 ինդիկտի սկզբով, այսինքն՝ սկսած 535 թ. սեպտեմբերից և հետագա ժամանակները։ Այդ իմաստով առաջին նովելլան անկասկած նախորդել է երկրորդին[1]։*

[1] *Չի կարելի ուշադրություն չդարձնել նովելլայի հետևյալ խոսքերին.* διὰ τοῦτο γὰρ δὴ καὶ τοὺς ἡμετέρους ἐκεῖσε κατεπέμψαμεν νόμους, ἵνα εἰς αὐτοὺς ἀφορῶντες οὕτω πολιτεύοιντο, *այսինքն՝ «Նրա համար Հայաստանում մտցրինք մեր օրենքը, որպեսզի մարդիկ ապրեն՝ առաջնորդվելով դրանով»։ Այս դիտողությունից կարելի է եզրակացնել, որ նովելլայի լույս տեսնելու ժամանակ Հայաստանի բարեփոխությունը արդեն կատարված էր, այլ կերպ ասած, նովելլան լույս է տեսել մինչև 536 թվականի մարտի 18։ Նկատի ունենալով վերը մեջբերված դատողությունները՝ այդ բանը, սակայն, անընդունելի է. դիտողությունը, թերևս, ակնարկում է Ներքին Հայքում պրեզիդի իշխանության հաստատելուն, որ տեղի ունեցավ, ինչպես տեսանք՝ մինչև 536 թվականը։*

Վերնագիրն ընկած լինելու հետևանքով անհայտ է մնում նաև այն անձնավորությունը, որին ուղղված է եղել առաջին նովելլան։ Դատելով նովելլայի եզրափակիչ խոսքերի մեջ եղած ἡ σὴ ὑπεροχή դիմումից, պետք է ենթադրել, որ այն ուղղված է եղել Արևելքի պրետորիական պրեֆեկտ Հովհաննեսին, այսինքն՝ այն նույն անձնավորությանը, որին ուղղված է նաև 31-րդ նովելլան. ὑπεροχή հոմ. excellentia նույնն է, ինչ որ մեր Ձ ե ր դ բ ա ր ձ ր ու թ յ ու ն ը կամ գ ե ր ա զ ա ն ց ու թ յ ու ն ը, որը պրեֆեկտի սովորական տիտղոսն է, ինչպես այդ երևում է այն բազմաթիվ նովելլաներից, որ հրապարակվել են նրա անունով։ Սակայն առաջին նովելլայում մատնանշվում է նաև այն, որ սույն օրենքը հրապարակված է πρὸς τὴν σὴν μεγαλοπρέπειαν՝ մի տիտղոս, որ տրված է Ակակիոսին ժառանգմանը վերաբերող երկրորդ նովելլայի մեջ։ Արդյո՞ք այստեղ ի նկատի չի առնված Թովման, որ իր պաշտոնական դիրքով հավասար էր Ակակիոսին։ Այս հարցը կարևոր է, որովհետև կասկածից վեր է, որ ում անունով էլ որ հրապարակված լինեին Հայաստանին վերաբերող օրենսդրությունները, նրանց պատճենները ուղարկվում էին և՛ Ակակիոսին, և՛ Թովմային, և՛ նրանց պետին՝ Հովհաննես պրեֆեկտին։

Երկու նովելլաների մեջ էլ կայսրը ժառանգման խնդրում անց է կացնում կանանց իրավահավասարության սկզբունքը. նա մատնանշում է, որ հայերի մեջ գոյություն է ունեցել մի սովորություն, որի համաձայն կանայք զրկված էին ժառանգական իրավունքից։ Դրանով է բացատրվում մասամբ և այն, որ կանայք ամուսնանում էին առանց օժիտի. դեռ ընդհակառակը, փեսացուներն էին վճարում հարսնացուների համար, գնում էին նրանց։ Պաշտոնական վավերագրի վկայության ճշմարտությանը կասկածելու ոչ մի հիմք չկա։ Միայն թվում է, որ մի փոքր չափազանցված է այն նվիրաբերությունների բնույթը, որ անում էին փեսացուները իրենց հարսնացուներին։

Հունա-հռոմեական աշխարհում ամուսնության խնդրում օժիտը շատ կարևոր դեր էր խաղում. նրա չափը ճշտությամբ որոշվում էր հատուկ պայմանագրով, որ կնքվում էր նշանդրեքի ժամանակ։ Հույների մոտ այդ կոչվում էր φέρνη կամ προίξ, իսկ հռոմեացիների մոտ՝ dos։ Նրանց մոտ ընդունված էր նաև, որ, իբրև օժիտի փոխհատուցում, փեսան հարսնացուին ընծաներ տար, որ կոչ-

վում էին προγαμιαία δωρεά, ante nuptias donatio։ Փեսացուի այս մինչամուսնական նվիրատվությունը, ըստ երևույթին, տարբերվում էր նրանով, որ այն այնքան էլ պարտադիր չէր, ինչպես հարսնացուի օժիտը։

Հուստինիանոսը 531—533թ. donatio ante nuptias-ը վերանվանեց donatio propter nuptias-ի, այսպիսով ցանկանալով ընդգծել փեսացուի նվիրատվությունների և հարսնացուի օժիտի dos նշանակության հավասարությունը, որը, կայսեր ասելով, նույնպես propter nuptias fit է։ Donatio-ն, ըստ Հուստինիանոսի բացատրության, ոչ թե հասարակ ընծա էր, այլ վերադարձվող կամ հարսնացուի օժիտի դիմաց տրվող նվիրատվություն. դա մի antipherna էր՝ մի պարգևահատույց։ Ուստի և donatio-ն նույնչափ պարտադիր էր, որքան dos-ը։ Օժիտը սակայն չէր համարվում ամուսնության անհրաժեշտ նախապայմանը։ Ըստ Հուստինիանոսի sine dote autem nuptiae possunt celebrari, այսինքն՝ թույլատրվում էին ամուսնություններ նաև առանց օժիտի[1]։

Հայկական նովելլաների հրապարակումից երկու տարի հետո, 538 թվականին, Հուստինիանոսը որոշակի դասի պատկանող անձանց համար պարտադիր դարձրեց ամուսնության պայմանագիրը. «Բարձր կոչումներ կրողների, ընդհուպ մինչև սենատորներն ու գերամեծար illustres,— ասված է նովելլայի մեջ,— ամուսնությունները պետք է կատարվեն օժիտով և մինչամուսնական նվիրատվությամբ, ինչպես նաև այն ամենով, ինչ որ պատշաճ է այդչափ անվանի մարդկանց»[2]։ Նրանց իրավունք է տրվում ամուսնանալ նաև առանց օժիտի՝ «միայն հակումներով», բայց այս դեպքում զույգի վրա պարտավորություն է դրվում ներկայանալ եկեղեցի, դեֆենզորին՝ ἔκδικος, վկայական ստանալու այն մասին, որ այսինչ անձնավորությունները ամուսնացել են այսինչ ժամանակ[3]։ Թռուցիկ կերպով նշենք, որ այս պահանջը հետաքրքրական է նաև այն տեսակետից, որ նրա մեջ երևում են եկեղեցական ամուսնության սաղմերը։

---

1 C. J. V 3 20.

2 *Const.* 94=*Nov.* 74 c. 4 § 1. ἐπὶ μὲν οὖν τῶν μειζόνων ἀξιωμάτων, καὶ ὅσα μέχρι τῶν ἡμετέρων ἐστὶ συγκλητικῶν καὶ τῶν μεγαλοπρεπεστάτων ἰλλουστρίων... ἔστω πάντως καὶ προίξ καὶ προγαμιαία δωρεὰ καὶ τὰ ἄλλα πάντα ὅσα τοῖς σεμνοτέροις πρέπει τῶν ονομάτων.

3 *Const.* 94=*Nov.* 74 c. 4 § 1.

*Մի քանի տարի հետո, 542 թվականին, հրապարակվեց մի նովելլա, որով Հուստինիանոսը վերացնում է հենց նոր արված կարգադրությունն այն մասին, որ նոր ամուսնացած զույգերը ներկայանան եկեղեցու երեցփոխանին՝ դեֆենզորին։ «Վերջերս մենք հրապարակեցինք մի օրենք այն մասին,— ասում է նովելլայի հեղինակը,—որպեսզի ամուսնությունները, ելնելով ամուսնություն-ների հաստատության շահերից՝ կատարվեն կամ պայմանագրով և կամ եկեղեցական էկդիկի ներկայությամբ տրված երդումով. այ-ժմ, սակայն, գերադասում ենք հետևել այն օրենքներին, որոնք գոյություն ունեին նախկինում։ Այդ պատճառով մենք հրամայում ենք, որպեսզի «բարձր կոչումով մեծարված անձինք, ներառյալ* illustres-*ը, ամուսնանան ոչ այլ կերպ, քան միայն ամուսնական պայմանագրերով»։ Ուշադրության արժանի է օրենսդրի այն վերա-պահումը, թե «այս օրենքի ճիշտ գործադրումը չի պահանջվում կայսրության հպատակ բարբարոսներից, թեկուզև նրանք կրեն հիշյալ կոչումները, բայց նրանց հնարավորություն է տրվում, եթե նրանք ցանկանում են, ամուսնանալ նաև փոխադարձ հակումնե-րով»*[1]*։ Ինչ վերաբերում է բարձր կոչում չունեցողներին, ապա նրանք բոլորը ազատ են փոխադարձ համաձայնությամբ ամուսնանալու, ինչպես որ կամենան՝ պայմանագրով, օժիտով կամ առանց օժիտի*[2]*։*

*Քանի որ ամուսնացողների գույքային պարտավորությունները հարկադիր բնույթ չէին կրում, ապա թվում է, թե հիմք չկար շեշ-տել հայերի անկուլտուրական սովորույթները, որոնք իբրև թե աններդաշնակ էին կայսրության օրենքներին։ Ինչպե՞ս էր ամուս-նությունը հայերի մոտ, և ո՞րն էր ամուսնության այն առանձնա-հատկությունը, որ դուր չէր գալիս Հուստինիանոսին։*

*Ծագումնաբանական տեսակետից դասական* donatio-*ն ոչ այլ ինչ էր, եթե ոչ հեռավոր անցյալի մի հուշ՝ երբեմնի գոյություն ունեցած սովորույթ, երբ ամուսինը կին էր ձեռք բերում նվերներ՝* ἕδνα, *տալով, այլ խոսքով՝ գնում էր նրան։ Ամուսնության այդ*

---

[1] *Const*· 141=*Nov*. 117 c. 4 ...τοιαύταις ἀξίαις μὴ ἄλλως ἄγεσθαι γαμετάς, πλὴν εἰ μὴ μετὰ προικ φων συμβολαίων. ταύτην δὲ τὴν τοῦ νόμου ἀκρίβειαν συγχωροῦμεν τοῖς ὑποτεταγμένοις τῇ ἡμετέρᾳ πολιτείᾳ βαρβάροις, κἂν ἀξιώμασι τοιούτοις ὑπάρχοιεν κεκοσμημένοι, ὥστε καὶ διαθέσει ψιλῇ δύνασθαι αὐτοὺς βουλομένους συναλλάσσειν γάμους.

[2] *ib.*

ձևը, որ հատուկ էր ժողովուրդներին նրանց կյանքի որոշ շրջանում, Արիստոտելի հեղինակավոր վկայությամբ, խորթ չէր նաև հույներին[1]։ Հնագույն ժամանակներում սա գոյություն ուներ նաև հայերի մոտ։ Ազգային ավանդության համաձայն հայոց Արտաշես թագավորը, հաղթելով ալաններին, ցանկություն է հայտնում կնության առնել նրանց թագավորի աղջկան՝ Սաթենիկին։ Արտաշեսի առաջարկությանը ալանաց թագավորը պատասխանում է. «Էւ ուստի տացէ քաջն Արտաշէս հազարս ի հազարաց և բիւրս բիւրուց ընդ քաջազգւոյ կոյս օրիորդին Ալանաց»։

Այն ժամանակ «հեծաւ արի արքայն Արտաշէս ի սեաւն գեղեցիկ, և հանեալ զոսկէօղ շիկափոկ պարանն, և անցեալ որպէս զարծուի սրաթև ընդ գետն և ձգեալ զոսկէօղ շիկափոկ պարանն՝ ընկէց ի մէջք օրիորդին Ալանաց և շատ ցաւեցոյց զմէջք փափուկ օրիորդին, արագ հասուցանելով ի բանակն իւր»[2]։

Մեջ բերելով ժողովրդական երգի վերոհիշյալ տողերը՝ Խորենացին հայտնում է, որ դրանք պետք է հասկանալ այլաբանորեն և տալիս է իր մեկնությունը։ Ըստ նրա ոսկեօղ-շիկափոկ պարանը նշանակում է կարմիր մորթի, որ շատ թանկ էր գնահատվում ալանների մոտ. հայոց թագավորը նվիրեց նրան «մորթ կարմիր, շատ լայքա և ոսկի բազում» իբրև գլխագին և առավ արքայի դուստր Սաթենիկին։ Խորենացու մեկնությունը մեզ համար պարտադիր չէ, բայց չափազանց հետաքրքրական է։ Տոգորված բնապաշտական հայացքներով՝ հայ պատմիչը ամեն տեղ փնտրում է խոր իմաստ և հաճախ այլաբանություն է գտնում այնտեղ, որտեղ այն բնավ չկա։ Ներկա դեպքում ժողովրդական երգիչները, այսպես կոչված վիպասանները, պարզապես երգ են հյուսել այն մասին, թե ինչպես հայոց թագավորը, սև ձիու վրա նստած, թոկի օգնությամբ առևանգել է ալանների թագավորի աղջկան։ Երգիչների կենդանի նկարագրության մեջ արտացոլվում է առևանգման սովորությունը, որ կին ձեռք բերելու նախնական ձևերից մեկն էր։ Արքայական թոկը ներկայացված է իբրև կարմիր կաշվից, այսինքն՝ բարձրորակ կաշվից հյուսած, որը, ինչպես վայել է թագավորին, ոսկեօղ է և ոչ թե հասարակ։ Խորենացու բացատրությունը կարևոր է այն տեսակետից, որ արտացոլում է իր ժամանակվա կամ իր

---

[1] *Polit.* II 8, 12, καὶ τὰς γυναῖκας ἐωνοῦντο παρ' ἀλλήλων.

[2] Խորենացի, Բ, ծ։

պատկերացմամբ գլխագնով կատարվող ամուսնությունը։ Առևանգումը, ըստ երևույթին, նրան արդեն հասկանալի չէ. և միաժամանակ առեղծվածային է թվում նաև պարանի գոյությունը։ Նա հարցը լուծում է նրանով, որ թոկը դարձնում է կարմիր մորթի՝ արժեք ներկայացնող մի առարկա, որ գործ է ածվում որպես գլխագին։ Այն բոլորը, ինչ Արտաշեսը տալիս է թագավորի դստեր համար՝ մորթի և ոսկի, Խորենացին արտահայտում է vardank — վարձատրություն բառով։ Ըստ երևույթին հռոմները հենց այդ վարձի մեջ էլ տեսնում են Հարսնացուի այն գնումը, որ պախարակվում է Հուստինիանոսի նովելլայում. այսպիսով նովելլայի խոսքերը մասամբ արդարանում են։

Նույնը չի կարելի ասել օժիտի վերաբերյալ եղած նրա վկայությունների մասին։ Հարսնացուի բաժինքի իմաստով գրաբարում aužit, օժիտ բառի առկայությունը չափազանց կասկածելի է դարձնում Հուստինիանոսի այն պնդումները, թե հայ կանայք ամուսնանում էին առանց օժիտի։ Հիշյալ բառը պատկանում է հայոց լեզվի ոչ արիական տարրերի թվին, այդ պատճառով էլ նրա հնությունը կասկածից դուրս է։ Ասորական օրենքների ժողովածուի մեջ, որտեղ մանրամասն քննվում է ամուսինների գույքային փոխհարաբերությունների հարցը, ի միջի այլոց գտնում ենք հետևյալ նշումը. «այն, ինչ ամուսինը տալիս է կնոջը, կոչվում է δωρεά, պարսկերեն՝ dastīr, ասորերեն՝ zabhda կամ mahra‘»[1]։ Այստեղ հիշատակված ասորական zabhda բառը ստուգաբանորեն համապատասխանում է հայերեն aužit, աւժիտ-ին. եռատառ z-b-d արմատը՝ = հայերենի ւ-ժ-տ-ին, հնչյունների սովորական տեղափոխությամբ և ընդհատումով[2]։ Վերոհիշյալ բառը թե՛ հայերենում, թե՛ ասորերենում նշանակում է նվեր ընդհանրապես և օժիտ՝ մասնավորապես։ Թեև ասորական ժողովածուի մեջ այն համապատասխանում է δωρεά-ին, այսինքն՝ նրանով արտահայտվում է այն, ինչ ամուսինը նվիրում է իր կնոջը, բայց թե՛ ասորերենում և թե՛ հայերենում ընդհանրապես

---

[1] *Syrische Rechtsbücher* I B, ed. Sachau 1907, Berlin. Leges Constantini Theodosii Leonis, § 31, p. 17.

[2] Սրան է վերաբերում նաև վրացական გუზითი, gizit-i, მზითევი, m-zitev-i, دزي, հմմտ. Zebed-ee, Ζεβεδ-αῖος, Zantha անունը, որ համարար է հայկ. Զուիթին, հմմ. տուրք. պարգև։

արտահայտում է գերապանցապես հարսնացուի օժիտը[1]։

Պարսկական հոմանիշը dastir-ը կամ ավելի ճիշտ՝ dastiri, որ dastiari-ի կրճատ ձևն է, իսկապես նշանակում է օգնություն, օժանդակություն[2]։ Այդ բառով էր արտահայտվում փեսացուի նվերը իր հարսնացուին։ Որ պարսիկների մոտ ընդունված էր նաև օժիտը, երևում է այս նույն օրենսգրքից։ Այստեղ ասված է, որ հակառակ հռոմեական օրենքների, որոնց համաձայն ինչքան օժիտ՝ φερνή, որ կինը բերում է իր ամուսնուն, նույնքան էլ այս վերջինը պիտի փոխհատուցի կնոջը, Արևելքում, այսինքն՝ սասանյան պետության մեջ ընդունված է, որ «եթե կինը բերում է 100 դինար, ապա ամուսինը բերում է դրա կեսը, երբեմն ամուսինը ավելի է բերում, քան կինը, երբեմն ոչինչ չի բերում, իսկ երբեմն էլ կինը ոչինչ չի բերում»[3]։ Պետք է ենթադրել, որ այդ օրենքները գործում էին նաև Հայաստանում, որ հանդիսանում էր իրանական մշակութային աշխարհի մի բաղկացուցիչ մասը։

Հայոց կյանքում արդյո՞ք պատվաստվեցին հռոմների προίξ և δωρεά հասկացությունները պայմանագրի իմաստով և ի՞նչ չափով, շատ կասկածելի է։ Հռոմեական այդ տերմինները հայկական գրավոր որոշ հիշատակարանների մեջ մտան պռոյգ և տուայր ձևով։ Որքան գիտենք, սրանք առաջին անգամ հանդիպում են ասորա-հռոմեական օրենքների ժողովածուի հայերեն թարգմանու-

---

[1] Հնարավոր է, որ օժիտ բառը հայերենում եւ գործ է ածվել այն նվերի իմաստով, որ փեսացուն տալիս է հարսնացուին, ինչպես ասորերենում։

[2] Dastar հանդիպում է նույն տեղում. § 43, p. 23։ Ժողովածուի հրատարակիչ Sachau-ն ասում է, որ պարսկերենում այդպիսի բառ իրեն հայտնի չէ և սխալ համեմատություն է անում 'vielleicht darf man est mit dastär in dem Ausdruck ساختن دستارچه =Geschenk gehen kombinieren' p. 187, 31-ի ծանոթ.։ Իրականում փնտրված բառը պարսկ. دستياری, nom. abs. دستيار -ից՝ բարեկամ, գործակից իմաստով, որ ծագում է *dasta-data կամ ավելի ճիշտ՝ *dasta-dara-ից, որ նշանակում է ձեռք մեկնող կամ ձեռք բռնող, հմմտ. ձեռն-տու, ձեռնտուություն։ Իսկ Զախաուի առաջարկած բառը دستار բաշկինակ-ի նվազականն է, հայերեն՝ դաստառ-ակ։

[3] *Syr. Recht*, p. 17, ինչպես և էջ 81, § 51, որտեղ ասվում է, որ ըստ հռոմների օրենքի, եթե կինը բերում է 100 դինար, ապա փեսան նույնպես նրան տալիս է 100 դինար, եթե 200, ապա՝ 200, իսկ Արևելքում, եթե կինը բերում է 100, ապա փեսան՝ դրա կեսը, այսինքն՝ 50 դինար. հմմտ. հայերեն թարգմ., գլ. 45։ *Syrisch-Röm*, էջ 112։ Հայերենում հայտնի է պաշտառական բառը օժիտ իմաստով, արդյո՞ք պարսկ. *peš-data-ն նախա-տվությունից չի ծագում։

թյան մեջ[1]։ Հայերեն թարգմանությունը այնքան հին չէ, որքան ասորական բնագիրը։ Բառերի տառադարձությունը և առհասարակ լեզվական տվյալները խոսում են հօգուտ այն ենթադրության, որ նրանք պատկանում են մի դարաշրջանի, որ մոտ է կիլիկիականին։ Պետերմանը այն կարծիքն է հայտնել, թե թարգմանության հեղինակը Մխիթար Գոշն է[2]։ Ներկայումս ստույգ ճշտված է թարգմանչի անձնավորությունը, նրա իսկ թողած հիշատակարանի հիման վրա, որ հրապարակել են Մխիթարյանները։ Ասորական այդ հուշարձանը հայերեն թարգմանել է Ներսես Լամբրոնացին հայկական թվականության 645 թ., այսինքն՝ 1197 թ., Գրիգոր կաթողիկոսի օրոք, Թեոդոս անունով մի ասորի կրթված քահանայի հանձնարարությամբ[3]։ Իսկ Մխիթար Գոշը, ինչպես վկայում է ինքը, իր աշխատությունը կազմել է 1184 թվականին։ Այսպիսով երկու օրենսգրքերն էլ լույս են տեսել համարյա միաժամանակ, բայց քանի որ Մխիթար Գոշի աշխատությունն այնուամենայնիվ ասորական ժողովածուի թարգմանությունից 13 տարով հին է, ուստի խոսք լինել չի կարող, թե Մխիթար Գոշի երկը կապ ունի նրա հետ[4]։ Իսկ երկու աշխատությունների մեջ գոյություն ունեցող ընդհանուր տեղերը, եթե միայն դրանք չեն վերցված հռոմեական աղբյուրներից, պետք է վերագրել այն բանին, որ Գոշի բուն աշխատությունը հիշյալ թարգմանական ժողովածուներին ծանոթ անձանց կողմից ենթարկվել է որոշ հավելումների։

Գոշի Դատաստանագրքի ներկայումս գոյություն ունեցող հրատարակությունը, որի համար մենք պարտական ենք էջմիածնի միաբան հանգուցյալ գիտնական Վահան վարդապետ Բաստամյանին, իր բոլոր արժանիքներով հանդերձ, գոհացուցիչ համարել չի կարելի։ Հրատարակիչը հալած յուղի տեղ է ընդունում այն ամենը, ինչ որ ձեռագրերի մեջ վերագրվում է Գոշին՝ ուշադրություն չդարձնելով նույնիսկ ձեռագրերի իր իսկ նշած էական տարբերությունների վրա։ Մինչդեռ քննադատական վերաբերմունքի դեպքում հեշտությամբ կարելի է երևան հանել հետագա հավելագրություն-

[1] *Sirisch-Römisches Rechtsbuch* aus dem V Jahr. ed. K. Bruns und. E. Sachau. 1880. Ասորերեն բնագիրը հայերեն և արաբերեն թարգմանությամբ։

[2] Նույն տեղում, էջ 163։

[3] Զարբհանալեան, Թարգմանութիւնք նախնեաց, էջ 754—755։

[4] Ասորական ժողովածուի հայերեն թարգմանության հրատարակիչները են-

*ներ, այսինքն՝ տարրեր, որ սողոսկել են Մխիթարի ժողովածուի մեջ իրենից հետո։ Մեզ թվում է, որ* **պռոյգի** *և* **տուայրի** *մասին եղած հոդվածները կրում են Կիլիկյան շրջանում թարգմանված հուշարձանի ազդեցությունը, և դրանք պետք է դասել Գոշի Դատաստանագրքի հետագա նորամույծ տարրերի շարքը։ Ըստ ասորական ժողովածուի Լևոն կայսրը որոշեց՝ «այն, ինչ բերում է կինը, գրի առնել որպես* proig, προίξ, *նաև գրի առնել* touar, δωρεά *այսինքն՝* **վարձանք** *կամ* **մահր**»[1]: *Մխիթար Գոշի գրքում էլ հոդվածներից մեկը սկսվում է այսպես. «Այլապէս լինի առ մահմեդականսն զուգումն ամուսնութեան. զի հատանեն նախ զգին անձին կնոջն, որ կոչի* **մահր**. *նոյն եւ այս առ հռովմայեցիսն* **տուայր** *կոչի. ապա սահմանեն եւ զբաժին եւ կնոջն ի հայրենի իրաց, որ կոչի* **պռոյգ**»[2]։

*Այս բառերի մեջ չի կարելի չտեսնել ասորական օրենքների հայերեն թարգմանության ազդեցությունը տերմինոլոգիայի տեսակետից։ Այդ հասկացությունները, մինչև կիլիկյան մատենագրությունը, հավանաբար խորթ էին հայոց կյանքին։ Հետաքրքրական է, որ նորամույծ հոդվածի հեղինակը, ընդգծելով* προίξ-*ի և* δωρεά-*ի հռոմեական ծագումը, անմիջապես ավելացնում է. «Մեզանում այդպես չէ. ամուսինը չի մուծում կնոջ համար սահմանված գին, բայց որոշ բան տալիս է, որ կոչվում է* **Երեսացանս**,

---

*թարգել են, որ Գոշը ծանոթ է եղել այդ ժողովածուին. նույն տեղում, էջ 163։ Բայց այն ժամանակ Մխիթարյանները դեռ չէին հրատարակել վերը հիշված հիշատակարանը։ «Պռոյգ և տուայր» վերնագրով իր մի փոքր հոդվածում Կ. Կոստանյանը, անտեսելով այդ հիշատակարանը, պնդում է, որ մինչև այժմ էլ անհայտ է, թե երբ և ում կողմից է կատարվել ասորական օրենքների հայերեն թարգմանությունը և սխալ ենթադրություն է անում, թե Գոշը օգտվել է նրանից։* **Ազգ. հանդէս**, *XIII, 1906, էջ 131։*

[1] *Syrisch-Röm.* p. III *«զոր ինչ բերէ կինն պռուգս գրեսցեն զայն. նոյնպէս գրեսցին զտուարն, այսինքն զվարձանսն որ է մահր» գլ. 45, հմմտ. Գոշ, Ա, ՃԻԱ։ Հրատարակչին հայտնի չորս ձեռագրերում չկա այս հոդվածը. մեկի մեջ այն զետեղված է B մասում։ Հոդվածի սկիզբը ցույց է տալիս, որ այն իր տեղում չէ, այլ պոկված է ուրիշ տեղից։* **Տուարը**, *որ* δωρεά-*ի աղավաղումն է, Գոշի Դատաստանագրքում ստացել է* **տուայր** *ձևը, հավանորեն սխալ ստուգաբանության հետևանքով որպես հայերեն տու-այր,* **տուեալն յառնէ** *իմաստով, ինչպես և բացատրված է այն Հայկազյան բառարանում։ Մահրի մասին տե՛ս* Основныя *начала мусульманского права* Л. В. С. фонъ-денъ Верга. *Թարգմ.* Гиргас-*ի* Спб. 1882, с. 106. «цена, платимая за жену, называется *мегръ* или *садакъ*».

[2] **Մխիթար Գոշ**, *Դատաստանագիրք, Ա, ճիա։*

իսկ կինը մտնում է ամուսնու տունը օժիտով»[1]։ Հայ ժողովրդի դեռևս նոր հողերով չտարված նահապետական խավերում մինչև այժմ էլ երիտասարդ աղջիկը նշանդրեքից հետո թաքնվում է փեսացուից և նրա մերձավոր հարազատներից։ Երևալ նրանց աչքին, բաց երեսով կանգնել նրանց առջև կամ խոսել նրանց հետ, ընդունված չէ և, համենայն դեպս, համարվում է հարսնացուին ոչ վայել անհամեստ վարքագիծ։ Այս նույն բանը փեսացուի հարազատների նկատմամբ շարունակվում է նաև ամուսնության առաջին տարիներին։ Յուրաքանչյուր առանձին դեպքում կնոջ հետ խոսելու կամ նրա երեսը տեսնելու իրավունքը ձեռք է բերվում նրան նվերներ տալով, որոնք կրում են համապատասխան անուններ[2]։ Այդ արարողությունը տարբեր վայրերում տարբեր ձևով էր կատարվում։ Գոշը Ներեսացանս է անվանում, ըստ երևույթին, բոլոր նվերները միասին առած։ Նվիրատվության նպատակն է օտար անձնավորությանը վարժեցնել նոր միջավայրին. այդ ոչ այլ ինչ է, եթե ոչ նվերների բնույթ ստացած հին վարձանքի սիմվոլիկ վերապրուկը։

Հայկական օժիտը և վարձանքը ըստ էության համարժեք են հունական προίξ-ին և δωρεά-ին կամ dos-ին և donatio-ին։ Նրանց նման, օժիտն ու վարձանքը ևս պարտադիր չլինելով հանդերձ, արմատացած ու նվիրագործված էին բացառապես սովորույթի ավանդականությամբ։

Այս պայմաններում ինչպես հասկանալ՝ ինչի՞ դեմ էր պայքարում Հուստինիանոսը իր նովելլաներով։

Մեզ թվում է, որ վերոհիշյալ նովելլաների հրապարակման առիթ են ծառայել գլխավորապես տոհմական կալվածքները, այն հողերի բաժանման հարցը, որոնք նովելլաներում կոչվում են γενεαρχικὰ χωρία։ Հենց այս կալվածքներից է, որ կանայք ժառանգական կարգով բաժին չէին ստանում։ Կայսրի պնդումով հայերի մոտ գոյություն ունեցող սովորույթի համաձայն աղջիկները չէին մասնակցում ժառանգմանը ἐξ ἀδιαθέτου, ab intestato։ Իրավունքի պատմությանը հայտնի է ժառանգման երկու ձև՝ կտակով և առանց կտակի. վերջին դեպքում, այսինքն՝ երբ մարդ մեռնում է առանց կտակ թողնելու, ժառանգումը կատարվում է

[1] Մխիթար Գոշ, Դատաստանագիրք, գլ. 121։

[2] Վերբերուք, երեստեսուք, բերանբացէք։

օրենքով՝ succesio ab intestato։ Այդ կարգը, անվիճելիորեն, կտակով ժառանգելու սկզբնական ձևն է։ Ժողովուրդների կյանքի վաղնջական շրջանում օրենքը կամ սովորույթը հետևում էր ագնատիկական սկզբունքին, այսինքն՝ ժառանգելու իրավունքը վերապահվում էր միայն արական սեռի ժառանգներին։ Այդ սկզբունքը խորթ չէր նաև դասական աշխարհին[1], և հռոմեական իրավունքը, նույնիսկ Հուստինիանոսի ժամանակ, դեռևս բոլորովին չէր հրաժարվել դրանից։ Այդ հարցին վերաբերող գործող օրենքները ներկայացնում էին զանազան սկզբունքների այնպիսի մի խառնուրդ, որ Հուստինիանոսը ստիպված եղավ վերանայել այդ հարցը և խստորեն կարգավորել ժառանգական հարաբերությունները։ Այդ նպատակով հրատարակվեցին նովելլաներ, որոնցից մեկը կոչվում է Ագնատիկական իրավունքը վերացնելու և ժառանգելու ab intestato կարգ հաստատելու մասին[2]. Այս նովելլան երևան եկավ 543 թվականին, այսինքն՝ նշանակում է հայկական նովելլաներից հետո։ Եթե ագնատիկական սկզբունքը նախապատվություն էր վայելում նաև հռոմեական օրենսդրության մեջ, ապա, թվում է, հարկ չկար զարմանալու և բարբարոսության հիմքեր փնտրելու այն բանի մեջ, որ հայերի մոտ գործում էր նույն այդ համակարգը, թեկուզև անաղարտ ձևով։

Կայսրին հետաքրքրում էին g e n e a r c h i c a կոչվող հողերը՝ հայկական նախարարական տիրույթները։ Նախարարական իրավունքը բաղկացած էր տոհմային և ֆեոդալական տարրերից։ Ֆեոդալական աշխարհում, ինչպես հայտնի է, հողը ագնատիկական գծով փոխանցվում էր հորից որդուն, եղբորը, ժառանգման իրավունքից զրկելով կանանց։ Այդ մասին է խոսում նաև Lex salica-ն[3]։ Այս վիճակը բխում է ֆեոդալիզմի էությունից։ Չէ՞ որ ֆեոդալական հողատիրությունը պայմանավորված էր զինվորա-

---

[1] Հմտ XII *Tab.* si intestato moritur—agnatus proximus familiam habeto. Հույների մոտ նույնպես ոչ միայն մինչև Սոլոնը, այլև նրա օրենսդրությունից հետո տղամարդկանց՝ կանանց նկատմամբ նախապատվությունը տրվում էր ab intestato ժառանգելու դեպքում։

[2] *Const.* 143=*Nov.* 118, Διάταξις ἀναιροῦσα τὰ adgnatica δίκαια καὶ τυποῦσα τὰς ἐξ ἀδιαθέτου κλήσεις.

[3] *Lex salica* 59, 5. De terra vero nulla in muliere hereditas est, sed ad virilem sexum qui fratres fuerint tota terra perteneat; տես G. Waitz. *Deutsche Verfassungs-geschichte*, III auflage, I, p. 64.

*կան ծառայությամբ, և կանայք, որ անընդունակ էին այդ ծառայությանը, բնականաբար պիտի զրկվեին հողատիրության իրավունքից։ Ճիշտ այդպես էլ տոհմական միջավայրում կանանց հողային ժառանգությանը անմասն լինելը արդարացվում էր նրանով, որ նրանք անընդունակ էին մասնակցելու տոհմական վրեժխնդրությանը, որ համապատասխանում է ֆեոդալական դարաշրջանի զինվորական ծառայությանը։ Հայկական նախարարությունը, որ բովանդակությամբ ֆեոդալական էր, իսկ էությամբ՝ տոհմային, կանանց կամ կոգնատական գծի նկատմամբ բռնեց այնպիսի դիրք, որը բխում էր նրա էությունից, այսինքն՝ հողատիրության իրավունքը չպետք է տարածվեր կանանց վրա։ Ըստ Նովելլայի հայ ընտանեկան իրավունքի մեջ առհասարակ ընդունված չէր կտակելու սովորությունը*[1]*, մի փաստ, որ շատ բնորոշ էր նախարարությանը։ Նկատի ունենալով այն, որ հայերի մոտ պայմանական հողատիրությունը տեղավորվեց տոհմական թաղանթի մեջ, կտակելու կարիքը ինքնին վերանում էր։ Կտակը անձնական սեփականությունը ազատ կերպով տնօրինելու մի ակտ է, ուստի պետք է որ խորթ լինի այն միջավայրին, որտեղ գոյություն ունի տոհմական սեփականություն։ Որպես տոհմի գլուխ կանգնած առաջնակարգ անդամներ առանձին անձնավորություններ միայն ղեկավարում են ընդհանուր սեփականությունը և լիազորված չեն իրենց իրավունքները փոխանցելու այս կամ այն անձնավորությանը սեփական հայեցողությամբ։ Տոհմական կենցաղի տեսակետից կան միայն հաջորդներ, բայց ոչ ժառանգներ, ըստ որում հաջորդելու կարգը որոշվում է ոչ թե տվյալ հաջորդի անձնական ցանկությամբ, այլ ծննդի իրավունքով, արյունակցական մերձավորությամբ և ավագությամբ։ Այսպես, օրինակ՝ գերմանացիների մոտ յուրաքանչյուրի համար ժառանգներ և հաջորդներ էին համարվում իրենց զավակները, իսկ կտակի մասին նրանք գաղափար չունեին*[2]*։ Ճիշտ այդպես էլ կտակի*

[1] *Պետք է նշել Նովելլայի հետևյալ արտահայտությունը՝* μὴ καλουμένας εἰς τὴν ἐξ ἔθους ἀδιαθέτου διαδοχήν, *սովորական* ἐξ ἀδιαθέτου*-ի փոխարեն Ձեռագրերում թեև կարդացվում է* ἐξαίτασιν, *բայց նոր հրատարակիչները իրավամբ ուղղում են* ἐξ ἔθους, *նկատի ունենալով Հուլիանոսի լատինական թարգմանությունը՝* ab intestalo parentibus suis secundum pristinam Armeniorum consuetudinem non succedant.

[2] Tacit. *Germ.* 20, heredes tamen successoresque sui cuique liberi, et

*բացակայությունը Հայաստանում պետք է համարել նախարարական ընտանեկան իրավունքի բնորոշ գիծը։*

*Պատմիչները հայտնում են, որ հայոց Սահակ կաթողիկոսը արու զավակ չունենալու պատճառով իր ամբողջ կարողությունը հավիտենապես ժառանգություն թողեց իր միակ աղջկան՝ Մամիկոնյան իշխանուհուն և նրա զավակներին*[1]*։ Ինչպես կտեսնենք, եկեղեցում գործում էին նույն ֆեոդալական օրենքները, ուստի եկեղեցական ոլորտից վերցրած տվյալները միանգամայն պիտանի են նախարարական կարգը լուսաբանելու համար։ Աղջկա օգտին արված կտակը պատմիչը բացատրում է նրանով, որ Սահակ կաթողիկոսը արու զավակ չուներ. այդ նշանակում է, որ աղջիկը ժառանգելու իրավունք է ստանում միայն այն դեպքում, եթե չկան արական սեռի ժառանգներ։ Այստեղ էլ նկատվում է համաձայնություն արևմտյան ֆեոդալիզմի հետ, որտեղ կանայք աստիճանաբար ճանապարհ էին հարթում դեպի ֆեոդը (կալվածքը) ժառանգելուն, ընդ որում սկզբնական շրջանում նրանց իրավունքները ճանաչվում էին միայն այն դեպքում, երբ ընդհատվում էր արական գիծը*[2]*։*

*Այսպիսով, հ ա յ ե ր ի ա դ ի ա թ ե տ ա կ ա ն ս ո վ ո ր ու յ թ ը անառարկելի փաստ է։ Նվ երբ հարց է ծագում, թե կայսերական իշխանությունը ինչու՞ զինվեց նրա դեմ, ապա միակ պատասխանը գտնում ենք կայսրի կողմից նախարարական վարչակարգը խարխլելու ցանկության մեջ։ Ինչպես պատմականորեն զարգացած յուրաքանչյուր ինքնուրույն վարչակարգ պատվար է արտաքին ոտնձգությունների դեմ, նախարարությունն էլ խոչընդոտ էր մեծ աշխարհակալի կենտրոնաձիգ նկրտումների ճանապարհին։ Հուստինիանոսի պահանջը, ինչպես և նախարարական հողային ամբողջականության դեմ ուղղված որևէ միջոցառում, պետք է*

n u l l u m t e s t a m e n t u m, si liberi non sunt, proximus gradus in possessione fratres, patrui, avunculi.

[1] Փարպեցի, էջ 37։ Խորենացի, Բ, կբ, հիշատակում է Դրաստալ պարսիկի մասին, «որ խնամացեալ էր ընդ նախարարս Վասպուրականի, որում տուեալ էր զաւանն Տատեոնս հանդերձ ագարակօքն»։

[2] Waitz. *loc. cit.* Here₁ditatem refincti filius non filia suscipiat. Si filium non habiut qui defunctus est, ad filiam pecunia et mancipia, **t e r r a** vero ad proximam paternae generationis consanguineum pertineat.

*խարխլեր հողատիրության վրա հիմնված իշխանների հզորությունը։*

*Հասկանալի է, որ կայսեր բարեփոխումները, հակառակ նրա բազմիցս հայտարարություններին, ամենից քիչ էին բխում երկրի բարօրության մտահոգություններից։ Հայաստանին վերաբերող նովելլաների ամպագոռգոռ հայտարարությունների տակ հազիվ թե կարելի է տեսնել այն նպատակները, որոնց իբր նրանք ձգտում են։ Բանն այն չէ, որ ռեֆորմատորը վերևից է նայում տեղական մշակույթին։ Արհամարհանքը Արևելքի և նրա մշակույթի նկատմամբ հատուկ էր ինչպես հին, այնպես էլ ներկայիս Արևմուտքին։ Կարելի է մտածել, որ Հայոց աշխարհը իսկապես գտնվում էր մի ինչ-որ անկարգ և քաոսային վիճակի մեջ, և որ Հուստինիանոսը վճռեց նրան դուրս բերել այդ քաոսից ի բարօրություն հայերի։ Նովելլաների վերամբարձ ոճը կարծես ծառայում է թաքցնելու կամ մթագնելու ճշմարտությունը։*

*Հուստինիանոսի նովելլաները, իբրև գրական ստեղծագործություն, իրենց ձևով ու բովանդակությամբ զերծ չեն որոշ սխոլաստիկությունից։ Դրանք բոլորն էլ կազմված են նույն կաղապարով և բաղկացած են երեք մասից՝ ներածությունից, շարադրանքից և վերջաբանից։ Ընդ որում ներածության մեջ իբրև թեզ սովորաբար տրվում է որևէ խրատաբանություն, աֆորիստական իմաստություն, որի կենսագործմանը իբր թե ծառայելու են նովելլաներում առաջարկված միջոցառումները։ Թեզերը բնավ էլ չեն արտահայտում բարեփոխումների իսկական դրդապատճառները և ավելի շատ պատասխանում են արմատացած գրական ճաշակներին, քան օրենսդրական ճշմարտությանը։ Այսպես, օրինակ, 23-րդ նովելլայի ներածության մեջ հայտարարվում է. «Հռոմեացիք երբեք չպետք է կարողանային ստեղծել համաշխարհային ինքնակալություն, եթե նրանց նահանգային կառավարիչները չվայելեին շրջապատի հարգանքը»։ 24-րդ նովելլան սկսվում է հետևյալ կերպ. «Քանի որ Լիկաոնիայի ժողովուրդը իր փառավոր ծագումը ստացել է Լիկաոն թագավորից և ազգակցական կապերով կապված է հռոմեացիների հետ, արժանի է ավելի պատվարժան կառավարիչ ունենալու»։ 25-րդ նովելլան հրապարակվել է իբր թե այն պատճառով, որ «Թրակիացիների անունը առնչվում է ինչ-որ հզորության և ռազմատենչության գաղափարի հետ»։ 31-րդ նովելլայով Պողեմոնական Պոնտոսը և Հելլենոպոնտոսը պետք էր միացնել, որովհետև «ուժը ոչ թե անունների շատության, այլ իրերի ճշմար-*

տացի վիճակի մեջ է»։ Պափլագոնիան արժանի է բարեփոխումների, որովհետև նրա ժողովուրդը «հին է և փառավոր»։ Կապադովկիայի վերակազմությունը նույնպես հիմնվում է «այն ժողովրդի մեծահռչակ փառքի և անվան վրա, որ մի ժամանակ տիրում էր ամբողջ Պոնտոսին» և այլն։

Այս բոլոր դատողությունները իրականում շատ հեռու էին բարենորոգումների իսկական պատճառները լինելուց։ Մենք արդեն նշեցինք Հուստինիանոսի բարեփոխիչ գործունեության ընդհանուր հիմունքները։ Եվ եթե դրա հետ մեկտեղ նա հաշվի էր առնում նաև տվյալ նահանգի վիճակը, ապա գերազանցապես պետական գանձարանի շահի տեսակետից։ Նահանգներին վերաբերող նովելլաները երևան էին գալիս ոչ թե անցյալին վերաբերող այս կամ այն հաճելի, ռոմանտիկ հիշողությունների, այլ այն տագնապալի խմորումների պատճառով, որոնց հետևանքով խիտ բնակեցված տարածությունները, նովելլաների վկայությամբ, հաճախ հրաժարվում էին հարկեր վճարելուց, իսկ անհանգիստ տարրերը խումբ-խումբ թափառում էին՝ զբաղվելով կողոպուտով և սպանություններով[1]։

Հայկական նովելլաների ներածությունները նույն արժեքն ունեն, ինչ որ առհասարակ բոլոր նովելլաների վերոհիշյալ ներածական խրատաբանությունները։ Հուստինիանոսի աչքին Հայաստանի կարգուկանոնը, իհարկե, կարող էր քաոսային թվալ։ Բայց նա մտահոգված էր նրա վերացմամբ ոչ թե հանուն երկրի շահերի, այլ նախ և առաջ հանուն այն բանի, որպեսզի կարգավորվեր ու ապահովվեր պետական հասույթների գանձումը։ Այդ տեսակետից նովելլայի անկեղծ վերջաբանը, որտեղ կայսրը պրեֆեկտին հրամայում է խստիվ հսկել, որ հարկերը կանոնավոր կերպով գանձվեն, ավելի շատ ճշմարտություն է պարունակում և, կարելի է ասել, դեն է նետում այդ նովելլան պարուրող բարի ցանկությունների արտաքին շղարշը։

Հուստինիանոսը հասավ իր նպատակին, համենայն դեպս՝ սկզբնական շրջանում։ Նրա գոված Ակակիոսը՝ I Հայքի կառավարիչը, մի ժամանակակցի վկայությամբ, առանց քաշվելու կողոպ-

[1] Nov. № 24, Լիկաոնիայի և Պիսիդիայի մասին։

տում էր ազգաբնակչությանը և երկրի վրա դրեց մինչ այդ չլսված հարկ՝ 400 ֆունտ ոսկի[1]։

---

[1] Proc. *Pers.* II, 3 p. 159, τά τε γὰρ χρήματα ἐληΐζητο οὐδενὶ λόγῳ καὶ φόρου αὐτοῖς ἀπαγωγὴν οὔποτε οὖσαν ἐς κεντηνάρια τέσσαρα ἔταξεν.

Պատմագիրները թվարկում են մի շարք տուրքեր, որոնք Հուստինիանոսի դարաշրջանում ծանրացած էին ընդհանրապես կայսրության ազգաբնակչության վրա։ Ch. Diehl, *Justinien*, p. 296։ Թե դրանցից որոնք էին գանձվում նաև հայերից, հայտնի չէ։ Հավանական է, որ 400 ֆունտ ոսկի գումարի մեջ մտնում էին նաև այն եկամուտները, որ պետական գանձարանը ստանում էր այն ոսկու հանքից, որ գտնվում էր Հայաստանի՝ Ակակիոսին ենթակա մասում։ Մալալայի վկայությամբ, Հայաստանի պարսկական սահմանի վրա գտնվող լեռները շատ հարուստ էին ոսկով։ Տեղատարափ անձրևների ժամանակ ջուրը տանում էր լեռների հողը, և երևան էին գալիս ոսկու հատիկները։ Այդ հողերը հռոմները և պարսիկները առաջ 200 ֆունտ ոսկով կապալով էին տալիս։ Երբ Անաստասի ժամանակ լեռները անցան կայսրությանը, սա ինքը սկսեց ստանալ նշված եկամուտը, ὅτε γὰρ βροχαὶ καὶ ὄμβροι γίνονται, κατασύρεται ἡ γῆ τῶν αὐτῶν ὀρέων, λεπτίδας ἀναβλύζουσα χρυσοῦ τὰ δὲ αὐτὰ ὄρη ἐμισθοῦντο τὸ πρότερόν τινες ἀπὸ Ῥωμαίων καὶ Περσῶν χρυσοῦ λιτρῶν διακοσίων. ἐξ οὗ δὲ παρελήφθησαν τὰ αὐτὰ ὄρη ὑπὸ τοῦ θειοτάτου Ἀναστασίου. Ῥωμαῖοι μόνοι κομίζονται τὴν θεσπισθεῖσαν συντέλειαν, Malala, p. 456. Նշանակում է ամեն տարի պետության գանձարանն էր մտնում մինչև 200 ֆունտ ոսկի։ Եթե միայն այդ գումարը մտնում էր չորս կենտինարի կամ 400 ֆունտ ոսկու մեջ, ապա հասկանալի է դառնում տարեկան հարկի քանակը։ Թեոփանը ասում է՝ «ոսկու հանքերը սկզբում հռոմներին և պարսիկներին տալիս էին մեկական տաղանդ, իսկ այժմ նրանցից օգտվում են միայն հռոմները»։ χρυσορυχίων... πρώην ἀνὰ τάλαντα τελούντων Ῥωμαίοις τε καὶ Πέρσαις, νῦν δὲ Ῥωμαίοις μόνοις τελούντων, p. 275։ Թեոփանը անկասկած օգտվել է Մալալայի վկայություններից, ընդ որում նա տաղանդը գործ է ածում, ինչպես երևում է, կենտինարի իմաստով։

## ԳԼՈՒԽ VIII

# ՀՈՒՍՏԻՆԻԱՆՈՍԻ ՌԵՖՈՐՄՆԵՐԻ ՆՇԱՆԱԿՈՒԹՅՈՒՆԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

Հայերի վերաբերմունքը Հուստինիանոսի վերափոխումների նկատմամբ: Նրանց անմիջական հետևանքները: Նախարարական կարգի փլուզումը: Հայերի տեղաշարժը դեպի կայսրություն և Փոքր Հայքի հողերի վերածնունդը. էթնիկական շերտի նախապատրաստությունը Արմենիական թեմի և Կիլիկիայի հայկական թագավորության համար: Հայերի տեղաշարժի նշանակությունը կայսրության տեսակետից: Ինչպե՞ս անդրադարձավ այդ տեղաշարժը Հայաստանի ճակատագրի վրա: Բյուզանդական կրթության ազդեցությունը հայերի վրա և հունաբան դպրոցը: Հուստինիանոսի քաղաքականությունը Արևելյան Կայսրության շահերի տեսակետից:

> Παντὸς δὲ συγγενοῦς δεδουλωμένου τε καὶ σκεδαννυμένου ἀεὶ πανταχόσε τῆς Ῥωμαίων ἀρχῆς.

*Հուստինիանոսի վերափոխչական գործունեության նշանակությունը ճշտելիս և գնահատելիս նախ և առաջ պետք է կանգնել նրա ժամանակակիցների տեսակետի վրա և պարզել, թե այն ժամանակ երկրում նրա նկատմամբ ինչպիսի վերաբերմունք կար: Ժամանակակիցների տեսակետները, որոնք հաճախ սուբյեկտիվ են լինում, մեծ մասամբ պայմանավորվում են տվյալ պահով և, իհարկե, միշտ չէ, որ արդարացվում են հետագա իրադարձություններով: Հաճախ ըստ էության դրական երևույթ կամ արարք կյանքի հետագա ընթացքը օբյեկտիվորեն կշռադատելիս դուրս է գալիս բացասական, երբ արտաքին պատահական գործոնների ազդեցության հետևանքով ծավալվում են միանգամայն անսպասելի և նախընթաց իրադարձությունների ընդհանուր շղթայի մեջ չտեղավորվող հետևանքներ:*

*Հուստինիանոսի ռեֆորմներից անմիջապես հետո կայսերական իշխանության դեմ Հայաստանում ծավալված շարժումը ցույց է տալիս, որ հայերը բացասաբար էին վերաբերվում նրա հաստատած*

կարգուկանոնին։ Վերափոխումների հետ կապված հարկերի ավելացումը լայն զանգվածների մեջ առաջ բերեց ուժեղ խմորումներ և արյունահեղ ընդհարումների պատճառ դարձավ։ Բայց շուտով ամեն ինչ հարթվեց, և ապստամբության գլխավոր հանցավորները հաշտվեցին կայսրի հետ և տեղափոխվեցին մայրաքաղաք։

Ի՞նչ փոփոխություններ կրեցին դրանից հետո Հուստինիանոսի վերափոխումները, արդյոք հայերը ինչ որ բանի հասա՞ն իրենց վիճակը թեթևացնելու իմաստով, թե՞ կիրառված միջոցառումները շարունակեցին անդառնալիորեն գործել, մեզ հայտնի չէ։ Բանն անշուշտ ծանր հարկերը չէին, որ կարող էին վերացվել կամ թեթևացվել։ Ծանրության կենտրոնը գտնվում էր նախարարության ճակատագրի մեջ։ Այդ տեսակետից կայսեր ձեռնարկած միջոցառումների հետևանքները կործանարար եղան։ Հայտնի է, որ մեզ հասած հայկական հին գրավոր հուշարձանները բացարձակապես ոչինչ չեն հայտնում Արևմտյան կամ կայսերական Հայաստանի նախարարությունների մասին. նույնիսկ նախարարությունների հատուկ պատմիչ Մովսես Խորենացին շատ քիչ բան է հաղորդում Հայաստանի այդ մասի իշխանական տների մասին։ Նկատի ունենալով մեր պատմիչի արտակարգ քննասիրությունը այն ամենի նկատմամբ, ինչ վերաբերում է նախարարություններին, որոնց ծննդաբանությունը նրա գլխավոր խնդիրն էր, այդ փաստը անհասկանալի է և կարող է բացատրվել միայն նրանով, որ Հայոց պատմությունը գրելու ժամանակ կայսերական Հայաստանում նախարարական տները փաստորեն կորցրել էին իրենց նշանակությունը, լավագույն դեպքում դարձել էին պաշտոնատար դաս, և նրա գլխավոր ներկայացուցիչները հավանորեն կլանվել էին կայսրության բյուրոկրատիայի կողմից։

Հայաստանի Հուստինիանոսյան վերակազմության արժանի գնահատականը տալու համար, ճիշտն ասած, առանձնակի նշանակություն չունի այս կամ այն միջոցառման տևականության հարցը։ Կարևորը ոչ թե առանձին միջոցառումներն են, որոնք կարող էին մնալ կամ փոխարինվել ուրիշներով, արժեքավոր է ընդհանուր սկզբունքը, վերակազմությունների հիմնական գաղափարը, որը չէր կարող փոփոխվել հետագայում։ Կան գաղափարներ, որոնք իրենց կենսունակությամբ նման են պարարտ հողի մեջ ընկած հատիկի, մեկ անգամ կյանքի կոչվելով՝ նրանք այլևս կողմնակի օժանդակության կարիք չեն զգում, այլ ապրում ու զարգանում են

իրենց սեփական ներքին ուժով։ Կայսերական իշխանության հետապնդած նվիրական նպատակն էր խորտակել և ոչնչացնել այն պայմանները, որոնք նպաստում էին հայկական կյանքի պարփակվածությանը, նրա ազգային ինքնատիպությանը և նրան ներքաշել կայսրության ընդհանուր շահերի ոլորտը. այս դեպքում ենթադրվում էր, որ արևելյան նահանգների պաշտպանությունը պարսկական միապետության սպառնալիքների դեմ կարելի էր համարել ապահովված։

Այսպիսի քաղաքականության շնորհիվ սկսվեց հայերի տեղաշարժը դեպի կայսրության կենտրոնը։ Քաղաքական ընդհանուր անհաջողությունները և երկրի ներսում հաճախակի երկպառակությունները, որոնք տեղի էին ունենում եկեղեցական, քաղաքական և այլ կարգի տարակարծությունների հողի վրա, հաճախ հայրենիքի սահմաններից դուրս էին նետում ոչ միայն առանձին անհատների, այլև կենսական ամբողջ խմբակցություններ։ Այդ կարգի բոլոր տարրերը ելքը գտնում էին դեպի Արևմուտք գաղթելու մեջ և բախտ էին որոնում համապետական կյանքում։ Բյուզանդիայի մայրաքաղաքը՝ համաշխարհային կյանքի և մշակույթի այդ օջախը, դեպի իրեն էր ձգում ոչ միայն մերժվածներին ու հերձվածողներին, այլ նաև ուրիշ ուժերի։ Կյանքի նոր ասպարեզը գրավում էր նաև նրանց, որոնք այլ պայմաններում կմնային իրենց հայրենիքում։

Հայերի ձգտումը դեպի Բյուզանդիա, որ Հուստինիանոսի ժամանակվանից սկսած գնալով ուժեղանում էր, ուներ իր և՛ դրական, և՛ բացասական կողմերն ու հետևանքները։ Կարևոր հետևանքներից մեկը պետք է համարել Փոքր Հայքի ազգային վերածնունդը։ Փոքր Հայքը, շատ վաղ բաժանվելով Մեծ Հայքից, ընթանում էր զարգացման այնպիսի ուղիով, որը սպառնում էր վերջնականապես զրկել նրան ազգային կերպարանքից։ Հայկական տարրն այնտեղ զորավոր էր դեռևս Ե դարում։ Բավական է հիշել II Հայքի եպիսկոպոսների 452 թվականին Լևոն կայսրին ուղղած պատասխան թղթի նշանավոր խոսքերը, որտեղ հոգևոր հայրերը կայսրին հավաստիացնում են, որ իրենք հավատարիմ են ուղղափառությանը, բայց գանգատվում են, որ ի վիճակի չեն ինչպես հարկն է արտահայտելու իրենց մտքերը, որովհետև «ապրում են աշխարհի ծայրին՝ հեռու արքայանիստ քաղաքից և չունեն վիճաբանության ընդունակ լեզուներ. մենք բնակվում ենք,— շարունակում են

բարձրաստիճան հոգևորականները,— այլազգի հայերի մեջ և թեև ուղղադավանք ենք, բայց կանոնավոր կերպով չենք տիրապետում հռոմեական լեզվին. նրանցից՝ հայերից, մենք բաժանված ենք որոշ տարածությամբ՝ մեծ մասամբ Եփրատի հոսանքով և այլազգիների հետ շարունակ խառնվելու հետևանքով լեզուն չգիտենք այնքան, որ կարողանանք երկար ճառեր ասել»[1]։

Այս նույն խոսքերը առավել իրավունքով կարող էին կրկնել նաև I Հայքի եպիսկոպոսները։ Անդրեփրատյան հայերը բոլորովին էլ մեղք չունեն այն բանում, որ I և II Հայքի հոգևորականությունն անգամ վատ գիտեր լատիներենը, խոսքը վերաբերում է այն հայերի ազդեցությանը, որոնց մեջ ապրում էին եպիսկոպոսները, այսինքն՝ I և II Հայքի բնակչությանը, որոնցից էլ հենց գանգատվում են եպիսկոպոսները։ Երկու գավառներում էլ բնակչության կորիզը կազմում էին հայերը, որոնք Ե դարի կեսին դեռ խոսում էին մայրենի լեզվով։

Ազգային գաղափարի և զգացումների համար ոչ պակաս վտանգ էին ներկայացնում դավանաբանական հարցերը, որոնք գնալով այնպիսի լարված բնույթ էին ստանում, որ կարող էին խեղդել ազգային շահերը։ Կրոնական տարբերություններով էին որոշվում այն ժամանակ լեզվի ընտրությունն ու գործածությունը ոչ միայն ժամերգության, այլև եկեղեցական ոգով տոգորված գրականության մեջ։ Դրա հետևանքով էլ կայսերական եկեղեցուն հարած հայերը Փոքր Հայքի սահմաններում ազգային դպրություն ստեղծելու անընդունակ գտնվեցին։ Գրականության և ազգային կրթության բացակայության պայմաններում լեզվի և ազգության ճակատագիրը դառնում է երերուն և անկայուն։ Հայությունը Փոքր Հայքում անկասկած կհանգչեր համապետական կյանքի և շահերի հորձանուտում, եթե Հայաստանի սահմանամերձ մասերից եկող թարմ ուժերի հոսանքը չթարմացներ նրան և չարթնացներ նրա ազգային ինքնագիտակցությունը։

Այն հանգամանքը, որ Հուստինիանոսը իր նահանգային ռեֆորմների ժամանակ ոչ միայն պահպանեց Փոքր Հայքի հողերի Հայք

---

[1] Mansi, VII p. 590, cohabitamus enim circa Armenios barbaros, fideles quidem, sed recte Romano eloquio non utentes, brevi quodam spatio ab eis, magis autem intercisione Euphratis fluminis separati, et propter frequentem barbarorum permixtionem longos nequivimus proferre sermones.

անունը, այլև տարածեց այն հարևան հողերի վրա, հաստատում է, որ վերածննդի պրոցեսը սկսվել էր նրանից առաջ։ Թվում է, ավելի հարմար կլիներ Կապադովկիա անվանումը, մանավանդ որ մի քանի շրջաններ, որոնք այն ժամանակ միացված էին հայկական հողերին, փաստորեն մինչ այդ պատկանում էին Կապադովկիային։ Իրականում մենք տեսնում ենք, որ Հուստինիանոսը ի հաշիվ հարևան երկրների ընդարձակում է Փոքր Հայքի հողատարածությունը և դրանք Հայաստան է համարում Մեծ Հայքի կայսերական մասերի նման։ Սա փաստ է, որը պետք է բացատրել հայ բնակչության դեպի Արևմուտք, դեպի կայսրության խորքերը սկսված գրոհով։ Խորենացու մոտ պահպանված այն ավանդությունները, թե հայկական տիրույթները նվաճումների ճանապարհով հասնում էին մինչև Պոնտոս ու Մաժակ-Կեսարիա, և որ այդ ամբողջ տարածության վրա խոսում էին հայերեն, ըստ էության հանդիսանում է Հուստինիանոսի դարաշրջանում գոյություն ունեցող իրադարձությունների և ոչ թե Արամի հեռավոր ժամանակների արձագանքը, ինչպես ներկայացնում է պատմիչը։ Այդ պարզ երևում է նրանից, որ հիշյալ երկրների նվաճման կապակցությամբ Խորենացին հիշատակում է հայկական հողերը I, II, III և IV Հայքերի բաժանելու մասին, սակայն համառոտ այն վերագրում է Արամի առասպելական ժամանակներին՝ չվստահելով հիշյալ բաժանման իրական շարժառիթների մասին եղած այն լուրերին, որ շրջում էին Հայաստանի կայսերական մասում։

Հարձակողաբար առաջ շարժվելով՝ հայերը սկսեցին իրենց սահմաններից դուրս գալ և շարժվել դեպի սահմանակից երկրները երկու ուղղությամբ՝ սկզբում այդ շարժումն ընթանում էր II Հայքից դեպի արևմուտք՝ որոշ չափով թեքվելով դեպի հյուսիս՝ դեպի ծով։ Կարճ ժամանակամիջոցում հայ տարրը այստեղ այնքան հզորացավ, որ այնուհետև՝ սկսած Է դարից նոր նահանգային կազմակերպության լայնածավալ միավորներից մեկը կոչվեց Հ ա յ կ ա կ ա ն. մենք նկատի ունենք Ա ր մ ե ն ա կ ի ո ն թեմը՝ θέμα τῶν 'Αρμενιάκων։ Այն տարածվում էր Կապադովկյան Կեսարիայից մինչև Սև ծով՝ ընդգրկելով այն ամբողջ տարածությունը, որ ընկած էր Սինոպից մինչև Փասիս և Եփրատ՝ բացառյալ III Հայքը, որն այդ ժամանակ գրավել էին արաբները։ Այդ ամբողջ լայնածավալ տարածությունը, որ մեծությամբ հավասար էր նախկին Կապադովկիայի, I և II Հայքի ու Պոնտոսի գավառներին միասին վերցրած, թա-

գակիր գրողի հեղինակավոր վկայությամբ «այնտեղ և նրանց հարևանությամբ ապրող հայերի անունով» ստացավ τῶν 'Αρμενιάκων անունը[1]։

Հայերը տեղաշարժվում էին նաև III Հայքի կողմից, այսինքն՝ Մելիտենեից՝ Կիլիկիայի ուղղությամբ՝ դարձյալ դուրս գալով դեպի ծով։ Այդ ճանապարհով նախապատրաստվում էր էթնիկական այն շերտը, որի վրա հայ Բագրատունիների ճյուղերից մեկի գերիշխանության տակ հետագայում ծնունդ առավ քաղաքական ինքնուրույն կյանք, որն այդ հարստության հիմնադիր Ռուբենի անունով կոչվեց Ռուբինյան։

Կայսրության շահերի տեսակետից հայերի գաղթը դեպի արևմուտք շատ ցանկալի էր. դրա ապացույցն է այն, որ կայսրերը խրախուսում էին այդ շարժումը, և երբեմն էլ իրենք էին հայերին տեղահան անում հայրենի հողերից ու բնակեցնում կայսրության մյուս մասերում։ Հայտնի են մանավանդ Մորիկ կայսեր փորձերը[2]։ Հայերի թափանցումը բյուզանդական հողերը խիստ արդյունավետ եղավ կայսրության համար և չափազանց մեծ օգուտներ բերեց նրան։ Իրենց բախտը կապելով կայսրության հետ՝ հայերը նվիրվում էին նրան արտակարգ անձնազոհությամբ։ Դուրս գալով իրենց հայրենիքի քաղաքական կյանքի համեմատաբար նեղ շրջանակներից ավելի լայն ասպարեզ՝ նրանք իրենց ուժերը ծավալեցին ամբողջ հզորությամբ ու բազմակողմանիությամբ։ Հայերը աչքի ընկան պետական կյանքի բազմաթիվ բնագավառներում՝ ինչպես զինվորական, այնպես էլ քաղաքացիական. նրանք տվեցին հռչակավոր անուններ, որոնք շատ խոշոր ծառայություններ մատուցեցին կայսրությանը։ Նրանց ներկայացուցիչներից շատերը մինչև անգամ փայլեցին գահի վրա և որոշ դեպքերում նույնիսկ հիմք դրին ամբողջ հարստության։ Հայկական այրուձին պետության հեռավոր ծայրամասերում կռվում էր կայսրության ռազմական ձեռնարկումների, փառքի ու հաջողության համար։

Շատ նշանակալից եղավ հայերի դերը նաև մշակութային և հոգևոր կյանքում. Բյուզանդիայի պատմության համար այնքան

---

[1] Const. Porphyr. *De them.* p. 17—18, ἀπὸ τῶν ὁμορούντων καὶ συνοικούντων 'Αρμενίων τὴν προσηγορίαν ἐκτήσατο.

[2] Սեբեոս, էջ 47, 51, 54 և հաջորդ, նաև Հովհաննես Եփեսացի, Եկեղեց. պատմություն, էջ 243 և 258։

բնորոշ պատկերամարտության շարժումը ծնունդ առավ կայսրության արևելյան ծայրամասում և իր զարգացման համար նշանակալից չափով պարտական է հայերի համակրանքին և հովանավորությանը։ Մինչև այսօր էլ գերազանցապես եկեղեցական դավանաբանական ուսումնասիրության առարկա հանդիսացող պատկերամարտությունը մշակութային տեսակետից բավարար չափով չի գնահատված։ Պատկերամարտությանը, որպես կրոնական խորհուրդների աշխարհում որոշ ռացիոնալիզմ մտցնելու լոզունգային արտահայտության մի փորձ, վիճակված էր բյուզանդական մշակույթի մեջ խաղալու նույն դերը, ինչ որ ռեֆորմացիան Արևմուտքի նոր պատմության մեջ։ Պատկերամարտությունը պարունակում էր մի այնպիսի ուսմունքի սաղմեր, որն իր հետագա զարգացման դեպքում խորտակելու էր եկեղեցական դավանաբանական արդեն հնամաշ շերտերն ու այն ավանդույթները, որոնց մեջ պարուրված էին Քրիստոսի հավատն ու հավատացյալ մարդու կյանքը։ Գիտակցելով այն վտանգը, որ սպառնում էր նախ և առաջ եկեղեցական հիերարխիայի շահերին, հոգևոր և աստվածապետության վրա հիմնված աշխարհիկ իշխանությունները ամեն միջոց գործ էին դնում արմատախիլ անելու այդ չարիքը նրա զարգացման սկզբնական փուլում։ Այս ուղղությամբ հայերի կատարած դերը բնավ էլ վերջիններից չէր. նրանք, անկասկած, այնտեղ մտցրին որոշակի և շատ վառ կոլորիտ։

Ինչպե՞ս անդրադարձավ հայերի հիշյալ տեղաշարժը Հայաստանի ճակատագրի վրա։ Հայերի կայսրությունով մեկ սփռվելը իրենց հայրենիքի շահերի տեսակետից, անշուշտ, չի կարող դրական երևույթ համարվել։ Արտագաղթը տվյալ երկրի համար բնականոն և անվտանգ է այն դեպքում, երբ այն պայմանավորված է խիտ բնակչությամբ կամ բնակչության բնական աճով։ Կայսրությունը, սակայն, հայերից խլում էր ոչ թե ժողովրդական ուժերի ավելցուկը, այլ, ընդհակառակը՝ այն տարրերը, որոնք ավելի շատ էին պետք երկրին։ Երկրից հեռանում էին առավել ձեռներեց և առույգ ուժերը, այնպիսի ձիրքերով օժտված անձինք, որ կարողանում էին մնալ և աչքի ընկնող տեղ գրավել կայսրության կյանքի խռովահույզ ծովի մակերևույթի վրա։ Հայաստանի համապատասխան մասի հայ ազնվականության ծաղիկը՝ նախարարական բոլոր տոհմերը, աստիճանաբար կենտրոնանում էին մայրաքաղաքում և զարդարում պետական գործիչների շարքերը։

Հայրենիքից հեռացած հայերը իրենք էլ էին գիտակցում, որ իրենց համար խորթ շահերի բնագավառում եռանդ վատնելը աննպատակ է այն ժամանակ, երբ իրենց հայրենի երկիրը հեծում է այն իշխանության ճնշման տակ, որի համար իրենք ոգորում են մարտի դաշտերում, իրենց արյունը թափում նրա արտաքին թշնամիների դեմ մղած պայքարում։ Այս տեսակետից շատ բնորոշ է մայրաքաղաքի հայ գործիչներից մեկի կարծիքը։ 548 թվականին հայերը դավադրություն նյութեցին Հուստինիանոս կայսրի դեմ, որի պարագլուխներն էին Արշակը և Արտավանը՝ երկուսն էլ Արշակունյաց արքայական տոհմից։ Այդ ժամանակ Արտավանը մեծ հռչակ էր վայելում Լիբիայում կատարած իր ռազմական սխրագործությունների շնորհիվ, որտեղ սպանել էր բռնակալ Գոնթարիսին։ Դավադրությունը նյութվեց Արշակի նախաձեռնությամբ, որն էլ իր տոհմակից Արտավանին համոզեց ստանձնել այդ գործը։ Արշակը նախատում էր նրան,— պատմում է դեպքերի ժամանակակից պատմիչը,— որ «ուրիշների թշվառության գնով նա՝ Արտավանը, հերոսի և բռնապետության տապալողի անուն է վաստակել՝ առանց որևէ պատճառի սպանելով իր բարեկամ և սեղանակից Գոնթարիսին։ Իսկ այժմ արիությունը կորցրած՝ նա նստած է այստեղ վեհերոտ, մինչդեռ նրա հայրենի երկիրը մշտապես հեծում է ապօրինի հարկերի ծանրության տակ։ Նրա հորը սպանեցին հաշտության բանակցությունների պատրվակով, նրա ազգը ամբողջովին ստրկացրին և շարունակ ցաքուցրիվ են անում Հռոմեական կայսրության բոլոր կողմերը»[1]։

Այս դառը խոսքերը, որ հայկական գործերին լավատեղյակ պատմիչը դնում է Արշակունիների շառավիղի՝ մայրաքաղաքացի հայի շուրթերին, և որոնք հնչում են իբրև տխուր ճշմարտություն, պատկերավոր ձևով արտահայտում են այն վիճակը, որին ենթարկ-

[1] Proc. *Goth.* III 32, p. 409, ἐπὶ μὲν γὰρ κακοῖς ἀλλοτρίοις γενναῖόν τε καὶ τῆς τυραννίδος διαλύτην αὐτὸν γεγονέναι, φίλον τε ὄντα καὶ ἑστιάτορα Γόνθαριν αὐτόχειρα λαβόντα κτεῖναι οὐδενὶ λόγῳ. ἐν δέ γε τῷ παρόντι ἀποδειλιάσαντα οὕτως ἀνάνδρως ἐνταῦθα καθῆσθαι, τῆς μὲν πατρίδος οἱ φρουρουμένης τε ἐνδελεχέστατα καὶ δασμοῖς ἐκτετηκυίας ἀήθεσι, τοῦ δὲ πατρὸς ἀνῃρημένου ἐπὶ ξυνθηκῶν τε καὶ ξυμβάσεως λόγῳ, παντός δὲ τοῦ ξυγγενοῦς δεδουλωμένου τε καὶ σκεδαννυμένου ἀεὶ πανταχόσε τῆς Ῥωμαίων ἀρχῆς.

վեց Հայաստանը Հուստինիանոսի վերակազմությունների ժամանակվանից։ Հայաստանի համար այդ ճակատագրական քաղաքականությունը կայսերական իշխանությունը շարունակեց նաև այնուհետև։ Արժեքավոր տեղեկություն կա այն մասին, որ Հուստինիանոսի մերձավոր հաջորդներից մեկը հայ նախարարների և նրանց զորքերի հասցեին ամբաստանագիր է ուղարկել պարսից արքային։ «Հայերը,— գրում է կայսրը,— անվստահելի և անհնազանդ ժողովուրդ են. ապրում են մեր մեջ և խառնակչություն անում. եկեք պայմանավորվենք այսպես՝ ես կհավաքեմ իմ հայերին և կուղարկեմ Թրակիա, իսկ դուք կհավաքեք ձեր հայերին և կհրամայեք տանել դեպի Արևելք։ Եթե նրանք այնտեղ կոչնչանան, մեր թշնամիները ոչնչացած կլինեն, իսկ եթե սպանեն, ապա մեր թշնամիներին կսպանեն, և մենք կապրենք հաշտ ու խաղաղ։ Չէ՞ որ քանի դեռ նրանք կգտնվեն իրենց երկրում, անկարելի է, որ մենք հանգստություն ունենանք»։

Թագակիր քրիստոնյայի այս լկտի առաջարկը հիանալի կերպով ցուցադրում է բյուզանդական արքունիքի այն խսկապես նենգ և հրեշավոր քաղաքականությունը, որից ոչ միայն Հայաստանը տուժեց, այլև դրա համար ինքը՝ կայսրությունը ևս շատ թանկ վճարեց։

Գաղթեցնելով հայերին իրենց հայրենիքից՝ ներծծելով հայ ազգաբնակչության առաջավոր խավերին, կայսրությունը երկիրը զրկեց հուսալի պատվարից։ Հետևանքները պերճախոս կերպով երևան եկան արաբական տիրապետության դարաշրջանում։ Այն ժամանակ, երբ Հայաստանի՝ արաբներին անցած նախկին պարսկական մասերում տեղի ունեցած որոշ մարտերից հետո հաջողվեց Այրարատում, Վասպուրականում, Տարոնում և Սյունիքում կազմակերպել ազգային պետություններ, հռոմեական շրջանները անկարող եղան քաղաքական խնդիրներ լուծել։ Նախարարության թուլացումով խորտակվեցին երկրի ռազմական ուժերը, և ոչնչացվեցին նախարարական ավանդույթները նաև քաղաքական ազատության բնագավառում։

Կայսրության հետ հայերի ունեցած սերտ շփման հետևանքով, բնականաբար, համապետական կյանքն ու կրթությունը իրենց հերթին պետք է ուժեղ ազդեցություն թողնեին հայոց հոգևոր կյանքի վրա։ Մանրազնին հետազոտությունները ցույց են տալիս, որ Հուստինիանոսի ժամանակվանից սկսած՝ աստիճանաբար երևան է գալիս

մի ուղղություն, որ խիստ կերպով տարբերվում է նախորդ շրջանի գրական ավանդույթներից։ Հայաստանում քրիստոնեության տարածումից հետո հայոց եկեղեցական կյանքը և նրա պահպանած դպրությունը սկսեցին զարգանալ գլխավորապես ասորական քրիստոնյա աշխարհի հետ ունեցած ընդհանուր ճաշակների ու ավանդույթների հիման վրա։ Որոշ ժամանակ անց գրական երևույթների մեջ նկատվում է բեկում, որ որոշակիորեն աչքի է զարնում նախ և առաջ լեզվի ասպարեզում։ Ճիշտ է, լեզվական տվյալները այնքան էլ վստահելի չեն, և նրանց վրա հիմնված դրույթներն ու եզրակացությունները երբեմն վտանգավոր են, բայց ներկա դեպքում գործ ունենք օբյեկտիվ բնույթ կրող լեզվական մի հատկանիշի հետ, այսինքն՝ լեզվի բառական կողմի հետ, անկախ նրա ոճական այլ առանձնահատկություններից։ Կան որոշակի կատեգորիայի բառեր ու բառաստեղծումներ, որոնք բոլորովին խորթ են հայկական, այսպես կոչված, առաջին շրջանի քրիստոնեական գրավոր հուշարձաններին, Աստվածաշնչի exceptis excipiendis, Փավստոսի, Ղազար Փարպեցու գործերին և այլ երկերին։ Այդ բառերի առկայությունը ապացույց է այն բանի, որ տվյալ հուշարձանը վերաբերում է քիչ ավելի ուշ ժամանակաշրջանի, երբ ծաղկում էր, այսպես կոչված, հունաբան դպրոցը[1]։

Հիշյալ տարրերը լեզվի մեջ ներթափանցում էին փիլիսոփայական և առհասարակ հայեցողական գրականության միջոցով։ Կայսրության կյանքի հետ շփվելու անմիջական արդյունքներից մեկը եղան եկեղեցական տարաձայնությունները։ Դավանաբանական վեճերն ու երկպառակությունները մեծ ծավալ ստացան։ Ե՛վ կայսերական եկեղեցու դավանանքի կողմնակիցներին, և՛ ազգային եկեղեցական ավանդության հետևորդներին հավասարապես անհրաժեշտ էր մտքի ճկունություն հայեցողական, վերացական մտածողության բնագավառում, որպեսզի կարողանային հասկանալ և մեկնաբանել Քրիստոսի բնությանը վերաբերող բարդ և մանվածապատ հարցերը։ Այդ և այլ պատճառներով առաջ եկավ նոր հոսանք, և ստեղծվեց գիտական կամ տեսական ոգով տոգորված

[1] Դրանց թվին են պատկանում, օրինակ, ապացույց=ἀποδέιξις, շարունակ=συν-εχές, տար-բերություն=δια-φορά, բաց-առություն=ἀπό-φασις, բաց-տրություն=ἀπό-δωσις, վերաբերել=ἀνα-φέρεσθαι, քանակ=πόσον, որակ=ποῖον, տրամադրություն=διά-θεσις, շար-ադրություն, շար-ամանություն=συμ-πλοκή և այլն։

գրականություն։ Մտավոր կյանքի հորիզոնի լայնացման հետ միասին գիտական տերմինաբանության թարմ շերտով հարստացավ նաև լեզուն։ Այս հոսանքը սկսվեց Հուստինիանոսի ժամանակներից և սերտորեն կապված է նրա վերափոխումների հետ։ Ուստի մենք իրավունք ունենք Զ դարի երկրորդ կեսը համարել մի նոր շրջանի սկզբնավորություն հայոց մտավոր կյանքում։ Թե որքան խոշոր է հունաբան շրջանի նշանակությունը հայ դպրության պատմության մեջ, կարելի է դատել նրանով, որ այդ շրջանի արգասիք են Դավիթ Անհաղթի փիլիսոփայական գործերը, նշանավոր մաթեմատիկոս Անանիա Շիրակացու աշխատությունները և վերջապես Մովսես Խորենացու առաջին լիակատար և քննական Հայոց պատմությունը․ ինչպես մի հոյակապ հուշարձան, որ շատ կողմերով իր հավասարը չունի հայ դպրության մեջ՝ նշանավոր նախ և առաջ ազգային այն խոր գաղափարայնությամբ, որը ստեղծեց նա, և որով շատ դարերի ընթացքում դաստիարակվեցին հետագա սերունդները։

Հայ կյանքի վրա բյուզանդական կրթության ազդեցությունը և ընդհակառակը՝ հայոց տեղաշարժը դեպի կայսրություն, թեև տարբեր կողմերից, բայց տանում էին դեպի միևնույն նպատակը՝ դեպի մշակութային հավասարեցում։ Եթե երևույթները դիտենք բացառապես կազմակերպվող պետականության տեսակետից, ապա չի կարելի չընդունել, որ էթնիկական այլազանության հարթեցումը և նրանց վերափոխումը միասնական մշակութային զանգվածի, պետք է որ բարերար ազդեցություն ունենային Արևելյան կայսրության քաղաքական ապագայի և նրա ամբողջ ճակատագրի վրա։

Հռոմեական կայսրությունը երկու մասի բաժանվելուց հետո դրանցից յուրաքանչյուրի կյանքը պետք է զարգանար տարբեր ուղղություններով․ արդեն կայսրության բաժանումը նշանակում էր, որ երկու մասերում էլ մշակութային կյանքում արդեն գոյություն ուներ որոշ աններդաշնակություն։ Արևմտյան կայսրությունը հռոմեականանում էր, իսկ Արևելյանը, եթե կարելի է այսպես ասել, ընթանում էր արևելականացման ուղիով։ Արևմուտքում գլխավոր գործոններ հանդիսացան էթնիկական թարմ խմբերը, իսկ Արևելքում ապարեդ մտան պատմական մանր ազգություններ,

*որոնք ոգի ի բռի միմյանց հետ մրցում էին պետական կյանքում առաջնակարգ դեր խաղալու համար։*

*Հուստինիանոսի վարած քաղաքականությունը հայերի նկատմամբ այնքանով, որքանով այն հետապնդում էր նրանց, ինչպես և մյուս ժողովուրդներին կայսրության մեջ ներգրավելու նպատակ, թելադրված է իրերի բնական ընթացքով և արդարացվում է կայսրության պատմության ներքին միտումով։ Բայց, դժբախտաբար, կայսրության արևելյան և արևմտյան կեսերի փոխհարաբերության մասին ավանդական պատկերացումները խանգարեցին, որպեսզի այդ մերձեցումը ամբողջապես ծառայի Արևելյան կայսրության օգտին։ Չնայած կայսրության երկու մասերի մեջ գոյություն ունեցող խզումը գնալով ավելի ու ավելի էր խորանում՝ խթանվելով հասարակական և քաղաքական կյանքի ռեալ պայմաններով, Հուստինիանոս կայսրը, տարվելով նվաճողական նպատակներով, աշխատում էր վերստին միացնել անջատված մասերը և վերականգնել պետության նախկին ամբողջականությունը։ Դրա հետևանքով այդ գաղափարի համար զոհաբերած նյութական և հոգևոր հսկայական միջոցները գործ էին ածվում ոչ թե Արևելյան կայսրության կարիքների և օգտի համար, այլ փոխադրվում էին Արևմուտք՝ այդ մասը բարբարոս հրոսակների ասպատակություններից պաշտպանելու։ Ուրիշների կողքին հայկական, ասորական և վրացական զորախմբերը ևս իրենց զորավարների առաջնորդությամբ կռվում էին Աֆրիկայի անապատներում, Իտալիայում և կայսրության մյուս մասերում՝ պաշտպանելու այն, որ բոլորովին օտար էր իրենց ոչ միայն իբրև տարբեր ազգության ներկայացուցիչների, այլ նաև իբրև Արևելյան կայսրության քաղաքացիների։ Ուժերի նման վատնումը, ճիշտն ասած, Արևելյան կայսրության անմիջական շահերի տեսակետից չի կարող արդյունավոր համարվել։*

*Արևելքից շատ կենսական ուժեր անցան դեպի կայսրություն․ պատմությունը մեր առջև բաց է անում մեծ ձիրքով օժտված գործիչների մի ամբողջ շարան, որոնք արտակարգ անձնազոհությամբ և եռանդով իրենց կյանքը նվիրեցին կայսրության բարօրությանը*[1]*։ Քիչ չէր նրանց թիվը նաև Հուստինիանոսի ժամանակնե-*

[1] *Հեղինակավոր մասնագետներից մեկի կարծիքով հայերը* haben dem Reiche unermessliche Dienste gethan. Die fähigsten Offiziere, die genialsten Heeresleiter der folgenden Jahrhunderte *(այսինքն՝ Հուստինիանոսից հետո)*

*րում. բավական է հիշատակել Հուստինիանոսի թագավորության սյուներից մեկին՝ հայ Նարսեսին, մի մարդու, որը մեծ հուշակ ձեռք բերեց քաղաքացիական կյանքում, ճգնաժամային պահին ցուցաբերեց արտասովոր տաղանդ նաև ռազմական արվեստում և իր հաղթանակներով նսեմացրեց նույնիսկ Բելիսարոսի՝ իր ժամանակի այդ զինվորական հանճարի փառքը։ Բյուզանդիայի նախաշեմին Նարսեսի հոյակապ կերպարը ճշտությամբ կանխագուշակում է ապագան՝ հանդիսանալով հոգևոր և նյութական այն հարստության ու զորության մարմնացումը, որ արևելյան գավառներից անդադար հոսում էր դեպի կայսրության կենտրոնը նրա գոյության ամբողջ ընթացքում։*

sind armenischen und iberischen Geblüts. Gelzer, H. *Die Genesis d. Byz. Them.* p. 24. 'Der hohe und niedere Adel der Armenier (Naharark, σατράπαι und Azatk, Ἄζατοι) bildeten neben den Iberern den kernhaftesten und tüchtigsten Stamm der romäischen Reiterregimenter (Καβαλλαρικὰ θέματα .», ib. p. 96.

# ԱՐԵՎԵԼՅԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ

## ԳԼՈՒԽ IX

## ՀԱՅԱՍՏԱՆԸ ՄԱՐԶՊԱՆՈՒԹՅՈՒՆ

Արևելյան կամ Պարսկական Հայաստանը նախարարությունների երկիր: Նախարարությունը որպես հայոց պատմական կյանքի ազդակ: Արևելյան Հայաստանի վիճակը Պարսից պետության մեջ: Սասանյան միապետության վարչակարգը՝ քուստակներ և շահրեր: Արևելյան Հայաստանը որպես Կովկասյան քուստակի շահրերից մեկը: Արևելյան Հայաստանը որպես մարզպանական միավոր: Նրա հարաբերությունը հարևան երկրների հետ. Մարզպանական Հայաստանի սահմանները: Արշակունյաց և Մարզպանական Հայաստանների տերիտորիալ հարաբերությունները: Սայրամասային գավառների առաջացումը: Մարզպանական Հայաստանի բաժանումը ըստ **Աշխարհացույցի**: **Սյունիքի, Տայքի և Մոկքի** առաջացումը ըստ **Աշխարհացույցի**: Կենտրոնական նահանգները՝ Տանուտերական և Վասպուրական երկրները մինչև 591 թվականը: Իրանական *gund*-ը և բյուզանդական *thema*-ն: **Աշխարհացույցում** ընդունված նահանգային բաժանման ծագումը:

*Հայաստանի արևելյան կամ պարսկական մասը հայոց պատմության մեջ ունեցած իր դիրքով ու նշանակությամբ էապես տարբերվում է Արևմտյան Հայաստանից. նրան է պատկանում այն նվիրական սկզբունքների ու հիմունքների զարգացման ու պահպանման գլխավոր դերը, որի վրա հենված էր հայոց պատմական կյանքը:*

*Հայաստանը ամբողջությամբ վերցրած, հնուց ի վեր ներդրավված լինելով պարսկական պետությունների համաշխարհային քաղաքականության ոլորտը, դարեր շարունակ պարսիկների հետ գտնվում էր մշակութային միևնույն աշխարհում: Դեռևս այն ժամանակներից, երբ Արշակունիները գրավեցին Պարսկաստանը, և նրանց կրտսեր ճյուղը հաստատվեց Հայաստանում, երկու երկրների հասարակական և կենցաղային կապը է՛լ ավելի սերտացավ: Արշակունիների տիրապետության շրջանում Հայաստանում*

ձևավորվեց այն սոցիալ-քաղաքական կարգը, մենք նկատի ունենք նախարարությունը, որն այնքան վառ կերպով բնութագրում է Հայոց անցյալը։ Ճիշտ է, նախարարությունը ծագեց և զարգացավ մինչև Արշակունիների տիրապետությունը, և նրա հիմքերը խորը թաղված են երկրի էթնիկական ու տեղագրական պայմանների ու առանձնահատկությունների մեջ, բայց նրա ինքնատիպ կերպարի վերջնական ձևավորումը, անտարակույս, վերաբերում է Արշակունիների շրջանին։

Նախարարական վարչակարգը իր կայունությամբ մի այնպիսի տիպական ու ուշագրավ երևույթ է, որ առանց դրա անհնարին է Հայոց հին կյանքի և պատմության գիտական ըմբռնումն ու ճիշտ լուսաբանումը։ Տարբեր երանգավորումներով այդ վարչակարգը Հայաստանում շարունակեց իր գոյությունը մինչև Բագրատունիների անկումը և վերջնականապես ոչնչացավ մոնղոլների արշավանքի ժամանակ։ Այդ ամբողջ երկարատև ժամանակաշրջանում նախարարությունը հանդիսացավ քաղաքական կարևոր գործոն և, կարելի է ասել, Հայոց պատմության լծակը. Նախարարությունները ամբողջ երկրով մեկ ցրված քաղաքական ազատության օջախներ էին։ Այդ վարչակարգի նշանակությունն արմատացած է հենց այն բանում, որ նրա ժամանակ երկրի արտաքին կախվածությունը համատեղված էր ներքին ինքնուրույնության հետ, և այդ ճանապարհով ապահովվում էր երկրի ինքնատիպությունը։

Հայտնի է, թե որքան հաճախ են խոսում եկեղեցականության՝ որպես Հայոց պատմության մեջ իր նշանակությամբ գերիշխող գործոնի մասին. Հետազոտողները պատրաստ են նույնիսկ դրա վրա կառուցել Հայոց ամբողջ պատմական կյանքը։ Այս տեսակետը, որպես հայ պատմագրության ծեծված դրույթներից մեկը, որ փոխանցվել է մեզ մեր նախնիներից, մշակվել է այն բանից հետո, երբ երկիրն արդեն կորցրել էր նախարարական կերպարանքը։ Այդ կարծիքը ճիշտ է այնքանով, որքանով որ հանդիսանում է ուշ շրջանի իրադրության արտացոլում, բայց սխալ է, երբ այն հավասար չափով կիրառվում է ավելի վաղ ժամանակների նկատմամբ։ Քանի դեռ Հայաստանում գործում էին նախարարական կարգերը, եկեղեցին նշանակություն ուներ, քանի որ նա համարվում էր նախարարական իրականությանը։ Եկեղեցու ազգայնացման համար հայերի մղած ծանր պայքարը, ըստ էության,

հանգում էր եկեղեցին նախարարականացնելու և նախարարական հարաբերությունները եկեղեցական բնագավառին պատվաստելու։ Նախարարությունը համարվում էր մի այնպիսի արմատացած կենսաձև, որ արդարացվում ու պահպանվում էր այն բարդ պայմաններով, որոնց մեջ գտնվում էր Հայաստանը, ուստի յուրաքանչյուր նոր կազմակերպություն կարող էր պատվաստվել միայն գոյություն ունեցող նախարարական միջավայրին անվերապահորեն հարմարվելու դեպքում։ Այնտեղ, որտեղ այդ հաջողվում էր եկեղեցուն, նա դառնում էր նախարարական-ազգային, իսկ երկրի այն մասում, որտեղ կայսերական քաղաքականության ազդեցության հետևանքով չէր կարողանում կամ անհրաժեշտություն չէր զգում կառչելու տեղական ձևերին, հայ եկեղեցին մնում էր ընդհանուր եկեղեցական կյանքի հունի մեջ։ Այդպիսին էր եկեղեցական իրադարձությունների քաղաքական կառուցվածքը, որ ընկած էր հայոց եկեղեցին ընդհանուր եկեղեցուց մեկուսացնելու հիմքում՝ անկախ դավանաբանական սկզբունքներից և տարաձայնություններից։ Նախարարական շրջանում եկեղեցու նշանակությունը չափվում էր ոչ թե նրա քրիստոնեական բովանդակությամբ, ինչպես թվում է շատերին և կամ ոչ այնքան նրանով, այլ նախ և առաջ ֆեոդալական կամ նախարարական կառուցվածքով։

Նախարարական հաստատության այդպիսի նշանակության դեպքում հասկանալի է, որ նրան հանգամանորեն ծանոթանալը անհրաժեշտ է հայոց պատմության մինչև մոնղոլական նվաճումներն ընկած ընդարձակ ժամանակաշրջանը լուսաբանելու համար։

Արշակունիների ժամանակ ձևավորված այդ հաստատությունը նրա անկումից հետո էլ շարունակեց զարգանալ և գործել նրանց բոլոր տիրույթներում։ Բայց գլխավորապես Հուստինիանոսի ժամանակվանից ի վեր Արշակունյաց Հայաստանի արևմտյան կեսը սկսեց կորցնել նախարարական կերպարանքը, մինչդեռ արևելյան մասում այն շատ երկար պահպանվեց։ Նախարարությունների մասին հայ մատենագրության մեջ եղած տեղեկությունները վերաբերում են գրեթե բացառապես Արևելյան Հայաստանին, ուստի և Հայաստանի այդ մասի գոյավիճակի ուսումնասիրության ժամանակ նախարարությանը պիտի հատկացվի կենտրոնական տեղ։

*Բյուզանդական աղբյուրների մեջ Արևելյան Հայաստանը սովորաբար կոչվում է Պարսկահայք։ Նա Վիրքի, Աղվանքի և Ատրպատականի հետ միասին կազմում էր Սասանյան Պարսկաստանի վարչական խոշոր բաժանումներից մեկը։ Սասանյանների ժամանակ պարսկական պետությունը բաժանված էր չորս մասի կամ երկրամասի՝ Արևելյան, Արևմտյան, Հարավային և Հյուսիսային* kust ixorāsān, xorwārān nēmrōs, apāxtar[1].

*Հյուսիսային երկրամասը հաճախ կոչվում էր* kust-ak i Kapkoh, *ինչպես հայերն էին կոչում, կամ կենտրոնին առավել մոտ շրջանի անունով՝* kust-ak i Atrpatakan։ *Իսկ* apāxtar *անունը վերաբերում էր սկյութական կամ սարմատական ժողովուրդներին, որոնք բնակվում էին ավելի հեռու՝ հյուսիսում, և իրենց գոյությունը զգացնել էին տալիս պարսկական և հռոմեական տիրապետությունների վրա կատարած հաճախակի ասպատակություններով։*

*Պարսկաստանը չորս երկրամասերի բաժանելը որոշ գիտնականներ վերագրում են Խոսրով Անուշիրվանին (531—579)։ Կարծում են, որ Պարսկաստանը մինչ այդ բաժանված է եղել բազմաթիվ պրովինցիաների, որոնց սատրապները կամ կառավարիչները կախում են ունեցել անմիջապես թագից, բայց քանի որ դժվար էր հետևել այդքան բազմաթիվ ենթակա մարմինների գործունեությանը, Խոսրովը «միտք հղացավ կազմել չորս մեծ նահանգ և դրանք հանձնել թագավորի վստահությունը վայելող չորս անձնավորությունների։ Նրանց պարտականությունն էր հետևել նահանգային սատրապների գործունեությանը, ուղղություն տալ նրանց, հսկել և չարաշահումների մասին զեկուցել թագավորին»*[2]։

*Այս կարծիքն այնքան էլ ճիշտ չէ. հազիվ թե կարելի է Խոսրովին համարել հիշյալ վարչական բաժանման նախաձեռնող։ Արաբ հեղինակ Տաբարին, որ իր տրամադրության տակ ունեցել է պահլավական շատ նյութեր և օգտվել է նաև Խուդայ-Նամեից՝*

---

[1] Աշխարհացոյց, *էջ 40 «քուստ ի խորաւրան (*pro *խորասան, համառոտ* Աշխարհացոյցի *տպագրված տեքստում՝ խորայարանք), քուստ ի Նեմռոջ, քուստ ի Խորասան, քուստ ի Կապկոհ, որ է կողմն Կաւկասու լերանց»։* Անանիա Շիրակացու *մոտ հանդիպում ենք այսպիսի արտահայտության. «սպայապետն զօր խորաւարանն կոչէն», այսինքն՝ Արևմտյան երկրամասի՝ խորավարանի սպարապետ, որ անհասկանալի է մնացել հրատարակչին՝ Միքարանին,* Արարատ, *1906, փետրվար և ապրիլ։*

[2] Rawlinson, *The Seventh monarchy*, p. 439.

նշանավոր Շահ-Նամեի նախատիպից, հայտնում է, որ, երբ Խոսրով Անուշիրվանը գահ բարձրացավ, «նամակներ ուղարկեց չորս պադոսպաններին, որոնք կառավարում էին Պարսկաստանի չորս երկրները». այդ նամակներից մեկը ուղղված էր «Զադոյ Նախվերգանին՝ Ադարբայգանի, Հայաստանի և հարևան հողերի պադոսպանին»[1]։

Չորս քուստակների գլուխ էին կանգնած չորս պադոսպանները. այսպես, Ատրպատականի քուստակի կամ Կովկասյան երկրամասի պետն էր Զադոյը։ Դատելով այդ վկայությունից՝ Պարսկաստանի մեջ հետաքրքրող բաժանումը տեղի է ունեցել Խոսրով Անուշիրվանից առաջ և չի կարող համարվել նրա գործը։

Այդ նույն պատմագիրը հայտնում է, որ «մինչև Խոսրովի թագավորելը սպահբեդի, այսինքն՝ գլխավոր զորահրամանատարի պաշտոնը ամբողջ կայսրությունում զբաղեցնում էր մեկ անձնավորություն։ Իսկ Խոսրովը, հենց որ թագավոր դարձավ, այդ պաշտոնը բաժանեց չորս մարդկանց միջև. Արևելքի, այսինքն՝ Խորասանի և հարևան հողերի սպահբեդի, Արևմուտքի սպահբեդի, Նիմռոզի, այսինքն՝ Եմենի սպահբեդի և Ադարբայգանի ու հարևան հողերի, այսինքն՝ խազարների երկրի սպահբեդի»[2]։

Նշանակում է, Խոսրովին վերագրվում է միայն այն, որ չորս երկրամասերում կամ քուստակներում պադոսպանների կողքին նա նշանակեց մեկական զորահրամանատար։ Այս ռեֆորմը վերաբերում էր զինվորական իշխանությունը քաղաքացիականից անջատելուն. այսինքն՝ պադոսպանները համարվում էին քաղաքացիական, իսկ սպահբեդները՝ զինվորական իշխանության մարմիններ[3]։

---

[1] Nöldeke, *Tabari*, p. 151—152.

[2] ib., p. 155.

[3] Padospan. այսպես էր կոչվում, իմիջիայլոց, Սպահանի կառավարիչը 641 թ. արաբների նվաճումների ժամանակ։ Tabari, Zotenberg *III*, գլ. 43. հայերեն պատդոսպան, Սեբեոս, էջ 77, նույն ձևով է կազմված, ինչպես marzpan և նշանակում է երկրի պահպանող կամ կառավարիչ։ Patkos բառը հանդիպում ենք պահլավական գրականության մեջ նահանգ իմաստով. West, *Pahlavi texts* II, 297; Hübschmann, *Arm. Gram.* I, p. 223։ Հայ պատմիչ Թովմա Արծրունու մոտ պատգոս նշանակում է ինչ-որ կոչում, «առաքին յարքունուստ պատգոսք պատուաւորք զօրօք բազմօք», էջ 286։ Նույն իմաստով գործ է ածվում նաև Մովսես Կաղանկատվացու մոտ՝ «նմին խաղաղ փատգոսս», էջ 265 և շատ

*Ըստ հայկական վկայությունների, բանակի բաժանումը չորս հրամանատարության տեղի է ունեցել ոչ թե Խոսրովի, այլ նրա թոռան՝ Հազկերտի՝ վերջին Սասանյանի ժամանակ։ Ինչպես հաղորդում է Սեբեոսը, նրա օրոք «պատառեալ բաժանեցան զաւրք աշխարհին պարսից յերիս մասունս, զաւր մի այն որ ի Պարսից եւ յարեւելից կողմանէ, եւ զաւր մի Խոռեմայ, որ յԱսորեստանեայց կողմանէ եւ զաւր մի որ յԱտրպատական կողմանէ. բայց թագաւորութիւն նորա էր ի Տիզբոն, եւ ամենեքին միաբան պատուէին զնա միաբանութեամբ»*[1]։

*Պարսքն այստեղ Ֆարսն է, հարավային երկրամասի գլխավոր նահանգը և այստեղ գործ է ածված ամբողջ քուստակի փոխարեն, ինչպես* pars pro toto։ *Ինչպես երևում է, հայ պատմիչն էլ տարբերում է չորս բանակ, նկատի ունենալով, ըստ երևույթին, չորս սպահբեդությունները։ Նրանց առաջացման մեջ հայ պատմիչը պարզապես տեսնում է Հազկերտի օրոք թագավորական իշխանության թուլացումը, իսկ ըստ արաբական տվյալների դա հանդիսանում էր Հազկերտի պապի՝ Խոսրով Անուշիրվանի կողմից կիրառված ռեֆորմ։ Ըստ երևույթին ոչ մեկը, ոչ մյուսը ճիշտ չեն, և չորս սպահբեդությունները, ինչպես և չորս պադոսպանությունները Պարսկաստանում գոյություն են ունեցել Խոսրովից ու Հազկերտից շատ առաջ։*

*Հայտնի է, որ ըստ հին իրանական տիեզերաբանության ամբողջ երկնակամարը նույնպես բաժանված էր չորս սպահբեդների միջև. տ ի շ տ ա ր աստղը իշխում էր արևելքի վրա, ս ա տ ա վ ե ս ը՝ արևմուտքի, վ ա ն ա ն տ ը՝ հարավի և ա պ տ ո ր ի ն գ ը՝ հյուսիսի*[2]։

---

*համանորեն* Ղևոնդի *մոտ՝ «ոչ կարաց ընդոստախօս պ ա տ ա գ ր ո ս ն այն համբառնալ զգլուխն իւր», էջ 133։ Այս մեջբերման մեջ ընդգծված բառը վրիպակ է. պետք է լինի պատգոս։ Բերված քաղվածքում պատգոս նշանակում է կառավարիչ, պաշտոնատար,* patkos-pan *իմաստով։ Դժբախտաբար բառի ստուգաբանությունը անծանոթ է։ Հայերեն օրինակների հիման վրա կարելի է բաժանել* pati-kos-*ի, որ նշանակում է երկրի գլուխ հմմտ.* kos-*ի կապը* kost-ak-*ի հետ։ Թերևս* patgos-pan-*ի ծագումը ժամանակագրական կարգով հասնում է* pat-kos-t-pan-*ին և* patkost-*ին։ Արդյո՞ք չի կարելի ընդունել, որ* kos-*ը ինքնուրույն բառ է, իսկ* kost-*ը՝ նրա ածանցավոր ձևը։*

[1] **Սեբեոս**, *էջ 99—100։ Սասանյան բանակը չորս մասի բաժանելու արձագանքները կարելի է գտնել նաև Խորենացու մոտ։ Հայոց Արտաշես թագավորը նույնպես իր զորքը բաժանում է չորս հրամանատարների միջև.* **Խորենացի**, *Բ, ծգ։*

[2] West, *Bundahiš*, p. 12, Sacred-*ի մեջ* Books of the East, vol. V.

ճիշտ է, Bundahiš գիրքը, որից քաղված են հիշյալ տեղեկությունները մեզ հասած խմբագրությամբ, Սասանյանների անկումից հին չէ, բայց իր հիմքում այն վերաբերում է ավելի հեռավոր ժամանակներին։ Կասկած չկա, որ պարսիկների տիեզերաբանական պատկերացումները տվյալ դեպքում Պարսկաստանի վարչական բաժանման՝ նրա չորս հրամանատարության բաժանվելու անմիջական արտացոլումն են։

Պաղոսպանությունների և սպահբեդությունների հաստատությունները, ըստ Յուսթիի, կարող են համեմատվել Հռոմեական կայսրության praefectus praetorio և magister militum-ի հետ։ Սկզբում պրետորիական պրեֆեկտն իր ձեռքում միավորում էր քաղաքացիական և զինվորական լիազորությունները, և միայն Դ դարից զինվորական իշխանությունն անջատվեց որպես առանձին տեսչություն։ Մենք տեսանք, որ հռոմեական ամբողջ կայսրությունը բաժանված էր չորս մեծ պրեֆեկտուրաների, որոնց գլուխ կանգնած էին չորս պրեֆեկտները։ Նրանցից երկուսը պատկանում էին կայսրության արևելյան, իսկ մյուս երկուսը՝ արևմտյան կեսին։ Նույնքան էլ զինվորական պետեր, magister militum, կային արևելյան, իլլիրյան, թրակիական և գալլիական, եթե չհաշվենք արքունական չորս պետերին, praesentales, երկուական՝ երկու մայրաքաղաքների յուրաքանչյուր արքունիքում։ Հազիվ թե պատահական լինի կայսրությունների բաժանումների միջև եղած այդպիսի նմանությունը. այստեղ, ըստ երևույթին, ինչ-որ կապ կա։ Դժբախտաբար երկու հարևան երկրների քաղաքական հաստատությունների ծագումնաբանական փոխհարաբերությունների հարցը հետազոտողների կողմից չի շոշափված, որոնք, ըստ երևույթին, մտքով անգամ չեն անցկացրել, որ հպարտ Հռոմը կարող էր որևէ բան փոխ առնել բարբարոս պետությունից։ Թերևս դա ճիշտ է, և փոխ առնող կողմը ներկա դեպքում հանդիսանում է Պարսկաստանը։ Համենայն դեպս կասկածից վեր է, որ պարսկական քուստերը կամ քուստակները նույնքան հին են, որքան հռոմեական պրեֆեկտուրաները։

Պրեֆեկտուրաները բաժանվում էին դիոցեզների (թեմերի), որոնք իրենց հերթին ստորաբաժանվում էին նահանգների, իսկ պարսկական քուստակներն էլ պատմականորեն ստեղծված տերիտորիալ և էթնիկական պայմանների համաձայն ուղղակի բաժանվում էին ավելի մանր միավորների։ Սրանցից յուրաքանչյուրն իր

պատմական անցյալով իրենից ներկայացնում էր ավելի կամ պակաս ինքնատիպ երկիր՝ šahr։ Աշխարհացույցի համաձայն Կովկասյան քուստը կամ երկրամասը բաղկացած էր այդպիսի 13 երկրներից կամ շահրերից.

1. Ատրպատական
2. Արմն, որ է Հայք
3. Վարչան, որ է Վիրք
4. Ռան, որ է Աղուանք
5. Բալասական
6. Սիսական
7. Առէ
8. Գեղան
[9. Ճանճան]
9. Դելիմ
10. Դմբաւանդ
11. Տապուրստան
12. Ռովան
13. Ամող[1]:

Նույն աշխատության համառոտ խմբագրության մեջ հիշված է ընդամենը 10 երկիր, ընդ որում առաջին շարքից հիշատակված է միայն Ատրպատականը, իսկ երկրորդի մեջ տրված է ամբողջը, միայն այն տարբերությամբ, որ Ճանճանի փոխարեն հիշված է Մուկանը և բացի դրանից, նշված է Համադանը, որ չկա առաջին խմբագրության մեջ, բայց, անշուշտ, սրան է վերաբերում։ Ուշագրավ է, որ մահմեդական աղբյուրները ևս Սասանյան հյուսիսային երկրամասը նկարագրելիս երբեմն բաց են թողնում Կովկասյան երկրները[2]։

Հին և քաջատեղյակ արաբ աշխարհագրագետներից մեկը հաստատում է, որ «Ջարբի կամ հյուսիսի երկրները կազմում էին Պարսկական կայսրության մեկ քառորդ մասը և գտնվում էին սպահբեդի իշխանության տակ, որ կոչվում էր Ադարբադկան-

[1] Աշխարհացույց, էջ 40. Ատրպատական, Արմն (որ է) Հայք, Վարչան, որ է Վիրք, Ռան, որ է Աղուանք, Բալասական, Սիսական, Առէ, Գեղան, [Ճանճան], Դլմունք, Դմբաւանդ, Տապրստան, Ռւան, Ամլ, զոր պատմել առաջի կայ մեզ։ Ստացվում է 14 շահր, հակառակ այն ցուցման, թե նրանց թիվը 13 է։ Մարկվարտը համարում է Ճանճանը, փխ. Ճերչանի որպես ներմուծություն, Eranšahr, էջ 125։ Ուշագրավ է Աշխարհացույցի վերջին նշումը, որից պետք է եզրակացնել, որ կամ մեզ հասած խմբագրությունը լրիվ չէ, կամ Պարսկաստանի բաժանման մասին եղած հատվածը քաղված է մի այլ աշխատությունից, որի մեջ տրված է եղել վերոհիշյալ շահրերի մանրամասն նկարագրությունը։

[2] Marquart, *Eranšahr*. p. 95, p. 94։ Արդյո՞ք այս չի նշանակում, որ չորս երկրամասերի ծագումը նախորդել է հիշյալ երկրները պարսից գերիշխանության ենթարկվելուն։

*սպահբեդ», այդ քառորդը ընդգրկում էր Հայաստանը, Ատրպատականը, Ռեհը... Ալանքը և այլն*[1]*։*

*Այս նույն հեղինակը, խոսելով թագավորների տիտղոսների մասին, հայտնում է, որ Արտաշիրը շ ա հ տիտղոսով մեծարում էր հետևյալ թագավորներին՝ Բուզուրկ-Արմենիան-շահ, Ադարբադկան-շահ, Ալան-շահ, որը Մուկանն է, Բարաշական-շահ և Սիսաջան-շահ*[2]*։*

*Այդ բառերը տառացիորեն չպետք է հասկանալ։ Սրանց իմաստն այն է, որ հիշյալ երկրները ունեին սեփական թագավորական իշխանություն, մի հանգամանք, որը թեև կապվում է Սասանյան հարստության հիմնադրի անվան հետ, բայց իրականում վերաբերում է առհասարակ նրանց տիրապետության ժամանակաշրջանին։ Թերևս այս երկրների համեմատական անկախությամբ պիտի բացատրել այն հանգամանքը, որ մի քանի դեպքերում, ինչպես ցույց տվինք, նրանք Կովկասյան քուստակի դավառների մեջ չէին մտնում։ Թագավորական իշխանություն, իրոք, գոյություն է ունեցել Բուզուրկ-Արմենիայում, այսինքն՝ Մեծ Հայքում և Առանում՝ Աղվանքում, բայց արաբ հեղինակը առանձին թագավորություն է համարում նաև Սիսաջանն ու Բարաշականը, այսինքն՝ այն գավառները, որոնք փաստորեն պատկանում էին Մեծ Հայքին։ Այստեղ, երևի, արտացոլված է Զ—Է դարերի իրերի դրությունը, երբ այդ գավառներն արդեն Հայաստանից անջատված էին։ Ինչ վերաբերում է Իբերիայի (Վիրք) բացակայությանը, ապա այդ բացատրվում է նրանով, որ հեղինակն այն դրել է Հայաստանի կազմում, ինչպես ընդունված է մահմեդական աղբյուրներում։*

*Զաքարիա Հռետորի աշխատության վերջին գլխում Պտղոմեոսի թվարկած երկրների համառոտ նկարագրությունից հետո ասվում է. «Նկարագրված երկրներից բացի, հյուսիսային երկրամասում կան ևս հինգ հավատացյալ ժողովուրդներ. նրանք ունեն 24 եպիսկոպոս, և նրանց կաթողիկոսը ապրում է Դվինում՝ Պարսկական Հայաստանի մայրաքաղաքում։ Նրանց առաջին կաթողիկոսի անունը Գրիգոր է, այր բարեպաշտ և շատ նշանավոր»։*

---

[1] Ibn-Khordadhbeh, Bib. Geog. de Goeje, VI, p. 118, *թարգմ.* p. 90.

[2] *ib.* p. 17, شيروانشاه ، الانشاه ، آذرباذكانشاه ، بزرك ارمنيانشاه ، سيسجان *ինչպես որ մեր կարծիքով պետք է կարդալ։*

*«Այնուհետև՝ Գուրզանը. սա մի երկիր է Հայաստանում, հունարենին նման լեզվով, այնտեղ քրիստոնյա իշխանը ենթակա է պարսից թագավորին։*

*«Այնուհետև՝ Առան երկիրը Հայաստանում, սեփական լեզվով. ժողովուրդը հավատացյալ է և մկրտված. նրանք էլ ունեն պարսից թագավորին ենթակա իշխան։*

*«Այնուհետև՝ Սիսական երկիրը, սեփական լեզվով. ժողովուրդը հավատացյալ է, բայց բնակիչների մեջ կան նաև հեթանոսներ։*

*«Բազգուն երկիրը, սեփական լեզվով, հարում է ծովին և հոների հողում ձգվում է մինչև Կասպից դռները։ Դռների մյուս կողմում ապրում են բուլղարները»*[1]*։*

*Առաջին հայացքից թվում է, թե հինգ հավատացյալ ժողովուրդները առանձնացված են նրանցից հետո հիշատակվող երկրներից. իրականում, սակայն, դրանք հենց Հայաստանը, Գուրզանը, այսինքն՝ Վիրքը, Առանը, այսինքն՝ Աղվանքը, Սիսականը և Բազգունն են։ Վերջին անվանումը սովորաբար նույնացնում են Աբազգիայի հետ։ Աբազգիան՝ ներկայիս Աֆխազիան, ինչպես հայտնի է, ընկած է Սև ծովի ափին, իսկ Բազգունը, բերված նկարագրության համաձայն, «հարում է Կասպից ծովին և դռներին»։ Հիմք չկա Աբազգիան հասկանալ լայն քաղաքական տերմինի իմաստով, որ ընդգրկեր մինչև Կասպից ծով տարածվող հողերը, մանավանդ որ Զ. դարում, որին վերագրվում է մեջ բերված նկարագրությունը, այդպիսի նշանակություն ուներ Լազիկեն և այն էլ Սև ծովի ափերին։ Աբազգիայի քաղաքական վերելքը տեղի է ունենում մի փոքր ուշ։ Մեզ թվում է, որ Բազգունը Բարասականի կամ Բաղասականի աղավաղումն է,* bazgun *փոխանակ* Ba<ra>zgan, *գավառ, որ ավելի մոտ է գտնվում հիշյալ երկրներին, քան Աբազգիան։ Բաղասականը գտնվում էր Ատրպատականում՝ Բերդենդ և Վարդանակերտ քաղաքների սահմաններում։ Բերդենդը մինչև այսօր գոյություն ունի և գտնվում է Բուլղարու-չայ գետի վտակներից մեկի վրա՝ ռուս-պարսկական սահմանագլխին. դրանով էլ ճշտվում է Բաղասականի դիրքը Արաքսի ստորին հոսանքում։ Նրան հարևան Վարդանը, հայ մատենագիրների Վարդա-*

[1] Zach. Mityl. *The Syriac Chronicle*, XII, 7, p. 327—8. London, 1899.

*նակները, որի ստույգ տեղը հայտնի չէ, հիշվում է Փայտակարանի գավառների թվում, երևի Բալասականն էլ գտնվել է այնտեղ*[1]*։*

*Բալասականը հիշվում է Կորյունի մոտ՝ Սիսականի, Հայաստանի, Աղվանքի և Վիրքի կողքին։ Դրանք այն երկրներն են, որ շրջագայել է Մեսրոպը իր քարոզչական գործունեության ժամանակ։*

*Սիսականի անջատումը Հայաստանից, ըստ մի վկայության, տեղի է ունեցել* **571** *թվականին՝ հայերի ապստամբության և Սուրեն մարզպանի սպանության ժամանակ։ «Յայնժամ յառաջ քան զայս ապստամբեալ ի բաց եկաց ի Հայոց՝ անուանեալ Վահան իշխան Սիւնեաց և խնդրեաց ի Խոսրովայ յարքայէն Պարսից զի տարցեն զդիւան աշխարհին Սիւնեաց ի Դըւնայ ի Փայտակարան քաղաք և կարգեսցէ զքաղաքն ի շահրմար Ատրպատականի. զի մի ևս կոչեսցէ անուն Հայոց ի վերայ նոցա»։ Սիսականը կրկին միացավ Հայաստանին Սասանյանների անկումից հետո*[2]*։*

*Զաքարիայի բերած նկարագրության մեջ, որ վերաբերում է* **555** *թվականին, Սիսականը հիշատակվում է արդեն որպես Հայաստանից առանձին երկիր՝ Աղվանքի և Վիրքի կողքին. պե՞տք է արդյոք ենթադրել, թե այդ ժամանակ Սիսականը արդեն անջատված էր Հայաստանից։ Աշխարհագրական և էթնիկական պայման-*

---

[1] *Ըստ* Իբն-Խորդադբեհի, op. cit, p. 121, *Բերզենդից մինչև Բալասականի դաշտը և այնտեղից մինչև Ատրպատականին սահմանամերձ Վարդանը 12 փարսախ է. Համառոտ* Աշխարհացույցի *մեջ Աղվանքի գավառների թվում հիշվում է «դաշտ ի Բալասական»։* Աշխարհացույցի *ընդարձակ խմբագրության մեջ Աղվանքի նկարագրությունը, ինչպես թվում է մեզ, թերի է, ուստի դժվար է ասել, թե ինչպես է եղել այնտեղ։ Ղևոնդ պատմիչը թվելով այն գավառները, որոնք ենթարկվել են խազարների 763 թ. ասպատակություններին, գրում է. «այս գաւառք աշխարհին Աղուանից» և շարունակում է «առին և զցանկալի դաշտն Բաղասական», էջ 132։ Հնարավոր է, որ Բալասականը վերագրվել է Աղվանքին վերոհիշյալ խոսքերի հիման վրա։*

*Գուցե Բաղասականը ընդհանրություն ունի Փայտակարանի Բաղան-ռոտի կամ Ռոտ-ի-բաղայի հետ, եթե ընդունենք Ռոտ-ի-բաղաս և Բաղաս-ռոտ՝ Բաղաս գետ։ Ալիշանի մոտ Բուլղարու-չայը կոչվում է Բալա-ռուդ և համեմատության մեջ է դրվում Բալա-ռոտի հետ,* Մեծ Հայք, *էջ 92։*

[2] Սեբեոս, *էջ 26, զի տարցեն զդիւան աշխարհին Սիւնեաց ի Դըւնայ ի Փայտակարան քաղաք, եւ կարգեսցէ զքաղաքն ի շահրմար Ատրպատականի։ Նույն պատմիչը 152-րդ էջում խոսում է Սյունյաց իշխանների մասին, «որք լծեալ էին յառաջագոյն յաշխարհագիրն Ատրպատական, մինչեւ բարձաւ թագաւորութիւնն պարսից»։* Šahr-mar*-ը ճիշտ թարգմանված է հայերեն աշխարհագիր բառով։*

ներով Սիսականը Հայաստանից փոքր-ինչ մեկուսի էր, ուստի այդ երբեմն կարող էր բոլորովին առանձնացած երկրի տպավորություն թողնել։ Պրոկոպիոսին ևս թվացել է, թե սունիտները, այսինքն՝ սյունեցիք պարսկահայերից տարբեր ժողովուրդ են[1]։

Սիսականը Փայտակարանի, ուրեմն նաև՝ Բալասականի հետ միասին վերագրված էր, ինչպես ասում է պատմիչը, Ատրպատականի շահրմարին։ Թվում է, թե Սիսականը, ինչպես և Բալասականը, որպես Կովկասյան քուստակի ինքնուրույն միավորներ, պետք է որ ունենային սեփական շահրմարը, բայց, ըստ երևույթին, վարչական տեսակետից դրանք Հայաստանին կամ Ատրպատականին հավասար չէին համարվում։ Ըստ էության Սիսականը պատկանում էր Հայաստանի, իսկ Բալասականը՝ Ատրպատականի շահրմարին. նրանք չունեին նաև մարզպաններ, այլ կառավարվում էին իրենց իշխաններով։ Մոտավորապես նույն վիճակում էին հայկական Աղձնիք և Նոշիրական գավառները Արևմտյան քուստակում. առաջինը, ըստ երևույթին, պատկանում էր Արվաստանի շահրմարին, իսկ երկրորդը՝ Ադիաբենի, կամ Աշխարհացույցի Նոհադրայի շահրմարին, բայց գտնվելով տեղական տիտղոսավոր իշխանների՝ բդեշխների տիրապետության տակ, միաժամանակ վայելում էին որոշ անկախություն։ Աշխարհացույցի մեջ այդ երկու գավառներն էլ գրանցված են Արևմտյան երկրամասում որպես առանձին շահրեր, Սիսականի և Բալասականի նման[2]։

Այսպիսով, Հայաստանին հավասար վարչական միավորներ են Վիրքը, Աղվանքը, Ատրպատականը, Ադիաբենը և Արվաստանը։ Արշակունիների անկումով Հայաստանի տերիտորիալ հարաբերությունը հիշյալ երկրների նկատմամբ որոշակի փոփոխություն կրեց, և մեզ մնում է պարզել, թե ինչպես էին արտահայտվում այդ փոփոխությունները, այլ կերպ ասած՝ աշխարհագրական տեսակետից ինչով էր տարբերվում թագավորական շրջանի Հայաստանը մարզպանական Հայաստանից։

---

1 Proc. Pers. I 15, p. 74, τὸ δὲ στράτευμα τοῦτο Περσαρμενίων τε καὶ Σουνιτῶν ἦσαν οἳ δὴ 'Αλ<β>ανοῖς εἰσιν ὅμοροι.

2 Աշխարհացույցի մեջ կարդացվում է Շիրական, Մայծինքատեհ; Այս վերջին բառը աղավաղումն է Արձն ոստան-ի։ Ասորական հուշարձանները տարբերում են Արզոնը Ոստան-Արզոնից, տե՛ս վերը 54-րդ էջի ծանոթությունը։ Համառոտ Աշխարհացույցի մեջ նշված է Մարծին, Արհեն։ Մարկվարտը ենթադրում է, որ այդ դիտոգրաֆիկ վրիպակ է, Eranšahr, p. 25։

Հայաստանը մարզպանական ենք կոչում, որովհետև Արշակունիներից հետո երկրում նստում էր պարսից արքայի ներկայացուցիչը, որ կոչվում էր մարզպան[1]։ Նրա մայրաքաղաքը Դվինն էր, որը Արևելյան Հայաստանի համար ուներ նույն նշանակությունը, ինչ որ Թեոդոսուպոլիսը՝ կոմեսի աթոռանիստը, Արևմտյան Հայաստանի համար, և միաժամանակ Ասիայում միջազգային կյանքի կարևոր կենտրոնն էր համարվում[2]։

Հյուսիսում Մարզպանական Հայաստանը տարածվում էր մինչև Կանգար։ Ղազար Փարպեցին պատմում է, որ վրաց Վախթանգ թագավորը սուրհանդակ է ուղարկում հայերին հայտնելու, որ «զունդ (պարսից) սաստիկ եհաս յերկիրս վրաց և իմ տեսեալ, թե ոչ եմ կարող կալ առաջի՝ խոյս տուեալ ի լերինս Հայոց մօտ ի սահմանակցութեանն վրաց՝ մնամ ձեզ»։ Վահան Մամիկոնյանը գնում է Վախթանգին օգնության, «յարուցեալ վաղվաղակի և անհապաղ ամենայն զօրքն Հայոց առ արքան վրաց հասանէին եւ բանակեալք առ վայր մի գաւառին Կանգարաց դադարէին», որտեղ Վախթանգը հայերին հավատացնում է, որ պարսիկները ետ դարձան[3]։ Այստեղից երևում է, որ Վրաստանին սահմանամերձ հայկական լեռները, որտեղ նստած էր Վախթանգը, գտնվում էին Կանգարի մոտ կամ նույնիսկ հենց Կանգարում. իսկ Կանգարը մտնում էր Գուգարքի մեջ և գրավում էր նրա հարավային անկյունը, ուրեմն Գուգարքը գտնվում էր Հայաստանի սահմաններից դուրս։

Ավելի արևմուտք Վրաստանին սահմանակից էր Տայք գավա-

[1] Մարզպանը առաջ է եկել marz-երկիր, աշխարհ և pan-պահապան բառերից և նշանակում է երկրի կառավարիչ։ Մարզբանը նոր պարսկերեն արտասանությունն է։

[2] Պրոկոպիոսի վկայությամբ Դվինը ծառայում էր որպես հռոմեական և պարսկական ապրանքների փոխանակման շուկա. ἐκ τε γὰρ Ἰνδῶν καὶ τῶν πλησιοχώρων Ἰβήρων πάντων τε ὡς εἰπεῖν τῶν ἐν Πέρσαις ἐθνῶν καὶ Ῥωμαίων τινῶν τὰ φορτία ἐσκομιζόμενοι ἐνταῦθα ἀλλήλοις ξυμβάλουσι. *Pers.* II 25, p. 263։ Դվինը գտնվում էր Արաքսի ափին, ենթադրաբար ներկայիս Դյուզյուն գյուղի տեղում։ Հայագետներին մի ժամանակ այնքան հետաքրքրող քաղաքի անվանումը իմ կարծիքով նույն ծագումն ունի, ինչ որ Փոքր Հայքում գտնվող Dabana քաղաքի անունը, և նշանակում է գյուղ նախամարիական հայերենի dava-ից, վրաց. დაბა-ից։

[3] Ղազար Փարպեցի, էջ 132 ...զօրքն հայոց առ արքայն վրաց հասանէին, եւ բանակեալք առ վայր մի ի գաւառին Կանգարաց դադարէին։

որ, և սահմանային կետ էր համարվում նրա ամենահյուսիսային գավառը, հենց Կողը. այսպիսով՝ Տայքը ամբողջովին մնում էր Հայաստանում[1]։

Աղվանքի կողմից Կուրը դադարեց սահման լինելուց, որ սահման էր Արշակունիների ժամանակ։ Սահմանագիծը գետից տեղաշարժվել էր մինչև Խաղխաղ քաղաքը, որ Ղազար Փարպեցին դնում է Աղվանքում, իսկ Եղիշեն համարում է Աղվանից թագավորների ձմեռային նստավայրը։ Խաղխաղը գտնվում էր Կուր գետի աջ ափին. պարսից զորքը, Աղվանքից Խաղխաղ գնալիս, պետք է անցներ Կուրը։ Խաղխաղի մոտ ճակատամարտ տալուց հետո հայոց այրուձին անցնում է գետի վրայով, որպեսզի շարժվի դեպի Աղվանից դուռը։ Շատ հավանական է, որ այժմյան Թուրքական Խիլխիլա գյուղը, Ջեղամ գետի վրա, հենց հին Խաղխաղն է։ Վերջինս գտնըվում էր Ուտիքում. քանի որ Ղազար Փարպեցու մոտ այն համարվում է Աղվանից քաղաք. պետք է եզրակացնել, որ այն ժամանակ Ուտիքը մտնում էր Աղվանքի մեջ[2]։

Փավստոսը որպես արևելքում Հայաստանի և Աղվանքի սահմանակից գավառ հիշատակում է Հաբանդը՝ Ամարազ գյուղով, որտեղ թաղված էր Աղվանից կաթողիկոս Գրիգորիսը՝ Գրիգոր Լուսավորիչի թոռը։ Հաբանդի տեղը ստույգ հայտնի չէ։ Աշխարհացույցի մեջ հիշվում է երկու Հաբանդ, մեկը՝ Սյունիքում, մյուսը՝ Արցախում։ Խորենացին, վերապատմելով Փավստոսի հաղորդածը, Հաբանդը փոխարինում է Փոքր Սյունիքով, որի տակ նա հասկանում է ամբողջ Արցախը[3] կամ, որ ավելի քիչ հավանական է, նրա այն գավառը, որը Աշխարհացույցի մեջ կրում է պարսկական Sisakan i kotak անունը, այսինքն՝ Փոքր Սիսականը։ Արցախի Հաբանդը հարում էր անմիջապես Սյունիքին՝ կազմելով Սյունյաց Հաբանդի մի մասը և Արցախի մյուս գավառների հետ միասին պատկանում էր Աղվանքին։

---

[1] Ղևոնդ, էջ 168, հասանէր ի սահմանս վրաց ի գաւառն Կողյ։

[2] Փարպեցի, էջ 65, մինչև ի գեօղն, որ կոչի Խաղխաղ յերկրին Աղուանից. Եղիշե, էջ 139, Մերձ ի սահմանս վրաց հանդէպ Խաղխաղ քաղաքի, որ ձմերոց էր թագաւորաց Աղուանից։ Ալիշան, Մեծ Հայք, էջ 84։ Բարխուդարյան, Արցախ, էջ 420։ Վախուշտի քարտեզի վրա Խիլխիլան մի քաղաք է Շամշադիլոյում։

[3] Փավստոս, Գ, գ, բերին ի դաւառն իւրեանց ի կողմանսն Աղուանից ի սահմանս Հայոց ի Հաբանդ, ի գեօղն... Ամարազ=Խորենացի, Գ, գ, բերելով ի փոքր Սիւնիս, թաղեցին յԱմարաս աւանի։

Ատրպատականի հողերից Հայաստանը բաժանվում էր Հեր և Զարևանդ գավառներով, որոնք ընկած էին Ուրմիա լճի հյուսիսային ափերին՝ Սալմաստի և Խոյի սահմաններում։ Ե դարի ապստամբության ժամանակ պարսիկները այստեղից, որպես ապահով հենակետից, գործում էին հայերի դեմ։ Լսելով պարսից զորքերի Հեր և Զարևանդ գալու մասին, Վարդան Մամիկոնյանը շտապում է նրանց դիմագրավելու՝ մտածելով, որ «թերեւս անդէն ի տեղւոջն ի Հեր եւ ի Զարեւանդ գաւառին վճարին ելք գործոյն պատերազմին, եւ ոչ ոք լինէր արգել զօրուն պարսից հասանել յաշխարհն Հայոց սպանութեամբ և գերելով յարձակել և վնասել»[1]։ Ճիշտ այդպես Վահանը, իմանալով նաև, որ պարսից զորքը մտել է Հեր և Զարևանդ, ժողովեց իր ուժերը և ուղղվեց այնտեղ ճակատելու նրանց դեմ այն վայրերում, «թերեւս ոչ լիցի անցանել բազմութեան Պարսից ի միջոց կողմն աշխարհիս Հայոց»[2]։ Իսկ երբ պարսիկները որոշեցին հաշտություն կնքել Վահան Մամիկոնյանի հետ և այդ առաքելությամբ ուղարկեցին Նիխորին, նա «եկեալ յաշխարհն Հայոց ոչ իշխեաց միջամխել ի Հայոց տեղիսս, այլ դադարեալ ի գաւառին, որ կոչէր Հեր»[3]։ Մեզ զբաղեցնող Հեր և Զարևանդ վայրերը հարևան հողերի հետ միասին հետագայում կազմեցին այն նահանգը, որ Աշխարհացույցի մեջ կոչվում է Պարսկահայք, այսինքն՝ Պարսկահայաստան։ Բերված տվյալները ցույց են տալիս, որ այդ շրջանը ևս չէր մտնում Մարզպանական Հայաստանի մեջ։

Հարավից Հայաստանը շրջափակում էին Աղբակի, Անձևացոց և Մոկքի գավառները։ Պարսիկների դեմ Ե դարի ապստամբությունը ծավալվեց բացառապես Մարզպանական Հայաստանի սահմաններում, ըստ որում հիշյալ գավառները հայկական այն տիրապետություններից ամենահարավայինն էին, որոնց ներկայացուցիչները մասնակցում էին դրան։ Աղբակը գրավում էր Զավ գետի վերին հոսանքը, և մինչև օրս էլ այդպես է կոչվում Բաշկալայի շրջակայքը։ Դրանից դեպի արևմուտք՝ Բոհտանի ակունքների վրա Անձևացոց գավառն է, որտեղ գտնվում են Կանգովար ամրոցը և Հոգեաց վանքը։ Ավելի արևմուտք՝ Անձևացոց գավառի կողքին, նույն Բոհտանի հովտում, գտնվում է Մոկքը, այժմյան Մոկսը։

1 Փարպեցի, էջ 69։

2 Նույն տեղում, էջ 128։

3 Նույն տեղում, էջ 160։

*Մոկսից այն կողմ տարածվում էր Աղձնիքը, որ արդեն պատկանում էր Արևմտյան երկրամասին՝ խորվարանի քուստակին և, նշանակում է, դուրս էր մնում Մարզպանական Հայաստանից, որին նա հարում էր Բալալեյսի՝ հայկական Բաղեշի, այժմյան Բիթլիսի մոտ*[1]։

*Ուրվագծված սահմաններով Մարզպանական Հայաստանը իր մեծությամբ զգալիորեն զիջում էր Թագավորական շրջանի Հայաստանին։ Ծայրամասային հողերի գոտին, այսինքն՝ 1. Գուգարքը, 2. Ուտիքը, 3. Արցախը, 4. Փայտակարան-Բաղասականը, 5. Պարսկա-Հայքը՝ Պարսկա-Հայաստանը, 6. Կորճայքը և 7. Աղձնիքը նրա սահմաններից դուրս էին մնում։*

Աշխարհացույցը *այդ նահանգները դնում է Հայաստանի մեջ, բայց և նշում է, որ Գուգարքը հայերից խլել են վրացիները, Ուտիքը և Արցախը՝ Աղվանքը, իսկ Փայտակարանը՝ Ատրպատականը։ Դժվար չէ կռահել, որ նույն ճակատագիրն են ունեցել նաև Պարսկահայքն ու Կորճայքը։ Այդ հողերը Հայաստանից անջատվել են Դ դարի երկրորդ կեսին՝ Արշակի անկման ժամանակ՝ Հայաստանի բաժանման նախօրյակին։ Փավստոսի վկայությամբ այդ ժամանակ հայերից անջատվեցին 1. Աղձնիքի բդեշխը, 2. Նորշիրականի, Մահկերտի, Նիխորականի և Դասանի բդեշխը, 3. Գուգարքի բդեշխը, 4. Գարդմանի տերը, 5. Արցախ նահանգը, 6. Տմորիք-Կորդուք-Կորդուենն աշխարհը. ինչպես նաև 7. «ձեռին իշխանութեան տանն Հայոց թագաւորին, որ էր զԱտրպայական աշխարհաւն», 8. Մարաց աշխարհը և 9. Կասպից աշխարհը։*

*Արշակի հաջորդի և որդու՝ Պապի ժամանակ փորձ եղավ ետ գրավելու անջատված երկրները. պատմիչի ասելով՝ վերստին Հայաստանին միացվեցին՝ 1. «զտուն թագավորին Հայոց, որ յԱտրպայականին էր»*[2]*, 2. Նորշիրական աշխարհը, 3. Կորդուենն-Կորդիք-Տմորիք գավառները, 4. Մարաց հողերը, 5. Արցախ երկիրը, 6. Ուտի, Շակաշեն, Գարդման, Կողթ գավառները, որով և վերականգնվեց*

---

[1] Georg. Cyp. p. 48, ἡ κλεισοῦρα Βαλ-αλ-είσων, καὶ ἄρχεται κατὰ τὸ ἀρκτῷον μέρος ἡ Μεγάλη ’Αρμενία. *Կղեսուրները այն լեռնանցքն է, որ հայերը կոչում էին Ձորայն կոյս, Փավստոս, Դ, ծ, պարիսպ ածէին ի Հայոց կուսէ որ Ձորայ կոչեն, դրունս դնէին.* Սեբեոս, *էջ 108, ընդ ճանապարհս Ձորոյ յաշխարհն Տարօնոյ։ Այժմ այդ լեռնանցքը կոչվում է Ռահվա.* Ինճիճյան, *Նոր Աշխարհագր., էջ 176,* Սարգիսյան, *Տեղագրութիւնք, էջ 274։*

[2] Փավստոս, *Ե, ը։*

Հայաստանի սահմանը Կուրի հոսանքով, ինչպես և էր նախկինում։ Այնուհետև՝ 7. Կասպից երկիրը Փայտակարան քաղաքով, 8. Գուգարքը և այդ կողմից Կուր գետը առաջվա նման դարձավ Հայաստանի և Վրաստանի միջև սահման և վերջապես 9. Աղձնիքը. մի խոսքով այն ինը նահանգները, որ թվարկված են վերը և որոնք խլվել էին Արշակից[1]։

Պապ թագավորի ախտադրուժ սպանությունից հետո Արշակունիների թագավորությունը անշեղորեն գնաց դեպի կործանում, և շուտով Հայաստանը բաժանվեց երկու հավակնորդների՝ Արշակի և Խոսրովի միջև։ «Եւ ի նոցանէ,—տրտնջում է պատմիչը,—բաղում գաւառք կրճեալք հատեալք այսր անդր, եւ մնաց սակաւ մասն յաշխարհաց երկոցունց առ երկոսեան թագաւորս»[2]։ Այդ «ս ա կ ա ւ մ ա ս ն» էլ հենց կազմում էր հետարշակունյաց շրջանի Մարզպանական Հայաստանը։

Աշխարհացույցն էլ, Փավստոսի նման, անջատված գավառները համարում է հայկական, բայց մի տարբերությամբ, որ նրանց շարքում չի հիշատակում «Տուն թագավորին Հայոց, որ յԱտրպայականին էր» և Նոշիրական աշխարհը։ Որ հայոց թագավորը Ատրպատականում մեծ կալվածքներ ուներ, մեզ համոզում են Փավստոսի այն հաճախակի ակնդումները, թե Ատրպատականի կողմից Հայաստանի սահմանը հանդիսանում էր Գանձակը, և այստեղ նստում էին հայոց թագավորի սահմանապահ զորքերը[3]։ Ատրպատականի Գանձակը, որ տարբեր է հայկական նույնանուն քաղաքից, ընկած էր Ուրմիա լճի հարավ-արևելյան կողմում, Մարաղայի և Զենջանի միջև, Թախտ-ի-Սուլեյմանի ավերակների տեղում և Սասանյանների ժամանակ կրոնական շատ կարևոր կենտրոն էր[4]։

Արշակունիների վերականգնման ժամանակ՝ Գ դարի վերջին,

---

1 Փավստոս, Դ, ծ և Ե, ը—ժդ։

2 Նույն տեղում, Զ, ա։

3 Փավստոս, Դ, իա, «սահմանապահք թագաւորին հայոց, որ նստէին ի Գանձակ Ատրպատականի», Ե, ա, «մինչեւ ի բուն ի սահմանսն ի Գանձակ Ատրպատականի», Ե, գ, «մինչեւ ի Գանձակ յԱտրպայական ի սահմանս հայոց հալածէին», Ե, ե, «գնալ ի սահմանս հայոց ի Գանձակէ կուսէ յԱտրպայական տանէ», Ե, լդ, «մինչեւ ի Գանձակ սահման երկիրն, որ պարսից կուսէ էր, հայոց սահման էր», հմմտ. Գ, է, «զամենայն երկիրն հայոց… մինչև ի փոքր քաղաքիկն Սատաղու և մինչեւ ի Գանձակ սահմանս Ատրպատականի»։

4 Hofmann. *Auszüge* p. 250. Nöldeke, Tabari, p. 100.

*298 թվականի դաշնագրով Հայաստանի և Պարսկաստանի միջև սահման ճանաչվեց Զինթա քաղաքը։ Այդ դաշնագրի կետերից մեկի մեջ ասված է. «Հայաստանի սահմանը պետք է լինի Զինթա ամրոցը, որ ընկած է Մարաստանի սահմանագլխին»[1]։ Դժբախտաբար Զինթայի տեղը հայտնի չէ։ Կարելի՞ է արդյոք այն կապել այժմյան Սիննա քաղաքի հետ, որ գտնվում է Թախտ-ի-Սուլեյմանից հարավ։ Ըստ հայկական ավանդության Ատրպատականը հայերին զիջել է պարսից Շապուհ թագավորը. հենց նա էլ կայսեր դեմ մղած պատերազմի ժամանակ հայերի ցույց տված օգնության համար խոստանում է որպես փոխհատուցում Արշակ թագավորին «եւ տաց նմա տուն մեծ, զի յորժամ գնասցէ ի Հայոց գալ առ մեզ, այնպէս տացուք նմա տուն, զի ի Հայոց մինչեւ ի Տիզբոն մինչեւ առ մեզ համակ յիւրում տան ագցի, մինչեւ առ մեզ եկեսցէ»[2]։ Այս խոսքերը, անկախ նրանց հեքիաթային գունավորումից, հաստատում են 298 թվականի դաշնագրի՝ Ատրպատականի հետ ունեցած Հայաստանի սահմանների վերաբերյալ կետը։*

*Հեռու էին տարածվում Հայաստանի սահմանները նաև հարավում։ Նորշիրականը, Մահկերտը, Դասանը և Նիխորականը ենթարկվում էին հայ Արշակունիներին։ Նրանք ընկած էին հայկական Կորդուքից հարավ՝ Աղիաբենի եզրին։ Այժմ էլ գոյություն ունեցող Ալկի քաղաքը ընկած էր Կորդրիքում կամ Տմորիքում՝ Կորդուքի գավառներից մեկում[3]։ Նշանակում է, հիշյալ գավառները ընկնում էին Ալկիից ավելի հարավ, Ջեզիրե-իբն-Օմար քաղաքից ներքև՝ Տիգրիսի մեջ թափվող Խաբուր գետի հովտում։ Եկեղեցական հարցերում հայերի հետ հարաբերության մեջ գտնվող գավառների թվում Բաբգեն կաթողիկոսի օրոք, Զ դարի սկզբին, հիշատակվում է Նոշիրականը, ընդ որում, սա համարվում է Նինվեի բաղկացուցիչ մասը[4]։ Նինվեն նեստորական հինգ թեմերից մեկն էր, որ ասորիների մոտ հաճախ հայտնի է Էդայաբ անունով՝ անցյալի հեղինակների Ադիա-*

---

[1] Petr. Patr. p. 135, Ἀρμενίαν δὲ Ζίνθα τὸ κάστρον ἐν μεθορίῳ τῆς Μηδικῆς κείμενον ὁρίζειν *Կիպերտի մոտ նշված է* Zindu *անունով մի վայր, Նինվեից հյուսիս՝ Ակրայի մոտ, բայց հազիվ թե նա որևէ աղերս ունի պատմական Զինթայի հետ։*

[2] **Փավստոս**, *Դ, ի և Դ, ժը, եւ երկրորդական զմեծ տունն տայր նմա յԱտրպատական աշխարհին։*

[3] **Խորենացի**, *Բ ժգ։*

[4] **Գիրք թղթոց**, *էջ 41, քրիստոնեայք Նոշիրականին ի Նինուէ նահանգ։*

քենը։ Էդայարում, Արբելայի մետրոպոլությունից բացի կային նաև ուրիշ վեց թեմեր. beθ Nuhadra, beθ Bagaš, beθ Dasen, Ramnōnīn, beθ Mahquart, Dabarinos(?)[1]։ Տարօրինակ է, որ հակառակ հայ աղբյուրի վկայության, դրանց թվում չի նշվում Նոշիրականը։ Պետք է ենթադրել, որ Նոշիրականը ասորական վերոհիշյալ թեմերից մեկի երկրորդ անունն է, որ հատկապես ընդունված էր հայերի մոտ, և հավանաբար այն թեմի, որը սահմանակից էր հայկական հողերին։ Նուհադրան գրավում էր Խաբուր գետի ձախ ափը՝ մինչև Էսքի-Մոսուլի ավերակները, Մոսուլ քաղաքից՝ հին Նինվեից հյուսիս։ Բագաշը գտնվում էր Զավ գետի վրա՝ Ջեռանի և Դիզայի սահմաններում, որը, հավանաբար, ներկայիս Գևեռն է[2]։ Դասանը գտնվում էր Ամադիա քաղաքի շրջակայքում, Ջելայի և Բաղի հարևանությամբ։ Հաքքեարի սանջակում հայտնի է եզդիների մի ցեղ՝ tasani կամ d̄asani անունով։ Հավանաբար այդ կողմերում էր գտնվում Մահկերտ գավառը՝ քրդերի երկիրը, որ արաբ հեղինակները կոչում են al māχardān։

Այսպիսով, հիշյալ գավառները տարածվում էին Աշխարհացույցում հիշատակված Կորճեքից և Փոքր Աղբակից հարավ, այժմյան Հաքքեարի սանջակի հարավային ծայրամասերի երկարությամբ։ Մեզ հետաքրքրող գավառներից չորրորդը՝ Նիհորականը, ընկած էր ավելի արևելք, Ուրմիա լճի մոտ։ Աշխարհացույցը Նիհորական լեռները՝ Kohī Nihorakan հիշատակում է որպես Տավրոսի շղթայի մի ճյուղ Ատրպատականում։ Արաբ հեղինակներին ծանոթ է dāχerrakān, այսինքն՝ deh Naχīrakān, որ այժմյան Դեխարկանն է Ուրմիա լճի արևելյան ափին, Թավրիզից հարավ։

Աշխարհացույցում Խորվարանի կամ Արևմտյան երկրամասի

---

[1] Chabot, *Syn. Orien.* p. 272 և 617։

[2] Գևեռ՝ հայերեն գավառ։ Թերևս իսկական անունն է Բաղեշ դենա։ Շարքն, էջ 667, Բաղեշը կապում է ներկայիս Բաշ-Կալայինի։ Սա մի հին կարծիք է, որ Հոֆմանը համարում է ոչ գոհացուցիչ, Auszüge, էջ 227—230 և not. 1826։ Նույն տեղում նաև Նուհադրայի մասին, էջ 208—216, Դասնի մասին, էջ 202—206։ Քրդական طسنی ցեղը Cheref-nameh-ում Charmoy-ի մոտ I, 2, էջ 28 և Jehan-numa. ib. I 1, էջ 73։ Ըստ Մասուդիի الماجردان գտնվում է Ադարբայջանում և սրանց الکنکور մոտ՝ Kinkivar անունով մի վայր, *Eranšahr*, էջ 128։ Մարկվարտն ընդունում է վերջերս հայտնված այն կարծիքը (Hartmann, *Bohtan*, p. 128, Mitteilungen d. Vord-Asiat. Gesel. 1896 և 1897), թե Կինկիվարը հայերեն Կանգուարն է, որ Անձևացոց գավառում մի ավան էր։

Հայաստանին հարող հողերից հիշատակվում են Nohatra, Širakan և Arżen ostan[1]։ Ըստ սասանյան եկեղեցական բաժանման Արզանը Qardu-ի, Zabde-ի, Rehimē-ի և Moksāyē-ի հետ հանդիսանում էր էգայարի հարևան Արվաստան թեմը։ Աշխարհացույցում, ըստ երևույթին, Արզենը գործածված է ամբողջ Արվաստանի իմաստով։ Ճիշտ այդպես էլ Նոհադրան ու Շիրականը համապատասխանում են էգայարին, ընդ որում, շատ հավանական է, որ Շիրականը Նոհադրայի հայերեն հոմանիշն է և Աշխարհացույցում բերված է հայերի համար անսովոր Նոհադրա անվանումը պարզաբանելու համար։

Փավստոսի խոսքերի իմաստից հետևում է, որ Նոշիրականը, Մահկերտը, Նիխորականը և Դասանը գտնվում էին լճի մյուս կողմում, պետք է ենթադրել, որ Նոշիրականը քաղաքական տերմին էր՝ նշելու համար Աղիաբենի սահմանին մոտ գտնվող Արշակունիներին ենթակա գավառները, իսկ Նիխորականը եղել է Ատրպատականում գտնվող նրանց կալվածքների նույնպիսի ընդհանուր անունը։

Նշված հողերը որոշում են Արշակունիների թագավորության առավելագույն սահմանները, որոնց վերաբերյալ հիշողությունը հայերի մեջ կենդանի էր դեռևս Է դարում։ Վահրամ Չուբինը հայ իշխաններին իր կողմը գրավելու համար երդվում է, որ Սասանյաններին հաղթելու դեպքում կվերականգնի հայոց թագավորությունը և հայերին կտա «զամենայն երկիրն Հայոց, մինչև ցԿապկոհ եւ ցդուռն Աղուանից. եւ յԱսորւոց կողմանէ՝ զԱրուաստան, զՄրծուին եւ զՆոր Շիրական, մինչեւ ցսահմանս Տաճկաց, զի առ նախնեօքն իսկ ձեզ լեալ է. եւ ընդ արեւմուտս, մինչև ցԿեսարիա Կապադովկացւոց»[2]։

Հայկական ավանդությունը հավաստացնում է, որ Աղիաբենի և Ատրպատականի հողերը Հայաստանից անջատվել են ծայրամասային մյուս նահանգների հետ միաժամանակ։ Այդ դեպքում անհասկանալի է, թե ինչու՞ Աշխարհացույցում մի քանիսը հիշատակված են որպես Հայաստանին պատկանող, իսկ մյուսները՝ ոչ։

---

1 Աշխարհացույց, էջ 40, Նոտարտայ փոխ. Նոհատրայ, <Նո>շիրական։

2 Սեբեոս, էջ 37։ Տես նաև էջ 9, որտեղ Նորշիրակը պետք է կարդալ Նորշիրակ <ան>։ Փավստոսի մոտ, Ե, լը։ Պապ թագավորը ասում է կայսրին. «եթէ Կեսարեաւ հետ եւ տասն քաղաք մեր լեալ է, արդ ի բաց տուր. եւ զՈւռհա քաղաք շինեալ է նախնեացն մերոց»

*Պետք է ենթադրել, որ Հայաստանի նկարագրության մեջ չմտած Նոշիրականն ու Նիխորականը ավելի վաղ են անջատվել. Հայաստանը դրանք ընդմիշտ կորցրեց Արշակի գերությունից հետո։ Նրա հաջորդները ամբողջությամբ տիրում էին այն երկրներին, որ* Աշխարհացույցը *համարում է հայկական։ Հենց դրանք էլ կազմում էին Արշակունիների թագավորությունը* par excellence։ *Հայաստանի հետագա բաժանումը Արշակունի երկու արքայորդիների և ապա երկու պետությունների միջև ուղեկցվեց ծայրամասային հողերի նոր մասնատմամբ, որի հետևանքով Հայաստանը փոքրացավ մինչև մարզպանական սահմանները։ Այդ երկու հանգամանքները պարզաբանում են ծայրամասային նահանգների՝ Գուգարքի, Ուտիքի, Արցախի, Փայտակարանի, Պարսկահայքի, Կորճայքի և Աղձնիքի առաջացումն այն տեսքով, ինչպես դրանք ընդունված են* Աշխարհացույցում: *խոսքն, իհարկե, անվանումների մասին չէ, որոնք շատ հին են, իսկ շատերն էլ նախահայկական ծագում ունեն։ Մենք խոսում ենք այդ տերմինների տերիտորիալ բովանդակության մասին* Աշխարհացույցի *տվյալներով։ Հիշյալ նահանգների արտաքին սահմանը որոշվում էր թագավորական շրջանի Հայաստանի առավելագույն սահմանագծով, իսկ ներքինը՝ Մարզպանական Հայաստանի նույնպիսի սահմանագծով։ Նրանց միջև գտնվող հողերի շրջանաձև գոտուց կազմվեցին Գուգարք, Ուտիք, Արցախ, Փայտակարան, Պարսկահայք, Կորճայք և Աղձնիք նահանգները։ Այդ նահանգները միմյանցից բաժանվում էին նրանով, որ պատկանում էին վարչական տարբեր միավորների. այսպես՝ Գուգարքը՝ Վրաստանին, Ուտիքը և Արցախը՝ Աղվանքին, Փայտակարանը և Պարսկահայքը՝ Ատրպատականին և, վերջապես, Կորճայքն ու Աղձնիքը՝ Խորվարան քուստակին. մեկը՝ Էդայաբին, մյուսը՝ Արվաստանին։*

*Այսպիսով, պետք է ընդունել, որ ծայրամասային նահանգների տակ պետք է հասկանալ վարչաքաղաքական և ոչ թե եկեղեցական ծագումը։ Դրանց բնակչությունը միշտ խառը կազմ ուներ՝ հայ-վրացական, հայ-աղվանական, հայ-պարսկական, հայ-ասորական և հայ-կորճայական (քրդական), որի հետևանքով հիշյալ բնույթի տրոհումը ըստ նահանգների պաշտպանվում և արդարացվում էր նաև էթնիկական տեսակետից։*

*Ծայրամասերի անջատումից հետո Մարզպանական Հայաստանի կազմի մեջ մնաց մի երկրամաս, որն ըստ* Աշխարհացույցի *բաժանվում էր վեց երկրների՝ Այրարատ, Տուրուբերան, Վասպու-*

*րական, Սյունիք, Տայք և Մոկք։ Ինչի՞ վրա է հիմնվում այս բաժանումը։ Վերջին երեք նահանգները առաջին երեքից տարբերվում են նրանով, որ գտնվում էին մեկ իշխանական տոհմի տիրապետության տակ. այսպես, Տայքը՝ Մամիկոնյանների, Սյունիքը՝ Սյունիների և Մոկքը՝ Մոկսերի, մինչդեռ Այրարատը, Տուրուբերանը և Վասպուրականը բաժանված էին բազմաթիվ իշխանական տների միջև։ Հնարավոր է, որ Սյունիքը և Մոկքը* Աշխարհացույցում *տրված են այն ծավալով, ինչ ծավալով որ դրանք տվյալ ժամանակաշրջանում հանդիսանում էին համապատասխան իշխանական տոհմերի կալվածքները, այլ կերպ ասած՝ նրանց ծագումը տերունական էր։*

*Տուրուբերանը Վասպուրականից անջատվել էր 591 թվականի դաշնագրով Հռոմեական և Պարսկական Հայաստանը բաժանող նոր սահմանագծով։ Ըստ էության այդ նույն գիծն էլ բաժանում էր Այրարատը Վասպուրականից։ Տուրուբերանն ու Այրարատը նույն ծագումն ունեն, ինչ IV Հայքն ու Բարձր Հայքը։ Այս վերջին գավառները ստեղծվեցին այն հողերից, որ 387 թ., Հայաստանի բաժանման ժամանակ, անցան կայսրությանը, իսկ Այրարատը և Տուրուբերանը՝ 591 թ. կայսրության ձեռք բերած նոր հողերից։*

*Պարսկական Հայաստանը մինչև 591 թ. իր այն սահմաններում, որտեղ տարածված էր, այսպես կոչված, տանուտերական իրավունքը, հայերի մոտ երբեմն կոչվում էր տանուտերական տուն՝* tanuterakan tun։ *Հիշյալ ժամանակվանից սկսած՝ տանուտերական տան մի մասն անցնում է կայսրությանը։ Պարսկական պալատում տեղի ունեցած խռովությունների ժամանակ արքայորդի Խոսրովը Մորիկ կայսրից օգնություն է խնդրում, որպեսզի նա գրավի իր հայրենի գահը՝ խոստանալով «տաց քեզ զկողմանս զԱսորւոց՝ զԱրուաստանն ամենայն մինչեւ ի Մծբին քաղաք. եւ յերկրէն Հայոց՝ զաշխարհն տանուտէրական իշխանութեան մինչեւ ցԱրարատ եւ զԴուին քաղաք, եւ ծովուն Բզնունեաց եւ ցԱռեստ աւան»*[1]*։ Երբ Խոսրովը կայսրի օգնությամբ հաստատվեց գահի վրա, կատարեց իր խոստումը՝ «ետ նոցա զԱրուաստան զամենայն, մինչեւ ցՄծբին, եւ զերկիրն Հայոց, որ ընդ իւրով իշխանութեամբ էր, զտուն տանուտէրական մինչեւ ցգետն Հուրազդան եւ զգաւառն Կոտէից, մինչև ցաւանն Գառնի եւ ցեզր ծովուն Բզնունեաց եւ ցԱռեստ աւան*

[1] **Սեբեոս, էջ 33։**

եւ զԳոգովիտ գաւառ, մինչեւ ցՀացիւն և ցՄակու։ Եվ կողմն Վասպուրական գնդին էր ի ծառայութիւն պարսից արքային»[1]։

Այս խոսքերի մեջ հստակ գծված են պարսիկների զիջած հողերի սահմանները. կայսրությանն էր անցնում Պարսկական Հայաստանի ամբողջ արևմտյան կեսը, ընդ որում Կոտայքում Գառնին հանդիսանում էր սահմանագծի վերին կետը, Առեստը՝ ծովի ափին՝ ստորին կետը, իսկ Հացիւնը և Մակուն՝ Գոգովիտի կողմից՝ միջին կետը։ Ուրեմն՝ սահմանագիծը Գառնիից անցնում էր Հացիւնի և Մակուի վրայով դեպի Առեստ։ Գծից դեպի արևմուտք տանուտերական երկիրն էր, դեպի արևելք՝ Վասպուրական գնդի երկիրը. այստեղ պատմիչը կարծես հակադրում է այս երկու տերմինները։ Վասպուրական—vaspurakan բառի իսկական նշանակությունը պարզվում է vaspurakan hamarakar — վասպուրական համարակար դարձվածքից, որ նշանակում է վասպուրական համարող կամ հարկահավաք, իսկ վասպուրական նշանակում է պարսկական։ Պարսկաստանում **վասպուրներ** էին կոչվում ազնվական տոհմի անդամները, և մեզ թվում է, որ վասպուրականը վերամբարձ ոճի մեջ կարող էր փոխարինել սովորական **պարսիկ** արտահայտությանը։ Համենայն դեպս հնարավոր է նաև, որ վասպուրականը հայ հողերի նկատմամբ կիրառելիս հայկական տանուտերական տերմինի համարժեքը լինի։ Փաստորեն տանուտերական էր և, ինչպես երևում է, այդպես էր կոչվում ամբողջ Պարսկական Հայաստանը մինչև 591 թ.։ Տանուտերական հողերի մի մասը հռոմեներին անցնելուց հետո, ի տարբերություն հռոմեականի, վասպուրական էր կոչվում պարսիկների ձեռքում մնացած Հայաստանը[2]։

---

[1] **Սեբեոս**, էջ 45։ Եվ ոչ թե «զԱռեստաւան եւ զԳոգովիտ», ինչպես տպագրված է։ Հմմտ. **Թովմա Արծրունի** «մինչեւ յԱռեստնաւան և զԳոգովիտ»։

[2] Վասպուրական բառն առաջին անգամ գործ է ածում Սեբեոսը վասպուրական և սպահական երկու ձևով, էջ 140։ Միայն մեկ անգամ գործ է ածում Խորենացին, Բ, կբ, տե՛ս վերը, էջ 195։ **Գիրք թղթոցի** մեջ գտնում ենք հետաքրքրական մի կազմություն՝ վասպուրականագույն։ Վրաց Կյուրոն կաթողիկոսը գրում է Սմբատ մարզպանին. «Յառաջած զքեզ տերանց վասպուրականագոյն արասցէ զաւակաւք հանդերձ», էջ 170։ Կյուրոնը աղոթում է Աստծուն, որպեսզի Սմբատը լինի ոչ թե հասարակ տեր, այլ տերանց տեր։ Վասպուրականագույնը համազոր է տերագույն արտահայտությանը, եթե հնարավոր է այսպիսի կազմություն։ Այս բանը հիմք է ծառայում մեր այն ենթադրությանը, թե վասպուրականը և տանուտերականը հոմանիշներ են։

Տանուտերական երկիրը Վասպուրականի գնդի նման երբեմն կոչվում է տանուտերական գունդ։ Գունդը իրապես համապատասխանում է բյուզանդական θέμα-ին և նշանակում է զինվորական ուժերի որոշ քանակ։ Նույնիսկ Դիլի և Գելցերի մանրազնին հետազոտությունից հետո էլ Բյուզանդիայում թեմերի կազմակերպության ծագումը չի կարելի վերջնականապես պարզված համարել[1]։ Պատմական ավանդությունը թեմերի սկզբնավորումը հասցնում է Հերակլ կայսրի ժամանակները, իսկ գիտնականները ենթադրում են, որ հիշյալ կազմակերպության համար ելակետ են ծառայել Մորիկ կայսեր Իտալիայում և Աֆրիկայում հիմնած էքզարքությունները։ Մենք այն տեսակետին ենք, որ թեմերը, որպես զինվորական կազմակերպություն, որը դուրս մղեց քաղաքացիական վարչությանը, պետք է լուսաբանվեն՝ կապված Պարսկաստանում գնդերի հաստատության հետ։ Գիտնականների հետազոտության համաձայն θέμα բառը միաժամանակ նշանակում էր և պրովինցիա և այնտեղ կանգնած բանակի կորպուսը. ընդ որում սա վերաբերում էր բանակի կորպուսին, անկասկած, ավելի շուտ, քան այն սկսեց գործածվել պրովինցիա իմաստով[2]։ Այս երկակի նշանակությամբ θέμα բառը կարելի է համեմատել իրանական gund-ի հետ։ Մահմեդական հեղինակները վկայում են, որ Պարսկաստանում գոյություն ուներ զինվորական ճամբարների հաստատություն, որոնց վրա էր հիմնված պարսից հզորությունը և ռազմական փայլը։ Դրանք կոչվում էին gundjāigāh կամ ramm։ Ըստ որոշ տեղեկությունների գնդերի համար հինգ զորակայաններ կային, իսկ ըստ մի այլ տեղեկության՝ չորս[3]։ Գնդերը, ըստ երևույթին, այն ուժերն էին, որոնք գտնվում էին սպահբեդների հրամանատարության տակ։ Զինվորական ճամբարները Պարսկաստանում իրենց գոյությունը պահպանեցին մինչև թուրքական արշավանքները, որոնք առաջին անգամ ոչնչացրին դրանք, որպեսզի վերջնականապես խորտակեն պարսիկների ուժը։ Գիտնականները չեն ժխտում, որ թեմական կազմակերպությունը թեև իր լրիվ արտահայտությունն է գտնում Լևոն Գ-ի ժամանակ (716—741), բայց նրա սաղմերը նկատվում են դեռևս

[1] Ch. Diehl, *l'Origine du régime des thèmes dans l'empire Byzantin*: H. Gelzer, *Die Genesis der Byz. themenverfassung.*

[2] Diehl. *op. cit.* p. 12.

[3] Justi, *Geschichte Irans.* Grund. d. Ir. Phil. II, p. 469.

Զ դարում։ Գունդը, զորամասի, գնդի իմաստով, սովորական բառ է հին հայ հիշատակարաններում, իսկ աշխարհագրական նշանակությամբ սա առաջին անգամ հանդիպում է Զ և Է դարերի հեղինակներ Ղազար Փարպեցու և ապա Սեբեոսի մոտ։ Այս տվյալները ցույց են տալիս թեմի և գնդի հարազատությունը։

Տանուտերական և վասպուրական երկրները, հավանաբար, հայկական կամ պարսկական որոշ զորամասերի համար ծառայում էին որպես զորակայաններ և այդ պատճառով էլ կրում էին նաև գունդ անվանումը։ Համապետական կազմակերպության իրադարձությունները հաճախ անդրադառնում էին Հայաստանի և առհասարակ Պարսկաստանին հպատակ երկրների վարչակարգի վրա։

Տանուտերական երկիրը բաղկացած էր երկու կեսից, որոնք կոչվում էին գլխավոր բաղկացուցիչ նահանգների անունով՝ Այրարատ և Տարոն կամ Տարուբերան։ Վասպուրականը կամ Սեպուրկանը նույնպես բաժանվում էր Վասպուրական գավառի նեղ իմաստով և Մարդպետականի։

Հիշյալ նահանգական բաժանման համար հավանական առիթ է ծառայել Հռոմեական Հայաստանի նահանգների վերակառուցումը։ Հուստինիանոսյան IV Հայքը նոր հողամասեր ձեռք բերելու հետևանքով 591 թվականին փոփոխություն կրեց։ Աղձնիքի կայսրությանն անցնելով, Սոփանենեն Ամիդի շրջանի հետ միասին կազմեց նոր նահանգ՝ Վերին Միջագետք կամ IV Հայք անունով, իսկ նախկին IV Հայքը Ներքին Հայքից վերցված Խորձայն և Մուզուր գավառների հետ կազմեց մի եպարքություն, որ կոչվեց Հուստինիանոսյան կամ Մյուս IV Հայք։ Առաջինի մայրաքաղաքն էր Ամիդը, իսկ երկրորդինը՝ Դադիմը։ Այս բաժանումը պահպանվել է Գեորգ Կիպրացու աշխատության մեջ[1]։ Աշխարհա-

[1] Geor. Cyp. p. 46, ἐπαρχία Μεσοποταμίας ἄνω ἤτοι Δ̅ 'Αρμενίας, ῎Αμιδα μητρόπολις. p. 48, ἐπαρχία Δ̅ 'Αρμενίας ἄλλης, Δαδίμων νῦν μητρόπολις։ Վերջին եպարքության ներկայացուցիչ Եղիան 692 թ. եկեղեցական ժողովում կոչվում է ἐπίσκοπος Δαδίμων μητροπόλεος τῆς Δ̅ 'Ιουστινιανῆς Mansi, XI p. 992։ Հայ պատմիչ Հովհաննես կաթողիկոսը հիշատակում է այդ փոփոխությունների մասին, ընդ որում Iustinianea-ն թարգմանում է Յուստ<ին>իանունիստ բառով, էջ 47։ Գելցերը՝ հենվելով Հովհաննես կաթողիկոսի վկայության վրա, IV Հայքի, որ կոչվում էր նաև Վերին Միջագետք, մայրաքաղաք է համարում Մարտիրոսուպոլիսը, Ամիդի փոխարեն, op. cit, p. 68, մինչդեռ այդ այդպես էր նախկինում՝ մինչև նշված փոփոխությունները։

ցույցի IV Հայքը տարբերվում է Գևորգ Կիպրացու համանուն նահանգից նրանով, որ այնտեղ չկա Մուղուրը, իսկ IV Հայքը կամ Վերին Միջագետքը Աշխարհացույցում կրում է գլխավոր բաղկացուցիչ երկրամասի՝ Աղձնիքի անունը, ընդ որում նրա մեջ մտնում է ոչ թե ամբողջ Սոփանենեն, այլ միայն այն մասը, որ ընկած է Տիգրիսի ձախ ափին և կոչվում է Նեփրետ , իսկ Տիգրիսի աջ ափը՝ մինչև Բնաբեղ, դուրս է գցված։

Այս բոլոր փոփոխությունները և Աշխարհացույցի շեղումները Գևորգ Կիպրացուց հայկական հողում տեղի ունեցան 591 թվականից հետո։

Այսպես է պատկերանում մեզ Հայաստանի նահանգական բաժանման ծագումը, որ ներկայացված է Աշխարհացույցում: Նրա վերջնական հաստատումն ու ամրապնդումը տեղի է ունենում Զ դարից հետո ընկած ժամանակաշրջանում։ Մինչ այդ Հայաստանը բաղկացած էր մեծ և փոքր շրջանների մի ամբողջ ցանցից՝ բնական սահմանների և այլ պայմանների համապատասխան։ Պարսկական պետական իշխանության տեսակետից այդ բոլորը միասին կազմում էին մեկ վարչական միավոր՝ Մարզպանական Հայաստան։ Նշված տերիտորիալ մասնատվածությունը բխում էր երկրում տիրող սոցիալ-քաղաքական վարչակարգից՝ նախարարու-

## ԳԼՈՒԽ X

## ՆԱԽԱՐԱՐՈՒԹՅԱՆ ՔԱՆԱԿԱԿԱՆ ՎԵՐԼՈՒԾՈՒԹՅՈՒՆԸ

Առաջադրված խնդրի սահմանները։ Պատմագրական տեղեկություն-ներ նախարարությունների քանակի մասին։ 900 կամ 400 տոհմերի գոյու-թյան մասին եղած կարծիքը և նրա անհիմն լինելը։ Փաստական տվյալներ նախարարական նարստությունների (դինաստիա) մասին, պատմիչների մոտ և եկեղեցական ժողովների արձանագրություններում պահպանված նյութերը և նրանց ընդհանրացումը։ Գահնամակ և Զորանամակ. հայ հին մատենագիր-ների տեղեկությունները նրանց մասին։ Նրանց **գրական** վերլուծությունը։ Գահնամակի կազմը Զորանամակի համեմատությամբ։ Գահնամակի տար-բերակները և նրանց նշանակությունը։ Խորենացու տվյալները նախարարների մասին, դրանց բաղդատումը Գահնամակի հետ։ Երկու փաստաթղթերի զու-գադրությունը և Խորենացու վերաբերմունքը դրանց նկատմամբ։ Խորենացու՝ դրանց հետ ծանոթ լինելու հետքերը։ Գահնամակի և Զորանամակի **պատմա-կան** քննությունը։ Գահնամակի կենցաղային հիմքը—գահերեցության (բար-ձակալության) հաստատություն, նրա կենսունակությունը մինչև Սասանյան-ների անկումը է դարում։ Զորանամակի կենցաղային հիմքը—զինվորական ծառայությունը և նրանով պայմանավորված նախարարական հեծելազորի հաշվեգրումը մինչև Ը դարի սկիզբը։ Զորանամակի հիմնական գծերը, շփման կետեր Զենոբ Գլակի և Խորենացու հետ։ Պատմական տեղեկանք հայկական հեծելազորի քանակի մասին։ **Ընդհանուր հետևություն։** Քննարկվող փաստա-թղթերի գրական ծագումը։ Գահնամակի աղբյուրները։ Զորանամակը և ramakan nama-ն։

*Նախարարական վարչակարգը Հայաստանում գոյություն ուներ հնագույն ժամանակներից մինչև մոնղոլների արշավանքը։ Տեղի և ժամանակի պայմաններում զարգացող բոլոր մյուս երևույթ-ների նման նախարարությունն էլ հաճախ իր բնույթով փոփոխվել է՝ վերապրելով զարգացման մի քանի փուլեր։ Արշակունիների օրոք մշակված նախարարական կարգ ու կանոնը շարունակվեց համարյա անփոփոխ գործել և՛ Սասանյանների, և՛ Հուստինիանոսի դարաշրջա-նում։ Մարզպանական կամ Տանուտերական Հայաստանի մեծ մասի*

կայսրերի իշխանության տակ ընկնելու ժամանակներից, մոտավորապես 628 թվականից, երբ պարսիկները վերջնականապես հրաժարվեցին նրանից, սկսվում է Արշակունյաց շրջանին բնորոշ նախարարության քայքայումը։ Արաբների դաժան և սկզբում թշնամական քաղաքականությունը նախարարության նկատմամբ նպաստեց այդ քայքայմանը։ 705 թվականի Նախիջևանի աղետը շանթահարեց նախարարությանը և խարույկների ու կախաղանների միջոցով ոչնչացրեց հայ ազնվականության ծաղիկը. այդ հարվածը նախարարությունները ուժասպառ անելու պատմության մեջ հանդիսացավ շատ վճռական պահ և, թերևս, կարող է համեմատվել միայն արաբ ոստիկան Թուրք Բուղայի Թ դարի կեսերին կազմակերպած ջարդի հետ։

Խորենացու «Հայոց պատմությունը» հեղինակի հետապնդած պատմական խնդիրների բնույթով և էությամբ զուգադիպում է նախարարության Արշակունյաց նորմերի քայքայման ժամանակաշրջանին։ Այդ աշխատությունը նախարարության պատմությունը շարադրելու առաջին փորձն է։ Նա պատմական մյուս հուշարձաններից տարբերվում է նախ և առաջ հեղինակի սուբյեկտիվ վերաբերմունքով դեպի իր շարադրության առարկան։ Խորենացին հասարակ պատմիչ չէ, որ վաղուց անցած-գնացած օրերի դեպքերը շարադրում է պարզամտորեն, այլ գերազանցորեն քննադատ է և հետազոտող. նա ոչ միայն պատմում է, այլ աշխատում է հասկանալ ու բացատրել երևույթները, որի ընթացքում երբեմն ավելորդ ծայրահեղությունների մեջ է ընկնում։ Որպես նախարարությունների պատմիչ նա իր առջև դրված խնդրին նայում է հեռանկարային տեսակետից՝ փորձելով նրանց ծագումը պարզաբանել պատմական անցյալի լույսի տակ։

Կյանքում գործող երևույթներն ու հաստատությունները, քանի դեռ դրանք կենդանի ու կենսունակ են, կարիք չունեն կանոնակարգության և մեկնաբանության, բայց դրանք անխուսափելիորեն դառնում են հետազոտության առարկա, երբ իրենց դարն ապրում են, երբ նրանք սկսում են խամրել կյանքում ու մարդկանց հիշողության մեջ և աստիճանաբար հեռանալով՝ դառնում են անցյալի սեփականություն։ Այս տեսակետից «Հայոց պատմությունը» նրա հեղինակի քննական ոգու շնորհիվ նշանավորում է անկման շրջանը, երբ նախարարական կյանքի նախկին հենարանները խախտվել էին, պատմական չափանիշները քայքայվելով՝ կենդանի իրակա-

նությունից անցել էին հիշողությունների և ավանդությունների գիրկը։ Այդ վիճակը հարազատորեն բնորոշել է ինքը՝ Խորենացին, որ առաջին Արշակունու բերանով հարց է տալիս. «Ուստի նախարարութիւնքս որ աստ կան. զի ոչ կարգք ինչ լեալ աստ յայտնի... եւ ոչ գլխաւորաց աշխարհիս առաջինն յայտնի է եւ ոչ վերջինն, եւ ոչ այլ ինչ օրինաւոր, այլ խառն ի խուռն ամենայն եւ վայրենի»[1]։

Խորենացու ասելով, այս վիճակի մեջ գտավ Հայաստանը Արշակունյաց հարստության հիմնադիրը, որը Հայաստան գալով, կամեցավ ծանոթանալ իրեն վստահված երկրին, ինչպես և այնտեղ գոյություն ունեցող նախարարական կարգուկանոնին։ Հասկանալի է, որ դա թագավորի ցանկությունը չէր, այլ իր իսկ պատմիչի հետաքրքրասիրությունը, և այն վիճակը, որ նկարագրված է այստեղ, բոլորովին էլ չի վերաբերում Հայաստանում Արշակունիների հայտնըվելու ժամանակին, այլ պատմիչի ժամանակվա իրականության ճշմարտացի պատկերն է։

Քանի որ «Հայոց պատմությունը» սերտորեն կապված է այն ժամանակաշրջանի հետ, որը մենք նկատի ունենք իբրև նախարարության մասին ներկա հետազոտության վերջին սահման, ապա նրա տվյալները մեզ համար կարող են ելակետ ծառայել առաջադրըված խնդիրը կատարելիս։

Թե ինչպես է լուծել «Պատմության» հեղինակը իր առաջ դրված հարցերը, կտեսնենք ստորև, իսկ մինչ այդ մենք կաշխատենք այդ հարցերին պատասխանել ինքնուրույն, առանց նրա օգնության և այն նյութերի հիման վրա, որոնք նրան ևս ծանոթ են եղել։ Քննության առնենք նախ և առաջ հարցի կոնկրետ կողմը՝ նախարարական տոհմերի քանակը և երկրում նրանց տեղադրությունը։

Որոշ հետազոտողներ ենթադրում են, որ Հայաստանում Արշակունիների ժամանակ գոյություն են ունեցել մինչև 900 իշխանական տոհմեր. այդ կարծիքը հիմնված է թյուրիմացության և պատմական մի վկայություն ոչ այնքան ճիշտ հասկանալու վրա։

Փավստոսը պատմում է, որ Արշակը գահ բարձրանալով, ձեռնարկեց երկրի շինարարությանն ու պետական կյանքի վերա-

---

1 Խորենացի, Ա, Բ։

*կանգնմանը, որ խախտվել էր իր նախորդի ժամանակ։ Նրա ջանքերի շնորհիվ երկիրը կարծես վերածնվեց և նախկին կերպարանքն ստացավ։ Ամեն ոք գտավ իր տեղը. «մեծամեծքն յուրաքանչիւր գահու եւ գործակալքն յուրաքանչիւր չափու»։ Հազարապետի պատասխանատու պաշտոնը թագավորը հանձնեց Գնունիների տոհմին, իսկ սպարապետությունը՝ Մամիկոնյաններին, ապա անմիջապես հաջորդում են պատմիչի հետևյալ խոսքերը. «Եւ այլ յայլմ ազգաց եւ ի խոնարհ՝ որ գործակալս անուն բարձիք առաջի արքային պատիւ ի գլուխ բազմէին, Թող զնահապետս մեծամեծս եւ զտանուտերս, որք գործակալք միայն էին ինն հարիւր բարձ, որ մտանէր ի ժամ տաճարին ուրախութեանն բազմակալացն կարգելոց, Թող զտնկայս գործակալութեանն սպասու»[1]։*

*Պատմիչը նահապետներին ու տանուտերներին տարբերում է գործակալներից, այսինքն՝ ծառայողներից կամ աստիճանավորներից։ Գնունի և Մամիկոնյան իշխանները, ստանձնելով հազարապետի և սպարապետի պաշտոնները, դրանով իսկ դառնում էին գործակալներ՝ պետական ծառայության մարմիններ։ Այդ կարգի գործակալներ Արշակի պալատում 900 հոգի էին, որոնք ունեին իրենց բարձ-բազմոցը թագավորի սեղանի շուրջը, բացի նրանցից, որ ոտքի վրա կանգնած էին լինում։ Ճիշտ է, պալատական ծառայության էին կոչվում, ինչպես երևում է պատմիչի խոսքերից, ազնվականները և միևնույն անձը միաժամանակ կարող էր լինել և՛ նահապետ, և՛ գործակալ, բայց այս դեռ չի նշանակում, որ գործակալ-աստիճանավորները թվով այնքան էին, որքան նախարարական տոհմերը, քանի որ այդ նույն տոհմից կարող էին ծառա-*

---

[1] *Փավստոս, Դ, բ։ Տպագիր հրատարակության մեջ կետադրությունը ճիշտ չէ, որի հետևանքով «որք գործակալք միայն էին» խոսքերը կարող են սխալմամբ վերագրվել նախորդ «Թող զնահապետս» և այլն դարձվածքին։ Իրականում դրանք միայն «որ գործակալս անուն բարձիք» և այլն նախադասության կրկնությունն են, որ տեղի է ունեցել «Թող զնահապետս...» միջանկյալ դարձվածքի հետևանքով։ Բացի այդ, «բազմակալացն» պիտի կարդալ «բազմականացն», որ նշանակում է* խնջույք և բազմոց, աթոռ, *այստեղից էլ «բազմականաց կարգելոց» կարող է նշանակել կամ* կազմակերպվող *խնջույքներ կամ* շարված *բազմոցներ։ Համեմ. Փավստոս, էջ 172 «ի տախտին արկանել բազմական» և շարունակությունը։ Ինչ վերաբերում է «գործակալութեան սպասու» արտահայտությանը, ապա այն այստեղ, ինչպես մեզ թվում է, մեկ հասկացողություն է, և նշանակում է գործակալական պաշտոն և ոչ թե սպասավորություն սեղանի շուրջը։*

յության մտնել մի քանի հոգի։ Պատմիչին այսպես հասկանալու դեպքում 900 իշխանական տոհմերի գոյության մասին եղած կարծիքը բոլորովին զրկվում է հիմքից։

Հայ գրականության մեջ հայտնի է մի հուշարձան «Վարք Ներսեսի», որը եթե քաղվածք չէ Փավստոսի աշխատությունից, ապա սրա հետ միասին ծագում է մի ընդհանուր աղբյուրից և Փավստոսից տարբերվում է նրանով, որ Փավստոսյան Արշակի փոխարեն առաջին պլան է քաշված վերջինիս ժամանակակիցն ու թշնամին՝ Ներսես կաթողիկոսը, որի շուրջն էլ պտտվում են դեպքերը։

«Վարքի» մեջ նախարարական գահերի վերականգնումը, ինչպես որ պետք էր սպասել, վերագրվում է Ներսես կաթողիկոսին, և համապատասխան բարձերի թիվն էլ ոչ թե 900 է, այլ 400. «Ներսէս կարգէր ի ժամ ճաշոյն ի սեղան արքային Արշակայ բարձս չորեքհարիւր» և «Վարքի» հեղինակը անմիջապես փորձում է տալ բոլոր գահերի ցանկը, բայց թվելով 132 անուն (և 13 անուն էլ գահերից դուրս) վերապահում է անում. «եւ այլ եւ յոլով, զոր ծանր համարեցայ արկանել ընդ գրով» և կրկին հաստատում է, որ բոլոր բարձերի թիվը 400 էր, և որ դրանք Ներսեսի հրամանով հաստատված էին Արշակ թագավորի կողմից[1]։

400 բարձերի մասին տեղյակ է նաև համեմատաբար ավելի ուշ շրջանի՝ ԺԳ դարի պատմիչ Ստեփաննոս Օրբելյանը. նրա տըվյալներով գործի նախաձեռնողը եղել է ոչ թե Ներսեսը, այլ Գրիգոր Լուսավորիչը. «Գրիգորիս հրամայէ մեծին Տրդատայ կարգել զթագաւորութիւն իւր ըստ սահմանի կայսերացն յունաց եւ տալ ըստ իւրաքանչիւր պատշաճի գահ եւ պատիւ իշխանացն յաջմէ եւ յահեկէ. որ եւ գեղեցկապէս յօրինեալ ի ժամ ճաշոյն նստել բարձս չորեքհարիւր իշխանաց»[2]։

Թովմա Արծրունու մոտ հանդիպում ենք մի հետաքրքրական վկայության. նա ասում է, որ Սմբատ Բագրատունի թագավորը Վասպուրականի իշխաններից մեկին շնորհել է «զպատիւ մարզպանութեան գահակալութեան հաւատացեալ, ըստ կարգի բարձաբերձութեան թագաւորացն հայոց, մանաւանդ մեծին Տրդատայ»[3]։

---

1 Սոփերք, Զ։

2 Ստեփաննոս Օրբելյան, Զ։

3 Թովմա Արծրունի, էջ 239։

Այս քաղվածքից կարելի է եզրակացնել, որ դեռևս Թովմա Արծրունու ժամանակ, Ժ դարում Գահնամակի կամ բարձերի ցուցակի ծագումը կապվում էր Տրդատի անվան հետ։

Թվում է, թե գործ ունենք մի հին ավանդույթի հետ, որ պետք է հաշվի առնել. մինչդեռ իրականում այդ ամենը հիմնված է մի ցավալի թյուրիմացության վրա։ Զենոբ Գլակը պատմում է, որ Տրդատի օրոք հյուսիսի թագավորը ասպատակեց Վրաստանը և ավերեց ամբողջ երկիրը՝ մինչև Կարին։ Վրացիների խնդրանքով Տրդատը նրանց օգնության ուղարկեց հայկական մի զորախումբ։ Հայերը հաղթեցին թշնամուն և հալածեցին լեռնականներին, ընդ որում գերի վերցրին երեք իշխանների ու չորս հարյուր ընտրյալների ու բերին թագավորի մոտ։ Նրանց բանտարկեցին Ողական ամրոցում, և երբ Տրդատը Տարոնից ուղևորվեց Ապահունիք, իր հետ տարավ «զիշխանսն՝ որք էին ի բերդն Ողկան եւ զչորեքհարիւր արսն ի դիւանն արքունի տալ արկանել»[1]։ Այս պատմության ընթացքին անուշադիր վերաբերվելու դեպքում պատմիչի խոսքերը կարող են այն իմաստով հասկացվել, թե բոլոր 400 գերիները բարձրացվեցին իշխանական աստիճանի։ Այստեղից հեռու չէ մինչև այն առասպելը, որ գոյություն են ունեցել 400 իշխանական բարձեր, և Տրդատն էլ եղել է դրանց հաստատողը։ Զարմանալի չեն նման թյուրիմացությունները, որովհետև օտարազգիների արշավանքների հետևանքով հայերի զարգացումը այնպիսի ընդհատումներ էր ունենում, որ նույնիսկ ամենամոտիկ սերունդը երբեմն իրեն նույնքան անօգնական էր զգում մոտավոր անցյալի շատ հարցերում, որքան և մենք այսօր. հարկ էր լինում կռահել ու մեկնաբանել, իսկ այդպիսի դեպքերում հնարավոր, նույնիսկ անխուսափելի են սխալներն ու վրիպումները։

Այսպիսով, 900 կամ 400 նախարարությունների հարցը բոլորովին վերանում է։ Այդ թվերը չեն արդարանում Հայաստանի նախարարությունների քանակին վերաբերող նաև այլ տվյալներով։

Արաբ հեղինակ Յակուբին, որ ապրում էր Թ դարում, հայտնում է, որ իշխանությունների թիվը Հայաստանում հասնում էր 113-ի։ Յակուբին, թեև սպահանցի էր, բայց, իր իսկ խոստովանությամբ, երկար ժամանակ ապրել է Հայաստանում և նույնիսկ մի

[1] Զենոբ Գլակ, էջ 43, ածին ընդ ինքեանս երիս իշխանս եւ չորեքհարիւր այր ընտիր. նաև էջ 49։

քանի թագավորների և կառավարիչների քարտուղար է եղել[1]։ Դրանով էլ հենց նրա վկայությունները առանձնակի արժեք են ստանում։ Պետք է, սակայն, վերապահում անել, որ մահմեդական հեղինակները Հայաստան ասելով հասկանում էին ոչ միայն Հայաստանը, այլ նաև Առանը և Վրաստանը։ Ի թիվս 113 իշխանությունների Յակուբին, օրինակ, ալանների և Բաբ-ուլ-աբվաբի միջև մտցնում է Սահիբ-աս-սերիրի իշխանությունը, իսկ Առանը համարում է Հայաստանի առաջին իշխանությունը[2]։ Քանի՞ իշխանություններ էին գտնվում բուն Հայաստանի սահմաններում, մնում է վիճելի, համենայն դեպս միայն Հայաստանին վերագրված 113 թիվը ենթակա է կրճատման։

Արաբ հեղինակի վկայությունը շատ մոտ է իրականությանը. այդ բանում մեզ համոզում է գործի փաստական կողմը՝ պատմական գրականության մեջ գոյություն ունեցող նյութերի քննությունը. վերջիններս գլխավորապես քաղված են պատմական աշխատություններից և հատուկ փաստաթղթերից, այսպես կոչված Գահնամակներից։

Դրանցից առաջին տեղը գրավում են Փարպեցու և Եղիշեի գործերը, որոնք հարուստ նյութ են պարունակում նախարարական անվանացանկի մասին։ Ղազար Փարպեցու մոտ կա իշխանների մի քանի ցուցակ, այսպես՝

1. 450 թվականին պարսից թագավոր Հազկերտին ուղղված պատասխան նամակը կազմելու համար հավաքված ժողովի մասնակիցների ցուցակը[3]։

---

[1] Յակուբիի աշխատությունը մեզ ծանոթ է այն քաղվածքներից և հատվածներից, որ գտնում ենք ուրիշ հեղինակների մոտ։ Մեջբերված տեղեկությունները վերցված են Իբն-ալ-ֆակիհից, որ գրեթե ժամանակակից է Յակուբիին, de Goeje, Geog. V, p. 281։ Караулов, *Сбор. Кав.* XXXI, p. 23. وذكروا ان عدة ممالكها مائة وثلث عشرة Յակուբիի մոտ VIII դ. (էջ 13) 118 իշխանություններ, 113-ի փոխարեն։ Ըստ երևույթին սա էլ ազդվել է Յակուբիից։

[2] Սահիբ-աս-սերիր նշանակում է գահի տիրակալ։ Ըստ ավանդության պարսից ոսկե գահը Սասանյանների անկումից հետո անցավ Վահրամ Չուբինի ժառանգներից մեկին, որը այն իր հետ տարավ և իշխեց մի երկրում, որ արաբները գահի անունով կոչում են سرير։ Մովսես Կաղանկատվացու ասելով՝ Վահրամ Չուբինի հետնորդները հաստատվեցին Առանում, և նրանցից էր սերում Ջիվանշիրը։ Նկատի ունենալով այս՝ Սերիրը կարելի է նույնացնել Առանի կամ, ավելի ճիշտ, նրա հյուսիսային մասի հետ։

[3] Փարպեցի, էջ 45։

2. *Հազկերտի մոտ կանչված անձանց ցուցակը*[1],

3. *Վասակի կողմնակիցների ցուցակը*[2],

4. *Վարդանի համախոհների ցուցակը, որոնք ընկան 451 թ. ճակատամարտում*[3]։

5. *Ապստամբության այն մասնակիցների ցուցակը, որոնց գերի վերցրին պարսիկները*[4]։

*Առաջին ցուցակից բացի, մյուս բոլոր ցուցակները կան նաև Եղիշեի Պ ա տ մ ու թ յ ա ն մեջ, ընդ որում այնպիսի ճշտությամբ, որ նույնիսկ հերթականությունը երկու պատմիչների մոտ համընկնում է։ Եղիշեն առաջարկում է նաև Վարդանի համախոհների մի հատուկ ցուցակ*[5]*, որ չունի Փարպեցին և երկրորդ անգամ մեջ է բերում Վասակի համախոհների ցանկը մի այլ խմբագրությամբ*[6]*։ Հարևանցիորեն նկատենք, որ Փարպեցու համեմատությամբ այդ շեղումները չափազանց կարևոր են Եղիշեի գործի քննության համար։ Հիշյալ նյութերը ամփոփելու համար իբրև հիմք ընդունենք Ղազար Փարպեցու մոտ տրված ժողովի մասնակիցների ցուցակը և այն լրացնենք մյուս ցանկերով.*

| | | | |
|---|---|---|---|
| 1. | Սիւնեաց | Վասակ | իշխան |
| | Արծրունեաց | Ներշապուհ | իշխան |
| | Մաղխազ | Վրիւ | իշխան |
| | Մամիկոնէից | Վարդան | իշխան |
| 5. | Վահեւունեաց | Գիւտ | իշխան |
| | Մոկաց | Արտակ | իշխան |
| | Անձեւացեաց | Շմաւոն | իշխան |
| | Ապահունեաց | Մանէճ | իշխան |
| | Վանանդայ | Առաւան | իշխան |
| 10. | Արշարունեաց | Արշաւիր | իշխան |
| | Ամատունեաց | Վահան | իշխան |
| | Գնունեաց | Ատոմ | իշխան |
| | Պալունեաց | Վարազշապուհ | իշխան |

[1] Փարպեցի, *էջ 47*=Եղիշե, *էջ 76*։

[2] *Նույն տեղում, էջ 67*=Եղիշե, *էջ 136*։

[3] *Նույն տեղում, էջ 72*=Եղիշե, *էջ 225*։

[4] *Նույն տեղում, էջ 86*=Եղիշե, *էջ 369*։

[5] Եղիշե, *էջ 185*։

[6] *Նույն տեղում, էջ 172—173*։

Աշոցայ Հրահատ իշխան
15. Դիմաքսենից Համայեակ իշխան
Արեղենից Գագրիկ իշխան
Առաւեղենից Փափագ իշխան
Ձիւնական Վրէն իշխան

*Այստեղ թվարկված են իշխանական տոհմերից ամենանշանավորները. չեն հիշատակված Ռշտունիների ու Բագրատունիների ներկայացուցիչները, որոնք, չհամակրելով շարժմանը, չներկայացան ժողովին։ Ռշտունին հիշատակվում է Պարսկաստան կանչված իշխանների ցուցակում.*

Ռշտունեաց Արտակ իշխան:

*Երրորդ ցուցակից պետք է նշել.*

20. Բագրատունեաց Տիրոց իշխան
[Գ]աբեղէնից Արտէն[1] իշխան
Ուրծայ Ներսէհ իշխան:

*Չորրորդ ցուցակից.*

Գնդունեաց Տահատ[2] իշխան
Քաջբերունեաց Ներսէս իշխան
25. Ընծայնոյ Արսէն իշխան
Սրուանձտայ Գարեգին իշխան:

*Վերջին ցուցակից[3].*

Տաշրաց Վրէն իշխան
Արծրունեաց II Ապրսամ իշխան
Մանդակունեաց Սահակ եւ Փարսման իշխան
30. Ռոփսենից Բաբիկ եւ Յոհան իշխան:

---

[1] *Բնագրում Արեղեան, փոխանակ Գ-աբեղեանի, ինչպես ճիշտ կերպով գրված է 73-րդ էջում, համաձայն Եղիշեի էջ 173-ի, որտեղ ընթերցվում է Արտէն Գաբեղեան։ Աբեղեանների ներկայացուցիչն էր Գադրիկը։ Վասակի կողմնակիցների ցուցակում նշված է Գադիշոյ խորխոռունի։ Այս ազգանունը վերը նշված է իրենց տոհմական մաղխազ տիտղոսով։ Նրանց ներկայացուցիչ Խորենը մեկ կոչված է մա <ղ>խազ, էջ 72, իսկ քիչ հետո նույն էջում՝ Խորխոռունի։*

[2] *Գնդունեաց, էջ 67, և Գնթունեաց, էջ 75։*

[3] *Տաշրաց(եաց), էջ 86 և Տաշրայ, էջ 75, ճիշտ է՝ Տաշրաց։ Եղիշեի մոտ, էջ 370, Ռափսոննեան, Սոփերքում(Ձ)՝ Առոփսունիք, էջ 35 և Ռափսեանք, էջ 36։ Արծրունի երկու անեք, մեկի ներկայացուցիչն էր Ներշապուհը, Փարպեցի, էջ 47, որ նշված է վերը, իսկ մյուսինը՝ Ապրսամ, Փարպեցի, էջ 86, նաև էջ 75։*

*Եղիշեի ինքնուրույն ցուցակներից*[1].

| | | | |
|---|---|---|---|
| | Ակէոյ | Ընչուղ | իշխան |
| | Սահառունեաց | Կարէն | իշխան |
| | Սլկունի | Այրուկ | իշխան |
| | Քողեան | | իշխան |
| 35. | Տրպատունի | | իշխան |

*Փարպեցին Վահան Մամիկոնյանի պատմության մեջ, բացի նշվածների հետ ընդհանուր անուններից, հիշատակում է նաև*[2].

| | | | |
|---|---|---|---|
| | Եռուանդունի | Ներսէհ | իշխան |
| | Արտակունեաց | Պապ | իշխան |
| | Արշամունեաց | Խուրս | իշխան |
| | Առաւենեան | Քնթ | իշխան |
| 40. | Յովսեպեան | Ներս | իշխան |
| | Կարճային | Վասաւուրտ | իշխան |
| | Աղբեւրկացի | Առաւան | իշխան |
| | Մարդպետական | Պանով | իշխան |

---

[1] *Ակէոյ իշխանը Վասակի համախոհների ցանկում է, էջ 170։ Այստեղ նշված է նաև Արտակ Ռշտունին, որը ցույց է տալիս, թե Ռշտունիները Վասակի համախոհների թվում էին։ Վարդանի կողմնակիցների ցուցակը Եղիշեի մոտ բովանդակում է ընդամենը 26 անուն, որոնցից 20-ը ծանոթ են մյուս ցանկերից։ Սահառունի հանդիպում ենք Փարպեցու մոտ Վահան Մամիկոնյանի պատմության մեջ, էջ 125 և 144։ Սրանցից խոսրով Գաբեղեանը պետք է ուղղել Գազրիկ Աբեղեան, ըստ Փարպեցու, էջ 45 և 58։ Գաբեղեանները Վասակի կողմնակիցների բանակում էին։ Գազր-իկը=* [illegible] *արդյո՞ք խոսրով անվան բարբառային ձևը չէ. հմմտ. ինչպես Եղիշեի Յուխնան, էջ 370, նույնն է Փարպեցու Յոհանի հետ, էջ 86։*

[2] Փարպեցի, *էջ 127, 129, 149, 153 և 163։* Կարճայինը *հավանաբար պետք է կարդալ* Հարճային։ *Վերը նշված մյուս իշխաններից հանդիպում են՝*

1. *Մամիկոնեան Վահան, Վասակ, Արտաշէս, Վարդ, Մուշեղ*
2. *Սիւնի Բաբիկ, Բաբգէն, Գդիհոն*
3. *Ամատունի Առնակ, Վարազշապուհ*
4. *Մալխազ Գադիշոյ, Գարշոյլ*
5. *Ուրծայ, Կողթեկ, Վարազներսէհ*
6. *Բագրատունի Սահակ*
7. *Կամսարական Հրահատ, Ներսէհ, Սահակ*
8. *Գնունեաց Ատոմ եւ Առաստոմ*
9. *Գնթունեաց Վառգոշ*
10. *Արծրունի, Յաշկուր*
11. *Անձեւացիք Սեւուկ և Յոհան*
12. *Մոկաց Յոհան*
13. *Ռշտունեաց ազատորեար*
14. *Վահեւունի Բաշղ*
15. *Պալունի Փապակ*
16. *Վանանդացի Վրէն, Ազգէն*
17. *Գաբեղէնից Սատոյ, Գարագ*
18. *Դիմաքսենից Որդի*
19. *Սահառունի Վասակ, Քաջաջ։*

*Ըստ երևույթին նախարարությունների թվին են պատկանում նաև*[1].

Արշական Ատրորմիզդ իշխան
45. Զանդաղան իշխան
Ճանխոտապետ իշխան:

*Զ դարի եկեղեցական ժողովների արձանագրությունները և է դարի Սեբեոսի պատմական երկը բավական նյութեր են պարունակում նախարարական տոհմանունների վերաբերյալ և մեր թվարկածներին ավելացնում են մի քանի նոր տոհմեր։ 505 թվականին, Բաբգեն կաթողիկոսի օրոք, հրավիրված ժողովի արձանագրության մեջ պահպանվել է իշխանական 14 անուն, որոնցից պետք է նշել*[2].

[1] *Փարպեցու խոսքերի իմաստից երևում է, որ Ատրորմիզդը հայ ծագում ուներ։ «զԱտրորմիզդ ումն անուն յաշխարհէն Հայոց մարզպան հրամայէր թողուլ», էջ 78։ Գուցե պետք է կարդալ «յաշխարհին Հայոց», այսինքն՝ «զԱտրորմիզդ յաշխարհին Հայոց մարզպան հրամայէր թողուլ»։ Այդ դեպքում մարզպանի ծագումը կմնա վիճելի։ Ուշագրավ է Եղիշեի մոտ հետևյալ հատվածը. «զմի ումն յաւագ նախարարացն Ատրորմիզդ անուն, որոյ իշխանութիւնն իսկ խառն էր ընդ Հայոց աշխարհին և գործակից էր զօրավարինն»։ Թվում է, թե պատմիչը նույնպես նկատի է ունեցել հենց Փարպեցուն և չի կարողացել հասկանալ Ատրորմիզդի ծագումը։ Արշակ-ան ազգանունը հայերեն Արշակ-ունի-ի պարսկական ձևն է։ Հավանորեն նա հայոց Արշակունիների սերնդից էր։ Զանդաղանը այն անձի անունն է, «որ էր յոստանեայ տանէն», Փարպեցի, էջ 61, ինչպես և «Արտակունի, այր ոստանիկ», էջ 129։ Պարզ չէ, թե Զանդաղանը անձնանուն է, թե տոհմանուն։ Ինչպես կտեսնենք, Զորանամակում նա հիշատակված է նախարարների շարքում։ «Ճանհխոտապետն արքունի» հանդիպում է Եղիշեի մոտ, էջ 185 և Սոփերքում, Զ, էջ 35 և նշանակում է թագավորական սխոտապետ, հավանորեն, Արշակունիների ժամանակ եղած պաշտոնի համաձայն։*

[2] Գիրք թղթոց, *էջ 74։ Մյուս իշխաններն են.*

*1. Վարդ Մամիկոնեան*
*Սահակ Կամսարական*
*Սպանդիատ, Հայոց ասպետ*
*Արտաշիր Հայոց մա<ղ>խազ*
*5. Չիկ Վանա<ն>դայ տէր*
*Մանգէն Ամատունեաց տէր*
*Տիրոտ Պալունեաց տէր*
*Վստամ Ապահունեաց տէր*
*Գնէլ Գնունեաց տէր*
*10. Բաշխեն Վահեւունեաց տէր*
*Արտաշիր Սիւնեաց տէր*
*Ատրներսէհ Ռշտունեաց տէր*
*13. Արտաշիր Առաւեղենից տէր։*

*Վարդ Մամիկոնյանը Հայաստանի նշանավոր Վահան մարզպանի եղբայրն էր. նրա մասին հիշատակում է* Փարպեցին, *էջ 111 և այլն. Բաբգեն կաթողիկոսի պատասխան ուղերձում՝ ուղղված Պարսկաստանի քրիստոնեաներին, Վարդը հիշված է որպես մարզպան. «ի Վարդայ Մամիկոնէից տեառնէ և ի Հայոց մարզպանէ», նույն տեղում, էջ 48։ Սեբեոսից գիտենք, «որ յետ Վահանայ կալաւ դիշխա-*

Դաշտակարան(ի) Վարազներսէհ իշխան

*Ներսես կաթողիկոսի օրոք, 555 թվականին, կայացած ավելի բազմամարդ ժողովում ներկա է եղել 32 իշխան, որոնցից առաջին անգամ հիշվում են*[1].

---

*նութիւն Վարդ պատրիկ եղբայր նորա», էջ 25, այսինքն՝ Վարդը նշանակվեց մարզպան։ Սահակ Կամսարականը, հավանորեն, այն հայտնի գործիչն է և Վահանի համախոհը, որ հիշատակված է* Փարպեցու *մոտ, էջ 62։ Հավանական է, որ նաև Բաշխեն Վահեւունին ոչ այլ ոք է, քան Բարշղ Վահեւունին, Վահանի ժամանակակիցը,* Փարպեցի, *էջ 134։ Այս տեղեկությունները ցույց են տալիս, որ մեր փաստաթղթի ծագման ժամանակը իրոք հասնում է մինչև Զ դարի սկիզբը։*

[1] Գիրք թղթոց, *էջ 42։ Մյուս իշխաններն են.*

*1 Համազասպ ի Գուգվառամեան ի տանէ Մամիկոնից*
*Գարջոյր Հայոց մաղխազ*
*Սամէղ յԱրտաւազդեան սպարապետ*
*Գրիգոր ի Հմայակեան*
*5 Սահակ ի Վարդանեան*
*Աստուածատուր Վանանդայ տէր*
*Դատոյ ի Գարջուղեան*
*Գրիգոր եւ Վարդան ի Վասակայ*
*Զաւրակ ի Գզաւոնեան*
*10 Վարազ Յոհան ի Յոհանեան*
*Վարդան ի Մուշեղեան*
*Համազասպ*
*Սահակ ի Հմայակեան*
*Գնեալ Գնունի*
*Վարազ Գաբեղեան*
*15 Գրիգոր Աբեղեան*
*Մերշապուհ ի Շինական*
*Համազասպ ի Զինականեան*
*Արշոտ ի Վարազտիրոցեան*
*Մուշեղ ի Հմայեկեան*
*20 Վրիւ յԱրտաշրան*
*Աստուածատուր Արշաւրեան*
*Սամուէղ ի Մամական*
*Վարդ ի Հմայական*
*Ներսէս ի Սամսոնեան*
*25 Վարդան Վահեւունի*
*Վարդ եւ Արտաւազդ ի Մամական*
*Համազասպ ի Մամական*
*Սահակ ի Մանուեղեան*
*29 Վարդան ի Մուշեղեան։*

*Այստեղ թվարկված ստորագրություններից միայն տասնմեկն են պատկանում իշխանական հայտնի տոհմերին, մյուսները կարծես թե իշխանական չեն, բայց քանի որ դրանք մեջ են բերված «իշխանք» անվանացանկի տակ, ապա պետք է ենթադրել, որ ժողովի մասնակիցներից շատերը կոչված են իրենց հոր և ոչ թե տոհմական անունով։ Միայն առաջին ստորագրությունն է, որ մեջ է բերված լրիվ՝ անուն հայրանուն և տոհմանուն։ Դատելով անուններից՝ 18. Արշոտ ի Վարազտիրոցեանը և 27. Համազասպ ի Սահականը Բագրատունեաց տոհմից են (ուշագրավ է Արշոտ ձևը, որը ուշ շրջանի Բագրատունյաց Աշոտ անվան նախատիպն է), 9. Զաւրակ ի Գզաւոնեանը և 21. Աստուածատուր Արշաւրեանը Կամսարականներից են։* Անանիա Շիրակացու *մոտ Զօրակ Կամսարական հիշատակվում է Հայոց պատմության ժամանակ, 571 թ.,* Թվաբանական խնդիրներ, *«Արարատ», 1906, փետրվար և ապրիլ (Գաղաւոն Կամսարականի մասին տե՛ս* Խորենացի. *Գ, խը). այնուհետև 5 Դատոյ ի Գարջուղեան և 21 Վրիւ Արտաշրան ընդունված անուններ են Մաղխազ տոհմում։ Մյուս ստորագրությունները, որոնց մեջ կրկըն-*

| | | |
|---|---|---|
| Հաւենունի | Աստուածատուր | իշխան |
| Վարաժնունի | Հմայեակ | իշխան |
| 50. Սպանդունի | Մանուեղ | իշխան |

*Սեբեոսի հիշատակած նախարարական տոհմերի բավականին ընդարձակ շրջանակից մեր ցանկում չեն նշված*[1].

| | | |
|---|---|---|
| Տայեցի | Սարգիս | իշխան |
| Գողթնեաց | Վռամ | իշխան |
| Արահամեան | Քրիստափոր | իշխան |
| Բասենացի | | իշխան |

*Պետք է նշել նաև.*

---

*վում են Վարդան, Մուշեղ, Մանուել և այլ անունները, այնքան բնորոշ Մամիկոնյանների համար, ըստ երևույթին պատկանում են այս վերջիններին: Մամիկոնյանների ազդեցությունը շատ մեծ էր 555 թ. եկեղեցական ժողովում, հոգևորականության մեջ նրանք ունեին ազդեցիկ ներկայացուցիչ՝ Ներշապուհ եպիսկոպոսը, որ ժողովի նախաձեռնողներից մեկն էր:*

*Պետք է նշել իգաթեմով կազմությունը՝ Գրիգոր ի Հմայական. ի—ն ձայնավորից առաջ փոխարինվում է —յ—ի, ինչպես Սամեղ յԱրտաւազդան՝ Վրիւ յԱրտաշրանւ Ութերորդ ստորագրության մեջ ի Վասակայ պետք է կարդալ, հավանորեն, ի Վասականւ Տասներկուերորդ ստորագրությունը կամ պետք է լինի Համազասպ<ու> Սահակ ի Հմայեկան և կամ էլ բաց է թողնված Համազասպի հայրանունը:*

[1] Սեբեոս, էջ 65 և 97: *Մյուս իշխաններից հիշված են.*

*1 Մամիկոնեան, Վահան, էջ 24, Վարդպատրիկ, էջ 25, Վարդան որդի Վասակայ, էջ 26, 29, Մուշեղ, էջ 37, 52, Համազասպ, էջ 50, Սահակ, էջ 53, Գազիկ որդի Մանուէլի, էջ 56, 58, Մամակ, էջ 48, 56, Մուշեղ որդի Դաւթի, էջ 107, Համազասպ, էջ 139 և հաջորդ:*

*Սիւնեաց, Վահան, էջ 26, Ստեփաննոս, էջ 48, 56, Սահակ հօրեղբայր Ստեփաննոսի, էջ 58, Փիլիպոս, էջ 29, Գրիգոր, էջ 107:*

*Վահեւունի, Սամուէլ, էջ 48 և հաջորդ., Սարգիս, Վարազ-Ներսեհ, Ներսէս, Վռամ, էջ 50 և հաջորդ., Խոսրով, էջ 56, 58, Թէոդորոս, էջ 108, Գրիգոր, էջ 109: Խորխոռունի, Ատատ, էջ 69, Թէոդոս, էջ 74 և հաջորդ., Վահան, էջ 102:*

*5. Ամատունի, Կոտիտ, էջ 56, Շապուհ, էջ 108:*

*Տրպատունի, Թէոդոս, էջ 50 և հաջորդ: Սարգիս, էջ 65 և հաջորդ:*

*Բագրատունի, Սմբատ որդի Մանուէլի, էջ 53 և հաջորդ. Պապ որդի Աշոտայ ասպետի, էջ 56, Սմբատ մարզպան Վրկանայ, էջ 59, 61—63, Վարազտիրոց որդի նորա, էջ 63, 68 և հաջորդ: Սմբատ որդի Վարազ-Սահակայ, էջ 117:*

*Արծրունի, Վարդան, էջ 56, Վարազ-Շապուհ, էջ 65, Վասակ որդի Սահակայ, էջ 78:*

*Դիմաքսեան, Մեհրու, էջ 63, Սարգիս, էջ 65 և հաջորդ. Արտաւազդ Դիմակսեան, էջ 149, արք տանն Դիմաքսենից, էջ 139:*

55. Մեհնունեաց իշխան

*որ հիշատակվում է Զենոբ Գլակի մոտ, այդ տոհմից հիշյալ երկու ժողովներում էլ մասնակցում էր հոգևոր ներկայացուցիչ։ Ժողովին հրավիրվել են նաև Բ ժ ո ւ ն ե ա ց և Զ ա ր ե հ ա վ ա ն ի ց եպիսկոպոսները*[1]*։ Անտարակույս գոյություն ունեին*

56. Բժունեաց իշխան

57. Զարեհաւանի իշխան

*իշխանական տ ո հ մ ե ր ը։*

*Այսպիսով, պատմական հիշատակարանների ստույգ տվյալների համաձայն Հայաստանում կար մինչև հիսուն իշխանական տուն, որոնք այս կամ այն չափով համբավ էին վայելում։*

*Մեր քննության ենթակա հարցի հետ անմիջական կապ ունեն, այսպես կոչված, Գ ա հ ն ա մ ա կ ն ե ր - փաստաթղթերը, որոնք իրենցից ներկայացնում են նախարարական տոհմերի հաշվեգրումը ըստ իրենց զբաղեցրած դիրքի։ Իրենց անպաճույճ, վստահություն չներշնչող արտաքին տեսքի պատճառով այդ փաստաթղթերը հե-*

---

*10. Ապահունի, Արտավազդ, Վասամ, Հմայեակ, էջ 65։*
*Ապահունեաց տէր Մանուէլ, էջ 65։*
*Ռշտունի, Թէոդորոս, էջ 97, 103 և հաջորդ, Ռշտունական, էջ 139։*
*Գնունի, Մժէժ, էջ 101, Վարազ-Գնէլ, էջ 103։*
*Սահառունի Դաւիթ, էջ 103։*
*15. Առաւեղեան Խաչեան, էջ 108, 139։*
*Մոկաց իշխան Վարդիկ Ակնիկ կոչեցեալ, էջ 109։*

*Վանանդայ իշխանք, Առ<ա>նեանք, Վարաժնունիք, էջ 20, Գնթունիք, Սպանդունիք, Դաշտակարան Վարազ-Ներսէհ, էջ 140։ Այստեղ էլ հիշվում են նաև իշխանք եւ զաւրք չորրորդ կոչեցեալ Հայոց, Սպերացիք, Մանաղայքն, Դարանաղայքն, որք յԵկեղեաց գաւառէ, Կարնեցիք, Բասենացիք։ Մեր ցանկի մեջ մտցնում ենք միայն Բասեանի իշխանությունը, որ հնուց ի վեր կոչվում էր գավառի անունով, ինչպես՝ Գողթան իշխանություն, որ տեսնում ենք դեռևս* Փավստոսի *մոտ, Գ, Ը, իշխան Բասենոյ Մանակ, Գ, ժբ, Ատամ իշխան Գողթան։ Մյուս իշխանները չէին մտնում Մարզպանական Հայաստանի սահմանների մեջ և բացի դրանից, հավանական է, որ նրանք պատկանում էին արդեն նշված տոհմերին՝ Արշակունիներին, Բագրատունիներին և մյուսներին։* Սեբեոսի *մոտ, էջ 93, հիշվում է, աւան Վրնջունիք,* Խորենացի, *Ա, Լ, Վրանջունիք՝ մարած նախարարության անունով։*

[1] Զենոբ Գլակ, *էջ 48, «Մեհնունեացն արիք»,* «Գիրք թղթոց», *էջ 70, Թադէոս Մեհնունեաց, Աստուածատուր Բժ(ն)ունեաց, Միքայէլ Զարեհաւանից, էջ 42, Մովսէս Զարիհաւանի Թէմրայ Մեհնունեաց։ Հմմտ.* Խորենացի, *Բ, ը, «Զարեհաւանեանն ի զարմից Թագաւորաց»։*

*տագոտողների անհրաժեշտ ուշադրությանը չեն արժանացել, մինչդեռ պատմագրական տեսակետից դրանք չափազանց մեծ արժեք են ներկայացնում։ Նկատի ունենալով դրանց փոքր ծավալը՝ ավելորդ չենք համարում մեջ բերել դրանց բնագիրը։*

## ԳԱՀՆԱՄԱԿ

<Իմ Սա> հակայ խնդիր արարեալ ի դրան արքունի յԱրտաշէսի թագաւորի զոր ի Տիսպոնն խաւսեցեալ եթէ ես զռամականն զնամա զոր Արտաշրի ի դիւանին տեսի ի քաղոց ամսոյ ժէ: Եւ Վռամայ արքայից արքայի եւ բարերարի եւ գիր արարի ես Սահակ կաթողիկոս թէ որպէս Ձեր բարերարութիւնդ հրաման տացէ հայոց ազատաց եւ տանուտէրանց որպէս յառաջ առ հայոց ազգին, նոյնպէս եւ ի ձեռում դիւանի շահհամա<ր>ին առնել, որ յայսմ հետէ հայոց ազատաց եւ տանուտէրանց գահ ի յայտ լինէր: Նոյնպէս Ներսէհ հրամանաւ արքայից արքայի եւ ես<Սա>հակ հայոց կաթողիկոս կնքեցաք զգահնեմակին եւ եդաք մատանի զարքայից արքայի եւ զմերս. եւ է այսպէս արդար եւ ճշմարիտ:

[Առաջին իշխան Հայոց եւ մաղխազն]

ա. Սիւնեաց տէր
բ. Ասպետն
գ. Արծրունեաց տէր
<դ. Մաղխազունի>
դ. Մամիկոնէից տէր
ե. Շահապն Ծոփաց տէր
զ. Մոկաց տէր
է. Ռշտունեաց տէր
ը. Վահնունեաց տէր
թ. Կասպէից տէր
ժ. Անձաւացեաց տէր
ժա. Ապահունեաց տէր
ժբ. Կամսարականն
ժգ. Այդ Ապահունին
ժդ. Վանանդացին
ժե. Ամատունի տէր
ժզ. Գողթան տէր
իա. Գնթունեաց տէր
իբ. Վարձաւունին
իգ. Գարդմանայ տէր
իե. Սահառունին
իզ. Գաբեղէնից տէր
իէ. Աբեղէնից տէր
իը. Սիւնեաց երկրորդն
իթ. Արծրունեաց երկրորդն
լ. Արծրունեաց երրորդն
լա. Մամիկոնէից երկրորդն
լբ. Ռոփսեանն
լգ. գ-Աշոցեանն
լդ. Դիմաքսեանն
լե. Բուխա Դիմաքսեանն
լզ. Այդ Աբեղեանն
լէ. Այդ Դիմաքսեանն
լը. Պալունին

ժէ. Գնունեաց տէր
ժը. Այդ Անձաւացի
ժթ. Տայոց
ի. Բասենոյ դատաւորն
խգ. Չիւնականն
խդ. Ակէացին
խե. Ջարեհաւանեանն
խզ. Ընծայեցին
խէ. Մանդակունին
խը. Սղկունին
խթ. Տայգրեանն
ծ. Երմանբունին
ծա. Սպանդունին
ծբ. Առաւենեանն
ծգ. Տրունին
ծդ. Տամբերացին
ծե. Հաւնունին
ծզ. Բժնունին
լթ. Առաւեղեանն
խ. Աշահմարեանն
խա. Համբուժեանն
խբ. Վարասպակեանն
ծէ. Քաջբերունին
ծը. Մեհնունին
ծթ. Նախներին
կ. Քաղաքապետն արքունի
կա. Ոստապետն արքունի
կբ. Արտաշեսեանն
կգ. Վանանդացին երկրորդ
կդ. Ցոլն
կե. Վիժանու<նի>
կզ. Աքածու
կէ. Շիրակա Դիմաքսեան
կը. Գազրիկեանն
կթ. Մարացեան տ<էր>
հ. Վաագրասպու<նին>[1]:

*Մյուս փաստաթուղթը, որը թեև հին հեղինակներից մեկը, ինչպես կտեսնեք, նույնպես Գ ա հ ն ա մ ա կ է կոչում, էապես տարբերվում է նախորդ հուշարձանից։ Այն նախարարական տների ցանկն է, որոնցից յուրաքանչյուրի մոտ նշանակված է նրանց հեծելազորի թիվը։ Ըստ այդ ցանկի նախարարական ամբողջ զորքը բաժանված է եղել չորս թևերի կամ, ինչպես ասված է մեր հուշարձանում, դռների, որոնք պետք է երկիրը պաշտպանեին հյուսիսային, հարավային, արևելյան և արևմտյան կողմերից։ Գահնամակից տարբերելու համար մենք այս ցանկը կանվանենք Զ ո ր ա ն ա մ ա կ։*

---

*[1] Գահնամակը հայտնաբերել է Յու. Հախվերդյանը, որը գնահատելով հայտնաբերված փաստաթղթի մեծ արժեքը, այն հանձնել է Մ. Էմինին. վերջինս 1858 թ. հրատարակել է այն Խորենացու «Պատմության» ռուսերեն թարգմանության հավելվածի մեջ։ Ձեռագիր թերթից լուսանկարված ընդօրինակությունը տպված է Ղևոնդ Ալիշանի «Այրարատում», էջ 430։ Գաշոցեանը, որտեղ գ առաջ է եկել լգ թվից, պետք է ուղղել Աշոցեան։ Մամբերացու փոխարեն պիտի լինի Տամբերացի և Աշահմարեանը հավանորեն Աշխադարեանի աղավաղումն է։*

## ԶՈՐԱՆԱՄԱԿ

### Արեւմտեան դուռն

| | | |
|---|---|---|
| 1 | Անգեղ տուն | վն |
| | Բդեշխն Աղձնեաց | տ |
| | Բըզնունական | վ |
| | Մանաւազեան | ռ |
| 5 | Բագրատունի | ռ |
| | Խորխոռունի | ռ |
| | Ծոփացի | ռ |
| | Վահնունի | ռ |
| | Ապահունի | ռ |
| 10 | Գնունի | շ |
| | Բասենացի | ռ |
| | Պալունի | յ |
| | Ընծաքին | տ |
| | Մանդակունի | յ |
| 15 | Սաղկունի | յ |
| | Վարաժնունի | յ |
| | Այծենական | ն |
| | Առուենեան | յ |
| | Վարժնունեան | ն |
| | Սպան<դ>ունի | յ |
| 21 | Ռափսեան | ն |

### Արեւելեան դուռն

| | | |
|---|---|---|
| 1 | Սիւնի | աքն |
| | Ամասկոնի | մ |
| | Աւածացին | մ |
| | Վարձաւունի | մ |
| 5 | Տամրարացի | ն |
| | Մազազացի | ն |
| | Ցողկեպան | ն |
| | Գրզնունի | ծ |
| | Վառնունի | ծ |
| 10 | Բաքան | ծ |
| | Կնրունին | ծ |
| | Գուկանն | ծ |
| | Պատսպարունին | ծ |
| | Գազրիկան | ծ |
| 15 | Վիժանունի | ծ |
| | Ջանդաղան | ծ |
| | Սողացի | ծ |
| | Աքաձեցի | ծ |
| | Ասնշնեան | ծ |
| | Կինան | ծ |
| 21 | Տագրեան | ծ |

### Հիւսիսային դուռն

| | | |
|---|---|---|
| 1 | Բդեշխն Գուգարաց | տշ |
| | Կամսարական | ռ |
| | Կասպեցի | վ |
| | Ուտէացի | ռ |
| 5 | Ծաւդէացի | ռ |
| | Տայեցի | ռ |
| | Մամիկոնեանն | ռ |
| | Վանանդացին | ռ |
| | Գարդմանեցին | ռ |

### Հարաւային դուռն

| | | |
|---|---|---|
| 1 | Կադմէացի | ավմ |
| | Կորդուացի | ռ |
| | Արծրունի | ռ |
| | Ռըշտունի | ռ |
| 5 | Մոկացի | ռ |
| | Գողթնեցի | շ |
| | Անձեւացի | շ |
| | Հարուժեան | ն |
| | Տրպատունի | ն |

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| 10 | Որդունի | շ | 10 | Մեհնունի | ն |
| | Առուեղեանքն | շ | | Ակէացի | յ |
| | Աշոցեան | շ | | Ջարէհաւանեայ | յ |
| | Դիմաքսեան | յ | | Եր<ու>անքունի | յ |
| | Գրնքունի | յ | | Համաստունեան | ն |
| 15 | Բոխայեցի | յ | 15 | Առաշեսեան | յ |
| | Գաբեղեան | յ | | Սագրատունի | ն |
| | Արեղեան | յ | | Արահամեան | ն |
| | Հաւնունի | յ | | Տրունի | յ |
| | Սահառունի | յ | | Բուժունի | մ |
| 20 | Ձեւնականեան | յ | 20 | Քաջբերունի | ն |
| | Աշխաղարեան | ն | | Բողունի | ն |
| 22 | Վարազարտիկյան | ն | 22 | Մուրացան | յ |

...Եւ զոմանս ի յայլ աշխարհս գրեալս, եւ լինի թիւ մարտիկ արանց որ ընդ ազգաւք ճ դ-ից հազարաց թող զսպասաւորս դրանն արքունի՝ որ է ոստանդ որք ի պատերազմ ելանէին ընդ ա<ր>քայի եւ մարդպետական որ է ներքինի պահապան ի վերայ թագուհւոյն եւ գանձուցն եւ ընդ ամենայնն թիւ զօրացն հայոց՝ որ է հարիւր եւ քսան հազարաց[1]:

*Երկու փաստաթղթից ամեն մեկը ծանոթ է տարբեր և չափազանց անկատար ցուցակներից. դրանց մեջ կան շատ թերություններ և աղավաղումներ. մի քանի անուն անճանաչելիորեն աղճատված են։*

«Առաջին իշխան Հայոց եւ մախղազն» *վերնագրային նշումը պետք է վերագրել* Գահնամակի *անճշտությանը։ Ըստ համարակալության առաջին տեղը գրավում է Սյունյաց իշխանությունը, հետո համարակալությունը ընթանում է ճիշտ, մինչև* իգ, *իսկ* իգ*-ից թռչում է* իե*-ի՝ բաց թողնելով* իդ*-ն։ Այդ մեկ թվահամարի պակասը, կարծում ենք, առաջ է եկել նրանից, որ փաստաթղթի բնագրում Մաղխազ իշխանությունը տեղ է գրավել թվարկության մեջ, իսկ հետո այս կամ այն պատճառով այն բարձրացել է ցանկի վերևը՝ շարքից դուրս։ Ճիշտ կլիներ ենթադրել, որ բաց թողնված* իդ *թվի տակ եղել է հենց Մաղխազունի, բայց մի քանի տվյալներ, որոնց մասին*

[1] *Այս փաստաթուղթը առաջին անգամ հրատարակել է Հովհ. եպ. Շախաթունյանը։ Տե՛ս Ստորագրութիւն էջմիածնի, 1842 Բ, էջ 59։*

*խոսք կլինի հետո, մեզ ստիպում են Մ ա ղ խ ա զ ու ն ի տոհմին ցանկի մեջ ավելի բարձր տեղ հատկացնել։ Մեր այս ենթադրությունը, որ սկզբում բոլորովին ապրիորի էր, գործնականում արդարացվեց, երբ մենք Ուխտանես պատմիչի մոտ անսպասելիորեն հանդիպեցինք մինչ այժմ ուսումնասիրողների կողմից չնկատված մի հետաքրքրական վկայության։ Գահնամակը հայտնի է եղել Ուխտանեսին։ Ըստ նրա Վաղարշակն Արշակին ուղղած իր դիմումի մեջ խնդրում է հենց «որոնել զդիւանն արքունի եւ տալ զգահնամակ նախարարացն հայոց»[1]։ Արշակը Մար Աբասի առջև բաց է անում արքունի դիվանը, իսկ այս վերջինս փնտրում-գտնում է Գահնամակը և բերում այն Վաղարշակին։ Ղեկավարվելով Գահնամակով՝ հայոց թագավորը հաստատում է նախարարություններ՝ տալով նրանցից յուրաքանչյուրին «բարձ եւ պատիւ ըստ բարձի՝ իշխանութիւն, համաձայն նրանց արժանիքների»։ Քաղելով Խորենացուց՝ նա պատմում է այն մասին, որ թագավորը հատկապես առատ շնորհներ է ընծայում Բագարատ իշխանին։ Այնուհետև Ուխտանեսը շարունակում է. «եւ զայլս մի ըստ միջէ կարգէ եւ կոչէ անուանս.*

առաջին՝ Սիւնեաց տէր,
երկրորդն՝ ասպետ Բագրատունի,
երրորդն՝ Արծրունի,
չորրորդն՝ Մաղխազունի,
հինգերորդն՝ Մամիկոնեան եւ զայլ եւս կարգէ եւ հաստատէ յիւրաքանչիւր իշխանութեանն»[2]։

*Այստեղից երևում է, որ Ուխտանեսը ծանոթ է եղել Գահնամակին և օգտվել է նրանից։ Նրա խոսքերը մեզ հասած ցանկի մեջ կարևոր ճշտում են մտցնում՝ ցույց տալով Մաղխազունիների իսկական տեղը։ Բացի դրանից, հաստատվում է, որ Գահնամակը գոյություն է ունեցել մինչև Ժ դարը, երբ ապրել է Ուխտանեսը և այն հանգամանքը, որ պատմիչը Գահնամակը հասցնում է մինչև Վաղարշակի ժամանակները, ցույց է տալիս, որ դեռևս Ժ դարում այն համարվում էր բավականին հին փաստաթուղթ։*

*Մյուս փաստաթղթի՝ Զորանամակի հիշատակությունը ԺԳ դարից ավելի վաղ չէ։ Օրբելյանը, պատմելով նախարարական գահերեցության մասին, որ հաստատել էր Տրդատը, ավելացնում*

[1] Ուխտանես, էջ 40։

[2] Նույն տեղում։

է, որ նույն թագավորը զորքերի և երկրի վրա կարգեց չորս հրամանատար. «իսկ զօրաց եւ աշխարհին վերայ չորս միայն կացուցանէ... հրամանատարս... արեւելեան կողմանն՝ զիշխանն Սիւնեաց քանեւմի իշխանօք, հիւսիսային կողմանն՝ զբդեաշխն Գուգարաց քանեւերկու իշխանօք, արեւմտեան կողմանն՝ զԿորդուացին քանեւմի իշխանօք, հարաւային կողմանն՝ զիշխանն Անգեղտանն քանեւերկու իշխանօք, հարաւային կողմանն՝ զիշխանն Անգեղտանն քանեւերկու իշխանօք։ Զայս այսպէս գտաք ի Գահնամակի իշխանացն Հայոց զոր Ղեւոնդ գրեաց, եւ սակաւ մի ցուցանէ Ագաթանգեղոսին և Ներսեսին»[1]։

Պատմիչի արժեքավոր դիտողությունից իմանում ենք, որ մեզ հետաքրքրող փաստաթուղթը վերագրվել է Ղևոնդի գրչին։ Ղևոնդ անվան տակ, ըստ երևույթին, պետք է հասկանալ այն նշանավոր պատմիչին, որ գրել է արաբական շրջանի պատմությունը։ Բացի այն, որ նա միակ հեղինակն է, որ կրում է Ղևոնդ անունը, հօգուտ մեր ենթադրության է խոսում նաև այն, որ Օրբելյանի հակիրճ արտահայտության մեջ Ղևոնդը որոշակիորեն ներկայանում է իբրև հանրածանոթ անձնավորություն, իսկ այդպիսին կարող է լինել միայն պատմիչ Ղևոնդը։ Այս հանգամանքը առաջ է քաշում թույցիկ կերպով շոշափված այն հարցը, որ Ղևոնդի՝ մեզ հասած աշխատությունը թերի է։ Դատելով ձեռագրի լրիվ վերնագրից, Ղևոնդի երկը պիտի սկսվեր Մուհամմեդի հանդես գալու պատմությունով, մինչդեռ ներկա դեպքում այն սկսվում է մարգարեի մահից հետո տեղի ունեցած իրադարձությունների շարադրությամբ[2]։ Նրա աշխատության սկիզբը, որ չունի սովորական ներածություն, ինչպես ընդունված է հայ մատենագիրների մոտ, թողնում է թերի, ոչ լրիվ աշխատանքի տպավորություն։

---

[1] Ստեփաննոս Օրբելյան, Դ։ Վերջին դիտողությունը իրականում վերաբերում է ոչ թե չորս հրամանատարներին, որոնց մասին Ագաթանգեղոսի և Ներսեսի Գահնամակներում ոչ մի հիշատակություն չկա, այլ դրանից առաջ թվարկված իշխաններին, որոնք գրավում էին առաջին գահերը։

[2] Պատմութիւն Ղևոնդեայ մեծի վարդապետի հայոց որ յաղագս երեւելոյ Մահմետի եւ զկնի նորին, թե որպէս եւ կամ որով օրինակաւ տիրեցին տիեզերաց, եւ մանաւանդ ազգիս հայոց։ Շահնազարյանի հրատ., 1857, Փարիզ, էջ 11։ Էջմի ձեռագրում պակասում է սկզբի մասը մինչև 13-րդ գլուխը։ Այս բացը հրատարակության ժամանակ լրացվել է էջմիածնի ձեռագրի հիման վրա, որտեղ կա լրիվ վերնագիրը։

*Բայց եթե նույնիսկ ընդունենք, որ Ղևոնդի պատմության սկիզբը իրոք կորել է, ապա այդ դեպքում էլ հազիվ թե կարելի լինի վճռված համարել այն հարցը, որ Գահնամակը նրան է պատկանում։ Եվ իրոք, ի՞նչ առնչություն կարող էր ունենալ հայ նախարարների ցանկը Ղևոնդի աշխատության այն կորած մասի հետ, որ վերաբերում է մարգարեի կյանքին։ Մյուս կողմից հայ մատենագրության մեջ՝ օրինակ Սեբեոսի մոտ, կա Սկզբնական պատմության և Հերակլի պատմության հատվածների միացման օրինակ։ Նույն ձևով էլ Գահնամակը կարող էր կցվել Ղևոնդի աշխատությանը մի այլ պատմական ներածության կապակցությամբ։ Կարող է պատահել նաև, որ Ղևոնդի այն ձեռագրի մեջ, որից օգտվել է Օրբելյանը, Գահնամակը եղել է իբրև մի պատահական հավելում, և պատմիչը կարծել է, թե այն Ղևոնդի իսկական երկի մասն է կազմում։ Մինչդեռ, իրականում նա այնպիսի առնչություն է ունեցել Ղևոնդի հետ, ինչպիսին, ըստ որոշ գիտնականների, Անանունը՝ Սեբեոսի հետ։ ԺԶ. դարի հայ հեղինակ Սիմեոն Ապարանեցին օգտվել է Ղազար Փարպեցու աշխատության մի օրինակից, որին կցված է եղել Հայաստանի Սկզբնական պատմությունը։ Սիմեոնը ընդունել է այն որպես Փարպեցու աշխատություն. նրա շարադրանքից, սակայն, երևում է, որ այդ հենց այն պատմությունն է, որը հասել է մեզ իբրև Սեբեոսի հավելված[1]։ Այս օրինակը մի նոր ապացույց է, որ նման բան կարող էր պատահել նաև Օրբելյանի հետ Ղևոնդի պատմությանը կցված Գահնամակի կապակցությամբ։ Օրբելյանի հաղորդածը, դժբախտաբար, որևէ դրական բան չի ավելացնում մեզ հետաքրքրող փաստաթղթի բախտը պարզելու համար։*

*Գահնամակի մեջ հիշատակված է 70 նախարարություն, իսկ Զորանամակի մեջ՝ 86։ Հաշվի առնելով, որ Գահնամակի բնագիրը բաղկացած է մեկ թերթից՝ գրված ծայրեծայր, նրա թերի լինելու հարցը մնում է չլուծված։ Երկու վավերագրերի համեմատությունը*

---

[1] Սեմէօն Ապարանեցի, *Վիպասանութիւն Պահլաւունեաց և Մամիկոնեաց, Էջմիածին, 1870։ Անանունի հետազոտողների աչքից վրիպել է այն հանգամանքը, որ մատնանշվում է Աբիշյանի վերջին աշխատության՝ Հայապատումի մեջ, էջ 62։ Կարող է պատահել, որ Ապարանեցու ձեռագիր ժողովածուի մեջ Փարպեցուց հետո զետեղված է եղել Սեբեոսի աշխատությունը այնպես, ինչպես այն հայտնի է այժմ, այսինքն՝ Անանունի հետ միասին։ Սեմեոն Ապարանեցին վերջինը սխալմամբ վերագրել է նրանից առաջ զետեղված Փարպեցու Պատմությանը։*

ցույց է տալիս, որ եթե նույնիսկ թերի է, ապա շատ աննշան։ Գահնամակի մեջ չկան 32 անուն, որոնք կան Զորանամակի մեջ և ընդհակառակն՝ կան մի քանի ավելի համարներ, որոնք չկան Զորանամակի մեջ։ Ելնելով Գահնամակի ներածական խոսքերի իմաստից, որոնցով այդ վավերագիրը կապվում է Սահակ կաթողիկոսի (մահ. 439 թ.) անվան հետ, Գահնամակի մեջ չէին կարող մտնել 32 նախարարություններից հետևյալները. 1. Բզնունական, 2. Մանաւազեան, 3. Որդունի,— պարզապես ժամանակագրական նկատառումներով, որովհետև այդ տոհմերը մարեցին դեռևս Դ դարի սկզբին,— 4. Անգեղ տուն, 5. Աղձնեաց, 6. Գուգարաց, 7. Ուտէացի, 8. Ծաւդէացի, 9. Կադմէացի, 10. Կորդուացի, որոնք գտնվում էին Պարսկական Հայաստանի սահմաններից դուրս, [11 Ամասկոնի[1]], 11. Աւածացին, 12. Ցողկեպան, 13. Գրզճունի, 14. Վառնունի, 15. Ասճշնեան, 16. Կինեան, 17. Այծենական, 18. Համաստունեան, 19. Սագրատունի. այս ինն անունները բոլորովին չեն հանդիպում և, ըստ երևույթին, խիստ աղճատված են։ Այդ նույն 32-ից մնացած անունները հիշատակվում են որոշ տեղեր. 20. Բաքանը, 21. Կճրունին, 22. Գուկանը, 23. Պատսպարունին, 24. Բոգունիքը գավառներ են Վասպուրականում, 25. Մաղաղը գավառ է Այրարատում, 26. Վարաժնունին և 27. Վարժնունին գավառներ են Վասպուրականում և Այրարատում, 28. Ջանդաղանը Փարպեցու մոտ նշված է Ոստանիկների թվում։ 29. Սոդացին, Սոդքից է, որ Սյունիքի մի գավառն է, 30. Աշխադարը Խորենացու մոտ Տրդատի աներոջ անունն է. 31. Տրպատունին և 32. Աբրահամեանը հայտնի են Սեբեոսից։

Զորանամակի համեմատությամբ Գահնամակում եղած ավել համարներից տասը կրկնվող անուններն են, որոնք հանդիսանում են մի քանի հայտնի տոհմերի երկրորդական ճյուղերը, ինչպես, օրինակ՝ Սիւնեաց երկրորդն, Արծրունեաց երկրորդն, Արծրունեաց երրորդն, Մամիկոնեից երկրորդն, Այլ Անձաւացի, Այլ Ապահունի, Այլ Արեղեանն, Այլ Դիմաքսեանն, Շիրակա Դիմաքսեանն, Վանանդացին երկրորդ և դարձյալ վեց անուններ, որոնք բացառությամբ

[1] Զորանամակի մեջ չի նշված Ամատունյաց հայտնի տոհմը։ Մեզ թվում է, որ աղավաղված Ամասկոնի (կամ Համաստունեանի) տակ թաքնված է Ամատունեաց իշխանությունը, թեև նրան վերագրված 200 հեծելազորի ուժը չի համապատասխանում Ամատունեաց իրական հզորությանը։

*մեկի կամ երկուսի, աղավաղված են։ Սրանք են Աշահմարեանն=Աշխադարեանն, Նախճերին, Ցուլն, Վաադրասպունին՝ քաղաքապետ և արքայական որսապետ։*

*Այս անունները էլ հենց այն կասկածելի տարրերն են, որոնք վարկաբեկում են մեր հուշարձանը։ Միայն նոր ցուցակի գտնվելու դեպքում կարելի է հուսալ, որ հնարավոր կլինի այն մաքրել կասկածելի շերտավորումներից։ Ներսեսի Վարքի մեջ գտնվող կեղծ Գահնամակը ավելի շատ թերություններ ունի և պիտանի չէ տվյալ նպատակի համար, բայց և այնպես այն մեր փաստաթղթի հետ համեմատելը օգտակար կարող է լինել։ Մենք այն մեջ ենք բերում,* in extenso, *ընդգծելով այն անունները, որոնք ընդհանուր են Գահնամակի հետ։*

## ԳԱՀՆԱՄԱԿԻ ՏԱՐԲԵՐԱԿԸ

1 *Հայկազնիք*
*Պարթեւեանք*
*Այրարատեանք*
*Բագրատունիք*
*Տրդատունիք*
**Ասպետունիք**
**Մախազունիք**
*Խորխոռունիք*
**Արծրունիք**
10 **Մամիկոնեանք**
**Սիւնեցիք**
**Ամատունիք**
*Անգեղեանք*
*Վրացիք*
**Ծոփք**
**Վարաժնունիք**
**Մարդպետունիք**
**Վահեւունիք**
*Պահլաւունիք*
20 **Կազբք**
*Սիսանեանք*
**Կադմեանք**
**Մանաւազեանք**
*Եզեւեանք*
*Գամրեանք*
**Բզնունիք**
*Սաանեանք*
*Գխոնք*
*Եկեղեանք*
30 *Քաւպետունիք*
*Անձտեայք*
*Սեբաստեանք*
*Աշտիշատեանք*
**Սրուանձտեայք**
**Անձաւացիք**
*Ասպազնունիք*
**Ռշտունիք**
*Վահանունիք*
**Աղձնեանք**
40 **Քողեանք**
*Կազբունիք*
**Կամսարականք**
**Մոկացիք**
**Սղկունիք**
**Գնթունիք**
**Ատրպատունիք**
**Գողթնեայք**
**Գազրիկանք**
*Ձողկերտք*
50 *Մախազեանք*
*Մրուունիք*
*Ռազմունիք*
**Գարեղեանք**
*Սպարունիք*

Վահունիք
*Վրնջունին*
*Սուրեանք*
Դիմակսեանք
*Սրունիք*
60 *Դարբանտեանք*
*Արճագածեանք*
*Կոգովտեանք*
Ապահունիք
Ընծայնոցք
Հարքեանք
*Կորդուայք*
Առաւեղեանք
*Հաշտեանք*
*Վրեանք*
70 Վանանդեանք
*Փառոնձունիք*
Տաշրացիք
Ուրծեայք
Մանդակունիք
Տայք
*Մեկնաեանք*
Դաշտկարինք
Բասենք
*Ծաղկունիք*
80 Մամիկոնք երկրորդ
*Փերէժունիք*
*Տլքեանք*
*Բագուանք*
Աշ(տ)ոցեանք
Աբեղունիք
*Խաղտեանք*
Սահառունիք
Աշխագորեանք
Գնունիք
90 *Համազգունիք*
Ակեայք
Վիժունիք
Առափսունիք
Շահոռապետք
*Ծայթունիք*
(Ձա)նախճիրապետք
Վարազատակեանք
Ընծայենիք
*Մղրունիք*
100 *Արշունիք*
*Քառեանք*
*Մարդաղեանք*
*Լնկանդեանք*
*Խորձեանք*
Զիւնականք
Համուծեանք
*Կորթեանք*
*Կղունդիք*
Ջարեւհանք
110 *Տուրքերաննեանք*
Բժունիք
*Ցփխունիք*
Մեհռունիք
Քաղաքապետք
*Կայուշեանք*
Սպանդունիք
*Արտաշատեանք*

Որսապետք
Արքածոց տեարք
120 *Բափխեանք*
Բագրասպունիք
Պարսպունիք
123 Աբրահամեանք[1]:

[1] *Այնուհետև կարգով գալիս են.*

*Աղեղնադրոշք*
*Գրչունիք*
*Նետողք*
*Նամակունիք*
*Քաղուեանք*
*Ասպարախաղք*
130 *Հիւանականք*
*Բաղասականք*
*Ծիղբք*
*Լեառնականք*
*Սապրասամեանք*
*Հնձմատակք*
*Գորդուայք*
*Վարդեշեանք*
*Դրամանդք*
*Խաչեանք*
140 *Խաղբեանք*
*Դրօշակիրք*

*Անունների երկար ցանկը, որ հեղինակը ներկայացնում է իբրև Արշակ Թագավորի կամ նրա ժամանակակից Ներսես կաթողիկոսի Գահնամակ, իրականում իրենից ներկայացնում է Գահնամակի հետագա և խղճուկ ուրվագիծը։ Հրապարակված գրական այն տեղեկությամբ, թե Արշակի ժամանակ գոյություն է ունեցել մինչև 400 գահ, անանուն ուսյալը աշխատել է գրականության մեջ եղած Գահնամակը մեծացնել և հասցնել համապատասխան ծավալի։ Այս խնդիրը հեղինակի ուժերից վեր է եղել, որովհետև նա բավականաչափ ծանոթ չի եղել հայրենի գրականությանը. այնքան անիրազեկ է, որ առանց խտրության գահերի ցանկի մեջ է մտցրել մի շարք աշխարհագրական անուններ։ Նրա անտեղյակությամբ պետք բացատրել նաև Բագրատունի և Ասպետունի, Խորխոռունի և Մաղխազունի, Կազբք և Կազբունիք և այլ տոհմերի կրկնությունները։ Մեզ համար կարևորն այն է, որ անանուն հեղինակը, անկասկած, իր տրամադրության տակ ունեցել է մեր Գահնամակը։ Դրան իբրև պարզ ապացույց կարող են ծառայել երկու վավերագրերին էլ ընդհանուր և խիստ բնորոշ համարները՝* Մամիկոնեք Երկրորդ, Քաղաքապետք, Որսապետք, Նախճերի և (Ջա)նախճիրապետ, *Գահնամակում* Վաճունիքը *գրված է* Վաճ<եւ>ունիք-*ի փոխարեն. այդ պատահական վրիպակը մուծված է ցանկի մեջ, չնայած նրան, որ այնտեղ առանձին կա նաև* Վաճեւունիք *ուղիղ ձևով։*

*Գահնամակի հետքերը գտնում ենք նաև Երուսաղեմի հայկական վանքերի մասին հայտնի Զրույցի մեջ։ Անհաստատ վանականը իշխան Համազասպ Կամսարականի խնդրանքով, որ պատրաստվում էր այցելել սուրբ վայրերը, կազմում է Երուսաղեմի այն եկեղեցիների նկարագրությունը, ավելի ճիշտ ցանկը, որոնք որպես թե կառուցել են հայ իշխանները։ Դրանց թիվը հասնում է 70-ի,*

---

*Մախալունիք*
*Ոսկեմանիք*
*Արուժեանք*
*Կաղարջք*
*Տաթեւեանք*
*Դատավճիոք*
*Զորաբնակք*
*Ծակատամուղք*
150 *Դերջայինք*
*Շահապունիք*
*Բարմեայք*
*Կամխեայք*
*Գուառապետք եւ այլ որք չէին ի գահս*
*Յուրիպեանք*
*Փոքայոննիք*
*Մուացեանք*
*Ապեկունիք*
160 *Խնունիք*
*Բագնունիք*
*Աղնեւունիք*
*Ցիրանեանք*
*Կգնունիք*
*Տուշունիք*
*Կոունիք*
*Մագնունիք*
168 *Մախազունիք. այս են գահոյք եւ այլեւս յոլով, զոր ծանր համարեցայ արկանել ընդ գրով։*

*մի թիվ, որը անմիջապես մտածել է տալիս Գահնամակի ազդեցության մասին և ստիպում կապ փնտրել նրա և 70 գահերի միջև։ Դժբախտաբար չի կարելի ստուգել, թե Գահնամակը ինչ տեսքով է մտել Անաստասի գործի մեջ, քանի որ պահպանված խմբագրության մեջ ոչ բոլոր եկեղեցիներն են կրում իշխանական տների անվանումները, իսկ նրանցից շատերն էլ նշված են այն սրբերի անուններով, որոնց նվիրված են[1]։ Զրույցը, անկասկած, առասպելական բնույթ ունի, թեև զուրկ չէ մի քանի հնագույն գծերից։ Այն վերաբերում է «Աղվանից աշխարհի պատմության» նախորդող ժամանակներին, քանի որ այստեղ հիշատակվում է Անաստասի աշխատությունը և նրանից մի քանի քաղվածքներ, որոնք վերաբերում են Աղվանից եկեղեցիներին[2]։ Այս և նախորդ վավերագրերը ցույց են տալիս, թե Գահնամակը որքան շատ տարածված և գրականության մեջ հայտնի փաստաթուղթ է եղել։*

*Գահնամակի 70 անուններից մեջ բերված տարբերակում տեղ չեն գտել միայն հետևյալ տասը.*

| | |
|---|---|
| Վարձաունի | Առաւեննեան |
| Գարդմանայ | Տամբերացի |
| Պալունի | Հաւնունի |
| Տայգրեան | Քաջբերունի |
| Երմանքունի | Յուկն |

[1] *Նախարարական տոհմերից հիշատակվում են «Արծրունեաց, Զարեհաւանի, Մամիկոնեանց, Գուգարաց, Բդեշխն (իմա՝ Աղձնեաց), Սիւնեաց, Ռշտունեաց, Խորխոռունեաց, Անձեւացեաց, Արշակունեաց, Կամսարականաց, Ամատունեաց, Կարենացւոց, զոր Սմբատ Բագրատունին շինեալ է, Սահառունեաց, Պալունեաց, Զաղակունեաց?, Վարաժն<ուն>եաց, Վանանդացեաց, Մոկաց, Քաջբերունեաց, Կողայ (Տայոց), Սպանդունեաց, Արշամունեաց, Տաշրաց(ւոց) և մի քանի ուրիշները, որոնք կոչվում են ըստ գավառների.* Ալիշան, *Հայապատում, էջ 227։ Որոշ տոհմանուններ կրկնվում են. Այլ վանք Ամատունեաց, Անձաւացեաց, Սիւնեաց և այլն, որ նույնպես միտում է դեպի Գահնամակը։ Այդ բոլոր եկեղեցիները, Անաստասի վկայությամբ, «ի սբ. Լուսաւորչէն հաստատեցան, բայց յոյժս ի Ներսիսէ», այս ևս գալիս է Գրիգորի և Ներսեսի մասին եղած այն տեղեկություններից, թե Գահնամակի հեղինակները կամ պատճառ հանդիսացողները Գրիգորն ու Ներսեսն են եղել։*

[2] Մ. Կաղանկատվացի, *Բ, ծր, էջ 227, Անուանք վանորէից... զորս ի թղթոյ երանելւոյն Անաստասայ առ Վահան Մամիկոնեան՝ առեալ ուսաք։ Տարօրինակ ձևով Համազասպ Կամսարականի փոխարեն այստեղ հանդես է գալիս Վահան Մամիկոնյանը։ Անաստասի կազմած եկեղեցիների ցանկի վերջում հիշատակվում է Հովհաննես կաթողիկոսը, որ ըստ բնագրի Ներսես Բ-ի հաջորդ Հովհաննեսն է՝*

*Իսկ Զորանամակի համեմատությամբ 86 համարներից այստեղ պակասում է ավելի քան 30-ը. հեղինակը, ըստ երևույթին, այն ձեռքի տակ չի ունեցել։ Բայց նա, անկասկած, օգտվել է Գահնամակից և վերջինիս համեմատությամբ եղած թերությունները կարելի է բացատրել կամ մեր ունեցած ցանկի անճշտությամբ կամ էլ այն ցանկի, որ օգտագործել է նա։ Հարցի այս կողմը մի քիչ պարզվում է Գահնամակների և Խորենացու տվյալների բաղդատությամբ։*

*Ներկա ժամանակներում Խորենացու «Հայոց պատմությունը» հայ հին դպրության հուշարձանների տարիքը և ընդհանրապես նշանակությունը ճշտելու փորձաքար է։ Երկու Գահնամակների և Խորենացու նախարարական տոհմանունների միջև անցկացվող զուգահեռը երևան է հանում քննարկվող վավերագրերի ամբողջ պատմագրական արժեքը։*

*Նախարարական տոհմերի տեսությանը և նրանց ծագմանը պատմահայրը նվիրում է Բ գրքի Է և Ը գլուխները։ Նրան հայտնի նախարարությունների շրջանակը հանգում է հետևյալին.*

1 Բագրատունի
Գնթունի
Խորխոռունի
Վարաժնունի
5 Գաբեղեան
Աբեղեան
Արծրունի
Գնունի
Սպանդունի
10 Հաւենունի
Ձիւնական
Մարդպետ
Մուրացան
Կաղմեան
15 Սիսական
Ուտեաց
Գարդմանաց
Ծաւդէից
Գարգարք
20 Աշոցեան
Տաշրաց
Գուգարաց
Որդունի
Անգեղ տան
25 Ծոփաց
Ապահունեաց
Մանաւազեան
Բզնունեան
Սղկունի
30 Մանդակունի
Վահնունի
Առաւենեան

*վախճանված 573 թ.։ Արդյո՞ք իշխանի անվան շփոթությունը չի բացատրվում նրանով, որ Աղվանից պատմագիրը նրան ընդունել է Վահան Մամիկոնյանին ժամանակակից Հովհան Մանդակունու տեղ։*

Զարեհաւանեան
Աղձնեաց
35 Մոկաց
Կորդուաց
Անձեւացեաց
Ռշտունի
40 Գողթան
Վանանդ
Դիմաքսեան
Տրունի
Ամատունի
45 Առաւեղեան
Ռափսեան
Մամիկոնեան
Կամսարական
49 Աշխադարեան

*Խորենացու ցուցակը համեմատելով Գահնամակի հետ՝ տեսնում ենք, որ բացառությամբ 12 անունների՝ Կադմեան, Ուտի-Օտենա, Ծաւղեք, Գարզարք, Տաշիր, Գուգարք, Անգեղ, Աղձնիք, Որդունի, Մանաւազեան, Բզնունի, Կորդուք, մնացածները համապատասխանում են Գահնամակին, ըստ որում Խորենացու Վարաժնունին համապատասխան է Գահնամակի* **Որսապետ արքունի**-*ին, իսկ Մարդպետը, ինչպես կտեսնենք՝ Արծրունիների երկրորդական երկու շառավիղներից մեկն է։ Խորենացու մոտ, Գահնամակի համեմատությամբ, պակասում է 22 անուն, չհաշված կրկնվողները.*

1 Կասպք
Տայք
Բասեան
Վարաժնունի
5 Սահառունի
Պալունի
Համբուժեան
Վարասպակեան
Ընծայեցի
10 Տայգրեան
Երվանդունի
Տամբեր
Բժնունի
Քաջբերունի
15 Մեհնունի
Նախճերի
Արտաշեսեան
Վիժանունի
Ցուղն
20 Աքածոյ
Գազրիկան
22 Վազրասպունի։

*Գահնամակի մեջ նկատի է առնված միայն Մարզպանական Հայաստանը, որով և հասկանալի է հիշյալ 12 նախարարությունների բացակայությունը, որոնց մի մասը մինչ այդ արդեն դադարել էր գոյություն ունենալուց, իսկ մյուսները գտնվում էին Մարզպանական Հայաստանի սահմաններից դուրս։ Բացառություն են կազմում Կասպք իշխանությունը, որը ավելացված է Գահնամակի մեջ, թեև Հայաստանին չի պատկանել, և մասամբ էլ՝ Ծոփաց սատրապությունը։*

*Ինչ վերաբերում է այն նախարարություններին, որոնք Գահնամակի հետ համեմատած՝ չկան Խորենացու մոտ, ապա այստեղ էլ երևան է գալիս Խորենացու և Գահնամակի միջև եղած կապը։ Ուշադիր քննությունից հայտնի է դառնում Խորենացու ծանոթությունը ոչ միայն Գահնամակին, այլև Զորանամակին։ Նորից ներկայացնում ենք Գահնամակը՝ ըստ Զորանամակի տվյալների, նշելով յուրաքանչյուր տոհմի հեծելազորի քանակը.*

| | | |
|---|---|---|
| 1 | Սիւնեաց իշխան | 19400 |
| | Ասպետն փշխան | 1000 |
| | Արծրունեաց իշխան | 1000 |
| | Մաղխազունի իշխ. | 1000 |
| 5 | Մամիկոնէից իշխ. | 1000 |
| | Ծոփաց իշխան | 1000 |
| | Մոկաց իշխան | 1000 |
| | Ռշտունեաց իշխան | 1000 |
| | Վահունեաց իշխան | 1000 |
| 10 | Կասպէից իշխան | 3000 |
| | Անձաւացեաց իշխան | |
| | Ապահունեաց իշխ. | 1000 |
| | Կամսարական իշխ. | 600 |
| | Այլ Ապահունի իշխան | |
| 15 | Վանանդացի իշխ. | 1000 |
| | Ամատունի իշխան | |
| | Գողթան իշխան | 500 |
| | Գնունեաց իշխ. | 500 |
| | Այլ Անձաւացի իշխ. | 500 |
| 20 | Տայոց <իշխան> | 600 |
| | Բասենոյ դատաւորն | 600 |
| | Գնթունեաց իշխան | 300 |
| | Վարաժնունի իշխան | 200 |
| | Գարդմանայ իշխան | 1000 |
| 25 | Սահառունի իշխան | 300 |
| | Գաբեղէնից իշխան | 300 |
| | Աբեղէնից իշխան | 300 |
| | Այլ Սիւնեաց իշխան | |
| | Այլ Արծրունեաց իշխան | |
| 30 | Այլ Արծրունեաց III իշխ. | |
| | Այլ Մամիկոնէից իշխան | |
| | Ռափսեան իշխան | 100 |
| | Աշոցեան իշխան | 500 |
| | Դիմաքսեան իշխան | 300 |
| 35 | Բուխա Դիմաքսեան իշխ. | 300 |
| | Այլ Աբեղեան իշխան | |
| | Այլ Դիմաքսեան իշխան | |
| | Պալունի իշխան | 300 |
| | Առաւեղեան իշխան | 500 |
| 40 | Աշխադարեան իշխան | 100 |
| | Համբուժեան իշխան | 100 |
| | Վարազպակեան իշխ. | 100 |
| | Ջիւնական իշխան | 300 |
| | Ակէացի իշխան | 300 |
| 45 | Զարեհաւանեանն իշխ. | 300 |
| | Ընծայեցի իշխան | 4000 |
| | Մանդակունի իշխան | 300 |
| | Սղկունի իշխան | 300 |
| | Տայգրեան իշխան | 50 |
| 50 | Երմանթունի իշխան | 300 |
| | Սպանդունի իշխան | 300 |
| | Առաւենեան իշխան | 300 |
| | Տրունի իշխան | 300 |
| | Տամբերացի իշխան | 100 |
| 55 | Հաւնունի իշխան | 300 |
| | Բժնունի իշխան | 200 |
| | Քաջբերունի իշխան | 100 |
| | Մեհնունի իշխան | 100 |

Նախճերի իշխան
60 Քաղաքապետն արքունի
Ոստապետն արքունի 300
Արտաշեսեան իշխան 300
Վանանդացի II իշխան
Յուն իշխան
65 Վիժանու<նի> իշխան 50
Աքածն=Արածոյ իշխան 50
Շիրակա Դիմաքսեան իշխ.
Գազրիկան իշխան 50
Մարացեան իշխան 300
70 Վազրասպունի իշխան 100

*Դժվար չէ նկատել, որ Գահնամակի հիմքում դրված է զինվորական ուժը. նախարարությունները դասավորված են վարընթաց գծով, հեծելազորի ուժի համեմատ, որ ունեցել է իր տրամադրության տակ նրանցից յուրաքանչյուրը։ Այս հանգամանքն էլ սկզբում մեզ մտածել տվեց, թե Մաղխազունին իր տեղում չէ, որը և արդարացավ։ Ընդ որում շեղումները ավելի շատ կարելի է վերագրել մեր օրինակի թերի լինելուն։ Համեմատությունը Խորենացու հետ ցույց է տալիս, որ թերություններից մի քանիսը գալիս են հնագույն ժամանակներից, նախքան նրա «Հայոց պատմությունը» գրվելը։ Գահնամակի համեմատությամբ Խորենացու մոտ չհիշատակված նախարարությունները հենց նրանք են, որոնք կամ խախտում են գահերի գծի հաջորդականությունը և կամ ունեն 300-ից պակաս հեծյալ։ Առաջինների թվին են պատկանում Կասպեից իշխանը՝ 3000 հեծյալ, Տայքի՝ 600, Բասենոյ դատաւորը՝ 600, ինչպես և Ընծայեցին=Անձախը՝ 4000. երկրորդների՝ Վարձաունին՝ 200, Համբուժեանը՝ 100, Վարասպակեանը՝ 100, Տայգրեանը՝ 50, Տամբերացին՝ 100, Բժնունին՝ 200, Քաջբերունին՝ 100, Մեհնունին՝ 100, Վիժանունին՝ 50, Աքածուն՝ 50, Գազրիկանը՝ 50, Վազրասպունի, Սահրատունին՝ 100։ Բացառություն են կազմում Ռոփսեանը և Աշխադարեանը, որոնք հիշատակված են Խորենացու մոտ, թեև նրանց հեծելազորի թիվը 100 է։ Ծվ ընդհակառակն՝ Սահառունին, Պալունին, Արտաշեսեանը և Երվանթունին, որոնք ունեն 300-ական հեծյալ, անուշադրության են մատնված պատմիչի կողմից։ Ինչպես տեսանք, Պալունին և Երվանթունին չէին հիշատակված Գահնամակի այն ցանկում, որը մտել է Ներսեսի կեղծ Գահնամակի մեջ։ Հավանական է, որ այդ անունները չեն եղել նաև Խորենացու ցանկում։ Սահառունու և Արտաշեսեանին պատմիչի կողմից լռության մատնելը կարելի է վերագրել նաև նրա օգտագործած ցուցակի թերի լինելուն[1]։*

*[1] Արտաշեսյանների մասին, ինչպես երևում է, գիտի Խորենացին։ Գահնամակ*

Խորենացու բացառիկ ուշադրությունը Ռոփսեան և Աշխադարեան տոհմերի նկատմամբ բացատրվում է սրանց բարձր ծագումով. ըստ պատմիչի Ռոփսեանները սերում են Ռոփի թագուհուց, որ Տիգրանի կինն էր, իսկ Աշխադարեանները՝ Տրդատի կնոջ՝ Աշխեն թագուհու հոր սերունդներն են։ Տիգրանի օրոք Ռոփսեաններին նախարարական պատվին արժանացնելու առթիվ մեր պատմիչը մի քանի նշումներ է անում, որոնք լույս են սփռում Գահնամակի նկատմամբ նրա ունեցած վերաբերմունքի վրա։

«Իսկ կրտսեր նախարարական ցեղեր,— ասում է Խորենացին,— թե՛ այստեղ՝ մեզ մոտ և թե՛ Կորճեքում հաստատում է այս Տիգրանը այն մարդկանցից, որոնք հեծելազորով աննշան էին, բայց անձամբ երևելի, և նրան փրկելու համար հույների հետ պատերազմեցին, ոմանք Կորճեքից և ոմանք մեր կողմից։ Խոսքս վերաբերում է Վճեններին մերձավոր նախնադարյան ցեղերին՝ Հայկազանց սերունդներին, ինչպես և մի քանի եկվորներին։ Մենք անուն առ անուն չենք պատմի նրանց մասին, մասամբ՝ որովհետև մեզ հայտնի չեն, և մասամբ՝ խույս տալով դժվար աշխատանքից, և երրորդ՝ որ շատերի անհաստատ լինելը կթելադրեր բոլորին էլ հետազոտել։ Այս պատճառով էլ մենք ոչինչ չենք գրի Տիգրան վերջինից հաստատված ցեղերի մասին, թեկուզ շատ անգամ էլ սրա համար աղաչես, այլ կգրենք միայն հետո հաստատվածները, որոնց մասին հավաստի գիտենք, որովհետև մենք, որքան հնարավոր էր, խուսափեցինք ավելորդ ու պաճուճված խոսքերից և ինչ որ անհավաստի գործ կամ կարծիք կար, միայն հետևելով արդարն ու ճշմարիտը գրելու, ուրիշներից (օգտվելով) կամ մեզանից՝ որքան կարողություն ունեինք։ Այստեղ էլ նույնպես վարվելով՝ խոսքիս ընթացքը կանգնեցնում եմ, երբ անպատշաճություն եմ նկատում կամ հավաստիության կողմից կասկածելի մի բան»[1]։

կում Արտաշեսեանը գալիս է արքունի Որսապետից հետո։ Ըստ Խորենացու՝ Որսապետը Վարաժնունի նախարարության կոչումն էր, որ առաջ է եկել Վարժից, որ նշանակվել է պետ «ի վերայ որսոց արքունեաց», Ա, ժբ և Բ, է։ Այս նշանակումը տեղի է ունեցել, ըստ Խորենացու վկայության, Արտաշեսի օրոք. «այս դնի յաւուրս Արտաշիրի» նույն տեղում։ Արդյո՞ք այդ պատմիչի գուշակությունը չէ, որ հիմնված է «Որսապետ արքունի Արտաշէսեան» ընթերցումի վրա։

[1] Մ. Խորենացի, Բ, կդ, «Եւ այլ որ ինչ կրտսերագոյն ազգ, եթէ աստ եւ եթէ զկողմամբք Կորճէից, հաստատէ այս Տիգրան, որք միանգամ անազգիք էին ի վաշտս եւ անձամբ երեւելիք եւ վասն նորա փրկութեան պատերազմեալ ընդ

*Խորենացու դատողությունները արժեքավոր են. կարծես նա իր առջև ունի Գահնամակը և մանրամասն հաշիվ է տալիս նրա նկատմամբ իր ունեցած վերաբերմունքի մասին. մեր պատմիչը դանց է առնում այն նախարարներին,* «որք միանգամ անազգիք էին ի վաշտս», *այսինքն՝ աննշան քանակությամբ՝ 300 այրուձիուց պակաս զորք ունեին, մի քանիսի մասին նա պատկերացում չունի* «վասն յայտնի ոչ լինելոյ մեզ», *մյուսները թեև ծանոթ են իրեն, բայց կարիք ունեն ստուգման, մի բան, որ հոգնեցուցիչ է պատմիչի համար։ Այս ակնարկը թերևս վերաբերում է մի քանի իշխանությունների երկրորդական տներին, ինչպես նաև 300 այրուձի ունեցող նախարարություններին, որոնց նա չի հիշատակում, և, վերջապես, շատ անուններ անստույգ են կամ կասկածելի։ Պատմիչի արտահայտած դատողությունները, թե ինչու նա անուշադրության է մատնել մանր նախարարությունները, միանգամայն համապատասխանում են այն համարներին, որ Գահնամակի համեմատությամբ նրա մոտ պակասում են, և իրավացի են նրանց բոլորի վերաբերյալ ամբողջությամբ վերցրած և յուրաքանչյուրին առանձին-առանձին։ Ճիշտ է նաև այն, որ այդ նախարարությունները մասամբ ծագում են Կորճեքից և մասամբ էլ ուրիշ նահանգներից։*

*Խորենացու ուշադրությունից չի վրիպել նաև այն, որ Ամատունի և Կամսարական ազգերի տոհմերը Գահնամակի մեջ գրավում են բոլորովին էլ ոչ այնքան պատվավոր տեղ։ Կամսարական տոհմին հատկացված է 13-րդ տեղը, իսկ Ամատունիներին՝ 16-րդը. առաջինի ուժը հաշված է 600 հեծյալ, իսկ Ամատունիները Զորանամակի մեջ նույնիսկ չեն հիշատակված։ Եթե ընդունենք, որ Ամատունին կամ Ամատունեանը Ամատունու ազգանունն է, ապա նրանց վերագրված ուժերը՝ 200 կամ 100 մարտիկներով չեն համապատասխանում Ամատունիների նշանակությանն ու անվանը։ Հայ պատմիչի կարծիքով Կամսարականները՝ Պահլավունիների փառա-*

---

*նոյնս, որք ի Կորճէից եւ որք ի մերմէ կողմանէս ղյառաջագունից ասացելոց Մօտաւորաց վճնից (կարդա զճնոից) և զարմից հայկազանց, ոմանք ի յեկաց։ Զոր ոչ անուամբ պատմեցուք. է ինչ՝ որ վասն յայտնի ոչ լինելոյ մեզ, եւ է ինչ որ վասն աշխատութեան ի վաստակիլն խոյս տալով. երրորդ, զի եւ անհաստատութիւն բազմաց կարծիս ի ներքս ածէ ընդ բնան անցանելս։ Էմինի թարգմանութիւնը հարազատ չէ։*

վոր տոհմի շառավիղները, նախարարների շարքում անկասկած արժանի են ավելի պատվավոր գահի։ Կամսարականներին հասցված վիրավորանքը առանձնապես զգալի է պատմիչի համար մանավանդ այն պատճառով, որ նրա չսիրած Մամիկոնյաններին տրված է հինգերորդ տեղը։ Խորենացու տարակուսանքները և նրանց լուծումը իրենց արտացոլումն են գտել նրա հետագա պատմության մեջ։

Սահակ Բագրատունի ասպետի մահից հետո Սահակ կաթողիկոսը աշխատում է, որպեսզի նրա տեղը նշանակվի իր փեսան՝ Համազասպ Մամիկոնյանը։ Զիջելով իր դստեր թախանձանքներին՝ այս նպատակով նա ուղևորվում է պարսից արքունիք և միջնորդում է Շապուհ Երկարակյացի հաջորդ Արտաշիրի առջև և միաժամանակ Թագավորին խնդրում է մեղմացնել Կամսարական և Ամատունի շնորհազուրկ իշխանների վիճակը։ Թագավորը շատ սիրալիր ընդունելություն է ցույց տալիս կաթողիկոսին և կատարում է նրա խնդրանքը՝ «տվյան փեսայի նորա Համազասպայ, դարձեալ եւ վասն մնացելոցն մեղուցեալ նմա ազգացն Կամսարական և Ամատունի, որ սուզեալ շղեալ էին անյայտ տեղիս, վասն որոյ մաղթեաց գթալ, իբրեւ յաստուածային հրամանէ՝ ոչ բառնալ որդւոց զյանցանս հարց. մանաւանդ զի եւ հարքն որք մեղանն, նոքին սակս այնր եւ մեռան. Որոց մնացելոցն պարգեւեալ զկեալն, հրամայեաց զոռմս երկաքանչիւրոցն զկալեալսն յարքունիս դարձուցանել ի նոսա, բայց միայն ի գահ հայրենի ոչ հաստատել, այլ ի խոնարհ քան զբազումս մատուցանել նախարարս, ի կարգ կրտսերագունից պատուաստել. իսկ զազգն Համազասպայ, որ է տոհմ Մամիկոնեան, ի վեր մատուցանել, զի կարգեսցին ունել զհինգերորդ գահ նախարարացն Հայոց, եւ ի դիւանի իւրումն գրել»[1]։

Մեր պատմիչը իր տարակույսները փորձում է փարատել նրանով, որ Կամսարական և Ամատունի իշխաններին դնում է շնորհազուրկ վիճակի մեջ։ Նա նույնիսկ պատմում է, թե ինչ է եղել նրանց հանցանքը։ Երբ պարսիկները գերում են հայոց Խոսրով Թագավորին, ապա նրա հետ Պարսկաստան են տանում նաև Կամսարական քաջ իշխան Գազավոնին, որ մոր կողմից Արշակունի էր։ Գազավոնի եղբայրը Ամատունի իշխանի հետ 700 զինված մարդկանց գլուխ անցած՝ դարան են մտնում պարսից քարավանի ճանապար-

¹ Խորենացի, Գ, ծա։

հին, հարձակվում նրա վրա՝ ազատելու Խոսրովին և մյուս գերիներին։ Այս խիզախ փորձը հաջողություն չի ունենում, որովհետև Թագավորը շղթայակապ էր և չի կարողանում փախչել։ Դրա համար երկու իշխանական տները հատուցեցին դույքի բռնագրավումով[1]։ Ահա այդ պատճառով էլ թե՛ Կամսարականը, և թե՛ Ամատունին ընկել էին Թագավորի աչքից և զրկվել իրենց տոհմական գահից։ Չնայած Սահակ կաթողիկոսի միջնորդությանը, նրանք այսուամենայնիվ չհաստատվեցին իրենց տեղերում, և փոխադրվեցին նախարարական կրտսեր տոհմերի շարքը։ Իսկ Մամիկոնյանները, ըստ Խորենացու բացատրության, ձեռք են բերում ավելի պատվավոր դիրք ոչ այն պատճառով, որ նրանք արժանի էին դրան, այլ միայն Սահակ կաթողիկոսի միջնորդության շնորհիվ։

Պատմաքննությունն արդեն նշել է, որ հայ պատմիչի դիտողությունը Մամիկոնյանի գահի մասին բխում է Գահնամակին ծանոթ լինելու հանգամանքից, որտեղ Մամիկոնյանները դրված են հինգերորդ տեղում[2]։ Մամիկոնյանների գահի և նրա պարզաբանության հարցի մասին պատմիչը խոսում է ինչ-որ ավանդույթների մասին, որոնք իբրև թե գոյություն են ունեցել պարսից արքունիքում։ Այդ խորհրդածությունները անշուշտ գալիս են նույն Գահնամակի ներածական խոսքերից։ Պարսիկների մոտ ընդունված սովորության համաձայն, երբ նոր Թագավորը գահ էր բարձրանում,—պատմում է պատմիչը,— արքայական գանձարանում եղած ամբողջ դրամը անմիջապես ձուլում էին՝ վրան դրոշմելով նոր Թագավորի պատկերը։ Դիվանը գրանցում էին նոր Թագավորի անվամբ, աննշան փոփոխություն էին կատարում՝ պահպանելով նախորդի անունը։ Եթե Թագավորը իշխում էր երկար տարիներ և նոր աշխարհագիր էր կատարում, ապա մի կողմ էին դնում հին վերափոխված աշխարհագիրը, որպեսզի Թագավորի անունը դրվի միայն նորի վրա։ Բայց Արտաշիրը իր կարճատև Թագավորության պատճառով չհասցրեց նոր աշխարհագիր կատարել և հրամայեց իր անունից հին աշխարհագրի մեջ գրել այդ ամենը, այսինքն՝ Կամսա-

---

[1] Հետաքրքիր է նաև զորքի այն քանակը, որ ունեին Կամսարական և Ամատունի իշխանները այդ հարձակման ժամանակ։ Ըստ Զորանամակի Կամսարականները ունեին 600 մարտիկ, իսկ Ամատունեանը (այսինքն՝ Ամատունին)՝ 100, ընդամենը 700։ Զուգադիպությունը նշանակալից է։

[2] Խալաթեանց, Հայ Արշակունիները, էջ 294։

րականի և Ամատունու շնորհազրկման և Մամիկոնյանների գահի բարձրացման մասին։ Պարսից թագավորը միաժամանակ գրում է Հայոց Վռամշապուհ արքային հետևյալ թուղթը՝ հանձնարարելով «զՀամազասպ կացուցես ի վերայ զօրացդ սպարապետ՝ մեր հրամանաւ եւ ազգի դորա տացես զգահն հինգերորդ՝ պատուոյ նախարարացդ, եւ զգեւղս եւ զդաստակերտս զոր առեալ է նախնեացն քոց հարց դորա, կալցին դոքա։ Սակայն և զտունս վնասակարաց ազգայդ, զոր կալաք յորքունիս, թողցես ի բաց՝ աններկիւղաբար ժառանգել նոցին մնացորդաց, բայց գահուց հայրենականաց պատւոյ մի արժանացես արժանի»[1]։

Շուտով մեռնում է Արտաշիրը՝ գահը թողնելով Վռամին։ Խորենացին ստիպում է Սահակին դիմել նրան նույն կամ նույնանման խնդրանքով։ Կանչված լինելով արքունիք հայրապետական աթոռի գործով՝ կաթողիկոսը օգտվում է բարեպատեհ պահից և խնդրում է թագավորին իրեն տալ «զգահ նախարարացն Հայոց, որպէս կարգեալ է յԱրտաշրէ եւ վարեցան մինչև ցայժմ, նորին օրինակաւ հրամայեսցէ եւ առ յապայ, զի մարզպանք պարսիկք մի՛ կարասցեն ծանուցումն սակս այնր առնելով ինչ գերազանցօրէն փոխել ըստ կամաց իւրեանց», միաժամանակ կաթողիկոսը խնդրում է Հրահատին՝ Գազաւոնի որդուն վերադարձնել հայրական կալվածքները և հաստատել նրան մյուս նախարարներին համապատասխան կարգում՝ տալով նրան եթե ոչ իր սեփական տեղը, ապա «ըստ կամացն թագավորի», իսկ Ամատունիներին, զրկելով հանդերձ տոհմական պատվից՝ ծայրահեղ դեպքում նշանակել ավելի ցածր կարգերում[2]։

---

[1] Խորենացի, Գ, ծա։

[2] Նույն տեղում. Գ, կե։ Սահակ կաթողիկոսը խնդրում է վերադարձնել կալվածքները «զմանկանն Գազաւոնի զորդւոյն Հրահատայ»։ Ըստ Մ. Էմինի ռուս. թարգմանության ստացվում է. Հրահատի որդու Գազաւոնին։ Գազավոնը ոչ այլ ոք է, քան վերը հիշված իշխանը, որ գերի էր տարվել Խոսրով թագավորի հետ միասին։ Սահակը խնդրում է նրա որդու՝ Հրահատի համար, որի մասին արդեն խնդրել էր Արտաշիրին։ Մ. Էմինը, սխալ հասկանալով «որպէս համազն նորա Կամսարականն եւ կամ զԱմատունին» և այլն, այնպես է թարգմանում, որ կարծես թե Սահակին սկզբում հաջողվել էր վերացնել Կամսարականների և Ամատունիների շնորհազրկությունը և այժմ էլ խնդրում էր Կամսարականների ազգական, ինչ-որ Գազավոնի համար։ Իրականում կաթողիկոսը Վռամի առջև միայն կրկնում է իր նախկին միջնորդությունը շնորհազրկման ենթարկված տոհմերի մասին։ Հրահատը հենց Գազավոնի որդին է, այդ պատճառով էլ ավելի ճիշտ է թարգմանել «նշանակել նրան, այսինքն՝ Հրահատին, որևէ ցանկացած գահ որպես իր ազգակցին, այսինքն՝

*Այս տողերը Խորենացին պարտական է բացառապես Գահնամակին և նրա նախաբանին, որի բովանդակությունը խառնաշփոթ է, ոճը՝ անհարթ։ Խորենացու պատմածը նախաբանի մշուշապատ իմաստը մեկնաբանելու մի փորձ է։ Մեզ հասած բնագրի թերությունները եթե չեն գալիս բուն օրինակից, ապա, անտարակույս, եղել են հենց այն ձեռագրում, որից օգտվել է մեր պատմիչը։ Նախաբանում բառացի ասված է հետևյալը.*

*«Ես՝ Սահ<ակ> փնտրեցի Արտաշես թագավորի արքունիքում այն, որի մասին խոսեցի Տիզբոնում, որ ես դիվանում տեսա Արտաշիրի* ramakan nāma-*ն (քաղոց ամսի 17-ին)։ Եվ ես՝ Սահակ կաթողիկոսս, դիմեցի Վռամին՝ արքայից արքային և բարերարին, խնդրելով՝ Թող հրամայե Ձերդ Բարերարությունը կատարել ցուցակագրություն հայ ազատների և տանուտերների Ձեր դիվանի համար, ինչպես առաջ այդ եղել է հայերի մոտ, որպեսզի այսուհետև ես հայոց ազատների և տանուտերների գահերը հայտնի լինեն։ Արքայից արքայի հրամանով Ներսեհը և ես՝ Սահակ կաթողիկոսս, հաստատեցինք Գահնամակը և կնքեցինք արքայից արքայի և մեր մատանիներով և այսպես արդար է ու ճշմարիտ»*[1]։

---

*խնդրարկու Սահակին՝ կամ Սուրեն Պահլավին, որին և Սահակը ուղղում է իր խոսքը. իսկ ինչ վերաբերում է Ամատունիներին, ապա զրկելով նրանց տոհմական պատվի տեղից, իջեցնել առաջին կարգերից գոնե ավելի ցած կարգեր և կամ թե հանձնել սրան՝ Ամատունուն (և ոչ թե Կամսարականին) արքունի գործակալությունը»,— ակնարկում է հազարապետի պաշտոնը, որ Սահակի ժամանակ վարում էր Վահան Ամատունին, ինչպես այդ մասին վկայում են Կորյունը և Եղիշեն։*

[1] *Բնագիրը շատ հեռու է կատարյալ լինելուց, անհարթ են մանավանդ սկզբի բառերը։ Մեզ թվում է թե «ի քաղոց ամսոյ ի ժէ»-ն բնագիր մուծված գլոսա՝ ընդմիջարկություն է, որ սկզբնապես մատնանշում է այն հուշարձանը, որտեղ եղել է* ramakan nāma-*ն։ Դատելով մեջբերումից, հուշարձանը իրենից ներկայացրել է մի տեսակ հնագույն* **վարք սրբոց** *և այնտեղ քաղոց ամսի 17-ի տակ ի միջի այլոց տրված է եղել նաև* ramakan nāma-*ն։ Թերևս և տեսի բառը վերաբերում է նրան, փոխ. տես(ի) ի քաղոց ամսոյ ժէ։ Երկու դեպքում էլ* **ես զռամական նամա** *արտահայտությունը, որտեղ բացակայում է ստորոգյալը, պետք է համարել թերի, հավանորեն գրչի հանցանքով, որ ընթերցողին մատնանշելով մի այլ հուշարձան, չի վերջացրել պարբերությունը։ Իսկ եթե ընդունենք, որ* **զԱրտաշիրը** *վերաբերում է նախընթաց* **զնամա**-*ին, ապա կվերանա քերականական անհարթությունը և կստացվի, որ Սահակը տեսել է «Արտաշիրի* ramaka nāman-*ն» դիվանում (թագավորական) և ոչ թե «Արտաշիրի դիվանում»։ «Եւ գիր արարի» պարբերության մեջ պ. Խալաթյանցը եւ-ը ավելորդ է համարում։ Իսկ մեզ թվում է, որ այստեղ կամ բաց է թողնված* **բարերարի** *կողքին թագավորի մի այլ մակդիր, կամ*

*Դժվար չէ համոզվել, որ սերտ կապ գոյություն ունի այս խոսքերի և Գահնամակի մասին կամ նրա առթիվ Խորենացու հաղորդած այն տեղեկությունների միջև, որտեղ հանդես են գալիս Սահակը, Արտաշիրը և Վռամը։ Նախ և առաջ ո՞վ է Արտաշեսը, որի արքունիքում կաթողիկոսը փնտրել է Գահնամակը և Արտաշիրը, որի դիվանում կամ որի ռամական նամակը նա տեսել է։ Հնարավոր է, որ խոսքը վերաբերում է նույն անձին, և որ այդ անձը հայոց Արտաշես թագավորն է, այդ պատճառով էլ Խորենացին շրջահայեցորեն նշում է, որ պարսիկները փոխեցին հայոց Արտաշես թագավորի անունը և անվանեցին Արտաշիր*[1]*։ Բայց հավանական է նաև, որ Արտաշիրը, որի անվան հետ կապվում է* ramakan nāmā-*ն, պարսից միապետն է։ Այս հավանականությունը ևս թույլ է տալիս Խորենացին, ինչպես որ այդ երևում է պարսից արքունիքի ինչ-որ ավանդույթների մասին նրա դատողություններից։ Նա ընդունում է Արտաշիրի անվամբ անցկացրած շահմարին։ Սահակի՝ Վռամին արած դիմումի համար, որի մասին պատմում է Խորենացին, նույնպես աղբյուր է ծառայել դարձյալ մեր վավերագիրը։ Տարբերությունն այն է, որ այստեղ Սահակը խնդրում է ցուցակագրության մասին, իսկ Խորենացու մոտ խոսքը վերաբերում է Արտաշիրի Գահնամակը վավերացնելուն կամ օրինականացնելուն։*

*Այսպիսով, մեզ համար անվիճելի է, որ Խորենացին օգտվել է Գահնամակից։ Չի կարելի հակառակ եզրակացություն անել, թե Գահնամակի հեղինակը կախում ունի Խորենացուց, նախ և առաջ այն պատճառով, որ անհրաժեշտություն չէր կարող լինել Խորենացուց հետո, առավել ևս նրա աշխատության հիման վրա թխել այնպիսի խղճուկ վավերագիր, ինչպիսին Գահնամակն է։ Հայոց*

---

*էլ, որ ավելի հավանական է,* եւզիր-*ը պետք համարել խնդիր բառի աղավաղում։ Շահմարին-ը Պ. Խալաթյանցը ուղղում է շահմարն՝ նկատի ունենալով, որ ձեռագրում պարզորոշ կերպով կարդացվում է -*ի *և նկատելի է ընկած տառի տեղը վերջում, ուստի և շահմարին ընթերցումը պետք է համարել ուղիղ և պետք վերագրել այն հուշարձանի լեզվի առանձնահատկությանը, համեմատ. զգահնեմակին փոխան. զգահնեմակն։ Ներսէհից առաջ գտնվող նոյնպէս բառը վերաբերում է նախորդ պարբերությանը։ Պարսից թագավորը* բարեբար *մակդիրով մեծարվում է նաև* Փարպեցու *մոտ, էջ 82, «շնորհէացէ մեզ բարերարութիւնդ Ձեր» նաև էջ 107, 175, 97։ Հմմտ.* Խորենացի, *Բ, խզ։*

[1] Խորենացի, *Գ, ծը, Թագաւոր կացուցանելով զԱրտաշէս... եւ փոխեալ զանուն Արտաշիր կոչելով։*

պատմության երևան գալուց հետո, որի մեջ հեղինակավոր լուծում ստացան նախարարական կառուցվածքին վերաբերող բոլոր հարցերը, դրանց հետագա մշակման անհրաժեշտությունը ինքնին պետք է վերանար։

Այս եզրակացությունը, որին մենք հանգեցինք, նշանակալիորեն բարձրացնում է Գահնամակի արժեքը որպես պատմական փաստաթուղթ։ Դժբախտաբար Խորենացու ժամանակի հարցի վերաբերյալ ներկա իրավիճակում, երբ ավանդական վստահությունը խախտվելու հետևանքով նա դուրս է մնացել Հայաստանի առաջին լուսավորիչների շարքերից, և քանի դեռ նրա ժամանակը ճշգրտված չէ հետագա 2—3 դարերի միջև, Գահնամակին պատմիչի ծանոթ լինելը չի կանխորոշում ոչ նրա ժամանակը և ոչ էլ վավերականության աստիճանը։ Քննության ենթակա վավերագրերի՝ Գահնամակի ու Զորանամակի ծագման և վավերականության հարցը անհրաժեշտ է դարձնում նախ և առաջ պատմական այն հիմունքների քննարկումն ու բացահայտումը, որոնց վրա ծնունդ էին առնում նման հուշարձանները։ Մեզ մնում է ծանոթանալ հենց հիշված հուշարձանների պատմական raison d'être-ին. այդ տեղեկանքը, անկախ ամեն ինչից, բացահայտում է նախարարական կենցաղի կարևոր գծերը։

Գահնամակի պատմական կամ իրական-կենցաղային հիմքը գահերեցության հաստատությունն է, առանց որի անհնարին է նման հուշարձանների երևան գալը։ Հայերի մոտ գահերեցության գոյությունը կասկածից դուրս է։ Այն ընդունված էր ինչպես հայ Արշակունիների, այնպես էլ պարսից թագավորների արքունիքում։ Այդ մասին վկայում են հայ մատենագիրները։ Փավստոսը բազմիցս հիշատակում է «գահերէց, բարձերէց տաճարին արքունի»[1]։ Հենց նա էլ խոսում է Արշակի սեղանի շուրջը 900 բարձերի մասին, որոնք նախատեսված էին ավագանու համար։ Պարսից Շապուհ թագավորը Արշակի մատուցած ծառայությունների համար նրան մեծ պատվի արժանացրեց ու ի միջի այլոց «ի միում տախտի գահոյն ի ժամ ուրախութեան բազմէին»[2]։ Սակայն շուտով նրանց բարեկամական հարաբերությունները փոխվում են թշնամության։ Արշակը հրավիրվում է արքայից արքայի մոտ, և երբ հասնում է ընթրիքի ժամը, սովորության հակառակ, որ «օրէնք էին՝

[1] Փավստոս, Գ, թ։

[2] Նույն տեղում, Դ, ժզ, նաև Դ, ծզ։

ղի թագաւորն պարսից և թագաւորն Հայոց ի միում տախտի բազմէին ի միում գահւոյ։ Իսկ այն օր նախ զանղի բազմականացն թագաւորացն, որ անդն էին, զամենեցունց կարգեցին. Հուսկ յետոյ զկնի ամենեցունց ի ներքոյ բոլորին զԱրշակայ բազմականն առնէին... Նախ ամենիքեան իբրեւ բազմեցան յիւրաքանչիւր չափու, յետոյ ածէին բազմեցուցանէին զարքայն Արշակ»[1]։

Արշակունիների օրոք հաստատված նախարարությունների աստիճանակարգը շարունակեց գոյություն ունենալ նաև Արշակունիների հարստության անկումից հետո և պահպանվեց Սասանյանների արքունիքում։ Ըստ Ղազար Փարպեցու՝ Վարդան Մամիկոնյանը Հազկերտի առջև արտասանած իր խոսքի մեջ հանդիմանում է, որ երեք երկրներից՝ Հայաստանից, Վրաստանից և Աղվանքից ներկա գտնվող իշխանների շարքում «բազումք են... որք են աւագ քան զիս եւ գահու եւ ատուրբք, եւ շատ են որ ի խոնարհ են»[2]։ Եղիշեին նույնպես որոշ բան հայտնի է գահերեցության մասին. պարսից թագավորը քրիստոնյա իշխաններին մեկ թույլ է տալիս գրավել իրենց տեղերը սեղանի շուրջը, մեկ զրկում էր նրանց այդ իրավունքից[3]։ Սմբատ Բագրատունին՝ Վրկանի մարզպանը, հեփթաղների դեմ տարած իր փայլուն հաղթանակների համար մեծամեծ պատիվների է արժանանում Խոսրով Փարվեզի կողմից և կարգվում է «երրորդ նախարար ի տաճարի թագաւորութեանն Խոսրովայ արքայի»[4]։

Այս հարցի կապակցությամբ հատկապես հետաքրքրական է գահի համար պարսից թագավորի հետ հայ իշխաններից մեկի ընդհարվելու հայտնի պատմությունը։ Պատմում են, որ պարսից Շապուհ թագավորը մի անգամ կամենում է ստուգել, թե ո՞ր ազգերը և լեզուները ունեն բարձ և պատիվ։ Պարսից մեծատոհմիկ նախարարների բոլոր (յոթ)[5] տոհմերի մեծամեծներին հրավիրում է

---

[1] Փավստոս, Դ, ծդ։

[2] Փարպեցի, էջ 49։

[3] Եղիշե, էջ 37, կոչէր զբազումս ի զինուորական քրիստոնէիցն. եւ ի ժամ ղահուն պատրաստութեան զիւրաքանչիւր տեղիս շնորհէր նոցա բազմականին» նաև էջ 158 «եւ զարգելեալ բազմականսն ի նոցանէ ի տեղի հրամայէր մատուցանել»։

[4] Սեբեոս, էջ 68, «եւ էր նա երրորդ նախարար ի տաճարի թագաւորութեանն Խոսրովայ արքայի»։

[5] Կաղանկատվացի, Բ, ա, էջ 81, «գործեալ ճաշ մեծապէս ամենայն մեծամեծաց յիննամենից տոհմից, ազատատոհմն պարսից»։ Օրբելյանի մոտ համապա-

*խնջույքի և մեծարելով յուրաքանչյուրին ըստ իր գահի՝ պատվում է նրանցից յուրաքանչյուրին բաժակով և ուռենու ճյուղով[1]։ Իսկ մորեգան-մոքեղն արքայական սեղանի շուրջը արժանանում է ամենամեծ պատվի։ Խորհրդակցելով իր մեծամեծների հետ՝ թագավորն ասում է. «զՊարսից և զպարթևաց զընական պահլաւիկս[2] և զազատ արանց զնախագրութիւնս քաջ գիտեմ. իսկ զարմենու զազատատոհմն եւ զնոցին նախապատուութիւնսն ոչ կարացաք գիտել՝ ոչ ի հարցն մերոց թագաւորաց եւ ոչ ի մատենագրաց։ Եւ արդ մի յերկուց առաջի կայ ձեզ նախարարացդ Հայոց՝ ցուցանել զնախնական գիր իւրաքանչիւր տանց զաստիճան եւ զպատիւ, եւ զարձեալ մեծագոյն անել ի մինչ չքեղաշուք մեծարանս։ Ապա թէ ոչ կարեք ակն հայտնի Արեացս զնդի ցուցանել զնախանիւտ բարձրս ձեր, զպատիւ և զտուն, զհող և զջուր և զամենայն ստացուածս ձեր Արեաց ազատ արանց շնորհեսցուք»[3]։ Եվ Մեծ Հայքի իշխանները անմիջապես խորհրդակցում են միմյանց հետ ու ներկայացնում թագավորի ցանկացածը՝ Ագաթանգեղոսի պատմությունը։ Նա հրամայում է կարդալ այն և թարգմանել պարսկերեն։ Իմանալով, որ գիրքը սկսվում է իր նախահայր Արտաշիրից, թագավորը ավելի է ուրախանում, գովում է գիրքը և խանդաղատանքով հպում իր աչքերին։ Նա այնտեղ գտնում է 17 բարձի գիր և ըստ այնմ էլ արքայական սեղանի շուրջը սկսում է կարգավորել տեղերը։ 14-րդ բարձը բաժին է ընկնում Սյունյաց տեր Անդոկին, բայց Անդոկը վիրավորվում է և հրաժարվում ճաշելուց։ Թագավորին այդ բանը իմաց են տալիս, բայց նա այն անուշադիր է թողնում։*

*Այնուհետև պատմվում է, որ Անդոկը, գժտվելով Շապուհի*

---

*տասխան տեղում կարդացվում է ամենայն փոխ. յիննամենից Ա ը, էջ 20։ Խոսքը վերաբերում է սասանյան յոթ նշանավոր տոհմերին։ Թերևս, բնագրում եղել է յեւթ, որից և առաջ է եկել ինն ընթերցումը թ տառից։*

1 Կաղանկատվացի, *«բաժակաւ և ուռով առաջի իւր... մեծարեալ» թագավորը պատվում է նրանց խմիչքով և պսակով։ Հետաքրքրական է համեմատել Եղիշեի հետ, էջ 216, «մի՛ մոռանայք զխաղն* եւ զպսակն եւ զուռն եւ *զառատաձեռն պարգեւսն, որ շնորհէր ձեզ յարքունուստ»։*

2 *Նույն տեղում. Այստեղ պահլաւիկ բառը գործ է ածվում հասարակ իմաստով և նշանակում է ազնվազարմ, խոշական իշխան (հմմտ. պարթև, որ նշանակում է հաղթահասակ, բարեկազմ) և ոչ թե պահլավիկ բառի բուն իմաստով, ինչպես որ սխալ են հասկանում թարգմանիչները։ Մենք թարգմանության մեջ պահպանում ենք այդ նույն բառը։*

3 *Նույն տեղում.* «Պատմութիւն Աղուանից աշխարհի», *Բ, ա, էջ 81։*

հետ, թողնում է իր երկիրը և ծառայության անցնում կայսեր մոտ։ Նրա որդին՝ Բաբիկը, հոր մահից հետո կամենում է վերադառնալ իր հայրենի երկիրը։ Նա գնում է պարսից արքունիք և այնտեղ այնպիսի քաջագործություններ է կատարում, որ թագավորին մոռացնել է տալիս իր հոր հասցրած երբեմնի վիրավորանքը ու արժանանում է մեծարանքների։ Ի վարձատրություն Բաբիկի մատուցած ծառայությունների, պարսից թագավորը վերադարձնում է նրան յուր հայրենի աշխարհը և տալիս Բագրատունիներին և Մամիկոնյաններին հավասար պատվի իրավունք։

Այս պատմությունը հետաքրքրական է նախ և առաջ իբրև նախարարական միջավայրի կենցաղային մի պատկեր, և իբրև այդպիսին նա չի կորցնում իր նշանակությունը, եթե անգամ ամբողջովին հնարված լինի։ Համենայն դեպս փաստական տեսակետից ևս այս պատմությունը զուրկ չէ պատմական որոշ տարրերից, թեև դրանք իրար կապակցված են ժամանակավրեպ կերպով։

Պատմության հերոսը՝ Անդոկը, Փավստոսի հիշատակած Սյունյաց հայտնի իշխանն է՝ գեղեցկուհի Փառանձեմի հայրը։ Նա իրոք ապրում էր Շապուհ թագավորի ժամանակ։ Փառավորված իր դստեր ռոմանտիկ բախտով՝ Անդոկ իշխանը նրա պատճառով գրժտեցրեց Արշակ թագավորին ու Շապուհին և Արշակի հետ միասին երկարատև պատերազմներ մղեց պարսիկների դեմ։ Անդոկի վեճը Շապուհի հետ, իբրև հիմնական շարժառիթ, պահպանված է նաև վերը հիշված պատմության մեջ, բայց փոխադրված է ուրիշ միջավայր և ուրիշ դարաշրջան։ Բաբիկը նույնպես պատմական անձնավորություն է. միջադեպի մեջ նա ներկայացվում է որպես Անդոկի որդի, բայց իսկապես նա ոչ թե Անդոկի որդին է, այլ մերձավոր հաջորդներից մեկը։ Ի դեմս Բաբիկի մենք տեսնում ենք Վահան Մամիկոնյանի հայտնի ժամանակակցին ու համախոհին, այն անձին, որի մասին պատմիչը մեծ գովասանքով է խոսում անվանելով նրան «լաւ այր Բաբիկն Սիւնի»[1]։ Նա այն իշխաններից մեկն էր, որոնք համախմբված Գյուտ կաթողիկոսի և Վահան Մամիկոնյանի շուրջը, ամուր կանգնած էին Ավարայրի անձնազոհ հերոսների ավանդների պաշտպանության դիրքերում՝ գործելով

---

[1] Ղազար Փարպեցի, էջ 112։ Ինչպես հայտնի է, Վասակ մարզպանի որդիներից մեկի անունը նույնպես Բաբիկ էր։ Թե ինչ կապ ունի «լաւ այր Բաբիկը» նրա հետ, դժվար է ասել։ Կարող է պատահել, որ նա էլ հենց մարզպանի որդին է։

*նրանց նշած ուղիով։ Վարդանանց պատերազմից հետո ամբողջ երկրում տիրող ընդհանուր վհատության և հուսաբեկության պայմաններում նրանք պահպանում էին արիության ոգին և չէին կորցնում իրենց հույսը բռնակալ պարսիկների դեմ շարունակվող պայքարում լավագույն ելքի նկատմամբ։ Իրենց հայրերի օրինակով նրանք մտածում էին քրիստոնյա կայսրից օգնություն ստանալ և այդ նպատակով դեսպանություններ էին ուղարկում Լևոն կայսրի մոտ (մահ. 473 թ.)։ Շատ հավանական է, որ դեսպանության կազմում եղել է նաև Բաբիկը և այդ առաքելությամբ էլ նա եղել է Բյուզանդիայի մայրաքաղաքում։ Նրա բարձր արժանիքները և ծառայությունները պատճառ դարձան, որ նրա հայրենակիցը՝ Սյունյաց Պետրոս եպիսկոպոսը, նվիրի նրան հատուկ աշխատություն՝ «Ճառ ներբողեան»։ Վերջինս դեռևս մեր ձեռագրատներում չի հայտնաբերված։ Նրա մասին ունեցած տեղեկության համար մենք պարտական ենք Ստեփաննոս Օրբելյանին, որ բազմիցս հիշատակում է Պետրոս Սյունեցու աշխատությունը որպես աղբյուր, որից նա վերցրել է Բաբիկի պատմությունը։ Նրա հիշատակումներից մեկում ասված է, որ Պետրոս եպիսկոպոսի ներբողը՝ նվիրված այն քաջակորով Բաբիկին, որին պարսիկները իրենց լեզվով կոչում էին փառապանծ, այսինքն՝* veh=lav[1]*։ Այստեղ Բաբիկին տրվում է այն նույն մականունը, որով Փարպեցու մոտ մեծարվում է Վահանի ժամանակակից Բաբիկը։ Այս հանգամանքը լավագույն ձևով հաստատում է մեր կռահումը երկու Բաբիկների՝ Զրույցի հերոսի և Վահանի ժամանակակցի նույնությունը։*

*Օրբելյանը Պետրոս Սյունեցու գրչին է վերագրում ոչ միայն Բաբիկի պատմությունը, այլև Շապուհին վերաբերող դրվագը։ Պետրոս Սյունեցին ապրել է Զ դարի առաջին կեսին և ներկա է եղել 555 թվականի եկեղեցական ժողովին։ Ժամանակը այնքան էլ չէր բաժանում նրան Բաբիկից, և նա կարող էր հետաքրքրվել նրա գործունեությամբ համարյա որպես ժամանակակից։ Բայց մյուս կողմից*

[1] Ստեփաննոս Օրբելյան, Թ, «յասացուածոց սրբոյն Պետրոսի», Ժ, «ի նոյն ճառիցն տեսան Պետրոսի», «որպես վեկոյց մեզ ի ներբողման իւրում երանելին Պետրոս եպիսկոպոս Սիւնեաց, բերթողահօրն Մովսիսի աշակերտ», «յերանելւոյն Պետրոսի՝ Սիւնեաց եպիսկոպոսի, ի ներբողմանէն առաք, զոր արարնի վեհն Բաբիկ, զոր եւ պարսիկք յիւրեանց լաւ կոչէին զնա»։ Օրբելյանի երկի հրատարակիչ Էմինը իզուր է բնագրից առանձնացրել արժեքավոր հիշատակումը և այն զետեղել ներքում իբրև ծանոթություն, հակառակ ձեռագրի տվյալների։

անթույլատրելի է, որ ժամանակով Բաբիկին այդքան մոտիկ անձը թույլ տար այդպիսի անախրոնիզմ՝ միացնելով նրա՝ իր ավագ ժամանակակցի ճակատագիրը՝ Անդոկի և Տաճուհի հետ, որոնք ապրում էին Դ դարում։ Բաբիկի և Անդոկի մասին զրույցը այն ձևով, ինչպես հասել է մեզ, չի կարելի ամբողջությամբ վերագրել Պետրոսին, այլ պետք է դիտել որպես Փավստոսից և Պետրոս Սյունեցուց վերցրած նյութերի ժողովրդական վերամշակում։ Նրա մուտքը գրականության մեջ պետք է վերագրել Պետրոս Սյունեցուց հետո ընկած ժամանակներին, այսինքն՝ Զ դարից հետո։

Մեր այս նպատակի համար կարևոր է վերամշակման բնույթը։ Անդոկի միջադեպը ըստ Փավստոսի ծագել է նրանից, որ պարսից թագավորը ցանկանում էր իր դստերը կնության տալ Արշակ թագավորին, որ արդեն ամուսնացած էր Անդոկի դստեր՝ Փառանձեմի հետ։ Դրանից վիրավորված՝ հայրը որոշում է պաշտպանել իր դստեր պատիվը և այդ նպատակով խափանում է Արշակի բարեկամությունը Տաճուհի հետ և հասնում է այն բանին, որ նրանց մեջ պատերազմ է սկսվում։ Իսկ Զրույցի մեջ գործը փոխադրվում է այլ հողի վրա՝ բարձի ու պատվի շուրջը եղած վեճերի հողի վրա, և Տաճուհի հետ տեղի ունեցած ընդհարման հարցը լուսաբանվում է իշխանի վիրավորված ինքնասիրության տեսանկյունից, որ դժգոհ էր նախարարական աստիճանակարգում իրեն հատկացված գահից։

Երկպառակություններն ու դժգոհությունները գահի և պատվի համար պետք է ավելի հաճախակի դառնային Արշակունիների ավանդույթների թուլանալուն զուգընթաց, երբ գնալով ուժեղանում էր պարսկական իշխանությունների ազդեցությունը։ Հայ Արշակունիների անկումից հետո բարձի և պատվի հարցերը կախված էին պարսիկների հայեցողությունից, որոնք փոփոխում էին գահերի տեղը ելնելով արքունիքի շահերից։ Իզուր չէ, որ հայ պատմիչը Սահակ կաթողիկոսի բերանով շեշտում է այն վտանգը, որ սպառնում էր նախարարական դահերեցությանը պարսից մարզպանների կամայականության հետևանքով։ Վտանգը շատ զգալի էր Վահանի խմորումների շրջանում, ինչպես այդ երևում է Փարպեցու՝ իշխանական միջավայրի նկարագրությունից։ Նախարարական հարաբերությունները պետք է սրվեին հատկապես Զ և Է դարերում, երբ Հայաստանի մարզպան էին նշանակվում բացառապես պարսիկները։

Այսպիսով, Գահնամակի նման հուշարձաններ, որչափով դրանք համապատասխանում էին կյանքի պահանջներին, հայ գրականության մեջ կարող էին երևան գալ մինչև Սասանյան միապետության անկումը, որովհետև այդ ամբողջ ժամանակաշրջանում գահերեցության հաստատությունը չկորցրեց իր նշանակությունը։ Այդ ժամանակաշրջանից հետո նման երկերի համար աղբյուր կարող էին ծառայել միայն հարգասիրությունն ու հետաքրքրությունը հին ժամանակների նկատմամբ։

Ինչ վերաբերում է մյուս հուշարձանին՝ Զորանամակին, ապա նրա նման աշխատությունները պետք է համարվեն կենցաղային տեսակետից ավելի կենսական, քան Գահնամակը։ Եթե այս վերջինի նշանակությունը թագավորության և արքունիքի անկումով պիտի նվազեր, ապա նույնը չի կարելի ասել Զորանամակի մասին։ Հայաստանում թագավորական իշխանության վերացումից հետո, պատմիչի արտահայտությամբ, «թագավորությունն անցավ նախարարներին» և դրա հետ միասին նրանց անցան հայկական թագի պարտականությունները արքայից արքայի նկատմամբ։ Իրանից կախված լինելու գլխավոր արտահայտություններից մեկն էլ այն էր, որ Հայաստանը պարտավոր էր զինվորական օգնություն ցույց տալ նրան՝ տրամադրելով նախարարական հեծելազոր[1]։ Նոր պայմանները ոչինչ չփոխեցին իրերի դրության մեջ. ինչպես և նախկինում, նախ և առաջ պահանջվում էր այն հեծյալ ուժերի ճշգրիտ հաշվառումը, որ նախարարություններից յուրաքանչյուրը և բոլորը միասին պարտավոր էին պահել և կռվի հանել արքայից արքայի պահանջով։ Հեծելազորի հարցը կենտրոնական հարց էր այն աշխարհագիրների ժամանակ, որ մերթ ընդ մերթ կատարում էին պարսից իշխանությունները։ Պարսից գործակալ Դենշապուհը, որ 451 թվականի ժողովրդական շարժման նախօրյակին ուղարկվեց Հայաստան, թագավորից հրահանգ ուներ ամբողջ Հայաստանում անցկացնել աշխարհագիր «ի թողութիւն հարկաց եւ ի թեթեւութիւն ծանրութեան այրուձիոյ»։ Թեև պատմիչը անվստահությամբ է վերաբերվում պարսից պաշտոնյայի առաքելությանը,

[1] Եղիշե, էջ 11, «ի Նախարարսն Հայոց անկանէր թագաւորութիւնն... այրուձին Հայոց բովանդակ ի ձեռն նախարարացն առաջնորդէր ի պատերազմի»։ Թե ինչ ծիսակատարությամբ էր դիմավորվում Հայոց այրուձին և ընդունվում պարսից արքունիքում, տե՛ս Եղիշե, էջ 78։

բայց ապստամբությունից անմիջապես հետո Ատրորմիզդ մարզպանը, նկատի ունենալով երկրի համատարած ավերածությունները՝ իրոք «թողուլ հրամայեր զհարկս աշխարհին եւ զայրուձին եւս զարքունի թեթեւացոյց առ ժամանակ մի»[1]։

Հեծելազորին վերաբերող պահանջը Սասանյան բազմաթիվ այլ գրվածքների հետ միասին որպես ժառանգություն անցավ արաբներին։ Ղևոնդ պատմիչը հաղորդում է, որ արաբ զորավար Մահմեդը 705 թվականին իր մոտ Նախիջևան է կանչում հայ նախարարներին իրենց հեծելազորով՝ իբր թե մատյաններում նրանց ցուցակագրելու և ռոճիկ բաժանելու համար[2]։

Էականն անշուշտ այն չէ, թե որքան հիմնավոր է պատմիչի անվստահությունը և որքան անկեղծ է վարվել արաբ զորապետը, այստեղ կարևոր է աշխարհագիր անելու և հայ իշխաններին ռոճիկ բաժանելու մասին արաբների մոտ ընդունված սովորության վկայությունը։

Նախարարներին նպաստ բաժանելը նույնպես Սասանյաններից մնացած ժառանգություն էր։ Սասանյան դարաշրջանի պատմիչները բազմիցս հիշատակում են ռոճիկի մասին, որ հայ իշխանները ստանում էին պարսից թագավորներից։

Զարեհավանի տակ կրած անհաջողությունից հետո Հազկերտը ներում շնորհեց բանտարկված իշխաններին և «նորից սկսեց վճարել մինչ այդ դադարեցրած ռոճիկը»։ Նույն կերպ վարվեց նա նաև 451 թվականի դեպքերի հրահրիչների և գերի տարված նախարարների նկատմամբ[3]։ Դեռևս Հայաստանի բաժանման նախօրեին Մուշեղ Մամիկոնյանը, կանխազգալով վերահաս փոթորիկը, հոգ էր տանում, որպեսզի կայսրության կողմից հայոց ազնվականությանը մշտական նպաստ սահմանվի, որպեսզի կարելի լինի դիմադրել պարսիկների ոտնձգություններին[4]։ Պատմիչի ասելով՝

[1] Եղիշե, էջ 41, «Աշխարհագիր առնել ամենայն երկրին Հայոց ի թողութիւն հարկաց եւ ի թեթեւութիւն ծանրութեան այրուձիոյ» էջ 247, «Թողուլ հրամայէր զհարկս աշխարհին եւ զայրուձին եւս զարքունի թեթեւացոյց առ ժամանակ մի»։

[2] Ղևոնդ, էջ 33, «անցուցանել ի համարս ռոճկի եւ առնուլ հռոգ»։

[3] Եղիշե, էջ 158, «զհատեալ ռոճիկսն կարգէր անդրէն իւրաքանչիւր» էջ 376, «կարգեաց ռոճիկ եւ զպատրաստութիւն սպառազինութեան հրամայեաց յարքունուստ», նաև էջ 382։

[4] Փավստոս, Ե, լդ, «զամենայն ազատն Հայոց կայսերական թոշակօք զինուորել»։

կայսրը մեծ հաճույքով ընդունում է Մուշեղի առաջարկը և խոստանում է կատարել այն։ Եթե միայն դրանք հետագա կարգ ու կանոնի արձագանքները չեն, ապա պետք է եզրակացնել, որ պատրաստվելով Հայաստանը իրար մեջ բաժանել, երկու պետություններն էլ դիմում են հայ ազնվականության ու զորքերին ռոճիկ բաժանելու միջոցին՝ նպատակ ունենալով այդ ճանապարհով մի կողմից շահել նրանց համակրությունը և մյուս կողմից՝ պատրաստի զորք ունենալ։

Այդ ավանդական կարգը գործում էր դեռևս Է դարում։ Կոստանդ Բ կայսրը 653 թվականին արաբների դեմ ձեռնարկած արշավանքի ժամանակ հայ իշխաններին կանչում է Կարին՝ միասին խորհրդածելու թշնամու դեմ ձեռնարկվելիք միասնական գործողությունների շուրջը, ընդ որում նրանց խոստանում է «տամ ձեզ ազնուութիւն հացի եւ խորհիմք ի միասին, եթէ զինչ արժան իցէ առնել»[1]։ Այդպիսի օգնությամբ հայերին գայթակղում էին նաև պարսիկները։ Պարսիկների դեմ մի քանի իշխանների ապստամբության առթիվ Խոսրով Թագավորը իր մոտ՝ մայրաքաղաք է կանչում իրեն հավատարիմ մնացած իշխաններին, նրանց ամեն տեսակ պատիվ է ցույց տալիս և արքունի գանձարանից ռոճիկ նշանակում[2]։

Հիշամ խալիֆայի իշխանության առաջին տարում, 724 թվականին, արաբները Հայաստանում ընդհանուր աշխարհագիր են անցկացնում, ինչպես ասում է պատմիչը, «վասն ծանրացուցանելոյ զանուր լծոյ ծառայութեան հարկատրութեանն»[3]։ Դրանից քիչ անց՝ Աշոտ իշխանը ներկայանում է ամիրապետին և միջնորդում թեթևացնելու այն ծանր վիճակը, որի մեջ գտնվում էր երկիրը։ Ի միջի այլոց, նա գանգատվում է, որ «յերից ամաց եւ անդր արգելեալ էր զնախարարացն հայոց եւ նոցին հեծելոցն զխածիթայսն»[4]։ Պետք է ենթադրել, որ արքունիքից յուրաքանչյուր տարի տրվող նպաստի դադարեցումը քիչ առաջ կատարված աշխարհագրի հետևանքներից մեկն էր։ Նկատի առնելով Աշոտի խնդիրը՝ Հիշամը հրամայում է տալ նրան երեք տարվա չվճարված գումարը, յուրաքանչյուր տար-

---

1 Սեբեոս, էջ 128։

2 Նույն տեղում, էջ 56, «կարգել նոցա ռոճիկս յարքունուստ»։

3 Ղևոնդ, էջ 100, «աշխարհագիր առնել ընդ աշխարհս հայոց վասն ծանրացուցանելոյ զանուր լծոյ ծառայութեան հարկատրութեանն»։

4 Նույն տեղում, էջ 113։

*վա համար հաշվելով 100.000*[1]*։ Հիշամի մահից հետո (743) և նրա մերձավոր հաջորդի՝ Աբդալլահ ամիրապետի (750—775) օրոք մի նոր հրաման արձակվեց, որի հետևանքով «յայնմհետէ հատաւ սակ արծաթոյն, որ գայր ամի ամի յարքունուստ զօրացն հայոց։ Եւ զհամար հեծելոցն պահանջէին յիշխանացն. եւ հարկ լինէր ի տանց իւրեանց հանդերձել զգունդս զօրացն»*[2]*։*

*Քանի դեռ նախարարական հեծելազորի վերաբերյալ գործում էր հիշյալ օրենքը, անհրաժեշտ էին ստույգ տեղեկություններ իշխանների և նրանց զորքերի քանակի մասին։ Այդ անհրաժեշտության հողի վրա պետք է ի հայտ գային պաշտոնական կամ այլ բնույթի վավերագրեր՝ համանման մեր քննության առարկա հուշարձանին՝ Զ ո ր ա ն ա մ ա կ ի ն։*

*Զինվորական նպաստը Աբդալլահի կողմից վերացվելուց հետո այլևս չվերականգնվեց։ Հետագա պատմիչների՝ Հովհաննես կաթողիկոսի և Թովմա Արծրունու մոտ այլևս հիշատակություն չկա արաբների կողմից նախարարներին տրվող դրամական օժանդակության մասին։ Այս ավանդական կարգի վերացումով վերացավ նաև պարբերական աշխարհագիրների միջոցով նախարարության և նրանց հեծելազորի քանակը պահելու անհրաժեշտությունը։ Այս տեսակետից 724 թվականի աշխարհագիրը, կարելի է ասել, եղավ վերջինը։ Սա կապված էր այն սարսափելի աղետի հետ, որ տեղի ունեցավ Հայաստանում դրանից քիչ առաջ։ Արաբները անբարյացակամորեն էին նայում իրենց նվաճած երկրների տիրակալ իշխանների վրա և սկզբից ևեթ հալածում էին նրանց։ Այսպես, օրինակ՝ 654 թվականին հազիվ Գիլան մտած՝ նրանք ոչնչացրին տեղական ազնվականությանը և նրանց հեծելազորը*[3]*։ Նույն նպատակն էին հետապնդում նրանք նաև Հայաստանում։ Դեռևս Աբդալ-Մելիքի (685—705) օրոք Հայաստանի արաբ կառավարիչը, ըստ պատմիչի վկայության, «խորհուրդ վատ ի մէջ առեալ բառնալ զազատախումբ տոհմն յաշխարհէս Հայոց հանդերձ նոցին հեծելովք»*[4]*, բայց հայերի կողմից խիստ դիմադրության հանդիպեց։*

---

[1] Ղևոնդ, *էջ 113, «տայր հրաման կշռել ի ձեռս նորա ամի ամի* Եռ *գերից ամացն»։*

[2] *Նույն տեղում, էջ 128։*

[3] Սեբեոս, *էջ 147։*

[4] Ղևոնդ, *էջ 23։*

Աբդալ-Մելիքի հաջորդը՝ ամիրապետ Վալիդը (705—715), ըստ նույն պատմիչի, «խորհեցաւ բառնալ յաշխարհէս հայոց զտոհմն նախարարաց նոցին հեծելովք»[1]։ Արաբական իշխանությունների դավադիր ծրագրով հայ նախարարները իրենց հեծյալ գնդերով հավաքվում են Նախիջևան քաղաքում՝ արաբ կառավարչի նստավայրում, իբրև թե ցուցակագրության համար, բայց խաբեությամբ բանտարկվում են՝ մի մասը Նախիջևանի եկեղեցում, իսկ մյուսը՝ հարևան Խրամ ավանում։ Դրանից հետո հրաման է տրվում կոտորել նրանց բոլորին։ Այդ մասին հիշատակում է նաև բյուզանդական պատմագիր Թեոփանեսը, ըստ որում այդ դժբախտության պատճառը նա համարում է հայ նախարարների ապստամբությունը արաբների դեմ[2]։ Այդ դաժան պատժին զոհ գնացին բազմաթիվ նախարարներ։ Պատմիչը ողբալով այդ կորուստը՝ ավելացնում է. «ոչ բաւիմ մի ըստ միոջէ պատմել, զնոսա զամենեսեանն բարձեալ ի կենաց՝ անժառանգ առնէին զաշխարհս ի նախարարաց։ Յայնմ ժամանակի թափուր եղեալ աշխարհս հայոց ի տոհմէ նախարարաց՝ մատնէին որպէս զոչխարս ի մէջ գայլոց»[3]։

Այս դեպքը տեղի ունեցավ Վալիդի իշխանության առաջին տարում, 705 թվականին։ Քիչ անց՝ 723 թվականին հետևեց ընդհանուր աշխարհագիրը։

705 թվականի նենգ չարագործությունը մեծ հարված հասցրեց հայ ազնվականությանը և նախարարության պատմության մեջ ամենատխուր դրվագներից մեկը հանդիսացավ։

Այս բոլորից հետևում է, որ ինչպես Սասանյանների կործանումով Է դարի կեսին ոչնչանում է Գահնամակի հիմքը ծառայող բարձի ու պատվի հաստատությունը, ճիշտ նույնպես էլ, երբ Ը դարի կեսին Աբդալ-Մելիքի ժամանակ վերացվում է նախարարական հեծելազորի վերաբերյալ Սասանյան օրենքը, վերանում է Զորանամակի անհրաժեշտությունը։

Հաստատության գործողության սահմանները ճշգրտելուց հետո

---

[1] Ղևոնդ, էջ 31։

[2] Theoph. p. 570, τοῦς δὲ μεγιστάνας 'Αρμενίας σωρεύσας ἐν τόπῳ ἑνὶ ζωοκαύστους ἐποίησεν. Այս մասին գիտե նաև Միքայել Ասորին, Chabot, II p. 474. նաև Ղևոնդ, էջ 33։

[3] Նույն տեղում, էջ 35։

կարող ենք հարց առաջ քաշել, թե քննարկվող վավերագրերը ի՞նչ առնչություն ունեն այդ հաստատության հետ. արդյոք նրանք հանդիսանու՞մ են իսկական պաշտոնական վավերագրեր, թե՞ առաջացել են մի ինչ-որ այլ հողի վրա։ Այդ հարցի պատասխանը բխում է հիշյալ վավերագրերի ներքին տվյալների վերլուծությունից։

Զորանամակը պարունակում է արհեստականության շատ նշաններ։ Նրա բնորոշ գիծը նախարարական ամբողջ հեծելազորը չորս խմբի բաժանելն է՝ յուրաքանչյուրում 21 կամ 22 տուն։ Խմբավորման մեջ չի նկատվում որևէ հետևողականություն կամ որևէ սկզբունք, թեկուզ տերիտորիալ. Բագրատունին և Բասենի իշխանը, օրինակ, միասին հայտնվել են Անգեղյան խմբի մեջ, Կասպքի իշխանը վերագրված է Գուգարաց խմբին, Գողթան իշխանը՝ Կադմեայց և այլն։ Բացի այդ, ցանկի մեջ մտցված են այնպիսի նախարարական տոհմեր, ինչպես Որդունի, Մանավազյան, որոնք այդ վավերագրի երևան գալուց շատ առաջ արդեն անհետացած էին. այս հանգամանքը մատնում է նրա գրքային ծագումը։

Բանակը չորս զորամասերի բաժանելը չի համապատասխանում պատմական իրականությանը և չի արդարացվում տվյալ հարցի մասին մեր ունեցած տեղեկություններով։ Այսպես, օրինակ՝ բովանդակությամբ ամենահին հուշարձանի՝ Փավստոսի պատմության մեջ զորքի որևէ բաժանման մասին ակնարկ անգամ չկա[1]։ Թագավորական շրջանում զորքերը գործում էին սպարապետի ընդհանուր հրամանատարության տակ։ Մամիկոնյանների ռազմատենչ տոհմի մեջ ժառանգական էր այդ կոչումը։ Խոսրով Թագավորի ժամանակ սպարապետ էր Վաչեն։ Տիրանի օրոք Վաչեի որդին՝ Արտավազդը, Արշակի ժամանակ նույն պաշտոնում մեծ հռչակ ձեռք բերեց հայտնի Վասակը, իսկ Պապի օրոք՝ ոչ պակաս քաջարի Մուշեղը։ Պապի հաջորդ Վարազդատը՝ կայսեր դրածոն, կամենալով խորտակել Մամիկոնյան հզոր իշխանների ուժը, սպանում է Մուշեղին և սպարապետությունը հանձնում Բատ Սահառունուն, բայց Մամիկոնյան տոհմից Մանվելը կարողանում է պաշտպանել իր տոհմային իրավունքը, նորից գրավում է սպարապետությունը, որը հետո անցնում է նրա որդի Արտաշիրին[2]։ Մարզպանական

[1] Ի միջի այլոց պետք է նշել Փավստոսի հետևյալ խոսքերը. «Եւ հնազանդէր զմեծամեծսն զիւրաքանչիւր զօրս բաժանեալ յամենայն կողմանց սահմանացն հայոց սահմանապահս կացուցանէր» Դ, բ։

[2] Փավստոս, Գ, է, ժա և ժը, Դ, բ, Ե, ա, լէ և խը։

շրջանում նույն կոչումը շարունակում էին կրել Մամիկոնյանները հանձինս հայտնի իշխաններ Վարդանի, Վարդի և այլոց։

Հին հուշարձանների մեջ խոսվում է չորս բդեշխների մասին, բայց դրանք չպետք է շփոթել քննարկվող հարցի հետ։ Բդեշխների մասին այն պատկերացումը, թե դրանք իբր եղել են Հայոց թագավորի վասալներ և պարտավոր էին ծայրամասերում պահակային ծառայություն տանել, չի համապատասխանում պատմական վկայությունների ճշգրիտ մեկնաբանությանը։ Ըստ Փավստոսի, բդեշխները պատկանում էին Հայոց թագավորի *ծառաների*՝ վասալների թվին և մյուս իշխաններից տարբերվում էին նրանով, որ նրանք «արքունիքում բարձով ու գահով բոլորից ավագ էին»։ Բայց չորս անձնավորություն չէին կարող միատեսակ պատվավոր տեղ գրավել գահերի սանդուղքում, իսկ եթե մեկը բարձր էր մյուսից, ապա հիշյալ արտահայտությունը այնքան էլ ընդունելի չէ նրանց բոլորի վերաբերյալ։ Բացի դրանից, Փավստոսի ասելով, առաջին գահը պատկանում էր Անգեղտան ներկայացուցիչներին։ Պետք է ենթադրել, որ բդեշխները չէին մտնում գահերեցության այն շրջանակի մեջ, որ սահմանված էր մյուս նախարարների համար. նրանք գտնվում էին, այսպես ասած, hors ligne, առանձնահատուկ, գրեթե թագավորին հավասար վիճակում։ Այդ իմաստով նրանցից յուրաքանչյուրը կարող էր համարվել գահերեց։ Բդեշխները յուրօրինակ փոքրիկ արքաներ էին, որոնք իրենց թագավորությունն ունեին և սկզբում անկախ էին, բայց Տիգրան Մեծի ժամանակներից սկսած ենթարկվել էին Հայոց թագավորների գերիշխանությանը։ Բդեշխների վերաբերյալ այն կարծիքը, թե նրանք սահմանապահներ են, կազմվել է բավականին ուշ, և կարծում ենք գալիս է պարսից պետության կառուցվածքից, որ Սասանյանների օրոք բաժանված էր չորս երկրամասի։ Խոսրովի օրոք, ինչպես տեսանք, չորս երկրամասի քաղաքացիական կառավարիչները փոխարինվեցին զինվորականներով՝ սպահբեդներով, և դրան համապատասխան էլ բանակը բաժանվեց նրանց միջև։ Այս հանգամանքն էլ անդրադարձավ նաև հայերի՝ իրենց անցյալի մասին ունեցած պատկերացման վրա։ Այն զրույցը, թե հայ զորքը չորս թևերի էր բաժանված, ոչ այլ ինչ է, եթե ոչ պարսկական կարգուկանոնի արձագանքը։ Ընդօրինակելով պարսիկներին և նրանց ազդեցության տակ հայերը պատկերացնում էին, որ իրենց թագավորների ժամանակ էլ երկրի զինվորական ուժերը պետության սահմանների պաշտ-

պանության նպատակով աշխարհի չորս կողմերին համապատասխան բաժանված են եղել չորս թևերի։ Այդ գաղափարի գրական արտահայտությունն են Զորանամակի նման հուշարձանները։ Այդ նկատառումներով Զորանամակը մեզ հասած խմբագրությամբ Խոսրով Անուշիրվանի (531—579) ժամանակվա գործ է և չէր կարող է դարից ավելի շուտ ստեղծված լինել։ Ապրելով համեմատաբար այնպիսի մի ուշ ժամանակաշրջանում, երբ նախարարության պատմական չափանիշները քայքայվում էին, Գահնամակի հեղինակը իր մտադրությունն իրագործելու համար պետք է դիմեր գրքային աղբյուրների։ Գրքային ծագումով է պայմանավորված նաև նախարարական հեծյալ ուժերի խմբավորման արհեստականությունը. չորս խմբերի գլուխ էին կանգնած Գուգարաց և Անգեղտան բդեշխները և Սյունյաց ու Կադմյաց իշխանները։ Հետաքրքրական է, որ ասպարեզից անհետացած մյուս երկու բդեշխների փոխարեն Սյունյաց ազդեցիկ տան կողքին առաջ է քաշվում Կադմյաց Անանունի տունը։ Այս չորս անունների շուրջը, առանց պահպանելու որևէ princium divisionis, համախմբվել են նախարարական մյուս տոհմերը։ Հայ պատմիչներից զորքը չորս թևերի բաժանելու մասին խոսում է Խորենացին, ընդ որում ըստ յուր սովորության դրա նախաձեռնությունը վերագրում է Արտաշես թագավորին։ Հենց նա է, որ, ըստ հայ պատմիչի վկայության, բանակը բաժանեց չորս զորախմբի՝ արևելյան, արևմտյան, հյուսիսային և հարավային և նրանց հրամանատարությունը հանձնեց իր երեք որդիներին ու զորավար Սմբատին[1]։

Բանակի բաժանման մասին ծանոթ լինելու հետքեր նկատվում են նաև Զենոբի մոտ. նրան հայտնի է, որ Տրդատ թագավորը ետ մղելով հյուսիսի թագավորի արշավանքը՝ թողնում է այնտեղ «կողմնապահ դիշխանն Աղձնեաց չորեք հազար արամբ», իսկ դրանից առաջ պատրաստվելով ճակատամարտի և իր զորքերը դասավորելով, Տրդատը՝ «եւ փողոցս թողեալ պատերազմին դրունս երկու (ուրիշ օրինակի մեջ՝ ութ) եւ դռնապահս տեղեացն զԲագրատունեացն իշխանն կացուցանէր։ Իսկ զաջ թեւն զօրուն տայր ի ձեռն իշխանին Սիւնեաց եւ զահեակ թեւն՝ ի ձեռն իշխանին Անգեղտան։

[1] Խորենացի, Բ, ծգ, «բաժանէ Արտաշէս եւ զիշխանութիւն զօրուն ընդ չորս. զարեւելեանն թողու ի վերայ Արտաւազդայ եւ զարեւմտեանն տայ Տիրանայ, զհարաւայինն ի Սմբատ Կեռստայ եւ զհիւսիսայինն ի Զարեհ»։

Իսկ զգահերէց իշխանսն կացոյց թիկնապահս իւր»[1]։ Աղձնյաց իշխանը 4000 մարդով, Սյունյաց և Անգեղտան իշխանները որպես զորքի ձախ և աջ թևերի հրամանատարներ, սրանք փաստեր են, որ ցույց են տալիս Զենոբ Գլակի հարազատությունը մեր Զորանամակի հետ։

Խորենացին հաղորդում է, որ Վաղարշակ թագավորը հաստատում է զինվորության առաջին, երկրորդ, երրորդ կարգ և այլն[2]։ Խոսքը վերաբերում է զինվորական գահերեցությանը. անկասկած պատմիչը ակնարկում է մեր սույն հուշարձանին նման մի ուրիշը, և շատ հավանական է, որ տվյալ դեպքում նկատի ունի հենց Զորանամակը։

Ճիշտ է, Խորենացու, ինչպես նաև Զենոբի ժամանակը վիճելի է և դեռ չի ճշգրտված, բայց և այնպես նրանց ծանոթությունը վավերագրին բարձրացնում է վերջինիս արժեքը, և մեզ օգնում ճշտելու նրա երևան գալու ժամանակը։

Վերոհիշյալ վավերագրի տարիքը որոշելիս պետք է օգտագործել նաև նախարարական ուժերի քանակի մասին այնտեղ եղած տվյալները։ Գահնամակի թվային վկայությունները, որպես հուշարձանի, ամենահետաքրքրական և ինքնատիպ կողմն են։ Հիմք չկա ենթադրելու, թե այդ թվերը մտացածին են։ Թվերի հարցում Գահնամակը հենվում է պատմական քիչ թե շատ արժանահավատ նյութերի վրա։

Սյունյաց խումբը բաղկացած է 21 տոհմից՝ 21 հազ. այրուձի,

Գուգարաց խումբը՝ 22 տոհմից՝ 18 հազ. այրուձի,

Անգեղտան խումբը՝ 21 տոհմից՝ 24 հազ. այրուձի,

Կադմյաց խումբը՝ 22 տոհմից՝ 21 հազ. այրուձի. ընդամենը՝ 84 հազար այրուձի։

Իսկ եթե չհաշվենք իշխանական այն տոհմերը, որոնք դուրս էին Մարզպանական Հայաստանի սահմաններից և սահմանափակվենք միայն Սահակ կաթողիկոսի՝ Գահնամակի մեջ հիշատակված նախարարությունների շրջանակով, կստանանք՝

Սյունյաց խմբում՝ 7 տոհմ և 19 հազ. այրուձի,

Գուգարաց խմբում՝ 16 տոհմ՝ 7.800 (առանց Կասպքի 3.000) այրուձի,

---

[1] Զենոբ Գլակ, էջ 46, 49։

[2] Խորենացի, Բ, ը, «Եւ կարգս զինուորութեանց եւ նոցունց առաջինս եւ երկրորդս եւ երրորդս եւ որ ի կարգինս»։

Անգեղտան խմբում՝ 13 տոհմ՝ 8.200 (առանց Անձախի 4000),
Կաղմյաց խմբում՝ 15 տոհմ՝ 6.000, ընդամենը՝ 51 տոհմ և 41.000 այրուձի՝ չհաշված 7000 կասկածելիները։

Թեև մենք հնարավորություն չունենք ճշտելու Գահնամակի վերոհիշյալ թվային տվյալները, բայց որքան կարելի է դատել մատենագրության մեջ ցրված աղքատիկ նյութերից, դրանք հեռու չեն ճշմարտությունից։

Ըստ Ագաթանգեղոսի վկայության, Տրդատ թագավորի օրոք հայոց զորքերի թիվը 70 հազարից ավելի էր[1]։ Այդքան էր զորքերի թիվը նաև Տրդատի որդու և հաջորդի՝ Խոսրովի օրոք. նրա զորավար Վաչեն Աղձնիքի ապստամբ բդեշխի դեմ ձեռնարկած արշավանքի ժամանակ ուներ 40 հազար զորք։ Զորավարի դավաճանության հետևանքով զորքերը ջարդվեցին պարսիկների կողմից, և Խոսրով թագավորը այս վերջինների դեմ ելավ 30 հազար զորքով[2]։ Հարցը, իհարկե, այն չէ, թե իրոք բոլոր 40 հազարը կոտորվեցի՞ն, թե դա պատմիչի չափազանցությունն է, այլ այն, որ նա թագավորի ուժը հաշվում է 40 հազար և 30 հազար, ընդամենը 70 հազար, այսինքն՝ ճիշտ այնքան, որքան ուներ Տրդատը։

Հայկական զորքերի հրամանատարները իրենց տրամադրության տակ ունեցել են 10 հազարից մինչև 120 հազար մարդ. պարսիկների դեմ մղած երկարատև պատերազմների ընթացքում Վասակ Մամիկոնյանը թշնամու դեմ է դուրս եկել և խորտակել նրա անթիվ անհամար զորքերը՝ իր տրամադրության տակ ունենալով երբեմն՝ 12 բյուր կամ 120 հազար, երբեմն՝ 60, երբեմն՝ 40, երբեմն՝ 70, երբեմն՝ 30 հազար, իսկ երբեմն էլ՝ 11 և 10 հազար[3]։ Մյուս զորավարի՝ Մուշեղ Մամիկոնյանի տրամադրության տակ եղել է ընդամենը 40 հազար ընտիր մարդ։ Նպատ լեռան տակ՝ Եփրատ գետի մոտ տեղի ունեցած ճակատամարտում Մուշեղին հաջողվում է հավաքել մինչև 90 հազար։ Նույնքան զորք կար նրա

[1] Ագաթանգեղոս, էջ 502—503, Տրդատը գնում է Հռոմ «բազում մեծամեծօք եւ եւթանասուն հազարաւ ընտիր զօրուն հանդերձ։ Սա կրկնվում է Սեբեոսի մոտ՝ դավանաբանական հայտնի նամակում, էջ 128։ Այս հանգամանքը կարևոր է Ագաթանգեղոսի և Սեբեոսի հետազոտության համար։

[2] Փավստոս, Գ, ը։

[3] Նույն տեղում, Դ, իէ, իդ, կ, լբ—լդ, խբ, բբ։ Հանդիպում են նաև թվեր, որոնք ակնհայտորեն առասպելական են, ինչպես 400.000 այրուձի, Դ, ի, կամ 600 հազար, Դ, 21։

*հրամանատարության տակ նաև Գանձակի ճակատամարտում։ Ատրպատականի կողմից Հայաստանի սահմանները պաշտպանելու նպատակով զորքի մի մասը մարդպետ Գղակին հանձնելուց հետո Մուշեղին մնում է 30 հազար[1]։ Վարազդատի օրոք ծագած խռովության ժամանակ Մուշեղի հաջորդը՝ Մանվելը հազիվ կարողանում է հավաքել 20 հազար, իսկ մի այլ դեպքում՝ 10 հազար զորք[2]։ Այս վկայությունները համեմատելով Գահնամակի հետ, որի մեջ նախարարական ուժերը թագավորական և մարդպետական հեծելազորի հետ միասին հաշվվում էին մինչև 120 հազար, կարելի է վստահորեն ասել, որ քրիստոնյա Արշակունիների օրոք Հայաստանը ի վիճակի էր մարտի դաշտ հանել մինչև 120 հազար այրուձի։*

*Մարզպանական իշխանության շրջանում նախարարական հեծելազորի քանակը իջավ մինչև 30 հազարի։ Վահան Մամիկոնյանը, հակառակ Փարպեցու, որը ուժեղ տպավորություն գործելու նպատակով գիտակցաբար պակասեցնում է նշանավոր ռազմիկի զորքերի թիվը, ուներ մինչև 30 հազար հիանալի զինված մարտիկներ, ինչպես այս մասին վկայում է ճշմարտախոս Սեբեոսը[3]։ Խոսրով Փարվեզի օրոք, ինչպես պատմում է Հովհան Մամիկոնյանը, Հայաստանի մարզպանն իր տրամադրության տակ ուներ դարձյալ 30 հազար զորք[4]։ Հետաքրքրական է, որ ըստ Զենոբի, Տրդատն ուներ 30 հազար զորք Ագաթանգեղոսի 70 հազարի փոխարեն, որ նշան է, թե Զենոբի աշխատությունը Ագաթանգեղոսի համեմատությամբ ավելի ուշ ժամանակվա գործ է։ Բյուզանդական պատմագիր Պրոկոպիոսը հաղորդում է, որ պարսից Կավատ թագավորը 531 թ. կայսեր դեմ ուղարկում է մի բանակ, որ «կազմված է պերսարմեններից և ալաններին հարևան սունիտներից», այսինքն՝ Սյունիքի և Հայաստանի մյուս նահանգների ուժերից[5]։ Այդ զորքը, որ կազմված է բացառապես հեծյալներից, ինչպես վկայում է նույն հեղինակը, հաշվվում էր 30 հազար մարդ, որոնցից երեք հազարը հոներ էին։ Օտար աղբյուրի այս արժեքավոր վկա-*

1 Փավստոս, *Ե, բ, դ, ե, զ։*

2 *Նույն տեղում, Ե, լԲ, խ։*

3 Սեբեոս, *էջ 24 «Լ հազար ընտիր վառելոց»։*

4 Հովհ. Մամիկոնյան, *էջ 13,*

5 Proc. *Pers.* I 15, p. 74, τὸ δὲ στράτευμα τοῦτο Περσαρμενίων τε καὶ Σουνιτῶν ἦσαν οἳ δὴ 'Αλ<υ>ανοῖς εισι ὅμοροι. *զորքի քանակի մասին*, p. 75։

յությունն ամենալավ ապացույցն է, որ Մարզպանական Հայաստանի հեծյալ ուժը հասնում էր մինչև 30 հազար մարդու։ Արաբական տիրապետության շրջանում այդ թիվը կիսով չափ կրճատվեց։ Երբ արաբները տիրեցին Հայաստանին, նրանց միջև կնքվեց դաշինք, որի կետերից մեկը պարտավորեցնում էր հայերին պահել 15 հազար հեծյալ[1]։ Երկրի համար բազմաքանակ հեծելազորը մեծ ծանրություն էր, և նրա կրճատումը արաբների կողմից համարվում էր զիջում։ Այդ պարտավորությունը, ըստ երևույթին, ուժի մեջ մնաց նաև արաբական իշխանության հետագա ժամանակներում։ Ղևոնդը պատմում է, որ Ը դարի կեսին գահին տիրելու համար Մրվանի վարած պատերազմների ամենաբուռն շրջանում, երբ հայոց իշխան Աշոտ Բագրատունին Հայաստանին վերաբերող գործով ուղևորվում է Ասորիք՝ Մրվանի մոտ, պատերազմի դաշտ, թշնամիները պարտություն են կրում, որովհետև նրանց լուր է հասնում, թե հայոց պատրիկը օգնության է եկել Մրվանին և իր հետ ունի 15 հազար ընտիր այրուձի[2]։ Աշոտի հեծյալների քանակը, անկասկած, կախում ուներ պայմանագրային հիշյալ պայմաններից։

Եվ, այսպես, Արշակունիների կործանումից հետո Հայաստանի զինվորական ուժերը աստիճանաբար նվազում են։ Այդ հիման վրա մենք իրավունք ունենք եզրակացնելու, քանի որ Զորանամակի մեջ երկրի ուժերը հաշվվում են 120 հազար հեծյալ, ապա դա արտացոլում է այն վիճակը, որ գոյություն ուներ հայոց պատմության թագավորական շրջանում։

Մենք չունենք բավականաչափ տվյալներ նաև ստուգելու Զորանամակում առանձին իշխանների միջև հեծելազորի բաշխման հաբաբերական ճշտությունը։ Պատմիչների մոտ հանդիպում են վկայություններ զանազան մանր զորաբաժինների վերաբերյալ՝ մեկ կամ մի քանի իշխանների հրամանատարության ներքո, բայց այդ տեղեկությունները անբավարար են և որոշակի գաղափար չեն տալիս տվյալ հարցի մասին[3]։

[1] Սեբեոս, էջ 138, «հեծեալ կալջիք յաշխարհին ժե հազար»։

[2] Ղևոնդ, էջ 120, «Եհաս պատրիկն հայոց ի թիկունս օգնականութեան և ունի ընդ իւր ընտիրս հեծելոց ժեռ արանց վառելոց»։ Վահրամ Զուրինի խռովությունների ժամանակ հայերը պաշտպանում էին Խոսրովին և ուղարկում են նրան օգնական ուժեր զարձյալ 15.000 այրուձի, բայց Սեբեոսից երևում է, որ դա հայոց ամբողջ զորքը չէր, այլ միայն մի մասը, «որք ի ժամուն առ ձեռն գտեալ», էջ 36։

[3] Սեբեոս, էջ 42, «Մամիկոնեան. արս 2000» էջ 48, Վահեւունի, Խորխոռունի,

Փավստոսի վկայությամբ, իշխան Դատաբենի միջադեպից հետո խոսրով Թագավորը «դնէր օրէնս, զի մեծամեծ աւագանին, նախարարքն աշխարհակալքն աշխարհատեարքն՝ որ էին բիւրաւորքն և հազարաւորքն կայցեն առ արքային»[1]։ Մի ուրիշ պատմիչի ասելով՝ Մորիկ կայսրը, պաշտպան կանգնելով պարսից խոսրով Թագավորին, նրան օգնության է ուղարկում 15 հազար հեծյալ՝ հայերից բաղկացած մի զորամաս, որ կազմված էր հարյուրական և հազարական մարդուց բաղկացած նախարարական գնդերից, որոնցից յուրաքանչյուրը մի առանձին ջոկատ էր իր սեփական դրոշի տակ[2]։

Առաջին պատմիչի՝ Փավստոսի խոսքերից երևում է, որ կային նախարարներ, որոնք իրենց տրամադրության տակ ունեին մինչև 10 հազար այրուձի, ուրիշները՝ հազարական. և եթե Սեբեոսի «հարիւրաւոր, հազարաւոր» արտահայտությունն էլ հասկանանք Փավստոսի իմաստով (և ոչ թե այն իմաստով, որ զորքը բաժանված էր հարյուրյակների և հազարյակների), ապա ըստ էության կարելի է ապացուցված համարել, որ նախարարական զորամասի բաշխումը հազար, հարյուր և հիսուն հոգիանոց ջոկատների, ինչպես այդ գտնում ենք Զորանամակի մեջ, ռոմանտիկ պատմիչի երևակայության պտուղ չէ, այլ պատմական հիմք ունի։

Այս բոլորից հետո կարելի է անցնել մեզ հետաքրքրող վավերագրերի ծագման հարցին։ Նրանց մեջ եղած իսկապես կենցաղային և պատմականորեն ճշմարիտ գծերի գոյությունը դեռևս չի ապացուցում այն պաշտոնական ծագումը, որին նրանք հավակնում են։ Ենթադրենք, թե երկու վավերագրերն էլ իրոք վերարտադրում են ծանոթ պատմական կացություն, բայց դրանք իրրև ստեղծագործություններ արդյոք պաշտոնական ակտե՞ր են, թե՞ գրական ձեռնարկումներ։ Նախընթաց վերլուծությունները արդեն որոշ չափով նախապատրաստել են այդ հարցի պատասխանը։ Ուշադրությամբ

---

Մամիկոնեան և մյուսներ՝ «Հեծեալք 2000», էջ 55։ Սահակ Մամիկոնեան՝ 1000, Սմբատ Բագրատունի՝ նույնքան, էջ 65, Արծրունի և մյուսները՝ 2000, էջ 101, Մուշեղ Մամիկոնեան՝ 3000 և այլն։ Ըստ Փավստոսի Աորպատականի մարզպանը ուներ 3000 զորք, հմմտ. Զորանամակի «Կասպքի՝ 3000-ի» հետ։

[1] Փավստոս, Գ, ը։

[2] Սեբեոս, էջ 36, «Անցեալք ի հանդիսի իբրև հազարք հնգետասանք, իւրաքանչիւր գունդք նախարարաց ըստ հազարաւորաց ըստ գնդից ըստ դրաւշուց իւրեանց»։ Սկիզբը՝ էջ 34 (թերթերի տեղաշարժության պատճառով)։

նայելով Գահնամակում եղած նախարարական տոհմերի աստիճանակարգին՝ մենք տեսնում ենք, որ մերձավոր նմանություն կա նրա և իշխանների այն ցանկերի միջև, որ գտնում ենք Փարպեցու և Եղիշեի մոտ։ Եվ իրոք, Գահնամակից դուրս հանելով Սոփաց սատրապին ու Կասպքի իշխանին և մնացածը բաղդատելով 450 թվականի ժողովի մասնակիցների ցանկի հետ, գտնում ենք.

| ԸՍՏ ԳԱՀՆԱՄԱԿԻ | ԸՍՏ ՓԱՐՊԵՑՈՒ |
|---|---|
| 1 Սիւնեաց տէր | 1 Սիւնեաց տէր |
| 2 Ասպետն | 2 Բագրատունի |
| 3 Արծրունեաց տէր | 3 Արծրունի |
| 4 Մաղխազունի | 4 Մաղխազ |
| 5 Մամիկոնէից տէր | 5 Մամիկոնեան |
| 6 Մոկաց տէր | 6 Վանեւունի |
| 7 Ռշտունեաց տէր | 7 Մոկաց |
| 8 Վան<եւ>ունեաց տէր | 8 Ռշտունի |
| 9 Անձաւացի | 9 Անձաւացի |
| 10 Ապահունեաց տէր | 10 Ապահունի |
| 11 Կամսարականն | 11 Վանանդի իշխան |
| 12 Վանանդացին | 12 Արշարունի = Կամսարական |
| 13 Ամատունեաց տէր | 13 Ամատունի |
| 14 Գողթան տէր | 14 |
| 15 Գնունեաց տէր | 15 Գնունի։ |

Փարպեցու ցանկի մեջ այնուհետև հետևում են եւ մի քանի անուններ, բայց նրանք չեն համընկնում Գահնամակի հետ ցանկի ոչ լրիվ լինելու պատճառով, քանի որ շատ իշխաններ ժողովից բացակայում էին։ Դրանով է բացատրվում նաև, թե ինչու ցանկում չկան Բագրատունի և Ռշտունի իշխանները։ Տիրոց Բագրատունին համակիր չէր գործին և չներկայացավ ժողովին, իսկ որ ներկա լինելու դեպքում նա կգրավեր երկրորդ տեղը, երևում է նրանից, որ ուխտագրումների ցանկում նա հիշվում է առաջինը[1]։ Ժողովից բացակայում էր նաև Ռշտունեաց իշխանը։

Երկու սյունակներն էլ համապատասխանում են միմյանց

[1] Փարպեցի, էջ 142։

mutatis mutandis, *այսինքն՝ Գահնամակը արտացոլում է Ե դարի գահերեցության վիճակը։ Բայց դրանից դեռևս չի հետևում, որ ինքը՝ հուշարձանը, վերաբերում է այդ նույն ժամանակին։ Կարելի էր կարծել, որ Գահնամակը կազմված է հիշյալ երկի հիման վրա։ Դրան խանգարում է, սակայն, այն հանգամանքը, որ Գահնամակը չի կարելի բխեցնել Փարպեցուց* in toto. *Նրա մեջ կան բաներ, որոնք մեզ հայտնի չեն ոչ միայն Փարպեցուց, այլ նաև ուրիշ գրավոր հուշարձաններից*[1]*։ Ավելի հավանական է ենթադրել, որ Գահնամակի հեղինակը, հետաքրքրվելով հայրենի անցյալով, այն ժամանակ իրեն մատչելի գրավոր նյութերի, ի միջի այլոց նաև Փարպեցու աշխատության հիման վրա կազմել է մոտավոր Գահնամակ։ Նկատի ունենալով, որ Գահնամակը ստեղծվել է մինչև Խորենացին, այսպիսի լուսաբանությամբ էլ նա մեզ համար ունի գրեթե պաշտոնական վավերագրի նշանակություն։*

*Գահնամակի ծագման ժամանակը ճշտելու համար Անդրեի մասին վերոհիշյալ Զրույցի մեջ զգացվում է ինչ-որ հենարան։ Այստեղ Ագաթանգեղոսի Գահնամակի տակ հասկացվում է այն իշխանների ցանկը, որոնք սրբ. Գրիգորին ուղեկցում էին Կեսարիա եպիսկոպոս ձեռնադրելու։ Զրույցի հեղինակը չի իմացել մեր Գահնամակի գոյության մասին, հակառակ դեպքում նա չէր վլանա հենվելու նրա վրա մի այնպիսի բարեպատեհ առիթով, ինչպիսին էր Շապուհի հարցումը հայ իշխանների գահերի մասին։ Արդյոք այստեղից չպե՞տք է եզրակացնել, թե Գահնամակի ծագումը Զրույցի համեմատությամբ ավելի ուշ է։ Զրույցը չի կարող ընդունվել որպես Պետրոս Սյունեցու գործ, հակառակ նրա հայրենակից Օրբելյանի վկայության, և առայժմ այն պետք է լուսաբանել «Աղվանից պատմության» կապակցությամբ։ Այս վերջինիս կոմպիլյատիվ բնույթը կասկածի ենթակա չէ։ «Աղվանից պատմության» հետ*

---

[1] *Օրինակ, կրկնվող անունները։ Դրանցից մի քանիսի մասին պատմիչների մոտ կան որոշ հիշատակություններ.* Սեբեոս, *էջ 65, գիտե երկու Սպահունի,* Ղ. Փարպեցին, *էջ 64, և* Եղիշեն, *էջ 185, տարբերում են երկու Դիմաքսյաններ, որոնցից մեկի ներկայացուցիչն է Թաթուլը, մյուսինը՝ Համայակը։* Եղիշեի *մոտ, էջ 186, «մեւս եւս այլ Դաղչիկ Դիմաքսեանն։ Մենք արդեն նշեցինք Արծրունիների տոհմում երկու ճյուղերի առկայությունը։* Փարպեցու *մոտ հիշվում են երկու Գիտ Վահեւունի՝ մեկը Վասակի համախոհներից է, էջ 67, մյուսը՝ Վարդանի հետ միասին Աղվանքում էր, էջ 64, ի միջի այլոց նշենք, որ* Եղիշեի *մոտ մի դեպքում Գիտ-ի փոխարեն կա գունդն տարընթերցվածքը, էջ 185։*

*Զրույցի ունեցած առնչության հարցը, ըստ էության, այն է, թե Զրույցը այդ պատմության ո՞ր շերտին պետք է վերագրել։ «Աղվանից պատմության» միջուկն ու հնագույն տարրերը այն էջերն են, որոնք նվիրված են Վիրո կաթողիկոսի այցելությանը խազարների իշխանին 628 թվականին, և որոնք գրել է նկարագրված դեպքերի ականատեսը[1]։ Այդ ամենը շարադրված է B գրքում, որ և սկսվում է Անդոկի մասին եղած Զրույցով։ Բնական է ենթադրել, որ Զրույցը նույնպես ավելի վաղ չի ստեղծվել, քան B գրքում շարադրված դեպքերը, այսինքն՝ մինչև Է դարը։ Մեզ զբաղեցնող հարցին կարելի է մոտենալ նաև մի այլ կողմից, այսինքն՝ ճշտելով նույն այդ ցանկի ժամանակը, որը բերվում է Զրույցի մեջ Ագաթանգեղոսի Գահնամակ անունով։ Ի՞նչ է ներկայացնում իրենից այդ Գահնամակը։*

*Ագաթանգեղոսի պատմության մեջ կա նաև մի ուրիշ ցանկ, որ պարունակում է այն իշխանների անունները, որոնք մտնում էին Տրդատի շքախմբի մեջ նրա Հռոմ ուղևորվելու ժամանակ։ Այդ ցանկերը միայն թյուրիմացաբար կարելի է Գահնամակ անվանել։ Անդոկի մասին եղած Զրույցի մեջ Գահնամակի տակ հասկացվում է առաջին ցանկը, որ բաղկացած է 16 տոհմից։ Զրույցի մեջ հիշատակված է 17 բարձ, հավանորեն մտցված է նաև թագավորը։ Հետաքրքրական է և այն, որ Ագաթանգեղոսի մոտ Սյունյաց իշխանը 11-րդ տեղումն է, իսկ Զրույցի մեջ՝ 14-րդ։ Ագաթանգեղոսի արաբական վերսիայի մեջ իշխանների ցանկից առաջ նշված են վրացական, ափխազական և աղվանական թագավորները, և միայն նրանցից հետո գալիս են իշխանները։ Եթե այդ երեք թագավորներին մտցնենք ցանկի մեջ, ապա Սյունյաց իշխանը, իսկապես, կհայտնվի 14-րդ տեղում։ Այս հանգամանքը ցույց է տալիս, որ Զրույցի հեղինակը օգտվել է ոչ թե ներկայիս Ագաթանգեղոսից, այլ նրա ավելի հին խմբագրությունից, որ համապատասխանում է նորահայտ արաբական վերսիային[2]։*

---

[1] Մովսես Կաղանկատվացի, *էջ 125, «Անդ տեսաք զբազմոցս», էջ 130, «Ես Վիրոյ Աղուանից կաթողիկոս» և այլն։*

[2] *Եթե չլիներ արաբական վերսիան, այս հանգամանքը կարելի կլիներ բացատրել Ագաթանգեղոսի երկրորդ ցանկի ազդեցությամբ, որի մեջ սկզբում առանձին-առանձին նշվում են չորս բդեշխները և ապա գալիս են Անդեղ տունը և մյուսները։ Առաջին ցանկում Անգեղտան իշխանին անմիջապես հաջորդում է Աղձնյաց բդեշխը, այդ պատճառով էլ Զրույցի հեղինակը ցանկի մեջ մտցրել է միայն երեք բդեշխներին, որի հետևանքով Սյունյաց իշխանը կարող էր հայտնվել*

*Տանուտեր իշխանները հետևյալներն են.*

1 Իշխան Անգեղտան[1]
2 Աղձնեաց[2] բդեաշխն մեծ
3 Մարդպետութեան[3]
4 Ասպետութեան[4]
5 Սպարապետութեան
6 Կորդվտաց[5]
7 Ծովփաց
8 Գուգարացւոց միւ բդեաշխն
9 Ռուշտունեաց
10 Մոկաց[6]
11 Սիւնեաց
12 Ծաղէից[7]
13 Ուտիացոց
14 Ջաւաւանդ եւ Հեր
15 Մաղխազութեան
16 Արծրունեաց

---

*14-րդ տեղում։ Որ այդ դեպքում Գուգարաց բդեշխը երկու անգամ է ցանկի մեջ մտցվում, քանի որ նա հենց ինքն է առաջին ցանկի Մոկաց բդեշխը, ապա այդ պետք է բացատրել գուցե նրանով, որ հեղինակը չի իմացել նրանց հաջորդականությունը։*

[1] Ագաթանգեղոս, *հայերեն, էջ 461—462։ Հունարեն թարգմ.՝ էջ 68—69,* ed. P. de Lagarde, *Abh. Ac. zu Göthingen.* Bd. 35. 1887; *Արաբական վերսիայում, էջ 115։ Ձեռագրում* حبنمر JI *անգամով, որ Ն. Յա. Մառը նույն տեղում, էջ 202, առաջարկում է կարդալ* الحبيبس*, ըստ որում դրա տակ նա տեսնում է հունարեն* γύψ, *հայերեն թարգմ.* անգղ։ *Ես կարծում եմ, սկզբի վանկը բառի մաս չէ և ամբողջ բառը հանդիսանում է նախնական բառի ոչ ճիշտ ընթերցումը* انجيلين *Անջելին=Անգելեն։*

[2] *Ձեռագրում* ارظنوخ. *անտարակույս ծագում է* ارظنين *կամ* ارظنون*-ից։*

[3] *Ձեռագրում* ارمشان *փոխ.* (م)ردبتان:

[4] *Ձեռագրում կարդացվում է իշխան Ասպետների, դասպետ կոչումով, որին վստահված էր կուսների և մտղն-ների լեռների* ماموربحفظ جبل القوسيون والمطزنيون *պահպանությունը։ Հայ գրականության մեջ հայտնի չեն կուսների լեռներ և բնավ հասկանալի չէ մտղն-ների բառը։ Այդ դարձվածքն անտարակույս արտահայտում է հայերեն բնագրի* սահմանակալ յարեւմտեց կուսէ *(հմմտ.* Խորենացի, *Բ, գ), որտեղ վերջին բառը հունարենի թարգմանիչը ընդունել է հատուկ անվան տեղ, իսկ արաբերենի թարգմանիչը իր ունեցած հունարեն բնագրի* ὅρος *սահման բառը շփոթել է* ὅρος—*լեռ բառի հետ։ Ինչ վերաբերում է* المطزنيون *բառին, ապա այդտեղ հավանաբար ունենք* المغربون*, արևմուտք բառի աղավաղումը։*

[5] *Կմրջլի իշխան՝ կորդիտների մոտ* قمردل*, հավանաբար հայերեն Կորճէք-ի աղավաղումն է։*

[6] *Ձեռագրում* المقنصون. *փոխ.* المفنصون:

[7] *Ձեռագրում* دسبوداون*, որ ըստ Ն. Մառի* δεσποτειῶν *կամ* δεσπότων *հունական տեքստի հայ.* Σααπιανῶν*-ի։ Բայց* Σααπιανῶν *հայ. Ծահապ հիշվում է իշխանների մի այլ ցուցակում, որը չկա արաբական վերսիայի մեջ։ Ըստ բնագրի իմաստի այդ բառը համապատասխանում է հայ. Ծաւդէից-ին, որի աղավաղումը պետք է ընդունել։*

*Այն միակ կետը, որով այս ցանկը շփվում է Գահնամակի հետ, հանդիսանում է Մամիկոնյանների տեղը. թե՛ այստեղ և թե՛ այնտեղ նրանք զբաղեցնում են հինգերորդ տեղը, մի զուգադիպություն, որ կարծում ենք, պատահական է։ Ուշադիր նայելով ցանկին, տեսնում ենք, որ 16 իշխաններից 8-ը* Աշխարհացույցի *մեջ ընդունված երկրների՝ Աղձնյաց, Կորճեից, Գուգարաց, Մոկաց, Սյունյաց, Ծավդեից կամ Սոտքի-Արցախի, Ուտիացոց, Զարևանդի և Հերի-Պարսկահայքի ներկայացուցիչներ են. մնացած ութը՝ կենտրոնական նահանգների՝ այն երկրների ներկայացուցիչները, որ կոչվում էին Տանուտերական։ Մենք վերևում տեսանք, թե ինչ մասերի էր բաժանվում Տանուտերական երկիրը։ Ցանկում դեռևս չկան այդ մասերը. նշվում է միայն Մարդպետականի և Վասպուրականի միջև եղած տարբերությունը նեղ իմաստով, Արծրունիների և Ռշտունիների ներկայացչության սահմաններում։ Տանուտերական երկրի այն մասը, որը հետագայում կոչվեց Տարուբերան, ներկայացված է հանձինս Մամիկոնյանների և Խորխոռունիների։ Այրարատից ներկայացուցիչներ չկան. որպես Արշակունիների կալվածք, այն ներկայացված է հանձին թագավորի։ Նրա մի մասը՝ այն է Բագրևանդը սահմանակից Կոգովիտի հետ միասին որպես ներկայացուցիչ ունի Բագրատունի իշխանին։*

*Այս ներկայացչությունները արտացոլում են իրերի դրությունը Դ դարի վերջին՝ համապատասխանելով Հայոց աշխարհի բաժանմանը մինչև* Աշխարհացույցը: *Ցանկը կրում է միտումնավորության դրոշմ. նրա հեղինակը ցանկացել է Հայոց աշխարհը իր գլխավոր մասերով հաղորդակից դարձնել Լուսավորչի ձեռնադրությանը և առհասարակ նրա գործունեությանը։ Փավստոսից գիտենք նաև այլ դեպքեր, երբ իշխանները հայրապետական աթոռի թեկնածուին ուղեկցել են Կեսարիա նույն նպատակով, բայց ուղեկցողների մեջ այդպիսի ընտրություն չի նկատվում։ Ագաթանգեղոսի խմբագրությունը, ըստ երևույթին, վերաբերում է այն շրջանին, երբ Լուսավորչի անունը առաջ էր քաշվում որպես մի կոչ երկիրը Հայոց եկեղեցու գերիշխանության տակ միավորելու համար։ Գրիգոր Լուսավորչի անվան պրոպագանդան սկսվեց 555 թվականի ժողովից հետո հականեստորականության հողի վրա և այնուհետև աննկատելի, բայց հետևողականորեն փոխադրվեց հակաքաղկեդոնականության կամ հակաերկաբնակության հողի վրա ընդհանրապես։ Հայ-վրացական եկեղեցական հարաբերություն-*

*ների խզումը Զ դարի վերջին և Է դարի սկզբին տեղի ունեցավ այնպիսի մի ժամանակ, երբ հականեստորականությունը քաղաքական պայմաններին համապատասխան վերածեց հակաքաղկեդոնականության։ 612 թվականին պարսից Խոսրով թագավորի արքունիքում տեղի է ունենում եկեղեցական ժողով՝ միաբնակների և նեստորականների միջև եղած վեճը լուծելու համար, որն ավարտվեց վերջիններիս պարտությամբ։ Հայկական եկեղեցու կողմից ժողովին որպես ներկայացուցիչներ մասնակցում էին Մամիկոնեից եպիսկոպոս Կոմիտասը, ապագա կաթողիկոսը և Ամատունյաց եպիսկոպոս Մատթեոսը։ Հայ պատմիչի վկայությամբ նրանք «ունէին պատրաստական անդ ընդ ինքեանս զ գ ի ր ս ր բ ո յ ն Գ ր ի գ ո ր ի»[1]։ Այդ ժամանակ արդեն գոյություն ուներ Ագաթանգեղոսի այն խմբագրությունը, որ պահպանվել է արաբական թարգմանությամբ և որն արտացոլում էր հականեստորական տրամադրություններ ի հակադրություն մեզ հասած հայկական Ագաթանգեղոսի, որն ունի հակաքաղկեդոնական խմբագրություն։*

*Հականեստորական խմբագրության մեջ, ինչպես երևում է նաև արաբական վերսիայից, արդեն կար 16 իշխանների ցանկը։ Անդոկի Զրույցը «Աղվանից պատմության» մեջ իր ծագումով հասնում է 628—30 թվականները, ուստի հեղինակը կարող էր օգտվել հիշյալ ցանկից, որ խմբագրված էր հատկապես հականեստորականության ոգով։ Այն հանգամանքը, որ դրա հետ միասին չի հիշատակվում Սահակի Գահնամակի մասին, թեև այդ անելու համար հարմար առիթ էր ներկայացել, ապացուցում է, որ այն ժամանակ Գահնամակը դեռևս գրականության մեջ հայտնի չէր։ Այսպիսով, նկատի ունենալով մեզ հասած Գահնամակի ոչ պաշտոնական ծագումը, նրա երևան գալը պետք է վերագրել Է դարից հետո ընկած ժամանակին։*

*Ավելի ուշ և դարձյալ ոչ պաշտոնական ծագում ունի նաև Զորանամակը. 21 և 22-ական տոհմերի համաչափ խմբավորումը բավականաչափ մատնում է նրա արհեստական ծագումը։ Հեծելազորի քանակի տեսակետից վավերագիրը վերարտադրում է Արշակունիների շրջանի իրավիճակը, իսկ հեծելազորը չորս խմբի կամ թևի բաժանելու մեջ նկատվում է Զ դարի Սասանյան կարգերի ազդեցությունը. այսպիսի ժամանակավրեպ գծերը նույնպես*

---

[1] Սեբեոս, էջ 121։

կարող են բացատրվել վավերագրի միայն գրական բնույթով։ Նրա ժամանակը ճշտելու համար պետք է հաշվի առնել այդ վավերագրի և Խորենացու միջև եղած փոխհարաբերությունը։ Սահմանապահ իշխանների մասին հայ պատմիչի ասածների մեջ կան թելեր, որոնք նրան կապում են վավերագրի հետ։ Պատմիչի ասելով՝ Վաղարշակ թագավորի մտահոգություններից մեկը պետության պաշտպանությունն էր, որի համար էլ ծայրամասերում նշանակվեցին սահմանապահ կառավարիչներ։ Արևելքի կողմից «ղեղերբ հայկական խօսից» այդ դերը վիճակվեց Սիսականի և Կադմեայ իշխաններին[1]։ Ավելի ճշգրտելով՝ պատմիչը Սիսականը դնում է արևելքում, իսկ Կադմեան՝ հարավում՝ Ասորեստանի մոտ[2]։ Հյուսիսում «ընդդեմ լերինն Կաւկասայ» պաշտպանությունը հանձնվում է Գուգարաց բդեշխի մեծ և հզոր տոհմին[3]։ Որպես արևմուտքի կառավարիչ հանդես է գալիս Անգեղտան իշխանը, մի այլ դեպքում՝ Բագրատունիների իշխանները[4]։ Այս երկվությունը բացատրվում է Անանունի ազդեցությամբ, որի մոտ Անգեղը նույնացված է Բագարատի հետ։ Բացի դրանից, պատմիչը նշում է հարավ-արևմտյան կողմի մեծ բդեշխին, այսինքն՝ Աղձնիքի կուսակալին[5]։

Զորանամակի մեջ համապատասխանաբար չորս դռների գլխավոր կառավարիչներ են նշված Սյունյաց, Կադմեաց, Գուգարաց իշխանները և Աղձնեաց-Անգեղտան Բագարատ իշխանը։ Նմանությունը կասկածից վեր է, սակայն պարզ չէ Խորենացի՞ն կախում ունի վավերագրից, թե ընդհակառակը՝ վավերագիրն է կրում պատմիչի ազդեցությունը։ Խորենացու «կարգք գինուորութեանց» վերաբերյալ վերը մեջ բերած խոսքերը ցույց են տալիս, որ նրան ծանոթ է եղել Զորանամակի նման մի բան, բայց թե այն ինչ կապ է ունեցել վավերագրի հետ, հայտնի չէ։ Կարող է պատահել, գոյություն է ունեցել նախարարական հեծելազորի ցանկ, որը հետագայում վերամշակվել է և ստացել մեզ հասած Գահնամակի ձևը։ Զորանամակը, համենայն դեպս, այս

---

[1] Խորենացի, Բ, ը։
[2] Նույն տեղում, Ա, ժդ։
[3] Նույն տեղում, Բ, ը։
[4] Նույն տեղում, Բ, ը և Բ, գ։
[5] Նույն տեղում, Ա, իգ և Բ, ը։

*կամ այն տեսքով ծանոթ է եղել Խորենացուն։ Նախարարական ուժերի ցուցակը ունեցել է, ըստ երևույթին, նաև այն նշանակությունը, որ ըստ նրա կարգավորվել է Գահնամակը։*

*Ուժի սկզբունքը այն կամուրջն է, որ Գահնամակը կապում է Զորանամակին։ Այսպիսի ըմբռնման դեպքում հնարավոր է մեկնաբանել Գահնամակի ներածությունը։ Ի՞նչ է նշանակում* ramakan nāmā-*ն, որը տեսել է Սահակ կաթողիկոսը արքունի դիվանում, և ինչ կապ ունի այն Գահնամակի հետ, որին և նվիրված է ներածությունը։*

Ramakan-*ի փոխ.* vramakan *վարկածը, որ առաջարկել է Էմինը և ընդունել Ալիշանը, որևէ հիմք չունի, և Խալաթյանցը իրավացիորեն մերժում է այն։ Վերջինիս կարծիքով ռամականը առաջ է եկել պարսկերեն* ram *բառից, հայերեն՝ երամ, խումբ, ամբոխ իմաստով, որտեղից և՝ հայերեն ռամիկ, հասարակ ժողովուրդ, գյուղացի և պահլավական* ramak-*ը՝ նույն իմաստով։ Ըստ այդ մեկնության* ramakan nama *արտահայտությունը նշանակում է «ցանկ կամ մատյան հարկատու դասի», ի հակադրություն ազնվականների ցանկին՝ Գահնամակին։*

*Սակայն ելնելով այն նկատառումից, որ* ramakan nama-*ն, ըստ ներածականի իմաստի, առնչություն ունի Գահնամակի հետ, պրոֆ. Խալաթյանցի բացատրությունը ընդունելի չենք համարում և հակված ենք այն մոտեցնել Զորանամակին։ Դրան չի խանգարում* ռամականի *ստուգաբանական նշանակությունը։ Կանխապես չորոշելով այն հարցը, թե արդյո՞ք միևնույն ծագումն ունեն երամ, երամ-ակ և ռամ, ռամիկը, մենք կարծում ենք, որ* ramak-*ի իմաստը բավական ստույգ ճշտված է պահլավական* ramak *և հայկական երամ-ակ՝ հոտ բառերի հիման վրա, որ նշանակում է առհասարակ ամբոխ, հավաք (մարդկանց կամ կենդանիների),* ramak-*ը* ramakan nāmā *արտահայտության մեջ ունի զինվորների* խումբ, *հեծյալների* ջոկատ *իմաստը։ Ըստ այդ բացատրության մեզ հետաքրքրող տերմինը նշանակում է* **զորագնդերի գիրք**, *ընդ որում* ramakan-*ը ավելի շուտ հոգնակի թվի սեռական հոլովն է* ramak-*ից, քան թե ածական* ram-*ից.* ramak-*ը, այսպիսով, միանգամայն նույնանիշ է Խորենացու* վաշտին: Ramak-*ի նշանակության անցումը* ramik-*ի միջոցով* ամբոխից *դեպի* ժողովուրդ *շատ լավ բացատրվում է ռուսական* пълкъ-*ի և գերմ.* volk-*ի նույնանման փոխհարաբերությամբ։*

*Մեր մեկնաբանությամբ Գահնամակի ներածությունը դառնում է հասկանալի։ Սահակը իմացել է* ramakan nama-*ի, այսինքն՝ նախարարական զորագնդերի ցանկի մասին և միջնորդել է գահերի կարգը շտկելու կամ Գահնամակ կազմելու մասին, ըստ երևույթին, առաջին վավերագրի՝ զինվորական ցանկի տվյալների համաձայն։*

## ԳԼՈՒԽ XI

# ՆԱԽԱՐԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՏԵՐԻՏՈՐԻԱԼ ՎԵՐԼՈՒԾՈՒԹՅՈՒՆԸ

**Նախարարությունը որպես հողային միավոր: Նախարարական ընդհանուր տերիտորիան: Խնամակալության և աշխարհագրական անվանակարգության նշանակությունը իշխանական տիրույթները որոշելիս: Ծայրամասային իշխանությունները: Նախարարությունների տեղաբաշխումը կենտրոնական նահանգներում: Այրարատը ըստ Աշխարհացույցի: Աշխարհագրական բաժանումների ծագումը և նախարարությունների զարգացման ընթացքը: Բասենը, Շիրակը, Այրարատը *par excellence* և Բագրևանդը Կամսարականների, Արշակունիների և Բագրատունիների ու Բասենի իշխանների տիրույթ: Մանր իշխանությունները Կամսարականների ազդեցության ոլորտում և Արշակունիների տերիտորիայում: Նրանց տեղագրությունը: Բագրևանդը և Կոգովիտը: Տուրուբերանը ըստ Աշխարհացույցի: Տարոնը և Հարքը հիմնական բաղկացուցիչ մասեր: Տարոնի փոխանցումը Մամիկոնյաններին: Սահմանակից իշխանությունները՝ Արշամունիքը և Արշամունիները, Ապահունիք և Խույթ: Հարքը Մանավազյանների տիրույթ: Ապահունյաց, Խորխոռունյաց և Բզնունյաց իշխանությունները և նրանց վերաբերմունքը Հարքի նկատմամբ: Մյուս մանր իշխանությունները: Վասպուրականը ըստ Աշխարհացույցի: Քննական դիտողություն նրա կազմի վերաբերյալ: Սկզբնական 18 գավառների տեղագրությունը: Լրացուցիչ ստորաբաժանումները: Գլխավոր իշխանները. Ռշտունիները՝ Տոսպում, Արծրունիները՝ Աղբակում, Մարդպետները՝ Մարդաստանում: Մարդպետների վերաբերմունքը Արծրունիների նկատմամբ: Ամատունիները Արտազում: Մյուս իշխանական տների համախմբումը գլխավոր տների շուրջը:**

*Հայոց աշխարհը իր սահմաններով, ուր գործում էր նախարարական վարչակարգը, ներկայացնում էր ինքնուրույն հողային միավորների, իշխանական առանձին տիրույթների մի ամբողջ ցանց։ Նախարարական հարստությունների տեսությունից հետո պետք է քննարկել նաև համապատասխան տերիտորիալ մեծությունները, որովհետև հողատիրությունն էլ հենց նախարարության գլխավոր հիմքն էր։ Նախարարական հողերի սահմանազատումը,*

նրանց տեղադրությունը և փոխհարաբերությունները որոշելը անհրաժեշտ և շատ կարևոր ատիճան է նախարարական հաստատության էության և բարդ ծագումը հասկանալու ճանապարհին։ Նախարարական Հայաստանը, իսկն ասած, համապատասխանում էր Արշակունյաց Հայաստանին։ Թեև Արշակունյաց թագավորության բաժանումից հետո էլ Հայաստանի երկու մասերում նախարարական կարգերը շարունակեցին գոյություն ունենալ, բայց քաղաքական պայմանների շնորհիվ դրանք ավելի լավ պահպանվեցին և ավելի երկար գոյատևեցին պարսկական մասում. համենայն դեպս Հայաստանի այդ մասի վերաբերյալ մեզ հասած տեղեկությունները ավելի ամբողջական են։ Դեռևս նախարարությունների առաջին պատմիչը՝ Խորենացին, նախարարությունը քննում է գերազանցապես Արևելյան կամ Մարզպանական Հայաստանի սահմաններում, այսինքն՝ այն երկրի նախարարությունները, որ ներփակված էին Գուգարքի, Աղձնիքի, Սյունիքի և Կորճեայքի միջև։ Նախարարությունների՝ մեր կողմից ճշտված քանակական կազմը նույնպես ամփոփվում է գլխավորապես Մարզպանական Հայաստանի սահմաններում։

Աշխարհագրական տեղանունները բաղդատելով նախարարական տոհմանունների հետ, նկատում ենք, որ դրանց միջև սերտ կապ կա. իշխանական տներն կամ կրում են երկրամասերի անունները և կամ, ընդհակառակը՝ այդ երկրամասերին տալիս են իրենց տոհմական անունները։ Աշխարհագրական և նախարարական անվանումները զուգահեռաբար քննության ենթարկելիս երևան են գալիս այնպիսի տվյալներ, որոնք կարևոր են նախարարական տոհմերը ծագումնաբանական հաջորդականությամբ դասակարգելու համար։

Մարզպանական Հայաստանի ծայրամասային նահանգները՝ Սյունիքը, Մոկքը և Տայքը, գտնվում էին Սյունյաց, Մոկաց և Մամիկոնյան իշխանական տների ձեռքին։ Մյուս տոհմերը տեղադրված էին հիշյալ նահանգների միջև ընկած տարածքի վրա։ Ըստ Աշխարհացույցի այդ տերիտորիան բաժանվում էր երեք մեծ երկրների՝ Այրարատ, Տարուբերան և Վասպուրական։ Թեև այս բաժանումը հաստատվել է այն շրջանից հետո, որը անմիջականորեն զբաղեցնում է մեզ, սակայն մենք պետք է օգտվենք դրանից, նկատի ունենալով շարադրանքի հարմարությունը։

*Այրարատում* Աշխարհացույցը *հաշվում է 16 ստորաբաժանում կամ գավառ.*

1 **Բասեն**
**Գաբեղեանք**
**Աբեղեանք**
**Հաւունիք**
5 **Արշարունիք**
**Բագրեւանդ**
**Ծաղկոտն**
8 **Վանանդ**
**Շիրակ**
**Արագածոտն, Արագածի-ոտն**
**Նիգ**
12 **Կոգովիտ, Կոգի-հովիտ**
**Ոստան Հայոց**
**Ուրծաձոր, Ուրծի ձոր**
**Արած**
16 **Շարուր**[1]

*Հին հեղինակները Այրարատի գավառները չգիտեն* Աշխարհացույցի *մեջ ընդունված իմաստով։ Շատ կարևոր է պարզել աշխարհագրական բաժանումների ծագումը, քանի որ նախարարության զարգացումով պայմանավորված այդ բաժանումները պարզում են նախարարական տների զարգացման կամ ճյուղավորման ընթացքը։*

*Դասական հեղինակներին ծանոթ են Փասիան-Բասիանը, Սիրակենե-Շիրակը, Բագրավանդենա-Բագրևանդը և* 'Αραξηνὸν πεδίον, *Արաքսի հովիտը, որի տակ ավելի նեղ իմաստով պետք է հասկանալ Այրարատյան հարթավայրը*[2]*։ Մինչև* Աշխարհացույցը *եղած հայ հուշարձանները Այրարատ ասելով գերազանցապես հասկանում են ավելի ուշ ժամանակվա Այրարատի արևելյան կեսը՝ սկսած Ախուրյան գետի հովտից մինչև Շարուրի դաշտը։* 'Αραξηνὸν πεδίον *տառացիորեն համապատասխանում է հայկական Երասխաձորին, որպիսի անունով հայտնի է Արաքսի հոսանքի որոշ մասը, որ հարում է Շիրակին և որ հետագայում վերանվանվեց Արշարունիք։*

*Թագավորական ժամանակաշրջանի պատմիչ Փավստոսը վերոհիշյալ չորս նահանգներից բացի հիշատակում է նաև Վանանդը և Արշարունիքը։ Առաջ Վանանդը Բասենի մի մասն էր և կոչվում էր, ինչպես վկայում է դեռևս Խորենացին, Վերին Բասեն,*

[1] Աշխարհացույցի *համառոտ խմբագրության մեջ կա 20 գավառ. լրացուցիչներն են՝ Ճակատ, Մասեացոտն, Աշոցք, Մազազ։ Նշենք, որ Հաւունիքի փոխարեն այստեղ կա ավելի ճիշտ ընթերցում՝ Վահաւունիք։*

[2] Anab. IV 6, 5, Φασιανοί. Ptol. p. 938, Σιρακηνή, p. 947, Βαγραυανδηνή. Str. 527, 'Αραξηνὸν πεδίον=*Երասխաձոր*, Խորենացի, *Բ, դ*։

բայց Արշակունյաց շրջանում վերածվեց իշխանական հատուկ միավորի։ Ճիշտ այդպես էլ Արաքսի այն գետեզրյա շերտից, որ առաջ մտնում էր Այրարատի կամ Շիրակի մեջ, կազմվեց Արշարունիքը։ Թագավորական շրջանում այդ բոլոր բաժանումները ոչ միայն աշխարհագրական, այլ նաև քաղաքական միավորներ էին և գտնվում էին նախարարական առանձին տոհմերի իշխանության տակ։ Բասենին, Վանանդին, Շիրակին և Արշարունիքին տիրում էին նույն այդ անունները կրող իշխանները։ Այրարատը հիշյալ սահմաններով Արշակունիների կալվածքն էր par excellence, իսկ Բագրևանդը, որքան մեզ հայտնի է, պատկանում էր Բագրատունիներին։ Շիրակը հետո անցավ Կամսարական իշխաններին։ Կամսարականների տոհմը ծագում էր Արշակունիներից և, թվում է, նախապես նա հաստատված է եղել Երասխաձորում, որը դրանից հետո սկսեց կոչվել Արշարունիք, ըստ երևույթին առաջին տիրոջ՝ Արշավիրի անունով։ Կամսարականները հետագայում իրենց իշխանությունը տարածեցին հարևան Շիրակի վրա։ Շիրակի մի մասը պատկանում էր Դիմաքսյան իշխանական տոհմին, որը կոչվում էր Շիրական ի տարբերություն նրանց մյուս ճյուղի, որ իշխում էր Վանանդի հարևանությամբ ընկած Բուխա գավառում։

Շիրակը զբաղեցնում էր Ախուրյան գետի հովիտը՝ Վանանդի և Այրարատի միջև և այժմ կոչվում է Շորագյալ, հայերեն՝ Շիրակ-գավառ կամ Շիրակ-ավան անունից։ Բասենը՝ այժմ Բասեն, տարածվում էր Արաքսի ակունքների մոտ մինչև Սալքորա գյուղը, այսինքն՝ գրեթե մինչև այժմյան ռուս-թուրքական սահմանը[1]։ Արաքսի ափերին Բասենի և Արշարունիքի միջև ըստ Աշխարհացույցի գտնվում էին Աբեղյանների, Հավունիների և Գաբեղյանների իշխանությունները, ընդ որում առաջին երկուսը ձախ ափին, իսկ երրորդը՝ աջ։ Իրենց աշխարհագրական դիրքով այս իշխանությունները ավելի շուտ պետք է վերագրել Արշարունիքին։ Այդ վայրերը՝ Կաղզվան, նախկին Կողզովան գլխավոր կետով, այժմ էլ առանձին շրջան են կազմում, որ կոչվում է Զալդրան, այնպես, ինչպես Բասենը, Վանանդը և Շիրակը հին ժա-

[1] Աշխարհացոյց, էջ 15, «ի պատուանն Բասենոյ, ի տեղւոջն, որ կոչի Սալքորայ»։

մանակներք նման կազմում են Բ ա ս ե ն, Թ ա խ ա ր ի ն և Ծ ո ր ա-գ յ ա լ առանձին գավառներ։

Արշակունիների պատմիչ Փավստոսը ամենևին չի հիշատակում Աբեղյան, Գաբեղյան և Հավունի իշխանությունների մասին, որոնք շատ լավ ծանոթ են հետագա աղբյուրներից։ Արդյոք այդ չի նշանակու՞մ, որ Թագավորական շրջանում հիշյալ մանր իշխանությունները դեռևս հայտնի չէին, և նրանց հողերը թե՛ տեղագրական և թե՛ քաղաքական առումով մտնում էին Արշարունիքի կազմում։ Այդ դեպքում կարելի էր նրանց համարել Կամսարական հզոր տան ճյուղավորումներ և նրանց ծագումն ու քաղաքական անջատումը վերագրել Հայաստանում Թագավորական իշխանության անկման խառնակ ժամանակներին։ Որ Կամսարականների ազդեցությունն աճում էր Արաքսի ուղղությամբ դեպի Բասեն, երևում է նրանից, որ Զ. դարում Բասենում նրանց ձեռքին էր գտնվում Բող բերդը։ Կամսարականների տիրույթներին էր հարում նաև Աշոցքի իշխանությունը։ Վերջինս գրավում էր Շիրակի հյուսիսային անկյունը, որտեղից բխում է Ախուրյան գետը[1]։

Այրարատը Արշակունիների արքունի կալվածքն էր, այսինքն՝ ոստանը։ Նրա մեջ մտնում էին հետևյալ գավառները՝ Արագածոտն, Նիգ, Վարաժնունիք, Մազազ, Կոտայք, Ոստան Դվինի, Ուրծ, Արած, Շարուր, Ճակատք և Մասեացոտն։ Սրանցից վերջին երկուսը ընկած էին Արաքսի հարավային ափին՝ Կողբից մինչև Արարատի գագաթները, իսկ մյուս գավառները՝ հյուսիսային ափին, ընդ որում սրանց տեղադրությունը որոշվում էր Արաքսի վտակների հոսանքներով։ Քասախ գետի վերին հոսանքները կազմում էին Նիգը, այժմ Ապարան, ստորին հոսանքը և Արագածի ամբողջ նախալեռնային մասը պատկանում էին Ա ր ա գ ա ծ-ո տ ն ի ն, որ բառացի նշանակում է Արագածի ստորոտ։ Հրազդան գետի ակունքների մոտ ընկնում էր Վարաժնունիքը, այժմյան Ծաղկաձորը, այնուհետև, նույն գետի հոսանքն ի վար՝ Կոտայքը, Ազատ-Գառնի գետի վերին հոսանքը գրավում էր Մազազը, այժմյան Գառնին, ավելի ներքև Դվինի ոստանն էր. Ո ւ ր ծ ը և Ա ր ա ծ ը ընկնում էին Վեդի գետի վրա. հետո՝ մինչև Նախիջևանի սահմանները

---

[1] Աշոցը կա միայն Աշխարհացույցի համառոտ խմբագրության մեջ, ընդարձակի մեջ չի հիշատակված։ Վրացական աղբյուրներում կարդացվում է Աշոց, վրաց. Ց տառը ց-ի հետ շփոթելու հետևանքով։ Ալիշան, Այրարատ, էջ 127։

*տարածվում էր Շարուրի դաշտը։ Այրարատի այդ ստորաբաժանումներից շատերը մինչև* Աշխարհացույցը *հայ հին աղբյուրներում չեն հիշատակվում։ Իհարկե, անմտություն կլիներ դրա մեջ նրանց ուշ առաջացած լինելու փաստարկ տեսնել։ Գոտայքը, օրինակ, ծանոթ էր դեռևս Պտղոմեոսին, բայց հայ մատենագրության մեջ հիշվում է առաջին անգամ Սեբեոսի մոտ* է *դարում։ Հազիվ թե կարելի է կասկածել, որ մյուս անվանումները ևս վերաբերում են Սեբեոսի ժամանակին։ Եթե նրանք չեն հիշվում ավելի հին աղբյուրներում, ապա այդ պետք է բացատրել ավելի շուտ նրանով, որ քաղաքական հետաքրքրությունից զուրկ բաժանումները կրում են զուտ տեղագրական բնույթ, մինչդեռ մարզպանական շրջանի հայ հեղինակները մեծ մասամբ խոսում են աշխարհագրական այն բաժանումների մասին, որոնք միաժամանակ քաղաքական կամ նախարարական միավորներ էին։ Մինչդեռ Այրարատի նահանգը գծված սահմաններով Արշակունիների արքունի տիրույթն էր և, նշանակում է, քաղաքական տեսակետից հանդիսանում էր մի ամբողջական միավոր։ Արշակունյաց Այրարատում մանր նախարարությունների երևան գալը պետք է վերագրել Արշակունիների անկումից հետո ընկած ժամանակաշրջանին։ Դրանցից Եղիշեն հիշատակում է արդեն Ո ւ ր ծ ը և Ա ր ա ծ ը, որպես առանձին իշխանություններ։* **555** *թվականի եկեղեցական ժողովի մասնակիցների թվում հիշվում է Վարաժնունի իշխանը։ Վարաժնունի իշխանական տան կալվածքները, Խորենացու ասելով*[1]*, գտնվում էին Հրազդան գետի վրա, այդ պատճառով էլ պատմիչը Վարաժնունիների տոհմը համարում է սերված հարևան Գ ե ղ ա ր ք ու ն ի գավառի նախահայր Գեղամի որդի Գառնիկի սերնդից։ Ըստ այդ վկայության Վարաժնունիքը համընկնում է Հրազդան գետի սկզբնական ձախ թևի հովտին և համապատասխանում է ներկայիս Ծաղկաձորին՝ ծաղիկների ձոր, որ միջին հայերենում Ծ ա ղ կ ու ն ի անվան*[2] *թարգմանությունն է։*

*Նույն պատմիչի վկայությամբ, լծից ոչ հեռու, Վարաժնունիքին հարևան ապրում էին Գ ն թ ու ն ի իշխանները*[3]*։ Ապարանում,*

---

1 Խորենացի, *Ա, ժբ և Բ, ժա «առ եզերբ Հրազդանի»։*

2 *Արևմտյան վավերագրերում Ծաղկունին*=Zachuniec, S. Martin, *Mémoires I, 287։* Ալիշան, *Այրարատ, էջ 260։*

3 Խորենացի, *Բ, դ, «եւ զծովեզրեայ մանկունս, որք ի Գեղամայ եւ ի Քանանացւոց,* ՏC. *Գնթունի», հմմտ. Ա, ժթ։*

*Քասախ գետի ափին, մի հին եկեղեցու ավերակների մեջ հայտնաբերվել է ոմն Գրիգոր Գնթունի իշխանի արձանագրությունը, որի հիման վրա Ադոնցը՝ հնում Նիգը, պետք է համարել Գնթունի նախարարների տոհմական կալվածքը*[1]։

*Ապարանից հարավ՝ նույն Քասախ գետի հովտում, մինչև օրս էլ կանգուն է պատմական Օշական գյուղը, որին տիրում էին Ամատունի իշխանները. այդ գյուղը Ամատունիներին պատկանելու մասին վկայում է Փարպեցին*[2]*։ Խորենացին հավաստացնում է, թե Օշականն Ամատունիներին է անցել Խոսրով Կոտակ թագավորի ժամանակ, որն այն նվիրեց Վահան Ամատունուն՝ Սանեսանի խաժամուժ լեռնականների արշավանքը քաջությամբ ետ վանելու համար։ Փավստոսը պատմելով այդ դեպքը, ոչինչ չի ասում Օշական գյուղը Ամատունիներին նվիրելու մասին։ Խորենացին Ամատունիներին համարում է Արևելքից, այսինքն՝ Պարսկաստանից գաղթածներ և ասում է, որ նրանք Հայաստան են եկել Արտաշես թագավորի ժամանակ*[3]*։ Պատմիչը մեզ տեղեկություն չի տալիս Արտաշեսի և Խոսրով Կոտակի միջև ընկած ժամանակաշրջանում Հայաստանում Ամատունի տոհմի բնակավայրի մասին։ Մենք կտեսնենք, որ Ամատունիները նախապես ապրում էին Արտազ գավառի սահմաններում, որտեղից էլ շարժվեցին Օշական։ Խորենացու ժամանակ Օշականն արդեն գտնվում էր Ամատունիների տիրապետության տակ, և պատմիչը իր սեփական կռահումով* a posteriori *տանում հասցնում է այդ տիրապետության սկիզբը՝ Փավստոսից իրեն հայտնի դարձած Սանեսանի արշավանքի ժամանակները։*

*Արագածի ստորոտին՝ Շիրակին սահմանակից Մաստարա գյուղի հինավուրց եկեղեցում պահպանվել է մի արձանագրություն, որի մեջ ասված է, թե եկեղեցին կառուցվել է Գնունյաց Թեոդորոս եպիսկոպոսի օրոք*[4]*։ Այս հանգամանքը պարզաբանում է Ներսեսի Վարքում պահպանված այն տեղեկությունը, ըստ որի Գնունիները*

---

[1] Ալիշան, *Այրարատ*, էջ 248, *«Քս Ած յիշեա զԳրիգոր Գնթունեաց տէր»*։

[2] Փարպեցի, էջ 38։

[3] Խորենացի, Գ, *Թ* և *Բ*, ծէ։

[4] Շահխաթունյան *եպիսկ*., Ստորագրութիւն, *Բ*, էջ 46 *«յամս տեառն Թէոդորոսի Գնունեաց եպսի շինեցաւ տունս»*, Ալիշան, Այրարատ, էջ 135։

*հիշվում են Շիրակի նախարարների թվում[1], և անկասկած ապացուցում է Գնունի տոհմի առնչությունը Արագածի ստորոտի բնակավայրերին։ Թովմա Արծրունուց գիտենք, որ նրա ժամանակ Գնունիները ապրում էին Աղիովիտում, Վանա ծովի ափին, որի գլխավոր քաղաք Արճեշը նա անվանում է «քաղաք Գնունեաց գաւառին»[2]։ Խորենացին նույնպես վկայում է, որ Շահապիվանը սկզբում պատկանում էր Գնունյաց տոհմին, իսկ հետո անցավ Արշակունիներին[3]։ Շահապիվանը գտնվում է Կոգովիտի սահմաններում և թերևս Գնունիների համար լճի ափերից դեպի Այրարատ կամ զույգ և հակառակ ուղղությամբ շարժվելու ժամանակ միջանկյալ կետ է հանդիսացել։ Խորենացու ասելով՝ Գնունիները արքունիքում ծառայում էին որպես մատովակներ. իրենց պաշտոնի բերումով նրանք պետք է ապրեին արքունիքին մոտ, նշանակում է, այն հարցը, թե Այրարատում որն է եղել Գնունյաց տոհմի բնակավայրը, վճռվում է ըստ Խորենացու՝ առաջնությունը տալով Այրարատին։*

*Պատմիչի վկայությամբ արքունական ծառայության մեջ էին նաև Սպանդունի և Զյունական նախարարությունները, որոնց նույնպես պետք է որոնել Թագավորական ոստանի մոտակայքում։ Թվում է, թե պատմիչը Արշակունիների արքունիքում նախարարական տոհմերին ժառանգական պարտականություններ վերագրելով ելնում է նրանց անունների ստուգաբանությունից։ Բայց ավելի ճիշտ կլիներ հակառակ եզրակացությունը, այսինքն՝ ստուգաբանական մերձեցումների և մեկնաբանությունների վրա անկասկած ազդել են տերիտորիալ տեսակետից տվյալ նախարարության արքունիքին մոտ լինելու մասին եղած տվյալները։ Եթե, օրինակ, Գնունիներն ապրեին Արշակունիների ոստանից շատ հեռու, ապա Խորենացին դժվար թե Գնունի տոհմանունը* գինի *բառից ծագած համարեր, այդ տոհմին արքայական մատովակի կամ համեղ գինիներ մատակարարողի պատվավոր պաշտոնով օժտելու համար։ Խորենացու ստուգաբանական հետազոտությունները մեծ մասամբ անընդունելի են, բայց, այնուամենայնիվ, դրանք հե-*

---

[1] Սոփերք Զ, ժե, «տուն ի մեծ նախարարացն ի գաւառէն Շիրակայ որ էր միանձնացեալ ի լերինս յազգէն Գնունեաց»։

[2] Թովմա Արծրունի, էջ 247 և 308։ «Արճէշ քաղաք Գնունեաց գաւառին»։

[3] Խորենացի, Գ, իզ։ Ըստ Փավստոսի Շահապիվանք քաղաք է, ըստ Խորենացու՝ լեռ, Կոգովիտից ոչ հեռու։

տաքրքրական են, որովհետև որոշ չափով արտացոլում են նախարարությունների տերիտորիալ հարաբերությունները ոստանի կամ թագավորական կալվածքի նկատմամբ[1]։

Վարաժնունի, Գնունի և Սպանդունի նախարարությունների կողքին Սեբեոսը հիշատակում է նաև Առավեղեան և Առավանեան տոհմերը, որոնք ապրում էին Այրարատի սահմաններում։ Ըստ Խորենացու Առավանեան տոհմը ծագում է հին թագավորներից, իսկ Առավեղեանը՝ Սաթենիկ արքայադստեր ազգականներից, ալաններից, որոնք նրա հետ միասին եկել էին Հայաստան և դասվել նախարարությունների շարքը։ Պատմիչի բացատրությունը, անկախ նրա հավաստիությունից, ապացուցում է, որ այդ երկու տոհմերը ապրում էին թագավորական ոստանում՝ Այրարատում, բայց թե որտե՞ղ, այդ մասին հավաստի տեղեկություններ չկան[2]։

Շիրակին սահմանակից Այրարատի տերիտորիայում էին գտնըվում նաև Սահառունի իշխանների տիրույթները։ Բագրատունյաց Սմբատ շահնշահ թագավորի 1037 թվականի արձանագրություններից մեկի մեջ հիշատակված է Սահառունիք գյուղը, որը, ինչպես ասված է վիմագիր արձանագրության մեջ, թագավորը նվիրել է Հոռոմոսի վանքին, որ Բագրատունիների տոհմական հանգստարանն էր[3]։ Բացի դրանից, տեղեկություններ կան, որ Դավիթ

[1] Ըստ Խորենացու Ձիունական կոչվել է նախարարությունը ըստ նրանց պաշտոնի(ծառայության), որ կայանում էր այն բանում, որ նրանք ձյուն էին հայթայթում թագավորի ամառային աթոռանիստը։ Ավելի ճիշտ է այդ անունը առաջացած համարել ձյունոտ տեղանք-ից, որտեղ ապրել են Ձիունականները. հավանաբար նրանք ապրել են Արագածի լանջերին՝ Գնթունիների հարևանությամբ։

Վիճելի է նաև Սպանդունին առաջացած համարել Սպանդ-ից, Սպանդանոցի կառավարիչ իմաստով։ Հնարավոր է, որ Սպանդ-ը Սպանդարատի կրճատ ձևն է, որ ընդունված անուն էր Կամսարականների մոտ, և որ Սպանդունին այդ իշխանների շառավիղն է։

[2] Առաւեղեանը իր ձևով մոտենում է Արեղեան, Գաբեղեան ձևերին և հնարավոր է, որ Առաւեղեան իշխանները ապրում էին սրանց մոտիկ՝ Շիրակի սահմանագլխին՝ Օշնակ վայրում, որ ծանոթ է դեռևս Սեբեոսին և այժմ կոչվում է Ոշնակ, Թալիշի մոտ։ Առաւանեանը Արտաւան-եանի բարբառային ձևն է։ Արտաւանը Արշակունիների տոհմում ընդունված անուն է. կարող է պատահել, որ Առաւանեանները ծագում են նրանցից։

[3] Սարգսյան, Տեղագրութիւնք, էջ 166, «ի ՆՁԶ թւհ. Ես Սմպատ... ետու զիմ գեղս զՍահառունիս ի մեր հանգստարանս թագաւորաց ի տիեզերահռչակ վանս Հոռոմոսի», Ալիշան, Շիրակ, էջ 31։

Սահառունին՝ Հայաստանի Բյուզանդական մասի սպարապետը, Հերակլ կայսեր (մահ. 641) վերջին տարիներին Մրենում մի եկեղեցի է կառուցել[1]։ Հավանաբար այդ ժամանակ Մրենը պատկանում էր Սահառունի տոհմին. հիշյալ Սահառունիք գյուղը, համանուն իշխանների ոստանը, հավանաբար գտնվում էր Մրենի և Հոռոմոսի միջև։

Այրարատին հարավից հարում էին Բագրևանդը, Ծաղկոտնը և Կոգը կամ Կոգովիտը. Բագրևանդը գրավում էր Արածանիի երկու վերին գլխավոր բազուկների ավազանը. աջ բազուկի ակունքները կամ Ա լ ա-Դ ա ղ ի՝ հին Ծաղկէի լեռնաշղթայի նախալեռները կոչվում էին Ծաղկեոտն[2]։ Սրա կողքին, Արաքսի աջ վտակի ուղղությամբ, Մակու գետի ափերին գտնվում էր Կոգը։ Բագրևանդի կարևոր կետերից էր Բագավանը, այն վայրը, ուր այժմ գտնվում է Հովհաննես Մկրտչի՝ Սուրբ Կարապետ վանքը[3]։ Կոգում էր գտնվում Դարոյնք նշանավոր բերդը, այժմ՝ Բայազետ, իսկ Ծաղկէոտնում՝ Անգղ բերդը և Վարշակի հանքային ջրերի ակունքները[4], որոնք մինչև այժմ էլ գոյություն ունեն Դիադինի՝ հին Տառոնի[5] մոտ, իսկ Անգղը, ըստ երևույթին, պետք է որոնել Ալադաղի մոտակայքում։

Փավստոսը ծանոթ չէ Ծաղկեոտնին. Զարեհավան քաղաքը, ինչպես և Բագավանը նա տեղադրում է Բագրևանդում, մինչդեռ այլ աղբյուրներով Զարեհավանը համարվում է Ծաղկեոտնի քա-

[1] Հովհ. կաթողիկոս, էջ 46, «շինէր իսկ եկեղեցին գեղեցկայարմար, որ ի քաղաքագեղն Մրենս»։

[2] Փարպեցի, էջ 60 և 132, Ծաղկուտն և Ծաղկէոտն, Ասողիկի մոտ, էջ 266, և 278 Ծաղկոյոտն, ճիշտ ձևն է Ծաղկէոտն՝ ծաղկեայ-ոտն-ից, ծաղկազարդ լեռան ստորոտ, հմմտ. ներկայիս Ալա-դաղ՝ երփներանգ լեռ անվան հետ։

[3] Նույն տեղում, էջ 141, «Բագաւան ի նահանգին Բագրեւանդայ, ի լանջակողման լերինն, որ անուանի Նպատ, մօտ ի սուրբ տեղի մատրանն որպէս երկու քարընկեցօք», Նաև էջ 139։ Փավստոս, Ե, խգ, «ի Բագրեւանդ գաւառի ի Բագուան աւանի, որ է մօտ յաւերակն Զարեհաւանդ քաղաքի...», էջ 260, «մօտին առաջի սուրբ ոսկերացն Յովհաննու, որ կայր յայնմ գեւղ»։

[4] Փարպեցի, էջ 60, «ի գաւառն որ կոչի Ծաղկոտն, մերձ ի բերդն ամուր զոր Անգղն անուանեն, էջ 132, «Ի Ծարկէոտն, ի ջերմկին, որ կոչի Վարշակի։ Անգղ հիշվում է Պրոկոպիոսի մոտ, Pers. II 25, Ἀγγλῶν, Սեբեոսի մոտ, էջ 74, «ի Ծաղկոտանն, ի գիւղն որ կոչի Անգղն», նույնպես և Վարք Ոսկեանց, Սոփերք ԺԹ։

[5] Խորենացի, Բ, կբ, «զաւանն Տառօնոյ»։

*ղաք*[1]*։ Վերջինս քաղաքական միավոր չի հանդիսացել և, հավանաբար, պատկանել է Բագրևանդին։*

*Թագավորական շրջանում Կոգովիտը պատկանում էր Արշակունիներին, և այնտեղ՝ Դարոյնքում, պահվում էին արքայական գանձերը*[2]*։ Է դարում և դրանից հետո էլ մենք Կոգովիտը տեսնում ենք Բագրատունյաց իշխանների ձեռքին, և նշանավոր Դարոյնք բերդը համարվում էր նրանց ստանն ու տոհմական հանգստարանը*[3]*։ Թե ե՞րբ է այդ կալվածքը Արշակունիներից անցել Բագրատունիներին, ստույգ հայտնի չէ. Փավստոսի մոտ այս վերջինների տոհմական կալվածքը համարվում է Սպերը*[4]*։ Նկատի ունենալով այն, որ Ե դարի շարժումներին մասնակցել են նաև Բագրատունիները՝ հանձին Տիրոց իշխանի, թեև որպես Վասակի համախոհ, իսկ շարժմանը մասնակցում էին բացառապես Հայաստանի պարսկական մասի նախարարները, ապա պետք է ենթադրել, որ Բագրատունիները Սպերից բացի, որ գտնվում է Հայաստանի բյուզանդական մասում, կալվածքներ են ունեցել նաև Պարսկական Հայաստանում, և որ Տիրոցը հենց այդ Բագրատունիների ներկայացուցիչն էր։ Հնարավոր է, որ դեռևս այն ժամանակ նրանք տիրում էին Կոգ գավառին Դարոյնք բերդի հետ միասին, որ նրանց էր անցել Արշակունիների անկումից հետո։ Նույնիսկ հիմք կա կարծելու, որ Բագրատունիները սկզբից ի վեր ապրում էին այդ տեղերում, և եթե ընդունենք, որ կապ կա* Bagrata-*ի և* Bagra-vanda-*ի միջև, ապա Բագրևանդը կդառնա Բագրատունյաց տոհմական նախնական կալվածք*[5]*։ Մի քանի նկատառումներով, որոնք մենք կներկայացնենք նախարարական տների ծագման հարցը քննելիս,*

---

[1] *Թոնդրակյան աղանդի հիմնադրի հայրենիքը. Սմբատ Թոնդրակաց առաջինն ի Զարեհաւան գեղջէ ի Ծաղկոտն գաւառէ։*

[2] Փավստոս, *Դ, ա, «բերդն Դարաւնից որ է յերկրին Կոգայ, ուր կային գանձք Արշակունեացն»։*

[3] Սեբեոս, *էջ 68, «զմարմին Սմբատայ տարան... ի բնիկ հանգստարանսն եւ եդին ի տապանի ի գեւղն Դարիւնս, որ է ի Գոգովիտ գաւառի», նաև էջ 116։*

[4] Փավստոս, *Ե, խդ։*

[5] *Bagrat-vanda-*ից, որտեղ* vanda-*ն հին ձևն է ավելի ուշ ժամանակվա* gund-*ի, ի միջի այլոց, ռուն նշանակությամբ, հմմտ. վանդ-ակ։* Թեոֆիլակտոսի *մոտ III, 5 հանդիպում է* Βενδοσαβείρων *քաղաքը, որը գիտնականները նույնացնում են պարսկական հեղինակների* Gundē-šapur *քաղաքին։* Nöldeke, *Tabari*, p. 41։

Բագրատունյաց տոհմը առաջ է եկել Հայաստանի իրանական կամ ատրպատականյան ծայրամասում։ Բագրևանդը Բագրատունյաց տոհմի նախահայրենիք ընդունելը համընկնում է այս եզրակացությանը, որովհետև Բագրևանդը Ատրպատականից շատ հեռու չէ։

Քրիստոնեության տարածումով, երբ Բագավանում խաչ բարձրացվեց, Բագրևանդը այնտեղ գտնվող սրբություններով հանդերձ անցավ եկեղեցուն, ավելի ճիշտ՝ Գրիգոր Լուսավորչի կաթողիկոսական տոհմին։ Փարպեցին Բագավանը այլ կերպ չի կոչում, քան տուն, sc. Սուրբ Գրիգորի կալվածք։ Սահակ կաթողիկոսը թեև մեռավ Վաղարշապատում, բայց թաղվեց Բագրևանդի Բլուր գյուղում, որը, ըստ երևույթին, պատկանում էր նրա տոհմին։ Համենայն դեպս Սպերը չի կարող համարվել Բագրատունյաց սկզբնական գավառ, այլ միջին կետ է Հայաստանից Վրաստան տանող ճանապարհին։

Կենտրոնական երկրորդ նահանգը՝ Տ ա ր ու բ ե ր ա ն ը, ըստ Աշխարհացույցի, նույնպես կազմված էր 16 գավառներից։

1. Խոյթ
Ասպակունիք
Տարաւն
4. Ա<ր>շամունիք
Մարդաղի
Դասնաւորք
Տուարածատափ
8. Դալառ
Հարք
Վարաժնունիք
Բզնունիք
12. Երեւարք
Աղիովիտ
Ապահունիք
Կորի[1]
16. Խորխոռունիք[1]

Սրանցից իր հնությամբ և նշանակությամբ առավել կարևորը Տարոնն է, որը ծանոթ է դեռևս դասական հեղինակներին, regio T a u r a u n i t i u m[2], նրա լայն ճանաչման մասին է վկա-

[1] Աշխարհացույցի ընդարձակ խմբագրության մեջ պակասում են, հակառակ այն վկայության, թե գավառների ընդհանուր թիվը 16 է. լրացնում ենք ըստ համառոտ խմբագրության։

[2] Tacit. *Ann.* XIV 24, in regionem Tauraunitium. Proc. *Pers.* I p. 267, τὰ ἐπὶ Ταραύνων χωρία. Const. Porph. *de adm.* p. 182, Ταρῶν Tauraun-itis, որ անշուշտ սերտ կապի մեջ է Taurus լեռների անվան հետ, սեմական t-v-r։ Նույն ծագումն ունի նաև հետագայի Տարուբերանը Տարոյ-բերանից (հմմտ. մատչել՝ մուտչել-ից)-բարբառ. Տորուբերան։ Հարկ չկա Tauraunitis-ը ուղղել Taraunitis-ի, ինչպես այդ անում է Laqarde, *Ges. Abh.* 46 և Hübschmann, Ortsname, p. 325։

*յում նաև այն, որ նույնիսկ* Աշխարհացույցի *մեջ Տարուբերանը որոշվում է նրանով*[1]*։*

*Մեզ հետաքրքրող դարաշրջանում Տարոնին տիրում էր Մամիկոնյանների նախարարական տունը։ Նրանց իսկական գավառը համարվում էր Տայքը, ինչպես այդ երևում է Փավստոսից, որը բազմիցս այն կոչում է Մամիկոնյանների աշխարհ*[2]*։ Տայքը Մամիկոնյանների նախահայրենիքն է, որի մասին մենք կխոսենք հետո։ Թե երբ են նրանք Տարոն մտել, ստույգ հայտնի չէ։ Հաստատապես գիտենք, որ նրանք Դ դարում արդեն այնտեղ էին։ Փավստոսի ասելով՝ նրանց էր պատկանում Եփրատի ափին ընկած Ողական անառիկ ամրոցը, այնտեղ էր նստում Պապ թագավորի սպարապետ հայտնի Մուշեղ Մամիկոնյանը*[3]*։ Նույն պատմիչը հայտնում է, որ Արշակի թագավորության ժամանակ Մամիկոնյան իշխանները՝ դժգոհ լինելով թագավորից, Արծրունի և Ռշտունի նախարարական տոհմերի նկատմամբ դաժան հաշվեհարդարի պատճառով, լքեցին նրան և գնացին իրենց նահանգը՝ Տայք և «Թողին,— ավելացնում է պատմիչը,— գայլ տուն իւրեանց»*[4]*. այլ տուն ասելով այստեղ հասկացվում է Տարոնը։*

*Տարոնում կային նաև եկեղեցական կալվածքներ։ Իշխան Մարդպետը, այցելելով Աշտիշատի սուրբ վայրերը, հիացավ Ներսես կաթողիկոսի աթոռանիստի գեղատեսիլ դիրքով և նախանձով լցված՝ սկսեց նախատել Տրդատ թագավորին այն բանի համար, որ այդպիսի հրաշալի տեղը նա տվել է, պատմիչի խոսքերով ասած, կանացի հագուստով մարդկանց, այսինքն՝ հոգևորականներին*[5]*։*

---

[1] Աշխարհացոյց, *Տարուբերան, որ է Տարօն։*

[2] Փավստոս, *Գ, ժը, «արք ի Մամիկոնեան տոհմէն... չոգան յաշխարհն իւրեանց յամուրս Տայոց եւ թողին գայլ տուն իւրեանց...», Դ, բ, «գտանէր զնոսա (զՄամիկոնեանս) յամուրս աշխարհին Տայոց յիւրեանց աշխարհին», Դ ժը, «գտանէին (զՄամիկոնեանն) յիւրում գաւառին ի Տայս, յիւր ամուր բերդին որում անուն էրախանի կոչի».* Փարպեցի, *էջ 111, «Վարդ (Մամիկոնեան) մնացեալ էր տղայ ի դայեակս իւր ի Տայս». Հմմտ. էջ 73, 121, 135։*

[3] *Նույն տեղում, Ե, դ, «Մուշեղ... էր ի նմին գաւառին (Տարօն. յիւրում բերդին՝ որում Ողական կոչեն, որ կայ ի վերայ գետոյն Եփրատայ»։*

[4] *Նույն տեղում, Գ, ժը։*

[5] *Նույն տեղում, Գ, ժդ, «էր Հայր մարդպետ ի գաւառն Տարաւնոյ ընդ իւր զինչս տեսանել... գնէր թշնամանս Տրդատայ արքայի... զհարդ, ասէ, զայս-*

*Այսպիսով, Տարոնի մի մասը Ողականի հետ միասին պատկանում էր Մամիկոնյաններին, իսկ մյուս մասը Աշտիշատի հետ՝ եկեղեցուն կամ, ավելի ճիշտ, կաթողիկոսական տանը։*

*Խորենացու վկայությունների համաձայն Աշտիշատը սկզբում Վահունի քրմական տոհմի ձեռքին էր, իսկ հետո այդ տոհմը հեռացվում է քրմությունից, և Աշտիշատն անցնում է արքունիքին[1]։ Ճշմարտությունն այն է, որ երբ հեթանոսական տաճարների տեղը կառուցվեցին քրիստոնեական սրբավայրեր, քրմական նախկին կալվածքները Աշտիշատի հետ միասին դարձան եկեղեցու սեփականություն. այդ բանը հաստատում են Մարդպետի քիչ առաջ մեջ բերած խոսքերը, ըստ որոնց Աշտիշատի փոխանցումը եկեղեցուն վերաբերում է Արշակունիների առաջին քրիստոնյա թագավորի՝ Տրդատի ժամանակներին։*

*Նույն Խորենացին պնդում է, որ Ողականին սկզբում տիրում էին Ս լ կ ո ւ ն ի իշխանները, որոնք, սակայն, պարսից թագավորի հետ Տրդատի դեմ նյութած դավադրությանը մասնակցելու պատճառով շնորհազուրկ են արվում։ Մամիկոնյանները հնազանդեցրին Սլկունիների տոհմին և թագավորի հրամանով որպես վարձատրություն ստացան նրանց ժառանգությունը[2]։*

*Տարօրինակ է, որ Խորենացին տեղյակ չէ, որ Տայքը Մամիկոնյաններին է պատկանել։ Պատմելով Տրդատի ժամանակ նրանց Հայաստան գալու առասպելը, պատմիչը չի նշում նրանց բնակավայրը. նրա վկայությամբ Տրդատը նրանց որոշակի տեղ չի հատկացնում, այլ նրանց սիրալիր ընդունելով, տալիս է «իւր տեղի աղխի նորա և ռոճիկ ի կերակուր, փոփոխելով տեղ ի տեղւոջէ ցբովանդակ ամս», այսինքն՝ մինչև Սլկունիների հետ պատահած միջադեպը, երբ նրանք ժառանգեցին այս վերջինների տիրույթները[3]։ Մամիկոնյանների տոհմային նահանգի մասին պատմիչի*

*պիսի տեղիս կանանցահանդերձ մարդկան տանել է և ոչ արանց», Փարպեցի, էջ 38։ Սահակ կաթողիկոսը թաղվեց «ի գաւառն Տարաւնոյ, ի բնիկ գիւղն իւր սեպհական, յանուանեալն Աշտիշատ»։*

[1] Խորենացի, *Բ, ժբ, ժդ։*

[2] *Նույն տեղում, Բ, ձդ։*

[3] *Նույն տեղում, Բ, ձա, Ողական ամրոցը այժմյան Ախկանն է Եփրատի վրա, նրանից ոչ հեռու Սուլուխ գյուղն է, որտեղ գտնվում է գետանցը՝ Մուշից հյուսիս։ Խորենացու դատողությունները, անտարակույս, հիմնված են Սլկունի և* Sülüch-*ի նմանության վրա։*

յում նաև այն, որ նույնիսկ Աշխարհացույցի մեջ Տարուբերանը որոշվում է նրանով[1]։

Մեզ հետաքրքրող գարաշրջանում Տարոնին տիրում էր Մամիկոնյանների նախարարական տունը։ Նրանց իսկական գավառը համարվում էր Տայքը, ինչպես այդ երևում է Փավստոսից, որը բազմիցս այն կոչում է Մամիկոնյանների աշխարհ[2]։ Տայքը Մամիկոնյանների նախահայրենիքն է, որի մասին մենք կխոսենք հետո։ Թե երբ են նրանք Տարոն մտել, ստույգ հայտնի չէ։ Հավաստապես գիտենք, որ նրանք Դ դարում արդեն այնտեղ էին։ Փավստոսի ասելով՝ նրանց էր պատկանում Եփրատի ափին ընկած Ողական անառիկ ամրոցը, այնտեղ էր նստում Պապ թագավորի սպարապետ հայտնի Մուշեղ Մամիկոնյանը[3]։ Նույն պատմիչը հայտնում է, որ Արշակի թագավորության ժամանակ Մամիկոնյան իշխանները՝ դժգոհ լինելով թագավորից, Արծրունի և Ռշտունի նախարարական տոհմերի նկատմամբ դաժան հաշվեհարդարի պատճառով, լքեցին նրան և գնացին իրենց նահանգը՝ Տայք և «թողին,— ավելացնում է պատմիչը,— զայլ տուն իւրեանց»[4]. այլ տուն ասելով այստեղ հասկացվում է Տարոնը։

Տարոնում կային նաև եկեղեցական կալվածքներ։ Իշխան Մարդպետը, այցելելով Աշտիշատի սուրբ վայրերը, հիացավ Ներսես կաթողիկոսի աթոռանիստի գեղատեսիլ դիրքով և նախանձով լցված՝ սկսեց նախատել Տրդատ թագավորին այն բանի համար, որ այդպիսի հրաշալի տեղը նա տվել է, պատմիչի խոսքերով ասած, կանացի հագուստով մարդկանց, այսինքն՝ հոգևորականներին[5]։

---

[1] Աշխարհացոյց, Տարուբերան, որ է Տարօն։

[2] Փավստոս, Գ, ժը, «արք ի Մամիկոնեան տոհմէն... չոգան յաշխարհն իւրեանց յամուրս Տայոց եւ թողին զայլ տուն իւրեանց...», Դ, բ, «զտանէր զնոսա (զՄամիկոնեանս) յամուրս աշխարհին Տայոց յիւրեանց աշխարհին», Դ ժը, «զտանէին (զՄամիկոնեանն) յիւրում գաւառին ի Տայս, յիւր ամուր բերդին որում անուն Երախանի կոչին». Փարպեցի, էջ 111, «Վարդ (Մամիկոնեան) մնացեալ էր տղայ ի դայեակս իւր ի Տայս». Հմմտ. էջ 73, 121, 135։

[3] Նույն տեղում, Ե, գ, «Մուշեղ... էր ի նմին գաւառին (Տարօն. յիւրում բերդին՝ որում Ողական կոչեն, որ կայ ի վերայ գետոյն Եփրատայ»։

[4] Նույն տեղում, Գ, ժը։

[5] Նույն տեղում, Դ, ժդ, «էջ Հայր մարդպետ ի գաւառն Տարաւնոյ ընդ իւր զիւղսն տեսանել... դնէր թշնամանս Տրդատայ արքայի... զկարգ, ասէ, զայս-

Այսպիսով, Տարոնի մի մասը Ողականի հետ միասին պատկանում էր Մամիկոնյաններին, իսկ մյուս մասը Աշտիշատի հետ՝ եկեղեցուն կամ, ավելի ճիշտ, կաթողիկոսական տանը։

Խորենացու վկայությունների համաձայն Աշտիշատը սկզբում վահունի քրմական տոհմի ձեռքին էր, իսկ հետո այդ տոհմը հեռացվում է քրմությունից, և Աշտիշատն անցնում է արքունիքին[1]։ Ճշմարտությունն այն է, որ երբ հեթանոսական տաճարների տեղը կառուցվեցին քրիստոնեական սրբավայրեր, քրմական նախկին կալվածքները Աշտիշատի հետ միասին դարձան եկեղեցու սեփականություն. այդ բանը հաստատում են Մարդպետի քիչ առաջ մեջ բերած խոսքերը, ըստ որոնց Աշտիշատի փոխանցումը եկեղեցուն վերաբերում է Արշակունիների առաջին քրիստոնյա թագավորի՝ Տրդատի ժամանակներին։

Նույն Խորենացին պնդում է, որ Ողականին սկզբում տիրում էին Սլկունի իշխանները, որոնք, սակայն, պարսից թագավորի հետ Տրդատի դեմ նյութած դավադրությանը մասնակցելու պատճառով ջնջհազուրկ են արվում։ Մամիկոնյանները հնազանդեցրին Սլկունիների տոհմին և թագավորի հրամանով որպես վարձատրություն ստացան նրանց ժառանգությունը[2]։

Տարօրինակ է, որ Խորենացին տեղյակ չէ, որ Տայքը Մամիկոնյաններին է պատկանել։ Պատմելով Տրդատի ժամանակ նրանց Հայաստան գալու առասպելը, պատմիչը չի նշում նրանց բնակավայրը. նրա վկայությամբ Տրդատը նրանց որոշակի տեղ չի հատկացնում, այլ նրանց սիրալիր ընդունելով, տալիս է «իւր տեղի ազխիւ նորա և ռոճիկ ի կերակուր, փոփոխելով տեղ ի տեղւոջէ ցբովանդակ ամս», այսինքն՝ մինչև Սլկունիների հետ պատահած միջադեպը, երբ նրանք ժառանգեցին այս վերջինների տիրույթները[3]։ Մամիկոնյանների տոհմային նահանգի մասին պատմիչի

---

պիսի տեղիս կանանցահանդերձ մարդկան տուեալ է եւ ոչ արանց», Փարպեցի, էջ 38։ Սահակ կաթողիկոսը Թաղվեց «ի գաւառն Տարաւնոյ, ի բնիկ գիւղն իւր սեպհական, յանուանեալն Աշտիշատ»։

[1] Խորենացի, Բ, ժբ, ժդ։

[2] Նույն տեղում, Բ, ձդ։

[3] Նույն տեղում, Բ, ձա, Ողական ամրոցը այժմյան Ախկանն է Եփրատի վրա, նրանից ոչ հեռու Սուլուխ գյուղն է, որտեղ գտնվում է գետանցը՝ Մուշից հյուսիս։ Խորենացու դատողությունները, անտարակույս, հիմնված են Սլկունի և Sülüch-ի նմանության վրա։

ակնհայտ անտեղյակության դեպքում Մամիկոնյանների Տարոնում հաստատվելու ժամանակի մասին նրա հաղորդումը առանձնապես վստահություն չի ներշնչում։ Հնարավոր է, որ Մամիկոնյանները Տարոնը ձեռք են բերել Տրդատի որդու՝ Խոսրովի օրոք, ի թիվս այն կալվածքների, որ թագավորը շնորհեց Վաչե սպարապետին նրա կողմից Սանեսանի արշավանքը հերոսաբար ետ մղելուց հետո[1]։ Սահակ կաթողիկոսի մահից հետո Մամիկոնյանները նրա կտակի համաձայն ժառանգում են նաև Տարոնում գտնվող կաթողիկոսական կալվածքները[2]։ Հաշտյանքի սահմանագլխին, Տարոնի արևմտյան ծայրամասերին տիրում էին Պ ա լ ու ն ի[3] իշխանները։

Տարոնին հարում էին Ա ր շ ա մ ու ն ի ք և Ա ս պ ա կ ու ն ի ք գավառները, որոնք նախապես մտնում էին Տարոնի կազմում։ Դեռևս Փավստոսի ժամանակ Արշամունիքը համարվում էր Տարոնի մի մասը, իսկ Փարպեցու մոտ այն հանդես է գալիս իբրև առանձին գավառ[4]։ Անվանումը ծագել է Արշամից, որը, ամենայն հավանականությամբ, կապ ունի Արշամաշատ քաղաքի հիմնադրի հետ։ Տարոնի արևմտյան ծայրում գտնվող Նեմրութ-դաղ լեռների վրա համեմատաբար մոտ ժամանակներս հայտնաբերված մի արձանագրության մեջ նույնպես խոսվում է ինչ-որ Արշամ թագավորի մասին[5]։ Ըստ երևույթին հին ժամանակներում Եփրատի հովտում եղել է Արշամունյաց իշխանական տոհմը. սրանց հաջորդները

---

[1] Փավստոս, Գ, ը, եւ Վաչէի պատերազմի դէպքն Ջանջանակն եւ զԶրաբաշխս եւ Ցլու գլուխ ամենայն գաւառակաւքն հանդերձ։ Այդ վայրերի տեղադրությունը անհայտ է. Սաֆեր, ժԹ, Զրաբաշխ=Բագրևանդի Սուկավետ լեռներին։ Ցլու գլուխ, ենթադրաբար թարգմանությունն է Տավրոսի, ταῦρος=ցուլ, եզ, pro Տավրոյ գլուխ, հմմտ. Տավրոյ բերան։

[2] Փարպեցի, էջ 37։

[3] Տե՛ս վերը, էջ 28։

[4] Փավստոս, Գ, ժե, «յԱրշամունեաց տեղեացն ի նահանգէն Տարաւն գաւառէն», Փարպեցի, էջ 149, «գաւառ Արշամունեաց», նույն էջում «տեսեալ խորսայ, որ էր ի գաւառէն Արշամունեաց ի գեղջէն Ճիրմաց, դայեկորդի տեառնն Ճիրաւկայ Կամսարականին» արտահայտության մեջ պետք է կարդալ Ա ր շ ա ր ու ն ե ա ց, փոխ. Արշամունեաց։ Բացի այն, որ Կամսարականները ոչ մի առնչություն չունեին Արշամունիքի հետ, Ասողիկից հայտնի է, որ Ճիրիմն գտնվում էր Արշարունիքում «ի գլուխս Արշարունեաց գաւառին, որում Ճ ի ր ի մ ն կոչեն», էջ 197։

[5] Babelon, *Les rois de Syrie, d' Arménie et de Commagène*, 193. 211։

Բինգյոլի սարերում, այսինքն՝ այն վայրում, որ պահել է նրանց անունը, շարունակել են իրենց գոյությունը համեմատաբար երկար ժամանակ։ Հայ հին մատենագրության մեջ Արշամունիքը համարվում է աշխարհագրական տերմին։ Արշամունյաց տոհմն այն ժամանակ արդեն գոյություն չուներ, և Ե դարում նրանց կալվածքները գտնվում էին Մ ա ն դ ա կ ու ն ի նախարարական տան ձեռքին[1]։

Մատենագրության մեջ Ասպակունի իշխանների մասին նույնպես հիշատակություն չկա. Արշամունիքի նման Ասպակունիքն էլ ունի միայն աշխարհագրական վայրի նշանակություն և Աշխարհացույցի մեջ այդպես էլ կոչվում է՝ Ասպակունեաց կիրճ։ Ասպակունիքը Խոյթին հարևան լեռնային հովիտներից մեկն է, որն ընկած է Կարա-սու գետի (հին Մեղրագետ) ձախ կողմում, Խանդոշ լեռներում՝ Սասունի դիմաց։ Իր կոպիտ բարքերով ու բարբառով Խոյթը տարբերվում էր Տարոնից ու Հայաստանի մյուս մասերից և կազմում էր ինքնուրույն շրջան[2]։

Տարուբերանի մյուս կարևոր շրջանը Հ ա ր ք ն էր Մ ա ն ա զ կ ե ր տ կենտրոնով[3]։ Սա Մ ա ն ա վ ա զ յ ա ն իշխանական տոհմի տիրույթն էր։ Նրան սահմանակից Ապահունիք, Խորխոռունիք, Բզնունիք գավառները նախապես մտնում էին Հարք գավառի մեջ, որ հետո անջատվեցին որպես համանուն իշխանների տիրույթներ։ Այդ երևում է նրանից, որ ըստ ազգային ավանդության Մանավազը, Խոռը և Բազը, որոնք իբրև թե հանդիսանում են հիշյալ տների նախահայրերը, ազգակցական կապ են ունեցել միմյանց հետ. առաջին երկուսը Հայկի եղբայրներն էին, իսկ Բազը՝ Մանավազի

[1] Ասողիկ, էջ 81, «Յոհան Մանդակունի, որ էր ի գաւառէն Արշամունեաց»։

[2] Թովմա Արծրունի, էջ 121, անվանում է նրանց «գազանաբարոյք արիմարբուք», և կարծում է, որ «յաղագս խրթնի եւ անհետազօտելի խօսիցն եւ բարուցն կոչին Խութ», հմմտ. Georg Cypri. p. 48, εἰσὶ δὲ καὶ οἱ οἰκοῦντες εἰς τὸ ὄρος τοῦ Ταύρου πλησίον τοῦ αὐτοῦ κλίματος (sc. μεγάλης ᾿Αρμενίας) λαοὶ β΄ ὀνομαζόμεναι ὁ μὲν εἷς Χοθαῖται ὁ δὲ ἕτερος Σανασουνῖται. Հովհան Մամիկոնյանի ժամանակ Խութը պատկանում էր Տարոնի իշխաններին, այսինքն՝ Մամիկոնյաններին, «առեալ զՄուշեղ զտէրն Մշոյ եւ Խութայ Տարօնոյ իշխանն եւ Սասնոյ», էջ 13։

[3] Փավստոս, Ե, իթ, Մանազկերտ, Զ, բ, Մանաւազկերտ, Գ, դ, Մանաւազակերտ։ Փարպեցի, էջ 44, Մանձկերտ։ Const. Porph. *De Adm.* p. 195. Μαντζικίερτ.

*որդին. Հայկի սերնդից է ծագում նաև Ապահունյաց տոհմը[1]։ Ապահունիքում էին գտնվում նաև Ա ր ր ա հ ա մ յ ա ն իշխանների կալվածքները։*

*Խոսրով Թագավորի օրոք Մանավազյանները Որդունի իշխանների հետ ունեցած ներքին կռիվների ժամանակ անհետ կորան. Թագավորի հրամանով երկու տոհմերն էլ բնաջնջվեցին, ըստ որում Մանավազյանների կալվածքները բաժին ընկան Աղբիանոս եպիսկոպոսին, իսկ Որդունիներինը՝ Բասենի եպիսկոպոսին[2]։*

*Դատաքեն իշխանի մահով, որը մահապատժի ենթարկվեց դավաճանության համար, ընդհատվեց նաև Բզնունյաց նախարարական տոհմը։ Նրա կալվածքները հարքունիս գրավեցին և հետո, ըստ երևույթին, անցան Բզնունյաց[3] եպիսկոպոսին։ Ա պ ա հ ո ւ ն ի ք ը, ըստ Փավստոսի, ընկած է Մ ա ս ի ք մեծ լեռան ստորոտում. այստեղ գտնվում էր Աղիորսք[4] բնակավայրը. խոսքը այստեղ Արարատի մասին չէ, այլ այն լեռան, որ* Աշխարհացույցի *մեջ կոչվում է Նեխ Մասիք, այժմ՝ Ս ի փ ա ն[5]։*

*Նրանից դեպի արևմուտք՝ լճափնյա շերտի ուղղությամբ տարածվում էր Բզնունիքը, դեպի հյուսիս՝ Ապահունիքը, իսկ դեպի արևելք՝ Ա ղ ի ո վ ի տ ը։ Ըստ* Աշխարհացույցի *Արածանին հոսում էր ամբողջ Ապահունիքի միջով մինչև Բզնունիքի սահմանները. նշանակում է երկու գավառները սահմանակից էին միմյանց. Ապահունիքը գրավում էր Արածանիի հոսանքը մինչև նրա՝ Մանազկերտի մոտ դեպի արևմուտք թեքվելը, իսկ գետից դեպի հարավ՝ մինչև Վանա լիճը ընկած էր Բզնունիքը։ Մանազկերտը գտնվում էր Ապահունիքի և Հարքի սահմանագլխին և այդ պատ-*

---

[1] Խորենացի, *Ա, ժբ և Բ, ը, «զնախարարութիւնն Ապահունեաց եւ զՄանաւազեանն եւ զԲզնունեանն ի նոյն զաւակացն Հայկայ»։*

[2] Փավստոս, Գ, դ։

[3] *Նույն տեղում, Գ, ը, Դ, ժդ, Բզնունիքը հիշված է եկեղեցական գավառների շարքում։*

[4] *Նույն տեղում, Գ, ի, քաղաք Աղիորսք, այստեղ քաղաքը գործ է ածվում, երևի, հին իմաստով՝ որպէ համար հատկացված ցանկապատված վայր։ Աղիորսքը ընկնում է Աղի-հովտում, Փավստոսի մոտ Աղոյ-հովիտ, Աղիտ-ովիտ՝* Աշխարհացույցի *մեջ. Դ, բե. երկու ձևն էլ ճիշտ է. Աղիտ կամ Աղա նշանակում է աղահանք, աղի բառից։*

[5] *Սիփան—հին Սիպան, ըստ* Աշխարհացույցի, *էջ 31, նախապես Վանա լճի կղզյակներից մեկի անունն էր, որ հետո փոխանցվեց Նեխ Մասիք լեռներին։*

ճառով էլ պատմիչները այն տեղադրում են մերթ Ապահունիքում, մերթ՝ Հարքում[1]։

Կոր գավառը, իսկն ասած, հանդիսանում է Բզնունիքի մի մասը ճիշտ այնպես, ինչպես Աղիովիտը՝ Ապահունիքի։ Մանազկերտից ցած, ձախ կողմից Արածանիի մեջ թափվում է Կոր-սու գետակը, որ սկիզբ է առնում Բուլամա փոքրիկ լճակից. երևի այդտեղ էր գտնվում հին Կորը։ Այս շրջանում՝ այժմյան Բ ու լ ա ն ը խ ու մ էր գտնվում խորխոռունիքը Բզնունիքի և Կորի միջև՝ Ն ա զ ու կ լճի մոտակայքում։ Կորի և խ ո ր խ ո ռ ու ն ի ք ի տեղադրությունը ենթադրական է, քանի որ Աշխարհացույցի մեջ դրանց մասին հիշատակություն չկա[2]։

Մնացյալ գավառներից Երևարքը գտնվում էր լճի հարավային ափին՝ Աղձնիքի հարևանությամբ։ Մարդաղին գրավում էր Արաքսի ակունքները՝ Բինգյոլի հյուսիսային լանջերում։ Նրանից դեպի արևելք՝ Վարաժնունիքի և Հարքի վերևում հերթով գալիս էին Դասնավորը, Տավարածատափը և Դալառը, որոնք տարածվում էին մինչև Արածանի գետը։ Այդ նկարագրության համաձայն Դասնաւորը գտնվում է Արաքսի հովտում, Մարդաղիի կողքին, Տավարածատափը այժմյան Կարայազն է, Դալառը՝ Ելմալիի հովիտն է, Վարաժնունիքը Խնուսն է՝ Բինգյոլից բխող Արածանիի վտակի վերին հոսանքի վրա։ Հարքը սահմանակից է սրան Արածանի գետով[3]։

Առաջին երեք սահմանակից գավառները, ըստ երևույթին, Մարդաղիի եպիսկոպոսի սեփականությունն էին. պատմական

---

[1] Գիրք թղթոց, էջ 223, «է ժողով ի Մանազկերտ գեաւղի սահմանագլուխ վիճակին Հարքայ». նույն տեղում, «ի մի վայր յԱպահունեաց գաւառ ի գեղն Մանազկերտ»։ Զենոբ Գլակ, էջ 40, «ի գաւառն Ապահունեաց ի քաղաքագեղն Մանձկերտ», Ասողիկ, էջ 277, «ի գաւառն Հարք ի Մանազկերտ քաղաք»։

[2] Const. Porph. *De Adm.* p. 193, Μαντζικίερτ μετὰ τῆς χώρας τοῦ Ἀπαχουνῆς καὶ τοῦ Χαρκὰ καὶ τοῦ Κορή. *ib.* p. 195, τὸ Μαντζικίερτ... τό τε Ἀπαχουνῆς καὶ τὸ Κορὴ καὶ τὸ Χάρκα.

[3] Դասնաւորի փոխարեն երբեմն հանդիպում է Գաստովոր, Տուարածատափ, որ նշանակում է հովիվների դաշտ, համապատասխանում է Կարայազ հարթավայրին։ Դալարը՝ կ ա ն ա չ, համապատասխանում է Ելմալիին, որ նշանակում է խնձորենիների հովիտ։ Խնուսը ծագում է միջին հայերեն Խնունիք, Խնունիս-ից, Ալիշան, Հայապատում, էջ 550։

գրականության մեջ այդտեղի իշխանների մասին ոչինչ հայտնի չէ։ Վարաժնունիքը իշխանական տիրույթ էր[1]։

Վ ա ս պ ու ր ա կ ա ն  ա շ խ ա ր հ ը, երրորդ կենտրոնական նահանգը, ըստ Աշխարհացույցի կազմված էր 35 գավառներից, թեև այնտեղ բերված են միայն 32-ի անունները։ Միայն այս նահանգներում ավելի շատ գավառներ կան, քան Ա յ ր ա ր ա տ ու մ և Տ ա ր ու բ ե ր ա ն ու մ միասին վերցրած։ Աշխարհացույցի հեղինակը ոչ բոլոր գավառների դասավորությանն է ծանոթ. առաջին 18-ը նրան ավելի լավ են ծանոթ, քան մնացածները։ Պետք է նկատել, որ առհասարակ հայկական նահանգների նկարագրությունը Աշխարհացույցում տրվում է ոչ հավասար. 15 աշխարհներից մանրամասն նկարագրված են միայն Այրարատը, Տարուբերանը, IV Հայքը և Տայքը. մյուսները միայն թվարկվում են իրենց ստորաբաժանումներով՝ առանց նշելու այս վերջիններիս տեղադրությունը։ Հենց այսպիսի անհավասարություն է նկատվում նաև Վասպուրականի նկարագրության մեջ։ Նման հակասական վերաբերմունքը հավանաբար պետք է բացատրել նրանով, որ Աշխարհացույցի հեղինակը հավասարապես լավատեղյակ չէր նկարագրվող բնակավայրերին. կենտրոնական նահանգները անհամեմատ ավելի հանգամանորեն են ներկայացվում, քան ծայրամասերը։ Աշխարհացույցի համառոտ խմբագրության մեջ նկարագրության անհավասարաչափությունը վերացվում է նրանով, որ այնտեղ միայն մեջ է բերվում յուրաքանչյուր նահանգի գավառի անունը՝ առանց բացատրական նշումների։

18 գավառները նկարագրելիս Աշխարհացույցը հետևում է

---

[1] Թե ինչ առնչության մեջ է գտնվում Վարաժնունիքը Այրարատի համանուն իշխանների հետ, անհայտ է։ Ըստ Խորենացու Ադիովիտը հանձնված էր Արշակունիների երկրորդական շառավիղներին. արդյո՞ք այս տեղեկության մեջ չի անդրադարձել այն հանգամանքը, որ Այրարատից մի քանի տոհմեր, հավանորեն ոստանիկներից, տեղափոխվել են Տարոն։ Hübschman-ը Ortsname, p. 328, ենթադրում է, որ արաբական հեղինակների Բաջունիսը باجنيس ավելի շատ համապատասխանում է Վաժնունիքին, քան թե Ապահունիքին, ինչպես կարծում է Ղազարյանը, Armenien, p. 21 և 74։ Առավել հիմնավոր կլիներ համեմատել ավելի հայտնի Բզնունիքի հետ, քայց այդ նահանգը արաբները կոչում էին, ինչպես երևում է, գլխավոր քաղաքի՝ Խլաթի անունով, որ Բաջունիսի հետ միասին հիշատակվում է, օրինակ՝ Իբն-Խորդադբեհի մոտ, էջ 122։ Պետք է կարդալ Պահունիս=(Ա)պահունիս։

*որոշակի սկզբունքի՝ թվարկումը սկսում է հարավից հյուսիս՝ երեք շարքով. առաջինն սկսվում է հարավում գտնվող Ռշտունիքից և վերջանում Արարատի ստորոտում գտնվող Կոգովիտին հարող Գառնիով. Ռշտունիք, Տոսպ, Բզնունիք, Արճիշակովիտ, Աղբերանի, Գառնի մինչև Կոգովիտ։*

*Երկրորդ շարքը առաջինին զուգահեռ արևելքից անցնում է Բուժունիք, Առնոյոտն*[1]*, Անձևացիք, Տրպատունիք, Երվանդունիք, Մարդաստան, Արտազ մինչև Կոգովիտ։*

*Երրորդ շարքը նույն ուղղությամբ ընկնում է ավելի արևելք՝ Ակե, Մեծ Առբակ, Անձախի ձոր, Թոռնավան, Ճուաշ-ռոտ, մինչև Արաքս։*

*Այս գավառների տեղը մեծավ մասամբ հայտնի է։ Ռշտունիքը Ո ս տ ա ն կենտրոնով Վանա լճի հարավ-արևելյան ափերն է, Տ ո ս պ ը Վանի շրջակայքն է, Ա ր ճ ի շ ա կ ո վ ի տ ը ընկնում է Վանից հյուսիս՝ Արճակ լճի և նրա կողքից հոսող Մարմետ գետի շրջանում*[2]*։ Ա ղ բ ե ր ա ն ը, ավելի ճիշտ Ա ղ բ ե ր ա ն ի ն, ընկած էր լճի հյուսիսային անկյան մոտ՝ Բենդիմահի գետի վրա և հետագայում գլխավոր քաղաքի անունով կոչվեց Բ ե ր կ ր ի*[3]*։ Նույն*

[1] *Առնոյ-ոտնը* Աշխարհացույցի *մեջ գրված է Երվանդունիքից հետո, համառոտ խմբագրության մեջ՝ Բուժունիքից հետո։ Գերադասելի է վերջին ընթերցումը, որովհետև Առնոյ-ոտն՝ Առնոյ լեռան ստորոտը ընկնում էր Անձևացիքից հարավ։ Մոկսի տակ գտնվող լեռնաշղթան այժմ էլ կոչվում է Առնոս-դաղ։ Առնո-սը, ըստ երևույթին, առաջացել է Առնոյ-սար-ից, որի մեջ հայկական սարը փոխարինվել է թուրքական դաղով, ընդ որում լեռան անունը հասկացվել է իբրև Առնոյ-սար։ Այդպես էր կոչվում հնում այն լեռնաշղթան, որ ձգվում էր Մոկսից դեպի Ջուլամերկ. նրա հենց այն մասը, որ գտնվում էր Ջուլամերկի վերևը, կազմում էր Առնոյ-ոտն։*

[2] Աշխարհացույցի *մեջ գրված է Արճիշահովիտ փոխ. համառոտ խմբագրության Արճիշակովիտի։ Այժմյան անունն է Արճակ, որ հին Արճիշակի համառոտ ձևն է՝ Արճէշի նվազական ձևը։ Արճեշը քաղաք է Վանա լճի հյուսիսային անկյունում. հնում այդ անունն էր կրում նաև լճի մի մասը, Արճեշի ծոցը, իսկ ապա նաև ամբողջ լիճը. Ստրաբոնի* ἡ δὲ 'Αρσηνή, ἣν καὶ Θωπῖτιν καλοῦσιν *էջ 743—744, պետք է կարդալ* 'Αρσησή *և* Θωσπῖτιν=*Արճեշ և Տոսպ, որ Վանա լճի անուններն են։ Պլինիոսը VI 27, նույն անունը հիշատակում է* Arethusa *ձևով, որտեղ th-ն համապատասխանում է քմային ճ-ին։ Ի տարբերություն Արճեշի, Վանա լճի վերևում գտնվող լճակը կոչվում էր Արճիշակ, այսինքն՝ փոքր Արճեշ։ Թերևս արճեշը հայերից առաջ գոյություն ունեցող բնակչության լեզվով առհասարակ նշանակել է լիճ։*

[3] Ղևոնդ Վարդապետ, *էջ 146, «ի գաւառ Աղբերանի ի գեղն Բերկրի»։ Սե-*

*գետի վերին հոսանքի վրա ընկած էր Գաուկին Թոնդրեկ և Գ ու ր ե լեռների ստորոտի մոտ, որոնք Գաուկին բաժանում էին Կոգովիտից, այսինքն՝ Բայազետի շրջանից։*

*Երկրորդ շարքի սկզբի գավառները՝ Բուժունիքը և Անձևացիքը ընկած էին Բոհտան կամ արևելյան Տիգրիս գետի վերին հոսանքի վրա, որտեղ այժմ Նորդուզի շրջանն է, ընդ որում, Անձևացիքը գրավում էր Կանգովար՝ այժմյան Կանգովա քաղաքի և Հ ո գ ե ա ց վանքի շրջակայքը։ Նրանից հարավ ընկած էին Բուժունիքը և Առնոյոտնը, իսկ դեպի հյուսիս՝ Խոշաբ գետի վերին հոսանքի վրա, որի հովիտը կոչվում էր Հայոց ձոր, Տրպատունիքը և Երվանդունիքը*[1]*։ Այնուհետև դեպի հյուսիս Արճակ լճից մինչև Արտազ տարածվում էր Մարդաստանը։ Ըստ Խորենացու Արտազը ընկած էր Մասիս-Արարատից հարավ-արևելք և ավելի վաղ ժամանակներում կոչվում էր Շավարշան կամ Շավարշական։ Արտազում էր գտնվում Ե ղ ի ն դ ը, որտեղ բանակել էր Վահան Մամիկոնյանը Նիխորի հետ բանակցություններ վարելու ժամանակ, այն մինչև օրս էլ գոյություն ունի Մակուից մի քանի կիլոմետր հեռավորության վրա և կոչվում է Երինդ. այդտեղ է նաև Խայոտնը՝ հին Հացյունը։ Սրանով է որոշվում Արտազի տեղադրությունը, որ Մակու կենտրոնով գտնվում է Ակ-չայ՝ հին Տղմուտ գետի վրա*[2]*։*

*Գավառների երրորդ շարքը տարածվում է Ջավ գետի ակունքներից դեպի Արաքս, դրանք են Աղբակը, որ ներկայիս Աղբակի կազան է Բաշկալա քաղաքով, սրանից դեպի հարավ՝ Ակեն, դեպի հյուսիս՝ Անձախիձորը Կոտուր՝ հին Կոտոր գետի վրա համանուն քաղաքով, նրա կողքին, Կոտուրից արևմուտք Թոնրավանն է՝ Նկան, ներկայիս Նագան ամրոցով, այստեղ է գտնվում նաև մի*

---

բեռ, էջ 108, Const. Porph. p. 191։ *Արդյոք Գուրեն կապ չունի՞ Գաունիի հետ և Գիրասուրը՝ լեռան ստորոտին գտնվող գյուղը, արդյոք Գաունիձորից չի՞ ծագում։ Հմմտ. նաև Բայազետի գետի Գերեներիկ անվանումը։*

[1] Թովմա Արծրունի, էջ 197, «գլուխ ձորոյն Հայոց,—(և ոչ Հացոց, ինչպես տպագրված է,—որ հանէ յԵրուանդունի գաւառ»։ Խորենացի, Ա, ժ, այսպես է կոչվում նաև ներկայումս, Ինճիճյան, Աշխարհագր., էջ 144։

[2] Խորենացի, Բ, խթ, Փարպեցի, էջ 164, «ի գաւառն, որ կոչի Արտազ ի գեօղն, որ անուանեն Եղինդ...», նույն տեղում, էջ 69, «Արտազ հուպ ի գեօղն, որ կոչի Աւարայր, ի շրջափակ տեղի Տղմուտ դաշտին»։ Ըստ Վարդանի Աշխարհագրության «Արտազ Մակու է, ուր կայ սբ. առաքեալն Թադէոս»։ Հմմտ. Թովմա Արծրունի, էջ 259։

ուրիշ պատմական ամրոց՝ Սևանը, որ կանգնած էր Լիմբի ձորում։ Սևանը ներկայիս Սեյվան կալան է, որ ընկած է Արճակ լիճը Թափ-վաղ Մահմեդիկ գետի վրա. այդտեղ է գտնվում նաև Լիմ ավանը, որ, անկասկած, հին Լիմբն է[1]։

Ընծային ձորից այն կողմ տարածվում էր Խերական դաշտը, իսկ այնուհետև՝ Ծուաշը, որտեղ գտնվում էր Մարականը՝ Վասպուրականի իշխանների ձմեռանոցը։ Խերականը գտնվում էր Հեր քաղաքի՝ այժմյան Խոյի շրջակայքում, այժմ էլ Կըզըլ-չայի, հին Կարմիր-գետի ստորին հոսանքը կոչվում է Խար-դաշտ, այս գետի ափին ցույց են տալիս Մ ա ր ի ք ե ն դ գյուղը, որ թե՛ գիրքով և թե՛ անունով համապատասխանում է Մառականին[2]։

Վիճելի 13 գավառները, եթե դրանք պատկանելիս լինեին Աշխարհացույցի սկզբնական բնագրին, պետք է որ կազմեին չորրորդ շարքը՝ Կ ր ճ ո ւ ն ի ք և Մ ա ր ա ն դ ծայրակետերով։ Կոտորից հյուսիս գտնվում է Կ ո ւ ր չ ա ն բնակավայրը, որը կարելի է համեմատել Կրճունիքի հետ[3]։ Իսկ Մ ա ր ա ն դ ը հայտնի քաղաք է Ադրբե-

---

[1] Թովմա Արծրունի, էջ 233, «զամուրն Նկան ի Թոռնաւան (Աշխարհացույցի Թանրավանի փոխ.) գաւառի եւ զամուրն Կոտոր ի ձոր Ընծայից, զամուրն Սևանի ի փորն Լմբայ», հմմտ., նույն տեղում, էջ 275 «ի գաւառին Լումբայ կոչեցեալ փարակ»։ Նույն տեղում, էջ 226, «ձորն Ընծայից, որոյ ելքն ընդ գաւառն Հեր քաղաքի», նույն տեղում, էջ 264, «ընդ ձորն Անձահոյ եկն էջ ի Խերական կոչեցեալ դաշտ», նույն տեղում, էջ 271, «ի բերդն Կոտորոց ի ձորն Անձախոյ»։ Փարպեցի, էջ 72, «ազգ Ընծայնւոյ», Եղիշե, էջ 181 ընծայ<ն>ացի, նույնը, էջ 218, «ընծային», էջ 225 — ընծայնոց և վերջապես Գահնամակի մեջ՝ Ընծայեցի, Զորանամակում՝ Ընծաքին, փոխանակ ընծախին=ընծահին։ Երևի ճիշտ ձևն է ընծային-այ (Փարպեցու ընծայնւոյն պետք է կարդալ ընծայնոյ). ընծահին վրիպակից առաջ են եկել մյուս ձևերը. Թովմա Արծրունին, էջ 51, փորձում է ստուգաբանել բառը ան-ձախ, ձախել բառով, բայց այդ անհիմն է. կարող է պատահել, որ այդ ամենը հետագայի մեկնություն է։ Նկանը այժմյան Նազանն է (Hübschman, *Ortsname*, p. 136, հետևելով Ինճիճյանին՝ պնդում է, որ Նկանի տեղը հայտնի չէ)։ Նկանի տեղադրությունը հիմք է ծառայում Թոնրավանը փոխադրելու Արաքսի մոտակայքից, որտեղ այն դնում է Հյուբշմանը, Վանա լճի ավազանը։ Մի ուրիշ կարևոր բերդ՝ Սևանը, Սեյվան-կալան ռուսական քարտեզներում տեղադրված է Կոտորին, իսկ Լինչի գրքում՝ Վանին ավելի մոտ։

[2] Թովմա Արծրունի, էջ 264 «ընդ ձորն Անձահոյ եկն էջ ի Խերական դաշտ... անցանել ի ձմերոցսն արքունի, ի գաւառն Ծուաշ յաւանն Մառական». Նույն տեղում, էջ 254, «Մառական աւան, առ Կարմիրն կոչեցեալ գետով, որ իջանէ ի գետն Երասխ»։ Գետը հնում նույնպես կոչվում էր Ծուաշ-ռոտ, Ծ ո ւ ա շ գետ։

[3] Ըստ Թովմա Արծրունու, էջ 260. Մարդաստանից «ի յանցին դառնան

*ջանում. մյուս գավառները պետք է որ տեղադրված լինեին դրանց միջև, Խոյից մինչև Արաքս։ Բայց 13 գավառներից Գուկանը և Արտաշեսյանը մենք գտնում ենք Վանա լճի ավազանում. առաջինը նույնանում է Ռշտունիքի Գուկանք գյուղի հետ, իսկ երկրորդը՝ Վանից ոչ հեռու գտնվող Արտաշեսյան վայրի հետ*[1]*։ Սրանից երևում է, որ ոչ բոլոր 13 գավառներն էին ընկած Խոյի սահմաններում և, հետևաբար, այն ենթադրությունը, թե դրանք կազմում էին չորրորդ շարքը, վերանում է, և դրանով էլ ավելի է մեծանում կասկածը նրանց իսկության նկատմամբ*[2]*։ Սակայն վիճելի գավառները մեծ մասամբ հանդիսանում են փոքրիկ անկյուններ, թերևս հայտնի գավառների ստորաբաժանումներ, և այդ պատճառով էլ մեր հետապնդած նպատակի համար լուրջ նշանակություն չունեն։*

*Վասպուրականի պատմիչ Թովմա Արծրունին, որ քաջ ծանոթ է երկրի տեղագրությանը, պատմելով երկու եղբայրների՝ Գագիկի և Գուրգենի միջև հողերը բաժանելու մասին, թվարկում է Վասպուրականի գավառները, բաժանելով դրանք երկու խմբի՝ հյուսիս-արևմտյան և հարավ-արևելյան։ Թվարկելով առաջին խմբի՝ մեծ եղբոր՝ Գագիկի բաժնի գավառները, պատմիչը նշում է, որ «այսոքիկ գաւառք անուանիք, զոր յառաջին ժամանակս իւրոյ իշխանութեանն սեփականս իւր արարեալ ունէր հայրն նենգութեանն Մարդպետն կոչեցեալ...»*[3]*։ Արժեքավորն այս վկայության*

---

*ի Ճուաշ» (դեպի ձախ) և «ի Թոռնաւան գաւառ (դեպի աջ), անցեալ ընդ Կրճունեաց գաւառն», Կրճունի ծագում է ոչ թե կիրճ ունի-ից, ինչպես այն թվում է, այլ կրաւիճ ունի-ից. կրա-իճը կազմված է այնպես, ինչպես ատրպատ-իճ-ը և նշանակում է ք ու ր դ։ Հետաքրքրական է Կրճունին համեմատել Կորտճայքի հետ Փավստոսի Կորտիճ-այք-ից, ինչպես կոչում է պատմիչը Սալմաստի այն շրջանը, որ հարում է Կրճունիքին։*

[1] Ղևոնդ, *էջ 26, «ի գաւառն Ռշտունեաց ի գիւղն, որում Գուկանան կոչեն»*. *Հմմտ.* Թովմա Արծրունի, *էջ 256. Ռշտունիք, Բոգունիք, Գուգան, Արտաշէսեան։*

[2] *Կասկածելիներից Պատսպարունին, Արտաւանեանը, Բագանը, Գաւեթանը ծանոթ են նույնիսկ Թովմա Արծրունուն։*

[3] Թովմա Արծրունի, *էջ 251—252։ Առաջին խմբին են վերաբերում «Ճուաշ գաւառն և Թոռնաւան, Արտազ, Մարդաստան, Գառնի, Առբերանի, Աղանդռոտ, Բառիլավիտ, Պալունիք և Մեծնունիք, Տոսպ-Ռշտունիք, Բոգունիք, Գուգան գաւառ, Արտաշէսեան. այսոքիք գաւառք անուանիք, զոր յառաջին ժամանակս իւրոյ իշխանութեանն սեփականս իւր արարեալ ունէր հայրն նենգութեան Մարդպետն կոչեցեալ...»։ Երկրորդ խմբին՝ «Անձահից ձոր, Կրճունի, Կուղանովիտ եւ բուն*

*մեջ այն է, որ Վասպուրականի մի մասը հին ժամանակներում կրել է Մարդպետի անունը՝ անկախ նրանից, թե Թ դարում կատարած պատահական բաժանման հետևանքով այդ մասը համընկնում է Գագիկի բաժնին, թե ոչ։ Հենց այդ էլ Մ ա ր դ պ ե տ ա-կ ա ն երկիրն էր։ Մարդպետական անվանումը երբեմն հաջորդում է Սեպհական տերմինին, որպես նրան համազոր աշխարհագրական հասկացողություն. այսպես, միևնույն անձնավորությունը մեկ կոչվում է Մարդպետական եպիսկոպոս, մեկ էլ՝ Սեպհական*[1]*։* Sephakan-*ը ծագում է* Sepuh-akan-*ից, որ հին* Vaspurakan, Vaspuh-akan-*ի համեմատաբար նոր ձևն է։ Աղբյուրներում դրանց զուգահեռ գործածությունը պետք է բացատրել հենց նրանով, որ աշխարհագրական տեսակետից նրանք տարբեր մեծություններ են. մեկը հարաբերում է մյուսին այնպես, ինչպես մասը ամբողջին։*

*Ինչպես կտեսնենք, մարդ-պետ նախապես նշանակել է մարդերի պետ, այն ժողովրդի, որ բնակվում էր Մարդ-աստան կոչված վայրում. հետագայում ինչպես ասպետ, մաղխազ և սպարապետ տիտղոսները, մարդպետը ևս դարձավ տոհմային տիտղոս։ Մարդերի իշխանական տան վերացումից հետո այդ տիտղոսը անցավ Հարևան Արծրունի տոհմին, իսկ Մարդպետականը դարձավ աշխարհագրական հասարակ տերմին։ Մարդպետ իշխանությունը խիստ թշնամական հարաբերության մեջ էր գտնվում հարևան Արծրունի իշխանների հետ. մարդպետներից մեկը Տիրան Թագա-*

---

*Մարդաստան գաւառ, Արճիշակովիտ, ռոտն Առնոյ, Աղբագ մեծ եւ փոքր, Ակէ, Տամբեր, Տայրեան, Ըռնայ, Զարեհաւանն։ Վերջին գավառների վերաբերյալ պատմիչը նկատում է, որ դրանք խլված էին Պարսկահայքից. այդպես է նաև* Աշխարհացույցում*։ Նախիջևանի և Գողթանի բացակայությունը բացատրվում է նրանով, որ առաջինը 210, իսկ երկրորդը 186 տարի դրանից առաջ անջատվել էին Վասպուրականից։ Քանի որ* Աշխարհացույցում *թե՛ մեկը և թե՛ մյուսը նշված են Վասպուրականում, պետք է, ուրեմն, եզրակացնել, որ* Աշխարհացույցի *խմբագրությունը կատարված է Թովմա Արծրունուց 210 տարի առաջ։ Մյուս կողմից, նկատի ունենալով մեր հայտնած տարակուսանքը 13 գավառների մասին, կարելի է կարծել, որ Գողթանն ու Նախիջևանը ի շարս 13 գավառների Վասպուրականի մեջ մտցված են Թովմա Արծրունու վկայության հիման վրա. այդ դեպքում խմբագրությունը պիտի վերագրել նրանից հետո ընկած ժամանակներին։*

[1] *Գ ր ի գ ո ր ը մեկ համարվում է եպիսկոպոս «Սեփական Գնդին»,* Գիրք թղթոց*, էջ 73, մեկ էլ՝ եպիսկոպոս Մարդպետականի, նույն տեղում, էջ 70 և 76, ինչպես նաև էջ 81։ Թեոդորոսը՝ մեկ եպիսկոպոս «Սեփական Գնդի». նույն տեղում, էջ 151, մեկ էլ՝ եպիսկոպոս «Մարդպետականի», նույն տեղում, էջ 146 և 156։*

*վորի ժամանակ փորձեց բնաջնջել Արծրունիների ամբողջ տոհմը. կոտորածից փրկվեց միայն մանուկ Շավասպը, որը հետո ժառանգեց հայրական տիրույթները։ Այդ հարվածից Արծրունիները ուշքի եկան բավականին ուշ և, ինչպես նշում է պատմիչը, երկար ժամանակ նրանք չէին մասնակցում երկրի գործերին[1]։ Ճիշտ է, Շավասպը վրեժ լուծեց՝ սպանելով իր տոհմի ոխերիմ թշնամուն[2], բայց փոխադարձ վրեժն ու առևլությունը շարունակվեցին և հանգեցրին Մարդպետական տոհմի վերջնական կործանմանը, այնպես որ Ե դարում այն այլևս գոյություն չուներ։ Հաղթողները մարդպետական տիրույթների հետ միասին ժառանգեցին նաև մարդպետ տիտղոսը։ Եվ իրոք, Ե դարի շարժմանը Արծրունիների կողմից մասնակցող իշխան Միհր-Շապուհին Փարպեցին անվանում է տեր Արծրունեաց և Մարդպետ։ Եղիշեի բնագրում հիշվում է միայն իշխան Արծրունի[3]։ Ըստ Փարպեցու Վարդան Մամիկոնյանի հետ միասին դեպի Աղվանից աշխարհ պարսից դեմ են գնում նաև մարդպետական հեծելազոր գնդերը, իսկ Եղիշեի մոտ համապատասխան տեղում* mutatis-mutandis *հանդես է գալիս Ներշապուհ իշխանը, այսինքն՝ այն նույն Միհր-Շապուհը՝ Արծրունի իշխանը, որը, ըստ երևույթին, գլխավորում էր մարդպետական հեծելազորը[4]։ Այս համեմատություններից և Փարպեցու ուղղակի վկայությունից երևում է, որ մարդպետը դարձավ Արծրունյաց տոհմի տիտղոս։*

*Աղբակը հնուց ի վեր համարվել է Արծրունիների տոհմական ժառանգությունը, իսկ նստավայրը կամ ոստանը Հադամակերտն էր[5], որը, հավանաբար, գտնվելիս է եղել այժմյան Բաշկալա քաղաքի տեղում։ Փարպեցին և Եղիշեն Արծրունյաց տոհմի մեջ տարբերում են երկու ճյուղ։ Մեկի ներկայացուցիչը Ե դարի շարժման մասնակից Ներ- կամ Միհր-Շապուհն էր, իսկ մյուսինը՝ Ապրսամը։ Բնական կլիներ ենթադրել, որ մի ճյուղը տիրում էր*

---

[1] Փավստոս, Գ, ժը։

[2] Նույն տեղում, Դ, ժդ։

[3] Փարպեցի, էջ 71, Եղիշե, էջ 218։

[4] Նույն տեղում, էջ 64, «գունդք ի զօրացն Մարդպետական այրուձիոյ», հմմտ. Եղիշե, էջ 136, «Ներշապուհ Րմբոսեան». Ներշապուհը Միհր Շապուհի ժողովրդական ձևն է։ Փարպեցին երկու ձևն էլ գործ է ածում, էջ 71, 75, 78 և այլն։ Ինչ է նշանակում Րմբոսեան, հայտնի չէ։

[5] Փարպեցի, էջ 5, Թովմա Արծրունի, էջ 116 և այլն։

Աղբակին, իսկ մյուսը՝ մարդպետի ժառանգությունը՝ Մարդպետականին[1]։

Վասպուրական ընդարձակ նահանգը գտնվում էր գերազանցապես 3—4 ազնվական տների տիրապետության տակ, այսպես՝ Արծրունիները իշխում էին Աղբակում, մարդպետները, resp. Արծրունիները՝ Մարդպետականում, Ռշտունիները՝ համանուն գավառում և, հավանաբար նաև Տոսպում[2], ինչպես և Ամատունիները՝ Արտազում[3]։ Նրանց շուրջը համախմբված էին մնացած մանր իշխանությունները՝ Անձևացի, Տրպատունի, Երվանդունի, հավանաբար նաև Վարաժնունիք, Գուկան, Արտաշեսյան, հնարավոր է նաև Պալունի և Տրունի[4], Կրճունի և Ընծային-Անձախի իշխանությունները.—մարդպետի շուրջը՝ Աղբակից հարավ ընկած Ակեաց և Բուժունի իշխանությունները, Վանա լճի վրա՝ Բզնունիք, իսկ Բերկրիում՝ Գնունիները։ Ավելի պակաս հայտնի իշխանությունները՝ Բաքանը, Պատսպարունին, Գազրիկանը, Վիժանունին կամ Վաժնունին, Ճուարշեանը, Տայգրեանը և մյուսները հավանաբար մեծ մասամբ հարում էին Ատրպատականի սահմանին[5]։ Այդ

---

1 Փարպեցի, էջ 75։ Հմմտ. Եղիշե, էջ 185—186 և 369—370։ Աղբակի իշխանը հենց Ներշապուհն էր, էջ 78 «Մուշէ Աղբակացի, դրան երէց իշխանին Արծրունեաց Ներշապհոյ» նաև էջ 75 և 101), որով ուրեմն Մարդպատանին տիրում էր Ապրսամի ճյուղը։ Հակառակ սպասածին, մ ա ր դ պ ե տ է կոչվում Ներշապուհը և ոչ թե Ապրսամը։ Հավանաբար ժամանակի ընթացքում այդ տիտղոսը դարձել էր Արծրունիների ամբողջ տոհմի ընդհանուր սեփականությունը։

2 Թովմա Արծրունու Տոսպոշտունիքը (էջ 291), կարծում ենք, հասարակ վրիպակ չէ։

3 Որ Ամատունիները նախապես ապրում էին Արտազում, այդ երևում է նրանից, որ Արտազի եպիսկոպոսին Թովմա Արծրունին կոչում է եպիսկոպոս Ամատունեաց տան, էջ 259։ Եկեղեցական բաժանումը, ինչպես կտեսնենք, արտացոլում է հին վիճակը։ Ամատունիները հնագույն տոհմերից մեկն էին, և նրանց ծագումը նույնպես ցույց է տալիս, ինչպես կտեսնենք ստորև, որ նրանց սկզբնական հայրենիքը գտնվում էր Ատրպատականի սահմանին մոտ։

4 Թովմա Արծրունի, էջ 116, «ի տոհմէն Ընտրունեաց» պետք է կարդալ Տրունեաց, ինչպես է 134 էջում։ Տիր-ունին, ըստ երևույթին, Տրպատ-ու-նիի կրճատ ձևն է։

5 Բաքան հմմտ. Պաքան-ի հետ, որ գյուղ է Մակուից քիչ հարավ։ Գազրիկանը առաջ է եկել Գազրիկ-ից պարսկ.—an=հայ. Գազրիկ-ք-ին Թովմա Արծրունի, էջ 121, Գազրիկ Այուհարաց, բայց էջ 164-ում Գազրիկք Արուսեմ և Վասակ և Վահան։ Աշխարհացույցի Վաժնունի, համառոտ խմբագրության մեջ Վարաժնունի, ըստ երևույթին վերջին ձևն էլ ավելի ճիշտ է։ Գահնամակի

*տոհմերը շատ հին համարվել չեն կարող. նրանց մեծ մասը վերաբերում է Վասպուրականի թագավորության շրջանին։*

*Պետք է նկատել նաև, որ Թովմա Արծրունու մոտ Վասպուրականի իշխանների թվում հանդիպում են իշխանական այնպիսի տոհմանուններ, որոնք, ինչպես հստատ գիտենք, ապրել են Վասպուրականից դուրս, երկրի ուրիշ մասերում[1]։ Նման երևույթները պետք է բացատրել նրանով, որ Վասպուրականի քաղաքական աղդեցության աճման հետևանքով բազմաթիվ իշխաններ ծառայում էին այնտեղ, պաշտպանություն փնտրելով երկրի տերերի՝ Արծրունի իշխանների մոտ։*

---

*Ասճշնեանը Ճուարշեանի աղճատումն է։ Տայքրեանը կարելի է համեմատել Բաշկալայից հյուսիս գտնվող Դեիր-ի հետ։*

[1] *Օրինակ.* **Թովմա Արծրունի**, *էջ 116, Ապահունիք, Հաւնունի, Գարայնեղէն. էջ 135, Արեղէնից տէր հիշվում է Վասպուրականում, ինչպես նաև Քաջբերունիները, նույն տեղում, էջ 109, որոնք ապրում էին Արճեշում։*

## ԳԼՈՒԽ XII

# ՆԱԽԱՐԱՐՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՀՈԳԵՎՈՐ ԻՇԽԱՆՈՒԹՅՈՒՆԸ

I. Եկեղեցին նախարարական միջավայրում։ Ազգային ավանդությունները Լուսավորչի օրոք եղած եպիսկոպոսների և եկեղեցական թեմերի թվի մասին. նրանց անհիմն լինելը։ Ուխտանեսի և Ագաթանգեղոսի արաբական վերսիայի տվյալները։ Արժանահավատ տվյալներ 451, 505 և 555 թվականների եկեղեցական ժողովների վավերագրերում։ Նրանց համեմատական վերլուծությունը։ Հոգևոր իշխանության կազմը Դ դարի կեսին։ 607 և 644 թթ. եկեղեցական ժողովների վավերաթղթերը։ Ուխտանեսի մոտ պահպանված եպիսկոպոսների ցուցակի քննադատությունը, նրա համեմատությունը 726 թ. եկեղեցական ժողովի մասնակիցների ստորագրությունների հետ։ Ագաթանգեղոսի արաբական վերսիայում պահպանված եպիսկոպոսների ցուցակի քննադատությունը։ Նրա դավանաբանական հիմքը. ցուցակը Է դարից շուտ չէ։

II. Հավաստի տվյալներ հայ եկեղեցու հիերարխիայի վերաբերյալ. Աղբիանոսյաններ և Գրիգորյաններ։ Երկու տոհմերը որպես քրիստոնեական տարբեր հոսանքների՝ հարավ-եդեսիական և արևմտա-կեսարիական հոսանքների ներկայացուցիչներ։ Պատմականը սրանց վերաբերող զրույցների մեջ։ Երկու տոհմերի մրցությունը։ Եկեղեցական քաղաքականությունը։ Գրիգորյանների հակվածությունը կայսրության կարգերին։ Կայսերական եկեղեցու համակարգը։ Նրա վերաբերմունքը քաղաքացիական կազմակերպությունների նկատմամբ։ Միտրոպոլիտական ու պատրիարքական իշխանությունները և նրանց փոխհարաբերությունները։ Հայկական եկեղեցու հիերարխիական կապերը կայսերական եկեղեցու հետ։ Նրա պառակտումը։ Եկեղեցու ազգայնացումը Հայաստանում։ Նախարարական գծերը։

### I

*Նախարարական վարչակարգը քննության առնելիս չի կարելի շրջանցել եկեղեցական կազմակերպությունը։ Հայ եկեղեցին, զարգանալով նախարարական միջավայրում, բնականաբար իր վրա պետք է կրեր նրա ազդեցությունը։ Այս առթիվ, ինքնին ծագող և միանգամայն հասկանալի հարցը թվում է, թե պետք է արժանանար հետազոտության։ Մինչդեռ հայ եկեղեցու ճակատագրով հե-*

տարբերվող գիտնականները անտեսում են այդ հանգամանքը կամ բավարարվում են ընդհանուր դատողություններով և հայ եկեղեցու ծագման ու ազգայնացման պատմությունը լուսաբանելիս երբեմն կանգնում են հայ իրականությանը միանգամայն խորթ տեսակետի վրա։ Դրա հետևանքով էլ, չնայած հայ եկեղեցու անցյալին նվիրված բավարար թվով հետազոտություններին, շատ հիմնական հարցեր դեռևս մնում են չլուծված։ Կասկածի տակ է առնվում նույնիսկ այնպիսի, ըստ երևույթին, հասարակ հարց, ինչպես հայ եկեղեցու ազգային բնույթը. ըստ մի հայտարարության «հայ եկեղեցին հենց սկզբից ստեղծվել է որպես ինքնուրույն, ազգային եկեղեցի՝ քաղաքական և մշակութային միանգամայն այլ պայմաններում, քան կայսերական մեծ եկեղեցին»։ Մյուս կարծիքը, ընդհակառակն, ասում է, որ հայ եկեղեցին «իր ինքնորոշման մեջ չափից ավելի է տարվում իր ազգային բնույթով, չափից ավելի արխաիկ է դարձնում այն»[1]։

Տրամագծորեն հակառակ նման կարծիքներ հայտնի են նաև եկեղեցական կյանքի մյուս կողմերի մասին, որ մեծ մասամբ պետք է բացատրել կամ ժամանակի կամ տեղի նկատմամբ պատմական հեռանկարի խախտումով։ Նախքան ընդհանրացումներին անցնելը, անհրաժեշտ է ճշտորեն սահմանազատել, թե քննարկվող տվյալները Հայաստանի ո՞ր մասին և երկրի պատմության ո՞ր շրջանին են վերաբերում։ Պատմական Հայաստանը ո՛չ մշակութապես, ո՛չ էլ քաղաքականապես միատարր ամբողջություն չէր, և նրա յուրաքանչյուր մասի բախտը պետք է քննության առնվի տվյալ մասի սեփական պայմաններում։ Հայ եկեղեցին Հայաստանի մի մասում բոլորովին էլ այն չէր, ինչ էր մյուս մասում. դա կախված էր նրան շրջապատող քաղաքական մթնոլորտից։ Երկրի քաղաքական վիճակի փոփոխության հետ փոփոխվում էր նաև եկեղեցին՝ հարմարվելով նոր պայմաններին։

Կյանքի այդպիսի հարափոփոխ պայմաններում գրական հուշարձաններն էլ չէին խուսափում այն ընդհանուր ճակատագրից, որին ենթակա էր կյանքը. պատմական գրականությունը բազմիցս վերանայման և վերամշակման է ենթարկվել տվյալ շրջանի ոգուն

---

[1] Karapet Ter-Mkrtschian, *Die Paulikianer*, p. 55 Н. Марр, *Аркаун, монгольское название христиан, в связи с вопросом об армянах халкедонитах*, pp. 1—2.

և պահանջներին համապատասխան։ Այդ պատճառով էլ գրական ժառանգությունները բնավ զերծ չեն միտումնավոր երանգավորումից իրական թե անիրական փաստերը լուսաբանելիս ու զուգակցելիս։ Եկեղեցու զարգացման իսկական ընթացքը բացահայտելու համար պետք է նախ և առաջ դեն գցել երբեմն հին և տարածված, միտումնավոր հնարանքները և առանձնացնել ստույգ փաստերը, մաքրելով դրանք ամեն տեսակ շերտավորումներից ու շրջանակներից։

Այժմ մեզ հետաքրքրում է բացառապես եկեղեցու արտաքին կառուցվածքը, նրա հիերարխիական կազմը։ Մի կողմ թողնելով եկեղեցու ներքին կյանքը, այն ամենը, ինչ վերաբերում է նրա հոգևոր բովանդակությանը, մենք այն քննարկում ենք միայն արտաքին կողմից, վերցնում ենք, այսպես ասած, նրա կառուցվածքային ճարտարապետությունը։ Ընդհանուր եկեղեցու հետ համեմատած՝ ո՞րն էր այդ կազմակերպության առանձնահատկությունը, որ նրան տալիս էր ազգային հաստատության երանգ։

Ագաթանգեղոսը, որ հատկապես պատմում է Գրիգոր Լուսավորչի կյանքի և քարոզչության մասին, պնդում է, որ հայ եկեղեցու հիմնադիրը Հայաստանի համար ձեռնադրել է ավելի քան 400 եպիսկոպոս[1]։ Մի ուրիշ անգամ նույն պատմիչը հայտնում է, որ ընդամենը 12 հոգի արժանացան եպիսկոպոսության աստիճանի և Լուսավորչի կողմից ձեռնադրվեցին եպիսկոպոս, ապա թվարկում է նրանց անունները[2]։ Այդ հակասական տվյալները բացատրվում են Ագաթանգեղոսի աշխատության կոմպիլյատիվ բնույթով, և դրանք պետք է վերագրվեն այն աղբյուրներին, որոնցից կազմվել է Լուսավորչի կյանքի մասին մեզ հասած խմբագրությունը։ Տասներկու եպիսկոպոսների անվանացանկի վերջում տրված ոչ այնքան պարզ նշումը, որի իմաստը, ընդհանուր առմամբ, այն է, թե հակառակ բոլոր ցանկություններին հնարավոր չէ գրի առնել նաև մյուս եպիսկոպոսների անունները, ինչպես երևում է, նպատակ ունի որևէ կերպ միմյանց կապել երկու վկայությունները և հարթեցնել հակասությունները[3]։

[1] Ագաթանգեղոս, էջ 492, «որ եպիսկոպոսացն յաստիճան ձեռնադրեցան ի նմանէ, աւելի քան զչորեքհարիւր եպիսկոպոս, որք կացին տեսուչ տեղեաց տեղեաց»։

[2] Նույն տեղում, էջ 487։

[3] Ագաթանգեղոս, էջ 487, I. c., եւ գայլոցն անուանս թէ եւ կամիցի ոք, ոչ

*Ագաթանգեղոսի խոսքերը 400 եպիսկոպոսների մասին կրկնում է Ուխտանես պատմիչը, բայց քանի որ նա ունեցել է նաև մի այլ աղբյուրի վկայություն այն մասին, որ Լուսավորիչը հիմնել է ընդամենը 30 եպիսկոպոսական աթոռ, ուստի մեջ բերելով 30 եպիսկոպոսների ցանկը, նշում է, որ Գրիգորը դրանցից բացի ձեռնադրել է ևս 370 եպիսկոպոս, ըստ որում դարձյալ հակասությունները հարթելու նպատակով, ըստ երևույթին հնարավոր է համարում տարբերություն դնել աթոռ ունեցող և անաթոռ եպիսկոպոսների միջև[1]։*

*Մի այլ պատմիչի տվյալների համաձայն, Լուսավորիչը հաստատել է ոչ թե 30, այլ 36 աթոռ։ «Ապա կարգէ եւ սուրբն Գրիգոր,—ասում է Օրբելյանը,—զեկեղեցական դասս, զգահ եւ զպատիւ եպիսկոպոսացն եւ հրամայէ բազմել ընդ ինքեան աթոռով եւ ոսկենկար բարձու 36 եպիսկոպոսաց՝ 18 յաջմէ եւ 18 յահեկէ առաջինն Հարքայ եպիսկոպոսն և յահեկէ առաջինն Բասենոյ, իսկ զՍիւնին յաջ կողմանէ յեօթներորդ գահուն նստեցուցանէ. եւ ցուցանէ զայս Սամուէլ Կամրջաձորեցի»[2]։*

*Հեղինակը, որին վկայակոչում է պատմիչը, Արշարունյաց գավառի Կամրջաձորի վանքի վանահայրն է, նույն Սամվել փիլիսոփան, որի մասին հիշատակում է Ասողիկը, անվանելով նրան «բազմաշնորհն ի գիտութեանս գրոց սրբոց և յերգս երաժշտութանց»[3]։*

*Նա ապրում էր Ժ դարի վերջերին և ժամանակակից էր Ուխտանեսին ու Խաչիկ կաթողիկոսին[4], որի հանձնարարությամբ էլ Ուխտանեսը գրեց իր պատմությունը։ Քանի որ նախքան կաթողիկոս դառնալը Խաչիկը Արշարունիքի եպիսկոպոսն էր, այսինքն՝ այն*

---

*կարացէ շարժել։*

1 Ուխտանես, *էջ 99—100, Այս երեսուն եպիսկոպոսք որք աթոռակալութեամբ ընկալան ձեռնադրութիւն ի սրբոյն Գրիգորէ, եւ այլ ևս երեք հարիւր եւ եօթանասուն եպիսկոպոսք, էջ 100։*

2 Ստեփաննոս Օրբելյան, *է։*

3 Ասողիկ, *էջ 174։ Տե՛ս նաև «Պատմություն կենարար խաչին»,* Ալիշանի *Այրարատի հավելվածում, էջ 547—549։*

4 *Սամվելից առաջ վանքի վանահայրը եղել է Պողիկարպոսը,* Ասողիկ, *էջ 174, որը Խաչիկի հետ միասին մասնակցել է Ստեփաննոս կաթողիկոսի ընտրությանը 972 թ.։ Նույն տեղում, էջ 181։ Երկու տարի անց՝ հայոց 421 թվականին սրան հաջորդ է ընտրվում Խաչիկը, էջ 974, նույն տեղում, էջ 184։*

գավառի, որտեղ գտնվում էր Կամրջաձորի վանքը, ապա բնական է ենթադրել, որ Ուխտանեսի և Սամվելի տեղեկությունները Լուսավորչի օրոք եղած եպիսկոպոսների թվի մասին բխում են ընդհանուր աղբյուրից՝ Կամրջաձորի վանքի ավանդույթներից։ Ուխտանեսի ցանկում, ինչպես այժմ կտեսնենք, յոթերորդ տեղը հատկացված է Սյունյաց եպիսկոպոսին, որ համապատասխանում է Օրբելյանի՝ Սամվելի ցանկի մասին ավանդին։ Բայց այս վերջինիս մոտ առաջին տեղը Հարքի եպիսկոպոսի փոխարեն գրավում է Բասենի եպիսկոպոսը, ինչպես Ուխտանեսի մոտ է։ Բացի այդ, մեկի մոտ հիշված է 30 եպիսկոպոս, իսկ մյուսի մոտ՝ 36։ Այս շեղումը Ուխտանեսից արդյո՞ք չպետք է վերագրել բացառապես Սամվելի աշխատության այն օրինակին, որ եղել է Օրբելյանի ձեռքի տակ։ Հազիվ թե Սամվելի աշխատությունը տարբեր լիներ Ուխտանեսի ցանկից, իսկ եպիսկոպոսների բաժանումը աջակողմյանների և ձախակողմյանների կարելի է համարել իր իսկ՝ Օրբելյանի ենթադրությունը, որը նույն բանն անում է նաև իշխանների վերաբերյալ։

Այսպիսով, 400 եպիսկոպոսների գոյության մասին զրույցը, իհարկե, պետք է ամբողջովին մերժվի։ Այն կապված է 400 իշխանական գահերի մասին եղած, ինչպես տեսանք, պատմական ոչ մի արժեք չներկայացնող վկայության հետ։ Հատկանշական է, որ Ագաթանգեղոսի արաբական վերսիայի մեջ 400 եպիսկոպոսների մասին խոսք չկա. նա մտել է հայերեն խմբագրության մեջ, հավանաբար, այն բանից հետո, երբ Զենոբ Գլակի խոսքերի սխալ մեկնության հիման վրա[1] հորինվել է 400 իշխանների մասին եղած զրույցը, մի հանգամանք, որ Ագաթանգեղոսի հայերեն վերջին խմբագրությունը հասցնում է մինչև առասպելական Զենոբից հետո ընկած ժամանակները[2]։

Ոչ միայն հեքիաթային 400 թիվը, այլ շատ ավելի համեստ

[1] Տե՛ս վերը, էջ 271։

[2] Դրան չեն խանգարում նորագույն եզրակացությունները Ագաթանգեղոսի վերջին խմբագրության ժամանակի մասին, որոնք հիմնված են հայկական և արաբական վերսիաների համեմատական ուսումնասիրության վրա։ Տե՛ս Н. Марр, Крещение армян и проч., р. 182։ Եթե Ագաթանգեղոսի՝ մեզ հասած բնագիրը, ինչպես ապացուցում է պ. Մառը, Ը դարից ավելի վաղ չէ, ապա հնարավոր է, որ նրա խմբագիրը օգտվել է նաև Զենոբի այս կամ այն խմբագրությունից. այսպիսով, Զենոբի այն միամիտ հայտարարությունը, թե «ես յառաջագոյն գրեցի, քան զնա, զԱգաթանգեղոս», էջ 19, այնքան էլ ծիծաղելի չէ, ինչպես թվում է։

*այն թիվը, որ նշում է Ուխտանեսը, եղած փաստական տվյալներով չի արդարացվում*[1]*։*

*Մատենագրական վկայություններից առավել արժեքավոր են Ուխտանեսի վկայությունը և Ագաթանգեղոսի արաբական վերսիայի տվյալները, որովհետև նրանց ասածները անհիմն հայտարարությունների բնույթ չեն կրում, այլ լրացվում են համապատասխան նյութերով։ Ուխտանեսը մեջ է բերում այն 30 եպիսկոպոսների թեմերի ցանկը, որոնք իբրև թե հիմնվել են Լուսավորչի կողմից՝ չհաշվելով կաթողիկոսին՝ բոլոր եպիսկոպոսների թիվը 30 է։*

1 եպ. Հարքայ
եպ. Ոստանի
եպ. Տայոց
եպ. Մարդաղւոյ
5 եպ. Արշամունեաց
եպ. Արծրունեաց
եպ. Սիւնեաց
եպ. Ռշտունեաց
եպ. Մոկաց
10 եպ. Ամատունեաց
եպ. Բասենոյ
եպ. Մամիկոնէից
եպ. Բագրեւանդեայ
եպ. Խորխոռունեաց

---

[1] *Հատուկ տեղ է գրավում այն վկայությունը, թե Հայաստանում 620 գավառ է եղել։ Զենոբ Գլակը պատմում է, որ հայերը Եղիաղար եպիսկոպոսին գրում են, որ «ամենայն գաւառացս եպիսկոպոս պիտոյ են եւ քահանայս. զի թէպէտ ոմանք, որք ուստեք ուստեք եկեալ են ժողովեալ, բայց զինչ են այսոքիկ առ վեց հարիւր եւ քսան գաւառս հայոց. որ եւ գաւառին մէն մի քահանայ կամ երկու յուկ թէ հանդիպի», էջ 12—13։ Այս հատվածը կրկնվում է Կոստանդին կաթողիկոսի 1248 թ. Հեթում թագավորին գրած թղթի մեջ. «եւ ի գաւառք են Հայք յՕրդնկայէն ի վեր եւ կան որ աւեր են եւ կան որ ի ծառայութեան. թէ կու ցաւին ընդ հայոց, թող երթան ազատեն», Գիրք թղթոց, էջ 509։ Հետաքրքրական է համեմատել Զենոբի հաղորդածը Մատթեոս Ուռհայեցու ասածների հետ Պետրոս կաթողիկոսի ժամանակ, Ժ դարի վերջին, գոյություն ունեցող եկեղեցական թեմերի մասին, «յորժամ էր,— գրում է Ուռհայեցին,— տէր Պետրոս յաթոռ հայրապետութեանն եւ ի Հայաստան աշխարհին ունէր կաշմութիւն Հայրենեաց՝ տուեալ ի թագաւորացն հայոց հինգ հարիւր գեղ անուանի եւ մեծանիք եւ շահաւետ ընտիր ընտիր նոյնպէս եւ եպիսկոպոսք հինգ հարիւր փառաւորք եւ գաւառատեսուչս ի վերայ հինգ հարիւր թեմի հանապազ. երկոտասան եպիսկոպոս և չորս վարդապետք ի տան հայրապետին անպակաս լինէր և վաթսուն երեց ի կրօնաւորաց և յաշխարհականաց հինգ հարիւր և չէր նուաստ աթոռ հայրապետութեանն, քան թագաւորութեանն հայոց», էջ 184—185։ Եկեղեցական շրջան ասելով այստեղ հասկացվում է յուրաքանչյուր վայր, որտեղ կար եկեղեցական իշխանության ներկայացուցիչ գավառատեսուչ։ Այս բաժանումները վերաբերում են ավելի ուշ ժամանակի և մեր նպատակի համար պիտանի չեն։*

15 եպ. Վանանդայ
16 եպ. Ապահունեաց
եպ. Արշարունեաց
եպ. Գնունեաց
եպ. Գողթան
20 եպ. Գարդմանայ
եպ. Ակէ<ոյ>
եպ. Բաժունեաց
եպ. Երուտակայ
եպ. Աստեաց
25 եպ. Անձեւացեաց
եպ. Պալունեաց
եպ. Մեհնունեաց
եպ. Էլոյ
եպ. Զարեհաւանի
30 եպ. միւս Աստեաց[1]:

Ագաթանգեղոսի արաբական վերսիան հայկական բնագրին էական լրացումներ է առաջարկում՝ ավելի ճիշտ գծելով քրիստոնեության տարածման սահմանները Լուսավորչի օրոք։ Ագաթանգեղոսի հայերեն բնագիրը բավարարվում է սոսկ ընդհանուր ցուցումներով, թե «ընդ ամենայն երկիրն Հայոց, ի ծագաց մինչեւ ի ծագս, ձգտէր տարածանէր ղմշակութիւն քարոզութեանն աւետարանութեանն. ի Սատաղացւոց քաղաքէն մինչ առ աշխարհաւն խաղտեաց, մինչև առ Կաղարջօք, մինչ ի սպառ ի սահման Մազքթաց, մինչև ի դրունս Ալանաց, մինչեւ ի սահմանս Կասպից, ի Փայտակարան քաղաք արքայութեանն Հայոց և յԱմդացւոց քաղաքէն մինչև առ Մծբին քաղաքաւ, քերէր առ սահմանօքն Ասւոց առ Նոր Շիրական երկրաւն և առ Կորդուօք մինչև յամուր աշխարհն Մարաց, մինչև առ տամբն Մահքր-Տան իշխանին, մինչև յԱտրպատական ձգտէր տարածանէր զավետարանութիւնն իւր»[2]։

Լրացումները, որ այստեղ ավելացնում է արաբական խմբագրությունը, այն է, որ հականե-հանվանե նշվում են այն երկրներն ու նահանգները, որտեղ հիմնվել են եպիսկոպոսությունները։ Ս. Գրիգորը եպիսկոպոսներ է ուղարկում ոչ միայն Հայաստանի գավառները, այլ նաև Վրաստան, դուրզուկների երկիրը և ալանների մոտ։ Վրաստան է ուղարկվում Իբիր-բ-ղ-խուան, Ափխազիա՝ Սոփրոնիոսը և Ալանք՝ Թոման։ Այնուհետև «ուղարկեց նա Անգեղ

[1] Ոսկյանես, գլ. Ա, էջ 70։ Վերջին բառը տպագիր հրատարակության մեջ կարդացվում է՝ Միւսաւորեաց, փոխանակ, ինչպես մեզ թվում է, միւս Ասորեաց։

[2] Ագաթանգեղոս, էջ 485, «Փայտակարան քաղաք արքայութեանն Հայոց» արտահայտությունը նշանակում է Հայաստանի թագավորության ժամանակաշրջանի քաղաք։

*տուն, Արզն*[1]*, Մեծ Ծոփք, Փոքր Ծոփք, Հաշտյանք, Սյունիք, Մոկք և Մարդպետական և, այսպիսով, այն բոլոր վայրերը, որտեղ իշխողը բարեհաճ էր տրամադրված։*

*Գրիգոր Լուսավորիչը շտապեց եպիսկոպոսներ ուղարկել Հայաստանի մնացած գավառները.* 1 **Աղբիանոսին** *ուղարկեց* **Բագրեանդ** *գավառ և Եփրատի ափերին բնակվողների մոտ։*

**Եւթաղիոսին՝ Բասեան**
**Բասոսին՝ Կող**[2]
**Մովսեսին՝ Եկեղիք և Դերզենե**
5 **Եւսեբիոսին՝ Դարանաղի**
**Հովհաննեսին՝ Կարան[իտիք]**[3]
**Խաբիբին՝ Սուսպեր[իտիք]**
**Աղբիոսին՝ Տարոն և Բզնունիք**
**Արտիքեսին՝ Մաղխազների երկիրը**
10 **Արուկեսին՝ Սիրակ**
**Անտիոքեսին՝ Կորդուք**
**Տիրիկոսին՝ Ատրպատական**
13 **Կիրիկոսին՝ Արշամունիք:**

*Այս տվյալները որքան էլ արժեքավոր լինեն, այնուհանդերձ չեն կարող օգտագործվել առանց նախնական քննադատության՝ նկատի ունենալով հատկապես այն անորոշ դրությունը, որի մեջ*

---

1 Н. Марр, *Крещение армян*, p. 137։ بلاد الجيلغيين *արաբերեն հրատարակության մեջ՝ գիլանների աշխարհը և* الى الجاز *արխազների մոտ։ Մեզ թվում է, որ երկու ընթերցումներն էլ աղճատված են։ Ափխազների մասին հիշատակվում է վերը և բացի այդ, ափխազները, ինչպես և գիլանները, Հայաստանի սահմաններից դուրս են գտնվում և ընդհանուր ոչինչ չունեն հետո եկող հայ նահանգների՝ Մեծ և Փոքր Ծոփքի, Հաշտյանքի, Մոկքի և Մարդպետականի հետ։ Ավելի ճիշտ, առաջին անունը պետք է կարդալ* انجيليين='Αγγελήνην, *իսկ երկրորդը համարել Արզանենէի (Աղձնիքի) աղճատում։*

2 *Հրատարակության մեջ, էջ 136,* بيقوفون, *առաջին վանկը պետք է դնել և կարդալ* بلاد =աշխարհ, *իսկ* قوفون, *կարծես թե=Կող, Տայքի մի գավառը, բայց որովհետև արաբերենը թարգմանված է հունարենից, ապա մենք պետք է սպասեինք Կող։ Պատմական նկատառումներով այստեղ պետք է տեսնել Վահանի եպիսկոպոսի պաշտպանումը։*

3 *Բնագրում* قوانيتيين, Կուանիտների, *պետք է կարդալ* قرانيتيين =Καρηνῖτιν, *հայկական Կարին-ին։*

*գտնվում է Ագաթանգեղոսի սանդծման և խմբագրման հարցը։ Մենք վստահելի նյութեր ունենք, որոնք բավական հստակ կերպով նկարագրում են հայոց եկեղեցու հիերարխիական վիճակը Ե և Զ դարերում։ Ելնելով այդ վիճակից՝ մենք կարող ենք որոշ եզրակացություններ անել Դ դարի՝ հայ եկեղեցու սկզբնական ժամանակաշրջանի վերաբերյալ և այդ դեպքում հնարավոր կլինի որոշել, թե որքան ճիշտ են և ընդունելի Ագաթանգեղոսի, ինչպես և Ուխտանեսի պնդումները Լուսավորչի օրոք եղած եկեղեցական հիերարխիայի կառուցվածքի մասին։*

*Ե և հետագա դարերում հոգևոր իշխանության վիճակը ուրվագծելու համար տվյալներ են հանդիսանում գլխավորապես եկեղեցական ժողովների արձանագրությունների մնացորդները։ Մենք վերցնում ենք երեք կարևոր եկեղեցական ժողով՝ Արտաշատի, որ գումարվեց 451 թվականի ապստամբության նախօրյակին, Դվինի՝ Բաբգեն կաթողիկոսի ժամանակ 505 թվականին և Դվինի երկրորդ, որ տեղի ունեցավ Ներսես կաթողիկոսի ժամանակ 555 թվականին։ Այդ եկեղեցական ժողովներին ներկա են եղել հետևյալ եպիսկոպոսությունների կամ եկեղեցական թեմերի ներկայացուցիչները։*

| 450 թ. եկեղեց. ժողով[1] | 505 թ. եկեղեց. ժողով[2] | 555 թ. եկեղեց. ժողով |
|---|---|---|
| Հովսեփ կաթ. | Բաբգէն կաթ. | Ներսէս կաթ. |
| 1 եպ. Այրարատոյ | 1 եպ. Այրարատոյ | 1 եպ. Այրարատոյ |
| եպ. Սիւնեաց | եպ. Մամիկոնէից | եպ. Տարօնոյ |
| եպ. Արծրունեաց | եպ. Մարդպետական | եպ. Սեպհական |
| եպ. Տարօնոյ | եպ. Հարքայ | եպ. Հարքայ |
| 5 եպ. Ռշտունեաց | 5 եպ. Բզնունեաց | 5. եպ. Բագրեւանդայ |
| եպ. Մանձկերտոյ | եպ. Բասենոյ | եպ. Բասենոյ |
| եպ. Բագրեւանդայ | եպ. Արշարունեաց | եպ. Մարդաղւոյ |
| եպ. Բզնունեաց | եպ. Խորխոռունեաց | եպ. Արշամունեաց |

[1] Փարպեցի, *էջ 44*=Եղիշե, *էջ 49։*

*1. Յովսէփ կաթողիկոս*
*ըստ* Եղիշէի *եպ. Այրարատոյ*
*Անանիա Սիւնեաց*

[2] Գիրք թղթոց, *էջ 41։*

*1. Բաբգէն Հայոց եպիսկոպոսապետ*
*Մերշապուհ Մամիկոնէից*
*Ներսէս Մարդպետական*

| | | |
|---|---|---|
| եպ. Բասենոյ | եպ. Տայոց | եպ. Սիւնեաց |
| 10 եպ. Մարդաս-տանի | 10 եպ. Արշամունեաց | 10 եպ. Արծրունեաց |
| եպ. Վանանդայ | եպ. Ռշտունեաց | եպ. <Բզնու-նեաց> |
| եպ. Մոկաց | եպ. Մոկաց | եպ. Խորխոռու-նեաց |
| եպ. Անձեւացեաց | եպ. Արծրունեաց | եպ. Ապահունեաց |
| եպ. Տայոց | եպ. Ամատունեաց | եպ. Ասորեաց |
| 15 եպ. Տար<ու>բերանոյ | 15 եպ. Պալունեաց | 15 եպ. Վանանդայ[1] |

---

*Մուշէ Արծրունեաց*
*Սահակ Տարօնոյ*
5. *Սահակ Ռշտունեաց*
*Մելիտէ Մանձկերտոյ*
*Եղնիկ Բագրեւանդեայ*
*Սուրմակ Բզնունեաց*
*Թաթիկ Բասենոյ*
10. *Երեմիա Մարդաստանի*
*Գադ Վանանդայ*
*Բասիլ Մոկաց*
*Եզբայր Անձեւացեաց*
*Տաճատ Տայոց*
15. *Քաջու Տարբերանոյ*
*Զաւէն Մանանաղւոյ*
*Ըստ* Եղիշէի՝ *Եւղաղ Մարդաղւոյ*
*Եղիշէ Ամատունեաց*
18. *Երեմիա Ապահունեաց*

*Տեառնտուր Հարքայ*
5. *Սամուէլ Բզնունեաց*
*Փոլկաս եւ Սամուէլ Բասենոյ*
*Թաթուլ Արշարունեաց*
*Աղան Խորխոռունեաց*
*Ատատ Տայոց*
10. *Տաճատ Արշամունեաց*
*Դանիէլ Ռշտունեաց*
*Յափիկ Մոկաց*
*Խարիր Արծրունեաց*
*Ճահէ Ամատունեաց*
15. *Սահակ Պալունեաց*
*Պաւղոս Գնունեաց*
*Մովսէս Զարիհաւանի*
*Դաւիթ Սմոբեաց*
*Դանիէլ Անձեւացեաց*
20. *Թեմուր Մեհնունեաց*

[1] Գիրք թղթոց, *էջ 73։*

1. *Ներսես Հայոց կաթողիկոս*
*Մերշապուհ Տարաւնու եւ*
*Մամիկոնէից եպս.*
*Գրիգոր Սեպհական գնդին*
*Պարգեւ Հարքայ*
5. *Տիրակ Բագրեւանդեայ*
*Գրիգոր Բասենոյ*
*Ներսես Մարդաղ<ւ>ոյ*
*Վաղոտ Արշամունեաց*
*Պետրոս Սիւնեաց*

10. *Գրիգոր Արծրունեաց*
*Մարկոս <Բզնունեաց>*
*Մաշթոց Խորխոռունեաց*
*Յոհան Ապահունեաց*
*Արդիսոյ տարեաց ուղղափառաց*
15. *Յովնան Վանանդայ*
*Հաւուկ Արշարունեաց*
*Քրիստափոր Պալունեաց*
*Յոյս Գողթան*
19. *Թադէոս Մեհնունեաց.*

| | | |
|---|---|---|
| եպ. Մարդաղայ | եպ. Գնունեաց | եպ. Արշարունեաց |
| եպ. Ամատունեաց | եպ. Զարեհավանի | եպ. Պալունեաց |
| 18 եպ. Ապահունեաց | եպ. Տմորեաց | եպ. Գողթան |
| | եպ. Անձևացեաց | եպ. Մեհնունեաց |
| | 20 եպ. Մեհնունեաց | 20 եպ. Ամատունեաց |
| | եպ. <Սիւնեաց> | եպ. Ռշտունեաց |
| | եպ. <Մարդաղայ> | եպ. Մոկաց |
| | եպ. <Վանանդայ> | եպ. Անձևացեաց |
| | եպ. <Ապահունեաց> | եպ. Ակէ<ոյ> |
| | | 25 եպ. Զարեհաւանից |
| | | 26 եպ. Բուժունեաց |
| | | եպ. <Տայոց> |
| | | 28 եպ. <Գնունեաց> |

Այս ցուցակները գաղափար են տալիս հայոց եկեղեցու հիերարխիայի մասին՝ նրա պատմական զարգացման ընթացքում։ 555 թվականի ցանկը առավել լրիվ է։ Եկեղեցական թեմերի աճը արտահայտվում է մասամբ գոյություն ունեցող եպիսկոպոսությունների տրոհմամբ և մասամբ էլ՝ նորերի երևան գալով։ Ե դարի կեսին կար 18 եպիսկոպոսական աթոռ. դրանք մի քանի զուտ արտաքին բնույթ կրող տարբերություններով առկա են նաև 505 թվականի ցանկում։ 450 թվականի ցանկում եղած Մարդպետանը 505-ի ցանկում կոչվում է Մարդպետական, իսկ 555 թվականի ցանկում՝ Սեպհական ու Մարդպետական. մենք տեսանք, որ

---

Ներսեսի մեղադրական թղթից երևում է, որ նրա օրոք եղել են և հետևյալ եպիսկոպոսները, որոնք ժողովին չէին եկել.

20. Խոսրով Ամատունեաց
Սահակ Ռշտունեաց
Սողոմոն Մոկաց
Ստեփանոս Անձևացեաց

24. Հռոմանոս Ակիոյ
Միքայէլ Զարեհաւանից

26. Ածատուր Բժնունեաց։

Բնագրում 11 համարի տակ Մ ա ր կ ո ս ը նշված է որպես Բագրևանդի եպիսկոպոս, բայց Բագրևանդը արդեն հիշված է, ուստի պետք է այդ համարել վրիպակ։ Մարկոսը Բզնունիքի կամ Տայքի պաշտող երկու եպիսկոպոսներից մեկն ու մեկն է։

*այդ անվանումները համանիշ են։ Մանազկերտի եպիսկոպոսությունը կոչվում է նաև Հարքի՝ այն գավառի անունով, որտեղ գտնվում է Մանազկերտը։ Բագրևանդն ու Արշարունիքը միասին կազմում էին մեկ թեմ, որի առաջնորդը Փարպեցու մոտ՝ 505 թվականի ցանկում կրում է Բագրևանդի անունը, այսինքն՝ Արշարունեաց, իսկ 555 թ. Արշարունիքը անջատվում է և դառնում նոր եպիսկոպոսություն։ Հավանաբար նույն վիճակում էին գտնվում Ապահունիք և Գնունիք կից գավառները, բայց եթե ընդունենք, որ Ապահունյաց եպիսկոպոսը ներկա չի եղել 505 թ. ժողովին, ապա Գնունյաց եպիսկոպոսի երևան գալը պետք-է վերագրել այդ ժամանակին։*

*Տարբերանի, ավելի ճիշտ՝ Տարուբերանի, ինչպես Ծղիշեի մոտ է, եպիսկոպոսը չկա հաջորդ ցանկերում, բայց Փարպեցու համեմատությամբ այստեղ կան մի քանի ուրիշ եպիսկոպոսություններ ևս, որոնցից մեկը անտարակույս համապատասխանում է հիշյալ եպիսկոպոսությանը։ Մեր կարծիքով այդ Խորխոռունյաց եպիսկոպոսությունն է։ Խորխոռունյաց իշխանները՝ ազնվատոհմ մաղխազները, որոնց ներկայացուցիչը 505 թվականի ժողովում կրում էր Հայաստանի մաղխազ մեծազղորդ տիտղոսը, պատկանում էին հին անվանի նախարարների թվին և անհավանական է, որ նրանք Ե դարում սեփական եպիսկոպոսություն չունենային։ Ագաթանգեղոսի արաբական վերսիայի այն վկայությունը, թե Խորխոռունյաց եպիսկոպոսությունը հիմնվել է Լուսավորչի ժամանակ, թեև ճիշտ համարվել չի կարող, բայց համենայն դեպս վկայում է, որ այդ եպիսկոպոսությունը հին ծագում է ունեցել։ Մեզ թվում է, որ Տարուբերանը այն գավառի աշխարհագրական անունն է, որը այլ կերպ նախարարական տան անունով կոչվում էր Խորխոռունիք։ Հետագայում այդ տերմինը ավելի լայն նշանակություն ստացավ և դարձավ այն 15 աշխարհներից մեկը, որը կազմված էր Խորխոռունիքից և նրա շրջակա գավառներից՝ Տարոնից մինչև Բագրևանդ։*

*Կայսերական Հայաստանին սահմանամերձ գավառներում եկեղեցական իշխանությունը բաժանված էր տարբեր կերպ։ 450 թվականին եպիսկոպոսներ կային Վանանդում, Բասենում և Մարդաղիքում, իսկ 505 թվականին հանդես են գալիս երկու եպիսկոպոս Բասենում և մեկը՝ Արշամունիքում, առանց Վանանդի և Մարդաղիքի եպիսկոպոսների հիշատակության։ Բասենը սկզբում*

*ընդգրկում էր նաև Վանանդը, և այստեղ նա գործ է ածված այդ առումով. երևի նրա երկու եպիսկոպոսներից մեկը նախատեսված է եղել Վանանդի համար։ Ինչ վերաբերվում է Արշամունյաց և Մարդաղիի եպիսկոպոսներին, ապա քանի որ նրանք հաջորդում են միմյանց, այսինքն՝ այնտեղ, որտեղ նշվում է առաջինը, բացակայում է երկրորդը և ընդհակառակը, կարելի էր կարծել, որ երկու գավառներն էլ գտնվում էին մեկ եպիսկոպոսի իշխանության տակ, որը համապատասխանաբար կոչվել է երկու անունով։ Բայց դրան խանգարում է աշխարհագրական դիրքը։ Միմյանցից կտրված լինելով Բինգյոլ-Սրմանցի լեռնային զանգվածով, հիշյալ գավառներից մեկը հարում է Բասենին, իսկ մյուսը՝ Տարոնին։ Ըստ Փավստոսի Արշամունիքը Տարոնի մասն էր և, անկասկած, եկեղեցական տեսակետից կախում ուներ Տարոնից։ Ներսեսի հաջորդի՝ Հովհաննես կաթողիկոսի օրոք Մարդաղի գավառը նշվում է Բասենի եպիսկոպոսության կազմում։ Ներսեսի օրոք Բասենի եպիսկոպոսն էր Գրիգորը, Մարդաղիինը՝ Ներսեսը, նրանից հետո երկու գավառներն էլ գտնում ենք Ներս<էս>ի իշխանության տակ։ Սա, անտարակույս, նույն Մարդաղիի եպիսկոպոսն է, և Բասենը նրան է անցել Գրիգորի մահից հետո[1]։ Հակառակ երևույթն է տեղի ունեցել 505 թվականին։ Այն, որ այդ թվականի եկեղեցական ժողովին ներկա չի եղել Մարդաղիի եպիսկոպոսը, բացատրվում է նրանով, որ այն ժամանակ այդ գավառը իր հերթին ժամանակավորապես ենթակա է եղել Բասենի եպիսկոպոսին։ Ինչպես որ Մարդաղին անջատվեց Բասենից, այնպես էլ Արշամունիքը անջատվեց Տարոնից. 550 թվականի ժողովում նրանք երկուսն էլ Բասենի և Տարոնի եպիսկոպոսների կողքին ունեին իրենց առանձին ներկայացուցիչները։*

*Այսպիսով, 450 թվականի 18 եպիսկոպոսություններին 505 թվականին ավելանում են ևս հինգ նոր եպիսկոպոսություններ՝ Արշամունեաց, Գնունեաց, Պալունեաց, Զարեհավանի, Մեհնունեաց և Տմորեաց, որին համապատասխանում է 555 թվականին «ուղղափառ ասորեաց» եպիսկոպոսությունը. իսկ 555 թվականին եպիսկոպոսությունների թիվը աճեց դարձյալ չորս նոր թեմերով՝ Գողթան, Ակեոյ, Բժնունեաց և Արշարունեաց, որը 505-ին գրված էր Բագրևանդի փոխարեն։ Ուրեմն՝ Զ դարի կեսին Հայոց եկեղեցին ուներ մինչև 27 եպիսկոպոսական թեմ։*

[1] Գիրք թղթոց, էջ 78, *Ներս Բասենոյ եւ Մարդաղոյ եպիսկոպոս*։

Հետևել եկեղեցական հիերարխիայի հետագա զարգացմանը բավական դժվար է, եթե նկատի ունենանք, որ Զ դարի վերջին եկեղեցու կյանքում սկսվում է դավանաբանական խմորումների և տարաձայնությունների շրջան. երկիրը բաժանվում է կուսակցությունների, և, դրա հետևանքով, այդ ժամանակամիջոցում տեղի ունեցած եկեղեցական ժողովները չեն ներկայացնում եկեղեցական ամբողջ հիերարխիան. եկեղեցու ներկայացուցիչներից շատերը այս կամ այն նկատառումներով խուսափում էին մասնակցել եկեղեցական ժողովներին։ Եկեղեցական տարակարծությունները շարունակվում են մինչև Ը դարի սկիզբը։ Այդ ժամանակաշրջանում տեղի են ունենում մի քանի եկեղեցական ժողովներ՝ 607, 644 և 726 թթ.։ Ներսեսից հետո կաթողիկոսական աթոռ է բարձրանում Հովհաննեսը, ապա Մովսեսը։ Մովսեսի մահից հետո հրավիրվում է եկեղեցական ժողով, որը, ի միջի այլոց, պետք է ընտրեր նոր կաթողիկոս։ Մի վկայության համաձայն այդ ժողովին որպես թե ներկա են եղել 50 եպիսկոպոս և 390 քահանա, բայց բերված են միայն 12 եպիսկոպոսի անունները[1]։ Սակայն այդ ժողովը կաթողիկոս չընտրեց, այդ պատճառով էլ եպիսկոպոսները Վրկանի մարզպան Սմբատ Բագրատունու նախաձեռնությամբ նորից են հավաքվում և կաթողիկոս ընտրում Ռշտունեաց Աբրահամ եպիսկոպոսին։ Այս անգամ ներկա էին նույն եպիսկոպոսները, որոնք մասնակցել էին նախորդ եկեղեցական ժողովին՝ բացի Մարդպետականի եպիսկոպոս Թեոդորոսից և Արծրունեաց Հովհաննես եպիսկոպոսից[2]։ Գահ բարձրանալով՝ նորընտիր կաթողիկոսը 607 թվականին նորից ժողով հրավիրեց, որպեսզի համոզվի հատկապես այն գավառների եպիսկոպոսների ուղղափառության մեջ, որոնք 571 թ. պայմանագրով անցել էին կայսրությանը[3]։ Այդ ժողովների արձանագրությունների մեջ նշված են միայն 15 եպիսկոպոսությունների ներկայացուցիչների անունները[4]։ Նրանցից

---

[1] Գիրք թղթոց, էջ 146։

[2] Նույն տեղում, էջ 149։

[3] Նույն տեղում, էջ 151։

[4] Նույն տեղում, կաթողիկոսից բացի ներկա էին հետևյալ եպիսկոպոսները՝

1 Մանասէ Բասենոյ
Քրիստափոր Սիւնեաց
Յովհաննէս Ամատունեաց
Գրիգոր Անձեւացեաց
5 Սիոյն Գողթան
Ահարոն Մեհնունեաց

առաջին անգամ հանդես են գալիս էլ<ոյ>Յովհաննիկ և Առնայ Թադէոս եպիսկոպոսները, որոնք Ատրպատականին սահմանամերձ հայկական թեմերի ներկայացուցիչներն էին[1]։

Դվինի եկեղեցական ժողովին, որ տեղի ունեցավ 644 թվականին Ներսես Գ կաթողիկոսի և Կոստանդ Բ կայսեր օրոք, դարձյալ շատ եպիսկոպոսներ չմասնակցեցին. կայսեր հրավերին արձագանքեցին ընդամենը 16 եպիսկոպոս, մեծ մասամբ այն գավառներից, որոնք Մորիկ կայսեր օրոք ետ էին խլվել պարսիկներից և 628 թվականին վերջնականապես միացվել կայսրությանը։ Նրանք բոլորն էլ մեզ արդեն ծանոթ թեմերի ներկայացուցիչներ են[2]։

---

7 Ներսէս Բժնունեաց
Յովհանկայ Էգոյ (Ուխտանեսի մոտ աղավաղված է Յոհան Կայլոյ, էջ 64 և Կայելոյ, էջ 57
Թադէոս Առ(ա)նայ
10 Թէոդորոս Սեպհական գնդի, էջ 146 և 196
Ստեփանոս Բագրեւանդայ
Մովսէս Խորխոռունեաց
Քրիստափոր Ապահունեաց
Ներսէս Վանանդայ
15 Հովհաննէս Արծրունեաց, էջ 146

[1] Էլ կամ Եղ, ավելի ճիշտ Էլի, որ անտարակույս Աշխարհացույցի Ալլի հնչյունափոխված ձևն է, Պարսկահայքի գավառներից մեկն էր։ Աշխարհացույցում Էլի-ն նույնացվում է Կուռիճանի հետ՝ Ալլի որ կոչի Կուռիճան=այժմյան Կույիժանը Գեվենում, Cuinef, II, 717։ Առնի-ն նույնպես Պարսկահայքում էր Դիրք թղթոցում՝ Առանայ, էջ 151, և Առնայոյ, էջ 147, Աշխարհացույցի Ա ռ ն ի ի փոխարեն։

[2] Արարատ, 1905։ Կանոնք Դունայ ա. ժողովոյն, հրատ. Մխիթար վարդ. և Ա. Տիգրանյան.

Ներսէս կաթողիկոս
1. Յովհաննէս Ոստան և Մարդպետական
Ներսէս Հարքայ
Քրիստոսատուր Բասենոյ
Իսրայէլ Տայոց
5. Յովհաննէս Մարդաղոյ
Յովհան Բզնունեաց
Գրիգոր Արշարունեաց
Սերէոս Բագրատունեաց
Գրիգոր Խորխոռունեաց
10. Սիմէօն Ռշտունեաց
Իսրայէլ Վանանդայ
Թէոփիլոս Աշմունեաց
Սաայէլ Ամատունեաց
Գրիգոր Անձեւացեաց
15. Թէոդորոս Գնունեաց
Յակոբոս Պալունեաց
Սամուէլ Մեհնունեաց

Չամչյանն իր Հայոց պատմության մեջ, Բ 345, տալիս է միևնույն անունները, բայց այլ հերթականությամբ։ Այնտեղ Արշարունեաց եպիսկոպոսն է Թէոփիլոսը, իսկ Աշմունեացը՝ Գրիգորը, հակառակ մեր վավերագրի։ Ի նկատի ունենալով այն հանգամանքը, որ Արշարունեաց տան եպիսկոպոսների ծանոթ ցանկի մեջ (նաև Տաշյանի, Ցուցակ ձեռագր., էջ 656) կա Թէոփիլոս անունով մեկը, որ հովվել է 36 տարի, պետք է գերադասություն տալ Չամչյանի ընթերցումներին։ Ցանկի մեջ կա նաև Գրիգոր եպիսկոպոս, բայց նա այն նշանավոր գիտնականն է, որ մասնակցել է 726 թ. ժողովին։

Եկեղեցական ժողովների նյութերի ուսումնասիրությունը մեզ բերում է մի եզրակացության, որը կարող է հաստատ հենարան ծառայել ճշտելու այն տեղեկությունների արժեքը, որոնք վերաբերում են ավելի հին ժամանակներին։ Այժմ մեզ պարզ է, որ Կամրջաձորի ավանդությունները, Լուսավորչի կողմից 30 կամ 35 եպիսկոպոսություններ հիմնելու մասին, ճշմարտությունից շատ են հեռու։

Ուշադրությամբ քննարկելով այն եպիսկոպոսությունների ցանկը, որը մենք բերեցինք վերևում և համեմատելով այն մեր քննության արդյունքների հետ, տեսնում ենք, որ փաստորեն նոր են միայն Ռոստակի[1] և Ասորաց երկրորդ եպիսկոպոսները։ Մեր պարզած եպիսկոպոսություններից այստեղ կարծես թե չկա Մարդպետական եպիսկոպոսը, սակայն նա փաստորեն մտնում է այն եպիսկոպոսության մեջ, որ կոչվում է Ոստան։ 644 թվականի եկեղեցական ժողովում, ինչպես տեսանք, երկու գավառները ներկայացնում էր մեկ եպիսկոպոս, որ կոչվում էր եպիսկոպոս Ոստանի և Մարդպետականի։ Այդպես էլ ցանկում նշված Առնայ եպիսկոպոսությունը, անկասկած, մտնում է հարևան Ելի եպիսկոպոսության կազմի մեջ։ Երկու նոր եպիսկոպոսություններից Ռոստակինը արդեն գոյություն ուներ Է դարի երկրորդ կեսին, որովհետև հայտնի է, որ Սահակ Ձորափորեցին նախքան կաթողիկոսական գահ բարձրանալը 680 թվականին Ռոստակի եպիսկոպոսն էր[2]։ Իսկ Ասորաց երկրորդ եպիսկոպոսը քննարկվող ցանկում հիշվում է առաջին անգամ։ Այսպիսով, հայոց եկեղեցու հիմնադրին վերագրված ցանկը, իր կազմով, չի կարող վերաբերվել Է դարի վերջից ավելի վաղ ընկած ժամանակներին։

Ցանկի մի քանի առանձնահատկությունները հիմք են տալիս մտածելու, թե այն ոչ այլ ինչ է, եթե ոչ ինչ-որ ժողովի արձանագրության ստորագրություններ, որ պետք է տեղի ունեցած լինի Հայաստանում նշված թվականից հետո։ Հետագայի ամենաժողովրդական և ամենակարևոր եկեղեցական ժողովը համարվում է Հովհան Օձնեցու ժամանակ՝ 726 թվականին հրավիրված Մանազ-

---

[1] Ռոստակը (=rostak) ըստ Հովհաննես կաթողիկոսի, էջ 158, Սալմաստի գավառն է. «զկողմամբքն Ռոստակայ գաւառին ի Հեր եւ Սաղամաս»։

[2] Հովհան կաթողիկոս, էջ 53, «կարգեալ էր յեպիսկոպոսութիւն Ռոստկաց եւ զկնի ապա կոչեցաւ յաթոռ սրբոյն Գրիգորի»։

*կերտի եկեղեցական ժողովը։ Այդ ժողովի հայերեն արձանագրությունների մեջ բերված են միայն առավել ազդեցիկ ութ մասնակիցների անունները։ Բարեբախտաբար ստորագրությունների լրիվ ցանկը պահպանված է ասորական մատենագրության, հատկապես հակոբիկյան հայտնի հայրապետ Միքայել Ասորու «Ժամանակագրության» մեջ։ Բերում ենք այդ ցանկը ամբողջությամբ՝ դիմացը նշանակելով նաև այն ստորագրությունները, որոնք պահպանվել են հայերենի մեջ։*

| | |
|---|---|
| Iwanēs, կաթողիկոս հայոց | |
| 1 Halphai, *եպ.* Arkiws | Աղփէոս Հարքայ |
| Theodoros, *եպ.* Armn | Թադէոս Ոստան |
| Sahak, *եպ.* Mamikonean | Սահակ Մամիկոնեան |
| <Rsqw *եպ.*> Basean | Յեսու Բասենոյ |
| 5 Sargis, *եպ.* Ditris | Սարգիս Տայոց |
| Theorios Beznunis | Թէոդորոս Բզնունեաց |
| Theodoros Ašamunis | |
| Grigorios Ašarunis | Գրիգորիոս քորեպիսկոպոս Արշարունեաց |
| Nwzwn Asibwgn | |
| 10 Habel Amatunis | |
| David Ereštunis | |
| Iowsep Artsrunis | |
| Grigor Wanand | |
| Narkisos Khorkhorunis | |
| 15 Esayi Goltn | |
| Iwanes Gnunis | |
| Gorgi Rotakay | |
| Iowsep Bakratunis | |
| Mikael Bakrewand | |
| 20 Eremia Apahunis | |

Salomon Mrina
Gabriel Arzon
Khosrow vardapet
David Suphrin
25 Salomon *վարդ.* Makenis
Raphael, *վարդապետ*
Simeon, doctor
Iwanes, *քորեպիսկոպոս*
Grigor, Taraun
30 Sahak, *քորեպ.* Matnis
31 Sargis *եպ.* Sanasnayē

*ինչպես նաև այլ երեցներ և վարդապետներ*[1]։

[1] Chabot, II, p. 497, Գիրք թղթոց, *էջ 223։* Տաշյան, *Ցուցակ, էջ 768։* Զամչյան, *Բ, էջ 398։ Ասորականի մեջ եկեղեցական ժողովը վերագրված է հունական, այսինքն՝ Սելևկյան թվարկության 1037 թ. և սխալմամբ հայոց 135 թ. փոխա-*

Եկեղեցական ժողովին կաթողիկոսից բացի մասնակցել են նաև զանազան թեմերի 31 ներկայացուցիչներ։ Ուխտանեսի ցանկում հաշվվում է 30 թեմ։ Ուխտանեսի ցանկի համեմատությամբ ավելի է Asibu<r>qn-ի, այսինքն՝ Սեպուրականը կամ Սեպհականը, որ այլ կերպ կոչվում է Մարդպետական ներկայացուցչություն։ 644 թ. ժողովում այդ գավառը Ոստանի հետ միասին ուներ մեկ ներկայացուցիչ. ինչպես երևում է, ըստ Ուխտանեսի էլ այն մըտնում է Ոստանի մեջ[1]։ Ճիշտ այդպես էլ Բզնունիքը Տարոնի հետ միասին կազմում էր մեկ թեմ՝ Մամիկոնյաց եպիսկոպոսությունը, մինչդեռ այստեղ առանձին-առանձին հիշատակված են Բզնունեաց եպ. և Մամիկոնեաց եպ.։ Շատ հավանական է, որ Բզնունին գըրված է Բժնունի-ի, ավելի ճիշտ՝ Բաժունիի փոխարեն, և այդ թեմի ներկայացուցիչ Թեոդորոս եպիսկոպոսը հենց այն Թեոդորոսն է, որ Սյունյաց եպիսկոպոս Ստեփանոս Փիլիսոփայի մոտ բերված է Բաղեն անունով[2]։

Համեմատելով հիշյալ եկեղեցական ժողովի մասնակիցների ցանկը Ուխտանեսի նշած թեմերի ցանկի հետ, գտնում ենք, որ 30 անուններից 20-ը միանգամայն համընկնում է, իսկ 10-ը տարբերվում։ Առաջին ցանկում շատ աղավաղումներ կան, որոնցից մի քանիսը հաջող կերպով սրբագրված են հրատարակչի կողմից, մյուսների ճիշտ ընթերցումները հեշտությամբ վերականգնվում են Ուխտանեսի ցանկի հետ բաղդատելու դեպքում։ Այսպես, Mrina-ն կամ Mrdin-ը, Karzwn-ը, Suphrin-ը, Matnis-ը աղճատումներ և ոչ ճիշտ ընթերցումներ են Մարդաղիի, Զարեհավանի, Պալունիի,

---

նակ 175, ինչպես հայերեն բնագրում է. Կիրակոս Գանձակեցու մոտ՝ 156, փխ. 175-ի աձե, փխ. աճեւ Ըստ Տաշյանի Ցուցակի, էջ 108, ձեռագրերից մեկում «յամին տեառն ռճե փխ. յամի հայոց պճե»։

[1] Theodoros Armn-ը պետք է կարդալ <ostan> Armn=Ոստան Հայոց Հարքայ-ն կարդացվում է Arki-ws, արդյոք վերջին ws=wostan-ին չէ՞, որ սխալմամբ տեղ է գտել Ark-ից հետո։

[2] Տե՛ս Ստեփանոս Իմաստասերի «Վասն անապականութեան մարմնոյն», էջ 368, Արարատ, 1902, մարտ-ապրիլ։ Բժունի-քը, որ Վասպուրականի հարավային գավառներից մեկն էր, ծագում է Բաղ-ից և այժմ էլ Բաղ է կոչվում Ջուլամերկից հարավ գտնվող լեռնային շրջանը, որտեղ բնակվում է ասորական ինքնավար ցեղերից մեկը Բազ անունով, Cuinet, II, էջ 651, Բաղ-ից առաջ է գալիս Հայ. Բաժունի, ինչպես որ է Ուխտանեսի ցանկում, կամ Բժունի։ Բժնունի ձևը կրում է Բզնունի-ի ազդեցությունը։

*և Մեհնունիի։ Գիտնական խոսրով երեցը, որ կոչված է հայոց վարդապետ, հանդիսանում էր Մոկաց (կամ Անձևացեաց) ներկայացուցիչը, իսկ Սարգիսը՝ Սանասունի եպիսկոպոսը, համապատասխանում է Ուխտանեսի ցանկի Ասորաց եպիսկոպոսին։*

*Եկեղեցական ժողովի ցանկում չկան Ակէի, Անձևացեաց և Ասորաց-Տմորիքի գավառների եպիսկոպոսները։ Սողոմոն, Սիմեոն և Հովհաննես երեցները, որոնք հիշված են ժողովի մասնակիցների թվում առանց նշելու, թե որ թեմերն են ներկայացնում, հավանաբար հենց այդ վերոհիշյալ երեք գավառների ներկայացուցիչներն են։*

*Ներկայացուցիչներ չկան նաև Գարդմանի և Էղոյ,* resp. *Առնայ գավառներից, բայց հիշվում են* Bkrtunis*-ի (տարընթերցվածք* Srtunis*) և* Taron*-ի եպիսկոպոսները։ Նկատի ունենալով, որ Բագրատունյաց եպիսկոպոսը Բագրևանդի եպիսկոպոսն էր, որ արդեն նշված է ցանկում, իսկ Տարոնի եպիսկոպոսը՝ Մամիկոնյաց, որ նույնպես նշված է վերը, ապա կասկած է առաջ գալիս, թե արդյոք* Bkrtunis*-ը և* Taron*-ը* բ-Գարդմանի *և* տ-Առանի *աղճատումները չե՞ն։*

*Առաջարկվող ուղղումները հիմնվում են գլխավորապես երկու ցանկերի համեմատության վրա։ Ասորական բնագրում հայկական անվանումները այն աստիճան են աղավաղված, որ թույլատրելի են զանազան տարընթերցվածքներ և մեր կռահումները բռնազբոսիկ չպետք է թվան։ Համենայն դեպս, գործի էության տեսակետից կարիք չկա ապացուցել երկու ցանկերի լիակատար զուգադիպությունը և պնդել դրա վրա։ Բավական է, որ երկու ցանկերը հիմնականում համընկնում են։ Մանազկերտի եկեղեցական ժողովը առաջնակարգ նշանակություն ունեցավ և նոր դարաշրջան բացեց հայոց եկեղեցու պատմության մեջ։ Այդ ժողովի հետ է կապվում, այլ հարց է՝ սխալ թե՝ ճիշտ, հայ եկեղեցական ավանդույթների վերահաստատումը, որոնք իբր հիմնադրվել էին դեռ Լուսավորչի օրոք, բայց խախտվել ու մոռացվել էին Է դարի քաղքեդոնական հոսանքների կողմից։ Ահա դրանով էլ բացատրվում է, թե ինչու հետագայում եկեղեցական ժողովին մասնակցած թեմերի ցանկին հին տեսք է տրվել և հարմարեցվել է Լուսավորչի ժամանակին։*

*Պատմական վավերականության տեսակետից նույնքան անվստահելի է Ագաթանգեղոսի մոտ պահպանված թեմերի ցանկը, որը նույնպես կասկածելի է թվում։ Արաբական վերսիան մեզ*

բանալի է տալիս մեկնաբանելու Լուսավորչի ժամանակներին վերագրված ցուցակի բնույթն ու նրա իսկական ծագումը։

Նախ և առաջ հետաքրքրական է հենց այն երկրների ու գավառների դասակարգությունը, ուր եպիսկոպոսներ են նշանակվել։ Տարբերվում են երեք խմբեր. առաջինի մեջ հիշվում են Վիրքը, Ափխազիան և Աղ(վ)անիան, երկրորդում՝ վերը նշված հայկական ութ գավառները, և երրորդում՝ հայկական մյուս տասներեք գավառները կամ ավելի ճիշտ՝ եպիսկոպոսությունները։ Առաջին խմբի առանձնացումը Հայաստանի կողմից հասկանալի է, բայց ինչո՞վ բացատրել հայկական գավառների խմբավորումը, ինչու՞ ինքնավար սատրապությունները Սյունիքի, Մոկքի և Մարդպետականի հետ առանձնացված են Հայաստանի մյուս մասերից և ներկայացված են առանձին խումբ։ Այս հարցի պատասխանի մեջ է թաքնըված Ագաթանգեղոսի արաբական վերսիայի խմբագրության ժամանակը ճշտելու բանալին։

Այստեղ անշուշտ խոսք չի կարող լինել քաղաքական որևէ կոմբինացիայի մասին։ Միակ բանը, որ կարող էր հիմք ծառայել միմյանց կապելու իրարից այնքան բաժան-բաժան գավառները, ինչպիսիք են Անգեղ տունը, Անզիտենեն, Ծոփքը և Հաշտյանքը, մի կողմից, և Սյունիքը, Մարդպետականն ու Մոկքը, մյուս կողմից, դա դավանաբանական տեսակետ է։ Արաբական վերսիան, ըստ երևույթին, վերաբերում է այն ժամանակին, երբ այդ և կենտրոնական մյուս գավառների միջև դավանաբանական տարակարծությունների պատճառով գժտություն էր ընկել։ Այդպիսի ժամանակ էր Զ դարի երկրորդ կեսը։ Փաստաթղթերով հաստատված է, որ այդ ժամանակ Սյունիքը, Մարդպետականը և Մոկքը հակված էին դեպի նեստորականությունը։ Հայաստանում Նեստորի վարդապետության հաջողությունների մասին առհասարակ կարելի է դատել նրանից, որ այն թափանցեց հենց Հայաստանի կենտրոնը և բուն դրեց կաթողիկոսական աթոռանիստ քաղաքում՝ Դվինում։ Ներսես կաթողիկոսը դրա դեմ պայքարելու համար ստիպված եղավ դիմել շատ կտրուկ միջոցների։ Հենց այդ նպատակով էլ գումարվեց 555 թվականի ժողովը։ Կաթողիկոսը հատուկ կոնդակով պահանջում էր, որ հատկապես մի քանի եպիսկոպոսներ անպատճառ ներկա լինեն ժողովին՝ հակառակ դեպքում սպառնում էր բանադրել նրանց։ Դրանք են Արծրունյաց, Ռշտունյաց, Մոկաց և

մյուս հարևան գավառների եպիսկոպոսները[1]։ Այդ եպիսկոպոսությունները գտնվում էին Ասորիքի սահմանագլխին և, ըստ երևույթին, բոլորից շատ էին ենթարկվել նեստորականության ազդեցությանը։ Ժողովի արձանագրության մեջ նշվում են Արծրունյաց, Պալունյաց և Մեհնունյաց եպիսկոպոսների ստորագրությունները․ մյուսները հավանաբար չեն արձագանքել կաթողիկոսի հրավերին։ Ժողովից հետո Ներսեսը անհրաժեշտ է համարում կրկին դիմել Արծրունյաց և Մարդպետականի եպիսկոպոսներին և, թեև նրանք ներկա էին եղել ժողովին, այնուամենայնիվ հիշեցնում է ժողովի որոշումները և առաջարկում է նրանց խիստ միջոցներ ձեռք առնել Նեստորի հետևորդների դեմ[2]։ Ներսեսի հաջորդը՝ Հովհաննեսը, Սյունյաց եպիսկոպոս Վրթանեսին գրում է, որ նրա թեմում շատ նեստորականներ են ապրում, և որ պետք է նրանց հալածել՝ հիշելով Լուսավորչի պատգամները և այն աշխատանքները, որ նա կատարել է Սյունյաց աշխարհի համար[3]։ Այս նույնը կրկնվում է նաև Աղվանից եկեղեցուն ուղղված նրա նամակում[4]։

Այս տվյալները վկայում են, որ եկեղեցական թեմերի խմբավորումները արտացոլում են երկրի Զ դարի վերջի դավանաբանական վիճակը։ Այսպիսով, թեմերի ցուցակը միևնույն ծագումն ունի, ինչ որ վերը քննարկված իշխանների ցանկը և վերաբերում է Զ դարի վերջին և Է դարի սկզբներին։ Եթե Սյունիքի եկեղեցական մեկուսացումը որևէ կապ ունի Հայաստանից այդ նահանգի քաղաքական անջատման հետ, որ տեղի ունեցավ 571 թվականին, ապա ցանկը և Ագաթանգեղոսի խմբագրությունը վերաբերում են 571 թվականից հետո և մինչև 612 թվականն ընկած ժամանակամիջոցին։ Հայերեն Ագաթանգեղոսը լռում է ոչ միայն Վիրքի, Աղվանքի և Ափխազիայի, այլև դեպի նեստորականությունը հակված հայկական ուծ գավառների մասին. այստեղ անուն առ անուն նշվում են միայն 12 եպիսկոպոսներ, առանց ցույց տալու համապատասխան գավառները, բայց և չի թաքցնում, որ «եղել են նաև ուրիշ եպիսկոպոսներ, որոնց անունները ցանկության դեպքում էլ հնարավոր չէ հիշատակել»։ Այս խոսքերի իմաստը պարզվում է

[1] Գիրք թղթոց, էջ 70։

[2] Նույն տեղում, էջ 76։

[3] Նույն տեղում, էջ 79, լուաք եթե պեղծ նեստորականք բազումք են ի ..եր աշխարհիդ բնակեալ են»։

[4] Նույն տեղում, էջ 81։

*այն արաբական վերսիայի հետ համեմատելու դեպքում։ Այս ակնարկը, ըստ երևույթին, վերաբերում է այն ութ գավառների եպիսկոպոսներին, որոնց անունները չեն նշված։ Հայ խմբագիրը ավելի շատ հետաքրքրվել է եպիսկոպոսներով, քան նրանց թեմերով։ Քանի որ նրա սկզբնաղբյուրում՝ այժմյան արաբական վերսիայի հայկական բնագրում, նշված չի եղել առաջին խմբի եպիսկոպոսների, այսինքն՝ նեստորականության հարող եպիսկոպոսների անունները, ուստի նա բավարարվել է ակնարկելով, և ցանկության դեպքում անգամ չի կարող նշել նրանց անունները։*

*Այժմյան Ագաթանգեղոսը խմբագրելիս օգտագործվել է արաբական վերսիայի հայկական բնագիրը, սակայն այդ բնագիրն էլ Ագաթանգեղոսի սկզբնական խմբագրությունը չէր։ Խմբագրական անհարթությունը, որ աչքի է ընկնում եպիսկոպոսների ցանկի մեջ, բավական է համոզվելու, որ այդ գործը շարահարական բնույթ ունի և այն Գ ր ի գ ո ր ի Վ ա ր ք ի ավելի հին խմբագրության վերամշակումն է։ Այլ հատկանիշների կողքին բնորոշ է նաև Աղբիանոսի անվան կրկնությունը ցանկի մեջ։ Ըստ արաբական Ագաթանգեղոսի՝ Գրիգորը Բագրևանդի և Եփրատի առափնյա բոլոր գավառների բնակիչների մոտ է ուղարկում Աղբիանոս եպիսկոպոսին, իսկ սպարապետ Մամիկոնյանների երկիրը՝ հատկապես Տարոնն ու Բզնունիքը՝ Աղբիոս եպիսկոպոսին։ Մինչդեռ հայերեն բնագրում Աղբիոս անձնավորություն հայտնի չէ և հիշատակվում է միայն Աղբիանոսը։ Կասկած չկա, որ երկու անունների տակ թաքնված է միևնույն անձնավորությունը՝ հայտնի եպիսկոպոս Աղբիանոսը։ Աղբիանոսի անձնավորության երկատումը առաջ է եկել նրանից, որ խմբագիրը ձեռքի տակ ունեցել է տարբեր աղբյուրներ, որոնցից մեկի մեջ գրված է եղել Աղբիանոս, իսկ մյուսում՝ Աղբիոս։ Ենելով իր ժամանակ գոյություն ունեցող իրավիճակից, երբ Տարոնը Բզնունիքի հետ և Բագրևանդը շրջակայքի հետ համարվում էին առանձին թեմեր, հեղինակը Աղբիանոսին և Աղբիոսին համարել է տարբեր անձնավորություններ։ Ըստ բոլոր՝ տվյալների, արաբական վերսիան առաջ է եկել ավելի հին խմբագրությունից ճիշտ այնպես, ինչպես որ նրանից ստեղծվել է մեզ հասած հայկական բնագիրը*[1]*։*

---

[1] *Ագաթանգեղոսի ոճական մի քանի առանձնահատկությունները հարազատացնում են նրան Կորյունի* Վարք Մաշտոցի *աշխատության հետ. կարելի է նրա անվան*

Հետևել զարգացման ընթացքին և համեմատաբար հին տարրերը անջատել նորերից՝ շատ դժվար է։ Մի բան ստույգ է, որ մեզ հետաքրքրող եպիսկոպոսների ցանկը ազգային խմբագրությանը չէր պատկանում։ Այն չէր կարող մտնել նաև սկզբնական խմբա-

---

հետ կապել նաև Գրիգորի Վարքի ենթադրյալ հին խմբագրությունը։ Տարօրինակ ճակատագրով Կորյունի աշխատությունը ևս ենթարկվեց խմբագրական վերամշակման, և մեզ հասած տարբերակը չի կարելի համարել սկզբնական։ Ղազար Փարպեցին մեծապես օգտվել է Կորյունի աշխատության հավանաբար մի այլ խմբագրությունից։ Անհավանական է, որ պատմիչը Կորյունից փոխառնելով ամբողջ էջեր, այնպես խիստ կերպով փոփոխեր նրա ոճը։ Մեզ թվում է, որ երկու հուշարձանները՝ Գրիգորի Վարքը և Մաշտոցի Վարքը հենց սկզբից էլ կապված են եղել միմյանց հետ և ենթարկվել են միևնույն ճակատագրին։ Վերջերս Ն. Մառը, Крещение... стр. 157, 180 և շար. կռահում արեց Մեսրոպի՝ իբրև Գրիգորի Վարքի հեղինակի հետ ունեցած աղերսի մասին. միայն թե Ն. Մառի հարցադրումը կարիք ունի որոշ ճշտման։ Մեսրոպի կողմից կատարելագործված գրերը հանդիսացան նոր և հզոր միջոց քրիստոնեության քարոզչության համար. մի քանի գավառներ առաջին անգամ ընդունեցին քրիստոնեություն։ Շարունակելով Լուսավորչի գործը՝ Մաշտոցը, հավանորեն, առաջին անգամ լինելով, հավաքեց վարքագրական նյութեր Գրիգոր Լուսավորչի և սուրբ կույսերի մասին և կազմեց Գրիգորի Վարքը, այժմյան Ագաթանգեղոսի նախատիպը։ Նրա աշակերտը՝ Կորյունը, կազմելով իր ուսուցչի վարքագրությունը, միաժամանակ վերանայում է նաև նրա գրական աշխատությունները, դրանց թվում նաև Գրիգորի Վարքը։ Դրանով էլ բացատրվում են երկու աշխատությունների՝ Գրիգորի Վարքի և Մեսրոպի Վարքի միջև եղած չափման ընդհանուր կետերը։ Զ և Է դարերի սահմանագծին՝ 571 թվականից սկսած, կապված քաղաքական դեպքերի փոփոխվելու հետ, եկեղեցական խմորումների ազդեցության տակ Գրիգորի Վարքի Կորյունյան խմբագրությունը վերախմբագրվեց՝ նոր տրամադրություններին համեմատ։ Նոր խմբագրության հավանական հեղինակ կարելի է համարել Եղնակ երեցին, որ հայտնի է Փարիզի ազգային մատենադարանում գտնվող Ագաթանգեղոսի մի ձեռագրի հավելվածում պահպանված մի փոքրիկ աշխատությամբ։ Նա կրում է հետևյալ վերնագիրը՝ «Նշանագիր կարգաց բանից Եղնկանն երիցու» ըստ այն ընդօրինակության, որ մենք արտագրել ենք cod. 51-ից (Սամուել Անեցու հավելվածի մեջ, հրատ. Արշակ Տեր-Միքելյանի, 1893, էջ 266)։ Այս աշխատության մեջ հակիրճ պատմվում է Տրդատից հետո եկող կաթողիկոսների և թագավորների մասին մինչև Կոմիտասը, որի ժամանակ ապրել է Եղնակը և ականատես եղել Ս. Հռիփսիմեի նշխարների գյուտին։ Պատմությունը վերջանում է հետևյալ խոսքերով. «Եղիցի յիշատակ Եղնակն ի թարգմանել զգիրս գայս» (դրանից հետո եկող երկը Եղնակին չի պատկանում)։ Փարիզի մատենադարանի հայկական ձեռագրերի ցուցակը կազմող աբբա Մարտինը հիշյալ ձեռագիրը նկարագրելիս այն կարծիքն է հայտնել, թե մեզ հասած Ագաթանգեղոսը Եղնակի աշխատությունն է։ Այդ կարծիքը կրկնում է նաև Langlois, *Collec. des hist .arm.* 1867, I, p. 103։ Ն. Մառը, *Крещение...*, стр. 152, համաձայն չի այդ կարծիքին, կարծելով, որ հիշատակարանը վերաբերում է միայն հայ կաթողիկոսնե-

գրության մեջ։ Նեստորականությանը հարող վերոհիշյալ ութ թեմերի վերաբերյալ տարակույս չի կարող լինել։ Նրանցից Սյունյաց եպիսկոպոսությունն, օրինակ, հիմնել է Մեսրոպը, ինչպես այդ մասին վկայում է նրա աշակերտը, և այդ պատճառով էլ նա չէր կարող տեղ գտնել առաջին խմբագրության մեջ, այսինքն՝ Գրիգորի հիմնած եպիսկոպոսությունների շարքում։ Քննելով հետևյալ 12 եպիսկոպոսությունների կազմը՝ գալիս ենք նմանօրինակ եզրակացության։ Այդ եպիսկոպոսները նշանակված էին Բագրևանդի և Եփրատի առափնյա գավառների, Բասենի, <Վանանդի>, Եկեղիք-Դերջանի, Դարանաղիի, Կարինի, Սպերի, Տարոն-Բզնունիքի, Խորխոռունիքի, Արշամունիքի, Շիրակի, ինչպես նաև Կորդուքի ու Ատրպատականի համար։ Բացի վերջին երկու գավառներից, մյուս բոլոր գավառները, ըստ 531 թ. սահմանագծի, գտնվում էին Հայաստանի կայսերական մասում։ Խոսրով արքայորդին, որ կայսեր աջակցությամբ տիրացավ հոր գահին, ինչպես տեսանք, կայսրությանը զիջեց Պարսկական Հայաստանի զգալի մասը, և նախկին Արևելյան Հայաստանի կենտրոնական նահանգներից Պարսկաստանի տիրապետության տակ մնացին միայն Այրարատի մի մասը և ամբողջ Վասպուրականը։ Հենց այդ գավառներն էլ չեն ներկայացված Ագաթանգեղոսի եպիսկոպոսների ցանկի մեջ։ 591 թվականին Հայաստանի ճակատագրի մեջ տեղի ունեցած քաղաքական բեկումը ուղեկցվում է եկեղեցական խմորումներով։

Դեռևս 571 թվականին պարսիկ մարզպան Սուրենի սպանության առիթով Հայաստանում ծագած խռովությունների ժամանակ Հով-

---

րի և թագավորների ցանկի թարգմանությանը, և ոչ թե սբ. Գրիգորի պատմությանը։ Բայց բանն էլ հենց այն է, որ կաթողիկոսների այդ ցանկը հազիվ թե կարելի է թարգմանություն համարել, «Եղիցի յիշատակ Եղնակն ի թարգմանել զգիրս զայս» խոսքերը ավելի շուտ վերաբերում են Ագաթանգեղոսի գրքին։ Հնարավոր է, որ «թարգմանել» բառն այստեղ ավելի լայն իմաստ ունի և նշանակում է մեկնաբանել, կազմել (հմմտ. Յովհաննէսեան, Նախնեաց ռամկօրէն, էջ 179 և շար.)։ Ագաթանգեղոսը վերախմբագրելիս Եզնակը միաժամանակ միջամտել է նաև Մեսրոպի Վարքին, որը, ըստ երևույթին, կցված է եղել Գրիգորի Վարքին իբրև հավելված։ Եզնակի գրչին են պատկանում այն ընդհանուր տեղերը, որոնք առկա են Կորյունի աշխատության և Ագաթանգեղոսի Նախաբանի ու վերջին մասի միջև։ Այսպիսով, պետք է ենթադրել, որ սբ. Գրիգորի գիրքը անցել է զարգացման երեք հաջորդական փուլ և խմբագրության է ենթարկվել երեք անգամ. առաջին անգամ Մեսրոպ-Կորյունից, երկրորդ անգամ՝ Եզնակից Է դարի սկզբին և երրորդը՝ ազգային խմբագրությունն է Ը դարում։

*հաննես կաթողիկոսը և ապստամբության ղեկավար Վարդան Մամիկոնյանը գնացին Բյուզանդիա՝ պարսից ճնշումների դեմ օգնություն խնդրելու, և այնտեղ այս կամ այն ձևով քաղքեդոնականություն ընդունեցին։ Այդ դավաճանությունը ազգային ավանդույթներին, ինչպես վկայում է ժամանակակիցը[1], Հայաստանում առաջ բերեց ժողովրդական դժգոհություն։ Շուտով Պարսկաստանում գահի համար խռովություններ ծագեցին և հայերը Մուշեղի ղեկավարությամբ, որ նույնպես Մամիկոնյան տոհմից էր, անցան Խոսրովի կողմը ընդդեմ Զուրինի։ Սակայն փառապանծ Մամիկոնյանը չխուսափեց Խոսրովի հալածանքներից և ստիպված եղավ Վարդանի նման փրկություն գտնել Բյուզանդիայի մայրաքաղաքում[2]։*

*Մի զրույցի համաձայն, Մորիկ կայսրը այս իշխանին նույնպես առաջարկում է հրաժարվել հարազատ եկեղեցուց և միանալ կայսերականին։ Մուշեղը խույս էր տալիս՝ պատճառաբանելով, որ նախ պետք է լուծել վիճելի հարցերը, որի համար խորհուրդ է տալիս կաթողիկոսին և եկեղեցու այլ ներկայացուցիչների հրավիրել մայրաքաղաք՝ ժողովի։ Մովսես կաթողիկոսը կտրականապես մերժում է կայսեր առաջարկը։ Կտրականապես հրաժարվեցին նաև Ասպուրական աշխարհի եպիսկոպոսները, որոնք պարսիկների հպատակության տակ էին։ Բայց Տարոնի եպիսկոպոսները և մյուսները, որոնք գտնվում էին հռոմեացիների իշխանության տակ, ուղևորվում են Կոստանդնուպոլիս և այնտեղ համաձայնում կայսեր բոլոր առաջարկներին[3]։*

*Ագաթանգեղոսի ցանկում պակասում են հենց Վասպուրականի և Հարևան Մոկքի եպիսկոպոսները. այնտեղ ներկայացված է միայն կայսերական Հայաստանը։ Իր կազմով ցանկը ակնհայտորեն քաղքեդոնական երանգ ունի և համապատասխանում է Զ դարի վերջին տասնամյակի տրամադրություններին։ Այդ ժամանակին էլ վերագրվում է ութ գավառների եպիսկոպոսների խումբը։ Թվում է, թե այդ գավառները մուծված են Լուսավորչի մկրտած երկրների ցուցակը, որպեսզի նրա պակասները լրացվեն։ Թեև ցանկում նշված է Ատրպատականը, որի տակ հասկացվել է, հավանո-*

1 Հովհաննես Եփեսացի, *Եկեղեցական պատմություն, գերմ. թարգմ. էջ 60-66։*

2 Սեբեոս, Գ, *գլ.։*

3 Διήγσις ἀπὸ τοῦ ἁγίου Γρηγορίου, *այսպես է իմ օգտագործած ընդօրինակության մեջ ըստ* Cod. Paris. 900 fol. 144.

*րեն, առհասարակ Պարսկական Հայաստանը, բայց և այնպես ցանկի մեջ աչքի է զարնում Մարզպետական գավառների՝ Մոկքի, Սյունիքի և սատրապական հողերի բացակայությունը։ Հենց սրանք էլ մտցվել են տեքստի մեջ, որ դրա հետ մեկտեղ հաշվի են առնվել նաև ինչ-որ դավանաբանական կապեր, շատ հավանական է։ Ուրեմն մկրտված երկրների ցանկը կրում է մասամբ քաղկեդոնական և մասամբ նեստորական կնիք։ Մինչև Է դարը հայոց եկեղեցու մեջ պայքարում էին երկու հոսանքներ։ Ազգային կուսակցությունը, պայքարելով նեստորականության դեմ, ակամա ընկավ քաղկեդոնականության ազդեցության տակ, որը նույնպես հալածում էր Նեստորի վարդապետությունը։ Է դարի կեսին Հայաստանում քաղկեդոնականությունը հաղթող դուրս եկավ և դարձավ գերիշխող դավանանք։ Միայն Ը դարի սկզբին հայերին հաջողվում է հրաժարվել քաղկեդոնականությունից և մշակել ազգային եկեղեցական քաղաքականություն, որի համաձայն Ագաթանգեղոսը վերստին ենթարկվեց համապատասխան վերամշակման։*

## II

*Այս վերլուծությունը ցույց է տալիս, որ Ագաթանգեղոսի տվյալները բոլորովին պիտանի չեն Լուսավորչի օրոք եկեղեցական հիերարխիայի վիճակը պարզելու մեր խնդրի համար։ Հայկական եկեղեցու սկզբնական պատմության համար առավել հին և վստահելի աղբյուրը մնում է Փավստոսի աշխատությունը։ Պատմիչի նկարագրած ժամանակաշրջանում քրիստոնեական եկեղեցին Հայաստանում շատ քիչ եպիսկոպոսություններ ուներ։ Փավստոսին քաջ հայտնի էին երկու տոհմ՝ Գրիգոր Լուսավորչի և Աղբիանոսի տոհմերը։ Մեկ անգամ հիշատակվում է Բասենի եպիսկոպոսը և տրվում է Փավստոս եպիսկոպոսի անունը՝ այն անձնավորության, որ Ներսեսին սարկավագ է ձեռնադրել[1]։ Իր աշխատության վերջում պատմիչը թվում է Խոսրովի թագավորության ժամանակ գոյություն ունեցող գլխավոր եպիսկոպոսությունները, բայց այստեղ ևս, բացի Աղբիանոսի տոհմի ներկայացուցիչներից, հիշատակում է նույն ծերունազարդ եպիսկոպոս Փավստոսին, Բասենի (Զորթ, Արտիթ, Տիրիկ և Մովսես) եպիսկոպոսներին[2], ինչպես և*

---

[1] Փավստոս, Դ, գ։

[2] *Հմմտ.* Խորենացի, Գ, ծե։

Տայոց Կիրակոս, Վանանդի Զորթուաղ եպիսկոպոսներին և ոմն Ահարոն եպիսկոպոսի։ Եթե դարի վերջում եկեղեցական հիերարխիայի կազմը բաղկացած էր մի քանի եպիսկոպոսներից, ապա ակներև է, որ այն ավելի թույլ պետք է լիներ դարի սկզբում՝ Գրիգոր Լուսավորչի օրոք։ Հոգևորականության նկատմամբ ունեցած այսքան ուշադիր վերաբերմունքի դեպքում պատմիչը չէր կարող մոռանալ և չհիշատակել ուրիշ եպիսկոպոսների մասին, եթե նրանք լինեին։

Հայոց եկեղեցու գոյության առաջին դարում հիերարխիան հատկապես բաղկացած էր Աղբիանոս եպիսկոպոսի և Գրիգոր Լուսավորչի տոհմերից, որոնք միմյանց հետ մրցում էին երկրում առաջնակարգ դիրք ձեռք բերելու համար։ Նրանց մրցակցությունը որոշակի դեր խաղաց եկեղեցական կազմակերպության ձևավորման ժամանակ, և անհրաժեշտ ենք համարում կանգ առնել այդ մրցակցության աղբյուրի և բնույթի վրա։

Գիտությունը չի հերքում Հայաստանում քրիստոնեական համայնքների գոյությունը մինչև Լուսավորչի քարոզչությունը։ Քրիստոնեության սկզբնավորությունը այստեղ, ինչպես և ամեն տեղ, կորչում է առասպելական զրույցների խավարի մեջ։ Հայաստանում քրիստոնեության տարածման վերաբերյալ ազգային ավանդությունները տարբերում են երեք հոսանքներ, որոնք կապված են Թադեոս ու Բարդուղիմեոս առաքյալների և Գրիգոր Լուսավորչի անունների հետ։ Հայաստանում առաքյալների քարոզչության վերաբերյալ ավանդությունները, որքան էլ առասպելական լինեն, այնուամենայնիվ, պարունակում են որոշակի ճշմարտություն և ապացուցում են, որ քրիստոնեությունը Հայաստան մուտք է գործել առաքյալների ժամանակներում։ Կարելի է կասկածել, թե առաքյալներից կամ նրանց մերձավոր աշակերտներից որևէ մեկը արդյոք եղե՞լ է Հայաստանում, թե ոչ, բայց և հիմք չկա ժխտելու, որ Հայաստանը պատկանում է այն առաջին երկրների թվին, որոնք լուսավորվեցին նոր վարդապետության ճառագայթներով։ Հայկական հողերին հարող Ասորիքը Անտիոք մայրաքաղաքով առաքելական գործունեության ասպարեզներից մեկն էր. այստեղից նոր շարժման ալիքները կարող էին հեշտությամբ հասնել Հայաստան։ Սկզբում քրիստոնեությունը տարածվեց արագ, և պարթևների տիրապետության շրջանում Արևելքում մեծ հաջողություններ ունեցավ, բայց Պարսկաստանում Սասանյանների հարստության բարձրացմամբ նրանց նկատմամբ եղած թշնամական քաղաքականու-

*թյան հետևանքով երկու դարերի ընթացքում ձեռք բերված արդյունքները ի չիք դարձան։ Այդ շրջանից մնացին միայն աղոտ հուշեր, որոնք միահյուսվելով հետագա հիշողություններին՝ կազմեցին զանազան ասասպելների մի ամբողջ կույտ՝ պահպանվելով հին հուշարձանների մեջ։ Քննադատությունը դեռևս չի ավարտել իր գործը Թադեոսի և Բարդուղիմեոսի մասին եղած զրույցների հետ, դեռ չի մաքրել դրանք հետագա զանազան հավելումներից և չի ճշտել նրանց կապը Ադդեի և նրա աշակերտ Մարիի՝ մերձատրպատականյան գավառների առաքյալի մասին եղած ասորական համանման ավանդությունների հետ։ Այն, ինչ արդեն արված է այդ ուղղությամբ, հիմք է տալիս Թադեոսի և Բարդուղիմեոսի մասին եղած առասպելների մեջ տեսնել Հայաստանում քրիստոնեության ավետումի ճիշտ արձագանքները մինչսասանյան դարաշրջանում։*

*Թադեոսի, Բարդուղիմեոսի և Գրիգորի անվան շուրջը խմբված երեք շարք զրույցները նշանակում են հայերի մեջ քրիստոնեության տարածման երեք պահեր։ Դրանք միացնող ընդհանուր գծերը նշում են այդ պահերի հաջորդականությունը. Նոր քարոզչությունը վերականգնում է խամրած հիշատակները և դրանց վրա դնում է նույնության կնիքը։ Թադեոսի և Բարդուղիմեոսի քարոզչությունը գալիս էր Հարավից։ Առաքելական Անտիոքի և Հայաստանի միջև գտնվում է Օսրոյենե երկիրը Եդեսիա մայրաքաղաքով։ Պարսկական արևելքում քրիստոնեությունը տարածելու գործում աչքի ընկնող դեր խաղաց Եդեսիան, սրա հետ են կապված նաև հայկական ավանդությունները։ Անհնարին է ընդունել Հայաստանում քրիստոնեական կազմակերպված համայնքի առկայությունը Եդեսիայում քրիստոնեական եկեղեցու հաստատվելուց առաջ։*

*Աբգարի մասին եղած առասպելի օբյեկտիվ վերլուծությամբ հաստատված է, որ Եդեսիայի նշանավոր տիրակալը, որ քրիստոնեություն ընդունեց, Աբգար Թ-ն է, պատմական մի անձնավորություն, որ ապրել է Բ դարի վերջերին, և որ առասպելը պատմական ճիշտ դեպքը ետ է տարել մինչև մեր թվարկության սկիզբը և վերագրել ուրիշ անձի՝ Քրիստոսի ժամանակակից Աբգար Ե-ին։ Առայժմ հիմք չկա ընդունելու եկեղեցու գոյությունը Եդեսիայում մինչև Բ դարի վերջը։ Իսկ հայ եկեղեցու մասին եղած ամենահին տեղեկությունը վերաբերում է Գ դարի կեսին. այդ ժամանակ հայերի մոտ հիշվում է Մ ե հ ր ու ժ ա ն եպիսկոպոսը, որի հետ 248-*

*265 թվականներին գրագրություն է ունեցել Ալեքսանդրիայի Դիոնիսիոս եպիսկոպոսը*[1]*։*

*Ենթադրվել է, թե Մեհրուժանը եղել է Փոքր Հայքի եպիսկոպոսներից մեկը, հավանաբար Սեբաստիայի եպիսկոպոսը։ Այդ կարծիքի դեմ իրավամբ առարկում է Գելցերը և հենվելով եպիսկոպոսի բնորոշ անվան վրա՝ նրան որոնում է Մեծ Հայքի սահմաններում։ Նա միանգամայն իրավացի կերպով նրա մեջ տեսնում է Արծրունյաց շառավիղին, որոնց տոհմի մեջ ընդունված էր Մեհրուժան անունը։ Սակայն Գելցերը իրավացի չէ, երբ Մեհրուժանի նստավայրը համարում է Վասպուրականը։ Արծրունիների սկզբնական նահանգը, ինչպես կտեսնենք, համարվում էր Ծոփքը, և այդ պատճառով էլ ավելի ճիշտ կլիներ ընդունել, որ Մեհրուժան եպիսկոպոսի նստավայրը եղել է Ծոփքում։*

*Բնականաբար միտք է ծագում Եդեսիայի և Մեհրուժանի եկեղեցիների ծագումնաբանական ազգակցության մասին։ Այդ ռեալ փաստի վրա էլ հիմնվում է, անշուշտ, քրիստոնեության սկզբնական շրջանի մասին եղած հայ ավանդությունների հակումը դեպի եդեսական ավանդությունները։ Ասորական մի վավերագրի վկայությամբ Ադդե առաքյալը նահատակվեց Ծոփաց աշխարհում, Ագել՝ հայկական Անգեղ ամրոցում*[2]*, մինչդեռ մյուս հուշարձանները կամ լռում են նրա մահվան մասին և կամ նրա մահը կապում են Եդեսիայի հետ։ Այդ վկայության մեջ իր անդրադարձումն է գտել այն հանգամանքը, որ Անգեղը Եդեսիայի Ադդեի եկեղեցու հարազատ դուստր հայ եկեղեցու հովիվ Մեհրուժան եպիսկոպոսի աթոռանիստն է եղել։ Քրիստոնեական եկեղեցու գոյությունը հայկական ծայրամասային Ծոփաց աշխարհում Գ դարի կեսին կարող ենք համարել անվիճելի։ Այստեղից քրիստոնեությունը կարող էր տարածվել Հայաստանի խորքը։ Ինչպես որ Եդեսիայի եկեղեցուց ծնվեց Ծոփաց եկեղեցին, ճիշտ այդպես էլ վերջինիս հետագա զարգացումով եպիսկոպոսություն ստեղծվեց Ծոփաց աշխարհի հարևան Տարոնում։*

*Մենք այսպես ենք պատկերացնում այն եկեղեցու ծագումը, որի գլուխ կանգնած էր Ալբիանոս եպիսկոպոսի տոհմը։ Աղաթան-*

---

[1] Euseb. Caes. *Hist. Ecc.* VI, 46, 2, καὶ τοῖς κατὰ Ἀρμενίαν ὡσαύτως περὶ μετανοίας ἐπιστέλλει ὧν ἐπεσκόπευε Μερουζάνης.

[2] Gutschmid, *König. Osroene*, p. 16.

գեղոսի արաբական վերսիայի մեջ Աղբիանոս եպիսկոպոսին հատկացվում է Բագրևանդը և Եփրատի ափերը, իսկ Աղբիոսին՝ Տարոնը Բզնունիքի հետ միասին։ Մենք արդեն նշեցինք, որ խոսքը վերաբերում է միևնույն անձնավորությանը։ Փավստոսից գիտենք, որ Աղբիանոս եպիսկոպոսի տիրապետությունն ընդարձակվեց Խոսրով թագավորի օրոք. Մանավազյան տոհմի բնաջնջումից հետո սպանված իշխանների տիրույթներն, այն է «Մանավազակերտը ամենայն սահմանօքն եւ գաւառականն հանդերձ, որ շուրջ զնորօք էր, որ կայ ի կողմանս գետոյն Եփրատայ» անցան Աղբիանոսի եկեղեցուն[1]։ Դրանք հենց այն հողերն են, որոնք Ագաթանգեղոսի մոտ կոչվում են Եփրատի ափեր։ Նրանք անցան Աղբիանոսին միայն Գրիգոր Լուսավորչի երկրորդ հաջորդի՝ Վրթանեսի օրոք, և ոչ թե Գրիգորի կենդանության ժամանակ, ինչպես ներկայացնում է Ագաթանգեղոսը։ Փավստոսը ոչինչ չի ասում Աղբիանոսի սկզբնական եկեղեցու մասին և ոչ էլ այն մասին, թե որտեղ է գտնվել նրա եկեղեցին մինչև Մանավազյանների տիրույթներին տիրանալը։ Ագաթանգեղոսի վկայությունը Տարոնի և Բզնունիքի մասին, որպես Աղբիանոս եպիսկոպոսի աթոռապատկան կալվածքների, ըստ երևույթին, զուրկ չէ պատմական հիմքից։ Փավստոսի հաճախակի պնդումները Տարոնի եկեղեցու առաջնության և այն մասին, որ նա բոլոր հայկական եկեղեցիներից ամենահինն է, հենվում է նախ և առաջ նրա առաջնության վրա ժամանակի տեսակետով, որ Տարոնի եկեղեցին ստեղծվել է Լուսավորչի ժամանակվանից էլ առաջ։

Թադեոսի resp. Ադդեի քարոզչության մասին առասպելը, քարոզչություն, որ սկսվել է Եդեսիայում և վերջացել Արտազում, և որի մեջ եդեսացի Աբգարի ճակատագիրը միահյուսված է հայոց Սանատրուկ թագավորի հետ, նույնպես նշում է քրիստոնեական աքի անցած ճանապարհը Եդեսիայից մինչև Արտազ-Ծոփքի և Տարոնի վրայով։ Առասպելի Սանատրուկը պատմական անձ է, նա հայոց այն Սանատրուկ թագավորն է, որին իր մոտ կանչեց Կարակալլա կայսրը (211—217)՝ իբր նրան ապստամբ որդիների հետ հաշտեցնելու համար, բայց իրականում նրան թագից զրկեց, ցանկանալով Հայաստանը դարձնել հռոմեական պրովինցիա այնպես, ինչպես վարվել էր Օսրոյենեի նկատմամբ՝ խաբեությամբ ձերբա-

[1] Փավստոս, Գ, դ։

կալելով Աբգար թագավորին[1]։ Առասպելի գործող անձերը՝ Աբգարը և Սանատրուկը իրոք ժամանակակիցներ են և միմյանց հետ կապված են ճակատագրի նմանությամբ։ Զրույցի մեջ երկու թագավորներն էլ Գ դարի սկզբից փոխադրված են Քրիստոսի ժամանակը։ Այս սյուժեների միակցման մեջ եղած զուգահեռականությունը, կապված Եդեսիայի թագավորի պատմության, և հենց նրա՝ որպես Սանատրուկի հորեղբոր, հայացման հետ, կարելի է բացատրել միայն եկեղեցական հողի վրա. այն հանդիսանում է Եդեսիայի եկեղեցու հետ հայոց եկեղեցու ունեցած ծագումնաբանական ազգակցության արտացոլումը։ Հայաստանում սկզբնական շրջանի քրիստոնեության մասին եղած հիշողությունը, ասորական աշխարհի հետ կապված հայկական առաջին եկեղեցու մասին եղած ավանդույթները հետագայում խամրեցին և գրեթե անհետացան՝ լուծվելով Գրիգոր Լուսավորչի ժամանակվա քրիստոնեության երկրորդ և ավելի հզոր հոսանքի պատմության մեջ։

Գ դարի վերջում Հայաստանի ճակատագրի մեջ մեծ փոփոխություններ տեղի ունեցան։ Հայաստանին տիրելու համար պարսիկների և հռոմեացիների միջև մղվող երկարատև պատերազմներն ավարտվեցին հռոմեական զենքի հաղթանակով, և 298 թվականի պայմանագրով Հայաստանն անցավ կայսրության հովանավորության տակ։ Հայաստանում վերականգնվեց թագավորական իշխանությունը, և հայկական գահ բարձրացավ Արշակունիների շառավիղը՝ Տրդատը, որը հռոմեական զենքի օգնությամբ նվաճեց իր իրավունքները։ Քաղաքական հեղաշրջումը ուղեկցվում էր քրիստոնեության ներթափանցումով հարևան Փոքր Հայքի հողերից Մեծ Հայք։ Կայսրությունն այդ ժամանակ հին կրոնական համակարգի և քրիստոնեական վարդապետության պայքարի մի սուր պահ էր ապրում և գտնվում էր նոր վարդապետության հաղթանակի շեմին։

Քրիստոնեությունը տարածվելով կայսրության մեջ՝ նրա շատ մասերում արդեն հասցրել էր հաստատուն դիրք գրավել, իսկ Դ դարի սկզբին հաղթանակեց և ճանաչվեց պաշտոնապես։

Կայսրության համեմատաբար վաղ և զգալիորեն քրիստոնեացած մասերից էին նաև Կապադովկիայի և Փոքր Հայքի հողերը։ Կեսարիայի եկեղեցին արդեն Գ դարում մեծ համբավ էր ձեռք բե-

---

[1] Dio Cass. 77, 12 և 21։

*բել՝ մոտ 200 թ. աթոռակալ ունենալով Ալեքսանդր եպիսկոպոսին և Փիրմիլիանոսին (մահ. 269թ.), որոնք Ալեքսանդրիայի եկեղեցում նշանավոր հայրերի՝ Կղեմեսի և Օրիգենեսի բարեկամներն էին։ Փիրմիլիանոսի ջանքերով Կեսարիան դարձավ աստվածաբանական կրթության կենտրոն[1]։ Քրիստոնեության ոչ պակաս կարևոր օջախ էր նաև Փոքր Հայքի մայրաքաղաքը՝ Մալաթիան։ Քրիստոնեական տարրերը այստեղ այնքան զորեղ էին, որ նրանց էին վերագրում հեղափոխական այն հաճախակի բռնկումները, որոնք տեղի էին ունենում քաղաքում[2]։*

*Փոքր Հայքում և Կապադովկիայում քրիստոնեության ծաղկումով, ինչպես և նրա ազդեցությամբ է բացատրվում, որ նոր կրոնը հարևան Մեծ Հայքում պետական կրոն հայտարարվեց ավելի վաղ, քան կայսրությունում։ Արշակունյաց Հայաստանը կայսրության գերիշխանության տակ ընկնելուց հետո վերացան երկու մասերի բաժանված էթնիկական մեկ ամբողջություն կազմող Փոքր և Մեծ Հայքերի հայ բնակչության սերտ հարաբերությունների քաղաքական անջրպետները, և քրիստոնեությունը Եփրատի աջ ափից հորդեց դեպի ձախ ափը։ Այդ քրիստոնեության առաքյալն էլ հենց սուրբ Գրիգոր Լուսավորիչը եղավ։ Ի տարբերություն Ասորիքի և Եդեսիայի նախորդ շրջանի քրիստոնեության, այս հոսանքը անվանենք Փոքր Հայքի և Կեսարիայի քրիստոնեություն։ Մեզ համար կարևոր է տարբերել Հայաստանում քրիստոնեության տարածման այդ երկու ուղիները։*

*Փոքր Հայքից եկող քրիստոնեությունը նախ և առաջ անմիջապես տարածվեց նրան հարող շրջաններում, այսինքն՝ Դարանաղիում, Եկեղյաց գավառում, Դերջանում և այլն։ Փավստոսը հաճախ նշում է, որ Դարանաղի և Եկեղյաց գավառները պատկանում էին Լուսավորչի տոհմին. Գրիգորը և Վրթանեսը թաղվեցին Թորդանում, Արիստակեսը՝ Թիլում, Հուսիկը թեև վախճանվեց Ծոփքում, բայց նրա մարմինը բերվեց և թաղվեց Թորդանի տոհմական գամբարանում[3]։ Նույն ձևով էլ քրիստոնեության նախորդ հոսանքը, ներթափանցվելով Ծոփաց աշխարհի կողմից, սկզբում ընդգրկեց*

---

[1] Harnack, *Mission und Ausbreitung des Christentums in den ersten drei Jahrhunderten*. 1906, II Auflage, Bd. II p. 163.

[2] *ib.* p. 166.

[3] Փավստոս, Գ, բ, ժա, ժբ։

հարևան Տարոնը և Բզնունիքը։ Գրիգոր Լուսավորչի զավակների օրոք Տարոնի եկեղեցու գլուխն էր Դանիել քորեպիսկոպոսը՝ ծագումով ասորի[1]։ Այդ եկեղեցուն էր պատկանում Փառենը՝ Հուսիկի հաջորդը։ Նրանից հետո կաթողիկոս դարձավ Շահակը՝ Աղբիանոսի տոհմից, որն իր բնավորությամբ, ինչպես ասում է պատմիչը, նման էր Փառենին։ Հնարավոր է, որ այդ բոլոր անձնավորությունները, նրանց թվում և Դանիելը, միևնույն ծագումն ունենային։ Այն հրաշքները և լուսապսակը, որով Փավստոսի պատմության մեջ պարուրված է Դանիելի անունը, վկայում են այն մասին, որ նա հասարակ մարդ չի եղել և կարևոր դեր է խաղացել եկեղեցական կյանքում[2]։

Չնայած Փավստոսի ամբողջ համակրանքը Լուսավորչի ժառանգների կողմն է, համենայն դեպս նա անկարող է թաքցնել այն փաստը, որ Աղբիանոսի, resp. Դանիելի եկեղեցու ներկայացուցիչները զգալի ազդեցություն ունեին նաև կաթողիկոսական աթոռի համար մղվող պայքարում, անկասկած, գերակշռություն ունեին Գրիգորի տոհմի նկատմամբ։ Հետագայում, երբ Գրիգոր Լուսավորչի պաշտամունքը հաղթանակեց, ասորական եկեղեցու մասին մնացին աղոտ հիշողություններ. հետագա վկայություններում այդ եկեղեցու ամենից առավել նշանավոր դեմքերը համարվում են Գրիգորի աշակերտները՝ Դանիելն ու Աղբիանոսը։

Հայաստանի քրիստոնեության երկու հոսանքների իրական փոխհարաբերությունը տրված է այն սքանչելի առասպելի մեջ, ըստ որի Գրիգորի ծնողները Պարսկաստանից Հայաստան փախչելիս կանգ են առնում Արտազ գավառում, Թադեոս առաքյալի գերեզմանի մոտ, և այստեղ տեղի է ունենում «զյղութիւն մօր

---

[1] Փավստոս. Գ, ժդ։

[2] Չի՞ կարելի արդյոք, այսպես կոչված, դանիելյան գրերը կապել այս սրբի անվան հետ։ Ինչպես հունական քրիստոնեության ներկայացուցիչը՝ Մեսրոպը, ջանք էր թափում կատարելագործելու այբուբենը նախ և առաջ քարոզչության նպատակով, այնպես էլ ասորական քրիստոնեության ներկայացուցիչները պետք է մտածեին այդ նույն հարցի մասին։ Շատ հնարավոր է, որ հենց Դանիելն էլ ասորական տառերը հարմարեցրեց հայոց լեզվին, որոնք անբավարար լինելու պատճառով շուտով դադարեցին գործածվել։ Դեպի մոռացված տառերը հետաքրքրության հետ կրկին երևան եկավ նաև նրանց հորինողի՝ Դանիելի անունը։ Տառերի գյուտի պատմության մեջ հեքիաթային շատ բան կա, և զարմանալի չէ, որ Դանիելն էլ ներկայացվում է իբրև ժամանակակից, որ ապրում էր Միջագետքի ինչ-որ տեղում։ Թե ինչու՞ ասորի եպիսկոպոսը պիտի պահեր հայոց այբուբենը, անհասկանալի է։

*սրբոյ եւ մեծի Լուսաւորչին։ Վասն որոյ եւ զնորին Առաքելոյ շնորհն ընկալեալ, որ առ հանգստարանաւ նորին զլինելութիւնն էառ, զնորին ելից զհոգևոր մշակութեանն պակասութիւնն»*[1]։ *Առասպելը ինքնին զուրկ է իրական հիմքից, բայց ճիշտ է որպես այն կոնցեպցիայի սիմվոլիկ արտահայտություն, թե Լուսավորիչն իր գործունեությունը ծավալեց սուրբ Թադեոսի նահատակությամբ պարարտացված հողում, որ Գրիգորի գործը Թադեոսի առաքելության շարունակությունն է։*

*Մինչև հիշյալ երկու հոսանքները ամբողջությամբ կմիաձուլվեին, և կստեղծվեր միասնական եկեղեցի, մի ամբողջ հարյուրամյակի ընթացքում պայքար էր գնում, մի պայքար, որի ընթացքում մշակվեց եկեղեցու կազմակերպման ազգային սկզբունքը։*

*Ուշադրությամբ հետևելով կաթողիկոսական աթոռին Գրիգորի և Աղբիանոսի ժառանգների միմյանց հաջորդելուն՝ որոշակի համապատասխանություն ենք նկատում և այն պետությունների քաղաքական գերակշռության հաջորդ տատանումների միջև, որոնցից կախված էր Հայաստանը, ընդ որում Լուսավորչի ժառանգների աթոռակալությունը զուգադիպում է Հռոմեական կայսրության ազդեցության գերակշռությանը, իսկ Աղբիանոսի ժառանգներինը՝ պարսկականին։ Հիրավի, Հայաստանի նկատմամբ կայսրության հովանավորությունը, որն ամրապնդվեց 298 թվականի պայմանագրով, պաշտոնապես անխախտ մնաց մինչև 363 թվականը։ Այդ ժամանակամիջոցում պարսիկները մի քանի անգամ փորձեցին միջամտել Հայաստանի գործերին և 338 թվականին, երբ Կոստանդին Մեծի մահվանից հետո երկպառակություններ ծագեցին նրա ժառանգների միջև, հասան իրենց նպատակին։ Այդ ժամանակ Հայաստանի թագավորն էր Տիրանը, և հենց սրա ժամանակ էլ Արիստակեսից, Վրթանեսից և Հուսիկից հետո կաթողիկոսական աթոռ են բարձրանում Աղբիանոսի տոհմի ներկայացուցիչները՝ Փառենն ու Շահակը։ Տիրանի որդին և հաջորդը՝ Արշակը, համարվում էր կայսրի դրածոն. նրա հետ միասին կաթողիկոսական աթոռ է բարձրանում Գրիգորի թոռը՝ Ներսեսը։ Հենց որ կայսրի հետ Արշակի բարեկամական հարաբերությունները վատացան*[2]*, և հայոց թագավորը դաշինք կնքեց պարսից Շապուհ արքայի հետ, Ներսես-*

---

[1] Խորենացի, *Բ, հգ.*, Զենոբ Գլակ, *էջ 21*։

[2] Փավստոս, *Դ, ժբ*։

*որ հեռացվեց աթոռից, որին փոխարինեց Զունակ եպիսկոպոսը[1], որ հավանորեն Աղբիանոսի տոհմից էր։ Սակայն Արշակը շուտով գժտվեց պարսիկների հետ և ողբերգական մահով իր մահկանացուն կնքեց պարսկական գերության մեջ։ Նրա որդին՝ Պապը, իշխանության հասավ հռոմեական զորքերի օգնությամբ։ Գահից հեռացված Ներսեսը նորից վերադարձավ եկեղեցու գլուխ[2]։ Կայսրի հետ բարեկամությունը երկար չտևեց. Պապը երես դարձրեց նրանից և անցավ պարսիկների կողմը[3]։ Այդ ժամանակ էլ տեղի ունեցավ Ներսեսի սպանությունը և նրա տեղը նշանակվեց Հուսիկը, որ Աղբիանոսի տոհմից էր[4]։ Վերջապես Հայաստանի բաժանումից հետո կաթողիկոսական աթոռը մնաց պարսկական մասում և նրան տիրացան Աղբիանոսյանները՝ Զավենը, Շահակը և Ասպուրակեսը[5]։*

*Այսպիսով, եկեղեցու պետերը փոփոխվում էին ըստ քաղաքական հովերի։ Գրիգորյանները հանդես են գալիս որպես կայսերական քաղաքականության կողմնակիցներ, իսկ Աղբիանոսյանները ավելի համակիր էին պարսկականին։ Այստեղ իր արտահայտությունն է գտել քրիստոնեական հոսանքների՝ հունական և ասորական ծագումնաբանական տարբերությունը, որոնց կրողներն էին այդ տոհմերը։ Աղբիանոսի տոհմի քաղաքականությունը գերազանցապես Արշակունիների քաղաքականությունն էր, որը և դարձավ ազգային հիմք՝ ծառայելով հայկական եկեղեցու կազմակերպմանը։ Հայոց եկեղեցու զարգացման ու աստիճանական ազգայնացման ընթացքը պարզվում և հասկանալի է դառնում, երբ այն համեմատում ենք կայսրության մեջ եկեղեցական կազմակերպության էվոլյուցիայի հետ առհասարակ։*

*Քրիստոնեությունը իր երևան գալու առաջին իսկ շրջանում ի հայտ բերեց կազմակերպչական բնական ձգտում։ Պայքարելով շրջապատող թշնամական միջավայրի դեմ՝ նա անհրաժեշտության*

---

1 Փավստոս, Դ, *ժե*։

2 *Նույն տեղում, Ե, ա*։

3 *Նույն տեղում, Ե, բ*։

4 *Նույն տեղում, Ե, իթ*։

5 *Շահակը կոչվում է Կորճեայ. եթե ճիշտ է ընթերցումը, պետք է ենթադրել, որ դրանից առաջ Շահակը եղել է եպիսկոպոս Կորճայքում։ Ավելի քան հավանական է, որ նա ևս Աղբիանոսի տոհմից էր։*

զգաց համախմբել իր ուժերը, ինչպես արդեն գրաված դիրքերը պաշտպանելու, այնպես էլ հետագա հաջողություններ ձեռք բերելու համար և իր զարգացման ու հավատացյալների շրջանակը ընդլայնելուն զուգընթաց ձգտում էր ստեղծել միություններ և ընդհանուր կապ հաստատել ցիրուցան համայնքների միջև։ Նրանց իրար միացնող օղակ էր հանդիսանում նախ և առաջ հոգևորականությունը՝ եպիսկոպոսները, որոնք կանգնած էին առանձին համայնքների գլուխ։ Մի քանի եպիսկոպոս միանում և կազմում էին վարչական մեկ միավոր՝ նրանցից մեկի գլխավորությամբ։ Ընդ որում այդ համայնքների կենտրոնացումը և դրանց եպիսկոպոսների խմբավորումը ամփոփվում էին պետական կյանքում մշակված շրջանակների մեջ։ Եկեղեցական հիերարխիայի էվոլյուցիան ընթանում էր քաղաքացիական կազմակերպության հետքերով, եկեղեցին իր իսկ համար աննկատելի կերպով հարմարվում էր կայսրության վարչակարգին՝ հարմարեցնելով իր բաժանումները քաղաքացիականի հետ։ Եկեղեցու կազմակերպական աշխատանքը որոշ ավարտուն ձև էր ստացել արդեն մինչև Նիկիայի ժողովը (325 թ.), որը և իր ընդունած կանոններով հաստատեց այն ժամանակ գոյություն ունեցող կարգը։ Այս վերջինը համապատասխանում էր կայսրության կառուցվածքին, որը դրանից առաջ ստացել էր հստակորեն գծագրված ձև։

Եկեղեցին անմիջապես արձագանքեց Դիոկղետիանոսի Գ դարի վերջերին կատարած վարչական բաժանումներին և մինչև 325 թվականը կարողացավ իր հիերարխիայի մեջ համապատասխան փոփոխություններ կատարել՝ դրանք ամբողջովին հարմարեցնելով նոր կառուցվածքին։ Վերը մենք ծանոթացանք Դիոկղետիանոսի ռեֆորմի գլխավոր գծերին։ Մի կողմից գոյություն ունեցող պրովինցիաները տրոհվեցին ավելի մանր, վարչականորեն ինքնուրույն միավորների, իսկ մյուս կողմից մի քանի պրովինցիաներ միացվեցին միմյանց՝ հիերարխիական իշխանության համապատասխան՝ վարչական ավելի մեծ դիոցեզներ կազմելու համար։ Կայսրության ասիական հողերը կազմում էին երեք դիոցեզ՝ Ասիա, Պոնտոս և Արևելք, վերջինիս մեջ էր մտնում նաև Եգիպտոսը։ Նրանց գլուխ էին կանգնած վիկարիոսները, այսինքն՝ արևելքի պրետորիական պրեֆեկտի տեղակալները, իսկ նահանգների գլուխ էին կանգնած կառավարիչները կամ պրեզիդները, որոնք ենթարկվում էին համապատասխան վիկարիոսներին։

Ճիշտ նույն ձևով էլ այդ շրջանակներում բաշխվում էր եկեղեցական իշխանությունը։ Նահանգները միաժամանակ նաև եկեղեցական միավորներ էին՝ թեմեր, և նրանցից յուրաքանչյուրում նստում էր մի եպիսկոպոս-միտրոպոլիտ, որ իր դիրքով հավասարազոր էր քաղաքացիական իշխանության պրեզիդին։ Նույն ձևով էլ դիոցեզները ստացան եկեղեցական միավորների նշանակություն, որոնց մեջ վիկարիոսներին համապատասխանում էին եպիսկոպոս-պատրիարքները։ Ինչպես որ յուրաքանչյուր պրովինցիայում բոլոր եպիսկոպոսների միջից առանձնանում էր մեկը՝ պրովինցիայի մայրաքաղաքի եպիսկոպոսը, որպես միտրոպոլիտ, ճիշտ նույնպես էլ յուրաքանչյուր դիոցեզում միտրոպոլիտներից մեկը գրավում էր պատրիարքի կամ գլխավոր միտրոպոլիտի առաջնակարգ դիրք։ Ասիայի դիոցեզում այդպիսին էր Եփեսոսի միտրոպոլիտը, Արևելքում՝ Անտիոքի միտրոպոլիտը և Պոնտոսում՝ Կեսարիայի միտրոպոլիտը։

Որոշ տարակարծություններ է առաջացնում այն հարցը, թե ե՞րբ են հաստատվել հիշյալ հարաբերությունները։ Ոմանք կարծում են, որ միտրոպոլիտական կազմակերպությունը առաջին անգամ մտցվել է Նիկիայի տիեզերական ժողովում, իսկ պատրիարքականը՝ Կ. Պոլսի, ուրիշները ընդունում են, որ ոչ միայն միտրոպոլիտությունների, այլ նույնիսկ պատրիարքությունների կազմավորումը ավելի առաջ է եղել, քան Նիկիայի ժողովը, և որ այս վերջինը միայն օրինականացրել է մինչ այդ գոյություն ունեցող վիճակը, ընդ որում նրանք հենվում են հիշյալ ժողովի 4-րդ և 6-րդ կանոնների վրա։ Դրանցից առաջինը բացատրություններ է տալիս պրովինցիալ եպիսկոպոսների մասին, ինչպես նաև իրենց միտրոպոլիտի հետ ունեցած նրանց հարաբերությունների մասին։ Այդ կանոնը նշանավորում է միտրոպոլիտության զարգացման միանգամայն որոշակի մոմենտ։ Պատրիարքությունների ձևավորման համար նույնպիսի պահ հանդիսացավ 381 թվականը և այդ պահը արձանագրված է Կոստանդնուպոլսի ժողովի երկրորդ կանոնում։ Այնտեղ ասվում է. «Մեկ դիոցեզում պաշտոնավարող եպիսկոպոսները իրենց իշխանությունը չպետք է տարածեն նրա սահմաններից դուրս գտնվող եկեղեցիների վրա և չխառնեն եկեղեցիները, այլ համաձայն կանոնների, Ալեքսանդրիայի եպիսկոպոսը պետք է վարի եկեղեցական գործերը միայն Եգիպտոսում, Արևելքի եպիսկոպոսները պիտի կառավարեն Արևելքը՝ պահպանելով

Անտիոքի եկեղեցու ավագությունը, որ նախատեսված է Նիկիայի ժողովի կողմից։ Ասիայի դիոցեզի եպիսկոպոսները պետք է վարեն միայն Ասիայի գործերը, Պոնտոսի եպիսկոպոսը՝ Պոնտոսի և Թրակիայինը՝ Թրակիայի»[1]։

Ոմանց կարծիքով այդ կանոնով քաղաքացիական բաժանումների օրինակով եկեղեցում առաջին անգամ դիոցեզային բաժանումներ մտցվեցին։ Մյուսները ընդհակառակը՝ ենթադրում են, որ ժողովը չէր օրինականացրել այն կարգը, որ գոյություն ուներ 381 թվականից առաջ, և որը, ինչպես երևում է 6-րդ կանոնից, սկզբունքորեն ընդունվեց Նիկիայի ժողովում։ Այդ կանոնը պարտավորեցնում է «Հետևել այն հին սովորությանը, որի համաձայն Ալեքսանդրիայի եպիսկոպոսը Եգիպտոսում, Լիբիայում և Պենտապոլիսում վայելում է գերագույն իշխանություն... Նույն ձևով էլ Անտիոքի և մյուս թեմերի եկեղեցիների նկատմամբ պետք է պահպանվեն նրանց նախապատվության իրավունքները»[2]։

Մի մեկնաբանությամբ ἐξουσία և τὰ πρεσβεῖα բառերը արտահայտում են միտրոպոլիտի առանձնաշնորհությունները, իսկ մի այլ մեկնաբանությամբ խոսքն այստեղ վերաբերում է միտրոպոլիտից ավելի բարձրին կամ պատրիարքական իշխանությանը։ Մեր կարծիքով երկու կողմերն էլ իրավացի չեն. Հարցը կստանար իր իսկական լուսաբանությունը, եթե աչքաթող չարվեր այն հիմնական սկզբունքը, որի համաձայն սահմանվեց եկեղեցու հիերարխիան և այդ տեսանկյունից էլ լուսաբանվեր եկեղեցական հիերարխիայի զարգացման վիճելի պահերը։

[1] C. P. can. 2. Τοὺς ὑπὲρ διοίκησιν ἐπισκόπους ταῖς ὑπερορίοις ἐκκλησίαις μὴ ἐπιέναι, μηδὲ συγχέειν τὰς ἐκκλησίας· ἀλλὰ κατὰ τοὺς κανόνας τὸν μὲν Ἀλεξανδρείας ἐπίσκοπον τὰ ἐν Αἰγύπτῳ μόνον οἰκονομεῖν, τοὺς δὲ τῆς ἀνατολῆς ἐπισκόπους τὴν ἀνατολὴν μόνην διοικεῖν, φυλαττομένων τῶν ἐν τοῖς κανόσι τοῖς κατὰ Νικαίαν πρεσβείων τῇ Ἀντιοχέων ἐκκλησίᾳ, καὶ τοὺς τῆς Ἀσιανῆς διοικήσεως ἐπισκόπους τὰ κατὰ τὴν Ἀσίαν μόνην οἰκονομεῖν, καὶ τοὺς τῆς Ποντικῆς τὰ τῆς Ποντικῆς μόνον, καὶ τοὺς τῆς Θρᾴκης τὰ τῆς Θρᾴκης μόνον οἰκονομεῖν. *Древне-славянская Кормчая*, p. 96. Հրատ. В. Н. Бенешевича-ի, 1907.

[2] Nic. can. 6. Τὰ ἀρχαῖα ἔθη κρατείτω τὰ ἐν Αἰγύπτῳ καὶ Λιβύῃ καὶ Πενταπόλει, ὥστε τὸν ἐν Ἀλεξανδρείᾳ ἐπίσκοπον πάντων τούτων ἔχειν τὴν ἐξουσίαν, ἐπειδὴ καὶ τῷ ἐν τῇ Ῥώμῃ ἐπισκόπῳ τοῦτο σύνηθές ἐστιν· ὁμοίως δὲ καὶ κατὰ Ἀντιοχείαν καὶ ἐν ταῖς ἄλλαις ἐπαρχίαις τὰ πρεσβεῖα σώζεσθαι ταῖς ἐκκλησίαις. ed. cit. p. 86.

*Դիոկղետիանոսի ռեֆորմով նահանգների թիվը ավելացավ, իսկ տարածությամբ նախկինի համեմատությամբ նրանք փոքրացան։ Այսպես, օրինակ, մինչև Դիոկղետիանոսը Կապադովկիայի մեջ մտնում էր նաև Փոքր Հայքը, Գաղատիայի մեջ՝ Պոլեմոնական Պոնտոսը, Միջագետքը կազմված էր ուշ շրջանի Միջագետքից և Օսրոենեից, Ասորիքը՝ Ասորիքից, Փյունիկիայից, Պաղեստինից և այլն։ Դիոկղետիանոսից հետո բաժանումն ավելի հեռուն գնաց. Կապադովկիան բաժանվեց I և II Կապադովկիաների, Փոքր Հայքը՝ I և II Հայքի, Ասորիքը բաժանվեց յոթ պրովինցիաների (Եփրատենսիա, I և II Ասորիք, I և II Փյունիկիա, I և II Պաղեստին), Եգիպտոսը՝ հինգ պրովինցիաների, Ասիան՝ յոթ[1]։ Եկեղեցական իշխանությունը ինչպե՞ս պետք է հարմարվեր այս փոփոխություններին։*

*Պրովինցիաների մասնատման հետ միասին մասնատվեցին նաև եկեղեցական թեմերը, կազմվեցին նոր միտրոպոլիտություններ։ Դիոկղետիանոսի ռեֆորմի հետևանքով Անտիոքի, Կեսարիայի և Ալեքսանդրիայի շուրջը առաջ եկան մի շարք նոր միտրոպոլիտություններ. արդյոք նրանք պահպանու՞մ էին որևէ կախվածություն նախկին միտրոպոլիտությունից, թե՞ նրանք համարվում էին իրավաբանորեն հավասար արժեքներ։ Այսպես, օրինակ՝ մինչև Դիոկղետիանոսը Կեսարիան Կապադովկիայի քաղաքացիական կյանքի կենտրոնն էր և հանդիսանում էր միտրոպոլություն, ուստի և Կեսարիայի եպիսկոպոսը պետք է գրավեր միտրոպոլիտի դիրք։ Երբ Փոքր Հայքը անջատվեց Կապադովկիայից, նրա մայրաքաղաք Սեբաստիայի եպիսկոպոսն էլ դարձավ նոր կազմված պրովինցիայի միտրոպոլիտ։ Արդյոք դրանից հետո նրա կապը խզվե՞ց Կեսարիայի նախկին միտրոպոլիտությունից. մի խոսքով, այն դեպքում, երբ որևէ եպիսկոպոս բարձրանում էր միտրոպոլիտի աստիճանի, ինչպե՞ս էին որոշվում նրա հարաբերությունները իր նախկին միտրոպոլիտի նկատմամբ։*

*Մեզ թվում է, որ այդ հարցերին պատասխանում է Նիկիայի ժողովի՝ վերևում մեջ բերված 6-րդ կանոնը։ Հոգևոր հայրերը կարծում էին, որ արդեն հաստատված ավանդույթները ենթակա չեն*

---

[1] Marquardt, *Römische Staatsverwaltung*, t. I 332, *Handbuch d. Röm. Altertums*, Bd. IV. 1873.

*վերացման, և որ նշված կենտրոնները պետք է պահպանեն իրենց նախապատվության իրավունքը։ Ըստ այդ մեկնաբանության Անտիոքը, Եփեսոսը, Կեսարիան և Ալեքսանդրիան, որ բարձր դիրքի էին հասել մինչև Դիոկղետիանոսը, պետք է պահպանեին իրենց նախապատվությունը նաև նրանից հետո, անկախ այն բանից՝ համարվե՞լ էր եկեղեցին դիոցեզային բաժանմանը, թե՝ ոչ։ Երբ դրանից հետո եկեղեցին ընդունեց դիոցեզային կարգը, ապա դրանից հիշյալ կենտրոնների դիրքի մեջ ոչինչ չփոխվեց, որովհետև հենց նրանք էլ դարձան դիոցեզների մայրաքաղաքներ։ 381 թվականի ժողովը հստակորեն ձևակերպեց և հաստատեց այն իրադրությունը, որ ստեղծվել էր մինչ այդ։ Դիոցեզային մայրաքաղաքների միտրոպոլիտները, յուրաքանչյուրն իր դիոցեզի սահմաններում, դարձան գերագույն միտրոպոլիտներ։ Այս ճանապարհով էլ ծագեց ու ամրապնդվեց պատրիարքական իշխանությունը դիոցեզների մայրաքաղաքներում՝ Անտիոքում, Կեսարիայում և Եփեսոսում։ Թեև Եգիպտոսը պաշտոնապես մտնում էր Արևելքի դիոցեզի մեջ, բայց իր գրաված դիրքով կար և մնաց որպես առանձին միավոր, և այդ պատճառով էլ Ալեքսանդրիան, որպես ինքնուրույն երկրի մայրաքաղաք, հիերարխիկան առումով հավասարվեց դիոցեզային մայրաքաղաքներին, և նրա միտրոպոլիտն էլ համարվեց պատրիարք։ Ուրեմն՝ դիոցեզային բաժանումը սահմանազատում էր միայն գերագույն միտրոպոլիտների կամ պատրիարքների ազդեցության ոլորտը որոշակի տերիտորիայի՝ դիոցեզի սահմաններում և սրբագործում էր պատրիարքների իշխանությունը, որը պատմականորեն զարգացել էր մինչև դիոցեզային բաժանումը և նրանից անկախ։*

*Եկեղեցական և քաղաքացիական կազմակերպությունների միջև գոյություն ունեցող զուգահեռականությունը հնարավորություն է տալիս պատրիարքների միջև առաջնության համար մղվող մրցակցությունը բացատրել որպես հիերարխիկան աստիճան ստեղծելու ձգտում պրետորական պրեֆեկտի նմանությամբ. պատրիարքներից մեկը պետք է դառնար գլխավոր, որպեսզի նրան ենթարկվեին մյուս պատրիարքները ճիշտ այնպես, ինչպես պրեֆեկտին ենթարկվում էին վիկարիոսները կամ դիոցեզների կառավարիչները։ Արևելքի պրետորիական պրեֆեկտը մեծ մասամբ ապրում էր Անտիոքում, մանավանդ սկզբում, իսկ հետագայում կառավարում էր՝ սովորաբար ապրելով մայրաքաղա-*

քում։ Ուստի հասկանալի է, որ գլխավորը լինելու համար մղվող պայքարում Անտիոքի աթոռը սկզբում առավել հաջողություններ ուներ, մինչև որ մրցակցությունն ավարտվեց կայսրության մայրաքաղաքի պատրիարքի օգտին։ Հիերարխիայի հետագա զարգացումն ընթացավ իշխանությունը մայրաքաղաքում կենտրոնացնելու ուղիով ի վնաս և ի խախտումն նախ և առաջ Եփեսոսի և Կեսարիայի պատրիարքությունների իրավունքների։ Այդ իմաստով 451 թ. Քաղկեդոնի ժողովը հանդիսացավ Կոստանդնուպոլսի եկեղեցու հաղթանակը։ Այդ ժողովում կրկին քննելով նախորդ տիեզերական ժողովի որոշումները Կոստանդնուպոլսի եկեղեցու գերապատիվ դիրքի մասին՝ սուրբ հայրերը հավանություն տվին դրան և այն ավելի զարգացրին 28-րդ կանոնով, որտեղ ասվում է. «Պոնտոսի, Ասիայի և Թրակիայի միտրոպոլիտները, ինչպես նաև այդ նույն դիոցեզների այլազգիների եպիսկոպոսները պետք է ձեռնադրվեն Կոստանդնուպոլսի սուրբ եկեղեցու սուրբ աթոռի կողմից։ Հիշյալ դիոցեզների միտրոպոլիտները իրենց թեմերի եպիսկոպոսների հետ միասին ձեռնադրում են եպիսկոպոսներ իրենց թեմի համար՝ համաձայն սուրբ կանոնների, իսկ իրենք՝ այդ դիոցեզների միտրոպոլիտները, ձեռնադրվում են Կոստանդնուպոլսի պատրիարքի կողմից»[1]։

Այդ կանոնով վերացվեցին Եփեսոսի և Կեսարիայի աթոռների պատրիարքական առավելությունները, և այդ աթոռները ընդմիշտ կորցրին իրենց նշանակությունը։ Դրանով պետք է բացատրել նաև հայերի բացասական վերաբերմունքը Քաղկեդոնի նկատմամբ. խզումը տեղի ունեցավ հիերարխիայի հողի վրա և ոչ թե դավանաբանական, ինչպես այն ներկայացնում են հետագա աղբյուրները։

Չսահմանափակվելով դրանով՝ Կոստանդնուպոլսի պատրիարքները ձգտում էին իրենց ենթարկել նաև մյուս պատրիարքությունները կամ առաջ մղել իրենց աթոռի նախապատվությունը։

---

[1] Xalk. can. 28. καὶ ὥστε τοὺς τῆς Ποντικῆς καὶ τῆς Ἀσιανῆς καὶ τῆς Θρᾳκικῆς διοικήσεως μητροπολίτας μόνους, ἔτι δὲ καὶ τοὺς ἐν τοῖς βαρβαρικοῖς ἐπισκόπους τῶν προειρημένων διοικήσεων χειροτονεῖσθαι ὑπὸ τοῦ προειρημένου ἁγιωτάτου θρόνου τῆς κατὰ Κωνσταντινούπολιν ἁγιωτάτης ἐκκλησίας· δηλαδὴ ἑκάστου μητροπολίτου τῶν προειρημένων διοικήσεων μετὰ τῶν τῆς ἐπαρχίας ἐπισκόπους, καθὼς τοῖς θείοις κανόσι διηγόρευται· χειροτονεῖσθαι δέ, καθὼς εἴρηται, τοὺς μητροπολίτας τῶν προειρημένων διοικήσεων παρὰ τοῦ Κ. ἀρχιεπισκόπου. *ed. cit.* p. 125.

558 թվականին Հովհան Պահեցողը հանդիսավորությամբ ընդունեց տիեզերական պատրիարքի տիտղոս։

Այսպիսով, եկեղեցին եռ չմնաց աշխարհիկ իշխանությունից և միևնույն ինքնակալական ձգտումներով տոգորված՝ կարողացավ հասնել այն բանին, որ հենց Հուստինիանոսի օրոք՝ միահեծանության հաղթանակի դարում, հոգևոր իշխանությունը համակենտրոնացվեց ի դեմս Կոստանդնուպոլսի պատրիարքի։

Կայսերական եկեղեցու աստիճանական զարգացմանը նվիրված այս ուրվագիծը մեզ թույլ է տալիս հայոց եկեղեցու զարգացմանը հետևելու համար անել երկու եզրակացություն, առաջ քաշել երկու նախադրյալ. նախ՝ հայոց եկեղեցու արտաքին հարաբերությունները, այսինքն՝ նրա հարաբերությունները կայսերական եկեղեցու հետ պետք է լուսաբանվեն քաղաքական իրադրության առնչությամբ, այլ խոսքով, եկեղեցու կախումը պետք է որ արտահայտվի այն չափով, ինչ չափով որ երկիրը քաղաքականապես կախում ուներ կայսրությունից, և երկրորդ՝ իր ներքին զարգացման ընթացքում հայոց եկեղեցին պետք է համարվեր տեղական քաղաքացիական կարգերին այնպես, ինչպես կայսերական եկեղեցին համարվում էր կայսրության վարչական կառուցվածքին։

Մենք տեսանք, որ հայկական հողերը քաղաքական տեսակետից մեկ ամբողջություն չէին կազմում, այլ բաժանված էին տարբեր քաղաքական կերպարանք ունեցող մի քանի մասերի։ Այդ պատճառով էլ չենք կարող խոսել հայկական հողերի սահմաններում ամբողջությամբ վերցրած գոյություն ունեցող եկեղեցական միասնական կազմակերպության մասին։ Փոքր Հայքը, որ օրգանապես կապված էր կայսրության հետ, եկեղեցական տեսակետից ևս ենթարկվում էր ընդհանուր իրադրությանը։ Սկզբում, որպես Կապադովկիայի մի մասը, այն մտնում էր Կեսարիայի միտրոպոլիտի թեմի մեջ, այնուհետև, կազմելով ինքնուրույն նահանգ, ունեցավ իր միտրոպոլիտը։ Երբ Փոքր Հայքը բաժանվեց երկու մասի, Մելիտենեն դարձավ II Հայքի մայրաքաղաքը, իսկ Սեբաստիան՝ I Հայքի[1]։ Այս երկու միտրոպոլիտությունները ընդունում

---

[1] Այդ միտրոպոլիտությունների եպիսկոպոսական քաղաքների մասին տե՛ս վերը՝ էջ 106։ Հայկական շրջանների եկեղեցական բաժանումը փոփոխության չենթարկվեց Հուստինիանոսի բարենորոգումների ժամանակ։ Տե՛ս վերը՝ էջ 195։

չէին իրենց նախկին միտրոպոլիտության՝ Կեսարիայի աթոռի ավագության իրավունքը, իսկ հետագայում՝ 451 թ. Քաղկեդոնի ժողովի ժամանակից սկսած՝ ենթարկվեցին անմիջապես Կոստանդնուպոլսի պատրիարքին։

Ինչ վերաբերում է Մեծ Հայքին, ապա իր քաղաքական վիճակի անկայունության պատճառով եկեղեցական տեսակետից էլ նա միշտ տատանվում էր քաղաքական իրավիճակին համապատասխան՝ մերթ մոտենալով կայսրությանը և մերթ հեռանալով նրանից։ Հայկական եկեղեցու գոյության առաջին դարում, Գրիգոր Լուսավորչից մինչև Հայաստանի բաժանումը Դ դարի վերջին, Հայաստանը գտնվում էր առավելապես կայսրության գերիշխանության տակ, և այդ պատճառով եկեղեցական հարաբերություններն էլ նրանց միջև ավելի սերտ էին։ Ձեռնադրվելով Կեսարիայում՝ Գրիգորը Կեսարիայի աթոռի նկատմամբ հանդիսացավ այնպիսի եպիսկոպոս, ինչպիսին էին Մելիտենեի, Սեբաստիայի և մյուս քաղաքների եպիսկոպոսները, այն տարբերությամբ, սակայն, որ իբրև անկախ պետության եպիսկոպոս՝ մի երկրի, որ միայն օգտվում էր կայսրության հովանավորությունից, Գրիգորի կախումը կրում էր ավելի շատ ձևական բնույթ[1]։

Գրիգորին եպիսկոպոս կարող էր ձեռնադրել ամենամոտիկ միտրոպոլիտը, օրինակ, Մելիտենեի, որովհետև Նիկիայի ժողովի 4-րդ կանոնով սրբագործված հին սովորույթը թեմի եպիսկոպոսների համաձայնությամբ յուրաքանչյուր միտրոպոլիտի ձեռնադրության իրավունք էր տալիս։ Եթե Գրիգորը դիմեց Կեսարիային, նշանակում է, նրա ձեռնադրությունը եղել է ավելի վաղ, քան Դիոկղետիանոսի 296 թվականի ռեֆորմը, որի հետևանքով Փոքր Հայքից կազմվեց նոր նահանգ և առանձին միտրոպոլիտություն։ Ճիշտ է, դրանից հետո էլ Գրիգորի հաջորդները գնում էին Կեսարիա, բայց այդ արդեն բնականաբար բացատրվում է նախկին և գլխավոր եկեղեցական կյանքի կենտրոնի հետ տրադիցիոն կապը պահպանելու ցանկությամբ, նրանով, որ նրանք չէին կամենում կախման մեջ լինել մի միտրոպոլիտից, որը դրանից առաջ հայ եպիսկոպոսի հետ միասին նույնպես ենթարկվում էր Կեսարիայի

[1] Գելազիոսն իր Նիկիայի ժողովի պատմության մեջ Կեսարիայի եպիսկոպոսին ենթակա երկրների թվում հիշատակում է նաև Πόντον Πολεμαϊκόν, Ἀρμενίαν μικρὰν καὶ μεγάλην. Gelazii Cyziceni, *Hist. conc. Nic.* Migne, 85, p. 1310.

*աթոռին։ Լուսավորչի հարաբերությունը Կեսարիայի հետ համասարակոր էր եպիսկոպոսի հարաբերությանը միտրոպոլիտի նկատմամբ, իսկ նրա հաջորդները կամ այդ հաջորդներից նրանք, որոնք ձեռնադրվում էին Կեսարիայում, Կեսարիայի աթոռին վերաբերվում էին այնպես, ինչպես միտրոպոլիտները՝ պատրիարքին։*

*Այս վիճակը որոշ ընդհատումներով շարունակվեց մինչև Հայաստանի բաժանումը։ Ընդհարումները տեղի էին ունենում պարսիկների միջամտության հետևանքով. նրանց ազդեցության ուժեղացմանը զուգընթաց հայերի մեջ նկատվում էր կայսրությունից եկեղեցու կախումը խզելու և ինքնուրույն եկեղեցի ստեղծելու ձգտում։ Մենք տեսանք, որ եկեղեցական քաղաքականության երկու հոսանքների արտահայտիչները երկու տոհմերի՝ Գրիգորի և Աղբիանոսի տոհմերի ներկայացուցիչներ էին։ Երբ Հայաստանը բաժանվեց երկու պետությունների միջև, դրանով էլ լուծվեց եկեղեցու վարած երկակի քաղաքականության հարցը. երկու հոսանքներն էլ պարփակվեցին համապատասխան սահմաններում. կայսերականը՝ Արևմտյան Հայաստանում, իսկ ազգայինը՝ Արևելյան։ Այդ բաժանումից սկսած՝ Արևելյան Հայաստանը հաստատապես թևակոխում է եկեղեցու ազգայնացման ուղին որպես հիերարխիկան առումով ինքնավար հաստատություն, իսկ Արևմտյան Հայաստանը շարունակում է մնալ կայսերական եկեղեցուց կախյալ վիճակում։*

*Եկեղեցու ազգայնացումը տեղի էր ունենում նրա նախարարականացման կամ ֆեոդալականացման ուղիով։ Քանի որ Հայաստանի քաղաքական վարչաձևը կրում էր ֆեոդալական բնույթ, և իշխանությունը բաժանված էր բազմաթիվ ազնվական տոհմերի միջև, ուստի եկեղեցական իշխանությունն էլ, բնականաբար, պետք է համակերպվեր գոյություն ունեցող միջավայրին և վերցներ արդեն պատրաստի ձևերը։ Եկեղեցու նախարարականացման պրոցեսը սկսվեց Պապի թագավորության ժամանակ, երբ կայսերական եկեղեցու հետ հարաբերությունները խզվեցին։ Ներսես կաթողիկոսի սպանությունից հետո Պապ թագավորը նրա տեղը նշանակեց Հուսիկ եպիսկոպոսին, որ Աղբիանոսի տոհմից էր։ Կեսարիայի պատրիարքը, իմանալով թագավորի ինքնագլուխ կարգադրության մասին, որ կատարված էր առանց իր գիտության, դժգոհ մնաց։ Այդ առթիվ տեղի ունեցավ Կեսարիայի թեմի եպիսկոպոսների ժողով, և նրանք Պապ թագավորին հղեցին մի ցասումնալից թուղթ, որի*

*մեջ, Փավստոսի խոսքերով ասած, «լուծին զիշխանութիւնն կաթողիկոսութեանն» և որոշեցին. «զի որ լիցին հայրապետ Հայոց, նա զրանն արքունի իշխեսցէ՝ զհացն օրհնել. և մի իշխեսցէ ձեռնադրել զեպիսկոպոսն Հայոց, որպէս սովորութիւն էր ի բնէ։ Եւ յայնմ հետէ բարձաւ իշխանութիւն Հայոց,— շարունակում է պատմիչը,— զեպիսկոպոսն ձեռնադրել. այլ որ լինէին եպիսկոպոսք ամենայն գաւառաց գաւառաց Հայոց և կողմանց կողմանց. յայնմ հետէ, որ միանգամ լինէին եպիսկոպոսք սահմանացն Հայոց, երթային ի քաղաքն Կեսարացւոց և անդ լինէին եպիսկոպոսք։ Վասն զի, յայնմ հետէ,— կրկնում է պատմիչը,— բարձաւ իշխանութիւն յերկրէն Հայոց, այնուհետև ոչ իշխէին եպիսկոպոսք ձեռնադրել. բայց որ լինէր աւագ եպիսկոպոսացն, ի վերոյ միայն նստէր և հաց օրհնէր թագաւորացն»[1]։*

*Մեր պատմիչի վկայությունը հաստատվում է նաև նրանով, որ Կեսարիայի եպիսկոպոս Բարսեղ Մեծի թղթերում նույնպես խոսվում է նրա՝ Պապի հետ ունեցած ինչ-որ ընդհարման մասին։ Բարսեղը մերժում է Պապի խնդիրը՝ նրա ուղարկած Փավստոսին եպիսկոպոս ձեռնադրելու մասին և նրա փոխարենը առաջարկում է իր թեկնածուին՝ ոմն Կյուրեղի։ Այն ժամանակ հայերը շրջանցում են Բարսեղին և նույն հարցով դիմում են նրա հակառակորդ Անթիմոսին՝ երկրորդ Կապադովկիայի միտրոպոլիտին և կարողանում են իրագործել իրենց ցանկությունը[2]։*

*Այս Փավստոսին կարելի է համեմատել հայ պատմիչի այն համանուն եպիսկոպոսի հետ, որ ձեռնադրեց Ներսեսին և ապրեց մինչև Խոսրով թագավորի օրերը։ Այն, ինչ հաղորդում է Բարսեղ Մեծը, այնքան էլ չի համընկնում հայկական տվյալներին։ Դրանք իրար համաձայնեցնել կարելի է միայն այն դեպքում, եթե ընդունենք, որ Պապ թագավորը սկզբում պաշտպանել է հիշյալ Փավստոսի թեկնածությունը, իսկ հետո, երբ Բարսեղը մերժեց այն, անտեսելով ավանդույթները, իր իսկ ընտրությամբ նշանակեց Հուսիկին։*

*Հայ պատմիչի վերը հիշված պատմության մեջ նկատվում է նրա հայացքը կաթողիկոսական իշխանության էության նկատ-*

[1] Փավստոս, Ե, ԻԹ։

[2] S. Basilii *epist.* 58, 195, 313, տե՛ս Gelzer, *Die Anfänge der armenischen Kirche*, p. *159* (Berichte uber die Verh. d. Kön. Sächs. Ges. d. Wiss. zu Leipzig. *1895*. Bd. *47*).

*ժամը։ Այդ իշխանությունը կայանում էր գերազանցապես եպիսկոպոսներ ձեռնադրելու իրավունքի մեջ, և այն խլելուց հետո կաթողիկոսի պաշտոնը իջեցվում և հավասարեցվում էր արքունի եպիսկոպոսի աստիճանին։ Արդյոք այն ժամանակ հայոց եպիսկոպոսը կոչվու՞մ էր կաթողիկոս և ունե՞ր ձեռնադրության իրավունք, այս հարցը դեռ անորոշ է։ Պատմիչի խոսքերի մեջ զգացվում է ավելի ուշ ժամանակվա ազդեցությունը, երբ կայունացավ կաթողիկոսի դիրքը։ Ինչ. վերաբերում է պատմիչի այն պնդմանը, թե Պապի միջադեպից հետո հայ եպիսկոպոսները ձեռնադրվում էին Կեսարիայում, պետք է ճիշտ համարել միայն Հայաստանի կայսերական կամ Արևմտյան մասի վերաբերյալ։ Գիտենք, որ Հայաստանի բաժանումից հետո կայսերական մասում կաթողիկոս չկար, և այդտեղի եպիսկոպոսները չէին ենթարկվում Պարսկական Հայաստանում նստող կաթողիկոսին։ Ե դարի ապստամբությանը չէր մասնակցում Արևմտյան Հայաստանի եպիսկոպոսներից և ոչ մեկը։*

*Մենք չգիտենք, թե Հայաստանի բաժանումից հետո ի՞նչ վիճակի մեջ էին եկեղեցական գործերը կայսերական մասում։ Դատելով մի քանի տվյալներից՝ այստեղ եկեղեցին հարմարվում էր երկրի յուրաքանչյուր բաղկացուցիչ մասի քաղաքական վարչակարգին։ 451 թ. Քաղկեդոնի ժողովի ստորագրություններից երևում է, որ այդ ժողովին մասնակցել են ինքնավար սատրապությունների ներկայացուցիչները, Սոփենի, Անզիտենի, Անգեղենի, Սոփանենի և Մարտիրոսուպոլսի եպիսկոպոսները, որ կազմում էին Միջագետքի թեմը և ենթարկվում էին Ամիդ քաղաքի եպիսկոպոսի միտրոպոլությանը*[1]*։ Օսրոյենեի առանձնանալուց հետո Միջագետք նահանգի մայրաքաղաք դարձավ Մծբինը, իսկ երբ 363 թվականին վերջինս անցավ պարսիկներին՝ մայրաքաղաք դարձավ Ամիդը։ Հիշյալ սատրապությունների եպիսկոպոսները անկախ էին այնպես, ինչպես նրանց տիրակալ իշխանները և ինչպես որ վերջինները պատվանշաններ էին ստանում կայսերական իշխանությունից, այնպես էլ եպիսկոպոսները ձեռնադրվում էին մոտակա կայսերական միտրոպոլիտի կողմից։ Որպես հիերարխիկ կախում ունեցող բարձրաստիճան հոգևորականներ նրանք ներկա էին 451 թվականի տիեզերական ժողովին։*

*Ավելի անորոշ է եկեղեցու վիճակը կայսերական Ներքին*

[1] *Տե՛ս վերը, էջ 59։*

*Հայքում։ Քաղկեդոնի ժողովում այնտեղից ներկայացուցիչներ չկային։ 553 թվականի հինգերորդ ժողովում հիշվում է Գրիգորը՝ Հուստինիանուպոլսի եպիսկոպոսը*[1]*։*

*Կաթողիկոսության բաժանումից հետո, Զ դարի վերջում, Թեոդոսուպոլսում նստում էր Թեոդորոս եպիսկոպոսը, որը և համարվում էր խռովությունների ներշնչողը*[2]*։ Կորյունի մոտ հիշատակություն կա Դերջանի եպիսկոպոսի մասին։ 680 թվականի ժողովի մասնակիցների թվում հիշված են Թեոդորոս եպիսկոպոսը՝ Եկեղեաց գավառից կամ Հուստինիանուպոլսից և Գեորգ եպիսկոպոսը Դարանաղիից կամ Կամախից։ Նույն այս Գեորգը Կիթառիճի Մարիանոս եպիսկոպոսի հետ միասին ներկա է եղել նաև 692 թվականի ժողովին*[3]*։*

*Այսպիսով, Զ—Է դարերում եպիսկոպոսություններ գոյություն ունեին Ներքին Հայքի գլխավոր գավառներում՝ Կարինում, Դերջանում, Եկեղիքում և Դարանաղիում։ Ե՞րբ և ի՞նչ հաջորդականությամբ հիմնվեցին այդ եպիսկոպոսությունները, այնքան էլ պարզ չէ։ Կայսրությանը միացվելուց հետո Ներքին Հայքը չդարձավ հռոմեական պրովինցիա բառի իսկական առումով, այլ պահեց իր ներքին նախարարական կառուցվածքը մինչև Հուստինիանոսի ժամանակները, ուստի եկեղեցական տեսակետից էլ նա առանձին միտրոպոլիտություն չկազմեց, այլ յուրաքանչյուր գավառ, իբրև ինքնուրույն իշխանական միավոր, ուներ իր եպիսկոպոսությունը, և բոլոր եպիսկոպոսները ենթակա էին կայսերական եկեղեցուն այնքանով, որ նրանից էին ստանում իրենց ձեռնադրությունը։ Քաղկեդոնի ժողովում որոշվեց, որ այսուհետև «այլազգի եպիսկոպոսները պետք է ձեռնադրվեն Կոստանդնուպոլսի սուրբ եկեղեցու սուրբ աթոռի կողմից», ինչպես Պոնտական, Ասիական և Թրակիայի դիոցեզների միտրոպոլիտները։ Դրանից առաջ հայոց եպիսկոպոսները իրենց ձեռնադրությունը ստանում էին մոտակա բարձր աթոռից՝ այն է Կեսարիայի եկեղեցուց, իսկ հետո, հիշյալ կանոնի*

---

1 Mansi. IX, 391, Gregorius... ep. Iustinianopolitanorum civitatis magnae Armeniáe. *191 էջում նույն անձնավորության անունը կարդացվում է* Georgius.

2 Մովսես Կաղանկատվացի, *էջ 212։*

3 *Թեոդորոսի մասին տե՛ս վերը, էջ 167, Գեորգի մասին՝* Mansi, XI *էջ 645 (տե՛ս վերը, էջ 66) և էջ 613 և 993, նաև էջ 1005,* Μαριανός ἄναξ επ. Κιθαρίζων τῆς πρώτης sc. τετταρτης *($\bar{A}$* pro *$\overline{\Delta}$)* τῶν 'Αρμενίων ἐπαρχίας.

համաձայն, նրանք կախման մեջ դրվեցին ուղղակի Կոստանդնուպոլսի պատրիարքից։

Այս ամենից պարզվում է Փավստոսի հիշյալ վկայության բուն իմաստը՝ որ Կեսարիայի եպիսկոպոսի և Պապի ընդհարումից հետո Հայոց եպիսկոպոսները ձեռնադրվում էին բացառապես Կեսարիայում. այդ պնդման մեջ արտացոլված է իրերի իսկական վիճակը Հայաստանի կայսերական մասում. նրա եպիսկոպոսները իրոք ենթակա էին Կեսարիայի աթոռին։ Հայկական ավանդության համաձայն Հայաստանի բաժանումից հետո կաթողիկոսական աթոռի շուրջը եղած խռովությունների ժամանակ փորձ կատարվեց կայսերական Հայաստանի համար ստեղծելու առանձին կաթողիկոսություն[1]։ Հնարավոր է, որ թագավորությունը երկու գահաժառանգ եղբայրների միջև բաժանելու ժամանակ, երբ նրանցից մեկը նըստում էր Պարսկական, իսկ մյուսը՝ Հռոմեական Հայաստանում, բաժանվեց նաև կաթողիկոսական իշխանությունը։ Այդ դեպքում պատմիչի այն խոսքերը, թե կաթողիկոսը զրկվեց ձեռնադրության իրավունքից և իջեցվեց արքունի եպիսկոպոսի աստիճանին, պետք է վերագրել հատկապես Հայաստանի կայսերական մասում կաթողիկոսական իշխանությունը կրողին։

Ասենք, որ նույն այս խոսքերը կիրառելի են հայոց կաթողիկոսի վերաբերյալ նաև մինչև բաժանումը։ Ձեռնադրության իրավունքի հարցի լուծումը կախված է այն բանից, թե քանի եպիսկոպոս ուներ հայոց եկեղեցին։ Ըստ Նիկիայի ժողովի որոշման եպիսկոպոսի ձեռնադրությունը կատարվում է տվյալ թեմի բոլոր եպիսկոպոսների համաձայնությամբ։ Բայց եթե դժվար էր լինում բոլորին հավաքել, ապա պարտադիր կերպով պահանջվում էր առնվազըն երեք եպիսկոպոսի ներկայությունը և բոլոր բացակա եպիսկոպոսների գրավոր համաձայնությունը[2]։ Արդյունքը ներկայացվում էր միտրոպոլիտին ի հաստատումն։ Մենք գիտենք, որ հայոց

[1] Խորենացի, Գ, կդ, Թովմա Արծրունի, էջ 74, դժուակ ամն Կուկոճացի կացոյց մասին Յունաց եպիսկոպոսապետ։

[2] Nic. can. 4. Ἐπίσκοπον προσήκει μάλιστα μὲν ὑπὸ πάντων τῶν ἐν τῇ ἐπαρχίᾳ καθίστασθαι· εἰ δὲ δυσχερὲς εἴη τὸ τοιοῦτον, ἢ διὰ κατεπείγουσαν ἀνάγκην ἢ διὰ μῆκος ὁδοῦ, ἐξάπαντος τρεῖς ἐπὶ τὸ αὐτὸ συναγομένους, συμψήφων γινομένων τῶν ἀπόντων καὶ συντιθεμένων διὰ γραμμάτων, τότε τὴν χειροτονίαν ποιεῖσθαι· τὸ δὲ κῦρος τῶν γινομένων δίδοσθαι καθ' ἑκάστην ἐπαρχίαν τῷ μητροπολίτῃ.

կաթողիկոսները՝ Գրիգորից սկսած մինչև Պապ թագավորի ժամանակը, բոլորն էլ ձեռնադրվել են Կեսարիայում։ Միայն Արիստակեսը ձեռնադրվեց իր հոր կողմից. եթե միայն դա ճիշտ է, ապա ուրեմն՝ Արիստակեսի ձեռնադրությունը կատարվել է հավանաբար մինչև Նիկիայի ժողովը, երբ առանձին եպիսկոպոսների, կարող է պատահել, տրված է եղել այդպիսի իրավունք։ Եթե Հայաստանում լիներ գոնե երեք եպիսկոպոս, կաթողիկոսի ձեռնադրությունը կկատարվեր Հայաստանում, իսկ հետո կներկայացվեր Կեսարիայի աթոռի վավերացմանը։ Փավստոսը պատմում է, որ Ներսեսին հրաժարացնելուց հետո Արշակ թագավորը հրավիրեց հայ եպիսկոպոսներին, որպեսզի կաթողիկոս ձեռնադրեն Չունակին, բայց նրանք հրաժարվեցին, և միայն Աղձնիքի և Կորդուքի եպիսկոպոսները ներկայացան և կատարեցին թագավորի ցանկությունը[1]։ Ճշմարտությունն այն է, որ հայ եպիսկոպոսներ չկային, և այդ պատճառով էլ Արշակը ստիպված էր դիմել շրջակա նահանգների ներկայացուցիչներին, որոնք փաստորեն գտնվում էին Ասորիքի եկեղեցու կազմում։ Հայերը հնարավորություն չունեին իրենց համար եպիսկոպոսներ կամ կաթողիկոսներ ընտրել առանց հարևան եկեղեցիներին դիմելու. երբ պատմիչն ասում է, թե Կեսարիայի եպիսկոպոսը հայերին զրկեց ձեռնադրության իրավունքից, սխալ կերպով այդ պահին է վերագրում այն իրադրությունը, որի մեջ հայոց եկեղեցին գտնվում էր մինչ այդ։

Մենք սխալված չենք լինի, եթե ասենք, որ հայոց եկեղեցու հիերարխիան, որ բաղկացած էր միայն Գրիգորի և Աղբիանոսի տոհմերից, սկսեց զարգանալ Ներսես կաթողիկոսի ժամանակից։ Նկարագրելով եկեղեցու ծաղկումը նրա օրոք՝ պատմիչը ասում է. «բազմացոյց զկարգս պաշտօնէից... եւ յամենայն գաւառս կացոյց տեսուչս եպիսկոպոսս»[2]։ Նույնպիսի իմաստ ունեն պատմիչի այն խոսքերը, թե «պատիւ հարցն եպիսկոպոսաց յամենայն գաւառս հայոց յաճախէր ըստ արժանի իւրեանց»[3]։ Այն խառն շրջանը, որ վրա հասավ Պապից հետո, պետք է նպաստեր եկեղեցական հիերարխիայի զարգացմանն ու ընդարձակմանը։ Թագավորական իշխանությունը հետզհետե թուլանում և կորցնում էր զսպիչ գործոնի իր

---

[1] Փավստոս, Դ, ժե։

[2] Նույն տեղում, Ե, իա։

[3] Նույն տեղում, Ե, լա։

*նշանակությունը՝ բարենպաստ վիճակ ստեղծելով երկրում ֆեոդալական ուժերի ծավալման համար։ Պապի հաջորդ և կայսրի հովանավորությունը վայելող Վարազդատի կարճատև թագավորությունից հետո սկսվեց սպարապետ Մանվել Մամիկոնյանի խնամակալության շրջանը, որի յոթնամյա իշխանությունը նվիրված էր նախ և առաջ նախարարական վարչակարգի կանոնավորմանը*[1]*։ Այդ օրից ի վեր սկսվում է նաև եկեղեցական կազմակերպության համապատասխանեցումը նախարարական վարչակարգին. եկեղեցական իշխանությունը բաշխվում է առավել ազդեցիկ իշխանական տոհմերի միջև՝ նրանցից յուրաքանչյուրի համար առանձին եպիսկոպոսություն հաստատելու միջոցով։ Այստեղ մենք չենք հանդիպում միտրոպոլիտական կազմակերպության, չենք տեսնում եկեղեցական թեմերի բաժանման տերիտորիալ սկզբունք*[2]*։ Եկեղեցական-վարչական միավորը համապատասխանում է նախարարական տիրույթներին՝ տվյալ նախարարական տոհմի տիրապետության տակ գտնվող կալվածքներին՝ բոլորովին անկախ նրա ծավալից։ Հիշյալ ժամանակաշրջանում, մինչև Արշակունիների անկումը, եկեղեցական հիերարխիան այնքան անեց, որ 451 թվականին արդեն ունեո*

[1] Փավստոս, Ե, *խբ. «յամենայն գաւառս կացուցանէր Մանուէլ նահապետս եւ տեարս գաւառաց գաւառաց»։*

[2] *Եկեղեցական հարաբերությունների լարվածության ժամանակ հույներն այս հանգամանքը օգտագործեցին հայերի դեմ։ Նշանավոր գիտնական Սողոմոն Հարանց հոր վկայությամբ, որ մեզ է բերում պատմիչ Մովսես Կաղանկատվացին, նրանք նշում էին, որ եկեղեցական հիերարխիայում պետք է լինի ինը դաս. «պատրիարգ, որ է հայրապետ եւ արքեպիսկոպոս, որ կոչի եպիսկոպոսապետ եւ կաթողիկոս, մետրոպոլիտ եւ եպիսկոպոս, քահանայ, սարկաւագ, կիսասարկաւագ, ընթերցող ու փսաղտող» և ասում էին «եթէ ողջամտութեամբ հաւատայք, խոստովան լերուք, եթէ ով է պատրիարգն ձեր»։ Նրանք հարցնում էին, թե հայոց եկեղեցին տիեզերական չորս պատրիարքներից որի՞ն է ենթակա, քանի որ սուրբ Գրիգորը Կեսարիայում միայն արքեպիսկոպոս ձեռնադրվեց։ Այդ տարկությունների ազդեցության տակ՝ «վասն մեծարանութեան յանձանց, որ փոքրկացուցանել ջանային զկայս հանգստեան Թադէոսի առաքելոյ՝ չունել եպիսկոպոսապետ եւ միտրոպոլիտ», հայերը աշխատում էին ստեղծել պակասող բարձր աստիճանները և Մարդպետական եպիսկոպոսին, իսկ հետո՝ Սյունյաց եպիսկոպոսին նշանակեցին միտրոպոլիտ։ Ըստ մի այլ վկայության պատրիարք համարվեց հայոց կաթողիկոսը, արքեպիսկոպոս՝ Աղվանից կաթողիկոսը, իսկ միտրոպոլիտ՝ Սյունյաց, Վրաց և Մարդպետական եպիսկոպոսները։* Մովսես Կաղանկատվացի, Բ, *խբ։* Հովհան կաթողիկոս, *էջ 29։* Օրբելյան, *գլ. Զ։*

շուրջ 18 եպիսկոպոս, որոնք նախարարական կարևոր տոհմերի ներկայացուցիչներ էին։

Եպիսկոպոսներից մեկը կրում էր կաթողիկոս καθόλικος[1] տիտղոսը և նրանց մեջ գրավում էր ճիշտ նույն դիրքը, ինչ-որ թագավորը նախարարների մեջ, այսինքն՝ primus inter pares. Եպիսկոպոսները, ինչպես և նախարարները, կոչվում էին տէր և ճիշտ այնպես, ինչպես որ նրանք հանդիսանում էին նախարարական մարզերի ներկայացուցիչներ, նույն ձևով էլ կաթողիկոսը համարվում էր նախ և առաջ արքայական մարզի, այսինքն՝ Այրարատի՝ Արշակունիների կալվածքների եպիսկոպոս։ Միանգամայն ճիշտ են պատմիչի վերը մեջ բերած խոսքերը, թե կաթողիկոսը արքունիքի եպիսկոպոսն էր և օրհնում էր արքայական սեղանը[2]։

Հոգևոր կոչումը և իշխանությունը, նախարարական իշխանության նման, նշանավոր տոհմերի ժառանգական սեփականությունն էին։ Կայսերական եկեղեցու համար այս երևույթը, որը 692 թվականի Տրուլլի եկեղեցական ժողովում քննության նյութ դարձավ, տարօրինակ և անհասկանալի էր թվում։ «Տեղեկանալով այն մասին,— ասված է ժողովի 33-րդ որոշման մեջ,— որ հայոց երկրում կղերական դասի մեջ են ընդունվում միայն հոգևոր ծագում ունեցող անձնավորությունները, որով այդպես վարվողները նմանվում են հրեից սովորությանը, որոշում ենք, որ այսուհետև եթե որևէ մեկը ցանկանում է կղերական դառնալ, չպետք է նայել ծա-

[1] Նիկիայի ժողովի կանոնների հայերեն թարգմանության մեջ μητροπολίτης թարգմանված է կաթողիկոս (Ն. Մելիք-Թանգյան, Հայոց եկեղեցական իրավունքը, էջ 256)։ Ըստ Փավստոսի Գ, դ Կեսարիայի եպիսկոպոս Եվսեբիոսը՝ նա, որ ձեռնադրեց Ներսեսին, կոչվում էր «կաթողիկոսաց կաթողիկոս», որ համապատասխանում է միտրոպոլիտների միտրոպոլիտ արտահայտությանը, որպիսին էր Կեսարիայի եպիսկոպոսը։ Գիտնականների կարծիքով καθόλικος-կաթողիկոս նախապես նշանակում էր ֆինանսական պաշտոնյա և ապա փոխանցվել է հայոց, վրաց և ասորաց եկեղեցու պետերին (Gelzer, *Die Anfange*, p. 139. Ինճիճեան, Հնախօս. Գ, էջ 251)։ Զ դարի հեղինակ Պրոկոպիոսը հիշյալ տիտղոսը հասկանում էր բառացի իմաստով՝ τό τε τῶν χριστιανῶν ἱερέα καθολικὸν καλοῦσι τῇ Ἑλλήνων φωνῇ, ὅτι δὴ ἐφέστηκεν εἷς ὢν ἅπασι τοῖς ταύτῃ χωρίοις. *Pers.* II 25, p. 263. Շատ հնարավոր է, որ καθόλικος փոխ. καθόλικος ἐπίσκοπος թեմի գլխավոր եպիսկոպոսի սկզբնական կոչումն էր, որ հետո կոչվել է ἐπίσκοπος μητροπολίτης, քանի որ նստում էր թեմի մայրաքաղաքում։

[2] Փավստոս, Ե, ԻԹ, «բայց որ լինէր աւագ եպիսկոպոսացն ի վերոյ միայն նստէր եւ հաց օրհնէր թագաւորացն»։

ցումին, այլ պետք է հաշվի առնել այն հանգամանքը, թե արդյոք նա արժանի՞ է հոգևոր կոչման ըստ սուրբ կանոնների մեջ հաստատված պահանջների և ապա ձեռնադրել նրան, անկախ այն բանից, թե արդյոք նրա նախնիները հոգևորական ծագում ունե՞ն, թե՝ ոչ»[1]։

Տրուլլի եկեղեցական ժողովին ներկա էին մի քանի հայ եպիսկոպոսներ, որոնց թվում նաև Կիթառիճի Մարիանոս եպիսկոպոսը։ Ըստ երևույթին նրանք են վերոհիշյալ տեղեկության աղբյուրը, և նրանց նախաձեռնությամբ էլ հարցը հանձնվել է եկեղեցական ժողովի քննությանը։ Այսպիսով, հիմք չկա կասկածի տակ առնելու եկեղեցական ժողովին ներկայացված տվյալների հավաստիությունը։ Այստեղ խոսք չի կարող լինել Հին Կտակարանի կանոններին հետևելու մասին, ինչպես ենթադրում էին ժողովի մասնակից հայրերը։ Եթե կա նմանություն, ապա այն պետք է բացատրել նրանով, որ հայ եկեղեցական հիերարխիան, ինչպես և Հին Կտակարանի քահանայությունը, զարգացավ մի այնպիսի միջավայրում, որտեղ գործում էին տոհմական հարաբերությունները։ Ժառանգականությունը և նմանության մյուս գծերը ոչ թե ընդօրինակման, այլ բացառապես սոցիալական այն պայմանների ընդհանրության արդյունք են, որոնց մեջ հանդես եկան հայ եկեղեցին և հին հրեական հոգևորականությունը[2]։

Ժառանգական էր նաև կաթողիկոսական իշխանությունը, որը

[1] Trull. can. 33. Ἐπειδήπερ ἔγνωμεν ἐν τῇ Ἀρμενίων χώρᾳ μόνους ἐν κλήρῳ τοὺς ἐκ γένους ἱερατικοῦ κατατάττεσθαι, ἰουδαϊκοῖς ἔθεσιν ἑπομένων τῶν τοῦτο πράττειν ἐπιχειρούντων, τινὰς δέ αὐτῶν καὶ μὴ ἀποκειρομένους ἱεροψάλτας καὶ ἀναγνώστας τοῦ θείου νόμου καθίστασθαι, συνείδομεν, ὥστε ἀπὸ τοῦ νῦν μὴ ἐξεῖναι τοῖς εἰς κλῆρον βουλομένοις προάγειν τινὰς εἰς τὸ γένος ἀποβλέπειν τοῦ προχειριζομένου, ἀλλὰ δοκιμάζοντες, εἰ ἄξιοι εἶεν κατὰ τοὺς τεθέντας ἐν τοῖς ἱεροῖς κανόσιν ὅρους ἐν κλήρῳ καταλεγῆναι, τούτους ἐκκλησιαστικῶς προχειρίζεσθαι, εἴτε καὶ ἐκ προγόνων γεγόνασιν ἱερέων εἴτε καὶ μή· ed. *cit.* p. 166.

[2] Հրեության հետ եղած նմանության մասին խոսում է նաև Գելցերը, անկախ Տրուլլի ժողովից. 'der Katholikat hat thatsächlich wenig Aehnlichkeit mit dem christlichen Episcopat, sondern erinnert vielfach an jüdische und heidnische Vorbilder. Dahin gehört vor allem die Erblichkeit des Hohenpriesteramtes', *Die Anfange*, p. 140։ Այդ առանձնահատկությունները բացատրվում են նախարարական միջավայրի ազդեցությամբ և ոչ թե հրեության, ինչպես սխալ կերպով կարծում է հիշյալ գիտնականը և նրանից հետո նաև Simon Weber, *Die Katholische Kirche in Armenien*, p. 218.

Լուսավորչի տոհմի ձեռքում մնաց այնքան ժամանակ, քանի դեռ քաղաքական իշխանությունը գտնվում էր Արշակունիների ձեռքում։ Երբ Ե դարի սկզբում վերացավ Արշակունյաց իշխանությունը, միաժամանակ հարց հարուցվեց գահընկեց անելու Սահակ կաթողիկոսին։ Այդ ծրագրի իրագործումով կաթողիկոսական աթոռը անորոշ վիճակի մատնվեց։ Ինչպես եպիսկոպոսները համարվում էին զանազան նախարարությունների եկեղեցական ներկայացուցիչներ, այնպես էլ կաթողիկոսը ենթարկվում էր թագավորին և իբրև արքունի եպիսկոպոս՝ նշանակվում էր Արշակունիների կողմից։ Նրանցից հետո այդ իրավունքն անցավ պարսից թագավորին։ Բայց ո՛չ պարսից դրածոները՝ Սուրմակ, Բրքիշո և Շմուել եպիսկոպոսները, ո՛չ Սահակի մերձավոր աշակերտները՝ Մեսրոպը և Հովսեփը, որոնք կառավարում էին եկեղեցին, ոչ թե կաթողիկոսներ էին համարվում, այլ միայն տեղապահներ։ Պատճառն անկասկած այն է, որ եկեղեցական միջավայրում իշխում էր ժառանգականության կարգը, և երբ ընդհատվում էր օրինական ժառանգների գիծը, այն հարցը, թե ում պետք է անցնի աթոռը, մնում էր բաց և սպասում էր լուծման։ Հասկանալի է, թե ինչու այդ դեպքում նորից ասպարեզ է գալիս Աղբիանոսի մոռացված, բայց վաստակաշատ տոհմը, և աթոռի վրա մենք տեսնում ենք այդ տոհմի եպիսկոպոսներին՝ Մելիտային և Մովսեսին[1]։ Այս հարցի լուծման այդ փորձը պատմականորեն չհաջողվեց։ Հավանորեն Վահան Մամիկոնյանի հովանավորության շնորհիվ Աղբիանոսյաններից հետո կաթողիկոսական աթոռը գրավեց Մամիկոնյանների նահանգի՝ Տայքի եպիսկոպոս Գյուտը։

Ե դարի վերջում հայոց ապստամբության բարեհաջող ելքից հետո ամրապնդվեց եկեղեցու դրությունը՝ հոգևորականության նշանակությունը սկսեց աճել։ Եպիսկոպոսների մրցակցության հետևանքով, և թերևս ոչ առանց հարևան եկեղեցիների ազդեցության, որոնց հետ այդ նույն ժամանակ շփումը սերտացավ, կաթողիկոսական իշխանության հարցը լուծվեց ընտրական սկզբունքի հաղթանակով։

Պատրիարք-կաթողիկոսից հետո եկեղեցական կյանքում առավել մեծ նշանակություն ուներ Մամիկոնյանների եպիսկոպոսը։ Այստեղ արտացոլված է նախարարական վարչակարգի ազդեցու-

[1] Փարպեցի, էջ 110։

*թյունը։ Ինչպես Արշակունիների օրոք և նրանցից հետո նախարարության գլուխ էին կանգնած Մամիկոնյան տոհմի ժառանգական սպարապետները, այնպես էլ եկեղեցական գործերում կաթողիկոսին առընթեր գլխավոր ղեկավար դերը խաղում էր նույն տոհմի հոգևոր ներկայացուցիչը։ Հայտնի է այն աչքի ընկնող դերը, որ Զ դարի եկեղեցական հարցերում խաղացել է Մամիկոնյանների Ներշապուհ եպիսկոպոսը։*

*Եթե եկեղեցու կազմակերպության նախարարական հիմունքի մասին մեր պաշտպանած միտքը ճիշտ է, պետք է որ որոշ համապատասխանություն լինի իշխանական տների և եկեղեցական ներկայացուցիչների միջև։ Մենք իրավունք ունենք սպասելու, որպեսզի ամենաազդեցիկ նախարարական տոհմերը ունենային իրենց եպիսկոպոսությունները և ընդհակառակը։ Եվ իրոք, եպիսկոպոսների ցանկը համեմատելով նախարարությունների ցանկի հետ, գտնում ենք, որ բոլոր հզոր տոհմերը ունեին իրենց եկեղեցական ներկայացուցիչները։ Նախարարության տերիտորիալ հարաբերությունը, որ մենք քննեցինք վերը, նրանց համեմատական հզորության ամենալավ չափանիշն է։ Աննշան են հատկապես այն նախարարությունները, որոնց կալվածքները ընկնում են խոշոր նախարարությունների տիրույթների մեջ։ Հենց այդ նախարարություններն էլ, հազվադեպ բացառությամբ, եկեղեցական հիերարխիայում չունեն իրենց ներկայացուցիչները։*

# ՆԱԽԱՐԱՐՈՒԹՅԱՆ ԾԱԳՈՒՄԸ

## ԳԼՈՒԽ XIII

### ՆԱԽՆԱԿԱՆ ԷՔՍԿՈՒՐՍ

Հարցադրումը և նրա լուծման մեթոդները: Դրականը և կոնստրուկտիվը հարցի ուսումնասիրության մեջ: Պետականության սկզբունքը Արևելքում: Տոհմական դաշնակցությունը որպես պետականության հիմք: Σύστημα μεῖζον։ Տոհմական իրավակարգը Իրանում և նրա տարրերը՝ *tauma, viθa, zantu, dahiu-zana*: Տոհմական կյանքը և *habačaris-bazar*, ἐλευθέρα ἀγορά։ Պարթևական ժամանակաշրջանում տոհմական հիմունքների փոխակերպումը ֆեոդալականի: Արշակունյաց կայսրության կառուցվածքը:

*Նախարարության էությունը, որպես պատմական հաստատություն բնորոշելու համար ինքնին շատ կարևոր է հենց հարցադրումը։ Մեր անմիջական նպատակն է ուրվագծել նախարարության վիճակը մեզ զբաղեցնող Հուստինիանոսի ժամանակաշրջանում. հետևաբար նախարարության որակական կողմերի ուսումնասիրությունը ևս պետք է կատարվեր այդ սահմաններում, այսինքն՝ այն չափով, որչափով դա վերաբերում է տվյալ շրջանին։ Բայց արդյոք հնարավո՞ր է իրագործել այդպիսի խնդիր խստապահանջ գիտության տեսակետից։*

*Նշված ժամանակաշրջանում նախարարությունը որոշակի բեկում էր ապրում՝ թևակոխելով զարգացման նոր փուլ։ Մինչդեռ նախարարության, ինչպես և հայ կյանքի յուրաքանչյուր այլ կողմի զարգացում ընթանում էր զիգզագաձև ոչ միայն ժամանակի, այլև տեղի առումով։ Կյանքն ամենևին էլ համասարաչափ չէր ընթանում երկրում։ Այն ժամանակ, երբ երկրի մի մասում որոշակի մի վիճակ դեռ նոր էր վրա հասնում, մյուսում այն անցնում էր որպես արդեն իր դարն ապրած։ Աշխարհագրական բազմազան պայմանները և երկրի քաղաքական ընդհանուր կյանքի հետ ունեցած ոչ նույն աստիճանի առնչությունը ստեղծում էին այնպիսի բնակավայրեր, որոնք միմյանցից տարբերվում էին և՛ մշակութա-*

յին, և կենցաղային առումով. մի մասում շարունակում էին դեռևս գոյություն ունենալ կյանքի հին ձևերը, երբեմն պահպանվում էին շատ հին անցյալի ավանդները, մինչդեռ մյուս տեղերում սոցիալական կառուցվածքը փոփոխվում էր մի քանի անգամ։

Պատմագրությունը անզոր է մեր առջև վերականգնելու սոցիալական պատկերի ամբողջ խայտաբղետությունը։ Դպրությունը երևան եկավ, երբ Արշակունյաց կարգերը սկսել էին երերալ. այդ և դրանից հետո եկող շրջանին վերաբերող հուշարձանները քաղաքական բնույթ չեն կրում։ Ճիշտ է, դրանք պարունակում են նախարարական կենցաղի այս կամ այն կողմն արտացոլող շատ արժեքավոր տվյալներ, բայց, ընդհանուր առմամբ, դրանք բավարար չեն ամբողջական բնութագիրը տալու համար, մանավանդ որ հաճախ դրանց բուն իմաստը չենք հասկանում և ստիպված ենք լինում դիմել կռահումների։ Եղած տեխնիկական տերմինները ճիշտ ստուգաբանելու դեպքում կբացահայտվեին նախարարական անցյալի շատ էական կողմեր։ Փորձել նրանց բուն իմաստը ճշտել բնագրային բաղդատության միջոցով, անհուսալի մի գործ է։ Միևնույն հեղինակի մոտ միևնույն տերմինը գործ է ածվում բոլորովին տարբեր իմաստներով։ Այդպիսի դեպքերում դրանք դիտել որպես ոճական վրիպումներ կամ խմբագրական թերություններ, միշտ չէ, որ կարող է ճիշտ լինել։ Հուշարձանները, իհարկե, ենթարկվել են վերամշակման և միանգամայն հնարավոր է, որ մեկ արտահայտություն փոխարինվել է մյուսով։ Բայց, համենայն դեպս, տերմինների իմաստի անկայունությունը և նրա փոփոխությունները միշտ դրանով բացատրել չի կարելի։ Շատ տերմիններ հանդիսանում են հնագույն ժամանակների սեփականությունը և դարեդար փոխանցվելով, նոր երանգավորում են ստանում փոփոխվող հարաբերությունների համաձայն։ Դպրության շրջանում դրանք արդեն հանդիսանում են բարդ գաղափարներ ներքին հարուստ բովանդակությամբ։ Բացահայտել յուրաքանչյուր տերմինի պատմական շերտավորումները, նշանակում է որոշ դեպքերում ուսումնասիրել նախարարության ծագումնաբանական զարգացումը։

Նախարարական վարչակարգի պատմությանը նվիրված մեզ մատչելի գրական աղբյուրները ամբողջական գաղափար չեն տալիս նրա մասին։ Օգտվելով արևմտաեվրոպական ֆեոդալիզմի նշանավոր ուսումնասիրողի համեմատությունից, կարող ենք ասել, որ նախարարությունը նման է մի հնամենի ծառի. հուշարձանները

լավագույն դեպքում մեր հայացքի առջև բաց են անում միայն այդ ծառի տերևներն ու կատարը, իսկ արմատները թաքնված են, և նրանց հասնելու համար պետք է փորել հողը[1]։ Այդպիսի նպատակի համար զուտ բանասիրական մեթոդը, որ հիմնված է բնագրերի ուսումնասիրության և բաղդատության վրա, բավարար լինել չի կարող և ցանկալի արդյունքներ չի տա։ Անհրաժեշտ է ուղղություն տվող մի կոնցեպցիա, որը մեզ բերեր և կանգնեցներ ծառի թաքնված արմատների հետքերի վրա։ Եվ որպեսզի այդ կոնցեպցիան գիտականորեն ընդունելի լինի, ապա այն պետք է վերցված լինի պատմական այն միջավայրից, որի մեջ գտնվում էին հայերը։

Նախարարությունը սոցիալ-քաղաքական մի հաստատություն է, որի արմատները պետք է փնտրել իրանական պետությունների սոցիալ-քաղաքական ընդհանուր պայմանների մեջ։ Հայաստանի կյանքը զարգացել է այդ պայմաններում և այն պետք է որ ձևավորվեր նույն այն պետական-իրավական հասկացությունների և չափանիշների ազդեցության տակ, որոնք գոյություն ունեին Իրանում։ Բնութագրելով իրանական պետականությունը նրա հիմնադրման ժամանակ, մենք ձեռք կբերենք մի հենարան, որը մեզ հնարավորություն կտա ի մի բերել նախարարությանը վերաբերող ցաքուցրիվ նյութերը և դրանցից ստեղծել ամբողջական մի ինչ-որ բան։

Պետականությունը, որպես իրավական համակարգ, Արևելքում այլ կերպ է հասկացվել և կազմակերպվել, քան Արևմուտքում։ Եթե Արևմուտքում պետական գաղափարի զարգացման մեջ առավել նշանակություն են ունեցել քաղաքային կազմակերպությունները, ապա Արևելքում նույնպիսի նշանակություն են ունեցել տոհմական միությունները։ Քաջատեղյակ գիտնականների կարծիքով հռոմեական պետությունը հանդիսանում է քաղաքների միություն, իսկ պարսկական պետությունը մարմնավորում է տոհմական քաղաքական միավորման բարձրագույն ձևը[2]։

[1] Montesquieu, *Esprit des lois*, liv. 30, ch. 1.

[2] «Das Römische Reich ist zu denken als aus Städte bestehend, welche der Kaiser beherscht» ասում է անտիկ աշխարհի քաղաքագետներից մեկը, Kuhn, *Die Verfassung des Romischen Reiches, Vorwort,* p. IX. Այս

*Իրանի պետական կյանքի հետագա զարգացման մեջ տոհմական հարաբերությունները շարունակում էին գոյություն ունենալ իբրև հասարակական կենցաղի հիմնական մակարդ՝ անկախ գերագույն իշխանությունից, որը մի հարստությունից մյուս հարստությանն էր անցնում։ Պատմության ասպարեզ իջնելու ժամանակ պարսիկները բաղկացած էին բազմատեսակ ցեղերից. նրանց հարևան մարերը նույնպես բաղկացած էին բազմաթիվ զանազան ցեղերից։ Անցնելով մարական ցեղերի գլուխ՝ մար Դեյոկը, խորտակեց ասորեստանցիների տիրապետությունը, իսկ Կյուրոսը համախմբելով պարսկական բաժան-բաժան ցեղերը, առաջնորդեց նրանց մարերի դեմ և սկիզբ դրեց Աքեմենյանների տիրապետությանը։ Մակեդոնացի աշխարհակալը իր հերթին տապալեց Աքեմենյանների իշխանությունը, և նրա հաջորդները իշխեցին այնքան ժամանակ, մինչև որ ստիպված եղան նահանջել պարթևական ցեղից սերված ավելի ահեղ տիրակալների առջև։*

*Այս բոլոր հարստությունների փոփոխությունների ժամանակ իրանական պետությունը հանդես էր գալիս որպես ցեղերի լայն միություն՝* σύστημα μεῖζον, *որոնք միավորվել էին կամավոր կերպով, իսկ մասամբ էլ բռնի ուժով։ Միության գլուխ կանգնած էր առավել սերտ համախմբված և ավելի լավ կազմակերպված տոհմը։ Այդպիսին էր Պասարգադների տոհմը, որից ծագում էին Աքեմենյանները։ Վերջիններս միապետության վրա նայում էին ինչպես իրենց տոհմի սեփականություն կամ* tauma։ *Դարեհը այլ կերպ չի խոսում, քան տոհմի անունից։ Նրա հաճախակի արած հայտարարություններից երևում է, որ նրա գործունեության հիմքում ընկած էին գերդաստանի, տոհմի շահերը*[1]։

---

*կողմից Իրանին քաջատեղյակ Շպիգելը պնդում է՝* «die Verfassung der alten Perser und des alten Irans überhaupt eine Stammesverfassung war». Spiegel, *Uber die Iranische Stammverfassung*. Abh. d. Bayer. Ak. München. 1855, p. 685.

[1] Weisbach, *Keilinsch.* I § 12. *Դարեհն ասում է.* χšatram tya Gaumata hya Magus adinā... amāχam taumāyā, *այսինքն՝ այն թագավորությունը, որ Գաումատա մոգը խլեց Կամբիսեսից, վաղուց ի վեր պատկանում էր մեր տոհմին, կամ* § 14, χšatram tya hacā amāχam taumāyā parābartam, *այսինքն՝ այն թագավորությունը, որ խլվեց մեր տոհմից, ես կրկին վերադարձնեցի. Դարեհը իր գործունեությունը բնորոշում է նրանով, որ ինքը չար չի եղել, ստախոս չի եղել, բռնադատող չի եղել, այլ բարեհաճ է եղել նրանց նկատմամբ, ովքեր օգնել են իր* viϑ-*ին և*

Աքեմենյան տոհմի գերիշխանության համար պայքարն սկզբում ընթանում էր մարական մոգերի, իսկ հետո նաև ուրիշ ցեղերի դեմ, որոնք ձգտում էին անջատվել։ Համառ պայքարի շնորհիվ Աքեմենյաններին հաջողվեց համախմբել ցեղերը և ստեղծել միասնական մեծ միություն, σύστημα μεῖζον, ինչպես արտահայտվում են անցյալի հեղինակները[1]։

Պարսիկների իշխանությունն ընդունում են մի քանի տասնյակ այլացեղ երկրներ. դրանք կոչվում էին dahiu, իսկ նրանց պետերը՝ dahiu-pati. Dahiu-ն սանսկրիտ dasi-ի՝ թշնամի և ստրուկ բառի իրանական ձևն է և նշանակում է թշնամիների կամ ստրուկների երկիր՝ բնորոշ մի դարձվածք, որ ճշտորեն արտահայտում է տիրապետող տոհմի վերաբերմունքը ուրիշ ցեղերի նկատմամբ։ Dahiu-ն իրենից ներկայացնում էր ավելի կամ պակաս միատարր էթնիկական խմբակցություն, այսպես կոչված՝ zana։ Արձանագրությունների մեջ պարսից թագավորը կոչվում է χšaya-θia dahiunam vispazanānām, կամ paruv zanānām[2], այսինքն՝ dahiu զանազան և բազմաթիվ zana-ներով, ցեղերով։ Zana-ն այն հասկացության էթնիկական արտահայտությունն է, որին համապատասխանում է տերիտորիալ dahiu-ն։

Ցեղերի կամ dahiu-ների կախվածությունն արտահայտվում էր նրանով, որ նրանք որոշակի հարկ՝ bajim abaranta էին վճարում։ Որպես մարզային միավոր կամ հարկատու շրջան, dahiu-ն կոչվում էր šatra, իսկ պետը՝ šatrapa կամ šatra-pati, այլ խոսքով, այն, ինչ որ տոհմական իշխանության տեսակետից համարվում էր dahiu, քաղաքացիական վարչական բաժանման տեսակետից համարվում էր šatra։ Այս երկու միավորները իրենց

---

ընդհակառակն՝ խստորեն պատժել է նրանց, ովքեր թշնամաբար են վերաբերվել իր viθ-ին. § 62, naiy arika āham, naiy draujana āham, naiy zurakara āham... hya hamataχšatā namā viθiyā avam ubartam abaram և այլն։

[1] Պարսիկները իրենց նստավայրը Շոշ փոխադրեցին նրա համար, որպեսզի շոշեցիները այլևս անջատման մասին չմտածեին և մնային մեծ միության կազմի մեջ և այնպես չապրեին, ինչպես հերոսական ժամանակներում։ τὸ μηδέποτε καθ' ἑαυτήν τὴν Σουσίδα πραγμάτων μεγάλων ἐπήβολον γεγονέναι, ἀλλ' αεὶ ὑφ' ἑτέροις ὑπάρξαι καὶ μέρει τετάχθαι συστήματος μείζονος, πλὴν εἰ ἄρα τὸ πάλαιον τὸ κατὰ τοὺς ἥρωας. Str. p. 728 = Teub. p. 1014.

[2] Weisbach, *Keilinsch.* pp. 44, 40, 42.

*մեծությամբ միշտ չէ, որ հավասար էին իրար, երբեմն մի քանի* dahiu *կազմում էին մեկ* šatra*։ Աքեմենյանների օրոք* dahiu-*ների թիվը հասնում էր 23—28-ի, իսկ Դարեհի կատարած բաժանումով ամբողջ կայսրությունը բաժանվել էր 20 սատրապություննների։ Ըստ իրենց ուժի և ծավալի* dahiu-*ները տարբերվում էին միմյանցից։ Դրանցից մի քանիսը ինքնուրույն թագավորություններ էին. նրանց պետերը կոչվում էին* χšayaϑia=šah, *և նրանց նկատմամբ պարսից թագավորը* χšayaϑiānām χšayaϑia *էր, այսինքն՝* šahān šah. Dahiu *էին Պարսկաստանը, Մարաստանը, Պարթևաստանը, Հայաստանը, Բաբելոնը և այլն։*

*Տոհմային այն բարձրագույն մեծությունը, որ իբրև ինքնուրույն միավոր մտնում էր կայսրության կազմի մեջ,* dahiu-*ն կամ* zana-*ն էր։* Zana-*ն ուներ իր ներքին կազմակերպությունը. սա բաժանվում էր առանձին տոհմերի, իսկ վերջիններս էլ իրենց հերթին ստորաբաժանվում էին ավելի մանր խմբերի։ Այսպես, օրինակ, պարսիկները և մարերը, որոնք կազմում էին մեկ* dahiu, *բաղկացած էին. առաջինները՝ տասը, իսկ վերջինները՝ վեց տոհմերից*[1]*։ Պարսից տասը տոհմերից մեկը Պասարգադներն էին, իսկ սրանց ստորաբաժանումներից մեկը՝ Աքեմենյանները։ Հույն պատմագիրը Պասարգադներին կոչում է* γένος, *իսկ Աքեմենյաններին՝* φρητρη*։ Դարեհի արձանագրությունների մեջ Աքեմենյանների ընտանիքը նշվում է* tauma *բառով, ուրեմն՝* tauma-*ն որպես սոցիալական հասկացություն հավասարազոր է* φρήτρη-*ին։ Սոցիալական խմբակցության հետևյալ աստիճանը, որ համապատասխանում էր հունական* γένος-*ին,* zantu-*ն էր։ Մարական տոհմերից մեկը կոչվում էր* ἀριζάντοι, *այսինքն՝ ազնվական* zantu, *տոհմ, որից կարելի է եզրակացնել, որ* zantu-*ն հենց ութ խմբերից յուրաքանչյուրի կամ* γένεα-*ի անվանումն է։*

*Պարսկական տոհմերը նույն աստիճանավորումն ունեցող սոցիալական միավորումներն էին, ինչպես մարական տոհմերը, ուստի և սրանց նկատմամբ էլ կիրառելի է* zantu *անվանումը։*

*Այսպիսով, պարսից ամբողջ ժողովուրդը կազմում էր* zana*:*

---

[1] Herod. I 125, ἔστι δὲ Περσέων συχνὰ γένεα... Πασαργάδαι, Μαράφιοι, Μάσπιοι. τούτων Πασαργάδαι εἰσὶ ἄριστοι. ἐν τοῖσι καὶ Ἀχαιμενίδαι εἰσὶ φρήτρη *և այլն id.* I 101, ἔστι δὲ μήδων τοσάδε γένεα, Βουσαὶ, Παρητακηνοὶ, Στρούχατες, Ἀριζαντοὶ, Βούδιοι, Μάγοι.

Պասարգադները, որպես այդ zana-ի մի տոհմ՝ *zantu* էին, իսկ Աքեմենյանները որպես zantu-ի մեջ մտնող ընտանիքներից մեկը՝ *tauma*։

Արձանագրությունների մեջ մենք հանդիպում ենք նաև *viϑ* և *kāra*, manā taumāyā կամ amaχam taumaya-ի կողքին պատահում են նաև viϑam tyam amāχam, այսինքն՝ մեր tauma-ն և մեր viϑ-ը։ K a r a-ն կիրառվում է ամբողջ ժողովրդի նկատմամբ՝ թե՛ պարսից, թե՛ մարաց, օրինակ՝ kara Parsa hya viϑa-patiy, kara Mada hya viϑa-patiy, այսինքն՝ «viϑ-երով ապրող պարսից ժողովուրդ, viϑ-երով ապրող մարաց ժողովուրդ»[1]։ Այս արտահայտությունից երևում է, որ k a r a-ն բաժանվում էր մի քանի v i ϑ-երի։

Ի՞նչ կապ ունեն այս տերմինները tauma-ի և zana-ի հետ, պարզ չէ. դրանք կարելի է համարել սոցիալական խմբավորման մի միջին օղակ, բայց ավելի հավանական է, որ viϑ-ը tauma էթնիկական հասկացության տերիտորիալ արտահայտություն է, ինչպես որ dahiu-ն zana-ի նույնպիսի համարժեքը։ Ինչ վերաբերում է հատկապես kara-հ զ ո ր բառին, ապա դա ավելի շուտ ռազմական տերմին է և ցույց է տալիս zana-ի ակտիվ, պատերազմի համար պիտանի տարրերը, այստեղից էլ նրա երկրորդ նշանակությունը՝ զ ո ր ք։

Ավեստական գրականության մեջ հաճախ հանդիպում են *nēmana*, *vis zantu*, *dañhu* բառերը որպես արյունակցական կապերով մոտիկ մարդկանց տարբեր սոցիալական միավորումների մի աստիճանակարգ։ Համեմատաբար ավելի ուշ ժամանակների մեկնության համաձայն nēmana-ն բաղկացած էր հինգ զույգ կանանցից և տղամարդկանցից, vis-ը՝ տասնհինգ զույգից, zantu-ն՝ երեսուն, և dañhu-ն՝ հիսուն զույգից։ Խնդիրը թվական տվյալները չեն, որոնք կարող են հասկացվել պայմանական ձևով, կարևորը խմբերի այն հաջորդականությունն է, որ ցույց են տալիս թվերը։ Nemāna-ն համակեցության առաջին աստիճանն է և նշանակում է մեկ հարկի տակ ապրող մարդկանց ընդհանրությունը։ Նման մի քանի nemana-ներ կազմում են vis, մի քանի vis-եր՝ zantu, իսկ մի քանի zantu-ներ՝ danhu կամ ժողովուրդ՝ zana։

---

[1] Weisbach, § 40 և § 18։ Նշենք նաև, որ մարական ամբողջ ժողովուրդը կոչվում էր kara, իսկ Huvaχšatara-ի, այսինքն՝ Կիաքսարի հարստությունը՝ *tauma*։

*Հիշյալ խմբերի անդամները համապատասխանաբար կոչվում էին nmanya, visya, zantuma, dañhuma, իսկ նրանց պետերը՝* nmāno-paiti, vis-paiti, zantu-paiti, dañhu-paiti[1]. *Այստեղ չի հիշվում մեր ծանոթ* tauma-*ն. թվում է, թե այն փոխարինված է* nmāna-*ով, որ Դարեհի արձանագրություններում հայտնի է manya ձևով։ Բայց մենք արդեն ասացինք, որ* tauma-*ն տերիտորիալ* vis-*ի էթնիկական երկվորյակն է, ուստի առավել հավանական է ենթադրել, որ* nmāna-*ն, որպես սոցիալական հասկացություն, վերաբերում է ավելի ուշ ժամանակներին և համապատասխանում է* tauma-*ից անջատված ընտանիքին։*

*Տոհմական տերմիններից մի քանիսը ցույց են տալիս արյունակցությունը* term. gent. *ինչպես tauma, zantu, zana մյուսները՝ տերիտորիայի ընդհանրությունը* term. loci, *ինչպես* nmāna, viϑ, dahiu։ *Այս տերմինների երկու շարքերի միջև եղած համապատասխանությունը պարզելը դժվար է. ժամանակի ընթացքում որոշ տերմիններ դուրս են մղում մյուսներին, տերիտորիալ տերմինը ստանում է էթնիկական[2] երանգավորում և այլն։ Կարևոր է նշել տոհմական կազմակերպության օղակները. նրանցից վերջինը* dahiu-*ն է, որից հետո գալիս է այնպիսի միավորում, որն անհրաժեշտ է գերագույն տիրակալի իշխանության տակ քաղաքական դաշինք և մեկ պետական միասնություն ստեղծելու համար։*

---

[1] *Այս տերմինները հաճախ են հանդիպում ավեստական գրականության մեջ, բայց առանձնապես արժեքավոր է այն մասը, որտեղ այն հարցին, թե որքա՞ն տերեր կան, թվարկվում են չորս պետեր, իսկ հինգերորդն էլ՝ Զրադաշտը* kaya ratavo nmānyō, visyō, zantumō, danbjumo, Zaraϑustro puχto, *Yasna*, XIX, 18։ *Մի ուրիշ անգամ մեջ է բերվում սրանց համանունները՝* nmāno-paiti, vis-paiti, zantu-paiti, danhu-paiti, spanañha, vaedya-paiti. *ib.* IX 27։ *Վերջին բառը, որ նշանակում է կրոնի պետ*=Zaraϑustra.

*tauma զենդ.* taoχman, *սերմ, ծիլ և ազգակցություն, սանսկր.* takman, *հուն.* τέκνον, *երեխա,* τοκεύς, *ծնող։*

*zantu, սանսկր.* jantu, *լատին.* gen(ti)s, *հուն.* γένος, *հայերեն ծին,* jan, zan, *այստեղից էլ* zana, *հայերեն հնա-զանդ։*

*nmāna, հին պարսկ.* manya, man-*ից։*

*viϑ, սանսկր.* veš as, viš, *լատ.* vic-us, *հուն.* οἶκος=ϝοῖκος, *սլավ.* высь։

*danhu, սանսկր.* dasi, *պարսկ.* dēh։

[2] *Օրինակ Դարեհի արձանագրությունների մեջ* viϑ-*ը գործ է ածվում* term. gent. *իմաստով* viϑam tyam amaχam gāϑva avāstāyam, *այսինքն՝ մեր* viϑ-*ը նորից իր տեղը դրի։ Op. cit.* § 14.

*Տոհմի ներքին կյանքի տեսակետից ամենագործուն օղակը պիտի համարել* viθ-*ը։ Որպես արիական ժողովուրդների պատմության և իրավունքի ելակետային պահ համարվում է ոչ թե ընտանիքը, այլ տոհմը*-gens-*ը, որ մարդկային համակեցության սկզբնական ձևը եղավ, և որից առաջացան հետագա ավելի բարդ միավորումները։ Նրանից առաջացավ նաև նահապետական ընտանիքը, երբ տոհմը ավելի մանր խմբերի տարրալուծվեց։ Իրանում այդպիսի ելակետային պահ է, ըստ երևույթին,* viθ-*ը. Դարեհն իր արձանագրություններում հաճախ է հիշատակում* viθ-*ը և պաշտպանում նրա շահերը։ Պարսիկները և մարերը բաժանվում էին ըստ* viθ-*երի,* viθapatiy*։ Թագավորը հայտարարում է, որ վերականգնեց ուզուրպատոր Գաումատայի կողմից ավերված* āyadāna-*ն և նրանից ետ խլեց* abāčaris, gaiθamča mānyamča viθibisča, *որից երևում է, որ թվարկված հաստատությունները նույնպես տեղաբաշխված էին ըստ* viθ-*երի։ Վերջապես աստվածությունները նույնպես կոչվում էին* viθ-*երի անուններով,* bagaibiš viθibiš[1]*։ Այս հանգամանքը շատ կարևոր է, քանի որ* viθ-*ը և մյուս տերմինները, ինչպես դեռ կտեսնենք, հայ նախարարական տերմինոլոգիայի մեջ չափազանց հետաքրքրական վերապրուկներ տվեցին։*

*Պարսիկների տոհմական կյանքի մասին հետաքրքրական տվյալներ կան Քսենոփոնի մոտ։ Ճիշտ է, հույն հեղինակը մի քիչ միտումնավոր է, բայց նրա հաղորդածը հիմնականում ճիշտ է և լավ է լուսաբանում պարսկական կյանքի մի քանի կողմերը։ «Պարսիկները,— ասում է պատմագիրը,— ունեն այսպես կոչված ա զ ա տ հ ր ա պ ա ր ա կ* ἐλευθέρα ἀγορά, *այնտեղ, որտեղ գտնվում են արքայական պալատն ու հասարակական մյուս շենքերը... այն բաժանված է չորս մասի. մեկը երեխաների համար է, մյուսը՝ պատանիների, երրորդը՝ հասուն մարդկանց և վերջինը՝ զինվորական տարիքից դուրս եկածների համար։ Ըստ օրենքի նրանք բոլորը ներկայանում են իրենց տեղերը՝ երեխաները, ինչպես և հասուն մարդիկ՝ վաղ առավոտյան, իսկ ծերունիները՝ ինչպես նրանցից յուրաքանչյուրին հարմար է՝ բացի սահմանված օրերը, երբ նրանք պարտադիր կերպով պետք է գտնվեն այնտեղ։ Իսկ պատանիները թեթև զինված՝ գիշերները շրջագայում են և հսկում*

---

[1] Weisbach, p. *34*։

հասարակական շենքերը։ Բացառություն են կազմում ամուսնացածները, որոնք, այնուամենայնիվ, պարտավոր են ներկայանալ, երբ իրենց կանչում են, և առհասարակ նրանց հաճախակի բացակայությունը չի խրախուսվում։ Այդ մասերից յուրաքանչյուրի վրա կարգված է տասներկուական պետ. չէ՞ որ պարսիկները բաժանվում են տասներկու ֆիլերի կամ ցեղերի։ Երեխաների դաստիարակ կարգվում են ծերերից նրանք, որոնք բոլորից ավելի լավ են դաստիարակում երեխաներին, պատանիների համար հասակավորներից ընտրվում են նրանք, որոնք բոլորից ավելի լավ են դաստիարակում պատանիներին. իսկ հասակավորների համար ընտրում են նրանց, ովքեր բոլորից ավելի լավ են սովորեցնում գործադրել օրենքներն ու բարձրագույն իշխանության կարգադրությունները. ծերունիների համար էլ կային ընտրովի պետեր, որպեսզի սրանք էլ կատարեն իրենց պարտականությունները»։

Պատմագիրը այնուհետև կանգ է առնում պարսիկների դաստիարակչական համակարգի վրա։ «Երեխաներին սովորեցնում էին նետ ու աղեղ գործածել, նիզակ նետել. դրանով զբաղվում էին մինչև 16—17 տարեկանները, որից հետո անցնում էին պատանիների դասը։ Այս վերջինների դաստիարակությունը կայանում էր նրանում, որ նրանք, ինչպես հիշվեց, տասը տարի շարունակ շրջում էին հանրային շենքերի շուրջը և պահակություն անում, որը զարգացնում էր նաև նրանց զգոնությունը։ Ցերեկը նրանք գտնվում էին իրենց պետերի տրամադրության տակ՝ հասարակական կարիքների համար։ Երբ թագավորը որսի էր գնում, երիտասարդների մի մասը ուղեկցում էր նրան, և, բացի այդ, պետերը նրանց օգտագործում էին պահակային ծառայության, ոճրագործներին որոնելու կամ ավազակներին հետապնդելու համար և առհասարակ այն բոլոր դեպքերում, երբ պահանջվում էին ուժ և արագաշարժություն։ Տասը տարի անցնելուց հետո երիտասարդները փոխադրվում էին հասակավորների դասը և այստեղ մնում էին 25 տարի։ Նրանք շարունակում էին կատարել պետերի կողմից իրենց վրա դրված պարտականությունները։ Պատերազմ գնալիս նրանք զինվում էին ոչ թե նետ ու աղեղով, այլ մերձավոր մարտի համար պիտանի զենքերով՝ կրծքին՝ զրահ, ձախ ձեռքին՝ վահան, ինչպես մենք տեսնում ենք նկարներում, իսկ աջ ձեռքին՝ սուր կամ դաշույն։ Հասակավորներից ընտրվում էին պետեր, եթե նրանք արդեն չէին նշանակվել երեխաների դաստիարակներ։

*Քսանհինգ տարի հետո, երբ անցնում էր նրանց հիսուն տարին, նրանք փոխադրվում էին, այսպես կոչված, ծերերի դասը, որոնք իսկապես ծեր էին։ Ծերունիները երբեք իրենց երկրի սահմաններից դուրս պատերազմի չէին գնում, բայց, տանը մնալով, նրանք վարում էին մասնավոր և ընդհանուր բնույթ կրող դատեր, ունեին նույնիսկ մահապատիժ տալու իրավունք. նրանք էին ընտրում նաև բոլոր պաշտոնատար անձանց։ Այն դեպքում, երբ երիտասարդներից կամ հասակավորներից մեկնումեկը մեղանչում էր օրենքի դեմ, այդ մասին համապատասխան ֆիլարքոսները կամ մեկ ուրիշը հայտնում էր, և ծերերը, լսելով մեղադրանքը, դատավճիռ էին կայացնում. դատապարտվածը ամբողջ կյանքում մնում էր պատվազուրկ»։*

*«Պարսիկների հասարակական կարգը ավելի պարզ պատկերացնելու համար,— շարունակում է հեղինակը,— պետք է իմանալ, որ պարսիկների թիվը հասնում էր մինչև 12 միրհադ, այսինքն՝ 120 հազար մարդու. Նրանցից ոչ ոք օրենքով զրկված չէ պատվի և իշխանության հասնելուց, և բոլորին էլ հնարավորություն էր տրվում իրենց երեխաներին ուղարկել հանրային դպրոցները։ Իրականում, սակայն, իրենց երեխաներին այստեղ ուղարկում են միայն ունևորները, որոնք հնարավորություն ունեին կերակրելու իրենց երեխաներին առանց նրանց աշխատանքի, իսկ ով հնարավորություն չուներ, նա չէր ուղարկում։ Հանրային ուսուցիչների մոտ դաստիարակություն ստացածները կարող են մտնել երիտասարդների դասը, իսկ կրթություն չստացածները զրկված էին այդ իրավունքից։ Ճիշտ այդպես էլ՝ ով եղել է երիտասարդների դասում և անցել է օրինական դասընթացը, նրան թույլատրվում է անցնել հասակավոր մարդկանց դասը և ձեռք բերել պատիվ ու պաշտոններ. իսկ եթե մեկը երիտասարդների դասում չի եղել, նա չի կարող անցնել հասակավորների դասը։ Վերջապես նա, ով ավարտում է հասակավորների դասը անբասիր կերպով, նա դառնում է ծերունի»[1]։*

*Քսենոփոնի վկայությամբ նրա հերոսը՝ Կյուրոսը, անցել է բոլոր դասերով։ Պատմագիրը երևի փորձել է նկարագրել պարսկական տեսակետից իդեալական դաստիարակության համակարգը, այդ պատճառով էլ մանրամասնությունների մեջ հնարավոր*

[1] Xen. Cyrop. I, 2։

են չափազանցություններ, բայց ընդհանուր առմամբ նրա պատմածը համապատասխանում է իրականությանը։ Նրա նկարագրության մեջ պատկերված է տոհմական կյանքի հին հաստատություններից մեկը։ Ազատ հրապարակը, ἐλευθέρα ἀγορὰ-ն ոչ այլ ինչ է, քան համայնքի ժողովը, նույն այն հաստատությունը, որ արձանագրությունների մեջ կոչվում է habāčaris և որի համար Դարեհը կռվում էր ինքնակոչ Գաումատայի դեմ։ Habāčaris-ը իր հնչյուններով և բուն նշանակությամբ համընկնում է սանսկրիտ sabhāčara-ին, որ ծագում է sabhā=հավաքույթ և čara=գնալ-ից և նշանակում է ժողով։ Հնդիկների մոտ sabha էր կոչվում այն համայնքների ժողովը, որոնք ապրում էին grama գյուղերում gramani՝ գյուղապետի իշխանության ներքո։ Այդ ժողովները գումարվում էին համայնքի գործերը քննելու, ինչպես նաև զվարճության և միասին ժամանակ անցկացնելու համար։ Ժողովները այնքան մեծ նշանակություն ունեին, որ մարդիկ երբեմն գնահատվում էին ժողովի համար պիտանի լինելու տեսակետից, գնահատվում էր sabheya անձնավորությունը[1]։

Ազատ հրապարակում հավաքվում էին պարսիկների 12 ցեղերի ներկայացուցիչները։ Յուրաքանչյուր ցեղ բաղկացած էր մինչև 10 հազար մարդուց, իսկ բոլոր պարսիկների թիվը 120 հազար էր։ Հարևանցիորեն նկատենք, որ այդ թիվը ապշեցուցիչ կերպով աննշան էր մի ժողովրդի համար, որ այնպես սպառնալից թափահարում էր իր մականը և ապացուցում մեր զարգացրած այն տեսակետը, որ պարսից պետությունը հիմնված էր հենց դաշնակցային սկզբունքի վրա։ Պատմագրի այն վերապահությունը, թե ցեղի ոչ բոլոր անդամներն էին հրապարակ դուրս գալիս, թեև ըստ օրենքի նրանք իրավաբանորեն իրավունք ունեին, այլ միայն ունևորները, ապացուցում է, թե ինչպես տոհմական հին հաստատությունը կորցրել էր իր իսկական բնույթը, և բոլոր անդամների հավասարության վրա հիմնված հաստատությունը դարձել էր դասային շերտավորության և անհավասարության աղբյուր։ Նախկին սովորական ժողովը վերասերվեց յուրատեսակ զինվորական դպրոցի, որը փաստորեն նախատեսված էր հասա-

[1] Sabha բառը պահպանվել է գերմաներենում sippe ձևով, ազգակցության իմաստով. իմաստի փոխանցումը հասկանալի է և ապացուցում է, որ sabha-ն հատկապես ազգակից համայնքների ժողով էր։

*բակության ունէր խավերի համար։ Զքավորները ժամանակ և հնարավորություն չունեին հիշյալ հաստատությունից օգտվելու Զինվորներին ուղղված իր խոսքի մեջ Կյուրոսն ի միջի այլոց ասում է. «Դուք հայրենիքում մեզ հետ հավասար իրավունքներ չունեք, և այդ ոչ թե այն պատճառով, որ մենք ձեզ զրկել ենք դրանից, այլ որովհետև դուք ստիպված եք աշխատել ապրուստի միջոցներ հայթայթելու համար»*[1]*։ Այսպիսով, ազատ հրապարակը կամ* habãčaris*-ը հասարակության շերտավորման առիթ էր դառնում, ստեղծում էր արտոնյալ անձանց դաս և նրանց համար ապահովում էր գերիշխող դեր և բացառիկ իրավունք երկրի կառավարման գործում։ Կյուրոսի 30 հազար զինվորներից միայն հազար հոգի էին պատկանում արտոնյալների կամ, ինչպես նրանք կոչվում էին, հոմոտիմների*[2] *թվին։*

*Քսենոփոնը հավաստացնում է, որ հրապարակում չէր թույլատրվում առևտուր անել։* Habačaris*-ից ծագում է նոր պարսկերեն*

---

[1] Xen. Cyrop. II I ed. Teub. p. 56.

[2] *Կիաքսարի այն հարցին, թե նա որքա՞ն զորք ունի, Կյուրոսը պատասխանում է՝ 30 հազար հոգի, որոնք առաջ էլ ծառայել են ձեզ իբրև վարձկաններ, իսկ մնացածները հոմոտիմներ են, որոնք երբեք դուրս չեն եկել Պարսկաստանից։ Որքա՞ն է նրանց թիվը,— հարցնում է Կիաքսարը,— Այդ թիվը քեզ չի ուրախացնի և քանակի մեջ չէ հարցը, միայն իմացիր, որքան էլ որ սակավաքանակ են այդ, այսպես կոչված, հոմոտիմները* (οἱ ὁμότιμοι καλούμενοι), *նրանք, սակայն իշխում են բոլոր պարսիկների վրա առանց որևէ դժվարության,* Cyp. II, 1 *էջ 52։ Հոմոտիմները այն 1000 հոգին էին, որոնց հավաքել էր Կյուրոսը, երբ երիտասարդներից անցել էր հասակավորների դասը. նրան ընտրել էին զորահրամանատար և թույլ էին տվել, որ իր համար ընտրի* διακοσίους τῶν ὁμοτίμων, *իսկ 200 մարդուց յուրաքանչյուրին իրավունք էր տրված վերցնել չորսական մարդ* ἐκ τῶν ὁμοτίμων, *այսպես ստացվեց 1000 մարդ։ Այնուհետև նրանցից յուրաքանչյուրը իր համար ժողովրդից* ἐκ τοῦ δήμου *ընտրում էր 30-ական մարդ, և կազմվեց 30 հազար հոգուց բաղկացած մի բանակ։* Cyrop. I, 5, p. 31։ *Այստեղ* ὁμότιμοι *հակադրվում են* δήμος*-ին.* ὁμότιμος *է կոչվում այն դասին պատկանող անձնավորությունը, որտեղից ծագում է ընտրողը։ Կյուրոսի կարծիքով բոլոր հազար հոգին էլ* ὁμότιμοι *են, այսինքն՝ հասակավորների դասից են։ Այդ երևում է նաև նրանից, որ հոմոտիմները զինված էին այնպես, ինչպես հասակավոր դասին պատկանողները, այսինքն՝ կրում էին* θώραξ περὶ τὰ στέρνα, γέρρον δὲ εἰς τὴν ἀριστεράν, κόπις δὲ ἢ σάγαρις εἰς τὴν δεξίαν, p. 54, *հմմտ. էջ 7-ի հետ Հունական* ὁμότιμοι *արդյոք թարգմանությունը չէ՞ հայոց լեզվի մեջ պահպանված իրանական համհարզ* harz, arz= ارزن *և արժ-անի-ք, համարժանավոր և համապատվավոր բառի։*

*bāzar*, *շ ո ւ կ ա*, *հայերեն՝ վ ա ճ ա ռ բառը, որից երևում է, որ հին համատառությունը հետագայում այլասերվել է և վերածվել շուկայի՝ ապրանքներ փոխանակելու համար. այլ խոսքով,* habačaris-*ը վերապրել է զարգացման երեք փուլ՝ տոհմական համատառությունից վերածվելով ռազմաազնվականականի և ապա բուրժուականի։* Habačaris-*ը հանգեցրեց հոմոտիմների դասի առաջացմանը, որոնց մեջ թաքնված են ազատ դասային ավագանու սաղմերը։ Այն հրապարակը, որ հավանորեն նրա հանրամատչելի լինելու իմաստով կոչվում էր ազատ, հետագայում դառնում է միայն ազատների սեփականություն։ Միատարր զանգվածի մասնատումը վկայում է, որ արդեն տոհմական կյանքի հիմքերը խարխլվում են, իսկ այդ ուղեկցվում է ֆեոդալականացման պրոցեսների սաղմնավորումով։*

*Ֆեոդալիզմ կոչված երևույթի ուշադիր ուսումնասիրությունը բացահայտում է նրա էության ամբողջ բարդությունը։ Ներկայումս խոսում են ոչ միայն միջնադարյան, այլ նախնադարյան ֆեոդալիզմի մասին, որ առաջ է եկել տոհմական կենցաղի փլատակների վրա։ Սոցիալական հավասարակշռությունը վաղ ժամանակաշրջանում էլ պահպանվում էր համայնական հողատիրության շնորհիվ։ Տիրապետության այդ ձևի խախտումով ծնունդ է առնում տնտեսական անհավասարությունը, որի հետևանքը լինում է քաղաքական իշխանության անհավասարաչափ բաշխումը։ Այսպես են հանդես գալիս ֆեոդալիզմի գլխավոր տարրերը, այսինքն՝ քաղաքական իշխանությանը զուգակցված հողատիրությունը։*

*Ե՞րբ է ավարտվել տոհմական ձևերի անցումը ֆեոդալականի, անհնար է պարզել։ Ոչ միայն ֆեոդալիզմը, այլև հռոմեական իմաստով առնված զուտ պետականության սաղմերը նկատվում են Աքեմենյանների դարաշրջանում։ Առանց հաշվի առնելու էթնիկական խմբերը, որոնց թիվը մոտ 70 էր, առաջին անգամ Աքեմենյանները ամբողջ կայսրությունը բաժանեցին վարչական քսան միավորների, այսպես կոչված սատրապությունների և զինվորական իշխանությունը անջատեցին քաղաքացիականից՝ առաջինը հանձնելով ֆրուրարքոսներին և խիլարքոսներին*[1]*, իսկ երկրորդը՝ սատրապներին։ Եթե տվյալ հարցում առհասարակ թույլատրելի է պարբերացումը, ապա Իրանի սոցիալ-քաղաքական հարաբերու-*

[1] *Cyrop*. VII 6, 1։

թյան պատմության մեջ պարթևական տիրապետության ժամանակաշրջանը պիտի շրջադարձային համարել։ Աքեմենյանների օրոք պետականությունը հիմնված էր տոհմական ձևերի դաշինքի վրա։ Հետևյալ՝ մակեդոնա-սելևկյան դարաշրջանում պետականության սկզբունքը սկսեց տիրապետող դառնալ իհարկե ոչ առանց արևմտյան նվաճողների որոշ ազդեցության։ Պարթևների հզորացումով, որոնք, իրանական մյուս ցեղերի նման, այն ժամանակ գտնըվում էին տոհմական պայմաններում, կազմավորվող պետականությունը բախվում էր տոհմական սկզբունքին։ Պարթևական տոհմային ավանդույթները սելևկյանների պետական միջավայրում բեկբեկվում և ֆեոդալիզմի բնույթ են ստանում։ Ֆեոդալականացման պրոցեսը արտահայտվում էր նրանով, որ պարթևները դարձան հոմոտիմներ՝ ամբողջ Իրանի նկատմամբ գրավելով զինվորական դասի դիրք։

Պարթևների, իբրև առանձին էթնիկական խմբի, ներքին կյանքի զարգացումը պետք է հանգեցներ միևնույն հետևանքների, այսինքն՝ նրանց մոտ էլ հասարակությունը պետք է տրոհվեր ճիշտ այնպես, ինչպես պարսիկների մոտ։

Պարթևստանում բնակվում էին իրանական ընտանիքի զանազան ցեղեր։ Արշակունյաց թագավորական տոհմը թեև կոչվում է պարթևական, բայց ծագել է ոչ թե պարթևներից, այլ նրանց հարևան ցեղերից՝ դ ա յ ե ր ի ց։ Դայերը parthau երկրի ծայրեզրը քըշված իրանցիների վաչկատուն տարրերն էին և հնարավոր է, որ ազգակից էին այն նույնանուն նոմադներին, որոնց մասին հիշատակում է Հերոդոտը[1]։ Սկզբնական շրջանում նրանք ապրում էին Իրանի սարահարթում, մարդերի հարևանությամբ, հետո, շարժվելով դեպի արևելք՝ հայտնվում են Իրանի ծայրամասում՝ այժմյան Թուրքեստանի տափաստաններում։ Դայերը տարբեր ցեղերի[2] խառնուրդ էին, նոր նվաճողները՝ հանձին Արշակի, ծագում էին ապարնիների ցեղից։ Գ դարի կեսին այդ ցեղերի միջև առաջ եկած ներքին երկպառակությունների հետևանքով ապարնիները ստիպված

[1] Herod. *I 125*։

[2] Str. XI, 511=Teub. 718 τῶν Δαῶν οἱ μὲν προσαγορεύονται Ἄπαρνοι οἱ δὲ Ξάνθιοι, οἱ δὲ Πίσσουροι, նաև p. 508։ *Առաջին անվանումը* Tomašek-ը *համարում է ավեստական* aperenāyuka, *հին պարսկերեն* *aparenayu, a+*parena*=*թերի (նոր պարսկերեն* burnā, *պալ.* пъл-н*) տհաս, անչափահաս իմաստով*։ Paul. Wiss, Encyc, v. Ἄπαρνοι.

եղան լքելու իրենց բնակավայրը։ Նրանք հարձակվեցին հարևան Պարթևստանի վրա և նվաճեցին այն։ Այսպիսով, Արշակունիները Պարթևստանի նկատմամբ իսկապես համարվում են նվաճողներ։ Ամրացնելով իրենց դիրքը՝ հարյուր տարի հետո, Բ դարի կեսին նրանք քաղաքական ասպարեզ ելան պ ա ր թ և ա կ ա ն հ ա ր ս տ ու թ յ ու ն անվան տակ։

Այժմ այլևս որևէ կասկած չկա այն մասին, որ ոչ միայն պարթևները, այլև դայական ցեղերը մտնում էին իրանական ընտանիքի մեջ։ Աքեմենյան արձանագրությունների մեջ Պարթևստանը ինքնուրույն dahiu է։ Նրա տոհմական ներքին կազմակերպության մասին ոչինչ հայտնի չէ. մեզ հատուկտոր տեղեկություններ են հասել թագավորական ժամանակվա հասարակական կարգերի մասին[1]։ Թագավորին կից գոյություն ուներ ինչ-որ կոլեգիալ մարմին, խորհուրդ, որ կոչվում էր ordo probulorum։ Նրա անդամներին էին հանձնվում զինվորական և քաղաքացիական պաշտոնները[2]։ Իր նշանակությամբ այս խորհուրդը հիշեցնում է հոմոտիմներին, ավելի ճիշտ, հասակավորների դասը, որ գոյություն ուներ պարսիկների մոտ. չէ որ նրանք էլ էին իշխող դաս և հանրային պաշտոններ գրավելու բացառիկ իրավունք ունեին։ Ըստ որոշ վկայությունների պարթևների մոտ կար դրա նման երկու հաստատություն. մեկը բաղկացած էր թագավորական տան ազգականներից, մյուսը՝ իմաստուններից և մոգերից։ Այդ երկու խորհուրդների համաձայնությամբ էլ նշանակվում էին թագավորները[3]։ Պատմագիրները հաճախ հիշատակում են պարթևների ծերակույտի մասին, որից կախված էր թագավորների բախտը[4]։ Սենատ ասելով, ըստ երևույ-

---

[1] Ստրաբոնի կորած աշխատության՝ τὰ ἱστορικὰ ὑπομνήματα-ի վեցերորդ գիրքը ամբողջովին նվիրված է եղել պարթևների կյանքի քաղաքական կազմակերպության նկարագրությանը. περὶ τῶν Παρθικῶν νομίμων, որի մասին վկայում է ինքը՝ հեղինակը, XI 516=Teub. 794։ Այդ արժեքավոր գործից նույնիսկ քաղվածքներ չեն պահպանվել։

[2] Iust. *41, 2,* proximus maiestati regum ipsorum probulorum ordo est; ex hoc duces in bello, ex hoc in pace rectores habent.

[3] Str. XI 9, p. 724, τῶν Παρθυαίων συνέδριόν φησι εἶναι Ποσειδώνιος διττόν, τὸ μὲν συγγενῶν τὸ δὲ σοφῶν καὶ μάγων, ἐξ ὧν ἀμφοῖν τοὺς βασιλεῖς καθίστασθαι.

[4] Iust. 41, 4. Mithridates... propter crudelitatem a *senatu* parthico regno pellitur. *ib.* cap. 5, Phrahates... in exilium a *populo* suo pellitur.

թին, համալրվում էին այդ մարմինները։ Եթե նրանցից առաջինը համապատասխանում է պարսիկների հասակավորների դասին, ապա երկրորդը՝ ծերերի դասին։ Երկու հիմնարկներն էլ, անկասկած, առաջացել են տոհմական շրջանում և հանդիսանում են նախնադարյան հաստատությունների հետագա զարգացումը։ Նման հաստատությունների գոյությունը պարթևական հասարակության մեջ տեղի ունեցած շերտավորման ամենաբնորոշ հատկանիշն է։ Մենք գիտենք, որ նրանց մոտ հասարակությունը տրոհվում էր ազատների և ստրուկների։ Վերջիններիս բանակը մշտապես աճում էր այն բանի հետևանքով, որ պարթևները սովորություն չունեին ազատ արձակելու իրենց ստրուկներին։ Եվ քանի որ ազատները թվով քիչ էին, ապա զորքի գերակշռող մասը բաղկացած էր ստրուկներից։ Ինչպես ազատներին, ստրուկներին ևս վարժեցնում էին նետաձգության և ձիավարության։ Որքան ազատը հարուստ էր, այնքան շատ հեծյալ էր տալիս թագավորին. այսպես, Անտոնիոսի դեմ պատերազմելու ժամանակ 400 ազատներ նրա դեմ հանեցին 50 հազար հեծելազոր։ Պարթևական բարքերի բնորոշ կողմը ձի հեծնելու մեծ սերն էր. նրանք գրեթե ձիուց չէին իջնում. ոչ միայն կռվում էին, այլև ուտում ու հանգստանում էին ձիու վրա. հանրային գործերը նույնպես վարում էին ձի հեծած. առևտուր էին անում, խորհրդակցում էին ձիերի վրա։ Ազատները ստրուկներից արտաքուստ հենց նրանով էին տարբերվում, որ նրանք ման էին գալիս ձիով, իսկ ստրուկները՝ ոտքով[1]։

---

Այստեղ populo, ինչպես և senatu տակով հասկացվում է *ordo probulorum*։ Հուստինոսի ձեռագրերում կարդացվում է *ordo populorum. propulorum* ընթերցումն առաջարկել է Գուտշմիդը (Geschichte Irans, p. 57, not. 3) և նա ընդունված ու մտցված է Տեյբների նոր հրատարակության բնագրի մեջ։ Դեռևս de Saint-Croix-ը կարծում էր, որ բնագիրը ճիշտ չէ և առաջարկում էր կարդալ *optimatum, Mémoires sur les Parthes,* Acad. des Inscr. t. 50, p. 60, not. y։ Նկատի ունենալով Հուստինոսի վերոհիշյալ տեղը, որտեղ populo-ն անկասկած համազոր է վիճելի ordo-ին, հազիվ թե կարիք կա կոնյուկտուրայի կամ թե չէ, պետք է ուղղել և հիշյալ populon-ն ու դարձնել *probulis*։

[1] Iust. 42, 2, Exercitum non, ut aliae gentes, liberorum, sed maiorem partem servitiorum habent, quorum vulgus nulli manumittendi potestate permissa ac per hoc omnibus servis nascentibus in dies crescit. Hos pari ac liberos suos cura et equitare et sagittare magna industria docent. Locupletissimus ut quisque est, ita plures in bella equites regi suo praebet. Denique Antonio bellum Parthis inferenti cum L milia equitum occurissent, soli

կյանքը ձիու վրա անցկացնելը, որ բնորոշ է վաչկատուն ժողովուրդների կենցաղին. ներկա դեպքում պարթևների, որպես վաչկատունների, անցյալի ժառանգությունն է։ Քաղաքական նոր պայմաններում ձի հեծնելու բնածին հակումը պարթևներից ստեղծեց հիանալի ռազմիկների մի դաս, իսկ այդ հանգամանքը անդրադարձավ նրանց պետական քաղաքականության վրա։ Պարթևների ռազմական սովորությունների նշանակությունը պետք է հաշվի առնել այն պատճառները բացատրելիս, որոնք պետությունը տարան դեպի ֆեոդալականացում։

Պարթևների կայսրությունը, որ ընկած էր Կասպից և Վրկանա ծովերի միջև, ըստ Պլինիոսի կազմված էր 18 թագավորություններից[1]։ Նրանցից տասնմեկը կոչվում էին superiora և տարածվում էին Հայաստանի սահմաններից մինչև սկյութացիների երկիրը, մնացած յոթը՝ regna inferiora։ Պատմիչը նրանց անունները չի տալիս։ Ենթադրվում է, որ դրանք այն նահանգներն են, որոնք հիշատակված են Իսիդոր Քարակսացու ուղեցույցում[2]։ Իսիդորի նկարագրած շրջանները ընդգրկում են Պարթևստանը, Մարաստանը, Ասորեստանը և Միջագետքը իրենց ստորաբաժանումներով։ Եթե 18 թագավորությունները գտնվում էին այս երկրների սահմաններում, ապա, համենայն դեպս, դրանք պետք է համարել պարթևական տիրույթներ՝ par excellence։ Ծայրամասերում ընկած էին. հյուսիսում՝ Ատրպատականն ու Հայաստանը, հարավում՝ Պարսկաստան-Կարմանիան, արևմուտքում՝ Ադիաբենը և Օսրոյենեն, և արևելքում՝ Բակտրիան Սոգդիանայի հետ։ Սելևկյանների դեմ սկսված խմորումների շրջանում այս երկրներից մի քանիսը պարթևների հետ միաժամանակ, մյուսները, դեռևս նրանցից առաջ, անջատվեցին և կազմեցին անկախ թագավորություններ։ Որպես այդպիսին, դրանք հետագայում մտան Պարթևական կայսրության մեջ։ Իր քաղաքական

CCCC liberi fuere. *ib.* 3. Equis omni tempore vectantur; illis bella, illis convivia, illis publica ac privata officia obeunt; super illos ire, consistere, mercari, colloqui. Hoc denique discrimen inter servos liberosque est, quod servi pedibus, liberi non nisi equis incedunt.*ib.* c. III.

[1] Plin. *Nat. hist.* VI 29, regna Parthorum duodeviginti sunt omnia. ըստ Ամմիանոսի Սասանյան կայսրությունը ևս 18 խոշոր նահանգ ուներ, Amm. Marc. XXIII 6, 14. Արդյո՞ք այս պատմական զուգադիպություն է, թե պատմագիրը ընդօրինակել է Պլինիոսից։

[2] Isidor. Σταθμοί πάρθικοι. Mül. Geog. Gr. I 250.

վիճակով այդ հողերի ծայրամասային շերտը տարբերվում էր կենտրոնական տիրույթներից։

Արշակունիները իրենց նվաճումները դիտում էին իբրև իրենց տոհմի սեփականություն, ուստի ձգտում էին խլել իրենցից կախում ունեցող թագավորական գահերը և բաժանել իրենց ազգականների միջև։ Նրանք հասան այն բանին, որ վերը թվարկված երկրներում տեղական թագավորական հարստությունները փոխարինվեցին Արշակունիների հարստությամբ։ Արշակունիների երկրորդական ժառանգները շատ շատ էին ընտելանում այն երկրներին, որտեղ բնակություն էին հաստատում և կենտրոնական իշխանության հանդեպ այնպիսի թշնամական դիրք էին բռնում, ինչպես տեղական հարստությունը։ Իշխանության ձգտելու տոհմական հավակնությունն էլ մասամբ խանգարում էր, որպեսզի կազմակերպվի միասնական պետական օրգանիզմ։ Պարթևների կայսրությունը ոչ թե պետություն էր, այլ պետական ֆունկցիաներով օժտված փոքր մարմինների ամբողջ համալիր։

Արշակունիների գլխավոր ճյուղը օգտվում էր գերիշխանությունից։ Բաղկացուցիչ թագավորությունների գլուխները կոչվում էին արքաներ, իսկ կենտրոնական իշխանության գլուխը՝ արքայից արքա։ Այս ամպագորգոռ տիտղոսը Աքեմենյաններից ստացած ժառանգությունն է, իսկ Աքեմենյաններն իրենց հերթին այն փոխ էին առել ասորեստանցիներից։ Նկատի ունենալով, որ առաջին Արշակունիները պարզապես կոչվում էին արքաներ, և միայն Միհրդատ Ա-ի ժամանակվանից, երբ լայնորեն ընդարձակվեցին նրանց սահմանները, սկսեցին կրել արքայից արքա տիտղոսը, պետք է ենթադրել, որ խնդիրը միայն Աքեմենյաններին հենց այնպես նմանվելու մեջ չէր, այլ որ այդ տիտղոսը համապատասխանում էր նաև իրերի փաստական վիճակին։ Մուսուլմանական հեղինակների տեղեկությունների համաձայն, որոնք հասնում են մինչև սասանյան ավանդությունները, Արշակունիների գերիշխանությունը ճանաչում էին 90 թագավորներ, 90 երկրների կառավարիչներ[1]։ Ըստ այդ նույն տեղեկությունների Պարթևական կայսրությունը moluk-al-tawaif էր, այսինքն՝ հավաքածու մի պետություն, որ կազմված էր զանազան ժողովուրդների և ցեղերի թագավորություններից։ Այս-

[1] Այս թիվը ուռճացված է, կամ էլ որևէ թյուրիմացության արդյունք։ Սելևկոս Նիկատորի օրոք (312—280) աքեմենյան սատրապությունները բաժանվեցին ավելի

պիսով, Պարթևական կայսրության նկատմամբ ևս կիրառվել է σύστημα μεῖζον արտահայտությունը։ Նա նույնքան մեծ դաշնակցություն էր, ինչպես Աքեմենյանների ժամանակ, փոխվել էին միայն դաշնակցության բաղկացուցիչ միավորները։ Այդ դաշնակցությունը իր գոյությունը պահպանում էր նախկին հիմքի վրա. մոլուքների կամ փոքր արքայիկների փաստական կախումը արտահայտվում էր այն պարտավորությունների կատարումով, որոնք պարթևներից առաջ էլ կազմում էին իրանական պետությունների հիմքը, այսինքն՝ հարկ վճարել և զինվորական օգնություն ցույց տալ[1]։ Այս պարտավորությունների մեջ պետական խնդիրներն ու ֆունկցիաները պարզեցված են մինչև minimum։ Ամբողջից մասերի այսպիսի բնույթ կրող կախման մեջ է հենց վասալականության էությունը, որը ֆեոդալական վարչակարգի ամենաէական տարբերություններից մեկն է։

Նման մեխանիզմի դեպքում պետությունը, ինչպես երևում է, չէր կարող կյանքը ընդգրկել խորը կերպով։ Այն ժամանակվա ըմբռնումով իշխանությունը ձեռք էր բերվում երկու ձևով՝ նվաճելու կամ ծննդյան իրավունքով[2]։ Առաջինի դեպքում իշխանությունը իր դրսևորումներով սահմանափակվում էր պետականության հիշյալ ձևերի նեղ շրջանակներով. իսկ արյան իրավունքի գերադասության վրա հիմնված իշխանությունն ընդգրկում էր հասարակական կյանքի մնացած բոլոր ճյուղերն ու կողմերը և գործում էր տոհմական կազմակերպության ձևով։ Արյան իրավունքը, որպես հասարակության հիմք, և նրանից բխող իրավահարաբերությունները աչքի են ընկնում արտակարգ կայունությամբ։ Այդ մեզ ուղղություն է տալիս լուծելու մեր առջև դրված խնդիրը՝ պարզելու Հայաստանի սոցիալական կացութաձևի հիմքերը։

---

մանր միավորների՝ մինչև 72, իսկ Պարթևստանը բաղկացած էր 18 շրջաններից։ Ուրեմն 90 թիվը կազմվել է 72+18-ից։

1 Ըստ Tabari-ի, բացի դրանից, բոլոր թագավորները մեծարանքի իրենց պարտքն էին մատուցում արքային որպես նրա ազնվական ծագման համար։ Նրանք ընդունում էին նրա գերիշխանությունը, նամակների մեջ նրա անունը դրվում էր առաջին տեղում։ Արքային արքան, այնուամենայնիվ, իրավունք չուներ մոլուքներից ոչ մեկին իշխանություն շնորհել կամ դրանից զրկել։

2 Հմմտ. Քսենոփոնի խոսքերը Կյուրոսի մասին. διήνεγκε τῶν ἄλλων βασιλέων καὶ τῶν πατρίους ἀρχὰς παρειληφότων καὶ τῶν δι᾽ ἑαυτῶν κτησαμένων, *Cyrop.* I 1 3.

## ԳԼՈՒԽ XIV

# ՆԱԽԱՐԱՐՈՒԹՅԱՆ ՏՈՀՄԱԿԱՆ ՀԻՄՔԵՐԸ

Հայոց պատմության երկու շրջանները՝ Տիգրանյան և Արշակունյաց կամ կոմարքոսների և ստրատեգոսների ժամանակները: Տոհմական կենցաղը առաջին շրջանում: Հայաստանի էթնիկան: Հայ ազգության կազմավորման վճռական պահը: Նրա հիմնական տարրերը: Տոհմական ձևերի վերապրուկները՝ *malχaz, aspet, mamak, tēr* ըստ կազմության a posteriori: Այդ տերմինների ստուգաբանությունը որպես տոհմերի պետերի նշանակիչ արտահայտություններ էթնիկական տարբեր գոտիներում: Տոհմական միջավայրի շերտավորումը և տոհմերի պետերի առանձնանալը: Առանձնացման պրոցեսը Վիրքի և Աղվանքի օրինակով: Երկրի ազնվականացումը Տիգրան Մեծի դարաշրջանում: Վերնախավի աչքի ընկնող ներկայացուցիչները նրա օրոք. չորս բդեշխները՝ Բագադատը, Միթրոբուզանեսը և Մանկայոսը որպես Բագրատունի, Մոկաց<Արծրունի և Մամիկոնյան իշխանների նախապետներ: Խորխոռունիների տունը: Դասայնության ծնունդը ցեղային մյուս խմբերում՝ մարդպետը մարդերի պետ, Մոկ-երի կամ Մոկաց իշխանը կորտիքների կամ Կորճայքի իշխան: Կաճում Ամատունի և Մուրացան տոհմերի մասին: Սյունիք-Սիսականի, Շիրակի և այլ իշխանությունների ցեղային հիմքը: Դասային էվոլյուցիայի ավարտը մինչև Հայաստանում Արշակունիների երևան գալը:

*Հայաստանը, որպես Իրանի քաղաքական-մշակութային աշխարհի բաղկացուցիչ մաս, նրա հետ միասին պետք է անցներ զարգացման նույն ուղին։ Այդ զարգացման հիմնական փուլերը՝ Իրանի պատմության ամենացայտուն պահերը, պետք է անդրադառնային հայկական կյանքի վրա։ Այդ իմաստով Իրանի պատմական կյանքի պարբերացումը կիրառելի է նաև հայկականի նկատմամբ։ Պարթևների տիրապետությունը մի շրջադարձային պահ էր, որ նոր շրջան բացեց ինչպես պարսիկների, այնպես էլ հայերի պատմության մեջ։ Քանի որ պարթևական հարստությունը հաստատվեց Հայաստանում փոքր-ինչ ուշ, քան Պարսկաստանում, այսինքն՝ մեր թվականության սկզբին, ապա այդ ժամանակվանից էլ պետք է հաշվել հայոց պատմության Արշակունյաց ժամանակաշրջանը։*

Արշակունիների երևան գալուց առաջ եղած ժամանակաշրջանը արտաքին տեսակետից կարող ենք անվանել Աքեմենյան, իսկ ներքին տեսակետից՝ Տիգրանյան, այն հարստության անունով, որից ծագում էին Արտաշեսն ու Զարեհը, և նրանց նշանավոր հաջորդ Տիգրան Մեծը[1]։ Սոցիալ-քաղաքական տեսակետից այս ժամանակաշրջանը համապատասխանում է պարսից պատմության նախապարթևական ժամանակաշրջանին և հանդիսանում է գերազանցապես տոհմային հարաբերությունների շրջան։

[1] Ընդհանրապես կարծում են, որ Արշակունիներին նախորդող արքայական հարստությունը Հայաստանում սկսվում է Արտաշեսից և Զարեհից։ Ըստ Ստրաբոնի՝ Անտիոքոս Մեծի (223—187 մ.թ.ա.) այս երկու զորավարները Անտիոքոսի պարտությունից հետո (189 թ.) Հայաստանը բաժանեցին իրար մեջ և իրենց ինքնուրույն թագավորներ հռչակեցին։ Իրականում Հայաստանը երկու մասի էր բաժանված վաղուց, նրանք ըստ էության աքեմենյան շրջանի 13-րդ և 18-րդ սատրապությունները էին, կամ Արևելյան և Արևմտյան Հայաստանները՝ Տիրիբազի և Օրոնտեսի տիրույթները։ Սատրապների հետ միաժամանակ երկու մասերում էլ գոյություն ունեին տեղական թագավորներ։ Քսենոփոնը հիշատակում է մի հայ թագավորի, որը ժամանակակից էր Կյուրոսին և Աստիագեսին. նա ուներ երկու տղա՝ Τιγράνης καὶ Σάβαρις, *Cyr.* III 1, 10։ Պատմագիրը չի տալիս թագավորի անունը. հայ ավանդությունների համաձայն նա կոչվում էր Տիգրան և Կյուրոսի դաշնակիցն էր Աստիագեսի դեմ։ Արտաշեսի հայտնի հաջորդը նույնպես կրում էր այդ անունը՝ Տիգրան Մեծ։ Տարակույս չունենք, որ Արտաշեսի տոհմը հասնում է մինչև Տիգրանի՝ Աստիագեսի ժամանակակցի օրերը։ Զարեհը՝ Ծոփաց թագավորը, նույնպես ծագում էր հին հայկական տոհմից։ Անտիոքոս Մեծը ընդհարում է ունեցել հայոց Քսերքսես թագավորի հետ Արշամաշատում, Ioannes Antioch. *Frag.* 53, Müller, IV 557։ Դեոնես Սելևկոս Ա-ի ժամանակ (312—280 մ.թ.ա.) հիշատակվում է մի հայ թագավոր, որի անունը ընթերցվում է Ardaotes կամ Artaontes, վերջին ձևը նմանվում է 'Αρτάνης-ին, որ Ծոփաց թագավորի՝ Զարեհի հաջորդներից մեկի անունն է։ Ըստ երևույթին այդ անունը ընդունված էր Զարեհի տոհմում։ Քսերքսես թագավորը հավանորեն Զարեհի նախահայրերից էր։ Քսերքսես և Զարիադրես, հայերեն Շավարշ և Զարեհ անունները ընդունված էին Արծրունիների տոհմում, իսկ նրանք, ինչպես կտեսնենք, ծագում էին Ծոփաց աշխարհից։ Անանունի մոտ հիշվում են Զարեհ, Շավաշ և Արմոգ (=Արտոկ, համադրել Αρτάνης-ի հետ) (հմմտ. *Eranšahr*, p. 177)։ Հայաստանի բաժանման սկիզբը շատ հին է, և ինձ թվում է, որ կապ ունի սեպաձև արձանագրությունների մեջ եղած Ուրարտու և Միննի երկու խոշոր թագավորությունների հետ, որոնք ընդհանուր առմամբ համապատասխանում են սատրապների ժամանակվա Արևելյան և Արևմտյան Հայաստաններին։ Ծոփաց թագավորությունը Տիգրանի օրոք ձուլվեց Արտաշեսի թագավորությանը։ Տիգրանի հարստության առաջին նշանավոր ներկայացուցչի անունով և ի պատիվ նշանավոր աշխարհակալ Տիգրան Մեծի Արշակունիներին նախորդող շրջանը կոչում ենք Տիգրանյան։

*Հայոց պատմության հիշյալ երկու ժամանակաշրջանները՝ Տիգրանյան և Արշակունյաց, երկրի ներքին սոցիալական առաջընթացի տեսակետից կարելի է անվանել առաջինը կ ո մ ա ր ք ո ս ն ե ր ի, իսկ երկրորդը՝ ս ա տ ր ա պ ն ե ր ի ժամանակաշրջան։ Հայ գյուղի նկարագրությունը, որ տալիս է Քսենոփոնը տասը հազար հույների նահանջի ժամանակ, մոտավորապես 400 թվականին մ.թ.ա., բավարար չափով բնութագրում է երկրի հասարակական կացութաձևը։ Հայաստանը բաղկացած էր բացառապես գյուղերից, որոնց գլուխ կանգնած էին կառավարիչներ* κωμάρχης *կամ* ἄρχων τῆς κώμης։ *Կոմարքոսները հանդիսանում էին վարչական մարմիններ սատրապի՝ պարսից թագավորի ներկայացուցչի կողքին։ Հույն պատմագրի նկարագրած հայ գյուղի նահապետական պատկերը նկատի առնելով, դժվար չէ կռահել, որ կոմարքոսները գյուղերում բնակվող տոհմերի պետերն էին։ Գյուղերի շուրջը՝ բնորոշ հողե պատնեշ, նախնադարյան տնտեսություն, գետնափոր տներ, որտեղ մարդկանց հետ միասին տեղավորված էին կենդանիները՝ ոչխարներ, այծեր, կովեր և առհասարակ ընտանի կենդանիներ. այս ամենը հանդիսանում է ոչ այլ ինչ, քան տոհմային համակեցության հատկանիշներ։ Գյուղապետը, որ ուղեկցում էր հույներին, հրաժարվում էր այն ամենից, ինչ որ նրան առաջարկում էին օտարերկրացիները, բայց «երբ նա հանդիպում էր իր տոհմակից որևէ մեկին, միշտ վերցնում էր իր մոտ»*[1]*։ Այդպիսի հայրական հոգատարության մեջ չի կարելի չտեսնել տոհմի հորը՝ տոհմապետին հատուկ գծերը։*

*Հարյուրամյակներ հետո՝ հատկապես Հայաստանում Արշա-*

---

[1] *Anab.* IV 5, 9—35, Ὁδὲ μὲν ἄλλο μὲν οὐδὲν ἐδέχετο, ὅπου δέ τινα τῶν συγγενῶν ἴδιοι, πρὸς ἑαυτὸν ἀεὶ ἐλάμβανεν, *ib.* 32։ *Մի գյուղից հույները իրենց հետ առան-տարան բնակիչներին, կոմարքոսին և 17 մտրուկ, որոնք պետք է պարսից թագավորին ուղարկվեին որպես տուրք.* τίνι οἱ ἵπποι τρέφονται· ὁ δὲ ἔλεγεν ὅτι βασιλεῖ δασμός, *Anab.* IV 5, 24—34։ *Ստրաբոնը հաղորդում է, որ հայոց սատրապը ամեն տարի պարսից թագավորին 20 հազար նժույգ էր ուղարկում Միհր աստծո տոնի առթիվ* δισμυρίους πώλους τοῖς Μιθρακίνοις ἔπεμπεν, XI 14, p. 530=744։ *Քսենոփոնը ասում է, որ կոմարքոսից խլած ձին նվիրված էր Արևին,* ἱερὸν εἶναι τοῦ ἡλίου. *Ստրաբոնի տեղեկությունները վերաբերում են ավելի հին ժամանակներին, որովհետև նրա օրոք Հայաստանն անկախ էր և գտնվում էր թագավորի և ոչ թե սատրապի իշխանության տակ։ Եթե մի գյուղը տալիս էր 17 մտրուկ, ապա 20.000 մտրուկը կազմում էր մոտավորապես 1200 կոմարքոսների հարկը։*

կունինների հաստատվելու սկզբնական շրջանում, մեր առջև այլ պատկեր է ներկայանում։ Այդ ժամանակ Հայաստանը բաժանված էր 120 մասի կամ պրեֆեկտուրայի, որոնք կոչվում էին ստրատեգիաներ, նրանց թվում նաև նախկին թագավորություններից մի քանիսը. dividitur in praefecturas, quas strategias vocant, quasdam ex his vel singula regna quondam, barbaris nominibus CXX[1]։ Ճիշտ է, այդ բաժանումների էությունն այնքան էլ պարզ չէ և հայտնի չէ, թե ո՞վ է նրանց ստրատեգիաներ անվանել, և տեղական ինչ տերմինի են նրանք համապատասխանում. այդ հարցին մենք դեռ կանդրադառնանք, բայց համենայն դեպս կասկածից դուրս է, որ strategia-ն զինվորական տերմին է և, իբրև այդպիսին, ցույց է տալիս, որ զինվորական ֆունկցիաները ստրատեգիաների պետերի կամ ստրատեգոսների մյուս բոլոր պարտականություններից ամենահիմնականն են եղել։ Մենք գիտենք, որ հայ նախարարները զինվորական ծառայություն էին տանում և պարտավոր էին առաջին իսկ կոչով իրենց հեծյալ ջոկատի գլուխն անցած՝ ներկայանալ թագավորին, այս իսկ պատճառով հիմք կա ստրատեգիաները համարել իբրև տիրակալ իշխանություններ՝ թեկուզ և նրանց զարգացման սկզբնական շրջանում։

Ստրատեգոսները և կոմարքոսները գանվում էին սոցիալական տարբեր աստիճանների վրա և միմյանցից բաժանված էին չորս հարյուրամյակով։ Նրանք երկրի հասարակական ուժերի աճման պատմության մեջ նշանավորում են երկու կարևոր սահմանագծային պահեր։ Մեր խնդիրն է բացահայտել այն պատմական պրոցեսի էությունը, որ կոմարքոսներից բերեց-հասցրեց ստրատեգոսներին. այլ խոսքով՝ տոհմական շրջանից՝ ֆեոդալականին։

Յուրաքանչյուր ժողովրդի պատմության մեջ տոհմական կեցությունը համարվում է զարգացման նախնական անհրաժեշտ փուլ։ Հայաստանն էթնիկական և աշխարհագրական պայմաններով այդպիսի կացութաձևի համար հատկապես բարենպաստ պայմաններ ուներ։ Գտնվելով մեծ ժողովուրդների տեղաշարժերի խաչմերուկի վրա՝ Հայաստանը բռնում և իր մեջ ներծծում էր բազմաթիվ էթնիկական հոսանքներ և ցեղային շիթեր։ Երկրի պայմանները ձուլման համար բարենպաստ չէին. բարձրաբերձ լեռնաշղթաները,

[1] Plin. *Nat.* hist, VI 10.

ակոսելով երկիրը բոլոր ուղղություններով, կազմել էին հովիտների և կիրճերի մի ցանց, որոնցից յուրաքանչյուրը հանդիսանում էր ցեղային առանձնահատկությունները պահպանելու մեկուսացված ու վերին աստիճանի նպաստավոր միջավայր։ Դրանց առատությունը տանում էր դեպի կյանքի տոհմական ձևը և կանխորոշում նրա պահպանողականությունը։

Հայոց պատմության a priori կերպով ընդունված տոհմական ժամանակաշրջանի մասին փաստական տվյալներ քիչ կան։ Դրանք գլխավորապես հայ հին մատենագրության մեջ պահպանված տերմիններն ու դրանց հետագա վերապրուկներն են, որոնք որոշ գաղափար են տալիս կոմարքաների ժամանակվա սոցիալական կառուցվածքի մասին։

Նախ և առաջ ուշադրություն են գրավում տոհմ-*tauma*, ազն-*zana*, ինչպես և vīθ-ի վերապրուկները՝ *վիս, *վաս ձևով, սե[պուհ], դեհ-*danhiu*, վաճառ-*habačaris*, աշխարհ-*χšaθra*, շահապ-*šaθrapa* և այլ իրանական տերմինները։ Սրանցից մի քանիսը Սասանյանների ժամանակվա փոխառություններ են, մյուսները շատ ավելի հին, որ թերևս գալիս են Աքեմենյանների ժամանակներից։ Վարչական կառուցվածքին վերաբերող բառերի՝ ինչպես աշխարհ կամ շահապ փոխառումը հասկանալի է և բացատրվում է նվաճողների քաղաքական ազդեցությամբ։ Բայց մենք իրավունք ունենք սպասելու, որ ինքնատիպ տոհմական հարաբերությունների հողի վրա առեղծված տոհմական տերմինաբանությունը կրեր զուտ հայկական բնույթ։ Սակայն այստեղ էլ մենք հանդիպում ենք իրանական բառերի, ըստ որում այնպիսի երանգավորումով, որ չի կարելի դրանք համարել հասարակ փոխառություններ։ Նման երևույթներ նկատվում են նաև այլ ծագում ունեցող լեզվական նյութերի մեջ, որոնք հայերին մոտեցնում են Հայաստանը մյուս կողմերից շրջապատող հարևան ժողովուրդներին։ Մեզ զբաղեցնող հարցի համար բնորոշ և կարևոր մի քանի տերմինների դասակարգման և լուսաբանության համար անհրաժեշտ է ծանոթանալ հայ ժողովրդի էթնիկական կազմին։

Առայժմ հնարավոր չէ պեղել Հայաստանի մինչև առաջին բնակեցումը հասնող էթնիկական շերտերը։ Սահմանափակվելով մեզ մատչելի պատմական տեսադաշտով՝ գտնում ենք, որ հայ ազգությունը կազմավորվել է ոչ միայն տարբեր ցեղային, այլև տարբեր էթնիկական տարրերից։ Այն տերիտորիան, որ Աքեմենյանների ժա-

մանակ կոչվեց Հայաստան, բնակեցված էր տարբեր ազգություններով և կազմում էր երկու սատրապություններ՝ պակտիները և հայերը իրենց հարևանների հետ՝ մինչև Սև ծով, կազմում էին 13-րդ սատրապությունը, իսկ մատիենները, սասպեյրները և ալարոդները՝ 18-րդ[1]։ Հայերին արևմուտքում սահմանակից էին կիլիկիացիները, իսկ արևելքում՝ մատիենները, ընդ որում առաջիններից հայերը բաժանվում էին Եփրատի հոսանքով, իսկ մյուսներից՝ հավանորեն Տիգրիսի Ձախ վտակով[2]։ Քանի որ ալարոդները և սասպեյրները մատիենների հետ միասին կազմում էին մեկ սատրապություն, հավանաբար նրանց հարում էին հյուսիս-արևմուտքից։ Քսերքսեսի արշավանքի ժամանակ հայերը փռյուգիացիների հետ միասին գտնվում էին մի դրոշակի տակ, իսկ ալարոդներն ու սասպեյրները՝ մի այլ։ Սահմանակից ժողովուրդներից ամենից ավելի հայտնի են մոսքերը և տիբարենները, մակրոնները և մոսինոյկները, մարերը և կոլխերը, ուտիները և միկերը, որոնք զույգ-զույգ ունեին առանձին հրամանատարներ, իսկ մարերը գտնվում էին հատուկ հրամանատարության տակ[3]։ Տասը հազար հույների նահանջի ժամանակ փասիանների և հեսպերիտների, այսինքն՝ սասպեյրների, ինչպես նաև տաոխների երկիրը արդեն համարվում էր Հայաստան և ի տարբերություն մյուս Հայաստանի, կոչվում էր Արևմտյան։ Մի մասի կառավարիչը կամ սատրապն էր Տիրիբազը, իսկ մյուսինը՝ Օրոնտեսը[4]։ Իսկ հարևան ցեղերը, հատկապես կորդուքները, խալիբները, խալդիները, մակրոնները, կոլխերը, մոսինոյկները, կոյտերը և տիբարենները այդ ժամանակ անկախ էին[5]։ Մեկ հարյուրամյակ հետո, Գավգամելայի ճակատամարտի ժամանակ, Հայաստանում դարձյալ երկու սատրապ կար՝ Օրոնտեսը և Միթրավստեսը, իսկ հարևան մարերը գտնվում էին Ատրոպատեսի հրամանատարության տակ.

---

[1] Herod. *III 93 և 94*։

[2] *ib.* V 49, Κιλικίων δὲ τῶνδε ἔχονται Ἀρμένιοι... Ἀρμενίων δὲ Ματιηνοὶ χώρην τήνδε ἔχοντες. *ib.* 52, οὖρος δὲ Κιλικίης καὶ τῆς Ἀρμενίης ἐστὶ ποταμός... Εὐφρήτης և շար.

[3] *ib.* VII 62—79։

[4] Xen. *Anab.* III 5, 17։ IV 3, 4 և 4, 4, VII 18, 25։

[5] *Anab.* VII 8, 25։

*և նրանց հետ էին կադուսիները, աղվանացիները և սակասինները*[1]։

*Այդ բոլոր ազգությունները մասամբ կամ ամբողջովին բնակություն էին հաստատել այն տերիտորիայի վրա, որը հետագայում զբաղեցնում էր Հայաստանը։ Թվով քանից ավելի, նրանք իրենց արյան մերձավորությամբ կազմում էին մի քանի խմբեր։ Հայերի մասին ասվում է, որ «նրանք զինված էին փռյուգիացիների նման, որովհետև գաղթել էին Փռյուգիայից»։ Հետևապես, սպառազինության նմանությունը կարելի է համարել որպես ազգակցության նշան, և քանի որ ուտիները, միկերը և պարիկանիները զինված էին ինչպես պակտիները, տիբարենները և մակրոնները, իսկ մոսինոյկները՝ ինչպես մոսխերը, ալարոդները և սասպեյրները՝ ինչպես կոլխերը, իսկ մարերը ունեին հատուկ սպառազինություն, ապա այստեղից հետևում է, որ վերոհիշյալ ցեղերը համախմբվում էին պակտիների, մոսխերի և կոլխերի շուրջը՝ չհաշված հայերին և մարերին։ Այդ ցեղերից մի քանիսը անհետացան՝ երկրին ավանդելով իրենց անունը։ Այսպես, օրինակ՝ ասպարեզից իբրև ազգություն հեռացան ալարոդները, սասպեյրները, տաոխները, փասիանները, բայց հիշողությունը նրանց մասին պահպանվեց աշխարհագրական անունների մեջ՝ Այրարատ, Սպեր, Տայք, Բասեան։ Պակտիների անունը պահել է արևելյան Տիգրիսի վրա գտնվող այժմյան Բոհտանը, կա նաև քրդական բոհտու ցեղ։ Պակտիներին ազգակից միկերի, հայկական* Մոկ–քի *մի մասը քաշվեց հյուսիս և բնակություն հաստատեց Կուր և Արաքս գետերի միջև. սրանցից է առաջանում* Մխան–քը՝ *Արցախի գավառներից մեկը և* Մուղանը, *որ հայտնի տափաստանի անունն է։ Հյուսիս քշվեցին նաև կոլ-խերը, մոս-խերը և ուրիշ ազգություններ։ Այդ խմորումները տեղի էին ունենում հայ ազգության ձևավորմանը զուգընթաց։*

*Պատմությունը հիշատակում է նրա կազմավորման վճռական պահերից մեկը։ Դա վերաբերում է Զարեհի և Արտաշեսի շրջանին և արտահայտվել է ամբողջ ժողովրդին մատչելի միասնական լեզվի մշակման մեջ*[2]*։ Հենց նրանց օրոք, ըստ մի արժանահավատ վկայության, նախկինում փոքր Հայաստանը ընդարձակվեց ի հաշիվ հարևան հողերի. մարերից խլեց Կասպիանան, Սավնիտիսը,*

---

[1] Arriani, *Anab.* III 8։

[2] Str. VI p. 528=743, ὥστε πάντας ὁμογλώττους εἶναι.

Թասորոպեդան, իբերներից՝ Պարխադրեսյան նախալեռները (Տայք և Սպեր), Խորզենեն, Գոգարենեն, խալիբներից և մոսինոյկներից՝ Կարենիտիան և Դերքսենեն, կատաոններից՝ Ակիլեսենեն և, վերջապես, ասորիներից՝ Տամորիտիսը[1]։

Հողերի միացման պրոցեսը սկսվեց երկու կենտրոններում՝ Արտաշեսի և Զարեհի տիրույթներում, որոնք առաջացել էին նախկին երկու սատրապություններից։ Այս շարժումը տարածվեց շրջանաձև և Մարաստանի, Վիրքի, Կապադովկիայի ու Ասորիքի կողմից ընդգրկեց հարևան ազգությունների գրաված տարածությունները։ Կատաոնները Կապադովկիայի բնակիչների մի մասն էին։ Ստրաբոնի խոստովանությամբ հին հեղինակները նրանց համարում էին կապադովկիացիներից տարբեր ժողովուրդ, բայց նրա օրոք նրանք լեզվով և սովորույթներով նմանվում էին երկրի մյուս բնակչությանը՝ կորցրած լինելով իրենց ցեղային ինքնատիպությունը[2]։ Իսկ Կապադովկիայի բնակիչները, չնայած իրենց այլազանությանը, հիմնականում հարում էին ասորական աշխարհին. հույները, ի տարբերություն մյուսների, նրանց կոչում էին ասորիներ կամ սպիտակ ասորիներ[3]։ Կապադովկիան, ուրեմն, էթնիկական տեսակետից կապված էր սեմական ընտանիքին։ Այժմ բավականաչափ ապացուցված է, որ իբերական ցեղերն էլ ազգակցություն ունեն սեմական ժողովուրդների հետ[4]։

Այսպիսով, համաձայն Ստրաբոնի այն վկայության, թե հնում ասորիների անունը տարածվում էր Բաբելոնից մինչև Եվքսինյան ծովը, Միջագետքի հարթավայրերից մինչև Սև ծովը տարածված էր ինչ-որ ժամանակ ազգակից էթնիկական մի գոտի[5]։ Մասամբ

---

[1] Str. նույն տեղում։ Տպագրվածի մեջ կարդացվում է Ταρωνῖτις, բայց Քսենոփոնի նկարագրությունից երևում է, որ այդ շրջանը հույների նահանջի ժամանակ (400 թ.) արդեն գտնվում էր հայերի ձեռքին։ Ավելի ճիշտ ընթերցումն է Ταμωρῖτις= Տմորիք։

[2] Str. XII I, p. 533=Teub. 749։

[3] Herod. I 72, οἱ δὲ Καππαδόκαι ὑπὸ Ἑλλήνων Σύριοι οὐνομάζονται, նաև VII 73. Str. XVI 1, p. 737=1027, οἱ γοῦν Καππαδόκες... λευκόσυροι καλοῦνται.

[4] Н. Марръ, *Основныя таблицы къ грамм. древне-грузинского языка съ предварительнымъ сообщеніемъ о родстве грузинского языка съ семитическими.*

[5] Str. VI I, p. 737=1027, δοκεῖ δὲ τὸ τῶν Σύρων ὄνομα διατεῖναι ἀπὸ μὲν τῆς Βαβυλωνίας. . . μέχρι τοῦ Εὐξείνου τὸ παλαιόν.

*հետևելով Ստրաբոնին՝ սարական կամ սեմական աշխարհը անվանենք արամեական։ Մեծ աշխարհագետը, հենվելով հին տեղեկությունների վրա, այդ աշխարհի մեջ մտցնում է նաև հայերին, հակառակ Հերոդոտի, որի կարծիքով հայերը գաղթել են Փռյուգիայից։ Հին հեղինակների մոտ տարակարծություններ կային Հոմերոսի հիշատակած* ἐρέμβοι *ժողովրդի մասին։ Ստրաբոնը կողմնակից է Պոսեյդոնի կարծիքին՝ «թվում է, որ ամենից ավելի լավ,— ասում է աշխարհագետը,— Պոսեյդոնն է բացատրում, ելնելով ժողովուրդների միմյանց հետ ունեցած ազգակցությունից և շփումներից։ Չէ՞ որ հայ, ասորի և արաբ ժողովուրդները իրենց լեզվով, նիստուկացով և դիմագծերով ցեղային մեծ նմանություն են դրսևորում հատկապես այն վայրերում, որտեղ նրանք ապրում են հարևանությամբ։ Հայտնի է, որ Միջագետքը բաղկացած էր այդ երեք ժողովուրդներից, և հենց այստեղ էլ ակնառու կերպով երևան է գալիս նրանց նմանությունը։ Եթե կլիմայական պայմանների շնորհիվ առաջ է գալիս որոշ տարբերություն՝ հատկապես հյուսիսում և հարավում բնակվողների միջև, ինչպես նաև նրանց և նրանց արանքում բնակվողների միջև, ապա ընդհանուր գծերը այնուամենայնիվ գերակշռում են։ Ասորեստանցիները և արիանները նույնպես մոտ են հիշյալ ժողովուրդներին և միմյանց։ Թվում է, թե այդ ժողովուրդների անուններն էլ իրար նման են. նրանց, ում մենք ասորի ենք կոչում, իրենք՝ ասորիները անվանում են հայեր և արամեացիներ, այդ անվանը նման է հայերի, արաբների և էրեմբոսների անունները[1]։ Իր աշխատության վերջում անդրադառնալով նույն*

[1] Str. I 1, p. 53=Teub. 41, τὸ γὰρ τῶν Ἀρμενίων ἔθνος καὶ τὸ τῶν Σύρων καὶ Ἀράβων πολλὴν ὁμοφυλίαν ἐμφαίνει κατά τε τὴν διάλεκτον καὶ τοὺς βίους καὶ τοὺς τῶν σωμάτων χαρακτῆρας, καὶ μάλιστα καθὸ πλησιόχωροί εἰσι. δηλοῖ δ' ἡ Μεσοποταμία ἐκ τῶν τριῶν συνεστῶσα τούτων ἐθνῶν· μάλιστα γὰρ ἐν τούτοις ἡ ὁμοιότης διαφαίνεται. εἰ δέ τις παρὰ τὰ κλίματα γίνεται διαφορὰ τοῖς προσβόρροις ἐπὶ πλέον πρὸς τοὺς μεσημβρινοὺς καὶ τούτοις πρὸς μέσους τοὺς ὅρους, ἀλλ' ἐπικρατεῖ γε τὸ κοινόν. καὶ οἱ Ἀσσύριοι δὲ καὶ οἱ Ἀριανοὶ παραπλησίως πως ἔχουσι καὶ πρὸς τούτους καὶ πρὸς ἀλλήλους. εἰκάζει γε δὴ καὶ τὰς τῶν ἐθνῶν τούτων κατονομασίας ἐμφερεῖς ἀλλήλαις εἶναι. τοὺς γὰρ ὑφ' ἡμῶν Σύρους καλουμένους ὑπ' αὐτῶν τῶν Σύρων Ἀρμενίους, καὶ Ἀραμμαίους καλεῖσθαι· τούτῳ δ' ἐοικέναι τοὺς Ἀρμενίους καὶ τοὺς Ἄραβας καὶ Ἐρεμβούς, τάχα τῶν πάλαι Ἑλλήνων οὕτω καλούντων τοὺς Ἄραβας.

*հարցին, աշխարհագետը նորից կրկնում է այն կարծիքը, որ այդ երեք ժողովուրդները, ապրելով հարևանությամբ, ազգակցություն են դրսևորում և կոչվում են միանման անուններով։ Դրանցից մեկը կոչվում է արմեններ, մյուսը՝ արամեացիներ, իսկ երրորդը՝ արամբներ, կարծես մի ժողովուրդ կլիմայական պայմանների համաձայն բաժանվել է երեքի[1]։*

*Այս արժեքավոր վկայությունից երևում է, որ հին հեղինակները ընդհանրություն էին գտնում հայերի, ասորիների ու արաբների միջև. դա արտահայտվում էր ոչ միայն արտաքինի և նիստուկացի մեջ, այլև լեզվի։ Նրանց նմանությունը զարմանալի էր մանավանդ այն բնակավայրերում, որտեղ նրանք ապրում էին կողք կողքի։ Պոսեյդոնի ստուգաբանական մերձեցումները հիմնված են կյանքի իրական տվյալների, միմյանց հետ համեմատվող ժողովուրդների ընդհանրության և նմանության վրա և ոչ թե հակառակը, այսինքն՝ հեղինակը հօգուտ ստուգաբանության չի խեղաթյուրում իրականությունը։ Այն կտրական հայտարարությունը, թե Պոսեյդոնը իր բացատրություններում ելել է ցեղային ազգակցությունից և շփումներից, շատ կարևոր է[2]։*

*Փռյուգիացիների հետ հայերի ազգակից լինելու մասին եղած վկայության կողքին ունենք նույնպիսի վկայություն նաև հայերի՝ արամեացիների հետ ունեցած ազգակցության վերաբերյալ։ Թե՛ մեկ և թե՛ մյուս վարկածի ճիշտ լինելը կարելի է ապացուցել միայն հայոց լեզվի՝ իր բարդությամբ այդ զարմանալի հուշարձանի վերլուծության միջոցով։ Եթե փռյուգիացի ասելով պետք է հասկանալ հնդեվրոպացիներ, ապա Հերոդոտի խոսքերը արդարանում են։ Հայոց լեզվի հետազոտությունները հնդեվրոպական հնչյունաբանության տեսակետից բացահայտեցին հնդեվրոպական մեծ ընտանիքի հետ հայերի ունեցած ազգակցական կապերը և ճշտեցին նրանց լեզվի տեղը հնդեվրոպական լեզուների արևմտյան ճյուղի մեջ։ Կասկած չկա, որ պատմական մյուս վկայությունների ոգով տարվող ուսումնասիրությունները երևան կհանեն հայերի առնչությունը նաև արամեական ընտանիքին։ Այդ կարգի աշխատանքի հաջողությունը կարելի է ապահովված համարել բառական այն նյութերի հիման վրա, որ առայժմ հաջողվել է առանձնացնել։*

---

[1] Str. XVI p. 784=1094։

[2] *ib. loc. cit.* ἀπὸ τῆς τῶν ἐθνῶν συγγενείας καὶ κοινότητος ἐτυμολογῶν.

*Հայոց լեզվի մեջ եղած արիական և սեմական տարրերի հարաբերակցությունը ցույց տալու համար պետք է ընդունել, որ Հայաստանը նախապես մտնում էր գերազանցապես արամեական տարրեր ունեցող ցեղախմբերի՝* կարդու-խ-ների, մոս-խ-երի, սա-սպեյր-*ների և այլ ցեղային խմբերով բնակեցված գոտու մեջ։ Կիմերների հայտնի արշավանքը է դարում Փոքր Ասիայում առաջ բերեց ժողովուրդների տեղաշարժ։ Փռյուգիական հայերը, որոնք դուրս քշվեցին իրենց սահմաններից, անցան Եփրատը և խուժեցին տեղական արամեական բնակչության մեջ։ Նրա մի մասը մնաց հյուսիսում, մյուսը՝ հարավում, իսկ նվաճված շերտը խառնվեց հաղթողներին*[1]*։ Եկվոր փռյուգիացիների և գերազանցապես արամեական ծագում ունեցող բնիկների ձուլումով ձևավորվեց հայ ազգության միջուկը։*

*Միջուկի երկակի կազմ ունենալու ամենալավ ապացույց է ծառայում հայերի երկու անվանում ունենալը՝* հայ-*hai*, *ինչպես իրենք են իրենց կոչում, և armen*-ius, *ինչպես կոչում են հարևանները։ Մեկը ծագում է եկվորներից, իսկ մյուսը՝ բնիկներից։ Հայ ազգության ծագման պրոցեսը զարմանալի ճշտությամբ ներկայացված է հայ հին ավանդությունների մեջ, որոնք պահպանված են Խորենացու և Անանունի մոտ։ Երկու էպոնիմները՝* H a ï-k Հայ-կ *և* A r a m a n-eak Արամանեակ *կամ* A r m e n-ak Արմենակ, *մարմնավորում են երկու՝ հնդեվրոպական և արամեական տարրերը։ Հենց armēn* արմէն, A r m ĕ n i-k Արմենիք *անվանումը, ըստ Խորենացու, ծագում է Aram-ից և այս հարցում հայ ավանդությունը պաշտպա-*

---

[1] *Այս հիման վրա կարելի է հարց հարուցել մի քանի ժողովուրդների ազգակցության վերաբերյալ, որոնք ապրում են Հայաստանից դեպի հարավ և հյուսիս* Kardu-, Καρδοῦ-χ-οι, Κορδυ-σίων, Γορδυ-ῆνοι *և k'arϑu*, ქართვ-ელი, ქართ'[ვ]-ელი *(Այն կարծիքը, թե կարդուխները քրդերի նախահայրերն են, այժմ մերժված է. քրդերին հիշատակում են* κύρτιοι *անունով,* Nöldeke, *Kardu und Kurden*, *տե՛ս* Festschrift für H. Kiepert, Berlin 1898, p. 73. M. Hartmann, *Bohtan*, p. 90*)։* Μόσ-χοι *հարազատ է հայ. Մուշին, որտեղից և Մուշ-եղ, որտեղ եղ=վրաց.* ელი *հարավի* χαλδαῖοι-*ն՝ հյուսիսի խաղտի-քին և* χαλ-υβ-ες-*ին։ Ստրաբոնը տարբերում է երկու մարզ, որոնք կրում են* Συσπιρῖτις *անունը, մեկը Ճորոխի վրա Հերոդոտի* Σάσπειρες, *Քսենոփոնի* Ἑσπερῖται, *իսկ մյուսը՝ հարավում Տիգրիսի մոտ։ Առաջին մարզը այժմյան Ս պ ե ր ն է, իսկ երկրորդը՝ Ծ ո ւ պ ր ի ա ն,* Eranšahr, p. 159։ *Հայ. Մոկ-ք և* Μύχοι, *որտեղից և Մուղանն ու Մխանքը Արցախում։*

*նում է Պոսեյդոնին, որը* ἀρμένιοι *համեմատում էր* ἀραμεῖοι-*ի հետ։ Հայ-ի ծագումը բացատրելու փորձերը առայժմ անհաջող են*[1]։

*Հիմնական զանգվածին միացան ուրիշ ցեղեր ևս. դեպի այն մշտապես սկսեցին հոսել էթնիկական խմբեր ծայրամասերից՝ Ատրպատականի, Վիրքի, Կապադովկիայի և Սիրիայի սահմաններից։ Ժողովուրդների ձուլումը շարունակվեց մինչև Զարեհի և Արտաշեսի ժամանակները. նրանց ժամանակ էլ ավարտվեց երկրի հայացման կարևոր փուլերից մեկը։ Տիգրան Մեծի կայսրության սկզբնավորման նախօրյակին ցեղային այլազանությունները արդեն այնքան էին հարթվել, որ ամբողջ բնակչությունը խոսում էր մի ընդհանուր լեզվով։ Համազգային լեզվի մշակման պահը կարող է համարվել ցեղային-տոհմական կենցաղի սահմանագիծ։*

*Մի երկրի համար, որտեղ այդքան շատ էին տարբեր ցեղերն ու ազգությունները, տոհմական իրավակարգը հանդիսանում է այն բնական շրջանակը, որի մեջ պետք է կաղապարվեր կյանքը։ Տարբեր ցեղերից կազմված միջավայրում մարդու դիրքը պետք է որոշվի ավելի շուտ այս կամ այն տոհմի հետ ունեցած արյունակցական մերձավորությամբ։ Հայերի, որպես խաշնարած ժողովրդի մասին Հերոդոտի վկայությունը ակնառու կերպով ցույց է տալիս, թե հայերը այն ժամանակ զարգացման ինչ աստիճանի վրա էին գտնվում*[2]։ *Այն, ինչ մենք գիտենք հայերի հետ նույն մշակութային աշխարհում գտնվող նրանց հարևան ժողովուրդների կյանքից, որոշակի գաղափար է տալիս այդ փուլի մասին։*

*Ընդհանուր տոհմային գույք, որ տնօրինում է տոհմի ավագ*

---

[1] *Հին հեղինակներից անկախ Ն. Մառը հնարավոր է համարում որ,* armen-ius-*ը առաջ եկած լինի* Aram-*ից. տե՛ս նրա հոդվածը Ի. Ա. Ջավախովի «Государственный строй древней Грузіи и древней Арменіи» 1905 թ. գրքի մասին տպագրված 1908 թ.* «Жур. М. П. Просвещения»։ *Ինչ վերաբերում է հայ-ին, ապա ոմանք գտնում են, որ այն առաջ է եկել* pali-*գլուխ-ից՝ հաղթողի իմաստով, մյուսները՝* Hati-*ից,* Jensen, *Hittiter und Armenien* 1898 *և վերջապես համեմատության մեջ են դնում* pal-*ի հետ* Παιονία *Մակեդոնիայի մեջ մի երկիր, որ եղել է փռյուգիացիների սկզբնական հայրենիքը։* Hommel, *Grundriss d. Geogr. und Gesch. d. alten Orients* I p. 31. *Հայերի Թեսալիայից ծագած լինելու մասին են վկայում, Ստրաբոնի կարծիքով, նաև նրանց հագուստները.* καὶ τὴν ἐσθῆτα δὲ τὴν Ἀρμενιακὴν Θετταλικὴν φάσιν, οἷον τοὺς βαθεῖς χιτῶνας... καὶ ζωνύουσι περὶ τὰ στήθη καὶ ἐφαπτίδας. p. 530 = p. 745.

[2] Herod. V 49, Ἀρμένιοι.. ἐόντες πολυπρόβατοι.

անդամը, ինչպես այդ իբերների և արաբների մոտ էր, եղբայրների նախապատվությունը որդիների առջև և կանանց ընդհանրությունը արաբների մոտ, հանրային կառավարման բնորոշ մարմինների գոյությունը սարբստանցիների մոտ, մասնավոր ժառանգության բացակայությունը՝ կապված աղվանների մոտ գոյություն ունեցող մեռնողի հետ միասին նրա գույքը թաղելու սովորության հետ, թագավորին պահելը և ընդհանրապես նրա դիրքը այդ նույն աշխարհին պատկանող մի քանի ժողովուրդների մոտ, այս ամենը հանդիսանում են տոհմական ժամանակաշրջանի կացութաձևը բնութագրող երևույթներ[1]։

Մի քանի գծեր, որ ավելի ուշ կարելի է տեսնել Հայաստանի տոհմական աղնվականության մոտ, այն է՝ հողատարածության ամբողջ տոհմի կողմից անբաժան տիրելը տոհմի ավագ անդամի գլխավորությամբ ցույց են տալիս, թե որտեղ են թաքնված նման երևույթների արմատները։ Հայտնի չէ, թե մոտավորապես ի՞նչ ձև ստացավ Գայերի տոհմական կյանքը։ Բնակչության այդպիսի բազմացեղ կազմի պայմաններում կյանքի ձևերը կարող էին խիստ բազմազան լինել՝ նայած թե տվյալ էթնիկական խումբը զարգացման ինչ աստիճանի վրա էր գտնվում։ Բայց այնուամենայնիվ հնարավոր են ընդհանուր խմբավորումներ էթնիկական զանգվածի գլխավոր մասերին համապատասխան։ Լեզվական վերապրուկների մեջ հատուկ ուշադրության են արժանի նախարարական անվանումների մի քանի տերմիններ, որոնք տոհմական կացութաձևի սեփականությունն են և ճիշտ լուսաբանության դեպքում գաղափար են տալիս այն մասին, թե ինչպես էին դասավորվում էթնիկական գլխավոր շերտերը տոհմական ժամանակաշրջանում, և թե ինչ ձևով էր տեղի ունենում ժողովրդական ուժերի ինտեգրացումը կյանքի տոհմական ձևերի քայքայման ժամանակ։ Այդ տերմիններն են՝ malχaz, aspet, *mamak և tēr իրենց նախնական նշանակությամբ, որը և մենք կփորձենք պարզաբանել։

Բոլոր չորս տերմիններն էլ սկզբնապես նշանակում էին իշխանություն կրող անձնավորություն երկրի զանազան մասերում։ Malχaz-մաղխազը խորխոռունի իշխանների տոհմական տիտղոսն

---

[1] Այդ ժողովուրդների՝ վրացիների, աղվանացիների նիստուկացի նկարագրությունը տե՛ս p. 501=Teub.-ի հրատ. p. 703 և հաջորդ, սարբստանցիների մասին՝ p. 745—1039, արաբական ցեղերի մասին՝ p. 783—1092 և 778—1086։

էր, որ նշանակում էր ընդհանրապես տիրող, իշխան, թագավոր, որ ծագում է ասորական *malχazu*=արաբական *melik*-ից։ Նրան համապատասխանող տիրույթը ավելի փոքր միավորով հանդիսանում էր աղխ–*alχ*-ը **haχl*-ից, որ նույն ծագումն ունի, ինչ որ վրացերեն *saχli*-տունը։ Այս նույն արմատից է աղախինը՝ *alaχin*-ը, սկզբնապես այն անձը, որ պատկանում էր *alχ*-ին, հետագայում՝ սպասուհի։

Մյուս տերմինը՝ aspet-ասպետ, նույնպես տոհմական տիտղոս է և պատկանում է Բագրատունյաց իշխաններին[1]։ Այս բառը մեկնաբանվում է զանազան ձևով և, ինչպես մեզ թվում է, առանց հիմքի։ Իրականում այն կազմված է *as* և *pet*-ից, որտեղ երկրորդ մասը նշանակում է գլուխ. ամբողջ դժվարությունը առաջին վանկի մեջ է։ Հիմք կա այն համեմատելու նախարարական կենցաղից վերցրած մի այլ և ոչ պակաս կարևոր տերմինի՝ *se-puh*՝ սե–պուհ առաջին վանկի հետ։ Sepuh բառի ստուգաբանությունը արդեն ճշտված է[2]։ Sepuh-ը, որ ծագում է ավելի հին se-puhr ձևից, իրանական *viθapuθra*-ն է, որտեղ *puθra*՝ պուհ, նշանակում է որդի, իսկ *viθ*-ը, ինչպես տեսանք վերը, տոհմական կազմակերպության օղակներից մեկն է, ուստի և *se*-ն *viθ*-ի կրճատ ձևն է։

Սեպուհ տերմինը հայ գրականության մեջ պահպանվել է նաև *aspurak*՝ Ասպուր-ակ ձևով, որ Փավստոսի մոտ հիշատակված հայտնի եպիսկոպոսի անունն է։ Նախաշեշտային ու-ի գոյությունը ցույց է տալիս, որ ու-ն եղել է երկու բաղաձայններից առաջ, այսինքն՝ բառը հնչվում է որպես *aspuhr-ak*: Մասնիկի զեղչումով մնացել է *spuhr*, որը չի կարելի շփոթել *sepuh*-ի հետ, նրա հնագույն *sepuhr* ձևով։ *-as* և *-se* սկզբնավանկերի նույնությունը անկասկած է։

Հետաքրքրական է, որ Ասպուրակ-ը գործ է ածվում նաև *υ* սկզբնատառով՝ Վասպուրակ, և ընդհակառակն՝ ոչ հայկական հուշարձաններում Վասպուրական նահանգի անունը, որ հանգում է միևնույն բառին, մեջ է բերվում առանց սկզբի հնչյունի՝ 'Ασ-

---

[1] Այս տիտղոսը բացառապես Բագրատունիներին է պատկանում. «Ասպետն մեծ պարթեւն և պահլաւն» Սեբեոս, էջ 34. պետք է կարդալ «Աս<պարա>պետն» ինչպես ոչ ճիշտ գրված է 36-րդ էջում «զԱսպարապետն մեծ զպարթեւն եւ զպահլաւն»

[2] Н. Марръ, *Этимологія двухъ терминовъ арм. феодального строя.* Зап. В. О. Имп. Р. Арх. Общ. томъ XI.

πουρ<αχ>άν[1]։ Aspur-ի կողքին vaspur ձևի գոյությունը էլ ավելի ակներև ցույց է տալիս, որ այդ երկուսն էլ ծագել են viθa-puθra-ից։ Ի միջի այլոց հնչյունական մի երևույթի համաձայն, ըստ որի բառասկզբի v-ն խորթ է հայոց լեզվի հնչյունաբանությանը, իրանական viθapuθra-ն, resp. vaiθapuθra, պետք է որ հայերին անցներ isapuhr, asapuhr ձևով կամ անշեշտ a-ի զեղչումով՝ ispuhr, aspuhr ձևով[2]։

aspuhr-ի և sepuhr-ի կամ as-ի և se-ի նույնությունը պարզելուց հետո պարզվում է նաև մեզ հետաքրքրող aspet տերմինի ստուգաբանությունը։ Aspet-ը ծագում է viθa-pali-ից այնպես, ինչպես aspur-ը viθapuθra-ից, այլ կերպ ասած՝ aspet նշանակում է viθ-ի կամ տոհմի գլուխ, պետ, իսկ sepuh՝ տոհմի որդի։ Վսեմ, վսամ բառը, որի լրիվ ձևն է վսեամ, անկասկած իրանական *viθya-ma-ն է և վերաբերում է viθ-ին այնպես, ինչպես zantu-ma-ն zantu-ին։ Նրա սկզբնական նշանակությունն է՝ տոհմի անդամ, տոհմիկ, հետագայում՝ մեծատոհմիկ, վեհ[3]։

---

[1] Կիրակոս Գանձակեցի, էջ 14, Վասպուրակ-էս. *Narr. de rebus arm.* οἱ ἐπίσκοποι τῆς 'Ασπουρ<αχ>άν χώρας. (Համաձայն Փարիզի գրչագիր ընդօրինակության, հրատ. Migne, *Patr. Graec.* 132, p. 1249)։ Такайшвили, *Три хроники*, p. 122, Սիվնեթիա և Ասպարազան։ Մովսես Կաղանկատվացու մոտ, էջ 69, Վաչագանի ժողովին մասնակցողներից մեկի անունը Ասպրակ-էս էր։

[2] Թեև vaspur-ը ավելի մոտ է իսկական ձևին, բայց հայկական հնչյունաբանության տեսակետից aspur-ը ավելի նախնական է։ Նախագրաբարյան շրջանում իրանական փոխառությունները հայոց լեզվի մեջ կորցնում էին սկզբի v հնչյունը, որովհետև հայերը, հույների նման, բառի սկզբում այդ հնչյունը չէին արտասանում։ Արմատական բառերում v-ն օրինաչափորեն դառնում էր g, իսկ փոխառյալ բառերի մեջ անհետանում էր։ V-ով սկսվող իրանական բառերը, որ մտել են հայոց լեզվի մեջ, պատկանում են գրաբարյան շրջանին։ Այս բացատրություններից հետո բոլորովին վերանում են Հյուբշմանի տարակուսանքները ZDMG 46, p. 327, sepuh բառի սկզբնական vi-ի անհետանալու հնարավորության մասին։ Իրանական viθa-puhr-ը, ինչպես կարելի է տեսնել նրա համարժեք հունական οἶκος=viθ բառից, ծագում է *vaiθa-puhr-ից, որտեղից և *vasē-puhr և *vasia-puhr, հայոց áse-puhr-ի և asē-puhr-ի նախատիպերը և նայած թե շեշտը որտեղ է նաև առանց սկզբնական v-ի։ Ասենք as-ի և sē-ի հերթագայությունը կարելի է բացատրել նաև ձայնավորի անցումով մանավանդ բառասկզբի sp-ի զուգորդման ժամանակ, օրինակ՝ aspanj, հայերեն ասպնջական և պարս. sēpanj: Aspahapet, Spahpet, Ispahbed. aspar և spar, վահան և այլն։

[3] Համանորեն նաև վէս-հպարտ=viθya, *vaiθa viθ-ից -ya մասնիկով։ Վսեմի նման նաև վէսը սկզբնապես ցույց էր տալիս տոհմին պատկանելը.

*Ինչպես և նախորդ տերմինը, նույն բնույթն ունի նաև* m a-m a k-*ը* մամակը: *Պատմական գրականության մեջ այն հանդիպում է որպես Մամիկոնյան տոհմին հատուկ անձնանուն։ Սկզբում այն իշխանական տոհմերից մեկի տիտղոսն էր, իսկ հետագայում քըննարկված երկու տիտղոսների նման դարձավ տոհմական անձնանուն.* մամակ *կամ* մամիկ-ը *դարձավ* Մամիկոն-եան[1], *ինչպես* ասպետից՝ Ասպետունի *կամ* մաղխազից՝ Մաղխազունի: *Մենք կարծում ենք, որ* mama-k-*ը ոչ այլ ինչ է, եթե ոչ իբերական* mama, *հ ա յ ր բառի հայացված ձևը. այս բառը նույնպես գալիս է տոհմական ժամանակաշրջանից և նշանակում է տոհմի հ ա յ ր, տոհմապետ և համանիշ է վրացական* mama-saχlisi-*ին։*

*Ուշագրավ է, որ հայկական ավանդության համաձայն էլ Մամիկոնյանները ծագում են Մամիկ-ից։ Առաջարկվող ստուգաբանությունը հաստատվում է ավանդությամբ և նոր լույս է սփռում իշխանական հայտնի տան ծագման մասին եղած առասպելի վրա։ Ըստ հայկական ավանդությունների Մամիկոնյանները ծագում են «Ճ ե ն ե ր ի ց»։ Փավստոսի մոտ իրենք՝ Մամիկոնյանները, իրենց մասին հպարտությամբ ասում են, որ իրենք ծագում են Ճենաց աշխարհի թագավորներից*[2]*։ Փավստոսի խոսքերից չի երևում, թե ինչ է նշանակում «ա շ խ ա ր հ ի ն Ճ ե ն ա ց»։ Անանունի հաղորդածից երևում է, որ դրա տակ պիտի հասկանալ Պարսկաստանից արևելք՝ Բալխից այն կողմն ընկած երկրներից մեկը, այսինքն՝ Չինաստանը։ Մամիկոնյանների ենթադրյալ նախահայրերը՝ Մամիկը և Կո-*

---

*հմմտ. տոհմ, տոհմիկ։* vsam *բառը հնագույն նշանակությամբ պատահում է* Թովմա Արծրունու *մոտ, էջ 231 «երանելի եպ. Գրիգոր Ռշտունեաց վ ս ա մ»։* Մովսես Կաղանկատվացու *մոտ, էջ 68, Վաչագանին վերագրվող եկեղեցական կանոններում «զհաս եկեղեցւոյ ի վսամ եկեղեցին տացեն» կամ «ի կիւրակէի տէր ու ծառայ ի վսամ եկեղեցին երթիցեն յաղօթս»։ Հենց այստեղ էլ, 18-րդ կանոնում՝ «որ տասանորդս տան ազատ մարդիկ՝ զկէսն ի բուն եկեղեցին տացեն, եւ զկէսն յիւրեանց եկեղեցիսն» հակադրվում է ազատների կամ ազնվականների բուն եկեղեցուն։ Դրանցից մեկի տակ էլ հասկացվում է վսամ եկեղեցին։ Եթե հնարավոր համարենք* viθyama-pati-*ի գոյությունը, ապա ասպետների սիրած Սմ-պատ անունը կարելի է ծագած համարել* *i-sēmpati-*ից։*

[1] *Դեռևս է դարում Մ ա մ ի կ անունը ընդունված է եղել Մամիկոնյանների տոհմում,* Սեբեոս, *էջ 48, 49, 56 և 58։* Ունի *կամ* ուն *վերջավորությունը, վրաց.* -ონ *Մամիկ-ոն և Մամգ-ուն հոգնակի թվի ցուցիչի* an-*ի տարբերակն է, իսկ* եանը *կրկնվող և միևնույն նշանակությունը ունեցող վերջածանց է։*

[2] Փավստոս, Ե, *լէ «Մեր նախնիք լեալ էին թագաւորք աշխարհին Ճենաց»։*

նակը, ըստ ավանդության, Չինաստանում Թագավորից հետո ամենանշանավոր իշխանի որդիներն էին։ Այդ իշխանի մահից հետո Թագավորը ամուսնանում է նրա այրու հետ և նրանից ունենում է մի որդի Ճենբակուր անունով, որը և պետք է ժառանգեր գահը։ Նույն մորից ծնված նրա եղբայրները՝ Մամիկը և Կոնակը, դավադրություն են նյութում, որպեսզի տիրեն գահին։ Դավադրությունը չի հաջողվում, և նրանք փախչում են Բալխ, ապաստանում Արշակունի Թագավորի մոտ։ Ճենբակուրը պահանջում է փախստականներին իր ձեռքը հանձնել, բայց Արշակունին մերժում է՝ նրան հանգստացնելով, թե «փախստականներին կուղարկի հեռու արևմուտք, աշխարհի ծայրը, ուր մայր է մտնում արևը»։ Եվ իսկապես, Ճենբակուրի հետապնդումներից ազատելու նպատակով նրանց ուղարկում է Հայաստան՝ իր ազգակից Արշակունու մոտ։

Այս զրույցի վերջին մասի նպատակն է բացատրել, թե ինչպես Մամիկոնյանները Չինաստանից եկան հաստատվեցին Տայքում՝ իրենց տոհմական կալվածքում. բանից դուրս է գալիս, որ Թագավորը դիտմամբ է նրանց բնակեցրել աշխարհի ծայրը։ Ավանդության մեջ հիշված Ճենաց աշխարհի մեկնաբանության շուրջը թյուրիմացություն կա։ Նախնական ավանդության մեջ Ճենք ասելով հասկանում էին ոչ թե հեռավոր չինացիներին, այլ հարևան ծաներին, որոնք ապրում էին Մամիկոնյանների տոհմական կալվածքից՝ Տայքից, ոչ հեռու։ Ըստ Խորենացու վկայության հայերը ծաներին կոչում էին ճան, ճան-իֆ, այժմ Ջանիք։ Մամիկոնյանների տոհմական հատկությունները՝ դյուրաբորբոք խառնվածքը և արտասովոր քաջությունը ցույց են տալիս, որ նրանք ավելի շուտ ազգակից են դեռևս Զ դարում իրենց ռազմատենչությամբ աչքի ընկնող ծաներին, քան հեզաբարո չինացիներին։ Այս լուսաբանությամբ Մամիկոնյանների մասին եղած զրույցը պատմական հիմք է ձեռք բերում։

Հընթացս նշենք նաև, որ Վրաստանի Օրբելյան իշխանները ևս իրենց նախահայրերին որոնում էին Ճենաց աշխարհում, և որ նրանց մոտ էլ հանդես է գալիս Ճենբակուրը։ Զուգադիպությունը պատահական չէ. ըստ երևույթին տվյալ դեպքում գործ ունենք Մամիկոնյանների տոհմական զրույցի մի վերապրուկի հետ, և այդ կարելի է բացատրել նրանով, որ Օրբելյաններն իրենց համարում էին Մամիկոնյանների ժառանգներ։ Եվ զարմանալու բան չկա. ինչպես որ Բագրատունիները չարժվեցին Սպերից դեպի Վրաստան, Մամիկոն-

յաններն էլ կարող էին Վրաստան անցնել Հարևան Տայքից։ Օրբելյանների թշնամական վերաբերմունքը վրաց Բագրատունիների նկատմամբ կարծես թե Մամիկոնյանների՝ դեպի Հայ Բագրատունիներն ունեցած անբարյացակամ վերաբերմունքի արձագանքն է։

Մեր քննության ենթակա տերմիններից վերջինը՝ տէr-ը, ածանցված է տի-ից և այr-ից։ Այս երկրորդ մասը Հայոց լեզվի մեջ շատ ծանոթ մի բառ է, որ նշանակում է մարդ, այր։ Տի-այr-ի օրինակով է կազմված տի-կին բառը։ Տի-ի իմաստը գրեթե անըմբռնելի է. նույնիսկ շատ էլ պարզ չէ, թե ինչ Հարաբերության մեջ է այն այr-ի և կին-ի Հետ, որոշի՞չ է նրանց Համար, թե՞, ընդհակառակը, ինքն է որոշվում նրանցով։ Ըստ կազմության այս բառերը Հիշեցնում են վրացական mama-uǎali և deda-uǎali։ Առաջին բառը Հայտնի է ma<m>ǎa<li>-ից սղված meǎe ձևով, ինչպես Հայերեն տէր-ը։ Վրացական uǎali-ին իրականում և ստուգաբանորեն Համապատասխանում է սեմական vaal-տիրակալ բառին. սեմիտները այսպես էին կոչում իրենց տոհմերին Հովանավորող աստվածներին։ Այս բառը, որ սեմիտների մոտ աստվածություն, երկնքի տիրակալ էր նշանակում, վրացիները փոխանցել են թագավորին որպես երկրի տիրակալ։ Ըստ երևույթին ինչ-որ նման բան էլ պատահել է նաև Հայկական տի-ի Հետ։ Հնչյունական կազմով և իմաստով Հայերենի տի-ի ծագումը կարելի է բխեցնել Հնդեվրոպական di-բառարմատից, որ Հայտնի է շատ լեզուներում և զանազան բարդություններում։ Նրանից ածանցված բառերը Հանգում են երկու Հիմքի՝ di և div. այդ երկուսն էլ ընդգրկում են լույս-ցերեկվա և երկնքի-աստծո Հասկացությունները։ Հայերենում կա թե՛ մեկ և թե՛ մյուս բառահիմքը և տիվ-ցերեկ և տի-ք plur ձևով. tant-մարիf, այսինքն՝ օրեր։ di Հիմքից է առաջացել Հենց մեզ Հետաքրքրող տի-ն։ Նախապես տի-ն, ինչպես և լատինական deus-ը, արտահայտում էր բարձրագույն էակի, աստծո գաղափարը[1], իսկ Հետո սկսեց գործածվել նաև թագավոր և առհասարակ երկրային տեր նշանակու-

---

[1] Սրան են վերաբերում լատին. deus և dies, Հուն. ζεύς, διός, սանսկրիտ. djāu-s երկինք և աստված, devas աստված, զենդ. daeva։ Ըստ Հերոդոտի I 131, Հին պարսկ. Δία նշանակում էր τὸν κύκλον πάντα τοῦ αὐρανοῦ. նույն նշանակությունն ունի Հայկական տի-ն տի-եզերք բառի մեջ, որ նշանակում է Հատկապես երկնակամար, նման պարսկ. Δία-ին (նշանակությունը խստացնելու Համար կցված է եզերք-ծայր) և ապա՝ տիեզերf։

թյամբ, այսինքն՝ նա էլ արժանացավ այն բախտին, ինչ որ վրացական up̆ali-ին. տի-ի այս վերջին նշանակությունը փոքր-ինչ նսեմացնելու համար սկսեցին նրան կցել այր՝ մարդ բառը, տի-այր տէր։ Հետաքրքրական է այն, որ մտքի այդ պրոցեսը մի անգամ էլ կրկնվեց։ Հետագայում, երբ տի-այր բառը գործածությունից իսպառ դուրս վանեց տ-ին և սկսեց հավասարապես նշանակել թե՛ երկրի և թե՛ երկնքի տեր, ապա հիշյալ երկու գաղափարները տարբերելու համար կրկին հանդես եկավ նույն այր բառը և կազմվեց տիր-այր բառը, որ գրականության մեջ հայտնի է որպես հատուկ անուն, բայց տարակույս չկա, որ սկզբում այն գործ է ածվել առհասարակ իշխողի, տիրողի նշանակությամբ[1]։

Նախարարական միջավայրից վերցված քննարկվող տերմինները մեր լուսաբանությամբ հանդիսանում են տոհմական կարգի հնագույն ժամանակաշրջանից եկող ժառանգություն։ Դրանք հենց այն տեղական անվանումներից են, որ ունեին կոմարքաները։ Էթնիկական միջավայրի խայտաբղետության հետևանքով կոմարքաները պետք է որ տարբեր անվանումներ ունենային։ Այն չորս գերակշռող հասանքներին համապատասխան, որոնցից en gros բաղկացած էր Հայաստանի էթնիկական կազմը, նշված չորս տերմինները պետք է համարել այդ անվանումներից առավել տարածվածները։ Այն շրջաններում, ուր գերակշռում էր արամեական ազդեցությունը, տոհմի պետերը կոչվում էին malxaz, Ատրպատականի կամ Իրանի ծայրամասում գործածական էր իրանական տերմինաբանությունը՝ aspet, sepuh, vsem, իբերիական գոտում առավել գործածական էր mamak անվանումը և, վերջապես, փոյուգիական շերտով բնակեցված վայրերում՝ ter, tun և այլն։ Սրանցով սակայն, կրկնում ենք, չէր սպառվում տերմինաբանությունը. բացի այն, որ մեր առանձնացրած գոտիները ամենևին էլ միատարր չէին, և նրանցից յուրաքանչյուրին հատուկ էր որոշակի խայտաբղետություն, որը

[1] Ըստ Pom. Trog. *prologus* 42, successores deinde eius Artabanus et Tigranes *cognomine deus* a quo subacta est Media et Mesopotamia։ Խոսքը Տիգրան Մեծի մասին է. ինչպե՞ս պետք է հասկանալ նրա deus մականունը. արդյո՞ք դա հայերեն տի բառի թարգմանությունը չէ բագավոր և աստված իմաստով։ Գուցե և Տիգրան անունը կապ ունի *ti* արմատի հետ և նշանակել է աստվածություն, ինչպես լատ. Դիան., հուն. Διώνη. Hommel, *Grundriss*, p. 39 ann. 2 և 43 ann. 1 ենթադրում է, որ Techib, Tišup, Teisbas, Tišpak անունների սկզբի *te* վանկը նշանակում է տէր։

պետք է արտահայտվեր տերմինաբանության մեջ, կային նաև ուրիշ էթնիկական խմբեր. այսպես, օրինակ՝ կար մի ամբողջ փոքրիկ ժողովուրդ՝ մարդեր անունով, որոնց գլուխը կոչվում էր mard-pet մարդպետ և այլն։

Տոհմային հարաբերությունների ժամանակաշրջանը ավարտվում է Զարեհի և Արտաշեսի օրոք Հայաստանում տեղի ունեցած քաղաքական խմորումներով։ Այդ ժամանակին է վերաբերում տոհմային կարգերի քայքայման սկիզբը և սոցիալական նոր հարաբերությունների ծնունդը։ Հեղաշրջման էությունը կայանում էր սոցիալական զանգվածի շերտավորման և դասայնության սկզբունքի առաջացման մեջ. տոհմերի պարագլուխները կամ պետերը հետզհետե դառնում են անվանի մարդիկ, տիրակալներ, և դրանով իսկ դրվում է ապագա տոհմական իշխանությունների սկիզբը։ Այս փոխակերպությունը տեղի է ունենում այն պահից սկսած, երբ տոհմապետի կոչումը դառնում է ժառանգական։ Դրա շնորհիվ նրա սերունդը առանձնանում և հատուկ տեղ էր գրավում հասարակության մյուս անդամների շարքում։ Ժառանգելու իրավունքը իր հետևից բերում է նաև սեփականության իրավունք այն ամենի վրա, ինչ ենթակա է տոհմապետի իշխանությանը։ Այս ճանապարհով նախկինում միատարր և իրավահավասար հասարակական օրգանիզմը սոցիալապես բաժանվում է երկու անհավասար մասերի. թվով փոքր մասը, որ ծագում է տոհմապետից, իշխում է, իսկ մեծամասնությունը հպատակվում է նրան։ Տոհմապետը տիրակալ դառնալով, շատ հեշտությամբ կարողանում է իր իշխանությունը տարածել նաև ուրիշ տոհմերի վրա և, հետզհետե ընդլայնելով իր ազդեցության ոլորտը՝ բարձրանում և հասնում է թագավորի աստիճանի։ Այս պրոցեսը հիանալի կերպով կարելի է ցույց տալ Իբերիայի սոցիալական շերտավորման օրինակով։ Այստեղ, ըստ Ստրաբոնի, կային չորս կարգի մարդիկ. առաջին կարգից նշանակվում էին թագավորները, երկրորդից՝ քրմերը. երրորդ կարգը բաղկացած էր այն բնակչությունից, որ զբաղվում էր երկրագործությամբ ու զինվորական գործով, իսկ չորրորդը՝ հասարակ մարդկանցից, թագավորի ստրուկներից, որոնք նրան ապրուստի միջոցներ էին հայթայթում. Նրանց ունեցվածքը ընդհանուր էր՝ ըստ տոհմերի, և յուրաքանչյուր տոհմը կառավարում էր ամենաավագ անդամը։

Թագավորների տոհմը և քրմերի տոհմը, այսպես ասած, ար-

հետական տոհմեր էին, որ առաջացել էին այն անձնավորության սերունդներից, որը, որպես տոհմապետ, յուրացրել էր այդ կոչումը ժառանգաբար կրելու իրավունքը։ Նա սերում էր այն նույն տոհմից, որի մեջ նախապես մտնում էին այն մարդիկ, որոնք հետագայում ստրկության մեջ ընկան, այլ կերպ ասած՝ թագավորն իր ստրուկներով հանդերձ սկզբում տոհմային մի ամբողջական միավոր էր, որի գլուխը հանդիսանում էր ինքը։ Տոհմապետի ժառանգական իրավունքը ճանաչելուց հետո նրա ընտանիքը սկսում է սոցիալապես առանձնանալ տոհմից, և որքան նա վեր է բարձրանում, նույնքան էլ ցած է իջնում տոհմի մնացած մասը. վերջապես իր տոհմին ստրկացնելու գնով նա հասնում է թագավորական աստիճանի։ Հետագայում նա իրեն է հպատակեցնում նաև ուրիշ տոհմեր՝ Իբերիայի մնացած բնակչությանը, որը բաժանված էր տոհմերի ու զբաղվում էր մասամբ հողագործությամբ և մասամբ էլ՝ զինվորական գործով[1]։

Կարելի էր մտածել, թե քրմական տոհմն էլ նույնպիսի ծագում ունի, ինչ որ թագավորականը, այսինքն՝ այն առաջ է եկել տոհմի քայքայման հետևանքով։ Սակայն այդ դեպքում նրանք էլ պետք է ստրուկներ ունենային, որը չենք տեսնում։ Ստրաբոնը պնդում է, որ թագավորական տոհմից մեկը՝ ամենաավագը, ժառանգում էր գահը, իսկ թագավորից հետո եկող անձնավորությանը հանձնվում էին արդարադատությունը և զորքի հրամանատարությունը։ Այդ վկայության մեջ է թաքնված այն ուղին, որով կազմվել է քրմական տոհմը։ Թագավորը, բարձրանալով տոհմապետությունից, սկզբում իր ձեռքն է կենտրոնացնում բոլոր ֆունկցիաները. նա միաժամանակ իշխող է, զորապետ՝ կռվի ժամանակ, դատավոր, քուրմ և առհասարակ ընդհանուր ղեկավար։ Գալիս է մի ժամանակ, երբ մեկ անձի համար դժվար է դառնում կատարել այս բոլոր պարտա-

[1] Ստրաբոնը XI, 3, էջ 500=702, Իբերիայում տարբերում է բնակչության երկու տեսակ. դաշտավայրերի բնակիչները ավելի շատ զբաղվում էին հողագործությամբ, խաղաղ կյանք վարում և հագնվում հայերի ու մարերի պես։ Իսկ լեռնային մասերում բնակվողները, որոնք մեծամասնություն էին կազմում և ռազմատենչ էին, կենցաղով նման էին հարևան սկյութներին, թեև նրանք զբաղվում էին նաև հողագործությամբ։ Պատերազմի ժամանակ հավաքում էին շատ մեծ քանակությամբ զորք։ Ահա թե ինչու աշխարհագետը ասում է՝ τρίτον δὲ τὸ τῶν στρατευομένων καὶ γεωργούντων և ոչ թե այն դատողությունների հետևանքով, որ մեջ է բերում Ի. Ջավախովը. Госуд. строй, p. 56։

*կանությունները, և նրան սկսում է օգնել Թագավորի մերձավորներից մեկը՝ նա, որին պատկանելու է գահը՝ Թագավորի մահվան դեպքում[1]։ Այնուհետև նրա վրա է դրվում ղեկավարության որոշակի բնագավառի պաշտոնական պարտավորություններ՝ կրոնի և միջազգային քաղաքականության գծով. առաջին հայացքից գործունեությամբ միմյանցից տարբեր այս երկու պաշտոնների զուգակցումը բացատրվում է նրանով, որ կրոնական աշխարհայացքը, քրմերի բարձր հեղինակության և մի քանի պաշտամունքների համընդհանրության պայմաններում, այն հողն էր, որի վրա կարող էին միավորվել մշակույթով միմյանցից տարբեր ազգությունները։ Հանգամանքների բերումով քրմությունը տվյալ անձնավորության գերդաստանում նույնպես դառնում է ժառանգական։ Այդ դեպքում Թագավորից հետո այդ նույն երկրորդ անձին վստահվում է մի այլ բնագավառ՝ դատավարությունը և զորքի հրամանատարությունը, ինչպես այդ տեսնում ենք Իբերիայում[2]։ Անշուշտ հետագայում այդ պաշտոններն էլ քրմականի նման ժառանգականության կարգով պիտի դառնային տվյալ տոհմի առանձնաշնորհությունը։ Եվ իսկապես՝ Արշակունիների օրոք այդ այդպես էր։*

*Այսպիսով, այն չորս խմբերը, որոնցից բաղկացած էր Իբերիայի բնակչությունը, ոչ միայն սոցիալապես, այլև ծագումնաբանորեն տարբեր մեծություններ էին։ Առաջինը և վերջինը, այսինքն՝ Թագավորների և սպուների տոհմերը ծագում են միևնույն միավորից. քրմական տոհմը ծագում է Թագավորականից։ Այդ երկու տոհ-*

---

[1] *Նախապես նա, Թերևս, միայն փոխարինում էր Թագավորին նրա հիվանդության. կամ բացակայության դեպքում, ինչպես որ էր սարայեցիների մոտ, որոնց «Թագավորը իր բարեկամներից մեկին դարձնում էր իր տեղակալը, որը կոչվում էր եղբայր<Թագավորի>*, καλούμενον ἀδελφόν, Str. *XVI*, 4 p. 1088=779։ *Հմմտ.* βασιλέως ἀδελφός, βασιλέως ὀφθαλμός *պարսից մոտ*, *Cyrop.* VIII, 6 p. 322։

[2] *Դատավորի և զորահրամանատարի մեկ անձնավորության մեջ համատեղումը ցույց է տալիս, որ դատավորը կարիք ուներ հարկադրող ուժի։ Աստրեստանցիների մոտ էլ զողության վերաբերող վեճերը քննվում էին զինվորական խորհրդում։ Այս հանգամանքը բնորոշ է տոհմական կարգի քայքայման շրջանին։ Քանի դեռ ամուր են բնական-իրավահարաբերությունների հիմքերը, հասարակությունը պահպանում է իր համապարփակչությունը և դատարանի կարիք չի զգում։ Ստրաբոնի բարեկամ հույն փիլիսոփաներից մեկը արաբ սաբայեցիների մայրաքաղաքում գտնված ժամանակ շատ է զարմանում տեսնելով, որ «ստարբերկրացիները մշտապես դատվում էին Թե՛ միմյանց և Թե՛ տեղացիների հետ, իսկ տեղացիները իրար հետ ոչ մի վեճ չունեին և ապրում էին հաշտ ու խաղաղ»*, Str. *ib.* p. 779=1088։ *Դարձ-*

մերը առաջացել են նույն գերդաստանից և ավելի շուտ հանդիսանում էին դասեր, քան տոհմեր[1]։

Նկարագրված սոցիալական պրոցեսը տեղի է ունեցել նաև հարևան Աղվանքում. քանի որ այնտեղ բնակվում էին 26 մանր-մունր ազգություններ, որոնք խոսում էին տարբեր լեզուներով, ուստի այդ պրոցեսը տեղի ունեցավ երկրի 26 կետերում[2]։ Սկզբում նրանցից յուրաքանչյուրն ուներ իր թագավորը։ Հետագայում նրանք բոլորը միացան մեկ թագավորի իշխանության տակ։ Այս մանր ցեղերի մեջ թագավորի իշխանությունը առաջ եկավ այնպես, ինչպես իբերների մոտ։ Նրանց թագավորները նախկին տոհմապետերն էին, որոնք հասան տիրակալի, իշխանի դիրքի։ Լեռնականների ասպատակությունների դեմ միացյալ ուժերով պաշտպանվելու անհրաժեշտությունը հարկադրեց նրանց համախմբվել և կազմել քաղաքական մեկ մարմին։ Աղվանքի բնակիչների մոտ, ինչպես և Իբերիայում, քրմի պարտականությունները կատարում էր թագավորից հետո ամենից ավելի հարգանք վայելող անձնավորությունը, որը և կառավարում էր ընդարձակ և խիտ բնակչություն ունեցող սրբազան հողերը և տաճարապատկան ստրուկներին[3]։ Անշուշտ, արդարադատությունը և զինվորական հրամանատարությունը գտնվում էին նույն վիճակի մեջ, ինչ որ Իբերիայում, այսինքն՝ հանձնված էին թագավորից հետո եկող երկրորդ անձնավորությանը[4]։ Իբերիայում

---

յալ Ստրաբոնի նկարագրության համաձայն սարայեցիները գտնվում էին զարգացման նախնական աստիճանի վրա։

1 Իբերիայի բնակչության չորս տոհմերի փոխհարաբերության հարցը քննության չի առնված Ի. Ջավախովի «Государственный строй...» աշխատության մեջ և թագավորական δοῦλοι ծագումը սխալ է մեկնաբանված նրա կողմից։ Հենվելով վրացական მონა=maniya տերմին անվանման վրա, նա եզրակացնում է, որ հենց այդ հաստատությունն է փոխառություն, էջ 74։ Եթե ընդունենք այդ տեսակետը, ապա ստիպված կլինենք շատ բան համարել օտարերկրյա։

2 Str. XI 3, p. 706=503, νυνὶ μὲν οὖν εἷς ἁπάντων ἄρχει, πρότερον δὲ καὶ καθ᾽ ἑκάστην γλῶτταν ἰδίᾳ ἐβασιλεύοντο ἕκαστοι. γλῶτται δ᾽ εἰσὶν ἓξ καὶ εἴκοσιν αὐτοῖς διὰ τὸ μὴ εὐεπίμικτον πρὸς ἀλλήλοις.

3 ibid. XI 3, p. 706, ἱερᾶται δ᾽ ἀνὴρ ἐντιμότατος μετά γε τὸν βασιλέα προεστὼς τῆς ἱερᾶς χώρας, πολλῆς καὶ εὐάνδρου, καὶ αὐτῆς καὶ τῶν ἱεροδούλων.

4 Պոմպեոսի դեմ մղվող կռիվների ժամանակ Աղվանից զորքերի (60 հազար հետևակ և 22 հազար այրուձի, Պլուտարքոսի մոտ 12 հազար Ստրաբոնի 22 հազ. փոխարեն պետք է կարդալ δισχιλίους ἐπὶ <δὶς>μυρίους) հրամանատարն էր.

գերագույն իշխանությունը հենվում էր տոհմերի կամ նրանց պետերի միության վրա, իսկ Աղվանքում՝ արքայիկների կամ իշխանների միության վրա։ Ուրիշ խոսքով, էթնիկական պայմանների հետևանքով սկզբնապես կազմվեցին 26 մանր թագավորություններ, իսկ հետո արդեն միավորվեցին։

Էթնիկական տեսակետից Հայաստանը պակաս խայտաբղետ չէր, քան Աղվանքը, և եթե դատելու լինենք համեմատության կարգով, ապա հասարակության առաջընթացը այստեղ պիտի տեղի ունենար այնպես, ինչպես Աղվանքում, այսինքն՝ երկրի միավորման առաջին հետևանքները պետք է արտահայտվեին ուժերի համակենտրոնացման մեջ՝ ըստ էթնիկական տարատեսակության կետերի։ Միավորումը պետք էր սպասել նախ և առաջ էթնիկական ամենից ավելի կարևոր գոտիներում՝ մ ա ղ խ ա զ ն ե ր ի, ս ս պ ե տ ն ե ր ի, մ ա մ ա կ ն ե ր ի, տ ե ր ե ր ի և այլոց շուրջը։ Այս ենթադրությունը արդարանում է, երբ քննության ենք առնում այն սակավաթիվ տվյալները, որ մեզ տալիս է փաստական պատմությունը։

Տոհմական հարաբերությունների քայքայումը, որ ուղեկցվում էր դասայնության ծնունդով, հանձինս իշխանավորների՝ ապագա տիրակալների, ավարտվեց Տիգրան Մեծի փոթորկալից դարաշրջանում։ Պատերազմական ժամանակի տագնապը նպաստավոր մթնոլորտ է ստեղծում տոհմական հարաբերությունները դասայինի փոխակերպվելու համար։ Հայաստանի քաղաքական հզորությունը Տիգրանի օրոք, ընդարձակ նվաճումները Կապադովկիայի Մաժակ քաղաքից մինչև Մարաց Եկբատանը և Իբերիայից ու Աղվանքից մինչև Արաբիան ու Պաղեստինը նախ և առաջ ցույց են տալիս, որ երկրի ներսում արդեն տեղի է ունեցել միավորում։ Թե ինչպես էին ձևավորվում հասարակական խմբերը և տերիտորիալ ու սոցիալական տեսակետից ինչպիսի ձևեր ընդունեցին դրանք, այդ մասին

---

ոչ թե Օրիզ թագավորը, այլ նրա եղբայր Կոտիսը, ἡγεῖτο δὲ αὐτῶν βασιλέως ἀδελφὸς ὄνομα Κῶτις, Plut. *Pomp.* 35։ Կոտիսը զորքերի գլուխ էր կանգնած հավանորեն ի պաշտոնե, իբրև գերագույն առաջնորդ. հավանական է, որ նա միաժամանակ վարում էր նաև դատական գործը, ինչպես այդ Իբերիայում էր։ Պոմպեոսի հաղթական կառքի առջևից 324 պարտված վեհապետների շարքում քայլում էին նաև իբերական երեք և աղվանից երկու պարագլուխներ καὶ ἡγεμόνες τρεῖς Ἰβήρων καὶ Ἀλβανῶν δύο, App. Mithr. 117։ Իբերական երեք պարագլուխներն էին թագավորը, քրմապետը և զորապետը, իսկ աղվանական երկուսը՝ թագավորը և քուրմը, իսկ զորապետ Կոտիսին Պոմպեոսը սպանեց։

անմիջական տվյալներ չկան պատմագիրների մոտ, որոնք դույներ չէին խնայում արտաքին իրադարձությունները նկարագրելու համար։ Տիգրանի օրոք հայերի ունեցած զինվորական ուժերի մասին եղած ընդհանուր տվյալների մեջ, բարեբախտաբար, մենք հանդիպում ենք մի քանի որոշակի ցուցումների, որոնք շատ կարևոր են մեր նպատակի տեսակետից։

Պատմագիրները հայոց թագավորին ներկայացնում են շրջապատված բազմաթիվ աջակից արքաներով։ Տիգրանի բանակի մեջ հայերից և գորդիեններից բացի կային նաև իրենց սեփական թագավորների հրամանատարության տակ գտնվող մարերի և ադիաբենների զորքերը, ինչպես նաև արաբական ցեղեր Պարսից ծովի ափերից, բազմաթիվ աղվանացիներ Կասպից ծովի ափերից, հարևան իբերները և ոչ քիչ թվով ազատ վաչկատուններ Արաքսի ափերից։ «Շատ թագավորներ սպասավորում էին Տիգրանին,— պատմում է Պլուտարքոսը,— իսկ նրանցից չորսը անբաժան կերպով գտնվում էին նրա մոտ որպես ուղեկիցներ կամ թիկնապահներ. երբ նա գնում էր ձի հեծած, նրանք վազում էին նրա հետևից կարճ պարեգոտով, իսկ երբ նստած էր կամ զբաղվում էր գործերով, նրանք մեկը մյուսի ձեռք բռնած կանգնում էին նրա մոտ»[1]։ Արքաներ ամպագոռգոռ անվան տակ այստեղ ակնարկված են հայոց իշխանները, ընդ որում Տիգրանի մոտ մշտապես գտնվող չորս թագավորները հենց չորս բդեշխներն են, ծայրամասերի այն իշխանները, որոնք ըստ գահի և ըստ բարձի Արշակունիների արքունիքում գրավում էին առաջին տեղերը[2]։ Լուկուլլոսի հաճոյակատար գովերգուները, որոնք իրենց տեղեկությունները քաղում էին նրա իսկ սնա-

[1] Plut. *Luc.* 21, βασιλεῖς δὲ πολλοὶ ἦσαν οἱ θεραπεύοντες αὐτόν, τέσσαρες δέ, οὓς ἀεὶ περὶ αυτὸν εἶχεν ὥσπερ ὀπαδοὺς ἢ δορυφόρους, ἱππότῃ μὲν ἐλάυνοντι πεζοὺς παραθέοντας ἐν χιτωνίσκοις, καθημένῳ δὲ καὶ χρηματίζοντι περιεστῶτας ἐπηλλαγμέ ναις δὶ ἀλλήλων ταῖς χερσίν.

[2] *Տե՛ս վերը, էջ 315։ Մարկվարտի տված լուծումից հետո* Eranšahr, p. 172, *բոլորովին անհավանական է Գուտշմիդի այն կարծիքը, թե խոսքը վերաբերում է Ատրպատականի, Կորդուքի, Ադիաբենի և Օսրոյենի թագավորներին,* Geschichte Irans. p. 85։ *Հիշյալ կարծիքը ճիշտ չէ թեկուզ այն պատճառով, որ Լուկուլլոսի արշավանքի ժամանակ այդ թագավորները դեռ Տիգրանի մոտ չէին, նա սպասում էր Ադիաբենի և Ատրպատականի թագավորներին. Կորդվաց Զարբիենոս թագավորը դրանից առաջ գլխատվել էր դավաճանության համար, իսկ Օսրոյենի թագուհին՝ Կլեոպատրան, Սելևկիայում հսկողության տակ էր։*

պարծ զեկուցումներից, չեն քաշվում իրենց հերոսին չափից ավելի փառաբանելու չափազանցումներից, որ իբր թե ջախջախել է այդքան ահեղ թագավորի։ Ներկա դեպքում հայ իշխաններին բ ա ղ ի - լ և ս ի աստիճանի բարձրացնելը այդպիսի ատառ ուներ։

Բդեշխներից բացի, հայ իշխաններից հականե-հանվանե հիշվում են ևս մի քանիսը։ Նրանցից մեկը Բ ա գ ա դ ա տ ն է։ Երբ Տիգրանը, հաղթելով Անտիոքոսին, տիրեց Ասորիքին, Կիլիկիայի և մյուս բոլոր երկրներին մինչև Եգիպտոս, նա Բագադատին նշանակեց նոր նվաճված երկրների ստրատեգոս։ Վերջինս այդտեղ կառավարեց 14 տարի, մինչև Լուկուլլոսի 70 թվականի արշավանքը։ Այն ժամանակ նա ստիպված եղավ շտապել Տիգրանին օգնության, և Ասորիքը կրկին անցավ Սելևկյաններին[1]։

Հիշատակվում են նաև Մ ի թ ր ո բ ա ր զ ա ն ե ս ու Մ ա ն կ ա յ ո ս ը։ Առաջինը 2000 հեծյալներով դուրս եկավ Լուկուլլոսին ընդառաջ, երբ նա անցավ Եփրատը և ներխուժեց Սոփենե, իսկ Մանկայոսին վստահվեց մայրաքաղաքի՝ Տիգրանակերտի պաշտպանությունը։ Միթրոբարզանեսը կովի բռնվեց Լուկուլլոսի հետ, բայց փախուստի դիմեց, իսկ Լուկուլլոսի զորավարներից մեկը՝ Սեքստիլիոսը, շրջապատեց Տիգրանակերտը և Մանկայոսին պաշարեց այնտեղ[2]։

Ըստ մի այլ, խիստ գունազարդված պատմության, Միթրոբարզանեսը Տիգրանի մերձավոր անձնավորություններից մեկն էր, և քանի որ ոչ ոք չէր համարձակվում թագավորին հաղորդել Լուկուլլոսի արշավանքի մասին, ապա նա առաջինը հայտնեց նրան ճշմարտությունը։ Այս հանդգնության համար, իբրև պատիժ, Տիգրանը հրամայեց նրան շարժվել թշնամիների դեմ, բռնել նրանց զորահրամանատարին ու կենդանի իր մոտ բերել, իսկ մյուսներին կոտորել։ Իսկ Լուկուլլոսը Միթրոբարզանեսի դեմ մի ջոկատ ուղարկեց

---

[1] App. *Syr.* 48. Τιγράνης ἦρχε Συρίας τῆς μετ᾽ Εὐφράτην, ὅσα γένη Σύρων μέχρι Αἰγύπτου· ἦρχε δὲ ὁμοῦ καὶ Κιλικίας. Βαγαδάτην στρατηγὸν ἐπιτάξας ἅπασιν, ἐπὶ ἔτη τεσσαρεσκαίδεκα... *ib.* 49, ὁ Βαγαδάτης ᾔει μετὰ τοῦ στρατοῦ Τιγράνῃ βοηθήσων. Βαγαδάτης-ի փոխարեն տպագրում Μαγαδάτης է. ձեռագրերում կա և այս, և այն ընթերցումը։ Ճիշտ է առաջինը, Marquart, *Eranšahr*, p. 174.

[2] App. *Mithr.* 84, 86 Μιθροβαρζάνην προύπεμπε μετὰ δισχιλίων ἱππέων, Λούκουλλον ἐπισχεῖν τοῦ δρόμου. Μαγκαίῳ δὲ Τιγρανόκερτα φυλάττειν ἐπέτρεψεν.

Սեքստիլիոսի հրամանատարությամբ ճակատամարտում հերոսի մահով ընկավ Միթրոբարզանեսը[1]։

Վերջապես հայտնի է մի երրորդ անձնավորություն՝ Գ ո ւ ր ա ս ը։ Նրա մասին ասում են, որ նա Տիգրանի հարազատ եղբայրն է և պաշտպանում էր Մծբինը Լուկուլլոսի դեմ, երբ վերջինս, շպրտվելով Արտաշատից, անցավ Տավրոսը և պաշարեց այդ ստրատեգիական կարևոր կետը[2]։

Βαγαδάτης անունը լեզվական անկանոնություններին դեռևս չենթարկված հայկական Բագա-րատ-ի Bagarata-ի սկզբնական ձևն է, որ ծագում է Bagadata-ից՝ ա ս տ ծ ու տ վ ա ծ՝ baga-ից և data-ից — հուն. Θεόδοτος։ Այս անունը կրող Տիգրանի ստրատեգը անկասկած հանդիսանում է Բագ<ա>րատունիների նշանավոր տոհմի նախահայրը։ Հանձին նրա արդարացվում են հայկական երկու միմյանց հակասող ավանդությունները Բագրատունիների ծագման մասին։ Ըստ Անանունի՝ Բագրատունիները ծագում են Հայկից՝ հայերի նախահորից։ Մյուս ավանդությունը, որ պահպանվել է Խորենացու մոտ, վկայում է նրանց հրեական արյան մասին։ Հենց ինքը՝ տոհմի անունը, հատկապես նրա տոհմական aspet տիտղոսը, որը մենք պարզաբանեցինք վերը, ցույց է տալիս, որ այդ հարստությունը առաջ է եկել հայ-իրանական էթնիկական հողի վրա։ Նրանց սկզբնական հայրենիքը, ըստ երևույթին, գտնվում էր, ինչպես մենք արդեն նշեցինք, Ատրպատական ծայրամասում։ Մենք կարծիք հայտնեցինք նաև, որ ստուգաբանական աղերս կա Բագարատի և Բագրևանդի միջև[3]։ Մյուս ավանդությունը, որի համաձայն Բագրատունիները եկել են հարավից և հրեական ծագում ունեն, եթե միայն այդ Խորենացու ենթադրությունը չէ, ինչպես որ կարծում են ուսումնասիրողները, պետք է համարել այն փաստի յուրօրինակ ռեֆլեքսը, թե Տիգրանի օրոք Բագրատը փո-

---

[1] Plut. *Luc.* 25, πρῶτος δ' αυτῷ τῶν φίλων ἐτόλμησε Μιθροβαρζάνης φράσαι τὸ ἀληθές.

[2] Plut. *Luc.*, 32, ταύτην (sc. Νίσιβιν) εἶχεν ἀξιώματι μὲν ἀδελφός Τιγράνον Γ ο υ ρ α ς, ἐμπειρίᾳ δὲ... Καλλίμαχος.

[3] *Տե՛ս վերը, էջ 341։ Այդ մասին է խոսում նաև* δ *հնչյունի փոխվելը* r-*ի Bagarata անունը փոխառություն է Bagaδata-ից, որ իրանագետները համարում են ատրպատականյան բարբառի առանձնահատկություն, Grundris d. Ir. Phil.* I 2, 355, § 116.

*խաղրվեց հարավ և նշանակվեց Ասորիքի՝ սեմական ժողովրդով բնակեցված մի երկրամասի կառավարիչ*[1]*։ Ի դեպ, Անանունն էլ է Բագրատունիներին տեղադրում Հայաստանի հարավում, հենց Անգեղտուն գավառում, որն էլ համարում է նրանց տոհմական կալվածքը*[2]*։ Այս ավանդությունը, համենայն դեպս, կապված է Բագարատի հարավում գտնվելու հետ. կարող է պատահել նույնիսկ, որ երբ Ասորիքը անջատվեց Տիգրանից, Հայաստանի հարավային սահմանների պաշտպանությունը հանձնվեց Բագարատին, և որ Անգեղտան իշխանությունը Բագրատունիների մի ճյուղն է*[3]*։*

*Հռոմեական զորաբանակին առաջինն ընդառաջ ելած զորավարի անունը* Μιθροβαρζάνης*-ի փոխարեն ճիշտ կլինի կարդալ* Μιθροβουζάνης[4]*=հայ.* Մեհրուժան Mehružan*։ Այս անձնավորությունը ոչ այլ ոք է, եթե ոչ Ծոփենեի իշխանը։ Հայկական առաջին գավառը, որին հռոմեացիք սպառնում էին Եփրատը անցնելուց հետո, Ծոփենեն է, ուր ներխուժեցին Լուկուլլոսի լեգեոնները։ Միթրոբուզանեսը, որպես նահանգի իշխան, դուրս եկավ պաշտպանելու իր երկիրը։ Բայց որովհետև նրա ուժերը աննշան էին, նահանջեց հռոմեացիների ճնշման տակ։ Այն ամենը, ինչ որ պատմում է Պլուտարքոսը Միթրոբուզանեսի մասին, անմտություն է և արված է տպավորություն գործելու համար։ Միթրոբուզանեսը պետք է դուրս գար Լուկուլլոսի դեմ իր դիրքի բերումով, որպես երկրի իշխան և ոչ թե նրա համար, որ Տիգրանը ուզում էր պատժել նրան, ինչպես բացատրում է պատմագիրը*[5]*։ Միթրոբուզանեսը, անկասկած,*

[1] *Տե՛ս* Marquart, *Eranšahr*, p. 174.

[2] Սեբեոս, *էջ 6 «որդիքն Բագարատայ ժառանգեցին զժառանգութիւն իւրեանց ի կողմանս արեւմտից, այսինքն՝ Անգեղ տունն»։*

[3] *Այդ դեպքում կարելի է ենթադրել, որ կապ կա Անգեղ տան և Անգղ գյուղի միջև, որ գտնվում է Բագրևանդում՝ Բագրատունիների՝ ինչպես մենք ենթադրում ենք, հայրենիքում։ Ս. Գրքի Անգղը=հուն.* Νεργέλ *(հավանորեն* ἐποίησαν τὴν [ν]εργελ*-ից փոխանակ* ἐνγέλ*) կապ չունի Անգեղ տան հետ, անկախ նրա հետ Անանունի ծանոթ լինելուն, ինչպես հնարավոր է համարում Խալաթյանցը,* Арм. эпос, p. 84։

[4] *Ապպիանոսի ձեռագրերում կա ճիշտ ընթերցումը՝* Μιθροβουζάνης, *ինչպես վկայում է Յուստիի* Namensbuch*-ում։* Μιθροβουζάνης*-ը կազմված է* Mithra*-ից և* buzān*-ից, հայերեն՝ բ ու ժ-ե լ և նշանակում է* Միհրի միջոցով փրկված։

[5] *Առաջին մարդը, որ Լուկուլլոսի արշավանքի լուրը բերեց Տիգրանին, ըստ Պլուտարքոսի, գլխատվեց, իսկ ըստ Ապպիանոսի՝ կախաղան հանվեց։ Դրանից հետո, ինչպես հավատացնում է Պլուտարքոսը, ոչ ոք չէր համարձակվում խոսք բա-*

պատկանում է Սոփենեի թագավորի, Զարեհի և Արտաշեսի ժամանակակցի տոհմին։ Միթրոբուզանես անունը ընդունված էր այդ տոհմում։ Զարեհի որդին, որ Արտաշեսի հալածանքներից ազատվելու համար փախավ Կապադովկիայի Արիարաթես Դ թագավորի մոտ և նրա օգնությամբ ետ խլեց իր հոր գահը, կրում էր նույն Միթրոբուզանես անունը[1]։ Տիգրանի ժամանակ Սոփենեի թագա-

---

ցել Լուկուլլոսի մասին։ Կային շողոքորթներ, որոնք օրորում էին թագավորին կըղծավոր խոսքերով, թե Լուկուլլոսը մեծ հրամանատար կհամարվի, եթե խիզախի Եփեսոսի մոտ սպասել Տիգրանի գալուն և չփախչի առանց ետ նայելու, տեսնելով նրա անհամար զորքը։ Միայն Միթրոբուզանեսը համարձակվեց բաց անել թագավորի աչքերը սպառնացող վտանգի առջև, բայց փոխանակ պարգևի՝ հրաման ստացավ գնալ Լուկուլլոսի դեմ և բռնել նրան ու կենդանի բերել, իսկ մյուսներին կարգադրել Ապպիանոսի պատմելով թագավորի հանձնարարությունը շատ համեստ էր Λουκούλλου ἐπισχεῖν τοῦ δρόμου։ Միթրոբուզանեսը ուներ ընդամենը 2000 հեծյալ և Լուկուլլոսի հետ ունեցած բախումը ավարտվեց Միթրոբուզանեսի փախուստով։ Իսկ Պլուտարքոսը նրա զորքի թիվը հասցնում է 3000 այրուձի ու բազմաքանակ հետևակի և նրան կռվի է բռնեցնում ոչ թե Լուկուլլոսի, այլ Սեքստիլիոս լեգատի հետ, որի հետևանքով սպանվում է հայոց զորահրամանատարը։ Այս տարակարծությունները մատնում են պատմագիրների կողմնակալությունը. Տիգրանի պատմությունը դեռ սպասում է իր անաչառ հետազոտողին։ Գիտնականները անվերապահորեն հավատ են ընծայում այն ամենին, ինչ հաղորդում են պատմագիրները, մոռանալով, որ վերջինները իրենց երկերը կազմել են չափից ավելի պարծենկոտ Լուկուլլոսի ստահող զեկույցների հիման վրա, որը պարտիզանական ընդհարումները և ավազակային հարձակումները ներկայացնում էր որպես կանոնավոր ճակատամարտեր. ուր քսան հազարով պարտություն է մատնում Տիգրանի հրաշալի զինված հսկայական, մինչև 260—300 հազարի հասնող ուժերը, ընդ որում այն դեպքում, երբ թշնամին 100 հազարից ավելի սպանված է տալիս, իսկ 55 հազարանոց հռոմեական զորքից գրեթե ոչ մեկը չի փրկվում, Լուկուլլոսի զորքից վիրավորվում է 100 հոգի և սպանվում միայն հինգ կամ նույնիսկ ավելի պակաս՝ մեկ զինվոր։ Լուկուլլոսի զեկույցների բնույթի և պատմական արժեքի մասին կարելի է դատել հետևյալ դասական օրինակով. Արտաշատի տակ տեղի ունեցած ճակատամարտի մասին իր զեկույցի մեջ նա ի միջի այլոց գրում է, թե «իր դեմ կռվող երեք թագավորներից ամենախայտառակ կերպով փախչողը իբրև թե Միհրդատն էր՝ Պոնտոսի թագավորը։ Նա նույնիսկ հռոմեացիների աղաղակներին չդիմացավ։ Եվ այս ասվում է պատմության մեջ իր անվեհերությամբ նմանը չունեցող այն մեծ մարդու մասին, որի անունը միայն սարսափ էր ազդում Հռոմին, և որի մասին նրա մահից հետո ասում էին, որ «միայն հանձին մեկ Միհրդատի մեռան հազարավոր թշնամիներ»։ Plut. *Pomp.*

[1] Diod. XXXI 22, cf. Polyb. 30, 15։ Մենք տեսանք, որ Սոփաց եպիսկոպոսն էլ կրում էր Μερουζάνης անունը, տե՛ս վերը, էջ 386։

վորը Արտանեսն էր, որ սպանվեց Տիգրանի ձեռքով։ Միթրոբուզանեսը Արտանեսի հարազատներից մեկն էր, թերևս նրա որդին կամ եղբայրը։ Զրկվելով արքայական գիրքից՝ Զարեհ-Արտանեսի ժառանգները իրենց տիրակալական իրավունքները պահպանեցին Սոփենեում։

Մեզ հետաքրքրող անուններից երրորդը՝ Μαγκαῖος-ը պետք է կարդալ Μαμκαῖος կամ Μα<μα>γκαῖος, որը համապատասխանում է հայկական Մամիկ-ին։ Շատ կարևոր է ձեռագրերում որոնումներ կատարել։ Եթե հաստատվի մեր առաջարկած ձևը, հարկ կլինի Մամիկոնյանների քաջարի տոհմի սկզբնավորումը ետ տանել մինչև Տիգրան Մեծի դարաշրջանը։

Հիշյալ անձնավորությունները, որոնց Տիգրանը առաջավոր պաշտոններ էր հանձնել հռոմեացիների դեմ մոտալուտ պատերազմի կապակցությամբ, Բագադատն է, Միթրոբուզանեսը, Մանկայոսը, էլ չենք ասում Գուրասի մասին, այն թագավորներից էին, որոնք շրջապատել էին Տիգրանի արքունիքը։ Մեր այն հիմնական միտքը, թե Տիգրանի դարաշրջանում արդեն հանդես է գալիս դասային ազնվականությունը, բոլոր ճշմարտությամբ ապացուցված է անկախ նրանից, թե որքան հիմնավոր են կամ ընդունելի մեր եզրակացությունները հիշյալ անձնավորությունների վերաբերյալ։ Եվ լուրջ հիմքեր էլ չկան առարկելու, թե նշված գործիչները հետագայում մեզ լավ ծանոթ իշխանական գերդաստանների՝ Բագրատունիների, Մամիկոնյանների և Ծոփաց իշխանների նախահայրերն են։ Այս վերջիններից էին ծագում Արծրունի իշխանները, ինչպես կարելի է դատել նրանց տոհմում ընդունված անուններից[1]։

Այսպիսով, իրենց նշանակությամբ առավել կարևոր դիրք ունեցող իշխանական երեք գերդաստանները գոյություն ունեին արդեն Տիգրանի օրոք և հավանական է, որ նոր էին հանդես եկել։ Այդ ժամանակ, անկասկած, հայտնի էր նաև Մաղխազների

[1] Մարկվարտի կարծիքը Eranšahr, p. 176, չատ ճշմարտանման է։ Ծոփաց իշխանական տան մի ճյուղի տեղափոխությունը Աղբակ տեղի է ունեցել ոչ թե Տիգրանի ժամանակ, ինչպես կարծում է գիտնականը, այլ ավելի ճիշտ Արշակունիների օրոք։ Արծրունի բառի ստուգաբանությունը դեռ ճշտված չէ։ Այդ անվան ծագումը մեկնաբանելու բազմաթիվ փորձերից և ոչ մեկը չի կարող ընդունելի համարվել։

*տունը, որը, դատելով անունից, ավելի հին է, քան հիշյալ գերդաստանները։*

*Երկրի դասային շերտավորման և ազնվականացման ժամանակ այնուամենայնիվ որոշ դեր է խաղացել էթնիկական խայտաբղետությունը։ Որքան էլ որ ասիմիլյացիայի ենթարկվեցին տարասեռ զանգվածները, բայց, վերջին հաշվով, բաղկացուցիչ մասերը պահեցին իրենց կոլորիտը։ Մաղխաղի իշխանությունը Խորխոռունիների տոհմում, ասպետինը՝ Բագրատունիների, մամիկինը՝ Մամիկոնյանների և, վերջապես, տէր-ի գերագույն իշխանությունը նշանավորում են համապատասխան էթնիկական տարրերի ազդեցության գերակշռությունը ընդհանուր խմորման ժամանակ։ Սրանց եզրապատող գոտիները, որ անմիջական շփման մեջ էին հարևան ժողովուրդների հետ, ավելի քիչ էին ենթարկվում ձուլման։ Շնորհիվ այն բանի, որ նրանց խառը բնակչությունը միշտ թարմացվում էր հարևան ժողովուրդների առանձին հատվածների ներգաղթով, նրանք ինչ-որ չափով օտար էին մնում կենտրոնական մասերին։ Դրա հետևանքը եղավ Հայաստանի շրջագծի վրա քաղաքական չորս փոքր մարմինների, այսինքն՝ Գուգարաց, Աղձնյաց և Նոշիրականի բդեշխությունների առաջացումը. չորրորդ բդեշխի անունը հայտնի չէ։ Հայկական ավանդությունը բոլորովին սխալ է լուսաբանում նրանց ծագումը։ Բդեշխները իրոք որ պաշտպանում էին Հայաստանի սահմանները, բայց ոչ թե Հայոց թագավորի կամքով, այլ իրենց գրաված դիրքի բերումով, իբրև այդ ծայրամասերի տիրակալներ, ընդունելով, սակայն, Հայոց թագավորի իշխանությունը։*

*Էթնիկական կազմի խայտաբղետությունը չէր սպառվում հիշյալ տարրերով կամ խմբերով. կային նաև ամբողջ երկրում ցրված ցեղային ուրիշ զանգվածներ, որոնցից հետագայում նույնպես իշխանական տներ կազմվեցին։ Այդ ցեղերից մի քանիսը իրենց սկիզբն առնում էին շատ հին ժամանակներից, մյուսները երևան եկան համեմատաբար ավելի ուշ։ Եկվոր տարրերը՝ մեծ մասամբ քոչվոր ժողովուրդներից, իրենց հետ բերում էին կենցաղի այնպիսի ձևեր, որոնցից նա վաղուց հրաժարվել էր։ Այդ պատճառով էլ ազնվականության կողքին կարելի էր հանդիպել ավելի կամ պակաս կարևոր խմբերի, որոնք դեռևս ապրում էին տոհմական կյանքով՝ տոհմապետի իշխանության տակ։ Էթնիկական խայտաբղետությունը բնականաբար առաջ էր բերում սոցիալական կա-*

*ցության խայտաբղետությունը։ Պատմական կյանքի՝ մեր կողմից ընդունված պարբերացումը, ինչպես որ յուրաքանչյուր պարբերացում, ճիշտ է և ընդունելի լոկ ընդհանուր զարգացման տեսակետից։ Միշտ էլ կարող են լինել ընդհանուր հոսանքի հունից դուրս ընկած հետամնաց տարրեր։*

*Արդեն Տիգրանի օրոք աչքի են ընկնում եկվոր ցեղերից մի քանիսը, որոնք սկիզբ են դնում շատ կարևոր իշխանական տների։*

*Ինչպես պատմում է Պլուտարքոսը, Արտաշատի վրա Լուկուլլոսի հարձակման ժամանակ Տիգրանը նրա դեմ դուրս բերեց մեծաթիվ հեծելազոր, որի առաջին շարքերում կանգնած էին մարդերի հեծյալ նետաձիգները և նիզակակիր իբերները։ Հայոց թագավորը հատկապես սրանց վրա էր դրել իր հույսը[1]։ Մարդերը ծագում էին իրանական այն ցեղերից, որոնք ցրված էին Զագրոսի վրա, քոչվոր կյանք էին վարում և զբաղվում էին ավազակությամբ[2]։ Երբ Քսենոփոնը անցնում էր Կենտրիտես գետը, որ Տիգրիսի արևելյան բազուկն էր, նրա վրա հայերի հետ միասին հարձակվեցին նաև մարդերը։ Սրանք, անկասկած, Իրանի սահմաններից Հայաստան գաղթած հայկական մարդերն են[3]։ Երբ մ. թ. ա. 68 թվականին հռոմեական զորավար Կորբուլոնը՝ Լուկուլլոսի հաջորդը, Արտաշատից նահանջեց Տարոնի ուղղությամբ, նա ստիպված եղավ անցնել մարդերի երկրի միջով։ Մարդերը, որ դեռ այդ ժամանակ զբաղվում էին ավազակությամբ, հարձակվեցին հռոմեացիների վրա, բայց հակահարձակման ենթարկվելով, փախան և թաքնվեցին լեռներում[4]։ Սրանից երևում է, որ արդեն այն ժամանակ մարդերը բնակվել էին այն վայրերում, որոնք ավելի ուշ հայերը կոչում էին Մարդաստան կամ Մարդոցեք, այսինքն՝*

---

[1] Plut. *Luc.* 31, πολλοὶ γὰρ ἦσαν ἱππεῖς καὶ λοχάδες ἀντιπαρατεταγμένοι, πρὸ δ᾽ αὐτῶν ἱπποτοξόται Μάρδοι καὶ λογχοφόροι Ἴβηρες.

[2] Str. XI 13, p. 735=523, οἱ ἐν τῇ Περσίδι Κύρτιοι καὶ Μάρδοι (καὶ γὰρ οὕτω λέγονται οἱ Ἄμαρδοι) καὶ οἱ ἐν τῇ Ἀρμενίᾳ μέχρι νῦν ὁμωνύμως προσαγορευόμενοι τῆς αὐτῆς εἰσίν ἰδέας։ *Մարդերին ազգակից է համանուն ցեղը Կասպից ծովի մոտ, մարդեր կամ ամարդներ, որտեղից առաջ է եկել Ամոլը,* Աշխարհացույցի *Ամլը, որ ծագում է *Amrda-ից։* Andreas, Pauly-Wiss. RE. Amardi-*ի տակ։* Marquart. *Eranšahr*, p. 136.

[3] *Anab.* IV 3, 4. Ἀρμένιοι καὶ Μάρδοι καὶ Χαλδαῖοι.

[4] Tac. *Ann.* XIV 23, Corbulonem fines suos pragredientem incursavere Mardi latrociniis exerciti contraque iurumpentem montibus defensi.

*մարդերի երկիր*[1]*։ Այս մարդերից է իր ծագումն առել իշխանական այն տունը, որի ներկայացուցիչը կրում էր* մարդպետ, *mardpet, այսինքն՝ մարդերի պետ անունը։ Հետագայում այս անունը մաղխազի և ասպետի նման դարձավ տոհմական տիտղոս, և ինչպես վերջիններիս կրողները սկսեցին կոչվել Մաղխազունի, Ասպետունի, ճիշտ այդպես էլ մարդպետների տոհմը և նրանց տիրույթները կոչվեցին Մարդպետ-ական։*

*Ըստ Պլինիոսի, հայերին մոտ ապրում էին* menobardi-*ները և* moscheni-*ները*[2]*։ Առաջին անվանումը, ըստ երևույթին, պետք է կարդալ* <ar>*menomardi, իսկ երկրորդը՝ *mochs-eni, որ համապատասխանում է ոչ թե մոսխերին, ինչպես կարող է թվալ, այլ հայերի Մոկսին։ Ուրեմն՝ Մոկաց իշխանական տունն էլ էթնիկական առանձնահատկության սատառ ունի։*

*Մարդերի հետ միասին Զագրոս և Նպատ լեռների միջև ապրում էին* κύρτιοι *կուրտիները, որոնք մարդերի նման հաստատվել էին Հայաստանի սահմանագլխին՝ մարդերից հարավ այն տեղում, որ հետո նրանց անունով կոչվեց* Կորճէք[3]*։ Կուրտիները այժմյան քրդերի նախահայրերն են և նրանց չպետք է շփոթել կարդուխների հետ, որ այլ ծագում ունեցող մի ժողովուրդ է։ Վերջիններիս երկիրը, ի տարբերություն* Կորճէքի՝ *կուրտիների երկրի, հայերը կոչում էին* Կորդուք: *Դեռևս Փավստոսի մոտ Կորճեքը համարվում է Սալմաստի շրջանը, ավելի ուշ, ըստ երևույթին քրդերի ազդեցությունը ուժեղացավ և նա ընդգրկեց նաև հարևան Կորդուաց հողերը։*

---

[1] *Տե՛ս վերը, էջ 354, Մարդոցէք* Սեբեոս, *էջ 138, կամ Մարդուցայք,* Ղևոնդ, *էջ 7, բաղկացած է Մարդոց-ից* nom. loci *mard-ից, իսկ* Լէ *կամ* այք *ածանցը տալիս է* nom. ethn. *նշանակությունը.* Մարդոցի բնակիչներ, *ինչպես Կորճ-էք, Հայաստան-եայք և այլն։ Մարդաստանից բացի, մարդերի անունը կրում է, ինչպես մենք կարծում ենք (տե՛ս վերը, էջ 56), նաև Մարդաղի գավառը։ Կարող է պատահել, որ մարդալյան մարդերը ծագում են այն մարդերից, որոնք խալդայների հետ միասին հարձակվեցին Բաբելոնի վրա Կենտրիտես գետի ափին։ Խալդայների հետ միասին նրանք, ինչպես երևում է, շարժվել են դեպի հյուսիս և գրավել այն վայրերը, որոնք կոչվեցին Մարդաղի և Խաղտիք։ Իսկ մարդերը Մարդաստան եկան, հավանորեն, ավելի ուշ՝ Իրանի կողմից։*

[2] Plin VI, 10.

[3] *Կորճէքը առաջ է եկել *Կորտիճ-այքից, ուր կորտիճ նշանակում է* Քուրդ, *ինչպես տարպատ-իք, բաղաս- իք և այլն։ Անդրեասի kurti-haik մեկնաբանությունը հիմքից զուրկ է։*

*Կուրտինները և կարդուխները մյուսներից ավելի քիչ ընկան հայերի ազդեցության տակ. բայց և այնպես աննկատելի կերպով թափանցում էին հայոց հողերը, և երբեմն նրանց երկրները համարվում էին Հայաստանի նահանգներ։ Կադմոսի կամ Կադմեան իշխանական տունը, ըստ երևույթին, շատ սերտ կապ ունի Կորդուենի՝ Կարդուքի հետ*[1]*։*

*Սկզբում կուրտինների երկրում և հետագայում նրանց հարևանությամբ ապրում էին* matiani*-ները։ Հին հեղինակների տվյալները հաստատվում են նոր հետազոտողների եզրակացություններով այն մասին, որ* mati *ժողովուրդը ոչ միայն արյունով, այլև անունով ազգակից է մադերի,* mada*-ների հետ։ Նույն անվանման մի այլ ձևն է* manda*։ Ասորեստանյան արձանագրությունների մեջ այսպես է կոչվում այն ժողովուրդը, որի թագավորը Աստիագեսն էր։ Մադան այնպես է հարաբերում* manda*-ին, ինչպես* mati*-ն՝* manti*-ին։ Այս ձևը կա Ուրմիո լճի* Μαντιανή*-ի անվան մեջ, որ առաջ է եկել, անկասկած, մի ժամանակ այնտեղ ապրող ժողովուրդներից*[2]*։ Զուգահեռ ձևերը հանդիսանում են բար-*

---

[1] *Ըստ Անանունի և Խորենացու Կադմոսը Հայկի թոռն է և Արամենակի որդին, նրանից էլ ծագում է Կադմեայ տունը։ Կարող է պատահել, որ kadm-ը սխալ հասկացված ասորական kadum—առաջին բառն է և որ «հեր ժառանգության Կադմեայ (Թոռին իրում) որդույն Արամենակայ» նշանակում է ավելի Արամենակի առաջին կամ ավագ որդուն։ Մյուս կողմից պակաս ճշմարտանման չէ, որ կադ-մ-ոսը ասորական kasdim-ի, որ kasd-ի հոգնակին է, տեղական համարժեքը լինի, որտեղից էլ առաջ եկած են համարում kard-ը՝* kardu-x-oi, Cor-du-eni *և* Chaldu *բառերի հիմքը։* Н. Марръ. *Основныя таблицы древне-груз. языка*, 1908, p. 5. Hommel, *Grundriss der Geogr. und Gesch. d. alten Orients*, 1904. I, p. 187, anm. 4 *և* p. 244, anm. 4*։ Այսպիսի լուսաբանությամբ Կադմեանը նույնպիսի անուն է, ինչպես Թորգոմեան, Արամեան և այլն։*

[2] Herod. V, 52, Μαντιηνη-*ն հայերին հարող մի երկիր է Զաբ գետի կամ, ինչպես նա անվանում է, երրորդ Տիգրիսի վրա։ Ըստ նրա վկայության՝ Սարդեսից Շոշ տանող արքայական ճանապարհը անցնում էր Հայաստանի և Մատիենեի միջով, ընդ որում Հայաստանում 56,5 փարսախ տարածության վրա գտնվում էին 15 կայան, իսկ Մատիենեում՝ միայն չորս։ Սրանից երևում է, թե այդ երկրների գրաված տարածությունների միջև ինչ հարաբերություն կար։ Ստրաբոնը* Ματιανή-*ն տեղադրում է Մարաստանում,* X, 7, p. 509—714*։ Պաղոմեոսը VI, 2, 5 հիշատակում է* Ματουστάνα *matu-ից և stāna-ից նաև* Μαρτιανή*։ Ըստ Ստրաբոնի, Ուրմիո լիճը կոչվում էր* Μαντιανή, *որը նրա բացատրությամբ* κυανῆ ἑρμηνευθεῖσα*։ Մարաստանի նկարագրության մեջ այդ նույն լիճը կոչվում է* Σπαυτᾶν, p. 735*։ Մի դեպքում աշխարհագետը օգտվում է Ապոլոնիդեսից,*

*բառային առանձնահատկություններ*[1]։ *Դրանց հետ սերտորեն կապվում են հայոց Ամատունի՝* A-mat-uni *և Մանդակունի՝* Mand-ak-uni *իշխանական տների անունները։ Հայկական ավանդությունները, նաև այն, որ Ամատունիները բնակվում էին Արտազում, վկայում են նրանց իրանական ծագման մասին*[2], *մի հանգամանք, որ խոսում է հօգուտ վերոհիշյալ զուգադիպության։*

*Մադերը ծանոթ էին հայերին սովորաբար մարեր անունով, իսկ mar-ը նույնպես ծագում է mada-ից։ Հայկական այն ավանդությունը, ըստ որի Մուրացան իշխանական տոհմը ծագել է մարերից, ինձ թվում է, որ անհիմն չէ։ Այն վայրը, որտեղ բնակություն հաստատեցին մարերը, հայերեն պիտի հնչվեր* Մարաց, *ինչպես որ մարդերի հայրենիքը կոչվում էր Մարդ-ոց։ Այստեղից էլ* Մարաց-եան, *կամ պարսկ.* ān-*ով՝* Մարաց-ան *և ավելի ուշ՝* Մուրացան[3]։

---

*իսկ մյուս դեպքում՝ Էրատոսթենեսից, ըստ որում, Թյուրիմացաբար նա* χυανῆ-*կապույտ բառը համարել է* Μαντιανή-*ի թարգմանությունը, մինչդեռ թարգմանությունը վերաբերում է* Σπαυτᾶν-*ին՝* <Κα>ποῦταν-*ից։* Աշխարհացույցի *Կապուտանը, պարսկ.* کبودان *է, որը իրոք նշանակում է* կապույտ։

[1] *Mada-ի և ուրիշ ձևերի ստուգաբանությունը դեռ չի ճշտված, տե՛ս* Hommel op. cit. p. 195 *և* Paul Rost. *Untersuchungen zur altorientalischen Geschichte.* Mith. d. Vord Ges. 1897, 2. *Վերջին հեղինակը համեմատում է* mada-*ն* madh-*ի հետ* verständinqen, in verständlicher Sprache redenden *իմաստով,* I. c. p. 73. *Ստրաբոնի վկայությամբ Մարաստանը և մանավանդ Մատիանան հռչակված էին նրանով, որ* ἡ μὲν ἄμπελος μητρητὴν οἶνου φέρει *և որ* ἐν δὲ τοῖς δένδρεσι σμηνουργεῖται καὶ τῶν φύλλων ἀπορρεῖ μέλι, *XI 7, 2,* p. *509=714 և* p. *73=95. Թերևս երկրի այդ հատկությունը հիմք ծառայի* mada-*ն և* mati-*ն առաջ եկած համարելու գինի և մեղր նշանակող արմատից.* madu *ավեստ.* mada, *հուն.* μεθυ, *սլավոն.* медъ *(մեղր)։*

[2] *Ըստ* Խորենացու *Բ, ծէ, Ամատունիները եկել են Համադանից և ծագում են «ի Մանուեայ ումեմնէ»։ Ամատունի նա ստուգաբանում է՝* Եկ-ե կ վ ո ր ն ե ր, *ըստ երևույթին պարսկ.* امد *բառից։ Էլ ինչու՞ է նա հիշատակում Մանու նախահորը, որի անունով, ինչպես հավաստացնում է պատմիչը, պարսիկներից ոմանք նրանց անվանում են Մանուեան։ Ըստ երևույթին ավանդության մեջ խոսքը Մատու-ի և Մատուեան-ի մասին է, որ աղճատվել է և դարձել Մանու, Մանուեան։ Իսկ* Matu-*ն համանուն ժողովուրդ ցույց տվող էպոնիմ է։ Ա-մատունիի սկզբի ա-ն հանդիպում է նաև* A-madai *ձևով, փոխ.* Madai-*ի, որը ի միջի այլոց համարվում է ալարոդյան արտասանության առանձնահատկությունը* Hommel, *op. cit.* p. 195, *ann.* 2.

[3] *Գահնամակում Մարացեան է, այնպես է նաև* Թովմա Արծրունու *մոտ,*

*Ատրպատականի հողերից Հայաստան էին թափանցում ցեղային առանձին խմբեր։ Ատրպատականը և Կասպից ծովի ափերը հին ժամանակներից սկսած բնակեցված էին խաշնարած կամ քոչվորական կենցաղով ապրող բազմաթիվ ցեղերով։ Տիգրանի ժամանակ նրանցից շատերը, որ թափառում էին Արաքսի ափերին, նրան օգնության եկան ընդդեմ հռոմեացիների[1]։ Գելերի, կադուսիների, ամարդների կողքին հիշատակվում են* οὔτιοι-*ուտիները կամ ուիտիները, որոնց հետ ազգակցություն ունեն հայկական ուտիացիները։ Սկզբում ուտիները ապրում էին Արաքսից հարավ, ապա՝ հյուսիս, ընդ որում Արաքս գետը սահման էր Օտենայի և Ատրպատականի միջև։ Պտղոմեոսի ժամանակ Օտենան արդեն ընկած է Կուր գետի ափին և ուրեմն՝ համապատասխանում է հայկական Ուտիքին[2]։*

*Ուտիների հետ միասին դեպի Արաքս և Կուր գետերի միջև ընկած ավազանը շարժվեցին գելերը, որոնցից ծագում է, հավանաբար, հայկական* Գեղ, Գեղարքունի[3] *տեղանունները, ինչպես նաև անիա-ները, որոնք Փայտակարանի Հանին կապում են Շիրակի* Անի *քաղաքի հետ[4]։*

*Օտենայի գավառներից մեկը՝ Շակաշենը, սովորաբար նույ-*

*էջ 109, փոխանակ Մարոցեանն* Խորենացին *Բ, ը, պնդում է, որ «ոչ աանն նահապետի ազգին Մուրացան տէր, այլ Մարացւոցն տէր», բայց ինքը Արգամին անվանում է «տանուտէր ազգին Մուրացան», Բ, խգ և «Նահապետ Մուրացանաց», Բ, խգ։*

[1] Plut. *Luc.* 26, οὐκ ὀλίγοι δὲ τῶν περὶ τὸν Ἀράξην νεμομένων ἀβασίλευτοι χάριτι καὶ δώροις πεισθέντες.

[2] Herod. II 93, VII 68, Str. p. 714=508, p. 721=514. Plin. VI 42, Atrpatene ab. Armeniae Otene regione discreta Araxe. Ptol. V 12, 4 παρὰ δὲ τὸν Κύρον ποταμὸν... ἡ Ὠτηνή.

[3] Γῆλαι, *որտեղից էլ այժմյան Գիլան-Գեղ-ացը,* Եղիշե, *էջ 218, կամ Գեղամ,* Կաղանկատվացի, *Բ, ժԲ, Երկիր Գեղմ-այ* Սեբեոսի *մոտ, էջ 57—58, Երկիր Գեղմ-այ,* Խորենացու *մոտ, Բ, ծգ, Գեղմանց լեառն։ Հմմտ. Գեղ. Գեղամ, Գեղարքունի։*

[4] *Ըստ Ստրաբոնի* Ἀινιά-νοι *ապրում էին Ուտիքում, և նրանց քաղաքը կոչվում էր* Αἰνιάνα, *էջ 508=714։ Անդրեասի կարծիքով այստեղից է առաջ եկել հայկական* Հանին *Փայտակարանում,* Paul-Wiss. RE. Ainiana։ *Իսկ Ստրաբոնը վկայում է, որ* τῶν Αἰνιάνων τινὲς οἱ μὲν τὴν Οὐιτίαν οἰκῆσαι οἱ δ' ὑπερθε τῶν Ἀρμενίων ὑπὲρ τὸν Ἄβον καὶ τὸν Νίβαρον, p. 531=746։ *Այս խոսքերի հիման վրա հայկական* Անի-ն *կարելի է վերագրել* Ἀινιά-νοι։

*նացվում է հին հեղինակների՝ Սակասենեի հետ, իսկ Սակասենեն համարվում էր սակերի տոհմական տիրույթը։ Պատմում են, որ միջինասիական տափաստաններից սակերը շարժվել են դեպի հարավ Բակտրիան և գրավել այն երկրամասը, որ հետո նրանց անունով կոչվեց Սակաստան, ներկայիս Սեիստանը։ Այնուհետև նրանց մի մասը շարժվեց դեպի Արևմուտք և անցնելով Հայաստանի վրայով՝ հասավ Պոնտոսի ափերը։ Սակերի մնացորդները Հայաստանում հաստատվեցին ամենաբերրի շրջանում, որն այն ժամանակվանից սկսած հայտնի է Սակասենե անունով*[1]*։ Սակասենեի կապը սակերի հետ վերջին ժամանակներս վիճելի է համարվում, բայց ըստ երևույթին այդ այնքան էլ հիմք չունի*[2]*։ Դարեհ Կոդոմանոսի ժամանակ արդեն հիշատակվում է* Σακεσίναι *ժողովուրդը, որ ապրում էր աղվանացիների և կադուսիների հարևանությամբ. այս երեք ժողովուրդները գտնվում էին Մարաց բանակում՝ Ատրոպատեսի հրամանատարության տակ*[3]*։ Ինչպես էլ որ բացատրելու լինեն Սակասենների ծագումը և նրանց կապը սակերի հետ, այնուամենայնիվ, անվիճելի է, որ եղել է այդպիսի մի ժողովուրդ։ Աղվանքին հարևան հայկական աշխարհներից ամենից ավելի հայտնին Սյունիքն է։ Այն կազմում էր մի միասնական իշխանություն, ինչպես Մոկքը և Տայքը, և թեև մտնում էր Հայաստանի մեջ, բայց աչքի էր ընկնում անջատողական հակումներով։ Այս հան-*

---

[1] Str. XI 8, 4, p. 511=718, Σακαὶ... τὴν Βακτρίαν κατέσχον καὶ τῆς Ἀρμενίας κατεκτήσαντο τὴν ἀρίστην γῆν ἣν καὶ ἐπώνυμον ἑαυτῶν κατέλιπον τὴν Σακασηνήν.

[2] Hübschmann-*ը* *Ortsname*, p. 457, *գտնում է, որ դրան խանգարում է —š հնչյունի առկայությունը —s-ի փոխարեն Շակաշենի մեջ։ Եթե անգամ անվիճելի լինեն, որ* saka-*ն հայերեն պիտի հնչեր սակ, և ոչ թե չակ, այնուամենայնիվ այդ անկանոնությունը կարելի է վերագրել ուտիական կամ աղվանական արտասանության առանձնահատկություններին։ Մարկվարտը,* *Eranšahr*, p. 120, n. 3, *կարծում է, որ Սակասենեի ստուգաբանությունը, ինչպես նաև* τὰ σάκαια *տոնակատարությունների նկարագրությունը հին հեղինակների հասարակ մի ենթադրություն է, զուրկ պատմական արժեքից։ Նրա կարծիքը ճիշտ է* σάκαια-*ի վերաբերյալ, որ ոչ մի կապ չունի սակերի հետ և հավանորեն ծագում է* sāk-*տուրք բառից և ցույց է տալիս, թե ինչ մեծ նվիրաբերություններ էին կատարվում տոնակատարության ժամանակ։*

[3] Arr. *Anab.* III 8. ξυνεστάττοντο δὲ Μήδοις Καδούσιοι τε καὶ Ἀλβανοὶ καὶ Σακεσίναι. *Սարարոնի մոտ* p. 528=742, Σακασηνή, Plin. VI 29, Sacasani, Ptol. V 12, ΣακαΠηνή.

*գամանքը անկասկած պետք է վերագրել նախ և առաջ երկրի էթնիկական առանձնահատկությանը։ Հասկանալի է, որ գիտնականները սակերի հետքերը որոնել են ոչ միայն Սակասեննում, այլ նաև հարևան Սյունիքում, կամ, ինչպես անվանում էին պարսիկները, Սիսականում։ Նույնիսկ փորձեր են եղել* Σακασηνή*-ի փոխարեն կարդալ* Σισακάνη, *հակառակ բնագրի տվյալների*[1]։

---

[1] De Lagarde, *Gesam. Abh.* 155, *Arm. Stud.* 1895, *կարծում է, որ երկրի բուն անունը եղել է* Si, *իսկ սակերի կողմից գրավվելուց հետո դարձել է* *Si-sakān*, *այսինքն՝ սակերի սի։ Այս մեկնաբանությունը անընդունելի է։ Երկնակի անվանումները մեծ մասամբ ունենում են առանձին ծագում։ Հայկական* Սիւնի *ձևը բաղկացած է* սի *հիմքից և* ունի *վերջավորությունից, մինչդեռ պարսկականը իբրև հիմք ենթադրում է* սիս-*ը։ Սյունյաց իշխանական տան պատմիչը հաղորդում է, որ Վաղարշակ թագավորը Սիսական տոհմին հանձնեց արքայական զորքերի բարձր հրամանատարության իրավունք՝ պայմանով, որ նրանք «ընդդէմ կալ հանապազ պատերազմաւ դրանն Հոնաց, որոյ անուն առաջնոյն Սիսան կոչիւր»,* Օրբելյան Ա, *դ։ Օրբելյանից մի քանի դար առաջ արաբ հեղինակ Իբն-ալ-Ֆակիհը (մոտ 903 թ.) նշում է, որ Օսման խալիֆի ժամանակ (644—656) արաբները գրավեցին Բայլական քաղաքը և հեծելազոր ուղարկեցին նվաճելու* سيسن والمسقوان واُودو والمصيران والمهرجليان وهى رساتيق عامرة De Goeje V, p. 293=Карауловъ, *Сборник Кавк.* p. 27։ *Այդ ռուստակների մեջ դժվար չէ նշմարել* Սիսանը *(փոխ. տպագր. Սիսարի), Մասկուանը՝ Մեծկուան-քը, Ուդի՝ Ուտիքը, Մեհրան՝ Մեծիրան-քը, վերջին անունը՝ Հարճլան-ք կամ Մու<խան> Հարճլան-քի աղճատումն է։ Բացի առաջինից, մյուսները* Աշխարհացույցից *հայտնի են որպես Արցախ նահանգի գավառներ։ Առաջին անունը Օրբելյանի Սիսանն է, որի տեղեկությունների համաձայն այդպես էին կոչվում սկզբում Հոնաց դռները, այսինքն՝ այժմյան Դերբենդը։ Վերոհիշյալ արաբ հեղինակը, մանրամասն նկարագրելով Դերբենդի անցքը, որը մի երկար պարսպով ամրացրեց Խոսրով Նուշիրվանը, ասում է. պարսպի մեջ փորված է յոթ անցք և նրանցից յուրաքանչյուրի մոտ կառուցված է քաղաք, որի մեջ ապրում են սիասիկին կոչվող պարսիկ զինվորներ* المقاتلة من الفرس يقال لهم السياسكين *ասում են,— շարունակում է նույն հեղինակը,— որ Հայաստանից եկած հայերը պարտավոր են պաշտպանել այդ պարիսպը և այդ դռները»։ Նույն տեղում, 291,* Карауловъ, *էջ 23։ Վերջին խոսքերը տարակույս չեն թողնում, որ արաբական սիասիկինը սիսականի հոգնակին է։ Արաբական իսկական արտասանությունը ս ի ս ա ջ ա ն է, հոգնակին՝ ս ի ս ս ի ջ ի ն։ Այսպես է նույն տեղում, էջ 728,* Карауловъ, *էջ 17։ Նուշիրվանը Սիսաջան երկրում շինեց Վայսը* ويصر *=Վայոց <ձոր> և ուրիշ ամրոցներ և դրանք բնակեցրեց սիասիջիցիներով, որ ռազմասեր և խիզախ ցեղ էր)։ Արաբական ճիշտ արտասանությունից կատարված շեղումը ցույց է տալիս, որ հեղինակը ներկա դեպքում այն վերցրել է հին պարսկական աղբյուրից։ Քանի որ դռների պաշտպանությունը դրված էր Սիսականի բնակիչների վրա, որտեղ գտնվում էր Սիսան գավառը, ապա հասկանալի է, թե ինչո՞ւ*

*Այս ընթերցումն անհաջող է նաև այն պատճառով, որ Սիսականը, որը ըստ Խորենացու Սյունիքի համարժեքն է, չկա հին հուշարձանների մեջ և, դատելով նրա ձևից, ծագել է նույն ժամանակ և նույն ճանապարհով, ինչ որ* Տանուտերական, Սեպհական, Վասպուրական *տերմինները, և սրանց նման* Սիսական գունդ-*ի կրճատ ձևն է։*

*Տվյալ նահանգի կրկնակի անվանումների ծագումը դեռ մութ է, և որոշակի ոչինչ չի կարելի ասել, թե նրանք ի՞նչ կապ ունեն ինչպես միմյանց, այնպես էլ սակերի հետ։ Անկասկած է միայն մի բան, որ Հայաստանի աղվանական ծայրամասը՝ Սյունիքը, իր բնակչությամբ փոքր-ինչ տարբերվում էր Հայաստանի կենտրոնական մասերից։ Նրա ցեղային բացառիկությունը պահպանվում և թարմացվում էր մերձակա լեռնային երկրներից թափանցող գաղթականական հոսանքներով։ Նրանց հետքերը պահ-*

---

*այդ դռները կրում էին Սիսան անունը։ Դա պատմական այն փաստի արձագանքն է, որ այդ դռները պաշտպանում էին Սիսանի հայերը (հմմտ. Վասակի խոսքերի հետ),* Ղազար Փարպեցի, *էջ 83, «եւս մինչ Վրաց մարզպան էի եւ դուռն Աղուանից յիմում ձեռին էր՝ բազում զօրագլուխք հոնաց ընդ իս բարեկամացան»։ Պե՞տք է արդյոք ենթադրել, որ Սիսանը Սիս<ակ>անի կամ Սիս<աջ>անի կրճատումն է, թե՞ պետք է ընդունել, որ այն կազմված է նույն Սիս հիմքից, հոգնակիի նշան հանդիսացող ան-ի օգնությամբ և համեմատության մեջ դնել այն արդի Սիսիանի հետ, որ Զանգեզուրի գավառի՝ հին Սյունիքի մի մասն է, թեև Սիսիանը կարող է համարվել նաև Սիսականի կրճատ ձևը։ Այն հարցը, թե արդյոք Սիսը առանձին ցեղի անուն է, թե միևնույն ծագումն ունի, ինչ որ Սյունիքը, մնում է չպարզված։ Սյունիք ձևը Սիսականից ավելի հին է։ Այն հիշվում է Եվսեբիոսի մոտ,* καὶ ὅλῃ τῇ Ἀλανίᾳ καὶ Ἀλβανίᾳ καὶ Ὠτηνῇ καὶ Σαυνίᾳ. Προπ. εὐαγγ. VI 31, Латышев, *Известия*, p. 664։ *Ենթադրվում է, որ Ստրաբոնի* Φαυνῖ-τις *պետք է կարդալ* Σαυνῖ-τις. *Պրոկոպիոսը հիշատակում է* Σουνῖται, *որպես աղվանացիների հարևաններ,* Pers. I, 15, p. 74։ *Պարսկերեն սիսական ձևը առաջին անգամ հիշատակում է Զաքարիա Հռետորը (554 թ.)* Sīsagān-*ը Զաքարիան համարում է Հայաստանից զատ մի երկիր* Arrān-*ի և* Gurzān-*ի նման։ Հայ գրականության մեջ ևս Սիսականը հիշատակվում է Սյունիքից ավելի ուշ եկած։ Ուշագրավ է, որ Անանունը Հայկազյան տոհմի ծննդաբերության մեջ Սիսակին չի հիշատակում, թեև կա Խորենացու մոտ։ Արդյոք այդ նշանակու՞մ է, որ նրա օրոք Սիսականը դեռ գործածական չէր, թե՞ նշում է այն շրջանը, երբ Սյունիքը անջատվել էր Հայաստանից (571-ից մինչև 660 թ.)։ Սիսականի* sis *հիմքը կարելի է հանգեցնել Սիւնիքի սի-ին, եթե ընդունենք, որ* sis-*ը վերաբերում է* si, si-k *այնպես, ինչպես Բաղա[ական]-ը՝ Բաղ-քին,* Moks-ena-*ն՝ Մոկ-քին,* Akilis-ena-*ն՝ Եկեղի-ք-ին, Եկեղեաց-ին և այլն։*

պանվել են աշխարհագրական անունների մեջ, այսպես՝ **Բաղf**, **Սորf**, **Աղահէճf**, **Գարգար-ացիf**, **Մուխանf** տեղանունների էթնիկական ծագումը կասկածից դուրս է։

Առաջին անվանումը կապ ունի **Բաղասականի** հետ և ծագում է լեռնական **բաղասճի-f** ցեղից, որ հայտնի է դեռ Փավստոսից[1]։

Սոթ-քը Sot-k̄ Սյունիքի գավառներից մեկն է, որ իր անունը ստացել է հարավային Աղվանքում ապրող sodi, հայկական՝ **ծով-դէ-ացի** ժողովրդից և համապատասխանում է Սոդուկեններին, որ հին հեղինակների մոտ հիշատակվում է Ուտենայում գտնվող Կոլթենեի՝ հայկական Կողթ-ի կողքին[2]։

Գարգարներին Փավստոսը հիշատակում է այն լեռնականների թվում, որոնք Խոսրով Կոտակի թագավորության ժամանակ **բաղասճիf** ցեղի հետ ներխուժեցին Հայաստան։ Սրանք հենց Խորենացու գարգարներն են՝ Ուտիների, Գարդմանների և ծավդեացիների հարևանները[3]։ Հետագայում Գարգարների դաշտ կոչվեց հին

---

[1] Փավստոս, Գ, է, «զօրս Բաղաս-ճացն» ապրում են Կուր գետից հյուսիս։ Կոռյունի մոտ, էջ 81, «Բաղասական կողմանքն» ընկնում են Աղվանքից Գարդման և Տաշիր տանող ճանապարհի վրա, նշանակում է Կուր գետի հոսանքով։ Մուսուլման հեղինակները Բաղասականը նշում են Արաքսի աջ ափին՝ Արդաբիլի և Վարդան[ակերտ]ի միջև, Eranšahr, էջ 120 (հմմտ. Բաղանրոտ balān rod, որ Փայտակարանի մի գավառն էր)։ Այստեղից երևում է, որ հիշյալ ժողովուրդը լեռներից իջել է Կուր գետի հովիտը, առաջ է անցել և հասել մինչև այն վայրերը, որտեղ Կուրը միանում է Արաքսին։ Այս տեղաշարժի ժամանակ, հավանորեն, նրանց մի մասը բնակություն է հաստատել մի բնակավայրում, որ հետո կոչվել է նրանց անունով՝ Բաղ-ք, Բաղ-ս։ Եղիշեն ասում է, որ Վասակը «բարեկամացեալ էր ընդ Հեռանայ հոնի միաբանութեամբ Բաղասական արքային», էջ 253։ Քանի որ Ղազար Փարպեցու խոսքը միայն հոների մասին է, ապա պետք է ենթադրել, որ Եղիշեի հիշած Բաղասականի արքան նույն հոն Հեռանն է։ Այս դեպքում կարող է պատահել, որ Հեռանը ոչ այլ ինչ է, քան Առանի Աղվանք ձևը, այսինքն՝ Վասակը բարեկամություն էր հաստատել Առանի կամ Աղվանքի հոների հետ, որոնց վրա իշխում էր Բաղասականի արքան։ Հավանորեն, Բաղաս-ները հոնական ցեղերից էին։

[2] Plin. VI, 29, sodi։ Պտղոմեոսի մոտ՝ Σοδουκ-ηνη, հայկական Սոդքն է։ Ուշագրավ է Օրբելյանի նշումը՝ «սակս հանապազորդեան բքոց և դառնաշունչ օդոցն կոչեցաւ Սոթք, Ա, գ, Աղահէճք, ըստ երևույթին, առաջ են եկել այն փոքրիկ ժողովրդից, որի մնացորդները այժմ կոչվում են չահիճ և բնակվում են Դաղստանի հարավային մասերում։

[3] Փավստոս, Գ է, «զօրս Գուգարացն» փոխ. Գարգարաց, Գուգարքի շատ հայտնի շրջաններից մեկի՝ Գողարենի ազդեցությամբ։ **Խորենացի**, Բ 8, Գարգարացւոց,

Ուտիքը կամ Օտենեն par excellence Պարտավ քաղաքի հետ միասին։ Պարտավի մոտ Կուր գետի վտակներից մեկը այժմ էլ կոչվում է Կարկար: Հայ գուգարները, ինչպես երևում է, ծագում են այն լեռնական գարգարցիներից, որոնք ապրում էին Աղվանքից հյուսիս՝ Կերավնյան նախալեռների ստորոտներում կամ Կովկասյան լեռնաշղթայի աղվանական ճյուղի վրա[1]։

---

իշխանութիւն, Թովմա Արծրունի, էջ 117—216, Ի դաշտն Գարգարացւոց... ի քաղաքն Պարտաւ։

[1] Str. VI, 5, էջ 504=707, Γαργαρεῖς։ Γωγαρηνή համահնչուն անունը, որ ծանոթ է նաև Ստրաբոնին, ընդհանուր ոչինչ չունի գարգարացոց հետ և պատկանում է հայկական անվանացանկին և, թերևս=ասորական kakkari-ին, որ նշանակում է երկիր, նահանգ։ Ի միջի այլոց ո՛չ ստուգաբանորեն և ոչ էլ պատմական տեսակետից արգելք չկա գուգար-ը մոտեցնել գարգարքին և դրանց համարել ավելի վաղ ժամանակվա եկվորներ։ Այդ շատ դայթակղիչ է մանավանդ նրանով, որ Գողարենեի հարևան գավառները են՝ Շիրակը և Աշոցքը, հիշեցնում էին լեռնական այն ցեղերը, որ հիշատակվում են Ստրաբոնի մոտ Σιράκων καὶ Ἀόρσων φῦλα, Str. p. 506, որոնք Մեոտիան և Կասպից ծովերի միջև ընկած տարածության վրա թափառող ցեղերից ամենամեծաթիվն ու ամենաուժեղն էին։ Նրանք հյուսիսից իջնում էին հարավ (φυγάδες τῶν ἀνωτέρω) և, աստիճանաբար զարգանալով, զբաղվում էին հնդկական ու բաբելական ապրանքների առևտրով՝ ստանալով դրանք մարերից և հայերից, ἐνεπορεύοντο καμήλοις τὸν Ἰνδικὸν φόρτον καὶ τὸν Βαβυλώνιον παρά τε Ἀρμενίων καὶ Μήδων διαδεχόμενοι, Str. p. 711։ Նկատի ունենալով հայերի հետ ունեցած այսքան սերտ հարաբերությունները, զարմանալի չէ, եթե նրանց մի մասը գաղթեր Հայաստան և հաստատվեր այն բնակավայրում, որը հետո կոչվեց Շիրակ=Σιραχ և Աշոցք=Ἀόρσοι։ Ըստ Պլինիոսի VI, 16, Seraci-ների կողքին ապրում էին Cephalotomi-ները։ Ստրաբոնից իմանում ենք, որ նրանց իսկական անունն էր ս ա ր ա պ ա ր ա և որ նրանց մի մասը գաղթել է դեպի Մարաց սահմանները φασὶ δὲ καὶ Θρακῶν τινας, τοὺς προσαγορευομένους Σαραπάρας οἷον κεφαλοτόμους, οἰκῆσαι ὑπὲρ τῆς Ἀρμενίας πλησίον Γουρανίων καὶ Μήδων, Str. XI 14, p. 531=747։ Եթե ընդունենք, որ իրենց հարևան սիրակ-ների հետ միասին Հայաստան են գաղթել նաև սարապարաները, ապա Շիրակի իշխանների՝ Կամսարականների տոհմական անունը մեզ կներկայանա նոր լույսի տակ։ Sara-para նշանակում է տառացի հենց κεφαλό-τομος։ Ըստ Խորենացու Բ, ձէ Կամսար նույն նշանակությունն ունի՝ «պակաս գլով բոլորութիւն գագաթանն», այսինքն կազմված է kam-ից և sara-ից։ Այդ հիման վրա կարելի է ենթադրել, որ Կամսարականները Շիրակ գաղթած սարապարաների հաջորդներն են։ Հետագայում, երբ Շիրակն անցավ Արշակունիների այն ճյուղին, որ հաստատվեց Արշարունիքում, նրան անցավ նաև Կամսարականների տոհմանունը։ Խորենացու մեջ բերած հայկական զրույցների համաձայն Շիրակը առաջացել է Շարայից, իսկ Գուգարքը՝ Գուշարից։ Պարզ է, որ Շարայը և Գուշարը պարզ էպոնիմներ են։ Շարայը այն-

Մուխ-ան-ը *Արցախի նահանգի գավառներից մեկի անունն է, որ ծագում է Կասպից ծովի ափերին ապրող ցեղերից մեկի՝* μύχοι-*ներից*[1]*։ Սրանց մասին հիշատակություն պահպանվել է այն տափաստանի անվան մեջ, որ կոչվում է* Մուղան-դաշտ, *այսինքն՝ մուղերի դաշտ։*

*Այդպես էլ Պազկան-քը, ավելի ճիշտ՝ Պարսականքը, որ գտնվում է նույն Արցախում, ծագում է* Πάρσιοι *ժողովրդից, և գուցե* kust-i þarens-*ը կապ ունի* Παρράσιοι-*ի հետ*[2]*։*

*Ինչպես բոլոր թվարկված, այնպես էլ մյուս էթնիկական խմբերը այն տարրերն են, որոնցից կազմվեցին համապատասխան իշխանական տոհմերը։ Նոր տարրերի ներգաղթը, ցեղային առանձին խմբերի ներթափանցումը շարունակվեցին նաև դրանից հետո. շրջակա երկրներից հաճախ գալիս էին նոր խմբեր, որոնք ժամանակի ընթացքում նույնպես ծնունդ տվին իշխանական տների։ Այդպիսի պայմաններում երկրի ազնվականացումը չէր կարող տեղի ունենալ միանգամից, և եթե մենք նշում ենք Տիգրան Մեծի դարաշրջանը որպես տոհմական հիմքերի կործանման և դասային ազնվականության առաջացման ժամանակաշրջան, ապա դա պետք է համարել իրավացի՝ ընդհանուր առմամբ։*

*պես է վերաբերում Շիրակին, ինչպես Գուշարը Գուգար-քին։ Թերևս ճիշտ ընթերցումը Գուշար է, հմմտ. այժմյան Գուշարեթի հետ։*

*Հնարավոր է, իհարկե, նաև այն, որ* širak-*ը ունենա դաշտ նշանակությունը (հմմտ. Շիրակի հարթավայրը տարածվում է Ալագյազ գետի երկարությամբ),* χšeiϑra, šehra, širak:

[1] Herod. VII 68, Μύχοι *ապրում էին* Οὔτιοι *մոտ և զինվում էին ինչպես* Πάκτυες-*ները, այսինքն՝ Բոհտանի բնակիչները։ Այս վերջին հանգամանքը այն միտքն է հուշում, որ* μύχοι *ազգակցություն ունեն մոկաց այսինքն՝ մոկ-ս-երի հետ։ Ուշագրավ է, որ Խորենացին Մոկքի հարևան գավառի՝ Ուտունիքի բնակիչներին համարում է Սյունիքից՝ Մուղանին մոտ գտնվող այդ երկրից գաղթածներ։*

[2] Str. p. 508=714, *աշխարհագրի տեղեկության համաձայն* Παρρασίων τινὰς οὓς καλεῖσθαι νῦν Παρσίους, *ավելի ճիշտ՝ պարսիկները և պարրասիները թեև միմյանցից տարբեր, բայց ազգակից ցեղեր էին։ (Պլինիոսը նույնպես հավաստացնում է, որ* Gaeli quos graeci cadusios appellavere, VI 48, *թեև հայտնի է, որ գելերը և կադուսիները իրարից տարբեր փոքր ժողովուրդներ են)։ Ըստ Մովսես Կաղանկատվացու կա «աշխարհ մի Արցախայ՝ պարսկական անուն», կամ ինչպես նույն գլխի վերնագրի մեջ է՝ պարսկանց Ա, ժբ, խոկ Գ, ի, նույն անունը հնչում է Պազկան-ք,* Աշխարհացույցի *մեջ՝ Պաձկան-ք, մյուս աշխարհն է Քուստ-ի-փառնես,* Ասողիկի *մոտ, էջ 198, 256, 283, Փառիս(ոս)։*

*Այս խմորումների հետևանքն այն եղավ, որ սովոր թիվ կազմող կոմարքոսներն ու տոհմապետները դարձան փոքրիկ իշխանավորներ. նրանցից կազմվեցին այն 120 սատրապությունները, որ մենք տեսնում ենք Հայաստանում Արշակունիների երևան գալու ժամանակ, և որոնց ձևավորումը Հայաստանի հասարակական-քաղաքական աճի պատմության մեջ կարելի է համարել նոր իրավակարգի սկիզբ։*

## ԳԼՈՒԽ XV

# ՆԱԽԱՐԱՐՈՒԹՅԱՆ ՖԵՈԴԱԼԱԿԱՆ ՀԻՄՔԵՐԸ

I. Տիգրանյան հարստության փոխարինումը Արշակունյանով: Տրդատը նոր հարստության հիմնադիր: Նրա անձնավորությունը. նրա պատմական կերպարի արտացոլումը հայկական ավանդությունների մեջ: Տրդատի վերաբերմունքը 120 սատրապիաների նկատմամբ: Երկրի վիճակը Արշակունիների երևան գալու ժամանակ: Ֆեոդալական իրավակարգը Պարթևների պետության մեջ և նրա հիմունքները: Դասային իրավակարգը Պարսկաստանում Արշակունիների օրոք *šaϑradarān*, *vaspuϑrakān*, *vazrakān* և *azatān* ու նրանց փոխհարաբերությունները: Արշակունյաց կարգերը Հայաստանում: Հողերի և պաշտոնների բաշխումը՝ *naχarar*, *nahang*, *azat*: Տոհմական սկզբունքների խառնվելը պետականի հետ: Անդրադարձ երևույթներ՝ *tanuter* և *nahapet*: II. Հայաստանի ֆեոդալական նկարագիրը: Ֆեոդալիզմի էությունը: Հռոմեական և գերմանական նախընթացները Արևմտյան Եվրոպայի ֆեոդալիզմի զարգացման մեջ: Նախարարությունը ֆեոդալիզմի շրջանակներում՝ **հայրենիք**-ը և **պարգևականք**-ը որպես ալլոդիալ և բենեֆիցիալ հողատիրության նման հողեր: Վասալական կազմը՝ **ծառայություն**—*servitium:* Ֆեոդալական օրգանիզմի տարրերը: Սենյորությունը որպես ֆեոդալիզմի գլխավոր հաստատություն: Հայ իշխանական տիրույթները որպես *fiefs-seigneuries*: Սենյորական իրավահարաբերությունները՝ [տանու]տէրութիւն — սենյորություն, նրա հատկանիշները: Ֆեոդալական հարաբերությունը նեղ իմաստով՝ *hommage, auxilia, consilium* և համապատասխան հասկացությունները հայերի մոտ: Սուբինֆեոդացիա և ս ե պ ու հ ու թ յ ու ն. նրա ծագումը: Ո ս տ ա ն ի կ — ազատություն: III. Գյուղացիական հողատիրություն: Դրությունը Արևմուտքում: Հարկային համակարգը պարսիկների մոտ: Գլխավոր պարտույքները. *χaradž* և *gēzith* կամ *sak* և *bāz*=գենգ և *chevage; bahrak=champart, kor-bekār corvées*: Հարկերի քանակն ու տեսակները: Մեր եզրակացությունները Խորենացու համեմատությամբ: Խորենացին նախարարության պատմիչ:

## I

*Մեր թվականության սկզբին՝ 36 թվականին, Տիգրան Դ-ի*

*մահով Հայաստանում ընդհատվեց Տիգրանյան հարստությունը*[1], *և սկսվեց մի կատաղի պատերազմ հարևան պետությունների միջև՝ Թափուր գահին տիրանալու համար։ Հռոմեացիները գործում էին իբերների միջոցով և պաշտպանում էին նրա արքայորդիների թեկնածությունը Արշակունիների հավակնորդների դեմ։ Վաղար-*

---

[1] Տ ի գ ր ա ն յ ա ն   հ ա ր ս տ ո ւ թ յ ո ւ ն ը *սկսվում է Կյուրոսի և Աժդահակի ժամանակներից. նրանց օրոք կար հայ թագավոր, որ ուներ երկու որդի՝* Տիգրան *և* Շավարշ *(տե՛ս վերը՝ էջ 390 ծանոթությունը) նրանցից սերում են.*

1. Արտաշես *190 թ. մ. թ. ա.*
2. Տիգրան *Ա։ Ըստ* App. *Syr.* 48, *Տիգրան Մեծը Տիգրանի որդին էր* βασιλεὺς Ἀρμενίας Τιγράνης ὁ Τιγράνους.
3. Արտավազդ Ա, *վախճ. 94 թ.։*
4. Տիգրան Բ, Մեծ, *94—56 թ. մ. թ. ա., նրա որդին նույնպես կոչվում էր Տիգրան և ամուսնացած էր Պարթևաց Հրահատ թագավորի դստեր հետ։ Տիգրանի դուստրը ամուսնացած էր Ատրպատականի Միհրդատ թագավորի հետ,* Dio, 36, 16։ *Խորենացին շփոթել է Պոնտոսի Միհրդատին Մարաց Միհրդատի հետ։ Առաջինի դստեր՝ Կլեոպատրայի հետ ամուսնացած էր Տիգրանը, իսկ Տիգրանի դուստրը ամուսնացած էր երկրորդի հետ։*
5. Արտավազդ Բ, *56—30 թ., գերի ընկավ 33 թ. և սպանվեց Կլեոպատրայի հրամանով 30 թ. մ. թ. ա.։*
6. Արտաշես Բ, *Արտավազդի որդին, սպանվեց* per dolum propinquorum, Tac. II 3։
7. Տիգրան Գ, *Արտաշեսի և Երատոյի եղբայրը,* nec. diuturnum, Tac. ib. *նույն տեղում։*
8. Արտավազդ Գ, *գահընկեց արվեց մ. թ. առաջին տարում,* Tac. II 4։
9. Արիոբարզանես, *մար,* Tac. II 4։
10. Էրատո, *Տիգրան Գ-ի քույրը և կինը, թագավորեց երկրորդ անգամ,* Tac. II 4։
11. Վոնոն *Պարթև,* Tac. II 4։
12. Արտաշես Գ=*Զենոն, Պոլեմոն թագավորի որդին,* Tac. II 56։
13. Արշակ, *Արտաբանի որդին,* Tac. VI 40։
14. Տիգրան Դ, *գլխատվեց 36 թ. մ. թ.* Tac. VI 40։

[15. Միհրդատ, *վրացի,* Tac. XII 44 *և հաջորդ։*
16. Հռադամիզդ, *վախճ. 54 թ., 50 թվականից սկսած՝ Տրդատի հակառակորդը։*
17. Տիգրան Ե *Կապադովկիացի, Հռոմի թեկնածու՝ Տրդատի հակառակորդը*]։

Ա ր շ ա կ ու ն յ ա ց   հ ա ր ս տ ու թ յ ու ն:

1. Տրդատ, *50 թ., վերջնականապես 66—80 թթ.,* Tac. XIII—XV։
2. Եփսադար, *վախճ. 110 թ., Տրդատի եղբայր Բակուրի որդին։*
3. Պարթամասիր, *111—114 թթ., Եքսեդարի եղբայրը,* Dio Cass, 68, 17, 2։
4. [Վաղարշ] *—117,* Spartian. *Hadr.* 21.
5. *Թագավոր, Անտոնինոս Պիոսի դրածո (138—161)։*

*շակ Ա-ն 50 թվականին բարձրանալով պարթևական գահը՝ Հայաստանից վտարեց Հռոմի դրածո Հռադամիզդին և շուրջ 53 թվականին թագավոր կարգեց իր եղբայր Տրդատին։ Անմիջապես հայտնվեցին հռոմեական լեգեոնները Կորբուլոնի ղեկավարությամբ և պարթևներին ստիպեցին հեռանալ Հայաստանից, հենց այդ ժամանակ էլ ժամանեց Ներոն կայսեր նշանակած Տիգրանը՝ ստանձնելու Հայաստանի թագավորությունը*[1]*։ Վրկանում զբաղված լինելով պատերազմով՝ Վաղարշակը չկարողացավ հակահարված տալ հռոմեացիներին, մինչդեռ Տիգրանը իրեն պահում էր հանդուգն և ասպատակում էր հարևան Ադիաբենը։ Տիգրանի այս վարմունքը պարթև ավագանին համարեց վիրավորանք իր հասցեին. ամենից ավելի զայրացած էին Ադիաբենի կառավարիչ Մոնոբազը և հայոց գահից վտարված Տրդատը։ «Ճնշող տպավորություն էր թողնում,— ասում է պատմագիրը,— հատկապես Տրդատը իր լռությամբ և զուսպ գանգատներով. մեծ պետությունները ոչ թե անգործությամբ են կանգուն, տրտնջում էր նա, այլ պահանջվում է մարդկանց և զենքի մրցություն. մարդկության վերնախավում արդարացի է այն, ինչ հզոր է. սեփականը պահպա-*

---

6. Սռնեմոս, *159—162։*
7. Բակուր, *162—164։*
   Սռնեմոս, *երկրորդ անգամ 164—169։*
8. Սանատրուկ, *190—197։*
9. Վաղարշ, *197—216։*
10. Տրդատ Բ, *217, Գ դարի թագավորները անծանոթ են, գոյություն ունեցող տվյալները խառնաշփոթ են։ Հիշատակվում է 11.* Տրդատ Գ, *253 թ. սկզբներից և 12.* Արտավազդ, *269 թ.։*
12. Տրդատ Դ, *քրիստոնյա, Լուսավորչի ժամանակակիցը։*
13. Խոսրով:
14. Տիրան, *գահընկեց արվեց 344 թ.։*
15. Արշակ, *346—349 թթ.։*
16. Պապ, *369—374 թթ.։*
17. Վարազդատ, *374—378 թթ.։*
   [Մանուել, *378—385 թթ.*]
18. Արշակ *և* Վաղարշակ,
19. Վռամշապուհ,
20. Արտաշես:

[1] Tac. *Ann.* 14, 26.

*նելը առանձին մարդկանց գործն է, իսկ ուրիշի ունեցածի մասին վիճելը՝ թագավորների փառքը»*[1]։

*Այս խոսքերի ազդեցության տակ Վաղարշակը խորհուրդ է հրավիրում և Տրդատին նստեցնելով իր կողքին, այսպիսի ճառ է ասում. «Իմ հարազատ եղբայր Տրդատին, քանի որ ավագության կարգով նա ինձ զիջեց թագավորական կոչումը, ես տեր դարձրի Հայաստանին, որ համդիսանում էր մեր տիրակալության երրորդ աստիճանը, որովհետև Մարաստանը ավելի վաղ վերցրել է Բակուրը։ Թվում էր, թե եղբայրների միջև գոյություն ունեցող հինավուրց թշնամության և մրցության հակառակ ես, ինչպես հարկն է, կարգի գցեցի մեր ընտանեկան հարաբերությունները, բայց հռոմեացիք թույլ չեն տալիս այդ, և այն խաղաղությունը, որ նրանք միշտ էլ խախտել են ի վնաս իրենց, այժմ էլ խախտեցին, որ իրենց կործանում է բերելու։ Խոստովանում եմ, որ ես ավելի գերադասում էի իմ նախնիների ձեռք բերածը պահպանել արդարությամբ, քան արյուն թափելով, ավելի շուտ իրավունքով, քան զենքի միջոցով։ Եթե ես սխալ թույլ տվի դանդաղաշարժությամբ, ապա կշտկեմ այն արիությամբ»*[2]։ *Դրանից հետո նա Տրդատի գլխին ապարոշ կապեց և մի հեծյալ ջոկատի ուղեկցությամբ, որի հրամանատարն էր ազնվազարմ Մոնեսը, ուղարկեց Հայաստան՝ հանձնարարելով վտարել Տիգրանին և գրավել գահը։*

*Տրդատն ու Մոնեզը գործեցին փայլուն կերպով և Կորբուլոնին այնպիսի վիճակի մեջ դրին, որ նա «վախենալով կորցնել տարիների ընթացքում ձեռք բերած իր փառքը»,— ինչպես ասում է պատմագիրը*[3]*,— խնդրեց Հայաստանը պաշտպանելու համար իր փոխարեն ուրիշ զորավար նշանակել։ Նրա հաջորդ Կ. Պետոսը՝ ապաշնորհի մեկը, կատարյալ անհաջողություն կրեց և բանակցության մեջ մտավ Պարթևների թագավորի լիազոր և հեծելազորի հրամանատար Վասակի հետ։ Նա համաձայնեց ամոթալի պայմանների հետ՝ լեգեոնները դուրս բերել Հայաստանից և բոլոր ամրությունները ու պաշարները հանձնել թշնամուն։ Պետոսին*

[1] Tac. *Ann.* 15, 1, non enim ignavia magna imperia cantineri; virorum armorumque faciendum certamen; id in summa fortuna aequius, quod validius, et sua retinere privatae domus, de alienis certare regiam laudem esse.

[2] *ib.* 15, 2.

[3] *ib.* 15, 6.

նորից օգնության եկավ Կորբուլոնը։ Հռոմեացիները համաձայնեցին զիջել Հայաստանը Տրդատին՝ պայմանով, որ «նա Կեսարի արձանի առջև ցած դնի իր արքայական իշխանության տարբերանշանները և դրանք նորից վերցնի միայն Ներոնի ձեռքից»[1]։

Այս նպատակով Տրդատը իր ընտանիքի՝ կնոջ և երեխաների, Վաղարշակի որդիների, մարաց Բակուրի, Ադիաբենի Մոնոբազի ու երեք հազար հեծյալի ուղեկցությամբ դուրս եկավ հեռավոր ճանապարհորդության։ Ինն ամիս հետո Տրդատը հասավ Իտալիա։ Քանի որ այդ ժամանակ Ներոնը գտնվում էր Նեապոլում, ուստի Տրդատը ուղևորվեց այնտեղ։ Հայոց թագավորի ընդունելությունը կատարվեց այնպիսի շուքով, որին հռոմեացիների կողմից չէր արժանացել օտար տիրակալներից և ոչ մեկը։ Նեապոլը և մինչև իսկ Հռոմը տոնական կերպարանք էին ստացել։ Առաջինը լուսավորված էր և զարդարված դրասանդներով։ Ամբողջ քաղաքը դուրս էր թափվել թագավորին դիմավորելու և նրան տեսնելու. ամբոխը լցվել էր փողոցները, բարձրացել տների տանիքները։ Հրապարակի մեջտեղում, որտեղ պիտի տեղի ունենար թագադրությունը, շարքշարք կանգնած էր ժողովուրդը՝ սպիտակ զգեստներ հագած և դափնեպսակները գլխներին. շուրջ բոլորը շարված էր զորքը։ Այդպիսի տոնակատարություն իր հանդիսավորությամբ և շքեղությամբ մինչ այդ չէր եղել։ Թագադրությունից հետո ի պատիվ թագավորի տեղի ունեցան ներկայացումներ, թատրոնն այդ կապակցությամբ ամբողջովին զարդարված էր ոսկով[2]։

Այս բոլորը ցույց է տալիս, թե հռոմեացիները որքան բարձր էին գնահատում իրենց ինքնասիրությունը շոյող արտաքին ձևը, որի տակ քողարկված էր Հայաստանում իրենց կրած պարտությունը։ Պարթևները հասան իրենց բաղձալի նպատակին, և Հռոմի ցնծագին հնչյունների տակ հաստատվեցին Հայաստանում։

Տրդատից սկսվում է Արշակունիների հայկական ճյուղը, հակառակ ազգային ավանդությունների, որոնք այդ հարստության հիմնադիր են համարում Վաղարշակին։ Տրդատը՝ Արշակունիների այդ իսկական նախահայրը, առհասարակ ամենաուշագրավ դեմքերից մեկն է ոչ միայն հայերի, այլև պարթևների նշանավոր ներկայացուցիչների շարքում։ Զինվորական քաջության հետ

[1] Tac. *Ann.* 15, 29.

[2] *ib.* 16, 24. Dio Cass. 63, 1—7.

միասին նա իր մեջ համատեղում էր նաև քաղաքական շրջահայացությունը։ Պատմագրի կողմից նրա շուրթերին դրված այն խոսքերը, թե սեփականությունների գոյությունը պահպանվում է պայքարով, հիանալի բնութագրում են նրան որպես զինվորականի և պետական մարդու։ Նրա մեծ եղբայրը ավելի հակված էր դեպի մարդասիրական հայացքները և շեշտում էր արդարության առավելությունը արյան՝ և իրավունքի առավելությունը՝ զենքի նկատմամբ, բայց հետագա դեպքերը ցույց տվին, թե ում կողմն էր ճշմարտությունը, և թե որքան խորն էր ըմբռնում իրերի դրությունը Տրդատը։

Իր անկեղծությամբ համարձակ այն միտքը, թե id aequius guod validius, այն է՝ «իրավունքը ուժեղներինն է» իրավացի է հնչում նաև մեր ժամանակների համար։ Այս խոստովանությունը բնորոշ է այն ժողովրդի առաջնորդին, որը ճակատագրի բերումով ճաշակել է անզորության բոլոր դառնությունն ու աղետները։

Արշակունի հպարտ թագաժառանգը իր գլուխը խոնարհեց ատելի մարդու արձանի առջև, որպեսզի ձեռք բերի այն թագը, որ արդեն պատկանում էր իրեն։ Տրդատը համաձայնեց կատարել այդ նվաստացուցիչ արարողությունը, անշուշտ, ոչ թե այն պատճառով, որ բավականաչափ հպարտ չէր։ Հին հեղինակների վկայությամբ գոռոզության հասնող արժանապատվության զգացումն ու անվեհերությունը ընդհանրապես Արշակունիների բնավորության հատկանշական գծերն են եղել։ Այդ հատկությունները ոչ պակաս չափով զարդարում էին նաև Տրդատին, որի մասին վկայում է հռոմեացիների դեմ նրա մղած կատաղի պայքարը։ Բնատուր հպարտությունը նա հազիվ էր կարողանում զսպել. ամեն վայրկյան պատրաստ էր պոռթկալու։ Երբ Նեապոլում Տրդատին ներկայացնում էին Ներոնին, նրանից պահանջեցին, որ սուրը վրայից հանի. ինքնասեր թագաժառանգը կտրականապես մերժեց կատարել այդ պահանջը և համաձայնեց միայն այն դնել պատյանի մեջ։ Հանգամանքները հարկադրեցին Տրդատին «հաղթահարել իր հպարտությունը,— ինչպես ասում է պատմագիրը,— և հնազանդվել անխուսափելիին իր իսկ շահի համար»[1]։

Արշակունյաց հարստության հիմնադիր Տրդատի անձնավորությունը խորապես տպավորվել է ժողովրդի հիշողության մեջ և

[1] Dio Cass. 63, 1—7. Ուշագրավ է համեմատել նման մի այլ դեպքի հետ, որ Մուշեղ Մամիկոնյանի մասին պատմում է Սեբեոսը, էջ 42։

վառ հետքեր է թողել ժողովրդական զրույցներում։ Հայերի պատմական ավանդությունները, նույնիսկ այն ձևով, ինչպես պահպանվել են Խորենացու մոտ, երբեմն զարմանալի ճշտությամբ արտացոլում են առանձին պահեր և փաստեր։ Նրանք վարագուրված են հաճախ այն կեղծ պրագմատիզմով, որ ազգային ավանդությունների վրին է փաթաթում Խորենացին կամ այն հեղինակը, որ առաջին անգամ մշակել է դրանք։

Տրդատ թագավորի բնավորության գծերը ավանդությունների մեջ հատուկենտ են պահպանվել և ավելի ցայտուն են հանդես գալիս Վաղարշակի, ժողովրդական երգիչների կողմից սիրված Արտաշեսի և նույնիսկ Լուսավորչի զինակից Տրդատի կերպարի մեջ։ Հայկական ավանդությամբ հայ Արշակունիների նախահայրը կոչվում էր ոչ թե Տրդատ, այլ Վաղարշակ։ Valarš-ak-ը Vologaesa-ի[1], պարսկ. Valaš-ի ժողովրդական ձևն է. այսպես էր Տրդատի ավագ եղբոր անունը, որ թագավորում էր Պարսկաստանում։ Նա գործուն մասնակցություն է ունեցել Տրդատի ճակատագրի մեջ և, հավանորեն, այդ է պատճառը, որ նրա անունը փոխանցվել է եղբորը։ Պարթևների թագավորը, իր եղբորը ուղարկելով Հայաստան, նշում է նրա տիրապետության սահմանները և մասնավորապես ասում է. «սահմանք քաջաց զէնն իւրեանց, որքան հատանէ, այնքան ունի»[2]։ Այս ասույթը զարմանալի կերպով հիշեցնում է վերը մեջ բերված Տրդատի խրատաբանությունը թե՝ id aequius quod validius և հիանալի արտահայտում է նրա հիմնական իմաստը։

Մորփյուղիկը, որի դեմ կռվել է Վաղարշակը, ոչ այլ ոք է, եթե ոչ հռոմեական զորավար Կորբուլոնը՝ Տրդատի հակառակորդը։

Պատմական արժանահավատ տվյալների համաձայն առաջին Արշակունի թագավորը՝ Տրդատը, 75 թվականին կասեցնում է ալանների արշավանքը և նրանց դուրս է վռնդում Հայաստանից. ազգային ավանդությունը Սաթենիկ արքայադստեր մասին ռոմանտիկ զրույցի մեջ այդ դեպքը վերագրում է Արտաշես Բ-ին։ Նույն Տրդատի մի քանի գործերը Խորենացու մոտ փոխանցվել է Լուսավորչի ժամանակակից և նույն անունը կրող թագավորին։ Արտաշեսին է վերագրվում ոսկեօղ պարանի ծանոթ դրվագը, որ իրակա-

[1] *Volagaesa* համապատասխանում է հայկական Վարդ-գէսին կամ Վաղարշին։

[2] Խորենացի, Ա, ը։

նում 75 թվականի ալանների արշավանքի ժամանակ պատահել է Տրդատ Ա-ի հետ[1]։ Տրդատ թագավորի սխրագործությունների մասին Խորենացու պատմածները պատմական այն դեպքի արձագանքն են, որ տեղի է ունեցել Տրդատի պատվին Ներոնի կազմակերպած գլադիատորների ըմբշամարտության ժամանակ, երբ Հայոց թագավորը մեկ նետով գետին է տապալում միանգամից երկու ցուլ[2]։

Տրդատի ժամանակվա վերապրուկներն ու արձագանքները, որ տեղ են գտել համեմատաբար ավելի ուշ ժամանակների ավանդությունների մեջ, ցույց են տալիս, որ առաջին Արշակունու մասին հուշերը շատ վառ են եղել, և որ նրա թագավորությունը մեծ հետաքրքրություն է ներկայացրել։ Թագավորի փառքը հիմնըվում էր, պետք է ենթադրել, ոչ միայն արտաքին իրադարձությունների, այլև նրա ներքին կառուցումների վրա։ Ազգային ավանդությունները առաջին Արշակունու անձնավորությունը ներկայացնում են որպես երկրը վերաշինողի և նրա ժամանակը համարում են Հայաստանի վերածնության սկիզբը։ Դրա մեջ որոշ ճշմարտություն կա. Խորենացու գծած Վաղարշակ բարեփոխողի պատկերը պատմական Տրդատի արտացոլումն է։ Գահ բարձրանալով մոտ 50 թվականին՝ Տրդատը կարճ ընդմիջումով թագավորեց մինչև 80-ական թվականները։ 66 թվականից հետո բարենպաստ պայմաններ են ստեղծվում շինարարության համար, որին չէր կարող արգելք հանդիսանալ 75 թ. ալանների կարճատև արշավանքը։

Ամենից առաջ միտք է ծագում Հայաստանը 120 պրեֆեկտուրաների կամ ստրատեգիաների բաժանելը վերագրել Տրդատի ժամանակներին։ Դրանց մասին առաջին անգամ խոսում են Պլինիոսը՝ Տրդատի ժամանակակիցը, որ 79 թվականին Վեզուվի

---

[1] Jos. Flav. *Bell. Jud.* VII, 7.

[2] Dio Cass. 73, Համտ., Խորենացի, Բ ՀԹ, «զերկուց ցլուց վայրենեաց միով ձեռամբ կալեալ եղջերըն թափեաց»։ Առաջին Արշակունուն է վերաբերում հավանորեն նաև Ագաթանգեղոսի համեմատությունը՝ «իբրև զսէգն Տրդատ, որ սիգալով անէրեաց զթումբս գետոց եւ ցամաքեցոյց իսկ ի սիգալ խրոխտ զկորձանս ծովուցս»։ Պլինիոսը, 36, 6, հաղորդում է, որ Տրդատը լինելով մոգ, չկամեցավ ծովով Հռոմ գնալ, որպեսզի չպղծի ջուրը։ Ըստ երևույթին, Տրդատի ճամփորդությունն է ակնարկում անկասկած գրույցներից առնված հայկական այդ արտահայտությունը, որի իմաստն այն է, թե թագավորը ծովի վրայով անցնում է այնպես, կարծես թե ցամաքով է անցնում։

ժայթքման զոհը դարձավ։ Ստրաբոնը (վախճ. մ. թ. 23 թ.), որ քաջատեղյակ էր Հայաստանին, չգիտե 120 ստրատեգիաների մասին, բայց նա հիշատակում է Կապադովկիայում տեղի ունեցած համանուն բաժանումները։ Եթե հայկական ստրատեգիաները առաջացել են որևէ մեկի նախաձեռնությամբ, Ստրաբոնից մինչև Պլինիոսն ընկած ժամանակամիջոցում, ապա այդ մեկը կարող է լինել միայն Տրդատը։

Թե ի՛նչ էին ներկայացնում հիշյալ բաժանումները և ինչու էին կոչվում ստրատեգիաներ, այնքան էլ պարզ չէ։ Օտարերկրյա ծագում ունեցող բաժանումների վերաբերյալ դասական հեղինակների օգտագործած բառերը այնքան էլ ճշգրիտ չեն։ Հակառակ ἐπαρχία-ի կամ provincia-ի, στρατηγία-ն այն ոչ բնորոշ արտահայտություններից մեկն է, որ գործ էր ածվում յուրաքանչյուր այլ երկրամասը նշելու համար, որի համապատասխանը չկար հռոմեական վարչական բաժանումների մեջ։

Ինչ ժամանակի էլ որ վերագրվեն այդ բաժանումները, կասկածից վեր է, որ դրանք տեղական ծագում են ունեցել. դրան չի խանգարում նույնիսկ այդ բաժանումների հունական անվանումը, ճիշտ այնպես, ինչպես պարթևական դրամները մնում են պարթևական՝ չնայած նրանց վրայի հունարեն մակագրություններին։

Պլինիոսը տալիս է այդ պրեֆեկտուրաներից կամ ստրատեգիաներից մեկի՝ հաղկապնս Կարանիտե գավառի՝ հայոց Կարինի անունը և դրանով տերիտորիալ տեսակետից մեզ համար պարզում է 120 բաժանումների էությունը։ Դրանք դասական և հայ գրականությունից մեզ հայտնի հայկական գավառներ են։ Պլինիոսը Հայաստանը գծում է Եփրատի ափին գտնվող Դասկուսա քաղաքից մինչև Կասպից ծով և Տիգրանակերտից մինչև Իբերիա[1], այսինքն՝ ճիշտ այն սահմաններում, որոնք ցույց են տրված Աշխարհացույցում: Ըստ Պլինիոսի ամբողջ երկիրը բաժանվում էր 120 ստրատեգիաների barbaris nominibas։ Իսկ Աշխարհացույցի մեջ հիշատակված են մինչև 185 մանր գավառներ։ Այդ թվից ավելի հին 120 բաժանումներն առանձնացնելը դժվար չէ։ Ստրաբոնի, Պլինիոսի և Պտղոմեոսի մոտ դրանցից մենք հանդիպում ենք ավելի քան 50 անուն։ Պլինիոսի հիշատակած բաժանումները

[1] Plin. *Nat. hist.* VI 25, a Dascusa ad confinium Caspii maris, a Tigranocerta ad Hiberiam:

*վարչական բնույթ չեն կրում. դրանք առաջացել են մասնավոր նախաձեռնությունից անկախ։ Առաջին Արշակունուն կարելի է վերագրել միայն դրանց կարգավորումը կամ որոշ համակարգի բերելը։ Նոր հարստությունը վավերացրեց այն վիճակը, ինչ որ գըտավ երկրում։*

*Այդ բաժանումների և առհասարակ երկրի սոցիալ-քաղաքական կերպարանքի վերաբերյալ ստույգ վկայություններ չկան։ Տրդատյան պատերազմների պատմիչները տարբերում են բնակչության երկու խավ՝* proceres *և* plebs, *ազնվական դաս և հասարակ ժողովուրդ։ Ազնվականները այլ կերպ կոչվում էին նաև* megistanes *կամ* primores *և կամ պարզապես* nobiles[1]*։ Այս արտահայտությունների սոցիալական բովանդակության մասին մենք կարող ենք կառչել այն ամենի հիման վրա, ինչ որ ասվեց վերը։ Մենք տեսանք, որ Տիգրանյանների դարաշրջանում տոհմական կենցաղը քայքայվեց։ Տոհմը տրոհվեց երկու մասի, և դրանցից մեկից ծնվեց ու զարգացավ ազնվականությունը։ Բոլոր այդ* proceres *և* megistanes*-ները այլ բան չեն, եթե ոչ զանազան անվանումներ կրող նախկին տոհմապետներ, որոնք այժմ հասել են տիրակալի աստիճանի։ Տոհմական քայքայված կյանքի հողի վրա ծնված ազնվական դասը՝* nobilitas*-ը մի փակ միջավայր էր, որտեղ շարունակում էին գործել նախկին տոհմական կյանքի նորմերը։ Այս միջավայրը փոխադրվեց նաև տոհմական տերմինոլոգիան։ Նշանավոր տոհմերի պետերը առաջվա նման շարունակում էին կոչվել* **տէր, ասպետ, մալխազ, մամակ** *և այլն, չնայած որ փոխվել էր տոհմի բնույթը։* **Մանուկ, սեպուհ, աւր-եար, ազախին** *բառերը, որոնք նախապես նշանակում էին տոհմական համայնքների զավակներ ընդհանրապես, սկսեցին գործածվել բացառապես նշանավոր տոհմերի որդիներին կամ անդամներին նշելու համար, ընդ որում* manuk*-ը և* alaχin*-ը, դրանից բացի, պահեցին*

---

[1] *Ըստ Տակիտոսի, Զենոն Թագավորը, որ վերանվանվեց Արտաշես, իր կողմը գրավեց* proceres plebemque *և Թագադրվեց Արտաշատում* adprobantibus nobilibus, II 56։ *Հռադամիզդը* primores Armeniorum ad res novas inclinit. XII 44: *Կորբուլոնը* megistanas Armenios,.. pellit sedibus, castella eorum excendit, XV 27։ *Պարթևների ավագանին նույնպես կոչվում էր* primores gentium, XV 1, proceres gentium II 58, *նաև* II 2, VI 31, 42 *և այլն։*

նաև իրենց ընդհանուր իմաստը[1]: Նման երևույթ նկատում ենք նաև լատիներենում, որտեղ liberi նշանակում է զավակներ և միևնույն ժամանակ՝ ազատներ, ինչպես նաև patres և patricii, որոնց միջև կա նույն հարաբերությունը, ինչ որ aspet-ի և sepuh-ի միջև: Patricius-ը pater-ի ածականն է և ցույց է տալիս ընտանիքին պատկանելը. patricii նույն սենատոր հայրերի liberi-ներն են:

Մի շարք բառեր, որոնք սկզբնապես նշանակում էին տոհմ՝ ազգ, ազն, տոհմ, զարմ, նույնպես ազնվազարմության երանգ են ստանում: Նույն ձևով տուն բառը ստանում է իշխանական տոհմի կամ նահանգի իմաստ:

Բնակչության մնացած մասը՝ plebs-ը, որ չէր պատկանում ազնվական դասին, ըստ շրջանների կոչվում էր գեղջուկ, շինական, ռամիկ, գռեհիկ, թերևս նաև մշակ և այլն: Ram-ik-ը և mš-ak-ը, ըստ երևույթին ընիկների՝ ἀραμεῖοι-ի μόσχοι-ի էպոնիմներն են, որոնց նվաճեցին և հպատակեցրին եկվոր տարրերը, և որի հետևանքով նրանց անունը այդպիսի նշանակություն ստացավ. այդ նույն պատճառով էլ արամեական աղախինը ստացավ սպասուհու իմաստ: Gřeh-ik բառը համապատասխանում է վրացական gleχi-ին և. ունի միևնույն ծագումը:

Մոտավորապես այսպիսի վիճակ էր տիրում Հայաստանում նոր հարստության երևան գալու ժամանակ: Ազնվականացման պրոցեսը ավարտվում էր, և նրա հետևանքով ստեղծվեցին 120 մեծ ու փոքր իշխանություններ, այնպես որ հետագայի ամենակարևոր իշխանական ընտանիքներն արդեն առկա էին:

Ազգային ավանդությունների համաձայն Արշակունիների օրոք սոցիալական հարաբերությունները մտել էին զարգացման այն փուլի մեջ, որ նշվում է նախարարություն տերմինով: Մենք տեսանք, որ Արշակունիների տիրապետությունը Իրանի պատմության մեջ նշանավորում է հասարակական-քաղաքական վարչաձևի մի շրջան, որ հիշեցնում է Արևմտյան Եվրոպայի ֆեոդալիզմը: Հայաստանում նախարարական վարչակարգը հանդիսանում է նրա արտահայտությունը:

Արշակունիների մոտ ֆեոդալիզմի ծագման հարցում ուսում-

[1] Manu-k, հայ. մանու՝ ման-ր-իկ, ռուս. мень-шай, լատ. min-or: Խորենացու մոտ՝ «հատուած գնացեալ Վարդգէս մանուկ», manuk այստեղ գործ է ածված իշխանազն իմաստով:

նասիրողները մեծ նշանակություն են տալիս նվաճողական տարրին, որն այնքան էլ ճիշտ չէ[1]։ Կյանքի հետագա զարգացման ընթացքում տոհմական կացութաձևը ինքնին հանգում է մի հասարակարգի, որ նման է ֆեոդալական կարգուկանոնին։ Տոհմական ժամանակաշրջանից հետո, բնականաբար, պարսիկների մոտ ֆեոդալիզմը պիտի առաջ գար որպես որոշ իմաստով զարգացման անհրաժեշտ փուլ։ Խնդրի էությունն այն է, թե կայի՞ն արդյոք անցման պրոցեսն արագացնող կողմնակի հանգամանքներ։ Պարսից պետությունը ստեղծվեց Ասորեստանի և Բաբելոնի հանգած պետությունների մշակութային հարստություններով պարարտացված հողի վրա։ Նա Ասորեստանից և Բաբելոնից շատ բան ժառանգեց նաև պետական կառավարման գծով։ Նրանք ունեին կառավարման բավական զարգացած համակարգ, որը այս կամ այն չափով պետք է անդրադառնար նաև պարսից պետության կառուցվածքի

[1] Արշակունիների վարչակարգի ֆեոդալական բնույթի մասին առաջին անգամ արտահայտվել է Գիբբոնը, իսկ հարցի բանաձևումը պատկանում է Սեն-Մարտենին։ 1821 թ. Փարիզի Ակադեմիայի նիստում արտասանած իր ճառում ականավոր հայագետը ասում էր. «Ընդունված է կարծել, որ կառավարման այն ձևը որ տիրապետում էր մի քանի հարյուրամյակ սրանից առաջ և որ կոչվում էր ֆեոդալական համակարգ, Եվրոպայի բացառիկ առանձնահատկությունն է եղել, և որ նրա սկզբնավորությունը պիտի փնտրել Գերմանիայի անտառներում... Բայց եթե XII դարի Եվրոպան համեմատենք Ասիայում մեր թվականությունից երեք դար առաջ Արշակունիների հիմնած միապետության հետ, ապա կտեսնենք միանման սովորություններ և հաստատություններ. մենք կգտնենք բարձրաստիճան անձնավորություններ նույնպիսի կոչումներով՝ մարկիզներ, բարոններ, ասպետներ և զենքի սովորական մարդիկ։ Այստեղ էլ մարդկանց մի զգալի խումբ վայելում է ազատության բոլոր իրավունքները, մինչդեռ նրանցից շատ ավելի մեծ թվով մարդիկ բոլորովին զրկված էին դրանից»։ Discours sur l'origine ct l'histoire des Arsacides, Hist. des Arsacides II-ի հավելված p. 293։ Սեն-Մարտենը ավելի հեռուն է գնում և պնդում է, որ եթե Եվրոպան չի հնարել ֆեոդալական համակարգը, ապա թող չկարծեն, թե այն հորինել են պարթևները։ Qu'est-ce que le gouvernement feodal, շարունակում է նա,— c'est tout simplement l'occupation militaire d'um vaste territoire, partagé entre tous les soldats: les rangs y sont distribués comme les grades dans une armée; c'est la consequence inèvitable d'un gouvernement militaire ou d'une conquête. Les Arsacides ne furent pas les inventeurs de ce mode gouvernement, puisqu'ils ne furent pas les premiers conquérants de l'Asie. ib. p. 296. Ֆեոդալիզմի բնութագրումից երևում է, որ նշանավոր գիտնականը կանգնած է գերմանական դպրոցի տեսակետի վրա, որը այժմ հնացած է։

վրա։ Տոհմական կազմակերպությունների կողքին պարսիկների մոտ վաղուց ի վեր գոյություն ունեին պետական իշխանության մարմիններ։ Danhiu-ից բացի կար նաև šatra, որի գլուխ կանգնած էր սատրապը։ Արքայից արքայի այդ ամենազոր ծառաները հասարակ պաշտոնատարներ կամ կառավարիչներ չէին. նրանք ունեին այս կամ այն երկիրն ինքնուրույն կառավարելու իրավունք, բայց իրականում այն դարձնում էին իրենց սեփականը այդ պաշտոնը հաջորդաբար ժառանգելու միջոցով։ Այդ իմաստով էլ սատրապությունն ուներ ոչ միայն քաղաքական, այլև սոցիալական գործոնի նշանակություն։

Սատրապներին հավասար դիրք ունեին նաև այն անձնավորությունները, որոնց հողեր էին պարգևում, թեև նրանք կառավարիչներ չէին, այլ գտնվում էին թագավորի պալատում՝ հարկ եղած դեպքում նրան ծառայություն մատուցելու համար։ Հողերի բաշխումը տեղի էր ունենում կամ կառավարման կամ պարզ տիրապետության ձևով։ Սատրապի պաշտոնները բաժանելով իր մերձավորների միջև, պարսից Կյուրոս թագավորը իր այն բարեկամներին, որոնց պահում էր իր մոտ, ասում էր. «Ինձ թվում է, որ ձեզնից նրանք, որոնք մնում են այստեղ, և որոնց ես կարող էի ուղարկել նվաճված ժողովուրդների մոտ զանազան հանձնարարություններով, պետք է այնտեղ իրենց տրամադրության տակ հողեր և տներ ունենան, որպեսզի նրանց հասույթները ուղարկվեն ձեզ այստեղ, որպեսզի այնտեղ գնալու դեպքում դուք մի տեղ ունենաք, որտեղ կարողանաք մնալ, ինչպես ձեր տանը»։ Այս խոսքերից հետո, շարունակում է պատմագիրը, «զանազան նվաճված երկրներում Կյուրոսը իր մերձավորներից շատերին հ ո ղ ե ր և ենթակա մարդիկ տվեց և դեռ այժմ էլ տարբեր վայրերում ցրված այդ հողերը գտնվում են այն անձանց ժառանգների ձեռքին, ովքեր դրանք այն ժամանակ ստացան, իսկ իրենք գտնվում են թագավորի մոտ»[1]։

---

[1] Xen. *Cyr.* VIII 6, 4—6, δοκεῖ δέ μοι τῶν ἐνθάδε μενόντων ὑμῶν οἷς ἂν ἐγὼ πράγματα παρέχω πέμπων πράξοντάς τι ἐπὶ ταῦτα τὰ ἔθνη χώρας γενέσθαι καὶ οἴκους ἐκεῖ, ὅπως δασμοφορῆταί τι αὐτοῖς δεῦρο, ὅταν τε ἴωσιν ἐκεῖσε, εἰς οἰκεῖα ἔχωσι κατάγεσθαι. ταῦτα εἶπε καὶ ἔδωκε πολλοῖς τῶν φίλων κατὰ πάσας τὰς καταστραφείσας πόλεις οἴκους καὶ ὑπηκόους· καὶ νῦν εἰσι ἔτι τοῖς ἀπογόνοις τῶν τότε λαβόντων αἱ χῶραι καταμένουσαι ἄλλαι ἐν ἄλλῃ γῇ· αὐτοὶ δὲ οἰκοῦσι παρὰ βασιλεῖ.

*Այս անձնավորությունների տակ, ըստ երևույթին, պետք է հասկանալ ոչ միայն արքունի, այլև առհասարակ պետական ծառայության մեջ գտնվող պաշտոնյաներին։ Աքեմենյանների ժամանակ արդեն* ἐθνῶν σάτραπαι, *սատրապներից բացի, կային նաև հետևյալ պաշտոնատար անձինք՝ հարկահավաք, ծախսարար, հասարակական աշխատանքների վերակացու, գանձապետ, մատակարարության պետ, ախոռապետ, որսապետ, հետևակազորի պետ, հեծելազորի պետ, զորահրամանատարներ և այլն։ Թագավորն ուներ նաև բարապան, հացթուխ, խոհարար, մատռվակ, լողացնող, մատուցողներ, սենեկապան, հավաքարար և այլն*[1]*։*

*Հասարակական կամ արքունի ծառայության վերոհիշյալ բոլոր մարմինները տարբերվում էին նահանգային կառավարիչներից։ Ըստ այդմ գոյություն ուներ հողատիրության երկու ձև. ոմանց համար հողային սեփականությունը հողային գույք էր, կալվածք էր, իսկ մյուսների, այսինքն՝ սատրապների համար այն հողային տ ի ր ա պ ե տ ու թ յ ու ն էր, այսինքն՝ հողային գույքի և պետական իրավունքների զուգորդություն։ Այս է ֆեոդալիզմի ընդհանուր և գլխավոր հիմքը։*

*Սատրապներին ուղարկելով իրենց նշանակված վայրերը՝ Կյուրոսը խրատում էր նրանց ամեն բանում ընդօրինակել իրեն և, ի միջի այլոց, նրանցից, «ովքեր տիրում են հողերի և իշխանություն ունեն»*[2]*, պահանջել, որպեսզի նրանք ներկայանան սատրապի պալատը, իրենց զավակներին դաստիարակության տան այնտեղ և առհասարակ ծառայեն սատրապին։*

*Ըստ այս վկայության, տվյալ սատրապության հողատեր ազնվականությունը այնպիսի հարաբերության մեջ էր սատրապի հետ, ինչպես իրենք սատրապները՝ արքայից արքայի հետ։ Սատրապը իրեն հանձնված երկրում մի տեսակ թագավոր կամ տիրա-*

---

[1] *Cyr.* VIII 1, 9 *և շարունակ.* προσόδων ἀποδεκτῆρες, δαπανημάτων δοτῆρες, ἔργων ἐπιστάται, κτημάτων φύλακες, τῶν ἐπιτηδείων ἐπιμεληταί, ἵππων ἐπιμεληταί, κυνῶν ἐπιμεληταί, ταξιάρχοι πεζῶν, ταξ· ἱππέων, στρατηγοί *և այլն. Id.* VIII 8, 20, θυρωρός, σιτοποιός, οψοποιός, ἀνοχόος, λουτροχόος, παρατιθέντες καὶ ἀναιροῦντες, κατακοιμίζοντες καὶ ἀνιστάντες, ὁ κοσμητής *և այլն։*

[2] *Cyr.* VIII 6, 10, ὅποσοι δ'ἂν γῆν καὶ ἀρχεῖα λάβωσιν; ἀρχεῖα *նշանակում է պետական հիմնարկություն, բայց այստեղ գործ է ածված «իշխանություն, տիրապետություն» իմաստով։*

*կալ էր։ Նրան ենթակա էին այն անձնավորությունները, որոնք ունեին* γῆν καὶ ἀρχεῖα, *այսինքն՝ հողային և իրավական գերիշխանություն՝ երկու հիմնական հատկանիշներ, որոնց միացումը բնորոշում է ֆեոդալական հողատիրությունը։ Այդ ձևով Աքեմենյան պետությունը ներկայանում է որպես թույլ զարգացած ֆեոդալական օրգանիզմ։*

*Հողերի բաշխման միջոցով կառավարելու հիշյալ համակարգը գործում էր նաև Արշակունիների ժամանակ։ Աքեմենյանների նման, որոնք սովորաբար սատրապությունները բաշխում էին իրենց ազգականների միջև, Արշակունիներն էլ, կանգնելով տոհմական սկզբունքի վրա, հպատակ երկրների կառավարությունը հանձնում էին իրենց գերդաստանի անդամներին։ Պարթևների թագավոր Վաղարշակը իր եղբայրներից մեկին նշանակելով Մարաստանի, մյուսին՝ Հայաստանի թագավոր, մտադիր էր դրանով կարգավորել իր ընտանեկան գործերը՝* familae nostrae penates rite composuisse[1]*։ Արշակունի թագավորների մոտ գոյություն ուներ ազնվազարմների կոլեգիա,* ordo probulorum, *որը, ինչպես երևում է, բաղկացած էր գլխավորապես նշանավոր տների ներկայացուցիչներից։ Պատմագրի վկայությամբ բացառապես այդ կոլեգիայի անդամներից էին նշանակվում հրամանատարներ պատերազմի ժամանակ և կառավարիչներ՝ խաղաղ ժամանակ* ex hoc duces in bella, ex hoc in pace rectores habent[2]*։* Rectores *ասելով պիտի հասկանալ ոչ միայն նահանգական կառավարիչներին, այլև առհասարակ պաշտոնատար մարմինները։ Իսկ այդպիսի մարմինների թիվը քիչ չէր։ Բյուզանդական հեղինակներից մեկը հաղորդում է, որ մարերի (*sc. *պարթևների) մի հին օրենքի համաձայն յոթ նշանավոր տոհմեր ժառանգաբար վարում են պետական կյանքի ամենից ավելի պատասխանատու և պատվավոր գործերը։ Նրանցից առաջինը Արշակունիների հարստությունն է, որ տիրում էր թագավորական իշխանությանը, նրան էր պատկանում նաև թագավորի գլխին թագ դնելու իրավունքը։ Այնուհետև գալիս են այն տները, որոնք կատարում են հետևյալ ֆունկցիաները. զորահրամանատարությունը, քաղաքացիական վարչությունը, դատական տեսչությունը, հեծելազորի*

---

[1] *Տե՛ս վերը, էջ 478։*

[2] *Տե՛ս վերը, էջ 427 ծանոթությունը։*

*հրամանատարությունը, հարկեր նշանակելը և հարկերի հավաքումը, սպառազինության և զինվորական հանդերձանքի տնօրինությունը*[1]։

---

[1] Theophil. Sim. III 18, δήμοις γὰρ παρὰ τοῖς Μήδοις ἑπτὰ τῶν πράξεων τὰ ἀγχίνοά τε καὶ τιμιώτατα διανυομένοις, νόμῳ πρεσβυτη κληροδοτουμένοις μὴ ἄλλως ἔχειν τὰ πράγματα ἔφασκεν. καὶ φασι τὸν μὲν Ἀρσακίδην ἐπιλεγόμενον δῆμον τὴν βασιλείαν κατέχειν, καὶ τοῦτον ἐπιτίθεσθαι τῷ βασιλεῖ τὸ διάδημα, ἕτερον τῆς πολεμικῆς προεστάναι συντάξεως, ἄλλον δὲ τὰς πολιτικὰς περικεῖσθαι φροντίδας, τὴν δ' ἕτερον τὰς διαφορὰς διαλύειν τῶν περί τι καταστασιαζόντων καὶ διαιτητοῦ δεομένων, τὸν δέ πέμπτον ἡγεῖσθαι τῆς ἵππου, τὸν δὲ μετὰ τοῦτον φορολογεῖν τὸ ὑπήκοον καὶ τῶν βασιλικῶν ταμείων ἔφορον πεφυκέναι, τὸν δ' ἕβδομον κηδεμόνα τῶν ὅπλων καὶ τῆς πολεμικῆς ἐσθῆτος ἐπιστατεῖν, Δαρείου τοῦ Ὑστάσπου τουτονί τὸν νόμον ἐν τοῖς βασιλείοις ἐντεμενίσαντος. *Հիշյալ պաշտոնները վարող գերդաստանների ծագումը պատմագիրը հասցնում է մինչև Դարեհի ժամանակները, ըստ երևույթին, նրա յոթ սատրապների մասին եղած զրույցի ազդեցության տակ։ Պարսից յոթ ազնվազարմ տների մասին խոսում են նաև արաբ հեղինակները*, Nöldeke, Tabari p. 437։ *Նույնիսկ մի զրույց է ստեղծվել այն մասին, որ Արշակին էլ, ինչպես մի ժամանակ Դարեհին, գահ են բարձրացրել յոթ սատրապներ։ Հավանական է, որ որոշ պաշտոններ համարվելիս են եղել առավել հարգի ինչպես Աքեմենյանների, այնպես էլ Արշակունիների օրոք, և որ այդ կապակցությամբ կար ազնվազարմ գերդաստանների համապատասխան թիվ, բայց որ Արշակունի տոհմերը ծագում են Դարեհի յոթ սատրապներից, շատ անհավանական է։ Տաբարին Դարեհի սատրապների շարքն է դասում Կարենին, Սուրենին և Սպենդիարին, որոնք, ինչպես գիտենք, պատկանում էին պարթևների ազդեցիկ ընտանիքներին։ Նրանց քույրը, ըստ Խորենացու Բ, իը և կը, կոչվում էր Կոշմ և սրա տոհմն էլ, ամուսնու անունով, Ասպարապետական (համտ. Սեբեոս, էջ 36, Ասպարապետ*=Proc. Pers. I 23, p. 115 *և* p. 51, Ἀσπεβέδης, *պարսկ.* aspahbed, aspaδbed-*ից, որտեղից և* asparapet)։ *Ըստ երևույթին, Կոշմը այնպես է հարաբերում* Κομισηνή *գավառին, ինչպես որ Կարենը* Κάρινα *գավառին։ Արաբների ժամանակ Կարենյանները դեռևս ապրում էին Նեհավենդում, հինավուրց Կարինայի մոտ*, *Tabari* p. 437։ *Պարթևական տոհմերի թվին է պատկանում նաև Միհրանի հզոր տունը։ Թեոփիլակտոսը, III 18, նրան համարում է մարական (sc. պարթևական) յոթ գերդաստաններից մեկը։ Միհրանյանների տոհմում շատ տարածված էր Վշնասպ անունը՝ «Յզատ-Վշնասպ, որդի Աշտատայ ի Միհրան տանէ», Փարպեցի, էջ 113։ Փարպեցին նրան համարում է «Դայեակորդի Պերոզի», էջ 108, ուրեմն՝ Պերոզի դայակը եղել է նրա հայր Աշտատը։ Եղիշեի մոտ դայակի անունը կարդացվում է Ռահամ, «որդւոյն Յազկերտի դայեակ Ռահամ ի Միհրան տոհմէն», էջ 378։ Վահրամ Չուբինի հոր անունն էր* Bahram-Gušnasp, *Tabari* p. 270. Βαραμ οἱός Βαρ<αμ>γουσνᾶς, Theophil. 5, 13. *Միհրանյան տոհմի ամենակարող ներկայացուցիչներից մեկի՝ Միհր-Ներսեհի որդու անունն էր* Mah-gušnasp, *Tabari* p. 110. Všnasp-*ը սրբազան կրակի անվանումն է, որի*

Այս տեղեկությունը, ինչպես երևում է առաջին գերդաստանի մասին եղած խոսքերից, վերաբերում է պարթևական շրջանին։ Եթե նույնիսկ ընդունենք, որ պարթևների մոտ էլ կային յոթ ազնվազարմ գերդաստաններ, ապա դրանք, համենայն դեպս, որևէ կապ չունեն Դարեհի յոթ սատրապների հետ։ Ուժերի այդպիսի բաժանումը մեծապես ճակատագրական կլիներ մեր երկրի համար, որ շատ անգամ ենթարկվել էր դինաստիական և այլ կարգի անակնկալների։

Վերոհիշյալ վկայության մեջ անվիճելին և էականն այն է, որ պարթևների պետության մեջ որոշ պաշտոններ համարվում էին շատ պատվարժան և հատկացված էին որոշ տների որպես ժառանգական իրավունք։ Հետևաբար սատրապությունների նման պետական պաշտոններն էլ դառնում էին ժառանգական սեփականություն։ Այդ բանը շատ է մոտենում արևմտաեվրոպական ֆեոդալիզմի fief-office հասկացությանը։

---

տաճարը գտնվում էր Ատրպատականի Գանձակ-Շիզում, Tabari, p. 100, հմմտ. Սեբեոս, էջ 92, «Հրատ մեծ, որում Վշնասպ կոչէին»։ Գանձակի մոտ գտնվում էր Χωρο-μιτρηνή գավառը Ptol. VI 26, որը հավանորեն, հանդիսանում էր Միհրանյան տոհմի բնակավայրը։ Կարող է պատահել, որ Վշնասպը նրանց տոհմական պաշտամունքն էր։ Կրակը համարվում էր Միհր մեծ աստծո տեսանելի խորհրդանիշը, որից էլ ծագում է Միհրան անունը։ Նրան զոհաբերում էին ձիեր, ինչպես Արամազդին՝ կովեր. Διὶ ταῦροι πάγκαλοι ἵπποι τῷ Ἡλίῳ. *Cyrop.* p. 298, այդ պատճառով էլ նա կոչվում էր *Miθra* կամ *Aθra vršnaspa*, այսինքն՝ Միհր կամ կրակ, որ լավ ձիեր է պահանջում (*vršni*, պարսկ. *gušn* նշանակում է քաջարի, իսկ *aspa*-ձի)։ [Միհր-արևից բացի պաշտվում էր նաև լուսինը։ Արդյոք Սուրենյան տոհմը նրա հովանավորը չէ՞ր. *Suraena* Σεληνή-ի հետ]։ Տոհմական անուն է նաև Զիկը, որ, անկասկած, պարթևական ծագում ունի։ 562 թ. Հուստինոսի մոտ ուղարկված պարսից դեսպանի անունը Ἰεσδεγουσναφ էր, իսկ տիտղոսը՝ Ζιχ, Menand. p. 346։ Պատմագիրները այդպիսի տիտղոս են համարում նաև Սուրեն և Միհրան անունները՝ Surena-dignitas, Amm. 24, 2. Σουρήνας ἀρχῆς... ὄνομα παρὰ Πέρσαις, Zosimi, III 15. Μιρράνης μὲν τὸ ἀξίωμα (οὕτω γὰρ τὴν ἀρχὴν καλοῦσι Πέρσαι) Περόζης δὲ ὄνομα Proc. *Pers.* I, 13, p. 62։ Փավստոսը Զիկը հիշատակում է Կարենի հետ միասին։ Դ, ծե։ Պարսից թագավորը Զիկին հայոց խոսրով թագավորի դայակ նշանակելով, Փավստոս, Ե, ա, հավանորեն նկատի ուներ նրա ազգակցությունը հայոց թագավորի հետ։ Եթե պարզվի, որ պարթևների մոտ իսկապես գոյություն է ունեցել յոթ նշանավոր գերդաստան, ապա վերը հիշված Սուրենի, Կարենի, Սպենդիարի, Ասպարապետ-Պահլավի, Միհրանի և Զիկի տոհմերին թերևս պետք կլինի ավելացնել նաև Նիխորական տոհմը, որ բնակվում էր Dih-i-Xorgan կոչված վայրում՝ Ուրմիո լճի արևելյան ափին։

Այսպիսով, տոհմական սկզբունքին զուգահեռ հնուց ի վեր գործում էր զուտ պետական՝ ծառայական սկզբունքը, որը տոհմական միջավայրի ազդեցության տակ հանգեցրեց ֆեոդալական կարգի դասերի առաջացմանը։ Մենք տեսանք, որ դասայնությունը ծնունդ առավ նաև տոհմական կենցաղի քայքայման հետևանքով։ Թե ինչպիսին եղան այս երկնակի պրոցեսի հետևանքները, և ինչ ձևեր ընդունեց դասային կարգը Արշակունիների մոտ, հայտնի չէ։ Այդ մասին կարելի է որոշ գաղափար կազմել Շապուհ Ա-ի (240—270) Հաջի-աբադի արձանագրության հիման վրա։ Արձանագրությունը փորագրվել է թագավորական որսի ժամանակ և այնտեղ, ի միջի այլոց, կարելի է կարդալ հետևյալ պարբերությունը. ես նետս արձակեցի ներկայությամբ — šatrdārān va barbītān va rabān va āzātan, որի պահլավերեն թարգմանությունը կլինի՝ χšaϑrdārān և vāspuϑrakān և vačarkān և āzātān[1].

Այստեղ թվարկված են ազատ դասի զանազան աստիճանները[2]։ Որ խոսքը վերաբերում է ոչ թե պատահականորեն բերված, այլ խստորեն որոշված դասային օղակների անվանումներին, երևում է նրանից, որ արաբ հեղինակները ևս նշում են պարսկական ավագանու չորս աստիճանների մասին, թեև սխալմամբ համարում են, որ դրանք հաստատել է Սասանյան Արտաշիրը[3]։ Ճիշտ է, հիշյալ արձանագրությունը պատկանում է Սասանյան Շապուհին, բայց դասերին վերաբերող այնտեղ հիշատակված տվյալները նախորդ՝ Արշակունիների շրջանի արդյունք են։ Արձանագրության փորագրության ժամանակ նոր հարստությունը հազիվ թե կարողանար երկրում կարգերի էական փոփոխություններ կատարել, մանավանդ որ, նա երկար ժամանակ զբաղված էր իր քաղաքական վիճակն ամրապնդելով։

Առաջին տերմինը բաղկացած է šatra-ից՝ երկիր և dar-ից՝ ունել, բռնել և համապատասխանում է աքեմենյան շրջանի satrapa-ին՝ Հայերեն շահապ-ին, նույն satra-ից և pa-ից՝ պա-

[1] WZKM, VI p. 72:

[2] Nöldeke, *Tabari*, p. 71 ծանոթությունը։

[3] *ib.* p. 8, ծանոթ.։ Արաբ հեղինակները տարբեր կերպ են մեկնաբանում չորս կարգերի մասին եղած տեղեկությունը՝ առաջնորդվելով, ըստ երևույթին, ուշ շրջանի իրադրությամբ։

հել։ Այն փաստը, որ šaϑrdarān-ները որսի ժամանակ ուղեկցում են թագավորին, ցույց է տալիս, որ նրանք սովորական սատրապներ կամ նահանգների կառավարիչներ չեն, որ նրանց տակ թաքնըված է ավելի լայն իմաստ։ Չի կարելի ենթադրել, թե սատրապներին նահանգներից կանչում էին թագավորի մոտ որսի առիթով։ Այդ անձնավորությունները, ըստ երևույթին, մշտապես գտնվում էին մայրաքաղաքում և հավանաբար շփում ունեին պալատի հետ։ Արձանագրության մեջ šaϑrdar-ը ոչ թե վարչական մեծություն է նշանակում, այլ ավելի շուտ՝ սոցիալական կամ դասային։ Նրանք անվանի հողատերեր էին, խոշոր հողատիրության ներկայացուցիչներ։ Ծագումով սրանք թագավորի այն մտերիմների թվին են պատկանում, որոնց, ինչպես տեսանք վերը, հողամասեր էին շնորհվում։ Սոցիալական դրությամբ նրանք հավասար էին սատրապներին, սակայն առանց ծառայողական կամ վարչական պարտականությունների։

Մյուս աստիճանը՝ vaspuϑrakān-ը, տոհմական կացութաձևում մեզ արդեն ծանոթ տերմին է, որ նշանակում էր տոհմի որդի, իսկ տոհմական կյանքի քայքայումից հետո՝ տիրակալի որդի։ Տոհմական աշխարհում տոհմի որդիները բարձր էին դասվում, քանի որ նրանք հանդիսանում էին տոհմապետի գլխավոր աջակիցները թե թշնամու հետ ընդհարվելու ժամանակ, թե որս փնտրելիս[1]։

Վասպուրների բարձր դիրքը նշված է ավեստական գրականության մեջ։ Այստեղ nemanopati-ն գնահատվում է ցածր տեսակի ցուլով, vispati-ն՝ միջակ տեսակի ցուլով, zantupati-ն՝ առաջին տեսակի ցուլով, dahiupati-ն չորս ձի լծված կառքի արժեքով։ Viso-puϑra-ն առանձնացվում է այդ խմբից և գնահատվում է առաջին տեսակի մեկ ցուլի արժեքով, այսինքն՝ այնքան, որքան zantupāti-ն, ուրեմն, visopuϑra-ն ավելի ցածր է դասվում, քան dahiupati-ն։ Վերջինս իր դիրքով հավասարազոր է satrapa-ին կամ šaϑrdar-ին որպես շրջանի danhiu=šaϑra կառավարիչ։ Ավեստական ավանդույթները, այսպիսով, համընկնում են վասպուրների դիրքի վերաբերյալ արձանագրությանը, մանավանդ որ արձանագրության մեջ էլ vaspuϑrakan-ները հաջորդում են šaϑradarān-ին[2]։

---

[1] Leist, *Graeco-Italische Rechtgeschichte* p. 123 n. c.

[2] Darmsteter, *Etudes Iraniennes*, I p. 140 և շար.

Vaspuθrakān-ը *շահրդարների* *որդիներն* *են, ընդ որում պետք է հասկանալ ոչ միայն որդիներին, այդ բառի ուղղակի իմաստով, այլև առհասարակ գերդաստանի բոլոր անդամներին, նրա արական սեռի բոլոր ներկայացուցիչներին, բացի պետից՝ շահրդարից։ Շահրդարի կենդանության օրոք նրա որդիները, որպես նրա ժառանգներ, համարվում են պայմանական մեծություններ, ուստի սրանք նրանից ցածր են, բայց բարձր են մյուս բոլորից։*

*Երրորդ աստիճանը vačarkān-ը* resp. *vazrkān նշանակում է* *ավագներ,* vazraka-*ից, պարսկ.* buzurg, *մեծ։ Այս անունը ամենից ավելի համապատասխանում է այն տոհմիկ ազնվականներին, որոնք ծագում էին հնագույն տոհմապետներից։* Habačaris-*ը* *կամ* ἐλευθερά ἀγορά *հասարակությունը, որին ծանոթացանք վերը, հանդիսանում էր մի քուրա, որտեղ տոհմի գլխավորները փոխակերպվում և դառնում էին անվանի մարդ, տոհմիկ ազնվական։ Habačaris բառը պահլավերենում կարող է հնչել vačar, ինչպես ցույց է տալիս հայերեն* վաճառը*։ Երրորդ աստիճանի անվանումը կարելի է կարդալ vazrakān կամ vačarkān. վերջին դեպքում այն կարելի է առաջ եկած համարել vačar-ից՝* habačaris-*ի մասնակցի կամ անդամի իմաստով։ Այստեղ ներկայանում էին միայն նյութապես ապահովվածները և զբաղվում էին ռազմական գործով։ Այս հանգամանքն էլ նրանցից ստեղծեց արտոնյալ դաս։ Մեզ թվում է, որ անկախ ստուգաբանությունից* vazarkān-*ը պիտի համարել այն ազնվականության ընդհանուր անվանումը, որ ծնունդ առավ և աճեց տոհմական արմատներից։*

*Ինչ վերաբերում է վերջին աստիճանին՝ azat-ān-ին, ապա այն հարաբերում է* vazrakān-*ին ճիշտ այնպես, ինչպես* vaspuθrakān-*ը* šaθradarān-*ին։* Azat-ān-*ը azata-ի անցյալ դերբայի հոգնակի թիվն է, ā-zan, ā-zā-ից, որ նշանակում է* ծնել*։ Ազատները վազրակների որդիներն ու ժառանգներն են և իրավական տեսակետից բախտակից էին վասպուրներին։ Նրանք համարվում էին ուժեղներ, ինչպես ապագա* *վազրակները։*

*Այդպես են պատկերանում մեզ հիշյալ դասային աստիճանները իրենց փոխհարաբերության մեջ։ Դրանցով ավարտվում է դասայնության զարգացումը Արշակունիների շրջանում, և այս վիճակը պետք է հաշվի առնել նաև Հայաստանում Արշակունիների իրավակարգը ուսումնասիրելիս։*

Տոհմական և զուտ պետական հաստատություններից առաջացած դասային ազնվականության զարգացման երկակի պրոցեսը պետք է ճիշտ համարել նաև Հայաստանի վերաբերյալ։ Հողեր և պաշտոններ նվիրելու սովորությունը ընդունված էր նաև հայ Արշակունիների մոտ։ Քրիստոնյա Արշակունիների պատմիչը՝ Փավստոսը, վկայում է, որ հայ իշխանները շատ բանով և ամենից առաջ հողային սեփականությամբ պարտական էին Արշակունիներին։ Վերջիններս նրանց ընդարձակ շրջաններ, երկրներ, գյուղեր և այլ կալվածքներ էին նվիրում, բարիք էին անում՝ օժտելով նրանց պաշտոնով, պատվով կամ իշխանությամբ ու ծառայությամբ։ Ինչպես տեսանք, իշխանությունը տարբերվում էր գործակալությունից, իշխանական դիրքը՝ ծառայության կամ պաշտոնատարության դիրքից։ Սրանք ճանաչվում են ըստ գահի, մյուսները՝ ըստ աստիճանի, «մեծամեծք յիւրաքանչիւր գահու, գործակալք յիւրաքանչիւր չափու»[1]։

Հայաստանում Արշակունիներից առաջ էլ իշխաններ կային, իսկ ծառայության մեխանիզմը նրանք մտցրին։ Ըստ Խորենացու առաջին Արշակունու կազմակերպչական գործն այն եղավ, որ նա հասարակական և արքունի բնույթ ունեցող զանազան պաշտոնները բաշխեց տեղական իշխանական տների միջև։ Պարթևական պետության պաշտոնական վերոհիշյալ մարմինները գոյություն ունեին նաև Արշակունյաց Հայաստանում։

Պարսկաստանում թագադրության պատվավոր պաշտոնը համարվում էր Սուրենյան տան արտոնությունը, իսկ Հայաստանում՝ Բագրատունիների[2]։

Պարսկաստանում բանակի գերագույն հրամանատարությունը՝ սպարապետությունը, ժառանգական էր Ասպարապետների՝ resp. Կոշմյանների տոհմում, իսկ Հայաստանում՝ Մամիկոնյանների տոհմում։

---

1 Տե՛ս էջ 269 և հաջորդ.։

2 Tac. *Ann.* VI 42. Surena patrio more Tiridatem insigni regio evinxit. Բագրատունիների մասին տե՛ս Փավստոս, Ե խղ, «Թագաւորքն (?) թագակապքն լինել էին ի բնէ ազգին Թագաւորութեանն Արշակունւոյ»։ Այս կոչումը չկար Աքեմենյանների մոտ։ Ինչպես երևում է, այն վերացել է Արշակունիներից հետո։ Ամմիանոսը հիշատակում է Սուրենի բարձր դիրքի մասին Սասանյանների օրոք, potestatis secundae post regem, բայց ոչինչ չի ասում թագադրության մասին Amm. 30, 5, 3 նաև 24, 2։

*Մեծ կարևորություն ուներ հազարապետի* hazarapet *պաշտոնը։ Սա իր բոլոր հատկանիշներով համապատասխանում էր Թեոփիլակտեսի մոտ հիշատակված վարչություններից երրորդին, որ ընդգրկում էր* τὰς πολιτικάς φροντίδας, *ի հակադրություն* πολεμικῆς συντάξεως *վարչության։ Փավստոսի մոտ հազարապետությունը կամ հազարապետական գործակալությունը որոշ իմաստով հակադրվում է սպարապետությանը։ Առաջինը սահմանվում է իբրև* աշխարհատես խնամակալություն *և տարածվում է* դեհկանության, *այսինքն՝ հողագործ գյուղացիության վրա. Հազարապետի իշխանությամբ օժտված Գնունիների տոհմը կոչվում է* Շինականաշէն՝ *šinakanašēn*։ *Իբրև սպարապետ՝ Մամիկոնյանները կանգնած են* «ի վերայ իշխանութեանն բովանդակ», *այսինքն՝ բոլոր իշխանությունների վրա,* «ի վերայ ամենայն զօրաց զօրավարութեան», *բոլոր զ ո ր ա վ ա ր ն ե ր ի՝ զորահրամանատարների վրա։ Հայոց զորքը կազմված էր այն զորախմբերից, որ տալիս էին իշխանական տները։ Յուրաքանչյուր զորախմբի հրամանատարությունը վարում էր նրա իշխանը, իսկ ընդհանուր հրամանատարությունը պատկանում էր ժառանգորդ սպարապետներին՝ Մամիկոնյաններին, հենց այդ իմաստով էլ նրանք կանգնած էին բոլոր իշխանների և նրանց զորքերի գլուխը։*

*Հազարապետի իշխանությանն էլ ենթարկված էր ամբողջ գյուղացիական բնակչությունը։* *Hazara-pati*=χιλίαρχος—*հ ա զ ա ր ա պ ե տ զինվորական տերմին է, որ քաղաքացիական ասպարեզ է փոխադրվել դեռևս Աքեմենյանների ժամանակ։ Ինչպես պատմում է Քսենոփոնը, Կյուրոսը շատ էր մտահոգված ֆինանսները կարգավորելով, այն հսկայական ծախքերի պատճառով, որոնք պահանջում էին այդքան լայնածավալ պետության կարիքները, ուստի որոշում է այդ ասպարեզում մտցնել ստորաբաժանման զինվորական համակարգ և ֆինանսական ղեկավարությունը հեշտացնելու նպատակով ստեղծեց դեկուրիոններ, լոխագներ, խիլիարքներ և միրիարքներ*[1]։ *Ըստ այդ համակարգի հազարապետը*

[1] *Cyr.* VIII 1, 14, ὅπως ἄν τά τε οἰκονομικὰ καλῶς ἔχει καὶ ἡ σχολὴ γένοιτο κατενόησέ πως τὴν στρατιωτικὴν σύνταξιν. *Հետաքրքրական է, որ Նոր Կտակարանի մեջ հազարապետ բառով թարգմանված է հունական* οἰκόνομος-*ը.* *ի մ ե ջ հ ա զ ա ր ա պ ե տ ա ց,* ἐν τοῖς οἰκονόμοις *Կորնթ. Դ. 1, երբեմն դրված է* χιλίαρχος-*ի, փոխ. Մարկոս, Զ 21։*

*պետք է լիներ պետական եկամուտների գերատեսչության ամենաբարձր պաշտոնյան. այս դեպքում հասկանալի է նաև նրա վերաբերմունքը հարկատու բնակչության՝ գյուղացիության նկատմամբ։ Թվում է, թե հենց հազարապետն էլ պետք է վարեր հարկերը հավաքելու գործը, բայց վերը մեջ բերված ցանկից երևում է, որ հարկեր նշանակելը և այն բնակչությունից հավաքելը առանձին գերատեսչության իրավասությունն էր։ Հավանական է, որ սկզբում հազարապետի պարտականությունների մեջ այդ էլ էր մտնում, բայց հետագայում այն առանձնացվել է։ Սասանյան ամենազոր ադնվական Միհր-Ներսեհին հայ պատմիչները կոչում են* մեծ հազարապետ, *իսկ Տաբարին՝* buzurg-framadar, *որ նրա իսկ թարգմանությամբ նշանակում է* մ ե ծ վ ե ղ ի ր[1]։ *Միհր-Ներսեհի օրոք ոմն Մահգուշնասպ վարում էր հարկահավաքության գործը և կոչվում էր* vaštriošansalar, *այսինքն՝* ե ր կ ր ա գ ո ր ծ ն ե ր ի պ ե տ[2]։ *Այս կոչումը հազարապետությանը համապատասխանում է այն իմաստով, ինչ իմաստով այն գործ է ածում Փավստոսը Գնունիների տոհմի վերաբերյալ[3]։ Կարող է պատահել, որ նախկին հազարապետությունը բաժանվել է երկու մասի՝ մեկը մոտավորապես* πολιτικάς φροντίδας*-ը տնօրինում էր* buzurg-framadar*-ը, իսկ մյուսը՝* vaštriošansalar*-ը, մինչդեռ Հայաստանում այն մնաց առաջվա նման։*

[1] Nöldeke, *Tabari* p. 111, **Եղիշե**, *էջ 43* **և Փավստոս,** *Գ ժդ,* *framadar*=*հրամանատար, Նյոլդեկեի կարծիքով, նշանակում է* *Vorankommer*, *ib.* p. 9։ *Տաբարիի մոտ Միհր-Ներսեհի կոչումը հնչում է* *hazārabanda*, *որը նույն գիտնականը բաղդատում է* Theod.*-ի* Σουρήνην χιλίων οἰκετῶν δεσπότην *վկայության հետ*, *Hist. Eccl.* V 39.

*Նկատի ունենալով այն, որ Սուրենին հայերը կոչում են հազարապետ, թերևս Տաբարիի մոտ պետք է կարդալ* ܗܙܪܒܝܕ *փոխարեն* ܗܙܪܒܢܕ*, -ի, իսկ Թեոդորիտի վկայությունը, հավանորեն, նույն բառի սխալ մեկնության արդյունք է։*

[2] Nöldeke, Tabari, p. 110.

[3] **Նրանցից առաջ հազարապետ էր Վաղարշը՝ Անձիտի իշխանը. Փավստոս,** *Գ, ժը, «զումարեաց զմեծամեծ նախարարսն... զմեծ հազարապետն ի հազարապետութեան[։]իսկ ի տոհմէ ամենայն հայոց զՎաղարշ»։ Փակագծի մեջ առնված վերջակետն ավելորդ է, որովհետև շարունակությունից երևում է, որ հազարապետ հենց Վաղարշն էր։ Այս պաշտոնի վերջին կրողներն էին Առավանը, Վահան Ամատունին,* **Կորյուն,** *էջ 44 և 42, այնուհետև նշանակվում էին պարսիկներ,* **Եղիշե,** *42,* **Փարպեցի,** *118։*

*Դատական իշխանությունը կամ արդարադատությունը գտնվում էր մոգերի և առհասարակ հոգևորականության ձեռքին: Քրիստոնեություն ընդունելուց հետո այն անցավ եկեղեցուն և յուրաքանչյուր գավառում դատարանը ենթակա էր տեղի եպիսկոպոսին: Դանիել եպիսկոպոսի իշխանությունը Փավստոսը կոչում է* գործակալութիւն մեծի դատաւորութեան[1]: *Հայաստանում և Պարսկաստանում հոգևորականության միջամտությունը քաղաքական գործերին և նրա մեծ ազդեցությունը բացատրվում է մասամբ նրանով, որ նա հանդիսանում էր արդարադատության մարմին*[2]:

*Հեծելազորի հրամանատարությունը* τῆς ἵππου *ևս մի առանձին ընտանիքի իրավունքն էր, բայց թե ո՞ր ընտանիքի, տվյալների բացակայության պատճառով դժվար է ասել: Հայերի մոտ զորքը գլխավորապես կազմված էր հեծելազորից և գտնվում էր սպարապետի հրամանատարության տակ: Ըստ որոշ նշանների Պարսկաստանում հեծելազորը գտնվում էր Սպանդիատի տոհմի ձեռքին*[3]:

---

[1] Փավստոս, Գ, *ժզ: Թերևս Գահնամակի «Բասենոյ դատաւորն» նշանակում է եպիսկոպոսական իշխանություն:*

[2] *Թագավորական իշխանությունը Հայաստանում վերացնելուց հետո պարսիկները նշանակեցին «մոգպետ դատաւոր աշխարհին»,* Եղիշե, *էջ 42: Սասանյանների օրոք գլխավոր* hērbed=*aθro*-paiti-*ին, որ գրեթե հավասար էր դերագույն* mōbed *magu-pati-ին, տնօրինում էր* die Kirche und die Rechtgelehrsamkeit, Nöldeke, *Tabari* p. 110.

[3] *Իրանական էպոսի մեջ Սպանդիատը՝ Վշտասպի որդին, հայտնի էր շատ ազգությունների վրա իր տարած բազմաթիվ հաղթանակներով: Նրան է վերագրվում Ալանաց դռների կառուցումը և Երկաթե քաղաք ամրոցի գրավումը: Նրա սխրագործություններին է նվիրված* *Paikār-nāma* *գիրքը,* Marquart, *Streifzüge*, p. 116: *Անտարակույս հենց նա է այն «քաջ Սպանդիատը», որի մասին բարբարոսներն ասում էին. «Հասեալ պատերազմաւ մինչեւ ցայս վայր ցցեալ գնիզակ իւր ի գետնի»,* Սեբեոս, *էջ 130: Մովսես Կաղանկատվացին նրան նմանեցնում է ինչ-որ Թանգրի-խան աստծու, որին հոները ձիեր էին զոհաբերում. «հսկայի ումէմն վայրագի անճոռնւոյ. ձիախոռով զոհիւք պաշտօն մատուցանէին՝ կարդալով զնա Թանգրի խան աստուած, զոր պարսիկք Ասպանդեատ կոչեն», էջ 191: «Ասպանդե<ատ>այ ումեմն վայր հսկային ձիովք այրեցեալք զոհ մատուցանէք», էջ 195: Սպանդիատին մատուցվող զոհերը նրա պաշտամունքը մոտեցնում են Ատրպատականի* *aθr-všnasp* *կրակին՝ Միհրանյանների պաշտամունքին: Սպանդիատը Արշակունի ծագում ունի, և Սեբեոսը հիշատակում է նրա մասին Արշակունի Զարեհի արշավանքի կապակցությամբ: Ձիերի զոհաբերությունը խորհրդանիշ չէ՞ արդյոք Սպանդիատի՝ որպես հեծելազորի հրամանատարի տոհման-*

Τῶν ὅπλων καὶ τῆς πολεμικῆς ἐσθῆτος գերատեսչությունը համապատասխանում է ներկայիս ինտենդանտությանը և, ըստ երևույթին, առնչվում էր մարդպետական տոհմի հետ։ Պատմական հուշարձաններում նշվում է, որ նրանք բարձր դիրք ունեին քրիստոնյա Արշակունիների արքունիքում, բայց նրանց պաշտոնի մասին պատկերացումները աղոտ են, և առայժմ եղած վկայությունները՝ անորոշ։

Մ ա ր դ պ ե տ տիտղոսի ծագումը, որ մենք պարզեցինք վերևում, արդեն մոռացվել էր գրության սկզբնավորման ժամանակ։ Արտաքին տեսքից այնպես է թվում, թե այն կազմված է **մարդ** բառից և այդ սխալ զուգորդությունը խանգարում էր հասկանալու նրանց պաշտոնի էությունը։ Խորենացին նույնիսկ չի հիշատակում մարդպետին և անկեղծորեն խոստովանում է, որ իրեն ոչինչ հայտնի չէ Հայր իշխանի տոհմի մասին[1]։ Մարդպետը տոհմական-իշխանական տիտղոս է և ոչ մի առնչություն չունի առհասարակ պաշտոնի հետ։ Մարդպետ-իշխանը ըստ պաշտոնի կոչվում էր Թ ա գ ա վ ո ր ի Հ ա յ ր, **«մարդպետ, որ անուանեալ կոչէր ըստ գործոյն հայր թագաւորին»**[2], ուստի և **մարդպետութիւն** և **հայրութիւն** գործ են ածվում որպես համանիշ հասկացություններ[3]։ Թե իրականում ի՞նչ է նշանակում այդ բարձրագոչ կոչումը, անհայտ է, գիտենք միայն, որ մարդպետի պարտականությունների մեջ էին մտնում արքունի գանձերը և այն բերդերի տնօրինությունը, որտեղ դրանք պահվում էին, և որ «այս գործակալութիւն (sc. հաւատարիմ գանձուց եւ բերդաց) եւ մարդպետութիւն, որում **հայրն** կոչէին՝ ներքինեաց գործ լեալ ի բնէ ժամանակաց»[4]։ Մարդպետի հավակնոտ անունը ցույց է տալիս, որ նա շատ սերտ շփում ուներ արքունիքի հետ։ Որպես ներքինիներ մարդպետներին էր հանձնված թագուհու պաշտպանությունը[5]։ Թվում է, որ նրանց

վան։ Այդ անվան ավելի հին ձևն է Սպանդարատ spanda-δατα, որ հանդիպում է Կամսարականների տոհմում. չի՞ կարելի արդյոք այդ հիման վրա եզրակացնել, որ նրանք արյունով և կոչումով ազգակցություն ունեին Սպանդիատի հետ։

[1] Խորենացի, Բ, է։

[2] Փավստոս, Ե, գ։

[3] Նույն տեղում, Ե, դ։

[4] Նույն տեղում, Ե, է։ Տպագրության մեջ ճիշտ չէ կետադրությունը, պետք է լինի «ներքինեաց գործ լեալ» և ոչ թե «հայրն ներքինեաց»։

[5] Զորանամակում ճիշտ են ցույց տրված մարդպետի երկու պաշտոնները։

*է հանձնված եղել նաև արքայական հանդերձարանի հսկողությունը։ Որոշելով սպանել Գղակ մարդպետին, Պապ թագավորը հրամայում է նախ նրան հագցնել անհամեմատ լայն զգեստներ, տանել* «տուն պատմուճանաց» *և այնտեղ գլխատել*[1]*։ Եթե հանդերձատունը գտնվում էր Գղակի տնօրինության տակ, ապա տիրոջ սպանությունը նրա պատերի ներսում պետք է ավելի վիրավորական թվար, ինչ որ կամենում էր թագավորը*[2]*։*

---

«մարդպետական, որ է ներքինի պահապան ի վերայ թագահւոյն եւ գանձուցն»։ Ներսեսի վարքի մեջ գանձերի պահպանությունը մտնում է սենեկապետի պարտականությունների մեջ. «Ներսէս լինէր սենեկապետ ի վերայ ամենայն գանձուց նորա»։ Փավստոսի բնագրում խոսվում է միայն այն մասին, որ Ներսեսը, որպես սենեկապետ, կանգնում է թագավորի գլխավերևը։ [Վարքի մեջ այս մասը կարդացվում է զարմուճանքան մատանին, որը ըստ երևույթին Փավստոսի «զարքունական <սուսերն ոսկէ>պատեանն» նախադասության աղճատումն է]։ Նկատի ունենալով մարդպետի «զտեղիս արքունի սենեակ կազմեցին» խոսքերը, Փավստոս, Բ, ժգ, կարելի է կարծել, թե մարդպետը կապ ուներ սենեկապետի հետ։ Թերևս սենեկապետը գանձեր պահելու պաշտոնի անունն է, մանավանդ որ Փավստոսի մոտ «գործակալութիւն սենեկապետ» հասկացվում է շատ լայն՝ որպես «հավատարիմ ի վերայ ամենայն կարգաց կենաց թագաւորութեան ի ներքոյ և արտաքոյ», Դ, դ։

[1] Փավստոս, Ե, զ, հմմտ. նաև Դրաստամատի խնդրանքը այն մասին, որպեսզի իրեն թույլ տան տեսնվել Արշակ թագավորի հետ՝ «լուանալ զգլուխ նորա եւ օծանել եւ զգեցուցանել նմա պատմուճան» և այլն, Ե, է։

[2] Փավստոսը գիտե մարդպետական տոհմի մի քանի ներկայացուցիչների։ Տիրանի ժամանակ կար «այր մի անօրէն, որ ունէր զպատիւ մեծի մարդպետութեանն, այր ներքինի, որում Հայր կոչէին» Փավստոս, Գ, ժը։ Հենց նա էլ մտնում էր Ներսեսի շրախմբի մեջ, «զՀայր մեծ իշխանն մարդպետութեան», Դ, դ և սպանվեց Շավասպ Արծրունու ձեռքով, Դ, ժդ։ Մյուս մարդպետը նա էր, որ Արշակի գերությունից հետո մտնում է Արտագերս ամրոցը և վիրավորանք հասցնում թագուհուն. «եմուտ-գաղտ ի ներս ի բերդն Հայր մարդպետ ներքինին եւ թշնամեաց զտիկինն», Դ, ծե։ Նա սպանվեց Մուշեղ Մամիկոնյանի ձեռքով և նրա փոխարեն նշանակեցին «ի տեղի հայրութեան մարդպետութեան զ(Դ)ղակ ումն անուն, որ յառաջս Արշակայ թագաւորին կամ Տիրանայ հօր նորա դամու մինչ լեալ նոյն գործ մարդպետութեանն», Ե, գ։ Նա նույնպես գլխատվեց Պապի օրոք պարսից թագավորի կողմն անցնելու փորձ կատարելու համար, Ե, զ։ Հենց սա է Մուշեղի համախոհ հայր մարդպետը, որ հիշվում է Ներսեսի մահվան ժամանակ, Ե, լգ։ Վերջապես, Արշակ թագավորի ողբերգական մահվան պատմության մեջ հանդես է գալիս ևս մի մարդպետ՝ Դրաստամատը, Ե. է։

Սրանցից առավել պատմական անձնավորություն է Գղակը, որ լավ հայտնի է Ամմիանոսին։ Ինչպես պատմում է նա, Գղակը սպանվեց իր համախոհ Արտավանի (Փավստոսի Մուշեղը) հետ միասին պարսից թագավորի դրդմամբ։ Ըստ

Հիշյալ պաշտոններով չէր սպառվում Արշակունիների պետության սպասարկող մեխանիզմը։ Այդ պաշտոնների մասին մեր այս տեսության նպատակն էր ապացուցել Պարսկաստանում և Հայաստանում Արշակունիների պետական կառուցվածքի հարազատությունը։ Հողերի և պաշտոնների նվիրատվության սովորությունը Հայաստանում պետք է հանգեր նույն հետևանքներին, ինչ որ Պարսկաստանում, այսինքն՝ պիտի առաջացներ սոցիալական

---

Փավստոսի Մուշեղը Գղակից ավելի ապրեց և մտածում էր Հայր մարդպետի հետ միասին անցնել կայսրի կողմը։ Իրականում դա ոչ այլ ոք է, բայց եթե նույն Գղակը։ Ըստ Ամմիանոսի՝ Արտագերս ամրոցում փակված Փառանձեմ թագուհու հետ բանակցում են հենց նույն Գղակն ու Արտավանը։ Նրանք գործում էին հօգուտ պարսից թագավորի, բայց բանակցության ժամանակ, խղճալով անօգնական կնոջը, հրաժարվում են իրենց դիտավորություններից։ Հետևաբար, Փավստոսի այն մարդպետը, որ Արտագերսում վիրավորանք է հասցնում թագուհուն, նույն Գղակն է։ Փավստոսը հավաստացնում է, որ Գղակը մի ժամանակ, Արշակի կամ նույնիսկ Տիրանի օրոք, վարել է մարդպետի նույն պաշտոնը։ Այս բանը հաստատում է նաև Ամմիանոսը, ըստ որի Գղակն ու Արտավանը նախկին փախստականներ էին, որ հեռացել էին հայոց թագավորից և անցել Շապուհի կողմը, quos olim susceperat perfugos commisit Armeniam, *Amm.* 27, 12։ Այս հանգամանքը թույլ է տալիս նույնացնելու Գղակին առաջին մարդպետի հետ, որ ապրում էր Տիրանի օրոք։ Ո՛չ Շավասպ Արծրունին և ո՛չ էլ Մուշեղ Մամիկոնյանը ոչ մի մարդպետ չեն սպանել։ Այս զուտ դիդակտիկ մի տարր է Փավստոսի զրույցների մեջ, որի նպատակն է պատժել հանցանքը։ Արծրունիներին կոտորելու համար մարդպետը սպանվում է այդ տոհմից միակ փրկվածի՝ Շավասպի ձեռքով, իսկ հայոց թագուհուն վիրավորանք հասցնելու համար նրանից վրեժխնդիր է լինում Մուշեղը։

[Դրաստամատի մասին էլ Փավստոսը ասում է, որ նա ծառայում էր Տիրանի օրոք. կարելի է կարծել, որ Գղակի փախուստից հետո Դրաստամատը գրավեց նրա տեղը։ Ամմիանոսը ոչինչ չգիտե Դրաստամատի մասին, և Արշակը, ըստ նրա, մահ է ընդունում դահճի ձեռքից։ Դատելով նրա անունից durust amat, որ նշանակում է ճիշտ ժամանակին եկավ, Դրաստամատը ավելի շուտ հեքիաթային անձնավորություն է, որ ստեղծված է զարդարելու Արշակի ողբերգական վախճանը]։

Առաջին երկու մարդպետներին Փավստոսը անվանում է Հայր, որ կարելի է համարել հատուկ անուն կամ կոչում։ Մեր բացատրությունն այն մասին, թե նրանք նույնն են, ինչ որ Գղակը, հարցը լուծում է հօգուտ այն վարկածի, թե Հայրը կոչում է։ Այս բացատրությունների հետևանքով կասկած է ծագում. արդյո՞ք մարդպետները ներքինիներ էին։ Ճիշտ է, որ Գղակը ներքինի էր. Ամմիանոսը նրան կոչում է spado։ Նրա կերպարը չորս անձնավորության մասնատվելով, այդ պատահական հատկանիշը փոխադրվել է մարդպետների վրա ընդհանրապես։

այնպիսի միավորումներ, որոնք, որպես հողային կալվածքների սեփականատերեր, իրենց դիրքով նման լինեին տեղական իշխաններին, բայց տարբերվեին նրանցից իրենց դիրքի ծագումով։ Պարսիկ Արշակունիները նման դիրք ստեղծում էին իրենց ազգակիցների համար, բայց Հայ Արշակունիները, գոնե քրիստոնեության շրջանում, մեծ մասամբ առաջ էին քաշում տեղական տոհմիկ ազնվականության ազդեցիկ ներկայացուցիչներին։ Հնարավոր է, որ սկզբում նրանք էլ առաջնությունը տալիս են եղել իրենց մերձավորներին։ Թե՛ մեկ և թե՛ մյուս դեպքում ինչ որ նոր բան էր մտցվում տեղական իրավակարգի մեջ՝ կամ տոհմական ազնվականությանը պաշտոնական մարմնի երանգավորում տալով կամ ստեղծելով նոր ազնվական տներ, որոնք իրենց իրավունքների աղբյուրով տարբերվում էին տեղական իշխաններից։

Այդ նորը արտահայտվեց համապատասխան տերմինով, ինչպիսին է ն ա խ ա ր ա ր ը։ Դժբախտաբար այդ բառը դեռևս հնարավոր չէ ստուգաբանական վերլուծման ենթարկել։ Հավանորեն նախապես այն նշանակել է նահանգների կառավարիչ, rectores։ Որպես սոցիալական հասկացություն նախարարը համարժեք է պարսկերեն šaϑrdar-ին[1], որի համապատասխան հողա-

---

[1] Մինչև այժմ կատարված փորձերը անհաջող են։ Ինճիճյանը, Հնախոսություն, Բ, 77, նախարար բառը համեմատում է լատիներեն prae-fectus-ի հետ՝ ելնելով հայ. նախ և արար բառերից։ Այս բացատրությունն ընդունում է նաև Մ. Էմինը, Թեթևակի ուղղումով։ Խորենացու թարգմանության հավելված, 1893 թ., էջ 298։ Ն. Մառի առաջարկած ստուգաբանությամբ, նախ կամ նահ, նահ-անգի կապակցությամբ, նույն ծագումն ունի, ինչ որ արաբերենում պահպանված իրանական nahie ناحية ն ա հ ա ն գ, իսկ -րար-ը raδ-ի աղավաղումն է, զենդերեն ratu, որ նշանակում է պ ա ր ո ն. Н. Марр. *Этимология двух терминов*, З. В. О. Р. Арх. О. XI. էջ 170։ Հայտնի իրանագետ Անդրեասը ենթադրում է, որ նախարարը կապ ունի Ամմիանոսի հիշատակած մի պարսիկ զորավարի Nohodares-ի անվան հետ, Hübschmann, *Grammat.* II, էջ 514։ Կասկածից դուրս է, որ այս տերմինի երկրորդ մասը -rar ծագում է -δar-ից և ոչ թե ratu-ից։ Դժվարությունը առաջին վանկի մեջ է, որը մեկնաբանելիս պետք է հաշվի առնել նախ-ա ռ ա ջ ի ն, նահ-ատակ, նահ-անգ պարս. naχust, nahie, զուգե և Ն ի խ ո ր-ա կ ա ն և այլն։ Պատմական նկատառումները հանգեցնում են naχarar-ի համեմատության šaϑrdar-ի հետ, այդ պատճառով էլ ուշադրավ է Ն. Մառի արած ենթադրությունը nah, nahr և šah, šahr բառերի կապի մասին։ Հմմտ. նահ-ատակ և շահ-ատակ։ Հետաքրքրական է, որ Եղիշեն, էջ 156, պարսից

յին միավորը nahang-ն է, որ համասար է šahr-ին։ Հավանական է, որ azat բառը նշանակում է նախարարի որդի։

Նոր տերմինները գործածությունից դուրս չվանեցին հներին, որովհետև նրանցով արտահայտված հասկացությունները ոչ թե փոխարինեցին, այլ գործեցին հների հետ կողք կողքի։ Շփվելով նոր հարաբերությունների հետ՝ տոհմական հին տերմինոլոգիան ենթարկվեց որոշակի համահարթման։ Բոլոր անվանումներից, որոնց տակ հասկացվում էին տոհմերի պետերը, տ է ր-ը ter գերակշռող դարձավ։ Մյուսները կամ անհետացան կամ նրանց գործածությունը տեղայնացվեց՝ մնալով առանձին տոհմերի մեջ որպես ժառանգական տիտղոսներ։ Տ է ր ը դարձավ տեխնիկական տերմին իշխանական տոհմերի պետերին կամ ավագ անդամներին նշելու համար։ Որոշակի փոփոխություն կրեցին նաև տոհմի երեխաներ կամ որդիներ նշանակող արտահայտությունները. sepuh-ը բացառապես դարձավ իշխանական տների սեփականությունը, իսկ մյուս բառերը պահպանեցին իրենց նախնական սովորական նշանակությունը։ Նույն ձևով էլ տերիտորիալ արտահայտություններից տ ու ն ը-tun դարձավ տեխնիկական տերմին՝ համապատասխան հողային գաղափար նշելու համար։

Այսպիսով, տ է ր, ս ե պ ու հ, տ ու ն tēr, sepuh, tun տոհմական հասկացությունների կողքին հանդես եկան ն ա խ ա ր ա ր, ա զ ա տ, ն ա հ ա ն գ—naχarar, azat, nahang վարչական հասկացությունները։ Տոհմական ավանդույթներն այնքան ուժեղ էին, որ ինչպիսի նոր հարաբերություններ էլ որ առաջ գային, դրանք պետք է մնային նրանց շրջանակում։ Այդ պատճառով էլ հուշարձաններում տ է ր և ն ա խ ա ր ա ր, ս ե պ ու հ և ա զ ա տ, տ ու ն և ն ա հ ա ն գ բառերը միմյանց հաջորդում են որպես համասարաղոր հասկացություններ։ Պետական սկզբունքի ուժեղացման հետ մեկտեղ նախարարը գերակշռություն է ստանում իշխանի և ավա-

---

արքունիքի ավագանին բաժանում է վզրուկf եւ պատուական նախարարf-ի, որ համապատասխանում է buzurgān և šaϑrdarān-ին։

Քանի որ նախարար բառի ստուգաբանությունը դեռևս կռահումների և ենթադրությունների շրջանում է գտնվում, ավելորդ չի լինի նշել, որ կարող է պատահել, որ nah առեղծվածային բառը լինի da-n̄hiu-ի հատած ձևը, որ կորցրել է սկզբի da-ն և որ nahoδar-ը մոտենում է da-nhuδar-ին, ինչպես և nahapet-ը՝ da-nhupati-ին։

գանիի իմաստով, իսկ տէրը դառնում է տիրոջ, սեփականատիրոջ համար ու բնորոշ արտահայտություն։ Ազնվականական տոհմի պետին կամ ավագ անդամին շուք տալու համար տերի և նախարարի փոխարեն անհրաժեշտ եղավ ստեղծել նահապետ-nahapet և տանուտեր-tanuter նորակազմ արտահայտությունները։ Առաջին բառի ծագումը պարզ չէ, բայց հավանական է, որ այն այնպես է վերաբերում nahang-ին, ինչպես տանուտերը-tanuter tun-ին։ Նոր բառակազմությունները պետք է փոխարինեին տէր-ին և նախարարին նրանց սկզբնական իմաստով, թեև դրանք ամբողջովին չքշեցին նրանց տեղը, բայց գերազանցորեն գործ էին ածվում նրանցից առաջ այն բոլոր դեպքերում, երբ անհրաժեշտ էր լինում հատուկ շուք տալ տոհմի պետին։

Այսպես են պատկերանում մեզ հայերի սոցիալական կացութաձևի առավել բնորոշ տերմինները իրենց պատմական հաջորդականությամբ։ Մեր պրպտումները մենք կատարեցինք պատմական ընդհանուր եզրադատումների լույսի տակ, չկտրվելով այն իրականության հողից, որ պատկերված է մատենագրության մեջ։ Օգտվելով վերը բերված համեմատությունից, կարող ենք ասել, որ սկսելով հետազոտվող ծառի կատարներից, մենք աշխատեցինք երևան հանել նրա արմատներն այն ուղեցույց թելերով, որ ընձեռում է ծառի տեսանելի կամ մեզ մատչելի մասը։ Այդ ճանապարհով ստացած արդյունքը՝ մեր տեսությունը, այնքան նշանակություն ունի, որքան առհասարակ յուրաքանչյուր կոնստրուկտիվ աշխատանք։

Իսկ այժմ մենք քննության կառնենք մեր ուսումնասիրության ենթակա երևույթի այն փուլը, որի մեջ գտավ նրան հայ դպրությունը, և որը մեզ ex silentio հիմք ծառայեց պատմական անցյալին վերաբերող մեր նախորդ քննությունների համար։

## II

Արշակունյաց Հայաստանը, ինչպես այն պատկերված է հայ մատենագրության մեջ, իրենից ներկայացնում էր մի քանի տասնյակ իշխանական տիրույթների բաժանված երկիր։ Իրավական տեսակետից իրար հավասար լինելով, փաստորեն նրանք իրարից տարբերվում էին իրենց քաղաքական կշռով և թագից ունեցած կախումով։ Համեմատաբար ավելի ինքնուրույն էին այն իշխանու-

թյունները, որոնք գտնվում էին ծայրամասերում, և ամենից առաջ՝ այսպես կոչված, բդեշխությունները, ապա Սյունիքի, Մոկքի, Տայքի և Ծոփքի իշխանական տները։ Ներքին իշխանություններից առանձնապես աչքի էին ընկնում Մամիկոնյանները, Բագրատունիները, Մարդպետները, Արծրունիները, Խորխոռունիներն ու Կամսարականները։ Մնացած մեծամասնությունը բաղկացած էր մանր իշխաններից, որոնք իրենց ծագումով և կալվածքների չափով շատ ավելի ցածր էին կանգնած և մեծ մասամբ ապաստան էին գտնում հզոր իշխանությունների ազդեցության ոլորտում։

Իրենց դիրքով բոլոր տերիտորիալ միավորները համարվում էին հավասար և կազմում էին տուն, որի գլուխ կանգնած էր տերը կամ տանուտերը, և կոչվում էր տանուտերություն կամ նախարարություն։ Տանուտերությունները հանդիսանում էին մեկուսացված միջավայր՝ պետական իրավասություններով։ Նրանք ունեին դատավարչական անկախություն և գերագույն իշխանության այլ ատրիբուտներ։ Դրանք յուրատեսակ մանր պետություններ էին, որոնց գլուխ կանգնած իշխանները արքայիկներ, փոքրիկ թագավորներ էին։ Նրանցից յուրաքանչյուրի իրավասության սահմանները de facto կախված էին այն հզորությունից, որ նրանք ունեին տվյալ պահին։ Պատմիչները հաճախ խոսում են մեծամեծ աւագանու մասին և տարբերում են ավագ տանուտերներին կամ նախարարներին կրտսերներից, անշուշտ ելնելով նրանց համեմատական հզորությունից։ Տանուտերության ընդհանուր վիճակը որոշվում էր իշխանների և թագավորի ունեցած ուժերի իրական փոխհարաբերությամբ և նշանավորվում էր մերթ կենտրոնաձիգ և մերթ կենտրոնախույս ձգտումների գերակշռությամբ։ Հնարավորության դեպքում թագավորները չէին քաշվում բռնագրավելու հանցանք գործած իշխանների կալվածքները։

Հայաստանի քաղաքական նկարագրի այս ընդհանուր պատկերը՝ վերը նշված գծերով, թվում է, թե բավական է, որպեսզի նրա ներքին կառուցվածքը հարազատացնենք այն իրավակարգին, որ հայտնի է ֆեոդալիզմ անունով։ Քաղաքական մարմնի բազմագլուխ կմախքը պետական թույլ միությամբ բնութագրում է հենց ֆեոդալական պետությունը։

Ֆեոդալիզմի դասական երկիրը՝ Ֆրանսիան, ֆեոդալական կարգերի ծաղկման ժամանակ նույն պատկերն էր ներկայացնում,

ինչ որ Արշակունիների Հայաստանը։ Երկիրը բաժանված էր բազմաթիվ խոշոր և մանր իշխանությունների, որոնք պետական իրավունքներից օգտվում էին տարբեր չափով։ Մի քանիսը ներկայացնում էին խիստ զարգացած ֆեոդալական օրգանիզմ և օժտված էին լիակատար գերագույն իշխանությամբ. մյուսները հանդիսանում էին մեծ սենյորություններ նույնպիսի իշխանությամբ. և վերջապես կային սահմանափակ իրավունքներով մանր տիրույթներ։ Սուվերենության տեսակետից բոլոր իշխանությունները բաժանվում էին երկու խմբի՝ խոշոր սենյորությունների և մանր սենյորությունների՝ grandes seigneuries, petites seigneuries: Առաջինները, թվով մոտ քառասուն, ունեին պետության հատուկ բոլոր իրավունքները՝ droits régaliens և հանդիսանում էին տարբեր դքսություններ, հերցոգություններ, կոմսություններ — duchés, comtés, vicomtés։ Մանր սենյորությունները, որոնք խիստ բազմաքանակ էին, կազմված էին châtellenies-ներից, երկրորդական vicomtés, vidamies-ներից և avoueries-ից, չունեին քաղաքական նույն նշանակությունը և նրանց տերերը սահմանափակ իրավունքների հետևանքով հաճախ վասալներից չէին տարբերվում[1]։ Արշակունյաց Հայաստանի ֆեոդալական բնույթը միայն արտաքին քաղաքական կերպարանքի մեջ չէ որ արտահայտվում էր. այն ավելի խորն էր գնում և ընդգրկում էր այնտեղ գործող իրավակարգի էությունը։

Ֆեոդալիզմը սոցիալ-քաղաքական հայտնի համակարգ է, որ հատուկ է ոչ միայն միջին դարերին. այն որոշ իմաստով հանդիսանում է մարդկային հասարակությունների զարգացման անհրաժեշտ մի փուլ և նկատվում է տարբեր ժողովուրդների մոտ և տարբեր դարաշրջանների և կուլտուրական կենցաղավարության մեջ։ Պատմագրությունը բացահայտել է, որ ֆեոդալիզմը ծագում է և՛ վերընթաց, և՛ վարընթաց ձևով, այսինքն՝ կամ մշակութային վերելքի և կամ նրա անկման ու քայքայման պրոցեսում։ Այս տեսակետից ֆեոդալիզմի ծագման մասին ռոմանիստների և գերմանիստների վեճը դադարում է միմյանց ժխտող տարակարծություն լինելուց։ Երկու կողմերն էլ իրավացի են նույնիսկ իրենց միակողմանիության մեջ։ Դեպի անկում գնացող Հռոմեական կայսրությունն արդեն դրսևորում էր ֆեոդալականացման պրոցեսներ։ Հռոմեականու-

[1] Luchaire, *Manuel des institutions francaises*, p. 235—6.

թյան նկատմամբ հաղթանակած բարբարոսությունն իր հերթին կյանքի տոհմական ձևերի քայքայմանը զուգընթաց, որի մեջ նա գտնվում էր դեռևս Ե դարում, նույնպես ոտք էր դնում ֆեոդալիզմի ուղին։

Երկու պրոցեսները մեկը մյուսից անկախ տանում էին դեպի նույն հասարակարգը. նրանց հանդիպումը և բախումը գերմանական նվաճումներից հետո միայն բարդացրին ծնվող հաստատությունների բնույթը։

Ֆեոդալական կարգերի ամենից ավելի բնորոշ առանձնահատկությունը գիտնականները համարում են գերագույն քաղաքական իշխանության մասնատվածություն ու ցրվածությունը։ Ըստ այդ բնորոշման ֆեոդալականացումը սկսվում է այն ժամանակ, երբ հողը, գերագույն իշխանությունը և առհասարակ պետական իրավահարաբերությունները կտորակվում են բազմաթիվ շրջանային կառավարիչների միջև, և ընդհանուր պետական ենթակայության փոխարեն զարգանում են մասնավոր ենթակայության խմբավորումներ։ Ընդ որում ելակետը խոշոր հողատիրությունն է, որը ամբողջ իրավակարգի հենարանն է, և որից կախված են նրա մյուս բոլոր յուրահատկությունները։

Ֆեոդալական հողատիրության հիմքը համարում են երկու տիպի հողեր. ալլոդներ՝ հայրենական և արքայական բենեֆիցիումներ՝ նվիրատվություններ։ Վերջին տիպի հողատիրությունից, ինչպես ենթադրում են, առաջ է եկել ֆեոդ հաստատությունը, որից և ամբողջ հասարակարգը ստացել է իր անվանումը։ Feodum, fief բառը հուշարձաններում հանդիպում է Ժ դարից ոչ շուտ։ Սկզբում այն գործ էր ածվում բենեֆիցիում իմաստով և նրան հավասար, բայց հետո ԺԱ դարի սկզբից նրան դուրս մղեց։ Այդ ժամանակից սկսած՝ ֆեոդը այն հողն էր, որից օգտվելը պայմանավորվում էր զինվորական ծառայությամբ, ընդ որում ֆեոդը բենեֆիցիումից տարբերվում էր, ըստ հետազոտողների բացատրության, նրանով, որ տրվում էր որպես ժառանգական տիրապետություն, մինչդեռ բենեֆիցիումը տրվում էր ցմահ օգտագործման[1]։

Մեզ թվում է, որ ֆեոդի ծագումը և նրա առնչությունը բենեֆիցիումի հետ ֆեոդալիզմի մասնագետների կողմից այնքան էլ ճիշտ չի մեկնաբանվում։ Feodum, fief բառը թեև փաստաթղթե-

[1] Luchaire, *op. cit.* p. 155.

*րում հանդիպում է Ժ դարից սկսած, բայց անվիճելի է, որ այն ավելի հին ծագում ունի։ Ֆեոդալական գաղափարներն ու տերմինները վերլուծելիս պետք է տարբերել հռոմեական և գերմանական հակադեպերը։ Ֆեոդը, ինչպես և ալլոդը գերմանական կյանքի սեփականությունն են։ Հռոմեական իրականության մեջ իրենց նշանակությամբ համապատասխան հասկացություններ են լատիֆունդիան և բենեֆիցիումը, որպես առաջիններին համատարածոր սոցիալական գործոններ։*

*Ալլոդները, որպես հայրենական ստացվածք և պարհակներից ազատ ժառանգական հողեր, ծագումնաբանորեն սերում են հողային այն տիրույթներից, որոնք մի ժամանակ պատկանում էին համայնքներին, որոնց քայքայումից հետո անցան նրանց պետերին կամ այն հզոր տարրերին, որոնցից կազմվեց ապագա ազնվականությունը։*

*Իսկ ֆեոդը, ամենայն հավանականությամբ, հակառակ ալլոդին, սկզբնական շրջանում այն հողն էր, որ ենթակա էր հարկման կամ հողային տուրքի, ինչպես նաև որոշ պարհակների։ Եթե* allod-*ը իր բառակազմությամբ* all-*ամբողջ և* od-*գույք ցույց է տալիս լիակատար սեփականություն (կամ, ավելի ճիշտ, ամբողջ տոհմի կամ համայնքի սեփականություն լինելը), ապա* feodum, fief-*ը* *fieh-ից և od-ից, որտեղ fieh=գերմաներեն vieh-ին, որը նույն արմատից է, ինչ որ լատիներեն pec-us-ը, լատիներենի նման նշանակում է* pecus *և* pecunia *և բնորոշում է հողերի որոշ տեսակ, որոնց բերած հասույթը կոչվում է pecunia։ Այս լուսաբանությամբ ֆեոդը կարող է նշանակել և ցենզիվա, և բենեֆիցիում՝ նայած այն հարկատվության բնույթին, որոնց ենթակա է։ Դրանով է բացատրվում այն, որ ֆեոդալական դարաշրջանում, երբ ֆեոդը ստացավ ժառանգական բենեֆիցիումի նշանակություն, Ֆրանսիայի մի քանի վայրերում ֆյեֆը նշանակում էր նաև ցենզիվա՝* terresroturières, *այսինքն՝ հասարակ խավի հողաբաժիններ*[1]*։ Ժառանգականությունը սկզբից ևեթ հատուկ էր ֆեոդին։ Ժ դարից սկսած՝ մեզ հանդիպում է perpetuum* beneficium *արտահայտությունը, որը ցույց է տալիս, թե բենեֆիցիալ հողերի զարգացումը ևս գնում էր դեպի ժառանգականություն։ Շատ հնարավոր է, որ հենց այս հանգամանքն էլ պատճառ դարձավ, որ բենեֆիցիումը միաձուլվի ֆեոդի հետ և անհետանա։*

[1] Luchaire, *op. cit.* p. 156.

*Ֆեոդալական կարգի հատկանշական կողմն այն է, որ հողային հարաբերությունները սերտորեն միահյուսվում են անհատների միջև եղած հարաբերություններին։ Հողը դառնում է ոչ միայն հարստության աղբյուր, այլև մարդկանց վրա իշխելու միջոց։ Ազատ հողերի տերը դառնում է սենյոր, իսկ ֆեոդինը՝ ֆեոդալ կամ սենյորից կախված վասալ։ Այսպիսի ենթակայությունը նույնպես արմատներ ունի գերմանական և հռոմեական անցյալում։ Հռոմեացիների մոտ, մանավանդ անկման շրջանում, գոյություն ունեին պատրոնատի և կլիենտելի զանազան ձևեր. գերմանացիների մոտ կային սենյորներ և գասինդներ, վասսեր, այսինքն՝ ուղեկիցներ կամ ջոկատ, որ կազմված էր լինում սենյորին նվիրված մարդկանցից։ Սենյորին մատուցած ծառայության համար նրանք վայելում էին նրա հովանավորությունը։ Այս ծառայությունը տարբերվում էր այն կախումից, որ հաստատվեց ֆեոդալական դարաշրջանում։ Ծառայությունը, բացառություն չհամարելով նաև զինվորականը, հնարավոր է նաև առանց հողային փոխհատուցման, և թերևս այդ տեսակի կախումը կարելի է կոչել վասալական։ Բայց ֆեոդալական վասալության էությունը հանդիսանում է հողի հետ կապված ծառայությունը և գլխավորապես զինվորական ծառայությունը։ Հողատիրությամբ պայմանավորված այս ծառայության մեջ էլ կայանում է անձնական կախվածության ֆեոդալականացման էությունը։*

*Այսպիսով ալլոդը և լատիֆունդիան հանդիսանում էին ազատ կամ սենյորական հողատիրության հիմքը, իսկ ֆեոդը և բենեֆիցիումը՝ պայմանական կամ ֆեոդալական հողատիրության։ Սենյոր-սյուզերենը սոցիոլոգիապես ծագում էր գերմանական սենյորից և հռոմեական մագնատից, իսկ վասալը՝* vassi-*ից և* clientes-*ից։*

*Հայաստանում կային այն հիմնական տարրերը, որոնցից ստեղծվում էր ֆեոդալական ռեժիմը։ Հողատիրությունը, որ ամեն ինչի հիմքն է ոչ միայն արտաքնապես, այլև մասամբ ծագումով, մեծ նմանություն ուներ ֆեոդալականի հետ։ Հայերի մոտ էլ տարբերվում էին հողերի երկու տեսակ՝* **հայրենիք** *և* **պարգևականք**, *այսինքն՝ հայրենական հողեր և բենեֆիցիումներ*[1]*։ Բացի*

---

[1] *Եղիշե, էջ 159, «երկիրք, եթէ հայրենիք, եթէ պարգեւականք եւ եթէ քաւակագինք»։*

*դրանից հիշատակվում են նաև* **գանձագինք**, *այսինքն՝ գնովի կալվածքներ։ Այդպիսի հողեր ԺԲ դարից սկսած հայտնի էին նաև Արևմուտքի ֆեոդալական աշխարհում։ Բայց հողային անշարժության գլխավոր տիպերը ինչպես Արևմուտքում, այնպես էլ Հայաստանում* **հայրենական** *և* **պարգևական** *հողերն էին։*

*Մերովինգյան շրջանի ալլոդը, որպես հողային գույքի տեսակ, միանգամայն համապատասխանում է հայկական* **հայրենի-քին**: *Երկուսն էլ հայրենական են, այսինքն՝ ժառանգական հողեր են և սերնդից սերունդ անցնում են լիակատար սեփականատիրության իրավունքով։* **Հայրենիք** *ընդհանուր անվան տակ համակցվում էին իշխանների տոհմական տիրույթները, որոնց միավորը հանդիսանում էր* **տունը**: *Գրականության մեջ այդ տները պատկերացվում են սենյորության գծերով։ Դրանք հանդիսանում են* **տէրութիւն**, teruθiun-*պ ե տ ո ւ թ յ ո ւ ն։ Նույն ձևով էլ ֆեոդալական* dominium-*ը որպես ալլոդական կալվածատիրության միավոր հանդիսանում էր սենյորության հիմքը։*

*Ինչ վերաբերում է* **պարգեւականք** *կոչված հողերին, ապա թերևս այս տերմինը պատմիչը գործ է ածում միայն այն փոքր հողամասերը, շեներն ու գյուղերը նշելու համար, որոնցով ա յ ս կ ա մ  ա յ ն  ծ ա ռ ա յ ո ւ թ յ ա ն համար վարձատրվում էին իշխանները։ Բայց ավելի հին ժամանակներում պարգևատրման առարկա էին ծառայում նաև ավելի ընդարձակ հողեր։ Արշակունիների պատմիչի վկայությամբ, ինչպես նշված է վերը, իշխաններից շատերը «գավառատեարք լեալք ի նոցանէն (Արշակունիներից), եւ ոմանք մեծամեծք աշխարհաց, ոմանք աւագ-աւագ աւանաց գեղից եւ գանձուց տեարք լեալք էք եւ պէսպէս դաստակերտացն»*[1]*։*

*Մենք այն կարծիքը հայտնեցինք, որ* nah-ang-*ը այնպես է հարաբերում* **պարգևականք** *հողերին, ինչպես տ ո ւ ն-ը տոհմականին կամ հայրենականին. այն միաժամանակ վարչական մեծություն էր։ Այնտեղ իշխողները նախարարներն էին, ինչպես որ տ ա ն  գլուխ կանգնած էին տ է ր-երը կամ տ ա ն ո ւ տ է ր-երը, իսկ նրանց կալվածքներն էլ կոչվում էին* naχararuθiun-*նախարարություն։ Նախարարությունն իր էությամբ ոչնչով չէր տարբերվում*

---

1 Փավստոս, Դ, ծա։

տանուտերությունից։ Երկուսն էլ սենյորության նման տերիտորիալ-քաղաքական մեծություն էին, ընդ որում նախարարությունները կարելի է բաղդատության մեջ դնել հռոմեական նախկին պրովինցիաներից առաջացած comtés և duchés-ների հետ, իսկ տանուտերությունները՝ ալլոդական սենյորությունների alleux souverains-ի հետ։

Ալլոդների էվոլյուցիան կատարվեց երկու ուղղությամբ. դրանց մի մասը, աստիճանաբար ընդարձակվելով, դարձավ հողային այնպիսի մեծ ուժ, որ նրանց տերերը հեշտությամբ, այսպես կոչված, ի մ ու ն ի տ ե տ ի միջոցով կարողացան քաղաքական իրավունքներ ձեռք բերել։ Թագավորական իշխանությունը նրանց է զիջում դատավարությունը, հարկերի գանձումը և ալլոդի ներքին կյանքում հասարակական իրավունքի այլ հոդվածներ, հաճախ նաև դքսության տիպի պետական պաշտոններ։ Ձեռք բերած անհատական իրավունքներն ու առավելությունները հաճախ դառնում էին ժառանգական։ Ոտք դնելով քաղաքական ուղին՝ ալլոդները ձգտում էին սենյորության, և, խսկապես, հետագայում բոլոր մեծ ալլոդները դարձան սենյորություններ։

Մյուս և չափազանց շատ ալլոդները հնարավորություն չունենալով ընդարձակվել ո՛չ տերիտորիապես և ո՛չ էլ քաղաքականապես, ընդհակառակն՝ իրերի թելադրանքով հարկադրված էին լինում կորցնել իրենց ազատ ժառանգական հողերի իրավական բնույթը և մտենալ բենեֆիցիումներին կամ պայմանական-ծառայական հողատիրությանը՝ ֆեոդին։ Դրանց տերերը դառնում էին ավելի ուժեղ սենյորների վասալներ կամ ֆեոդալներ։

Կարելի՞ է արդյոք նման պրոցեսներ գտնել նաև հայ հողային հարաբերություններում, և ամենից առաջ ֆեոդալական հասկացությունների տեսակետից ինչպե՞ս որակել հայ իշխանական տիրույթների հարաբերությունները թագի նկատմամբ։

Ըստ հայկական աղբյուրների՝ իշխանները, նախարարները կամ տանուտերները «ծառայք թագաւորի էին»։ Նրանց և թագավորի հարաբերությունը համարվում է ծառայութիւն: Թագավորը նրանց համար տէր է, սուլերեն, թագավոր։ Ծառայ, ծառայութիւն տերմինը համապատասխանում է servitium-ին և obsequium-ին, արտահայտություններ, որոնցով նշվում էին վասալի ծառայական պարտականությունները սենյորի նկատմամբ. վա-

սալը ինքը ոչ այլ ոք է, եթե ոչ ծառա՝ famulus[1]։ Ծառայական կախումը գուցե և հիմնված է fides-ի կամ ֆեոդի վրա. Հայկական աղբյուրներն այնքան էլ պարզ չեն ներկայացնում հարցի այդ կողմը։ Մի կողմից իշխանները դուրս են բերվում իբրև իրենց կալվածքների կատարյալ սեփականատերեր այնպիսի անկապտելի իրավունքներով, ինչպես թագավորը, մյուս կողմից հաղվադեպ չեն այնպիսի դեպքերը, երբ թագավորը այս կամ այն իշխանի կալվածքները հարքունիս է գրավում կամ ընդհակառակը՝ նոր հողեր է նվիրում։ Օտարումների և նվիրատվությունների իրավունքը վերաբերում է dominum directum-ին, որով բնորոշվում է գերագույն իշխանի հարաբերությունը ֆեոդալի նկատմամբ։ Իշխանական հողերի բռնագրավումը Արշակունիների օրոք կարելի է մոտեցնել forfaiture իրավունքին, որ գործադրում էին սենյորները հանցանք գործած վասալների նկատմամբ։ Հայաստանում իրավիճակն աչքի չէր ընկնում կայունությամբ, մի բան, որ հատուկ է ֆեոդալական միջավայրին։

Հայոց իշխանական հողատիրությունն ավելի շուտ մոտենում էր այն ֆեոդների տիպին, որոնք ֆեոդալիզմի պատմաբանների մոտ կոչվում են ֆյեֆ-սենյորիա՝ *fiefs-seigneuries*։

[1] G. Waitz. *Deutsche Verfassungsgeschichte*, IV p. 273, Das Verhältniss zum Herrn als ein Diener (serviere), Dienst (servitium) bezeichnet; der Wassall heisst um des Willen auch wohl selber Diener (famulus, puer). Փավստոս, Գ, Թ, «ապստամբեաց յարքայէն Հայոց մի ի ծառայից նորա մեծ իշխան Աղձնեաց... զբարեկիր զծառայս իւր, զիշխանն Կորդուաց, Ծովփաց...» և այլն... «Կայր բդեաշխն Վաղինակ ի ծառայութեան արքային» Գ, Ժ «մեծ ծառայն արքային Հայոց առ Մանաճիհր Ռշտունի», էջ 250, իշխանները դիմեցին պարսից թագավորին. «զի զնա պաշտիցեն եւ նմա միամտութեամբ ծառայեսցին»։ էջ 253՝ գտեալ իւրաքընչ զարքայն պարսից եւ կային ի ծառայութեան նորա, Փարպեցի, էջ 46, «ծառայից գրել առ իւրեանց տէրն... ծանուցանել նոցա զձեր տէրութիւն և զնոցա ծառայութիւն», էջ 49, «... զվաստակ և զհպատակութիւն, զոր ծառայիցն պարտէ առ իւրեանց տեարսն», էջ 55, «ի ժամանակէ յորմէհետէ կարգեալ եմք ի ծառայութիւնդ» էջ 83, ծառայն ձեր Վարդան (Մամիկոնեան», էջ 137, ձեզ Արեաց տեառն արքանեկութեան արժանի եղէ, ի մտի-էջի... ձեզ ծառայութիւն առնել. էջ 147, արքայից արքայի ի ծառայութենէ մի՛ ելանեք, էջ 169, մեր բնիկ տեարք էք եւ մեք ձեր բնիկ ծառայք եմք, էջ 138, մեր բնիկ տեարք էք, եւ հարցն մերոց եւ նախնեաց եւ մեք ծառայութիւն առնեմք», Եղիշե, էջ 81, «հարքն մեր... կացին ի ծառայութեան վաստակս... եւ մեք զնոյն ծառայութիւն ծառայեցաք» և այլն։

Պատմաբանները տարբերում են իսկական ֆեոդերը և այնպիսիները, որոնք թեև կոչվում են ֆեոդեր, բայց իրենց իրավական վիճակով նման են սենյորություններին[1]։ Ֆեոդերի այդ երկու տեսակները հենվում են ֆեոդալական հողատիրության երկու հակադիր սկզբունքների վրա. մի կողմից ֆեոդը համարվում է պայմանական-հողատիրություն՝ ենթակա բռնագրավման, եթե տիրողը դրժում է ծառայության երդումը, մյուս կողմից՝ ֆեոդալը, չցանկանալով այլևս ծառայել տվյալ սենյորին, իր հողերով ծառայության է անցնում մի ուրիշ սենյորի մոտ, այսպես կոչված կոմենդացիայի հիմունքով։ Մի սենյորից մի ուրիշի մոտ ծառայության անցնելը ցույց է տալիս, որ տվյալ անձը համարվում է հողի լիակատար սեփականատեր, և նա ազատ է ծառայելու նրան, ում ցանկանում է։ Նշանակում է, այդ դեպքում ֆեոդալի անձնական կախումը սենյորից գերակշռում էր հողային կախումից։ Այս տիպի սենյորություն մենք նկատում ենք հատկապես ֆեոդալիզմի առաջին շրջանում։ Նոր պատմաբաններից մեկի կարծիքով դուքսերի և իշխանների տերիտորիալ գերիշխանությունը տարածվում էր միայն նրանց սեփական հայրենական կալվածքների վրա, իսկ հայրենական կալվածքներից դուրս նրանց իշխանությունը տերիտորիայի նկատմամբ ավելի քիչ էր իրագործվում, քան այն անձերի նկատմամբ, որոնք կապված էին նրանց հետ հավատարմության վասալական երդումով[2]։

Այսպես կարելի է բնորոշել նաև Հայաստանում թագավորի հարաբերությունները իշխանների հետ։ Այդ հարաբերությունները ավելի շատ կրում են անձնական, քան թե տերիտորիալ կախման բնույթ։ Թագավորը ինչ-որ հանցանքի համար տվյալ իշխանին զրկում է կալվածքից, բայց այդ պատիժը չի տարածվում նրա ժառանգների վրա. պատժված իշխանի մերձավոր ժառանգը տեր է դառնում իր իրավունքներին. գրաված հողը վերադարձվում է նրան որպես իր տոհմի անկապտելի սեփականություն։ Սակայն Հայաստանում, ինչպես առհասարակ ֆեոդալական միջավայրում, սո-

[1] Luchaire, *op. cit.* p. 159, il faut distinguer les *fiefs* qui sont des *seigneuries* et les fiefs qui n'en sont pas. Ռուսական ֆեոդալիզմի մասնագետ Ն. Պ. Սիլվանսկին առաջին տիպի ֆեոդերը անվանում է ֆեոդեր-բենեֆիցիումներ, իսկ երկրորդը՝ ֆեոդեր-ալլոդներ։ *Феодализм в древней Руси,* p. 76.

[2] Mortet, *Feodalité,* Grande Encyclopédie XVIII, p. 206.

ցիալական հարաբերությունները կարգավորողը ոչ թե իրավական նորմերն էին, այլ կոնկրետ ուժը, և նրանից կախված էլ հարաբերությունները միանգամայն տարբեր ձև են ընդունում։ Ինչպես որ Արևմուտքում կային սենյորություններ, որոնք իրենցից ներկայացնում էին պետություններ, որոնց համար թագավորը միայն հանդիսանում էր իշխանների միության գլուխ, իսկ մյուս սենյորությունները օգտվում էին նույն իրավունքներից ավելի պակաս չափով, բայց, այնուամենայնիվ, համարվում էին սուվերեն և, վերջապես, կային զանազան երանգավորումների ֆեոդեր՝ ծառայության պայմանով, երաշխավորության իրավունքով և այլն, ճիշտ այդպես էլ Հայաստանում. սահմանապահ իշխանները, այսինքն՝ բդեշխները իրենց դիրքով համարվում էին փոքրիկ թագավորներ. ավագ տանուտերությունները փաստորեն օժտված էին անհամեմատ մեծ իրավունքներով, քան կրտսերները. և կային իշխաններ, որոնք մեծապես կախման վիճակում էին գտնվում։

Ըստ ընդունված սխեմայացման ֆեոդալական համակարգը բաղկացած է անձնական և հողային կախման երեք օղակներից. 1. Սենյորը և նրա հայրենական տիրույթը (դոմենը) կամ սենյորի անմիջական օգտագործման ենթակա սենյորության մի մասը, 2. մի շարք վասալներ և նրանց ֆեոդերը կամ հողամասերը, որ նրանց է զիջել սենյորությունը, 3. ռամիկները և նրանց հողաբաժինները, որ կոչվում էին ցենզիվաներ։

Ֆեոդալիզմի հիմնական գիծը առաջ համարվում էր հողատիրության պայմանականությունը՝ ֆեոդը, իսկ այժմ պատմաբանները առաջին պլան են քաշում հողի հետ անձի կոմմենդացիան և ֆեոդալական կարգերի ծանրության կենտրոնը փոխադրում են սենյորության վրա։ Իսկն ասած՝ կոմմենդացիան չի հակասում պայմանականության սկզբունքին. այն միայն ֆեոդը պաշտպանում է ճորտացումից, իսկ պայմանական սեփականությունը մնում է ֆեոդի հատկանիշը, այնպես որ ֆեոդի տերը, մի այլ սենյորի մոտ անցնելով՝ չի ազատվում ծառայությունից։

Ֆեոդալական հարաբերությունների յուրաքանչյուր համակարգում, կարևորի և անկարևորի տարբերումով, մի յուրատեսակ արտարակցիա է՝ տեսական մի կառուցվածք. իրական կյանքում այդ հարաբերությունները դրսևորվում են բազմազան զուգորդումներով ու ձևերով։ Պատմական ուսումնասիրության խնդրի հա-

մար ավելի արդյունավետ է երևույթներն ուսումնասիրել կոնկրետ բարդության մեջ, քան թե կանգ առնել այս կամ այն կողմի կարևորության համեմատական աստիճանի վրա։ Մենք ճիշտ տեսակետի հետևած կլինենք, եթե, ելնելով ֆեոդալական հասարակության մեջ երկու խավերի՝ սենյորների և ֆեոդալների առկայությունից, ֆեոդալական հասարակարգի իրավահարաբերությունները ևս համապատասխանաբար բաժանենք երկու բնագավառի, այսինքն՝ սենյորականի և ֆեոդալականի բառի նեղ իմաստով վերցրած և նրանցից յուրաքանչյուրը քննության առնենք առանձին-առանձին։

Արշակունյաց Հայաստանը, ամբողջությամբ վերցրած, կարող է ուսումնասիրվել որպես մի մեծ սենյորություն, որտեղ սենյոր են Արշակունի տիրակալները, իսկ վասալ՝ նրանց իշխանությունն ընդունող իշխանները, մնացած բնակչությունը՝ ռամիկները կամ գյուղացիությունը։ Նախարարության՝ թագավորի նկատմամբ ունեցած հարաբերությունից հետևում է, որ նրանցից յուրաքանչյուրը կարող է այս կամ այն չափով հավասարվել պարզ սենյորության։ Ֆրանսիական թագավորության նման, որ հանդիսանում էր նախ և առաջ բարձրագույն սենյորություն, Արշակունյաց թագավորությունն էլ իրենից ներկայացնում էր մի մեծ նախարարություն, իսկ նախարարություններն էլ իրենց հերթին ձգտում էին իրենք իրենց ցույց տալ իբրև Արշակունիների տիպի մանրիկ թագավորություններ։ Հայկական կենցաղում սենյորականության և ֆեոդալականության հետքերն ուսումնասիրելիս կարևոր է ցույց տալ նրանց բնորոշ հատկանիշների առկայությունը՝ անկախ նրանից, դրանք թագավորակա՞ն իշխանության հատկանիշներ են, թե՞ նախարարական։

Հայաստանում կյանքն ավելի շատ ենթարկվում էր բարքերին և սովորույթին, քան՝ օրենքին, և այդ պատճառով էլ իզուր է այստեղ փնտրել հարաբերությունների օրենսդրական այն կանոնարկումը, որ նկատվում է արևմտյան ֆեոդալիզմի մեջ։ Այն, ինչ Արևմուտքում ձևակերպված է իրավական ակտերի ձևով, Հայաստանում հանդես է գալիս սովորույթի քողի տակ։ Այս չի խանգարում, սակայն, որ մենք զուգադրենք դրանք, քանի որ ֆեոդալական օրենսդրությունը վավերացրել է միայն այն փաստական կարգը, որ ստեղծել է կյանքը։

Այն, ինչ Ֆրանսիայում կոչվում էր seigneurie, Անգլիայում՝ manor և Գերմանիայում՝ grundherrschaft, հայերի մոտ կոչվում էր տէրութիւն և տանուտէրութիւն կամ նախարարութիւն և նահապետութիւն։ Սենյորը, ըստ այդմ, կոչվում էր տէր և տանուտէր կամ նախարար և նահապետ: Մեզ հասած պատմական հուշարձաններում այս տերմինները հաջորդում են միմյանց որպես պարզ հոմանիշ հասկացություններ, այն տարբերությամբ միայն, որ հեղինակներից մի քանիսը գերազանցապես գործ են ածում դրանցից մեկը, իսկ ոմանք էլ՝ մյուսները[1]։

Տերությունը կամ նախարարությունը քաղաքական տերմին է, որին համապատասխանող տերիտորիալ գաղափարն է տուն, աշխարհ, գավառ և այլն։ Այդպիսի տերիտորիալ միավորի կենտրոնը ոստանն էր, որ նշանակում է արքունիք, բառացի՝ շեմ և համապատասխանում է արևմուտքի սենյորական curtis dominicalis-ին, այլ կերպ այն կոչվում է գահ, գահոյք աթոռանիստ իմաստով[2]։ Արշակունիները ունեին իրենց սենյորությունը par excellence, ինչպես եկեղեցու գլուխը համարվում էր Հայաստանի կաթողիկոսը, բայց Այրարատի եպիսկոպոս, այնպես էլ Արշակունի թագավորները հանդիսանում էին Հայաստանի թագավորներ և միաժամանակ՝ Այրարատի իշխաններ։ Ի տարբերություն իշխանական կալվածքների, նրանց հայրենական կալվածքները կոչվում էին թագավորական՝ արքունի տուն, արքունի ոստան:

Որ տանուտերությունը հասարակ կալվածք չէր, այլ իսկապես սենյորություն, այսինքն՝ պետական կարգի տերիտորիա, երևում է թագավորական իշխանության նկատմամբ նրա ունեցած հարա-

---

[1] Փավստոսը մեծ մասամբ գործ է ածում նախարար և նահապետ տերմինները։ Տանուտէրը հազվադեպ է գործածված, ընդամենը յոթ անգամ, ընդ որում երեք անգամ նահապետի կողքին, էջ 130, 245, 246. անկախ գործ են ածված 52, 131, 164, 263 էջերում։ Հազվադեպ են հանդիպում նաև տէր, տէրություն տերմինները տեխնիկական իմաստով, էջ 257, 261, 133, 208, 239, 250, 249, Փարպեցին ընդհակառակը՝ չգիտե նահապետ տերմինը, նա գործ է ածում տանուտէր, տէր, նախարար։ Եղիշեն նախապատվությունը տալիս է նախարարին և ոչ մի անգամ չի գործածում նահապետ կամ տանուտէր բառերը։

[2] Որոշ շրջանում Արշակունիների ոստանը Վաղարշապատն էր, Կամսարականներինը՝ Երվանդաշատը, Արծրունիներինը՝ Հադամակերտը, Բագրատունիներինը՝ Դարոյնքը, Ռշտունիներինը՝ Ոստանը և այլն։

*բերությունից։ Քաջ հայտնի է, որ տանուտերական իշխանությունը տվյալ տոհմում ժառանգական էր և մի անդամից մյուսին էր անցնում ավագության իրավունքով՝ ճիշտ այնպես, ինչպես ֆեոդալական սենյորության մեջ*[1]*։ Չնայած դրան՝ գերագույն իշխանությունը միջամտում էր նախարարական գահը ժառանգելուն վերաբերող հարցերին։ Արշակունիների ժամանակ Հայոց թագավորները, իսկ նրանց անկումից հետո պարսից արքաները մշտապես հետևում էին, թե ո՞վ է ժառանգում տանուտերական իշխանությունը։ Պատմիչները նույնիսկ խոսում են այն մասին, որ թագավորը տանուտերներ էր կարգում կամ բաշխում էր տանուտերական պատիվ*[2]*։ Ժառանգության խիստ կարգի գոյության*

---

[1] Եղիշե, *էջ 185, ցույց է տալիս ժառանգելու կարգը. «զեղբարս կամ զորդիս կամ եղբարցն զորդիս»։ Ըստ ավագության ժառանգելու որոշակի փաստեր մենք գտնում ենք* Փավստոսի *մոտ Մամիկոնյանների տան վերաբերյալ։ Այսպես, օրինակ՝ Խոսրով թագավորի ժամանակ տոհմի նահապետն էր Արտավազդի որդի Վաչեն, նրանից հետո իշխանությունն անցնում է դրա միակ որդուն՝ Արտավազդին, «զի այլ յազգին ոչ գտաւ հօժկու», էջ 28։ Տիրանի օրոք, որպես Մամիկոնյանների ներկայացուցիչներ, հանդես են գալիս Արտավազդը և Վասակը։ Արշակը «կացոյց զՎարդան զեղբայրն ի նահապետութեանն ազգին իւրեանց», էջ 67, այդ պատճառով էլ Վարդանը կոչվում է «մեծ նահապետ Մամիկոնեան տոհմին», էջ 106 և 120, «տանուտէր նահապետն Մամիկոնեան տոհմին երեց եղբայր Վասակայ», էջ 130։ Վարդանին հաջորդեց նրա մյուս եղբայրը՝ Վասակը, էջ 164, «զիւրմէ տանուտեառնէ Վասակայ»։ Վասակը միաժամանակ և սպարապետ էր։ Նրանից հետո «լինէր սպարապետ» նրա որդի Մուշեղը, էջ 189, որ և հավանորեն նահապետ էր։ Վարազդատը սպանեց Մուշեղին և սպարապետությունը տվեց Բատ Սահառունուն, իսկ «ազգին Մամիկոնեան տոհմին տանուտէր նահապետ կացոյց Վաչէ անուն ի նմին տոհմէ», էջ 245։ Երբ Մանվելը վերադարձավ գերությունից՝ Վաչեն, «որ յառաջն լեալ էր նահապետ... ետ զնա զպատիւ իշխանութեան, քանզի նա էր երէց յազգին, եւ Մանուէլն ունէր զնահապետութեան ազգին տանուտէրութեան պատիւ եւ Վաչէ լինէր երկրորդ», էջ 246։ Մանվելին հաջորդեց իր որդին՝ Արտաշիրը։ Արտաշիրի որդին էր, հավանորեն, Սահակ կաթողիկոսի փեսան՝ Համազասպեանը, որ ունէր երեք որդի՝ Վարդան, Հմայակ և Համազասպեան.* Փարպեցի, *էջ 37։ Տանուտերը Վարդանն էր, իսկ նրանից հետո, մյուս եղբայրների վաղաժամ մահվան պատճառով տանուտեր դարձավ նրա եղբորորդին՝ Վահանը։*

[2] Փավստոս, *էջ 67, Արշակ թագավորը Մամիկոնյան տոհմի նահապետ կարգեց Վարդանին, Վարազդատը՝ էջ 245, Վաչեին, Մանվելը գրավելով գերագույն իշխանությունը, «կացուցանէր նահապետս եւ տեարս գաւառաց գաւառաց», էջ 257։* Փարպեցին, *էջ 75, հետևյալ խոսքերն է դնում մարզպանի բերանը. «ոչ զտէրութիւն եւ զպատիւ հանեմք յումեքէ»։ Վասակի անկումից հետո պարսիկները «տէր ի վերայ աշխարհին Սիւնեաց» կարգեցին նրա թշնամուն՝ ուրացող Վարազ-Վաղա-*

պայմաններում թվում է, թե թագավորի միջամտության անհրաժեշտություն չի եղել և տվյալներ էլ չկան, որ թագավորը գործեր ավագության իրավունքին հակառակ։ Ակնհայտ է, որ տանուտերական պաշտոնների նշանակումները և բաշխումները, որոնց մասին խոսում են պատմիչները, պետք է հասկանալ այն իմաստով, որ թագավորը ճանաչում կամ վավերացնում էր օրինական ժառանգների իրավունքները։ Եթե տանուտերությունները կրեին մասնատիրական կամ կալվածատիրական բնույթ, ապա թագավորի վավերացումը ավելորդ կդառնար։ Տանուտերությունները ունեին կարևոր պարտականություններ և բարձրագույն իշխանության կողմից տանուտերի վավերացումը իր պաշտոնում նպատակ ուներ ապահովել պետության նկատմամբ նրա ունեցած պարտականությունը, այսինքն՝ վասալական ծառայությունը։

Ֆեոդալական աշխարհում վասալի մահով ընկնում էր նրա սեփականատիրական իրավունքը. սենյորը պետք է բարձրացներ այն նոր վասալի հանձնելու համար և, նկատի ունենալով իր իսկ շահերը, սովորաբար այդ իրավունքը նա թողնում էր մեռածի որդուն։ Հայաստանում թագավորի կողմից տանուտերի ժառանգի իրավունքների ճանաչումը ընդհանուր երևույթ չէր.

---

նին, էջ 85։ Պարսից թագավորը ասում էր. եթե նա մազդեզականություն ընդունի, «գիրաքանչիւր ուրուք զտանուտէրութիւն տամ եւ զգահ եւ զպատիւ», էջ 97. «ի պարսկաց զտանուտէրութիւնն գնեալ ուրացութեամբ» էջ 111. «ցոյց ինձ այր մի... որ թէ առաւելեաւ թագաւորութեամբ արժանաւորապէս հասեալ է ի տէրութիւն, այլ որեար ավազակ... ընդ կրակի փառս գնեն եւ տէրութիւն», էջ 136։ Վահանը պայման էր դնում, որպեսզի «ումեք յազգաս Մոզութեան զահ եւ պատիւ չտայք», էջ 161։ Հենց ինքն էլ միջնորդում էր թագավորի առջև «շնորհել զտանուտէրութիւն Կամսարականին», որ և կատարվում է «եղիցի վասն քո տուեալ զտերութիւն Կամսարականին», էջ 175։ Տանուտերներ կարգելիս նկատի էին առնվում ծառայությունները, մերժելով Վահանի նույն կարգի միջնորդությունը Արծրունի իշխանների վերաբերյալ, թագավորը նշում է, որ անհրաժեշտ է «սպաս ինչ արժանաւորապէս ցուցանել առ մեզ եւ վաստակս ինչ յօգուտ Արեաց աշխարհիս վաստակել»։ Եղիշե, էջ 25, թագավորը շնորհագիրկ է անում Գարեգին իշխանին, «հանեալ ի բաց զտէրութիւն ի նմանէ», էջ 217. «ամենայն հայրենի գաւառք հատան ի նոցանէ» նաև էջ 312։ «Ետուք զմա զտէրութիւն Սիւնեաց», էջ 255։ Թագավորը «խոստացաւ տալ նոցա գիրաքանչիւր իշխանութիւն ըստ կարգի պատուոյն», էջ 377։ Սեբեոս, էջ 65. «Խոսրովը «տայ Սմբատայ զտանուտէրութիւն» իսկ նրա որդուն՝ «տայ գիշխանութիւն տանուտէրութեանն» էջ 97։ Նրա որդուն՝ Սմբատին՝ «զորդի նորա զանգրանիկ կարգեաց արքայ ի պատիւ հաւր իւրոյ, տուեալ նմա զիշխանութիւն բնիկ տանուտէրութեան Ասպետութեան (ասպետների տոհմից)», էջ 116։

դա շեշտվում էր բացառիկ կարևոր դեպքերում։ Այդ ճանաչումը ուներ կալվածքին տիրելու Արևմուտքում ընդունված ինվեստիտուրայի նշանակություն։ Ինչպես հայտնի է, Արևմուտքում *ինվեստիտուրայի* խորհրդանիշներ էին կանաչ ոստը կամ գուղձի կտորը, որպես հողի խորհրդանիշ, ինչպես նաև գլխարկը, մատանին, դրոշակը և այլն, նայած թե որտեղ ինչ էր ընդունված։ Դրա նման մի բան ենք տեսնում նաև նախարարական կյանքում։ Մենք գիտենք, որ յուրաքանչյուր տանուտեր ուներ իր մատանին, որ միաժամանակ ծառայում էր իբրև կնիք. յուրաքանչյուր իշխանական տոհմ ուներ իր դրոշը, լայնեզր գլխարկին փոխարինում էր ապարօշը՝ **պատիւ**, որպես գլխի հարդարանք։ Հայտնի են դեպքեր, երբ ապարոշը և մատանին տրվում էին տանուտերությունը հանձնելու ժամանակ՝ սա մի նշանակալից փաստ է, և նրանց տալիս է ինվեստիտուրային բնույթ[1]։ Այդպիսի նշանակություն ուներ, անտարակույս, նաև **դրօշը**[2]։ Վերը մենք առիթ ունեցանք հիշատակելու *ոստը* և *պսակը*, որոնցով պարսից թագավորները մեծարում էին հայոց իշխաններին[3]։ Թե ինչ են նշանակում դրանք, հայտնի չէ։ Արևմուտքում հողեր շնորհելիս սովերենը վասալին նվիրում էր կանաչ ոստ կամ գուղձ, որպես հողի խորհրդանիշ. ամենայն հավանականությամբ, ոստի կամ պսակի նվիրաբերումը հայերի մոտ ուներ նույնպիսի սիմվոլիկ նշանակություն։

Այդ հատկանիշներից բացի հայ տանուտերության սենյորական լինելը ցույց է տալիս նաև այն հանգամանքը, որ **տէրութիւն** բառը, որ տանուտերական տիրույթի հին և սովորական անվանումն էր, հետագայում ստացավ *պետության* իմաստ։ Մյուս կողմից տանուտերական տերիտորիան կոչվում էր **աշխարհ**, **գաւառ**, այսինքն՝ նշվում էր պետական բնույթ ունեցող տերմիններով։ Այս ամենը հիմք է տալիս տանուտերությունը համարելու միջնադարյան ֆեոդալական սենյորության ոգուն համապատասխան

---

[1] **Փավստոս**, Գ, ժա, «ի հայրենի բարձ գահուն մատուցանէին... առաջի թագաւորին զհօրն պատիւ ի գլուխ դնէին», Դ, բ, «առաջի արքային պատիւ ի գլուխ բազմէին»։ **Թովմա Արծրունի**, էջ 272, «տայ *մատանի* ի ձեռս Աշոտոյ և տիրացուցանէ սեփական ժառանգութեան»։

[2] Նույն տեղում, Դ, գ, յուրաքանչյուր իշխանական տոհմ ուներ իր դրոշը, որոնք ի միջի այլոց, ունենում էին նաև աղավնու պատկեր աղաւնադրօշ-աղաւնադրօշից, վարուժանի՝ վարուժնականիշ՝ վարուժանակ-անիշից կամ արծվի՝ արծուէնշան։

[3] Տե՛ս վերը, էջ 305։

սոցիալ-քաղաքական միավոր։ Թե մոտավոր ձևով ինչպե՞ս էին ճշտվում տանուտերական իրավունքները, այդ մասին շատ քիչ տվյալներ կան։ Արևմուտքում սենյորական իշխանությունն ընդգրկում էր կյանքի առավել կարևոր բնագավառները։ Սենյորը ուներ օրենսդիր իշխանություն՝ droit de ban, և հրատարակում էր որոշումներ constitutiones կամ assisiae, որ պարտադիր էին նրան անմիջականորեն ենթակա տերիտորիայի սահմաններում։ Եթե դրանք վերաբերում էին ամբողջ սենյորությանը, ներառյալ նաև ֆեոդերը, այդ դեպքում պահանջվում էր վասալների համաձայնությունը, և այդ նպատակով սենյորի պալատում գումարվում էին խորհրդակցություններ՝ curia plenaria[1]։ Օրենսդրության իրավունքը հատուկ էր թագավորական իշխանությանը նաև Հայաստանում։ Այդպիսի իրավունք այս կամ այն չափով անտարակույս ունեին նաև նախարարները կամ տանուտերները։ Եթե մեզ հասած աղբյուրներում օրենսդրական ակտերի մասին հիշատակումները հազվագյուտ են, ապա այդ բացատրվում է մասամբ նրանով, որ կյանքը ղեկավարվում էր գլխավորապես անցյալի քարացած ավանդույթներով, և օրենսդրական կանոնարկման սուր պահանջ չկար։ Այդ միջավայրում ավելի շուտ գործում էին **բարք եւ սովորութիւնք**, քան օրենքները[2]։

Յուրաքանչյուր նախարար, ֆեոդալական սենյորի նման, իր տիրույթներում դատավոր էր[3]։ Արևմուտքում ազդեցիկ իշխանները որպես seigneurs justiciers դատում էին վասալներին։ Հայոց թագավորը, որպես գերագույն սենյոր, այդպիսի իրավասություն ուներ իրեն ենթակա իշխանների նկատմամբ[4]։

Միջնադարի սենյորը վարչական գործերը վարում էր վասալների խորհրդի հետ միասին։ Կային իշխանության զանազան մարմիններ՝ ministeria, որ սենյորները ստեղծում էին՝ հետևելով

---

[1] Luchaire, *op. cit.* p. 250 և շար.

[2] Հայերենում օրենքի գաղափարը արտահայտելու համար բառ չկա և գործ է ածվում իրանական փոխառյալ աւ-րէն բառը, որ ծագում է daena-ից։

[3] Ինճիճեան, Հնախօսութիւն, Բ, էջ 87, ճիշտ է նկատում, որ հուշարձաններում չենք հանդիպում այնպիսի դեպքերի, որ թագավորները միջամտեին նախարարությունների ներքին գործերին, և դրանից եզրակացնում է, որ նրանք անկախ էին։

[4] Հմմտ. Ուշտունյաց Դատաբեն իշխանի օրինակը, որ թագավորի հրամանով մահապատժի ենթարկվեց դավաճանության համար, Փավստոս, Գ, ը։

*թագավորներին։ Առանձին կոմսերի և հերցոգների պալատներում տիրում էր թագավորական արքունիքի նմանակացը. նրանք էլ ունեին իրենց* sénéchal, chambrier, connetable, bouteiller, chancelier*-ները, որոնք, պալատական ծառայության մեջ լինելով, միաժամանակ վարում էին վարչական պաշտոններ՝ ստանալով դրանք որպես* fief-office։

*Հայ Արշակունիների կառավարման համակարգը բավական բարդ էր։ Պաշտոնը կոչվում էր* **գործ**, *office, իսկ նրանով օժտված անձնավորությունը՝ գործակալ, officier, այստեղից էլ ծագում է* **գործակալութիւն** *ministerium*, office, *որի համապատասխան պարսկերեն արտահայտությունն էր* **ֆրտիկար**, *kartakāra* **գործ-կալ**։ *Արշակունի թագավորների արքունիքում կային 900-ից ավելի գործակալներ։ Այս թիվը, որ տալիս է Փավստոսը, անտարակույս, չափազանցված է*[1]։ *Առավել կարևոր ֆունկցիաները մենք քննության առանք վերը։ Նրանք ընդհանուր շատ բան ունեին ֆեոդալական դարաշրջանի մեծ սենյորների և թագավորների արքունիքում գոյություն ունեցող բարձր պաշտոնների՝* grands offices *հետ։ Ինչպես Արևմուտքում, այնպես էլ Հայաստանում գլխավոր պաշտոնները ամրացվում էին ազդեցիկ գերդաստաններին իբրև ժառանգական սեփականություն։ Բարձր պաշտոնյաներից առաջին տեղն էին գրավում* sénéchal*-ը և* chancelier*-ը։ Առաջինը իր դիրքով սենյորության մեջ համարվում էր սենյորից հետո ամենակարևոր դեմքը. Նրա նշանակությունը պայմանավորված էր գլխավորապես նրանով, որ նրան էր պատկանում բանակի հրամանատարությունը։ Իսկ* chancelier*-ը պալատական պաշտոն էր, բայց նա միաժամանակ տնօրինում էր*

---

[1] *Ըստ Փավստոսի 900 մարդ նստում էր արքայական սեղանի շուրջը՝ չհաշված ոտքի վրա կանգնածներին։ Պարսկական աղբյուրներից հայտնի է հետևյալ դեպքը. «Պարսից խոսրովներից մեկը հրամայում է պետության բոլոր կողմերից խրախճանքի հավաքել ամեն տեսակ մարդիկ և տեղավորել նրանց որոշ կարգով։ Միաժամանակ նշանակվում են որոշ թվով պաշտոնյաներ՝ հսկելու, պահպանելու, ըստ սովորության, պահանջվող կարգը»։* К. Иностранцев, *Материалы из арабских источников для культурной истории сасанидской Персии. Приметы и поверья*, 1908, р. 177։ *Խոսքը վերաբերում է մեզ ծանոթ գահերը սահմանելուն, Գահնամակին։ Այն անձնավորությունները, որոնք հսկում էին կարգ ու կանոնին, համանարար, հենց նրանք էին, որոնք, ըստ Փավստոսի, մնում էին «ոտնկայս գործակալութեան սպասու», տե՛ս վերը, էջ 239։*

պետական եկամուտների գործը, և հենց դրա մեջ էր նրա ազդեցության աղբյուրը[1]։

Սենեշալի և շանսելյեի ֆունկցիաները հիմնականում համապատասխանում էին հայոց պատասխանատու պաշտոններին՝ սպարապետությանն ու հազարապետությանը։ Ինչպես յուրաքանչյուր ֆեոդալական պետության մեջ Հայաստանում ևս թագավորին ենթակա հողի մի մասը գտնվում էր իշխանների տիրապետության տակ, որոնք կառավարում էին իրենց բաժինը, մի մասն էլ օգտագործում էին գյուղացիները։ Ըստ այդմ անհրաժեշտ էին նախ և առաջ երկու մարմիններ՝ մեկը «ի վերայ իշխանութեան» և մյուսը՝ «ի վերայ շինականութեան»։ Իշխանների պարտականությունները ինքնակալ թագավորի նկատմամբ հանդիսանում էր նրան զինվորական օգնություն ցույց տալը՝ հեծելազոր տրամադրելը, այդ պատճառով նրանց գլուխ կանգնած անձը հանդիսանում էր սպարապետ, բանակի պետ։ Իսկ հազարապետը վարում էր հարկատու բնակչության՝ գյուղացիության գործերը։ Գյուղացիական համայնքների ներքին կազմակերպության մասին ոչինչ հայտնի չէ։ Գիտենք, որ այնտեղ կային գլխավորներ, որոնք կոչվում էին դասապետք կամ գեղջաւագ, որոնց կարելի է համեմատել Ֆրանսիայում գոյություն ունեցող doyens=decani և maires=maiores-ի հետ[2]։

Մենք քիչ բան գիտենք նաև այն մասին, թե ինչպես էին կառավարվում իշխանությունները։ Նրանք իրենց տիրույթների ծավալի համապատասխան հավանորեն ունեին համապատասխան վարչական մարմիններ, ինչպես թագավորը[3]։

Մենք տարբերեցինք սենյորական պարտականությունները

---

[1] Luchaire, *op. cit.*, p. 262, dans la plupart des États féodaux, le plus important des hauts fonctionnaires est le sénéchal. Apres le duc ou le comte, il est le souverain en second de la seigneurie; il dirige la justice et l'administration locale, *commande l'armée*... Le *chancelier* est un personage non moins considérable... il est *percepteur* et collecteur perpétuel *de tous les revenus* du comté.

[2] Luchaire, *op. cit.*, p. 264, Փավստոսի *մոտ դասապետք Դ ծա=գեղջաւագ*, Գիրք թղթոց, *էջ 41=գիւղապետ*, Մովսես Կաղանկատվացի, *էջ 124*։

[3] *Բագրատունիների մոտ Է դարում ծառայության մեջ էր Դիմաքսեան իշխաններից մեկը «կարգեալ էր ի վերայ տանն իւրոյ հազարապետ եւ կամակատար»*, Սեբեոս, *էջ 63*։

ֆեոդալների կամ վասալների պարտականություններից։ Այդ իմաստով ֆեոդալական հարաբերությունները ելակետ ունեին *hommage* և *fidelite*= hominium և fidelitas։ Սրանցով էր սահմանվում ֆեոդալի՝ իբրև հողն օգտագործողի կախումը հողի սեփականատիրոջից՝ սենյորից, այսպես կոչված l'engagement de vassellage։ Հավատարմության և հոմաժի գաղափարից բխում էին վասալական պարտականությունները, որոնք իրականում պահպանվում էին հողի օգտագործմամբ։ Դրանք գլխավորապես արտահայտվում էին *auxilium*-ով և *consilium*-ով՝ կառավարմանը սենյորության մասնակցությամբ։

Ֆեոդալական հիմնական պարտականությունները կարելի է տեսնել նաև նախարարական կյանքում։ Hominium-ը (homo-ից) հենց այն է նշանակում, որ տվյալ անձը իրեն համարում էր սենյորի մարդը, *homo*-ն, որ և վավերացվում էր երդումով։ Այն երդումուխտը, որ հայ իշխանները տալիս էին թագավորին՝ նրա հավատարիմ ծառան լինելու, նույնանման ակտի նշանակություն ուներ։ Ուխտը հաստատվում էր երդումով, ընդ որում նրա խորհրդանշանն էր աղը[1]։ Ուխտի միջոցով կողմերից մեկը ստանձնում էր տերությունն ու խնամակալությունը, իսկ մյուսը՝ հավատարիմ ծառայությունը և հնազանդությունը[2]։

Վասալի զինվորական պարտականությունները հետևյալ երեք տեսակ ծառայություններն էին՝ զինվորական ծառայություն *service d'ost et chevauchée*, սյուզերենի դղյակի պահպանությունը՝ *estage* և սյուզերենի պահանջով սեփական դղյակը նրան հանձնելը[3]։ Զինվորական ծառայությունը պարտադիր էր նաև

---

[1] Իշխան Մերուժան Արծրունին, դավաճանելով Արշակին, գնում է պարսից թագավորի մոտ և «դնէր ընդ նմա ուխտ երդմամբ, զի յաւիտեան ծառայ լիցի նմա», Փավստոս, Դ, իգ։ Արշակ թագավորը «խնդրէր հաւատարիմ երդումն ուխտիւ» և պարսից թագավորը «ետ բերել... աղ կնքել վարազ նկարագիր մատանեաւ», Փավստոս, Դ, ծզ։ Սեբեոսի մոտ, էջ 43, «ետ տանել աղ կնքեալ երդումն»։ Ըստ Պրոկոպիոսի Pers., I, 4, p. 20, պարսից Պերոզ թագավորը հոների առջև երդվում է աղի վրա ἐς οὗς (sc. ἅλας) τὸν ὅρκον Περόζης ὤμοσε. Եղիշե, էջ 159, պարսից թագավորը «խնդրէր վկայութիւն հաւատարմութեան և երդմամբ յուխտ մտանէր առաջի նոցա»։

[2] Փարպեցի, էջ 48, «մեր առ ձեզ տէրութիւն և խնամարկութիւն եւ ձեր առ մեզ արդարութեամբ ծառայութիւն և հնազանդութիւն»։

[3] Luchaire, *op. cit.* p. 195.

նախարարական միջավայրում։ Արևմտյան Եվրոպայի վասալների նման հայ նախարարներն էլ պարտավոր էին թագավորի պահանջով իրենց հեծյալ ջոկատներով ներկայանալ մասնակցելու ռազմական ձեռնարկումներին կամ պատերազմին hostis և կամ արշավանքներին chevauchée=cavalcata, ասպատակ։ Զորանամակում եղած նախարարական հեծելազորի ցուցակը, որ քննության առանք վերևում, մեզ գաղափար է տալիս նախարարությունների զինվորական ուժի մասին։ Արևմուտքում առաջին կարգի բարոնությունները սյուզերենին տրամադրում էին մի քանի հարյուր հեծյալ. մինչդեռ ֆյեֆը տալիս էր միայն մեկ հեծյալ. Հաճախ մի քանի ֆյեֆ միասին տալիս էին միայն մեկ զինված մարդ[1]։ Ըստ Զորանամակի հայ իշխանները այդ տեսակետից բաժանվում էին մի քանի խմբերի, ընդ որում, Զորանամակից դատելով՝ ոչ մեկը հիսուն հեծյալից պակաս չէր տալիս[2]։

Արքայական բերդերը պահպանելու պարտականությունը, այսպես կոչված estage-ը, հայերի մոտ դրված էր որոշակի տոհմի վրա և մյուս ժառանգական կոչումների նման հանդիսանում էր նրա ժառանգական սեփականությունը։ Ծոփքում և Անգեղտանը գտնվող արքայական ամրոցների պահպանությունն ու վերահսկողությունը վստահված էր Մարդպետ իշխաններին[3]։ Պարսիկների մոտ այդ պաշտոնը համարվում էր շատ պատվավոր. այն տրըվում էր թագավորական ընտանիքին պատկանող անձի, որ և կոչվում էր argbed, հին arkapat[4]։

Յուրաքանչյուր իշխանության մեջ Արշակունի թագավորներն ունեին իրենց ամրոցները։ Իշխանական ամրությունները նրանց համար հանդիսանում էին jurabilia et reddibilia, որ ֆեոդալական սովորույթով պահանջվում էր Արևմուտքում։ Հայաստանում

---

[1] Luchaire, *op. cit.*, p. 196.

[2] Հայերը հեծելազոր հավաքում էին նաև գյուղացիներից, ինչպես այդ ընդունված էր պարթևների մոտ։ exercitum non ut aliae gentes liberorum, sed maiorem partem servitiorum habent, տե՛ս վերը, էջ 386։ Այստեղից էլ ռամիկ հեծեալ, գեղջուկ հեծեալ արտահայտությունները։

[3] **Փավստոս, Ե, Է,** «հավատարիմ գանձուց Անգեղ բերդին եւ ամենայն բերդացն արքունի, որ ի կողմանս յայնս»։

[4] Nöldeke, *Tabari*, p. 5 և 111։ Հանդիպում է պալմիրյան արձանագրությունների մեջ՝ ἀργαπέτης, Levy, ZDMG, XVIII, 89։ Բառը ծագում է պարս. ارك **բերդ**=լատ. *arx* և նշանակում է բերդակալ։

*թագավորության վերացումից հետո պարսիկները երկրի զանազան մասերում գրավել էին բազմաթիվ ամրություններ, որտեղ պահում էին մշտական կայազոր[1]։ Պետք է ենթադրել, որ այդ վայրերը նրանց անցան ոչ թե նվաճելու միջոցով, այլ իբրև Արշակունիներից ստացած ժառանգություն։*

*Հայ իշխանները ունեին նաև* consilium*-ի նմանվող մի այլ պարտականություն։ Տարակույս չկա, որ հայ ավագանին մասնակցում էր երկրի կառավարմանը։ Պաշտոնատար մարմինների բազմաքանակ անձնակազմը համալրվում էր բացառապես իշխաններից։ Բացի դրանից, իշխանները հաճախ հավաքվում էին թագավորի մոտ՝ նրա հետ միասին քննարկելու արտաքին և ներքին քաղաքականությանը վերաբերող զանազան հարցեր։ Կարևոր դեպքերում թագավորը ինքն էր հրավիրում նրանց, իսկ երբեմն էլ սեփական նախաձեռնությամբ իրենք էին ներկայանում[2]։ Տրդատի որդի Խոսրով թագավորին է վերագրվում այն որոշումը, որ հազարից ոչ պակաս հեծյալ ունեցող առավել ազդեցիկ իշխանները մշտապես մնային թագավորի պալատում և շրջեին թագավորի հետ[3]։ Սակայն դեռևս Կյուրոսը պարտականություն էր դնում նրանց վրա, ովքեր հող և իշխանություն ունեին, որպեսզի ժամանակի մի մասն անցկացնեին սատրապի պալատում և այնտեղ դաստիարակեին իրենց երեխաներին։ Այդ սովորությունը, ինչպես երևում է, ընդունված էր նաև Հայաստանում։*

*Ֆեոդի բնորոշ կողմերից մեկը հիերարխիականացման հակումն էր։ Ժամանակի ընթացքում ֆեոդը կարող էր աճել և՛ տերիտորիալ, և՛ քաղաքական առումով։ Այն ժամանակ նրա տերը հողերից որոշ բաժիններ առանձնացնում և վասալական հիմունքներով*

---

[1] Եղիշե, էջ 125, *«յարձակեցան ի վերայ բերդիցն եւ աւանիցն, զոր ունէին պարսիկքն ի տեղիս յամրոցս աշխարհին» Արտաշատ, Գառնի, Անի, Արտագերս և այլն։*

[2] Փավստոս, *Բ, ժդ, «միաժողով եղեալ մեծամեծք նախարարացն... խորհուրդ խորհեցան», Բ, խա, «ժողովեցան ի մի ժողով... նախարարք մեծամեծք, աւագք, և այլն, Դ, գ, «ի մի ժողով կոչեցան առ արքայն Արշակ մեծամեծք նահապետք ազգացն» և այլն, ինչպես նաև Դ, ա, 165 և այլն։ էջ 242, «մեծ նախարարքն... սկսան ըստ կամաց իւրեանց վարել զթագաւորն» և այլն։ Ղազար Փարպեցին հիշատակում է բազմաթիվ դեպքեր, երբ նախարարները հավաքվում են խորհրդի։*

[3] *Նույն տեղում, Գ, ը, Դատաբենի դավաճանության առիթով։*

տալիս էր իր մերձավորներին։ Մնալով իր սենյորի վասալը՝ նա իր հերթին միաժամանակ դառնում էր փոքրիկ սենյոր։ Տեղի էր ունենում հողերի և անձերի ենթաֆեոդացում։ Նոր հողաբաժինները և անձինք գլխավոր սենյորի նկատմամբ համարվում էին ենթաֆեոդեր և ենթավասալներ՝ arrière-fiefs, arrière-vossaux:

Նմանօրինակ երևույթ նկատվում է նաև հայոց ֆեոդալական կյանքում։ Այստեղ ֆեոդերի մասնատումը տեղի է ունենում տոհմի սահմաններում և մայորատի թուլացման և կազմալուծման հողի վրա։ Ֆեոդի անօտարելիությունը և անբաժանելիությունը, մենաժառանգության համակարգի դեպքում, հատուկ էին ֆեոդալական աշխարհին և ծառայում էին սենյորի անմիջական շահերին, որովհետև այդ պայմաններում լավագույնս ապահովվում էին վասալական պարտավորությունները։ Եթե հողը հավասարապես բաժանվեր ժառանգների միջև, ապա շուտով վասալները կզրկվեին հողային ապահովումից, որ անհրաժեշտ էր վասալական ծառայություն կատարելու համար։ Այդ պատճառով էլ սենյորները պաշտպանում էին ֆեոդի ամբողջականությունն ու ժառանգման ավագության իրավունքը։ Բայց հետզհետե իրավահավասարությունը իր համար ճանապարհ էր հարթում։ Սկզբում որպես զիջում ժառանգելու արտոնություն էր տրվում նաև մյուս որդիներին, սակայն հողի ամենալավ մասը հատկացվում էր ավագ որդուն, և նա էլ պատասխանատու էր թե՛ իր, և թե՛ իր եղբայրների համար։ Միայն նա էր նոմած տալիս և ինվեստիտուրա ստանում։ Բայց, ի վերջո, իրավահավասարության սկզբունքը հաղթանակեց։

Հայրենական ստացվածքի ժառանգության կարգը և անդրանիկության սկզբունքը հնուց ի վեր հայկական ֆեոդալիզմի հատկանիշներն են եղել։ Այս սկզբունքների ատիճանական թուլացման հետևանքով ծնունդ է առնում այն իրավունքը, որ կոչվում է **սեպուհական**։ Ս ե պ ու հ ը, ինչպես տեսանք, նշանակում է տ ո հ մ ի ո ր դ ի և նախարարական շրջանում հանդիսանում էր տեխնիկական տերմին՝ իշխանական տան յ ու ր ա ք ա ն չ յ ու ր անդամին նշելու համար։ Տանուտերերից կամ տան գլխավորից բացի, տոհմի մյուս բոլոր անդամները համարվում էին սեպուհներ։ Գրավոր հուշարձանների մեջ անխտիր այդպես են կոչվում տանուտերի ե ղ բ ա յ-

*րը, որդին, եղբորորդին և առհասարակ տանուտերի ազգականը*[1]։

*Քանի դեռ գործում էր մենաժառանգության համակարգը, տանուտերական իշխանությունը տանուտերի մահից հետո անցնում էր սեպուհներից ավագին՝* մեծ *կամ* ավագ սեպուհին։

*Ժամանակի ընթացքում խախտվում է իշխանական հողի անբաժանելիության սկզբունքը, և սեպուհները սկսում են պահանջել իրենց բաժինը։ Առաջ է քաշվում հողատիրության նոր կարգ, որի հետևանքով վերջինս բաժանվում է ժառանգորդ սեպուհների միջև։ Այսպիսով առաջ է գալիս հողատիրության և ազնվականության մի նոր տարբեր։ Հողի այն կտորը, որ բաժին է ընկնում սեպուհին, կոչվում է* սեպհական, *իսկ սեպուհների դասը, որպես ազատ մարդկանց դաս՝* սեպհական ազատութիւն։

*Սեպուհության առանձնանալու և ինքնուրույն հաստատության*

---

[1] Փարպեցին *սեպուհ է կոչում տանուտերին։*

*ա)* եղբօրը, *«մեծ սեպուհ Մամիկոնէից, եղբայր Վարդանայ=Հմայեակ, էջ 52, 74։ Վարդանն ունեք և մի եղբայր՝ Համազասպեան անունով, էջ 37։ Վարդան տանուտերի երկու եղբայրներից ավագը Հմայակն էր, այդ պատճառով էլ նա կոչվում էր «մեծ սեպուհ»։ Տոհմի տանուտերի՝ Վահան Մամիկոնյանի օրոք նրա եղբայր Վասակը կոչվում էր «սեպուհ Մամիկոնէից», էջ 122։*

*բ)* որդուն, *«սեպուհ մի Ուրծացի, որդի Կողթեկայ իշխանին Ուրծայ», էջ 121։*

*գ)* եղբօրորդուն, *Վահանը «արձակէր գիր եղբօրորդի մի, զորդին նահատակին Վասակայ Գրիգոր... սեպուհն Մամիկոնէից Գրիգոր», էջ 171—2։*

*դ)* ազգականին, *Անձևացւոց Սևուկ իշխանն ունեք մի ազգակից Յոհան անունով, որին պատմիչը կոչում է «Անձեւացւոց սեպուհ... լուեալ պատասխանի յազգակցէն Յոհանայ, յիշխանէն Անձեւացեաց Սեւկոյ» էջ 127։ Սեպուհ է նաև Վարազ-Վաղանը, որպես «այր մի ի տոհմէն Սիւնեաց», էջ 39, Վասակի փեսան՝ «փեսայացեալ իշխանին Սիւնեաց Վասակայ, սեպուհ Սիւնեաց, էջ 40, 41։ Պարզ չէ, թե նա սեպուհ էր կոչվում որպես Սյունյաց տոհմի անդա՞մ, թե՞ իբրև Վասակ իշխանի փեսա։*

*ե)* Սեբեոսը *սեպուհ է կոչում միևնույն տոհմից երեք հոգու, էջ 50, «սեպուհքն Վահեւունիք՝ Սամուէլ, Սարգիս եւ Վարազ-Ներսէս», իսկ նրանց տանուտերն էր «Խոսրով Վահեւունեաց տէր», էջ 56, 58։ Մյուս պատմիչների մոտ հազվադեպ է հիշատակվում սեպուհ բառը։ Փավստոսի մոտ այն հիշատակվում է միայն երկու անգամ՝ «Գնել մեծ սեպուհն Արշակունի, եղբօրորդին Արշակայ», էջ 124, 129 և «Համազասպեան սեպուհ մի ի Մամիկոնեան տոհմէ», էջ 249։* Եղիշեի *մոտ նույնպես երկու անգամ՝ «սեպուհք ոմանք յայլմէ-տոհմէ», էջ 137,* [=Փարպեցի, *էջ 67*], *«սեպուհ մի ազգէն Ամատունեաց», էջ 197,* [=Փարպեցի, *էջ 69*]։ Սեբեոսի *մոտ միայն վերոհիշյալ տեղը։*

*կազմելու պրոցեսին դժվար է հետևել։ Ե դարի դեպքերի մասին պատմող պատմիչների մոտ արդեն նկատվում են սեպուհների ինքնուրույնության որոշ նշաններ։ Սեպուհները տանուտերների կողքին ամենուրեք հանդես են գալիս որպես մի տեսակ անկախ մարմիններ։ Հայերի ապստամբության ժամանակ նրանք տանուտերների հետ միասին հրավիրվեցին պարսից արքունիք բանակցությունների։ Ապստամբության ժամանակ վավերագրերը հաստատվում էին ոչ միայն տանուտերների, այլև սեպուհների կնիքով, և առհասարակ բոլոր կարևոր դեպքերում սեպուհները հանդես են գալիս տանուտերների հետ անբաժան*[1]*։*

*Սեպուհական իրավունքի սկզբնավորությունը վերաբերում է Արշակունյաց շրջանից հետո ընկած ժամանակներին։ Խորենացին պատմում է, որ Արշակունյաց տան մեջ մի սովորություն կար, որի համաձայն արքունիքում միայն գահաժառանգն էր մնում, իսկ թագավորի մյուս որդիներն ու ազգականները ապրում էին հատկապես նրանց համար առանձնացված գավառներում՝ սկզբում Հաշտյանքում, իսկ հետո նաև՝ Աղիովիտում և Առբերանում։ Եկավ մի ժամանակ, երբ այդ գավառները նեղվածք էին, և նրանք դիմեցին թագավորին, որ ընդարձակի իրենց կալվածքները, բայց թագավորը մերժեց նրանց խնդիրը և «Հաստատեալ վճիռ՝ ոչ այլ ժառանգութիւն տալ նոցա, բայց զոր ունին հաւասար տրոհել յինքեանս, զոր բաժանեալ ըստ մարդաթուի»*[2]*։ Այն ժամանակ ըստ մարդաթվի կատարեցին նոր հողաբաժանումներ և Արշակունի իշխաններին հավասարապես տեղավորեցին վերոհիշյալ գավառներում։*

*Այդ պատմության մեջ ամենից ստույգը և արժեքավորը ըստ մարդաթվի հողաբաժանման Արշակունիների մոտ ընդունված սո-*

---

[1] *Ըստ* Փարպեցու *պարսից թագավորին ուղարկվելիք պատասխանը կազմում են «աւագ տանուտեարք հանդերձ աւագ սեպհօք», էջ 75։ Թագավորի հրամանով նրան պետք է ներկայանային «ամենայն տանուտեարքն եւ աւագք սեպուհքն», էջ 47։ Թագավորը հարցում արեց «ցհայոց տանուտեարսն և ցսեպուհսն» էջ 49։ «Դուք, տանուտեարք եւ սեպուհք» էջ 53, 54, 55 և այլն։ «Ամենայն տանուտերամբքն եւ սեպհօք հաստատէին զերդումն եւ որոց մատանեաւ չեւ եւս էր կնքեալ զաւետարանն կնքէին», էջ 61։ «Կնքեալ նախ մատանեաւ իշխանին Սիւնեաց Վասակայ եւ ապա մատանեօք ամենայն տանուտերացն հայոց եւ աւագ սեպհացն, էջ 62։ «Նախարարք եւ սեպուհք» էջ 73 և այլն, և այլն։*

[2] Խորենացի, *Բ, իբ և կը։*

*վորության մասին հիշատակությունն է։ Թագավորական տունը ներքուստ հիմնված էր նույն սկզբունքների վրա, ինչ որ իշխանական տոհմերը և անջատ հողատիրության սովորությունը, որ հիշատակում է պատմիչը, ընդհանրապես ուժի մեջ էր նաև իշխանական միջավայրում։ Այս երևույթը, սակայն, չի վերաբերում Արշակունիների ժամանակներին, ինչպես ներկայացնում է պատմիչը։ Այստեղ մենք գործ ունենք պատմիչի ժամանակ գոյություն ունեցող կարգի արտացոլման հետ, որը նա վերագրում է հնագույն ժամանակներին։ Ժառանգական կալվածքի բաժանումը գերդաստանի անդամների միջև սեպուհական իրավունքի արտահայտությունն է։ Այն զարգացավ, ըստ երևույթին, Զ դարում. Դվինի 641 թվականի եկեղեցական ժողովի ժամանակ արդեն բավականին հստակ ձև էր ստացել*[1]*։ Ժառանգական ստացվածքները ըստ սեպուհական իրավունքի բաժանելու ժամանակ տեղի էին ունենում մասնավոր վեճեր, որոնց մասին էլ հիշատակում է Խորենացին։ Դեռևս նրա օրոք պարսկերեն և հունարեն լեզուներով կային դատական հայցի հարուստ վավերագրեր։ Պատմիչը դրանք ունեցել է իր տրամադրության տակ և պնդում է, որ վավերագրերի մեծ մասը վերաբերում էր սեպուհական ժառանգական իրավունքին*[2]*։*

*Հետագայում* **սեպուհ, սեպհական** *բառերը ստացան* **սեփականի** *իմաստ։ Ներկայումս հայոց լեզվում սեփականության գա-*

[1] *Հիշյալ ժողովի կանոններից մեկը սկսվում է՝ «յորժամ ազատք զիւրեանց զերդ եւ զմարդ բաժանեն»։* Եղիշեի *մոտ Աղվանից թագավորը, ստիպված լինելով հրաժարվել գահից, պարսից արքայից «խնդրեաց զմանկութեան սեպհականն, զոր հօրն իւրոյ շնորհեալ էր նմա ի տղայութեանն՝ հազար երդ», էջ 381։ Այս վկայությունը գտնվում է Ը գլխում, որ, անտարակույս, տարբեր և համեմատաբար ավելի ուշ ժամանակվա ծագում ունի, քան մյուս գլուխները։*

[2] Խորենացի, *Ա, գ, «զխտղից եւ գաւառաց եւս եւ իւրաքանչիւր տանց առանձնականութեանց եւ հանուրց հակառակութեանց եւ դաշանց այժմ առ մեզ գտանին անբաւ գրուցաց մատեանք, մանաւանդ որ ի սեպհական ազատութեան պայազատութիւն»։ Առանձնականութեանց բառն այստեղ հանուրց-ին հակառակ նշանակություն չունի, ինչպես կարող է թվալ (և ինչպես հասկացել է Ն. Մառը իր թարգմանության մեջ Ի. Ջավախովի աշխատության մասին գրած հիշյալ հոդվածում)։ Դարձվածքից երևում է, որ վեճերը ծագում էին գլխավորապես սեպհական ժառանգությունը բաժանելիս։ Իր բաժինը ստանալով, սեպուհը դուրս էր գալիս ընտանիքից, դառնում առանձնական։ Այդ կարգի առանձնականութեանց համար էլ հատկապես վեճեր էին ծագում։*

*զաղափարն արտահայտելու համար* **սեպհականութիւն**-*ից բացի ուրիշ բառ չկա: Հին հուշարձաններում այս բառը գործ է ածվում նաև որպես* **ժառանգ, ժառանգութիւն** *բառերի հոմանիշ: Վերջին իմաստը հեշտ է բխեցնել սեպուհից որպես որդի-ժառանգ, և, ըստ երևույթին, հենց սա էլ հանդիսացել է փոխանցման աստիճան դեպի* **սեփականութիւն** *նշանակությունը*[1]:

*Սեպուհական կարգը, դուրս վանելով անդրանիկության իրավունքը, խարխլում էր նախարարության հիմքերը: Հասկանալի է, որ հողերի բաժանման և վերաբաժանման հետևանքով նախարարական տիրույթները պիտի մանրանային: Բնական է, որ իշխանական գերդաստանների արոհման դեմ երբեմն ձեռք էին առնվում արհեստական միջոցներ, օրինակ, մերձավորների միջև թույլատրվում էին ամուսնությունները, որպեսզի պահպանվի տիրույթների ամբողջությունը*[2]:

*Տոհմից անջատված սեպուհի վիճակը անորոշ է: Հայտնի չէ, թե իր տոհմի տանուտերի նկատմամբ ինչ հարաբերությունների մեջ էր մտնում այն սեպուհը, որը իր հողաբաժնով դուրս էր գալիս տոհմից: Տեր դառնալով համեմատաբար ոչ մեծ հողային սեփականության, նա չէր կարող հուսալ, որ ինքնուրույն վիճակ կստեղծի իր համար: Ըստ մի քանի ակնարկների՝ առանձնացած սեպուհները ավելի զորավոր իշխանների հովանավորության տակ էին մտնում և ծառայությամբ կապվում էին նրանց հետ: Թ դարում Աշոտ իշխանի թիկնապահն էր ս ե պ ու հ կոչումով մի անձնավորություն: Նրա մոտ կային ուրիշ սեպուհներ ևս, որոնք զանա-*

[1] *Ըստ Խոսրովի «սեպհական ասի սերտն եւ անհակառակելին»:*

[2] **Խորենացի**, *Գ, ի, «զմերձաւորաց խնամութիւն զոր վասն ազահելոյ սեպհական ազատութեանն առնէին», Խոսքը վերաբերում է այդ կարգի ամուսնությունների արգելմանը Ներսես կաթողիկոսի կողմից: Փավստոսի բնագրում կարդում ենք՝ «փախչել ասէր ի մերձաւոր եւ յազգին տոհմակից խառնակութեան ամուսնութենէն. եւ մանաւանդ ի մերձաւորական ի նուոց եւ որ զամ մի այսմ նման լեալ էր ինչ», Դ, դ: Մերձավորների ամուսնության դրդապատճառների մասին Փավստոսը ոչինչ չի ասում: Իր տեղեկությունները քաղելով Փավստոսից, Խորենացին իր կողմից բացատրություն է տալիս, ենթադրելով, որ այդպիսի ամուսնության նպատակն էր սեպուհական ազատություն ժառանգելը: Եվ իսկապես, եղբայրը, ամուսնանալով իր հարսի (եղբոր կնոջ) հետ, պետք է տիրանար իր եղբոր սեպուհական բաժնին: Խորենացու մեկնաբանությունը բնորոշ է ժամանակի կարգերի համար, և ոչ թե Փավստոսինը, որի մոտ Ներսեսի կանոնադրությունը հանդիսանում է նախ և առաջ ակնարկ Արշակի արածի նկատմամբ:*

զան պարտականություններ էին կատարում[1]։ Այդպիսի վիճակում հայտնված սեպուհները նմանվում են վասալի։ Որպես անկախ հայրենական հողերի տերեր, այլողիալ սեփականատերերի նման նրանք ևս ազատ էին ծառայելու իրենց տանուտերներին կամ ծառայության մտնելու ուրիշի մոտ։ Քաղաքական պայմանները կասեցրին սեպուհական հաստատության զարգացումը, որի հետևանքը եղավ ֆեոդալական ուժերի կենտրոնացումը և մի քանի խոշոր մարմինների առաջացումը, որոնք էլ կլանեցին մանր սեփականատերերին։

Պատմիչների մոտ հիշատակվում է ազատ մարդկանց ևս մի հատուկ դաս. դրանք, այսպես կոչված, ոստանի մարդիկ կամ ոստանիկներն են[2]։

Ոստան, ինչպես մենք տեսանք, նշանակում է արքունի դուռ, իսկ ոստանիկ՝ դրանիկ, աղնվական։ Ոստանիկ-ազատությունը իր անվանումով զուգադիպում է ռուսական ДВОРЯНСТВО-ին։ Իսկ իր նշանակությամբ ոստանիկը համապատասխանում է արքունի, արքայական բառին, որով նա երբեմն փոխարինվում կամ մեկնաբանվում է։ Ոստան էր կոչվում իշխանական յուրաքանչյուր պալատ, բայց այն գերազանցապես գործ էր ածվում թագավորի պալատ իմաստով, իբրև նրանցից ամենակարևորը, իսկ երբեմն էլ նշանակում էր ամբողջ հայրենական տիրույթը, դոմենը։ Ոստանիկ-ազատությունը, ինչպես ցույց է տալիս հենց այս անվանումը, սերտ կապ ունի թագավորական պալատի՝ արքունիքի հետ։ Ինձ թվում է, որ ոստանիկները նույն կապն ունեին արքայական տան հետ, ինչ որ սեպուհները՝ նախա-

---

[1] Թովմա Արծրունի, էջ 131, «Վահրամ սեպուհ թիկնապահ իշխանին... եւ այլք ի սեպուհ պաշտօնէից»։ Այդ նույն Վահրամի մասին 134 էջում ասված է. «Վահրամ, որ եւ թիկնապահ իշխանին»։ Հետաքրքրական է, որ Թովմա Արծրունու մոտ սեպուհը մի տեսակ առանձին կոչում է և հիշատակվում է, ինչպես որ հին հեղինակներն էին անում, առանց մատնանշելու այն տոհմը, որին իբրև սեպուհ պատկանում էր տվյալ անձը, «սեպուհն Դաւիթ, սեպուհ մի Սահակ» էջ 109։ Լաստիվերտցու մոտ, էջ 40, հանդիպում ենք «սեպուհ զունդն ազատաց ելեալ ի հայրենեաց... մինչին ուր եւենս»։

[2] Եղիշե, էջ 173, «բազում եւ այլ ազատ մարդիկ, զոր ոստանիկսն անուանեն յարքունի տանէ»=Փարպեցի, էջ 67 «եւ այլք յոստանկաց», էջ 19, «զազատ եւ զազատորդի եւ յարքունի տանէ զոստանիկ մարդիկ», էջ 136 «այրուձի յարքունի տանէ», էջ 137 «զօրս յարքունի տանէն», նաև էջ 370։ Փարպեցի, էջ 73, «նախարարք եւ սեպուհք, ոստանիկք եւ ռամիկք», էջ 170, «նախարարք եւ ազատք եւ այլք յոստանիկ մարդկանէ», Խորենացի, Ա, լ «զոստանն անուանեալ ազատութիւն»։

*բարականի։ Ոստանիկ-ազատության ծագումը և նրա էությունը հետաքրքրել են դեռևս Խորենացուն։ Բայց պատմիչը, ըստ երևույթին, ձեռքի տակ այնքան տվյալներ չի ունեցել, որքան ունենք մենք։ Նա այն եզրակացությանն է հանգել, որ ոստանիկները ծագում են այն չորս գնդերից, որոնք իբր թե Հայկի տոհմից սերված հին թագավորների սերունդներից կազմել էր Վաղարշակ թագավորը՝ արքունի դռան պահպանության համար։ Հետագայում, ըստ նույն պատմիչի վկայության, պարսիկները գնդեր են կազմել ուրիշ անձերից և անվանել են* ոստան ostan*, ընդ որում Խորենացին չգիտե, թե այդ ինչու տեղի ունեցավ. արդյո՞ք այն պատճառով, որ նախկին տոհմերը սպառվել էին, թե՞ նրանք հեռացվել էին ինչ-որ ըմբոստ արարքի համար, և նրանց փոխարեն կազմվել էին* արքունի *կոչվող ուրիշ գնդեր։ Պատմիչը պնդում է միայն այն, որ նախկին գնդերը ծագում էին առաջին թագավորների տոհմից, ճիշտ նրանց նման, որոնք նրա օրոք վրացիների մոտ* ս ե փ ծ ու ղ *էին կոչվում*[1]*։*

*Խորենացու դատողությունները անտարակույս հիմնված են մեր նշած այն տվյալների վրա, որ կան Փարպեցու և Եղիշեի մոտ։ Նկատելով, որ դրանց մեջ* ոստանը *պարբերաբար հաջորդում է* արքունիքին*, պատմիչը իրավացիորեն եզրակացնում է, որ նրանք նույնն են և զգուշությամբ ընդունում է, որ առաջին անվանումը ավելի հին է՝ Արշակունյաց շրջանից, իսկ երկրորդը վերաբերում է Սասանյան դարաշրջանին։ Որ ոստանիկ գնդերը գոյություն ունեին, այդ կարելի է եզրակացնել պատմիչների* այրուձի *կամ* զօրս յարքունի տանէ *խոսքերից, բայց որ նրանք նախատեսված էին արքունիքի պահպանության համար և թվով չորսն էին, այդ պատմիչի ենթադրությունն է, որ նա արել է Արշակունյաց արքունիքի չորս գահերեց բդեշխների մասին եղած տեղեկության ազդեցությամբ*[2]*։ Մեր պատմիչի լուսաբանություններ մեջ հավաստին այն է, որ ոստանիկները արքայական ծագում ունեին, ընդ որում, ոստանիկ ասելով պիտի հասկանալ ոչ*

[1] **Խորենացի**, *Բ, է, Սեպծուղ-სეფე-սեպուհ և წული-որդի բառերից, տե՛ս* Н. Марр, *Этимология*, З. В. О. Им. Русск. Арх. Об. V, р. 286։

[2] *Խորենացին շատ աղոտ պատկերացում ունի բդեշխների մասին։ Նա հիշատակում է Գուգարաց և Աղձնյաց բդեշխների մասին. մյուսների մասին նա տեղեկություն չունի։ Որ բդեշխները թվով չորսն էին և բարձր դիրք էին գրավում Արշակունյաց արքունիքում, այդ մասին նա ոչինչ չի ասում։*

*թե հին թագավորների շառավիղներին, ինչպես կարծում է Խորենացին, այլ բացառապես Արշակունիների ժառանգներին։ Դրանք Արշակունի սեպուհներ էին, և իրավացի է պատմիչը, երբ նրանց համեմատում է Վրաստանի ս ե փ ծ ու ղ ն ե ր ի հետ։ Հիմք չկա կասկածի տակ դնելու նրա այն հայտարարությունը, թե ոստանիկների կազմը նրա օրոք այն չէր, ինչ որ առաջ։ Ոստանիկների թվում ոչ միայն Արշակունիների ժառանգներն էին, այլ կային նաև ուրիշ ծագում ունեցողներ, որոնք ինչ-որ բանով աչքի էին ընկել։ Դրանց թվին են պատկանում իշխանական այն մանր տոհմերը, որոց մենք տեսնում ենք Արշակունյաց Այրարատ նահանգի հայրենական տիրույթում։ Թերևս այդ պատճառով էլ ազատների այդ դասը սկսեց կոչվել ոչ բնորոշ ո ս տ ա ն ի կ, ո ս տ ա ն ի մ ա ր դ ի կ տերմինով, փոխանակ սեպուհ, որ հավանորեն մինչև նրանց կազմի փոփոխվելը կիրառվում էր նաև նրանց նկատմամբ։*

*Հուշարձաններում ոստանիկներ հիշատակվում են միայն թագավորական նահանգում՝* յարքունի տան, *որի տակ հասկացվում էր Այրարատը։ Նախարարությունների ծագումը բացատրելիս Խորենացին նշում է դեպքեր, երբ մարդիկ ազատների աստիճանի էին բարձրացվում թագավորին աչքի ընկնող ծառայություն մատուցած լինելու համար*[1]*։ Արշակունիների անկումից հետո այդպիսի դեպքերն սկսեցին հաճախակի դառնալ։ Պարսից իշխանությունները այս ճանապարհով էին ստեղծում իրենց շահերին նվիրված միջավայր։ Այդ պատճառով էլ ոստանիկ-մարդկանց կազմի փոփոխությունը Խորենացին վերագրում է պարսիկներին։ Հայ Արշակունիներն էլ կարևոր ծառայություն մատուցած մարդկանց իրենց տիրույթում՝ Այրարատում, պարգևատրում էին հողաբաժիններով։ Արքունիքում ծառայողների հսկայական կազմը բաղկացած էր ազատ մարդկանցից, և Արշակունիների անկումից հետո նրանք պիտի հայտնվեին ոստանիկների շարքում։ Այսպիսով, այսպես կոչված ոստանիկ-ազատության մեջ մտնում էին երեք տեսակի մարդիկ. Այրարատում սեպուհական հողաբաժիններ ունեցող Արշակունիների ժառանգները, հողերով պարգևատրված անձինք և թագավորության անկումից հետո մնացած պալատականները։*

[1] Խորենացի, *Բ, է, «յառաջաղիմութենէ ազատացեալք, որպէս ընտանիք թագաւորաց»։*

# III

*Հայաստանի գյուղական բնակչության և մանավանդ նրա սոցիալական վիճակի մասին շատ քիչ տեղեկություններ կան։ Գրավոր հուշարձանները որոշակիորեն տարբերում են գյուղացիությունը ազատներից, բայց սրանց փոխհարաբերության և հողի գծով տերերից ունեցած կախվածության աստիճանի մասին գրեթե ոչինչ չեն ասում։ Բոլոր նրանք, ովքեր չէին մտնում ազատների՝ ազնվականության և հոգևորականության դասի մեջ, պատմիչների պատկերացմամբ հանդիսանում էին մի զանգված, ստորին բնակչության մի խավ՝* շինականութիւն *անվան տակ։ Շինականը գյուղացի իմաստով ամենագործածական բառն է, բայց այն հաճախ փոխարինվում է* ռամիկ, գեղջուկ *բառերով և եկեղեցական* ժողովուրդ *տերմինով*[1]*։*

*Գյուղական բնակչության գլուխ կանգնած էր հազարապետը, ինչպես իշխանական դասի գլուխ՝ սպարապետը։ Հայտնի չէ, թե արդյոք երկրի ո՞ղջ գյուղացիությունն էր ենթարկվում հազարապետին, թե նա մի մարմին էր հատկապես թագավորական տիրույթների գյուղացիության գործերը վարելու համար։ Եթե առաջինը ավելի հիմքեր ունի, ապա պարզ չէ ինչո՞վ էին որոշվում գյուղացիության հարաբերությունները իշխանների և թագավորի նկատմամբ, և ի՞նչ էր ներկայացնում իրենից գյուղացիական հողատիրությունը։*

*Արևմուտքում ֆեոդալական գյուղացիությունը կոչվում էր* ս ե ր վ ա ժ*։ Սերվի հողաբաժինը իրավաբանորեն համարվում էր* tenure*-ի՝ միայն ցմահ հողակալություն, որոշ պարտույթներ կատա-*

---

[1] Փավստոս, *էջ 33, «բազմութիւն մարդկան ժողովրդոց նախարարացն եւ կամ շինականութեանն», էջ 54, «ի շինականաց անգամ ռամիկ մարդկան» էջ 80, «առ ազատս եւ առ շինականս» էջ 221, «պատուականք եւ անարգք, ազատք եւ շինական», նաև էջ 233, 234 և այլն։* Փարպեցի, *էջ 67, «առ իշխանս եւ շինականս» էջ 73, «նախարարք եւ սեպուհք, ոստանիկք եւ ռամիկք», էջ 128, «զնախարարսն եւ զազատս եւ զայլ ամենայն ռամիկսն», էջ 145, զբազումս ի ռամիկ մարդկանէ», էջ 171, «կրտսեր շինական մարդիկ», էջ 37, «միահամուռ ժողովրդոց», էջ 126, «նախարարացն Հայոց և ռամկացն», նաև էջ 169, 178 և այլն։* Եղիշե, *էջ 95, «զատերբ ազատաց եւ շինականաց», էջ 103, «արանց եւ կանանց, շինականաց եւ ազատաց», էջ 123, «ազատ փափկացեալ եւ գեղջուկ վշտացեալ», էջ 122, «ամենայն ռամիկ բազմութիւն» և այլն։*

*բելու պայմանով։ Սերվի մահից հետո նրա հողաբաժինը անցնում էր սենյորին, քանի որ նա ժառանգության տալու իրավունք չուներ։ Նրա ձեռքը մեռած էր, ինչպես ասում էին, իր ժառանգներին հող տալու համար։ Ասենք, սենյորը սերվի հողաբաժինը սովորաբար տալիս էր նրա որդուն։ Սերվը կախված էր սենյորից նաև անձնապես. նա չէր կարող հեռանալ իր հողից առանց սենյորի թույլտվության, մի բան, որ սերվաժի բնորոշ առանձնահատկությունն էր։ Միջնադարյան գյուղացիության իրավական բնույթն արտահայտվում էր նաև սենյորից ֆինանսապես կախված լինելու մեջ։ Գյուղացիները վճարում էին տուրքեր՝ հօգուտ սենյորի։ Հիմնական տուրքը* chevage-*ն էր՝* census capitis, *իսկական գլխահարկ, որ հավաքվում էր ամբողջ հասարակ ժողովրդից։ Ունեցվածքից գանձվում էր* tenures à *cens, ցենզ, այսինքն կապալավարձ՝ հողից օգտվելու համար և* tenures à *champart*=campi pars՝ *բերքի մի մասը, որ հավաքվում էր հօգուտ սենյորի։ Դրանից բացի, կային* corvées *զանազան տեսակի պարտույթներ՝ փոխադրական, կառուցողական, աշխատանք տիրոջ դաշտում և այլն։*

*Գյուղացու հողաբաժինը հայերի մոտ կոչվում էր* **կեանf, արար, կալուած**: *Ասենք այդ նույն տերմինները գործ էին ածվում նաև իշխանական և եկեղեցական հողերի նկատմամբ*[1]*։ Կալվածքը իմաստաբանական տեսակետից համապատասխանում է* tenure-*ին, իսկ* **կյանfը** *պարզապես նշանակում է կյանք։ Կարելի՞ է արդյոք այդ հիման վրա հողաբաժնի իրավական բնույթի մասին եզրակացություն անել, որպես* **հողակալություն** *կամ ցմահ* **տիրապետություն:**

*Մեզ չեն հասել նաև որոշակի տեղեկություններ գյուղացիության հողային պարտույթների վերաբերյալ։ Փավստոսի մոտ այդ մասին ոչ մի տվյալ չկա*[2]*։ Հայտնի է միայն, որ մարզպանական*

---

[1] Եղիշե, էջ 247, «եթէ յազատաց իցեն, եթէ ի շինականաց իցեն, եթէ յեկեղեցւոյ զինչ կ ե ա ն ս եւ թողեալ իցէ, եկեսցեն եւ վայլեսցեն զիւրաքանչիւր զարարս... բազումք իսկ եկին եւ ժողովեցան եւ կալան զիւրաքանչիւր կ ա լ ո ւ ա ծ ս»։

[2] Մուշեղի պատմության 12 գլուխներից յուրաքանչյուրում, որոնք բոլորն էլ նվիրված են նրա հաղթանակներին, կրկնվում է միևնույն նույնանման դարձվածքը՝ «զմնացորդսն նուաճէր եւ ի հարկի կացուցանէր» կամ «ի հարկի ծառայութեան կացուցանէր», երկու դեպքում գործ է ածվում «հարկ դնէր մնացորդացն», Փավստոս, Ե, ը-ժթ։ Բայց «ի հարկի կացուցանել» արտահայտությունը չի նշանակում «հարկ դնել», այլ «հնազանդեցնել», լրիվ ձևն է՝ ի հարկի <ծառայութեան>

շրջանում հայերը պարսիկներին հարկ էին վճարում։ Այս հարկը մուծվում էր, անկասկած, նաև Արշակունիների գանձարանը։ «Հարկքս ամենայն աշխարհին հայոց առ իս են. և գործակալք ամենայն յիմում ձեռին են և այլ ևս բազում կարասի, զոր ի պարսից գործակալացն հանի»[1]։

Արշակունիների անկումից հետո պարսիկները նոր մարդահամար կատարեցին հավանորեն պարտույթների չափը ճշտելու և ավելի կանոնավոր ձևով բաշխելու համար։ Ըստ Եղիշեի, մարդահամարի հետևանքներից մեկը եղավ հարկերի ավելացումը, որի նպատակն էր, ինչպես ենթադրում է պատմիչը, գյուղական բնակչության սնանկացումը։ Հարկերը անհավատալիորեն ծանր էին. «քանզի ուստի արժանն էր առնուլ հարկս դահեկանաւ չափ, կրկին առնուին. սոյնպէս և եպիսկոպոսաց և երիցանց գնէին, ոչ միայն շինաց, այլ և ւսերակաց։ Նա բնաւ ո՛վ իսկ կարէ,—բացականչում է պատմիչը,—պատմել վասն ծանրութեան մտից և սակից, բաժից և հասից և հարկաց լերանց և դաշտաց և մայրեաց. ոչ ըստ արքունի արժանաւորութեանն առնուին, այլ հինաբար յափշտակելով»[2]։

Հայ իշխանները Հազկերտի առջև հայտարարում են, որ նրա օրոք Հայաստանը վճարում էր ավելի շատ մուտ ու սակ և այլ հարկ, քան նրա հոր ժամանակ[3]։

Այս վկայությունները արժեքավոր են այն տեսակետից, որ ըստ երևույթին պարունակում են զանազան տուրքերի տեխնիկական անվանումները։ Ուղղակի վկայություններ չունենալու պատճառով սրանց մասին կարելի է գաղափար կազմել, համեմատե-

---

կացուցանել», ստիպել հպատակվել։ (Համտ. Մակարայեցւոց, Ա 4, «զմնացորդսն ի հարկի կացուցին տալ նոցա հարկս ամյամէ)։ Բացի այդ, ինչպես հայտնի է, կարծիք կա, որ Փավստոսի աշխատության այդ մասը հավաստի չէ։

[1] Փարպեցի, էջ 83։ Համտ. Թադավորի խոսքերը, էջ 85... «զհարկեր զիմոյ աշխարհին հայոց և կամ զպարսկացն... խնդրել ի տանէ քումմէ»։ Համտ. նաև Եղիշե, էջ 251, «զող ևս գտանէր հարկի աշխարհին»։ Հայերի ապստամբությունից հետո պարսիկները աշխատում էին հնազանդեցնել երկիրը «և ի հարկաղրութեան կացուցանել», նույն տեղում, էջ 75։ Համտ. Եղիշե, էջ 247՝ «թողուլ հրամայէր զհարկս աշխարհին»։

[2] Եղիշե, էջ 41, «զհարկս աշխարհին առաւել ծանրացոյց... էջ 42, «զի զշինականսն վատնեսցէ», էջ 43, «էր ծանրութիւն հարկացն...»։

[3] Նույն տեղում, էջ 83, «զմտից և զսակից և որ այլ ևս էին հարկք աշխարհին բազմապոյն քան առ հարքն նորա երթայր յարքունիս»։

*լով պարսից պետության մեջ ընդունված հարկային համակարգի հետ։*

*Սասանյան կայսրության մեջ գոյություն ուներ երկու տեսակ հարկ. χaradž՝ հողային հարկ և gezith՝ գլխահարկ։ Այս նույնն ընդունված էր նաև հռոմեացիների մոտ՝* tributum *soli* և tributum *capitis* կամ, *Դիոկղետիանոսի ռեֆորմի տերմիններով ասած,* capitatio *terrena* և cap. *humana* կամ *թե plebeia*: *Արաբական տիրապետության ժամանակ տարբերվում էին հողային պարտությունների երկու տեսակ՝* vazifé և *mukasame*։ *Առաջինը* وظیفه *համապատասխանում էր եվրոպական ցենզին՝ հողի կապալավարձին, և հողի յուրաքանչյուր միավորի համար վճարվում էր մի որոշակի գումար, իսկ երկրորդը* مقاسمه *եվրոպական շ ա մ պ ա ր ն է, բերքի մի մասը, որ տրվում էր հողատիրոջը։ Արաբների հարկային համակարգը իրենք չեն ստեղծել. այն ստեղծվել էր մինչև արաբների երևան գալը և սասանյան շրջանից մնացած ժառանգություն է։ Արաբների մոտ գլխահարկից ազատվում էին քանից ցածր և հիսունն անց անձինք, այսինքն՝ տարիքով զինվորական ծառայության անընդունակները, իսկ հայտնի է, որ պարսիկները զինվորական ծառայություն էին կրում 20-ից մինչև 50 տարեկան հասակը*[1]*։ Այդ փաստը ցույց է տալիս, թե որքան հին էին այն հարկային սահմանումները, որոնք արաբները ժառանգել էին պարսիկներից։ Արաբական վազիֆեն իրականում համապատասխանում է խառաջին, իսկ մուկասամեն պարսկերեն կոչվում էր* bahrak[2]։

*Այս շրջանակում կարելի կլինի բացատրել տուրքերի վերը նշված տեսակները՝* մուտ, սակ, բաժ, ճաս և ճարկ: *Սրանցից* սակը և բաժը *շատ հայտնի են պարսից դրականության մեջ և հատկանշական է, որ հաճախ գործ են ածվում միասին* sak և *baž* կամ *sāv* և *baž*[3]։ *Այս զուգակցումը մենք համարում ենք հատկանշա-*

---

[1] Str. XV, 2, 19, p. 734=Teub. p. 1023, στρατεύονται δὲ καὶ ἄρχουσιν ἀπὸ εἴκοσιν ἐτῶν ἕως πεντήκοντα.

[2] *Պարսկ.* [illegible] =պահլ. **bahrak*, *տարր.* *bahraq*։ *Այս բառը մինչև այսօր էլ գործ է ածվում Անդրկովկասում շամպարա=մալժեպատի իմաստով։ Գործ է ածվում նաև մ ու կ ա ս ա մ ե-ա թաթարականացած կ ա ս ի մ ե տ ի ձևով։*

[3] *Matikān-i-čatrang*, I 12. *Šahnāme* I, p. 247. Hübsch. *Gramm.* I, p. 234.

կան, որովհետև ցույց է տալիս, որ այդ տերմինները արտահայտում են հարկային որոշակի նորմաներ։ Ավելի քան հավանական է, որ sak-ը և baž-ը ռեալ բովանդակությամբ համընկնում են χaradž-ին և gezith-ին, այսինքն՝ նշանակում են հողային հարկ և գլխահարկ։ Այս արտահայտությունների հոմանիշ լինելը, թերևս, պետք է բացատրել նրանով, որ նրանցից առաջինները վերաբերում են ավելի վաղ, իսկ մյուսները՝ ավելի ուշ ժամանակների, կամ էլ որոշ տերմիններ սովորական էին կայսրության մի մասում, իսկ մյուսները՝ մյուս մասերում։ Ստուգաբանական կազմությունը թերևս լուծեր հարցը, եթե այն կասկածներ չհարուցեր։ Baž-ը հայերեն՝ բաժ, նշանակում է բ ա ժ ի ն, ինչպես որ հուն. δασμὸς-ը δαίομα-ից՝ բաժանել=բ ա ժ ի ն և հ ա ր կ։ Baži էր կոչվում այն տուրքը, որ Աքեմենյանները գանձում էին հպատակ երկրներից։ Կյուրոպեդիայում Կյուրոսի ստացած հարկերը նշելու համար գործ է ածվում δασμός, որ արտահայտում է պարսկ. baži-ի իմաստը[1]։ Սակ, sak տերմինը պարսկ. sā և sāw անտարակույս ազգակցություն ունի հայերեն սակ-ի հ ա շ ի վ, սակ-արկել-ի հետ[2], որի իրանական, նույնիսկ արիական ծագումը սակայն տարակուսելի է։ Ոչ առանց հիմքի նաև χaradž-ը, պարսկերեն χarag-ից, կարելի է համարել ազգակից հայերեն հարկի, վրացերեն ხარჯი-ի հետ, կապելով դրանք այն արմատի հետ, որից ծագում է հայերեն հերկ-ելը։ Վերջապես, gezith-ը տառ առ տառ համապատասխանում է հայերեն գզաթին, որ նշանակում է բ ր դ ի չ ա փ, գզել արմատից, սեմ. giza՝ ս ա ն ր ե լ  ա լ ի ք ն ե ր ը, այս-

---

[1] Արմատական baga-ից հապավված bhaga-ից զենդ. baǯ։ Մեր կարծիքով նրանից է ծագում նաև bahra-k-ը։ Իրանագետները bahrak-ը մոտեցնում են ավեստական baχ"ra-ին, որ նշանակում է հարկ կամ սնունդ։ Horn, Wörterbuch, p. 56, այն առաջ եկած է համարում ավեստական hu-baδra-ից, որ նշանակում է բախտավոր։ Այս երկու ձևերն էլ ենթադրում են bag արմատը δra ածանցով և baǯ-ի ու անցյալ դերբայ baχta-ի բախտի նման կարող են նշանակել հարկ և ճակատագիր, բախտ։ baχδra-ից ծագում է baχra-ն կամ bahra և barχ-ը بَرْخ։

[2] Սրան է վերաբերում նաև սակավը, որ նշանակում է քիչ, ավելի ճիշտ հաշվենկատ, խնայողությամբ և սակս, որ նշանակում է համար, ի պետս (հմմտ. ռուսերեն насчет-ի հետ)։

տեղից էլ՝ gizath։ Այս բառը ստացել է հարկի իմաստ ընդհանրապես, երևի այն բանի հետևանքով, որ մի ժամանակ որպես հարկ տալիս էին մի գզաթ բուրդ։ Սկզբնապես բոլոր հարկերը վճարում էին մթերքով։ Բրդով վճարելը բնորոշ է խաշնարած կենցաղի համար։ Դրանում զարմանալի ոչինչ չկա, որովհետև նույնիսկ միջին դարերում sa chevage կամ census capitis-ի փոխարեն ֆեոդալները երբեմն վերցնում էին մի քանի փունտ մոմ։

Եթե sak-ի իրանական ծագումը անվիճելի լիներ, ապա կարելի կլիներ ընդունել, որ և՛ sak-ը, և՛ baž-ը, և՛ χaradž-ը, և՛ gezith-ը հոմանիշներ են՝ մշակույթի արիական և սեմական գոտիներում միևնույն գաղափարներն արտահայտելու համար։ Շատ հնարավոր է, որ հայկական միջավայրում դրանց համապատասխան արտահայտություններն էին մուտք-ը և հաս-ը, որ պատմիչը գործ է ածում սակ-ին և բաժ-ին զուգահեռ։ Նույն ձևով էլ bahrak-ի համարժեքն է պտուղը: Baž-ը—բաժը, հավանորեն հողային հարկն է, իսկ սակը՝ գլխահարկը։ Համենայն դեպս միևնույն տերմինները կարող էին գործածվել տարբեր իմաստով՝ նայած տեղի և ժամանակի պայմաններին։ Օրինակ՝ խառաջը արաբների մոտ նշանակում էր հողային հարկ, մինչդեռ հրեական գրավոր աղբյուրներում այս վերջինս կոչվում էր tasq, իսկ խառաջը գլխահարկի իմաստ ուներ[1]։ Մեր նպատակի համար կարևոր է հենց հարկային հարաբերությունների համակարգը և ոչ թե տերմինաբանությունը։ Նշված հարկերից բացի հայտնի էր նաև այնպիսի մի պարտույթ, ինչպիսին է եվրոպական corvées=corrogata opera, ռուսերեն՝ барщина, և կոչվում էր բեկար, bekār: Այս բառը ծագել է պարսկերեն بکارامدن bekār āmadan՝ աշխատանքի գնալ արտահայտությունից և մինչև այժմ էլ ժողովուրդը барщина-ն գործ է ածում կոռի իմաստով։ Իրականում այդ պարտավորությունը կոչվում էր kār, հայերեն՝ կոռ, աշխատանք, երբեմն միասին՝ կոռ ու բեկար: Իսկ բեկար բառը մենք հանդիպում ենք Դվինի 641 թ. եկեղեցական ժողովի կանոնների մեջ[2]։

Այսպիսով, հարկերի գլխավոր տեսակներն էին խառաջը՝ հո-

[1] Nöldeke, *Tabari*, p. 241։ Հարավային Ֆրանսիայում tasca կոչվում է բնատուրքը, champart, Luchaire, *op. cit*. p. 337։

[2] Կանոն 8, «զկէս շնորհին կալցի յաղագս ձեռնադրութեանն, ազատ ի հարկէ եւ ի բեկարէ», հրատ. Ս. Տիգրանյանի և Հ. Միխիթարի։

ղային հարկ, գզաթը՝ գլխահարկ, բաճրակը՝ բնատուրք և բեկարը՝ կոռ։ Սրանց չափերի վերաբերյալ կան մի քանի կցկտուր տեղեկություններ։ Տաբարիի մոտ եղած տեղեկությունների համաձայն պարսիկները մինչև Խոսրով Նուրշիրվանը հողային հարկը գանձում էին բնամթերքով, եկամուտի $^1/_3$, $^1/_4$, $^1/_5$ և $^1/_6$ չափով՝ նայած հողի արգավանդության ու մշակույթի որակին։ Հողային հարկը կանոնավորելու համար Կավատը իր թագավորության վերջին շրջանում պատրաստվում էր ճշտել հողերի, դաշտերի և լեռների սահմանները։ Բայց նա շուտ մեռավ, թողնելով որդուն և հաջորդին՝ Խոսրովին ավարտելու գործը։ Խոսրովը իրականացրեց հոր մտադրությունը և դրանից բացի անցկացրեց հարկատու դասի մարդահամար։ Աշխատանքն ավարտելուց հետո նա սահմանեց հարկերի գանձման չափերը։ Հողային այն միավորը, որ կոչվում էր garib և հավասար էր 3600 քառակուսի կանգունի, ենթարկվում էր տարբեր չափի հարկման՝ նայած մշակույթի տեսակին։ Ցորենի կամ գարու մեկ գարիբ ցանքից պետք է գանձվեր մեկ դիրհամ հարկ, մեկ գարիբ խաղողի այգուց՝ 8 դիրհամ, մեկ գարիբ առվույտից՝ 7 դիրհամ և այլն։

Գլխահարկի ենթակա էին բոլորը՝ քսան տարեկանից մինչև հիսուն տարեկանը, հասկանալի է, իշխաններից, ազնվազարմներից, զինվորականներից, հոգևորականներից և պաշտոնյաներից բացի։ Յուրաքանչյուր հարկատուից, ելնելով նրա նյութական վիճակից, գանձվում էր 12, 8, 6 և 4 դիրհամ։ Վերջին թիվը, ըստ երևույթին, ավելի ընդունված էր, որովհետև չինական աղբյուրները հիշատակում են, որ Պարսկաստանում յուրաքանչյուր մարդ հարկ էր վճարում չորս արծաթ դրամ։ Սահմանված էր նաև, որ վճարումները կատարվեն չորս ամիսը մեկ՝ երեք նվագ կամ ինչպես կոչվում էր պարսկերեն՝ երեք simarrak-ով[1]։

Հայտնի է, որ Հռոմեական կայսրությունում ևս հողային հարկի հիմքում նույն ձևով ընկած էր jugum կոչված չափը։ Յուրաքանչյուր jugum-ից գանձվում էր որոշ հարկ, որի չափը որոշվում

---

[1] Nöldeke, *Tabari*, p. 241—246, *Simarrak*-ը հավանորեն կազմված է *si*, *sē*, որ նշանակում է երեք և *hmar* համար, հ ա շ ի վ բառերից։ Այստեղից է ծագում ներկայումս գործածվող կշռաչափը՝ սոմարը կամ սումարը, որ հավասար է 2 կամ 3 փթի, հավանորեն այն պատճառով, որ այդքան հացահատիկ էր վճարում յուրաքանչյուր սիմարակում։

էր կայսրի հրամանագրով։ Jugum-ի չափը կախված էր հողի տեսակից։ Օրինակ, Սիրիայում մեկ jugum-ը բաղկացած էր 5 jugera խաղողի այգուց, կամ 20 jugera բարձրորակ վարելահողից, կամ թե 40 jugera միջակ և կամ 60 jugera ցածրորակ հողից և այլն։ Ուշագրավ է, որ այստեղ ևս հարկերը հավաքվում էին երեք նվագով՝ սեպտեմբերի, հունվարի և մայիսի մեկին։

Այս բոլոր հիշյալ հարկերը ընդունված էին նաև Հայաստանում, հայ ֆեոդալական միջավայրում։ Դրա լավագույն ապացույցն են գրականության մեջ պահպանված տեխնիկական տերմինները։ Հարկերի քանակի վերաբերյալ փաստական տվյալները քիչ են, եթե չհաշվենք եկեղեցական կյանքին վերաբերող մի քանի տեղեկությունները։ Հայկական եկեղեցին իր կազմակերպությամբ ֆեոդալական էր և կենցաղային ու տնտեսական առումով ընդօրինակել էր նախարարական միջավայրում ընդունված նորմերը, որոնք մասամբ պահպանել էին նաև աշխարհիկ ֆեոդալների անկումից հետո[1]։ Այս իսկ պատճառով եկեղեցական կյանքին վերաբերող տվյալները կիրառելի են նաև նախարարական միջավայրի նկատմամբ։ Դվինի ժողովի որոշումների մեջ նշվում է, որ մի քանի իշխաններ նեղում են բարեգործական հիմնարկությունները «որպես ի կենդանեաց հարկս պահանջեն եւ ի կերակուրս եւ յըմպելիս զիւրեանց գործակալս մատուցանեն», փոխանակ «հոգալ եւ խնամել յիւրաքանչիւր վաստակոց ի կալոյ եւ ի հնձանէ եւ յամենայն արմտեաց տալ մասն եւ բաժին»[2]։ Այստեղից երևում է, որ գյուղատնտեսական արտադրանքի որոշ մասը գանձվում էր հօգուտ ֆեոդալի։

Ավելի արժեքավոր են Վաչագան թագավորի օրոք տեղի ունեցած Աղվանական եկեղեցական ժողովի որոշումները։ Հոգևորականության հասույթների վերաբերյալ որոշվում է հետևյալը. «Ունևորը

---

[1] Եղիշե, էջ 82, «ազատ էր ի Քրիստոս ըստ կարգի նախնեացն մերոց ի սկզբանէ» Կանոնք Դւինայ ժողովոյն. Գ. ա. Լուսավորիչը և Տրդատը «զսուրբ եկեղեցւոյ մանկունս ընդ ազատաց տոհմին են կարգեալ եւ ազատ էին սրբոյ եկեղեցւոյ հող եւ ջուր նաեւ ի պարսից իսկ տէրութեանն յայտ արարեալ եւ չէ խառնեալ ի շինական, իշխանութեամբ զերիցունեաց տունն ի դիւանին եդեալ են, բայց միայն զհասն տալ արքունի»։

[2] Կանոն 11, հմմտ. Սահակին վերագրվող կանոնների հետ՝ իսկ ի կալոյ եւ ի հնձանէ եւ յայլոց արմտեաց տասնորդս հանցեն», Մելիք-Թանգյան, Հայոց եկեղեցական իրավունքը, էջ 557։

*տալիս է հօգուտ քահանայի չորս գրիվ-գարիք ցորեն, վեց գրիվ գարի և 16 չափ քաղցու, իսկ չքավորը տալիս է հացահատիկ՝ կիսով չափ (նշանակում է՝ 2 գրիվ ցորեն և 8 գրիվ գարի), և գինի որքան որ կարող է։ Իսկ ով որ հողագործությամբ չի զբաղվում և այգի չունի, նրանից ոչինչ չվերցնել։ Ով ոչխար ունի, տալիս է մեկ ոչխար, երեք գզաթ բուրդ և մեկ գլուխ պանիր, ով ձի ունի, տալիս է մի մտրուկ, իսկ եզներ և կովեր ունեցողը՝ մեկ հորթ»*[1]։

*Այս պաշտոնական փաստաթուղթը բավարար չափով բնութագրում է բնակչության նյութական և ֆինանսական կախվածությունը հոգևորականներից և, հետևաբար, աշխարհիկ տիրակալներից։ Երկրի սոցիալական պատկերի համար կարևոր է և այն, որ եկեղեցական ժողովի ժամանակ (Զ դարից ոչ ուշ) երկրագործ բնակչությունից բացի, կար նաև բացառապես անասնապահությամբ զբաղվող մարդկանց մի դաս։ Իզուր չէ, որ Խորենացին գանգատվում է, թե Հայաստանում «ոչ ամեն տեղ էին զբաղվում երկրագործությամբ, այլ որոշ տեղերում ապրում էին մարդիկ, որոնք սնվում էին, ինչպես հյուսիսային երկրներում, հում նյութերով և նման բաներով»*[2]։

---

[1] Մովսես Կաղանկատվացի, *էջ 66, «Պտուղք ի ժողովրդենէ երիցուն՝ կարգն այս լիցի. թուանիկն՝ չորս գրիւ ցորեան, վեց գրիւ գարի եւ վեշտասան թաս քաղցու, եւ որ տառապեալն է՝ զհացիդ կէսն տացէ եւ գինի՝ որչափ եւ կարողն իցէ. իսկ որոյ վար եւ այգի ոչ է, մի առցեն... եւ այր ոչխար է ի տան՝ ոչխար մի եւ երեք գզաթ բուրդ եւ մեկ պանիր և այր ձիք ի տան իցեն՝ մին յովանակ եւ այր պախրեք իցեն՝ որթ մի»։ Թուանիկ բառը Հայկազյան բառարան է մեկնել գրուանիկ ընթերցմամբ, որ գրուանի նվազականն է։ Մինչդեռ այն պարսկ. պահլ.* تَوان *ուժեղ, ունևոր, հարուստ բառն է։ Մի ժողովածուի մեջ, որտեղ տեղ է գտել մեզ հետաքրքրող կանոնը, կարդում ենք. «Թուանիկն, որ է չեղչ կալոյ, Դ գրիվ ցորեան, որ է չափ. Զ գրիւ գարի և ԺԶ փաշչ քաղցու,* Տաշյան, Ցուցակ, *էջ 275։ Այս մեկնաբանությունը գրիչի ենթադրությունն է, թերևս թուանիկը թեղի, թեղանիկի հետ շփոթելու հետևանքով։ Այս նույն տեղում փասը փոխարինված է փաշչով, որ հեղուկ մարմինների չափ է՝ պարսկ. փաս, պարսկ.* پاچه, *որ նշանակում է պահակ, ոտքի մաս և* en generalporti dune chose *համապատասխանում է հին* pah-*ին,* pah-*ին հայերեն* պան, պանր, *այստեղից է* pas, *ինչպես* پاس *-ից որդի։ Հայերեն գրիվը* garib-*ն է, հողի չափ, իսկ ապա այդ հողը ցանելու համար պահանջվող հացահատիկի չափը։ Այստեղից նաև՝ հայերեն գրուանը, գրուանքայն, որ կշռի չափ է, այժմյան ֆունտը։*

[2] Խորենացի, *Բ, ծԹ, «Այլեւ ոչ յամենայն տեղիս երկրագործութիւնք, բայց զոյգն ուրեք ըստ օրինակի հիւսիսականաց... կեցեալք»* Մ. Էմինի *ռուսերեն թարգմանության մեջ «զոյգն ուրեք»-ը վերագրված է նախորդ դարձվածքին, որ*

Մխիթար Գոշի «Դատաստանագրքում» տեղ գտած տվյալների համաձայն «վարելահողերից վերցվում էր հինգերորդ մասը... գնված վարելահողերը, այգիները և ծաղկանոցները ազատ էին այդ տուրքից, ինչպես նաև ջրաղացները, տները և կրպակները։ Արհեստներով և առևտրով զբաղվող մարդիկ հարկ էին վճարում. քրիստոնյաները գլխահարկ չէին վճարում, այլ միայն այլադավանները, որոնք նվաճված էին բռնի ուժով։ Ոռոգվող վարելահողերից գանձվում էր հասույթի հինգերորդ մասը, իսկ չոռոգվող վարելահողերից՝ տասանորդ»։ Նշված են նաև կոռի չափը, ընտանի անասուններից՝ եզան, կովի, ոչխարի վրա դրված հարկերի չափերը և այլն[1]։

Անիի վիմագիր արձանագրությունների մեջ հաճախ հիշատակվում է այդ հարկերի մասին և, ինչպես հայտնի է, թվարկվում են տարբեր տեսակի հարկեր և պարտույթների մի քանի տասնյակ անվանումներ[2]։ Այդ տվյալները վերաբերում են այն ժամանակաշրջանին, որ դուրս է մեր անմիջական խնդրի սահմաններից։ Այդ անշուշտ չի նշանակում, թե հիշյալ հարկային համակարգը արաբական տիրապետության արդյունք է։ Մահմեդական իրավունքը, անկասկած, որոշ փոփոխություն մտցրեց նախարարական կարգի մեջ։ Այդ փոփոխությունները կարող էին ընդգրկել նաև առանձին նորմեր կամ հարկման գնահատումներ, բայց հարկային համակարգը, իբրև այդպիսին, արաբները ժառանգել էին իրենց նախորդներից։ Ինչպե՞ս էին վերադասավորվում նախարարական հարաբերությունները արաբների օրոք և ի՞նչ չափով արտահայտվեց նրանց ազդեցությունը, այս խնդիրներն արդեն վերաբերում են Բագրատունյաց դարաշրջանը հետազոտողներին։ Մեր խնդիրն այն էր, որպեսզի ցույց տայինք նախարարական կարգի էվոլյուցիան՝ նրա սկզբնավորումից մինչև այն ժամանակաշրջանը, երբ իրանական պետական իշխանությունը, որի հիման

---

սխալ է, որովհետև չի կարելի ենթադրել, թե Հայաստանում, թեկուզ Արտաշես թագավորի ժամանակ, հողը մշակվում էր ոչ թե ամենուրեք, այլ մի քանի հազվագյուտ տեղերում միայն։

[1] Մխիթար Գոշ, Դատաստանագիրք, էջ 314—316=*Sempadscher, Codex*, I p. 22, ed. I. Karst, 1902։ Արևմուտքում ևս գոյություն ունեին կենդանիներից գանձվող հարկեր, այսպես կոչված bovagium, vaccagium, multonagium, caprinum և այլն Luchaire, *Institutions*, p. 338։

[2] Ալիշան, Շիրակ, էջ 91։

վրա զարգացավ նախարարությունը, փոխարինվեց արքականով։ Մեզ համար վերջին կետը Խորենացու ժամանակն էր։ Մենք կամենում էինք անել այն աշխատանքը, որ իր ժամանակին կատարել է հայ պատմիչը։ Հետաքրքրական է մեր եզրակացությունները համեմատել նրանց հետ, որոնց հանգել է Խորենացին տվյալ հարցի վերաբերյալ։ Դա էլ մասամբ կլինի մեր հայացքների ստուգում։

Եթե քննադատությունն արդեն հասցրել է բացասական կարծիք հայտնել Խորենացու՝ որպես պատմիչի հեղինակության վերաբերյալ, ապա այն բնավ երբեք չի նսեմացրել նրա գործի՝ որպես պատմագրական հուշարձանի արժեքը, որ արտացոլում է հեղինակին ժամանակակից աշխարհի տրամադրություններն ու հայացքները։ Այդ տեսակետից Խորենացու աշխատությունը մեծ հետաքրքրություն է ներկայացնում։ Նախարարությանը վերաբերող հարցերում կարևոր են ոչ թե այս կամ այն փաստական տվյալներն ու լուսաբանությունները, որ առաջարկում է պատմիչը, այլ արժեքավոր է հեղինակի գաղափարախոսությունը՝ թե նա ինչպե՞ս է ըմբռնում նախարարական կարգի էությունը և ի՞նչ ձևով կամ մեթոդով էր մտածում լուծել նախարարության մասին իր առաջադրած հարցերը։

Խորենացին չէր կարող ամբողջովին կտրվել իր ժամանակի իրականությունից։ Հին ժամանակների յուրաքանչյուր հետազոտողին այս կամ այն չափով հատուկ է անցյալին ներկայի պրիզմայով նայելու թուլությունը։ Հայ անցյալին վերաբերող Խորենացու մի շարք ըմբռնումներն իր ապրած դարաշրջանի իրավիճակի արձագանքներն են։ Կարելի է կասկածել, թե փաստական տեսակետից որքան ճիշտ են Խորենացու պատմածները, և թե արդյոք տվյալ նախարարությունը իրո՞ք ծագել է այսինչ ժամանակ և այդպիսի պայմաններում, բայց կասկածից վեր է այն, որ պատմիչի կողմից նախարարությանը վերագրված հատկանիշները իրական են, և որ նախարարական տների ծագման տվյալ ձևը համարվում էր հնարավոր, համենայն դեպս, այն ժամանակ, երբ գրում էր հեղինակը։ Մեր պատմիչը ձեռնարկեց մի պատասխանատու գործ այն դառն գիտակցությամբ, որ իր տրամադրության տակ չկան հայ հնագույն ժամանակների պատմությանը վերաբերող ստույգ աղբյուրներ։ Նա պետք է աշխատեր՝ հենվելով անկապ, կցկտուր տվյալների, պատահական տեղեկությունների, ան-

*հասկանալի ակնարկների և այդ կարգի անվստահելի նյութերի վրա։*

*Նա հարկադրված էր իր ժամանակի կարգերի լույսի տակ համադրել ցաքուցրիվ փաստերը և տվյալները, այդ պատճառով էլ ուշ շրջանի երևույթներն ու դրույթները նա ակամա վաղնջականացնում էր և վերագրում հին ժամանակներին։ Խորենացու մտքի ընթացքը գնում էր փաստերից դեպի գաղափարը, իրականից՝ դեպի տեսականը և ընդհակառակը, կանխակալ կոնցեպցիաները լուսաբանելու համար երբեմն նա ընտրում և հորինում է պատշաճ միջավայր՝ դասավորելով ավելի կամ պակաս ճշմարտանման փաստեր։ Պատմիչը երբեմն իր եզրակացությունները հիմնում է աշխարհագրական և նախարարական անվանումների ստուգաբանական մեկնության վրա։ Այս մեթոդը Խորենացին լայնորեն կիրառում է մանավանդ նախարարների ծագումնաբանությունը պարզաբանելիս։ Անկախ այն բանից, թե որքա՞ն ընդունելի են նրա ստուգաբանական փորձերը, շատ դեպքերում դրանք անընդունելի են, և նրա մի շարք բացատրությունները զուրկ են հիմքից հենց այդ շինծու ստուգաբանության պատճառով, սակայն նրա մեթոդը, իբրև այդպիսին, անկասկած գիտական է։*

*Մեթոդոլոգիական առումով մեր հետազոտությունը ընդհանրություն ունի Խորենացու հետ։ Ելնելով այն իրականությունից, որ պատկերված է Խորենացուց առաջ գոյություն ունեցած գրավոր հուշարձաններում, մենք աշխատեցինք թափանցել հնության խորքերը՝ գտնելու մեզ հետաքրքրող երևույթների արմատները, ընդ որում մեզ համար էական օժանդակություն եղավ նախարարական կենցաղի և անվանումների ամենաբնորոշ տերմինների ստուգաբանական վերլուծությունը։ Մեր հետախուզումների արդյունքները ես որոշ իմաստով նման են իրար։ Խորենացու մոտ ևս, ինչպես և մեզ մոտ, նախարարական կարգը սերտորեն առնչվում է Արշակունիների հետ։ Զնայած այն բանին, որ առաջին Արշակունին՝ Վաղարշակը, տիրանալով Հայաստանին, տեսավ, որ այնտեղ, ինչպես ասում է Խորենացին, արդեն գոյություն ունեն նախարարություններ և այդ առթիվ հարցում արեց իր ավագ եղբայր Արշակին, թե «ուստի նախարարութիւնքս, որ աստ կան», պատմիչը այնուհետև պնդում է, որ Վաղարշակը «սահմանեաց աշխարհիս եւ նախարարութիւնս, եւ նոցին նախարարութեանց նահապետու-*

թիւնս հաստատեաց զարս պիտանիս»[1]։ Մակերեսային վերաբերմունքի դեպքում կարելի է պատմագրին մեղադրել անհետևողականության և հակասության մեջ, բայց եթե թափանցենք խնդրի էության մեջ, ապա պարզ կլինի, որ Խորենացին առաջին Արշակունուն վերագրում է միայն նախարարության կարգավորումը և ոչ թե նրա ստեղծումը այս բառի իսկական առումով։

Պատմիչը իր առջև խնդիր է դնում պարզելու, թե նախարարություններից «ով ոք ի ցեղիցս որոշելոց ընտանի եւ մերաղնեայ, եւ ոյք ոմանք եկք ընտանեցեալք եւ մերաղնացեալք»[2]։ Այս է, խկապես, այն եզրակացությունը, որին հանգում է պատմիչը իր հետազոտության մեջ, բայց շարադրելիս նա այն ներկայացնում է որպես քննության ենթակա խնդիր։ Մեր վերլուծությունը հաստատում է այդ թեզը, ցույց տալով, որ նախարարությունը, իրոք, բաղկացած էր տեղական ու եկվոր տարրերից։ Հիմնական տարբերությունն այն է, որ ըստ Խորենացու որոշ նախարարություններ հանդիսանում են առանձին անհատների սերունդներ, իսկ ըստ մեր վերլուծության, դրանք ծագում են երբեմնի ինքնուրույն էթնիկական խմբակցություններից։ Խորենացու պատկերացմամբ ոմանք, և դրանք մեծամասնություն են կազմում, նախարարության շարքն են անցել պալատական կամ պետական ծառայության շնորհիվ. այսպես, օրինակ՝ Բագրատունիները թագադիր են, Գնթունիները՝ արքայական հանդերձապահներ, Խորխոռունիները՝ թիկնապահներ, Վարաժնունիները՝ որսապետներ, Աբեղյանները՝ ամբարապետներ, Գաբեղյանները՝ արքայական սենեկապետներ, Արծրունիները՝ արծվակիրներ, Գնունիները՝ խմիչքների վերակացուներ, Սպանդունիները՝ սպանդանոցների վերակացուներ, Հավնունիները՝ բազեակիրներ, Հայր իշխանի տոհմը (sc. Մարդպետ)՝ ներքինիներ և այլն։ Սյունյաց, Կադմյան, Գուգարաց, Անգեղտան և Աղձնեաց իշխանները պահպանում են երկրի սահմանները, Վահևունիները հոգևոր սպասավորներ են։ Ոմանք նախարարության շարքըն էին դասվել ազնվազարմ լինելու կամ Հայկից ու հին թագավորներից սերած լինելու շնորհիվ, ինչպես, օրինակ՝ Որդունի, Ապահունի, Մանավազյան, Բզնունի, Առավելյան, Զարեհավանյան տները։ Կային նաև եկվոր մեծատոհմիկներ, օրինակ՝ Ամա-

[1] Խորենացի, Ա, Թ և Բ, գ։

[2] Նույն տեղում, Ա, գ։

*տունի, Առավեղյան, Ռոփսյան, Մամիկոնյան և Կամսարական տոհմերը։ Վերջապես մի քանիսն էլ նախարարական կոչման են արժանանում անձնական քաջության համար, ինչպես Դիմաքսյան և Տրունի տոհմերի նախահայրերը։*

*Այստեղից պարզ երևում է, որ Խորենացին իբրև նախարարական պատվարժանության հիմք համարում է երկու գլխավոր հատկություններ՝ ծառայությունը և մեծատոհմիկությունը, այսինքն՝ արյան գերադասությունը։ Այս կետում ևս մեր և Խորենացու միջև տարակարծություն չկա։ Նախարարության ծագումը պարզելիս մենք բացահայտեցինք նրա արմատները, որոնք հասնում են մինչև տոհմական շրջանը, ինչպես նաև պետական-ծառայական կարգի հիմքերը։ Խորենացին մեծատոհմիկ է համարում առավել հին տոհմերը, գերազանցապես նրանց, որոնք որպես թե ծագել են Հայկից և արդեն գոյություն ունեին Հայաստանում Արշակունիների հանդես գալու ժամանակ։ Ըստ մեր տեսության, դրանք այն տոհմերն էին, որոնք ծնունդ առան տոհմական հարաբերությունների քայքայման հետևանքով։ Խորենացու հետ մեր նմանությունը միայն սկզբունքի մեջ է, իսկ փաստական տեսակետից, այսինքն՝ թե նախարարություններից որոնք ինչ կարգի են, մենք այլ կարծիքի ենք։*

*Նախարարության նյութական հիմքը Խորենացու մոտ էլ համարվում է հողատիրությունը։ Նախարարական աստիճանի բարձրացնելը, Խորենացու նկարագրությամբ, արտահայտվում է կալվածքի շնորհման մեջ*[1]*։*

*Ազնվազարմությունը և նախարարական կոչումը նրա մոտ նույնանման հասկացություններ են հենց այն պատճառով, որ բոլոր ազնվազարմները հողային սեփականության տեր էին։ Հողը տրվում էր որպես ժառանգական տիրույթ։ Այս տեսակետից բնորոշ է* ազգ սերել *արտահայտությունը, որ գործ է ածվում այն դեպքերում, երբ խոսքը վերաբերում է որևէ մեկին նախարարա-*

[1] *Այսպես, օրինակ՝ Թագավորը Վարաժին կարգեց «իշխան արքունականացն որսոց եւ շէնս պարգեւեալ նմա առ Հրազդան գետով»,* Խորենացի, *Բ, ժա և Ա, ժբ; Գաբաղին և Աբեղին «շէնս պարգեւեալ, յորոց եւ անուն կոչին սապէս նախարարութիւնքն Աբեղէն եւ Գաբեղէն» Բ, է; Եկվոր Ամատունիները «պատուին գիւղիւք եւ դաստակերտօք» Բ, ծէ; Մամիկոնյանները ստացան «հայրենական իշխանութեամբ գեօղս եւ դաստակերտս» Բ, ձգ, ինչպես և Կամսարականները, Բ, խբ և Գ, և այլն։*

կան պատվի արժանացնելուն։ Եթե հող տալ նշանակում է նոր տոհմ ստեղծել, ապա պարզ է, որ հողը տրվում էր որպես ժառանգական սեփականություն[1]։ Ըստ Խորենացու հողի բաշխումը և նրանից զրկելը գերագույն իշխանության իրավունքն էր, սա մի առանձնահատկություն է, որ բնորոշում էր ֆեոդալական հողատիրության էությունը[2]։

Ինչպես տոհմը, այնպես էլ նրա գրավեցրած տերիտորիան Խորենացին անվանում է նույն ձևով՝ **նախարարութիւն**: Այս նրա մոտ ամենից ավելի ընդունված տերմին է. այն երբեմն փոխարինվում է **նահապետութիւն** բառով, բայց «**նախարարութիւնք եւ նոցին նախարարութեանց նահապետութիւնք**» արտահայտությունից երևում է, որ Խորենացին որոշ տարբերություն է տեսնում այդ երկու տերմինների միջև. Նահապետ նշանակում է նախարարության պետ։ Հանդիպում են նաև **տէր** և **տանուտէր** տերմինները **նահապետ** նշանակությամբ, ինչպես նաև **տէրութիւն** և **տանուտէրութիւն**՝ **նախարարութիւն** և **նահապետութիւն** իմաստով[3]։

---

[1] **Խորենացի**, Բ, ձգ, «տաց նմա յաւիտենական իշխանութեամբ զգեօղս» և այլն։ Նոր տոհմերի մասին, Բ, խե, ծը և կգ։

[2] Նույն տեղում, Բ, ժգ, Տիգրանը խլեց Վահունիների տիրույթները «ընկենու ի քրմութենէ եւ զգեւղն յարքունի առնու»։ Արտաշեսի օրոք Մուրացանները զրկվում են իրենց կալվածքներից՝ «զրաւէ յինքն զշէնս և զամենայն իշխանութիւնս նոցա» Բ, ծա։ Թագավորը Սմբատ Բագրատունուն «պարգեւէ զմասն արքունի, որ ի շէնս Գողթան և Ուղտատակունս» Բ, ծգ և այլն։

[3] Նույն տեղում, Ա, գ, «ուստի նախարարութիւնքս, որ աստ կան. ի թիւ նախարարութեանց, կարգէ ընդ նախարարութիւնս. նախարարութիւն Ապահունեաց, Մանաւազեան» և այլն, Բ, է, ը. նահապետութիւն Ոշտունեաց, Սիսական, Կադմեան և այլն։ Մուրացան տէր, Բ, ը, Արգամ տանուտէր ազգին Մուրացան=Արգամ նահապետ Մուրացանաց Բ, խգ, Բ, խդ, «զյառաջասացեալ տանուտէրական պատիւ Բ, է, Ասպահապետի պահելու յառնն տանուտէրութենէ զանունն որոշեալ, Բ, իը։ Գլուխ նահապետ նոցա զՄաղխազ, Բ, է, արտահայտությունից երևում է, որ նահապետը տոհմի գլուխն էր։ Խորենացին այսպես է անվանում նաև Հին Կտակարանի նահապետներին, Ա, գ, ինչպես ընդունված է Աստվածաշնչում։ Նախարար տերմինը կազմված է, ըստ Խորենացու, **նախ** և **արար** բառերից՝ նախարարյալի իմաստով, ինչպես կարելի է եզրակացնել հետևյալ օրինակներից՝ գիտ որդեծնութեան նախարարականացն ծննդոց յերից անտի որդւոցն Նոյի, Ա, ե. ի ծննդոց յերից նախարարականացն այսոցիկ արանցս, sc. Զրուան, Տիտան, Յապետոսթէ, Ա, Թ. զԹագաւորացն եւ զնախարարականաց ազգաց եւ տոհմից, Ա, գ։ Հմմտ. **Փարպեցի**, էջ 58, ի նախարար պատգամաւորացն։

*Խորենացուն լավ հայտնի են սեպուհական իրավունքը և ոստանիկ-ազատությունը զարգացման այն շրջանում, երբ նրանցից ծնունդ էր առնում նախարարական-ֆեոդալական ազնվականության նոր աստիճանը։*

*Այսպիսով, եթե մի կողմ թողնենք փաստական իրադրությունը և վերցնենք նախարարության հետազոտության տեսական կողմը, ապա չի կարելի չհամաձայնել, որ մեր պատմիչը մեթոդոլոգիապես և առաջ քաշած խնդրով կանգնած էր ճիշտ տեսակետի վրա։*

*Նախարարության ծագումնաբանության և նրա բուն էության բացատրության մասին մեր և Խորենացու միջև եղած շփման կետերը կարող են հաշվի առնվել, քանի որ դրանք խոսում են մեր եզրակացությունների օգտին։ Թե որքան են այս վերջիններն ընդունելի, որն է նրանց գիտական արժեքը, այս մասին կարող են տարբեր կարծիքներ լինել։ Մենք ամենևին էլ չենք կարծում, որ ունենալով այդքան քիչ և կցկտուր նյութեր, որպիսիք կային մեր տրամադրության տակ, հնարավոր է կառուցել ինչ-որ անառարկելի մի բան։ Մեր առաջարկած կոնստրուկցիայում անշուշտ շատ բան ենթադրական է, կանխակալ, բայց դրանք արդեն այնպիսի թերություններ են, որոնք ավելի կամ պակաս չափով հատուկ են պատմական յուրաքանչյուր կոնստրուկցիայի։ Այստեղ կարևորը ընդհանուր հարցադրումը և նրա լուծումն է հիմնական գծերով, այսինքն՝ հաջողվե՞ց հայտնաբերել նախարարության արմատները, որքա՞ն ճիշտ է հետազոտված նրա հետագա զարգացման ուղին և ընդունելի՞ են, արդյոք, մեր նշած շփման կետերը նախարարական հաստատության և Արևմտյան Եվրոպայի ֆեոդալիզմի միջև։ Նախարարության հարցի մեր պարզաբանությամբ լույսի մի ճառագայթ է շողում այն կիսախավարի մեջ, որ կախված է հայ հեռավոր անցյալի վրա մինչև Արշակունիների շրջանը, և դրվում է հայոց պատմական կյանքի հետագա՝ մոնղոլական արշավանքների դարաշրջանից մինչև նախարարության ոչնչացումն ընկած ընդարձակ շրջանի գիտական ըմբռնման հիմքը։*

## ՆԻԿՈՂԱՅՈՍ ԱԴՈՆՑԻ ԳԼՈՒԽԳՈՐԾՈՑԸ

Նիկողայոս Ադոնցի «Հայաստանը Հուստինիանոսի դարաշրջանում» մենագրության ռուսերեն բնագրի հրատարակությունը (Ս. Պետերբուրգ, 1908) բոլորեց երեք քառորդ դարը: Հարկավ, նրա հայերեն թարգմանության և հրատարակման խնդիրը հասունացած էր և կարող էր լուծվել նաև տասնամյակներ առաջ: Սակայն այսօր էլ այն ոչ միայն ուշացած չէ, այլև ուշացած չէր լինի, եթե հրատարակվեր ևս տասնամյակներ անց: Համաշխարհային պատմագիտության մեջ քիչ հետազոտություններ են, որ ժամանակի այսպիսի քննություն են բռնել. պատմական հետազոտությունները մեծ մասամբ սակավակյաց են:

Խոսքս գործնական գիտական նշանակության, և ոչ սոսկ «գիտական ժառանգություն» կոչված երևույթի մասին է, որը գլխավորապես վերաբերում է սոսկ իր ժամանակի գիտության մակարդակին լավ համապատասխանող գործերին: Ադոնցի երկը եթե իր որոշ մասերով կարող է դասվել «գիտական ժառանգության» շարքը, ապա հիմնականում, կարելի է ասել նույնիսկ՝ ամբողջությամբ վերցրած, այն տակավին թարմ է: Թարմ է ոչ միայն մեզանում դեռևս չգերազանցված՝ պատմաբանասիրական վերլուծությունների իր մեթոդիկայով, ոչ միայն հիմնական ու հարակից այն եզրակացություններով, որոնք առայժմ անսասան են մնում մեր պատմագիտության մեջ, այլև մի շարք այնպիսի խոշոր իր ենթաբաժիններով, որոնցում նվաճվածից հետագա հայ պատմագրությունը որևէ էական քայլ չի արել տակավին, և որոնք, այսպիսով, մնում են գիտության վերջին խոսք:

«Հայաստանը Հուստինիանոսի դարաշրջանում»-ը ընթերցելուց հետո նրա վրա ետադարձ հայացք ձգելով, գալիս ես այն եզրակացության, որ այդ խորագիրը հեղինակի՝ իր և իր գործի նկատմամբ ունեցած ծայրահեղ պահանջկոտության արդյունք է: Հիրավի, մենագրության բովանդակությունը անչափ ավելի լայն է. իրականում երկը ներկայացնում է Հայաստանի ներքին՝ սոցիալ-քաղաքական

զարգացման պատմությունը՝ սկզբներից, այսինքն՝ ժողովրդի կազմավորման շրջանից, մինչև մ.թ. 7-րդ դար, և այն էլ առաջին անգամ շարադրված այդպիսի պատմությունը: Համոզվելու համար բավական է դիտարկել երկը կազմող երեք դրվագները, որոնք են «Արևմտյան Հայաստանը», «Արևելյան Հայաստանը», «Նախարարության ծագումը», հակառակ հերթականությամբ: Մենք այստեղ այդպես էլ կվարվենք, սկսելով մեր տեսությունը գիրքը եզրափակող՝ «Նախարարության ծագումը» դրվագից, որը հենց ծայր է առնում հայ ժողովրդի ծագման ու կազմավորման խնդրից:

Ն. Ադոնցը այն ժամանակ ի վիճակի չէր շատ տեղ նվիրել նըշված խնդրին, որովհետև առկա պատմական և լեզվական սակավ նյութը դեռևս բավականաչափ ուսումնասիրված չէր, և տակավին հրապարակի վրա չէին սեպագրական՝ խեթական, ասուրական և ուրարտական արձանագրությունների հարուստ նյութերը: Հետագայում, 30-ական թթ., այդ նյութերը դառնալու էին Ն. Ադոնցի ուսումնասիրման անմիջական առարկան, նա իր վերջին մենագրության մեջ սահեղծելու էր մի ծավալուն, փաստական նյութերով հագեցած պատկեր[1]: Սակայն նախնական պարագաներում էլ Ադոնցը կանգնած է եղել ճիշտ ու մինչև օրս գործուն այն տեսակետի վրա, որ նախ, հայ ժողովուրդը առաջացել է, կազմավորվել է իր հետագա պատմության զարգացման բնավայրում՝ Հայկական լեռնաշխարհի տարածքում, և երկրորդ, որ այն կազմավորվել է մի շարք, բազմաթիվ, էթնիկական բաղադրատարրերից, որոնց մեծ մասը տեղաբնակ էին, մի մասն էլ՝ եկվոր (էջ 439): Այստեղ հարկ չկա խորանալու այդ տարրերին Ադոնցի տված կոնկրետ բնութագրումների մեջ, քանի որ դրանք կրում են ժամանակի կնիքը և այսօր հնացած են: Կարևոր է շեշտել նրա ընդհանուր-տեսական մոտեցման մնայունությունը:

Հայաստանի ներքին՝ սոցիալ-քաղաքական զարգացումը ժողովրդի կազմավորման դարերից մինչև հայ մատենագրության տվյալներով լուսավորված ժամանակի սկիզբը՝ 4-րդ դարը, վեր հանելու համար Ն. Ադոնցի ձեռքի տակ եղել են դեպքերին ժամանակա-

[1] *Հրատարակված է համահու, 1945 թ.։ N. Adontz,* Histoire d'Arménie. Les origines du X-e siècle au VI-e (Av. J. C.), Paris, 1945; *Հայերեն թարգմանու-թյունը՝* Ն. Ադոնց, *Հայաստանի պատմություն։ Ակունքները՝ 10—6-րդ դդ. մ.թ.ա., Երևան, 1972։*

կից օտար աղբյուրների ընդամենը երկու՝ Քսենոփոնի (մ. թ. ա. 5—4 դդ.) «Անաբասիսի» և Պլինիոս Ավագի (մ. թ. 1-ին դ.) «Բնական պատմության» պարունակած հիմնական վկայությունները: Հետևելով դրանց, այդ մեծ ժամանակաշրջանը նա բաժանում է երկու փուլի:

Առաջին փուլը Ն. Ադոնցը անվանում է «կոմարխոսների» (գյուղապետների) շրջան, օգտագործելով Քսենոփոնի այցելած հայկական գյուղի ավագի՝ գեղջավագի համար «Անաբասիսում» կիրառված հունական տերմինը: Գյուղի նկարագրության մեջ Ն. Ադոնցը տեսնում է տոհմային հարաբերությունների հարազատ պատկերը. «Այդ բոլորը,— գրում է նա,— հանդիսանում են ոչ այլ ինչ, քան տոհմային համակեցության ձևի հատկանիշներ» (էջ 434): Այդ փուլը Ն. Ադոնցն անվանում է նաև «Տիգրանյան» շրջան՝ նկատի ունենալով մ.թ.ա. 6-րդ դարի հայոց Տիգրան Երվանդյան թագավորին ու նրա հետնորդներին:

Երկրորդ փուլը ստանում է «ստրատեգոսների» շրջան անվանումը ըստ Պլինիոս Ավագի՝ Հայաստանը 120 ստրատեգիաների բաժանված լինելու մասին հաղորդման: Ստրատեգիաների մեջ Ադոնցը տեսնում է ֆեոդալական իշխանություններ, ստրատեգոսների մեջ՝ ֆեոդալ իշխաններ. «Հիմք կա ստրատեգիաները համարել տիրակալական իշխանություններ *(владетельные княжества)* թեկուզև նրանց զարգացման սկզբնական շրջանում» (էջ 435): Այս փուլը Ն. Ադոնցը անվանում է նաև «Արշակունյաց» շրջան և իր խնդիրն է համարում «բացահայտել պատմական այն պրոցեսի էությունը, որը «կոմարխոսներին» հանգեցրեց «ստրատեգոսների» կամ այլ կերպ՝ տոհմային շրջանը՝ ֆեոդալականի» (նույն տեղում):

Ադոնցը իրավացիորեն գտնում է, որ միայն Հայաստանի ներքին պատմությանը անմիջականորեն վերաբերող առկա խիստ սակավ նյութերի հիման վրա հնարավոր չէ ներթափանցել հիշյալ պրոցեսի էության մեջ: Բայց դրա համար նա տեսնում է երկու այլ կարևոր հնարան: Դրանցից մեկը հարևան երկրներից ծագող համապատասխան, բայց ավելի հարուստ, նյութերը և դրանց հիման վրա կառուցված տեսությունները են: «Անհրաժեշտ է,—գրում է Ն. Ադոնցը,—որևէ մի ղեկավար կոնցեպցիա <. . .>: Որպեսզի այդ կոնցեպցիան լինի գիտականորեն ընդունելի, այն պետք է դուրս բերվի այնպիսի պատմական միջավայրից, որում շփվել են հայերը»

(էջ 432)։ Այդ միջավայրը նա գտնում է իրանական աշխարհում։

Երկրորդ հենարանը Ադոնցը գտնում է բուն հայկական, թեև հետազոտվող շրջանի համեմատությամբ ուշ ժամանակից մեզ հասած նյութերի, այն է՝ մ.թ. 5-րդ և հաջորդ դարերի հայ մատենագրական աղբյուրների մատուցած տվյալների մեջ, որոնք պետք է որ պահպանած լինեն անցյալի վերհուշերը, մանավանդ տերմինաբանության բնագավառում։

Կիրառելով այս երկու լծակները ի լրումն «կոմարքոսների» և «ստրատեգիաների» մասին հիմնական տեղեկությունների, Ն. Ադոնցը գալիս է այն եզրակացության, որ Արտաշեսի և Զարեհի (մ.թ.ա. 2-րդ դարի առաջին կես) «ժամանակին է վերաբերում տոհմային կարգերի փլուզման սկիզբը և սոցիալական նոր հարաբերությունների առաջացումը։ Հեղաշրջման էությունը կայանում էր սոցիալական զանգվածի շերտավորման և դասայնության սկզբունքի առաջացման մեջ. տոհմերի գլուխները կամ պետերը հետզհետե դառնում են անվանի մարդիկ՝ իշխանավորներ և այդպիսով դրվում է ապագա տոհմական իշխանությունների սկիզբը։ Այս փոխակերպումն սկսվում է այն պահից սկսած, երբ տոհմի ավագի կոչումը դառնում է ժառանգական <...>։ Այս ճանապարհով հասարակական այն օրգանիզմը, որ առաջ միատարր ու իրավահավասար էր, բաժանվում է երկու սոցիալապես անհավասար մասերի՝ թվով փոքր մասը, որ ծագում է տոհմապետից, իշխում է, իսկ մեծամասնությունը հպատակվում» (էջ 451)։ «Տոհմային հարաբերությունների քայքայումը,— շարունակում է Ադոնցը,— որն ուղեկցվում է դասայնության առաջացմամբ ի դեմս իշխանավորների, ապագայի տիրակալ-իշխանների, ավարտվում է Տիգրան Մեծի փոբարկայից դարաշրջանում» (էջ 455)։

Հայ հասարակության զարգացման հաջորդ նշանաձողը, ըստ Ադոնցի, հայ Արշակունիների առաջին ներկայացուցիչ Տրդատ I-ի օրոք Հայաստանում «120 ստրատեգիաների ձևավորումն է, որ կարելի է համարել Հայաստանի հասարակական-քաղաքական անի պատմության նոր իրավիճակի սկիզբ» (էջ 474)։

Բերված հատվածները հատուկ մեկնաբանության կարիք չունեն։ Ադոնցը առաջինն է հայ պատմագրության մեջ, որ այսպիսի խորությամբ վեր է հանել հայ հասարակության շարժումը նախադասակարգային հասարակությունից դեպի դասակարգայինի, կամ իր

ըմբռնմամբ և տերմինաբանությամբ՝ «դասային» հասարակություն:

Ադոնցի ներդրումը հին Հայաստանի սոցիալական հարաբերությունների զարգացման ուսումնասիրության մեջ ճիշտ գնահատելու համար պետք է ընդունել, որ նրա ողջ մենագրությունում հենց այս դրվագն է, որից հետագայի հայ պատմագիտությունը ամենից ավելի է հեռացել: Դա միանգամայն հասկանալի է, քանի որ վերջինս, նախ, զարգացել է այլ՝ մարքսիստական մեթոդաբանության հիմքի վրա, և երկրորդ՝ զինվել է հայ հնագիտության հայթայթած այնպիսի նյութական աղբյուրներով, որոնց մասին Ադոնցի ժամանակ նույնիսկ երազել չէր կարելի: Վեր է հանվել ու առանձնացվել հին Հայաստանի պատմության մի ամբողջ դարաշրջան, որը մենք բնորոշում ենք որպես ստրկատիրական, համենայն դեպս այն ո՛չ նախնադարյան է, ո՛չ էլ ֆեոդալական, այլ տեղավորվում է նրանց միջև, ընդգրկելով գրեթե հազարամյա մի ժամանակահատված: Վեր են հանվել այդ դարաշրջանի սոցիալ-տնտեսական, քաղաքական ու մշակութային զարգացման օրինաչափություններն ու առանձնահատկությունները[1]:

Իհարկե, այս պատկերացումները բավական հեռու են Ն. Ադոնցի տեսակետից, սակայն անկասկած հենց նրա բռնած ուղղությունն էր, որ շարունակվելով Հ. Մանանդյանի գործերում և բեղմնավորվելով սովետահայ պատմագրության ողեգրած մարքսիստական տեսությամբ, հանգեցրեց այդ արդյունքին[2]:

[1] *Տե՛ս Հայ ժողովրդի պատմություն, հատ. 1, Երևան, 1971, ուր հանրագումարի են բերված հին Հայաստանի պատմության բնագավառում հայ պատմագիտության ձեռք բերած նվաճումները:*

[2] *Ուշադրության արժանի է այն հանգամանքը, որ սովետահայ պատմագիտության՝ հին Հայաստանի ներքին պատմության վերհանման օժանդակ միջոցները եա իրենց ակունքն ունեն Ն. Ադոնցի հետազոտական մեթոդիկայի մեջ: Լայնորեն և արդյունավետ կիրառվել է, նախ, հին Հայաստանին հարևան, ժամանակակից ու պատմական նույն օրինաչափություններով զարգացած երկրներից ծագող նյութը՝ համանմանեցման (անալոգիայի) կարգով, ըստ որում, Ադոնցի ընտրած «իրանական աշխարհին» գումարվել են հին և հելլենիստական Արևելքի ուրիշ հասարակությունների տվյալները: Երկրորդ, ավելի մեծ մասշտաբով ու խորությամբ է օգտագործվել հայ վաղ միջնադարյան մատենագրության հին Հայաստանին վերաբերող նյութը, հատկապես՝ տերմինաբանությունը: Ըստ որում, եթե Ադոնցի մոտ այդ նյութը, կրելով, բնականաբար, ֆեոդալական հասարակության կնիքը, ճնշող դեր է*

Դառնալով մենագրության հաջորդ գլուխներին՝ հայկական ֆեոդալիզմի ծավալուն և խորունկ ուսումնասիրությանը, Ադոնցին գտնում ենք միանգամայն այլ պայմաններում՝ զինված գործի համար անհրաժեշտ առկա բոլոր նյութերով, և բնական է, որ այստեղ առավել վառ է հանդես գալիս նրա հետազոտական արտակարգ տաղանդի փայլը:

Իրացնելով վաղ միջնադարյան հայ մատենագրության, հատկապես պատմագրության հարուստ տվյալները և դիտարկելով դրանք իր ժամանակ էտալոնային համարված՝ արևմտաեվրոպական (հիմնականում՝ ֆրանսիական) ֆեոդալական հասարակարգի հետ սիստեմատիկ տիպաբանական համադրության մեջ[1], Ն. Ադոնցը տվել է հայկական վաղ ֆեոդալիզմին հատուկ նախարարական տիրույթի դասական սահմանումը:

«Իրենց դրությամբ,— գրում է նա,— տերիտորիալ միավորները համարվում էին հավասար և կազմում էին տ ո ւ ն, որի գլուխ կանգնած էր տերը կամ տանուտերը ու կոչվում էր տ ա ն ո ւ տ ե ր ո ւ թ յ ո ւ ն կամ ն ա խ ա ր ա ր ո ւ թ յ ո ւ ն: Յուրաքանչյուր տանուտերություն ներկայացնում էր մի ներփակ միջավայր, օժտված պետական իրավասություններով: Նրանք ունեին դատավարչական անկախության և գերագույն իշխանության այլ ատրիբուտներ: Տանուտերությունները յուրատեսակ մանր պետություններ էին, որոնց գլուխ կանգնած իշխանները՝ արքայիկներ, փոքրիկ թագավորներ: Յուրաքանչյուրի իրավասության սահմանները de facto կախված էին հզորության այն աստիճանից, որ նրանք ունեին տվյալ պահին: Պատ-

---

*կատարել Հայաստանի նախաֆեոդալական հասարակարգը ևս որպես ֆեոդալական ընկալելու իմաստով, ապա այժմ, հնագիտական և այլ աղբյուրների կուտակման պայմաններում, այն մեծ հաջողությամբ ծառայում է հին Հայաստանի սոցիալ-տնտեսական ու քաղաքական կարգերի բուն էության ճշգրիտ վերարտադրմանը:*

[1] *Այդ համադրությունը, որն ընդօրինակել ու շարունակել է Հ. Մանանդյանը, ոչինչ այլ բան չի նշանակում, քան հեղինակների փաստարկներից մեկը, թե հիրավի Հայաստանում ևս գործ ունենք ֆեոդալիզմի հետ: Արևմտաեվրոպական (ֆրանսիական) ֆեոդալիզմն այստեղ ծառայեցվում է սոսկ որպես էտալոնային մոդել, այնպես, ինչպես մինչև վերջին ժամանակներս որպես այդպիսին էին ծառայեցվում հունական և հռոմեական հասարակությունները՝ ստրկատիրական կարգերի համար: Պատմագիտությունն արդեն ազատագրվել է ֆեոդալիզմի առկայության և ազատագրվում է ստրկատիրական հասարակարգի առկայության այդօրինակ ապացույցների անհրաժեշտությունից:*

միչները հաճախ հիշատակում են մեծ տերերին՝ մեծամեծ ավագանուն, և տարբերում ավագ տանուտերերին կամ նախարարների կրտսերներից, ելնելով, ըստ երևույթին, նրանց համեմատական հզորությունից: Տանուտերության ընդհանուր դրությունը պայմանավորված էր իշխանների և թագավորների ուժերի առկա հարաբերությամբ և դրսևորվում էր մերթ կենտրոնածիգ, մերթ կենտրոնախույս ձգտումների գերակշռությամբ: Հնարավոր դեպքերում թագավորները չէին վարանում բռնագրավելու զահի նկատմամբ մեղանչած իշխանների կալվածքները» (էջ 505)[1]:

Բնականաբար, սույն լիարժեք իրավաքաղաքական բնույթի սահմանմանը պակասում է սոցիալ-տնտեսական տարրը՝ ֆեոդալիզմը ոչ մարքսիստ պատմաբանին ներկայանում էր սոսկ իր քաղաքական (իշխանության մասնատվածություն, էջ 507) և իրավական (սոցիալական նվիրապետություն, վասալականություն) կողմերով: Այդպես էլ արտադրական հարաբերությունները Ադոնցի մոտ փոխարինված են հողային սեփականության հարցերով: Չնե-չով Նախարարական Հայաստանին հատուկ սոցիալական նվիրապետության աստիճանները՝ վերից վար, սկսելով արքայից և մանրամասն ծանրանալով նախարարական և սեպհական աստիճանների վրա, պատմաբանը, ի վերջո, հասնում է գյուղական բնակչությանը և նշում, որ «գրավոր հուշարձանները որոշակիորեն տարբերում են գյուղացիությունը ազատներից, սակայն նրանց փոխհարաբերությունների և տերերից ունեցած հողային բնույթի կախվածության մասին համարյա բե ոչինչ չեն ասում» (էջ 534): Գյուղացիության վիճակին վերաբերող հաջորդ էջերում Ադոնցը իր ուշադրությունը հիմնականում սևեռում է հարկերի, տուրքերի ու պարհակների խնդրի վրա: Սակայն հեղինակը գյուղացիության վիճակի կարևորագույն հարցը բնավ չի լքել ուսումնասիրության այս մակարդակի վրա, այլ հանգամանորեն ու խորն անդրադարձել է դրան հետագա-

[1] *Ն. Ադոնցի գործը այս բնագավառում շարունակել ու զարգացրել է Հ. Մանանդյանը իր «Ֆեոդալիզմը հին Հայաստանում» (Երևան, 1934) արժեքավոր մենագրության մեջ, որտեղ նա մանրամասն հետազոտության է ենթարկել նախարարությունների հարաբերությունը թագավորական իշխանության հետ, նախարարությունների ներքին կազմակերպությունը, ազատների, հոգևորականության, շինականների ու ռամիկների, ինչպես նաև քաղաքային բնակչության՝ արհեստավորների ու առևտրականների վիճակը:*

յում, հատուկ աշխատության մեջ, որն անվանել է «Հին հայ շինականությունը»[1]: Ֆրանսիական ֆեոդալական հաստատությունների հետ հայ վաղ միջնադարյան իրականության համադրումը Ադոնցն այստեղ լրացնում է հռոմեական իշխանության տակ գտնված՝ 4-րդ դարի Փոքր Ասիայի հատուկ հողային հարաբերությունների դիմելով: Դրանց լույսի ներքո հեղինակը հստակորեն տարբերակում է նաև Հայաստանում թագավորական կամ պետական հողերը՝ «կալվածատիրական» (մասնավոր սեփականատիրական — Գ. Ս.) հողերից և համապատասխանաբար զանազանում նաև այդ հողերի վրա աշխատող հողագործների երկու խմբերի վիճակը, երկրորդ խմբի հողագործներին համեմատելով փոքրասիական կոլոնների հետ: Նա ավելի հեռուն է գնում, առանձնացնելով «կալվածատիրական» հողերի երկու կարգ՝ հարկված և հարկերից ազատ, որոնք իրենց հերթին ենթադրում են կոլոնատիպ հողագործների երկու տարբերակ:

Արդարև, պատմաբանն այստեղ խոշոր քայլ է անում դեպի արտադրական հարաբերությունների սկզբունքի ըմբռնումը:

Ն. Ադոնցի հետազոտական մտքի թռիչքը իր բարձրակետին է հասնում «Հայաստանը Հուստինիանոսի դարաշրջանում» մենագրության երկրորդ, միջին դրվագում: Սրա խորագիրն է «Արևելյան Հայաստանը», որի տակ հասկացվում է 387 թ. բաժանումից հետո Հայաստանի՝ Սասանյան Պարսկաստանի գերիշխանության տակ անցած մասը: Իրականում, սակայն, այստեղ Ադոնցի տեսադաշտում է նաև ամբողջ 4-րդ դարը, այսինքն՝ ողջ Հայաստանը ու նրա սոցիալ-քաղաքական վիճակը:

Իր ընդգրկումով, նյութերի սպառիչ օգտագործմամբ և պատմաբանասիրական վերլուծության նրբության տեսակետից հայագիտության մեջ չգերազանցված նմուշ է տալիս Ն. Ադոնցը «Նախարարությունների քանակական վերլուծությունը» գլխում: Նրա խնդիրն էր պարզել վաղ միջնադարում գոյություն ունեցած և գործած նախարարական տների քանակական և անվանական կազմը, նրանցից յուրաքանչյուրի խաղացած դերի ու նշանակության համեմատական չափն ու աստիճանը, նրանց զինվորական հզորությունը և դրանով պայմանավորված՝ Հայաստանի ռազմական կարողության

[1] Ն. Ադոնց, *Պատմական ուսումնասիրություններ*, Փարիզ, 1948, էջ 157—205:

սահմանները, և այդ բոլորը, ըստ հնարավորության, երկու կտրվածքով՝ և՛ Արշակունիների օրոք, և՛ մարզպանության ժամանակ։

Այդ նպատակով առկա աղբյուրները Ադոնցը բաժանել է երեք խմբի. ա) վաղ միջնադարյան պատմիչներ (բացառյալ Խորենացին) և եկեղեցական ժողովների ակտեր, բ) Գահնամակ և Զորանամակ, գ) Մովսես Խորենացու տվյալները, և իր վերլուծությունը տարել է դրանց քննական համեմատությամբ։ Առաջին խմբի աղբյուրները տվել են նրան նախարարությունների թվական կազմի ու կարգի կենդանի պատկերը, այդպիսինի բոլոր առավելություններով ու թերություններով հանդերձ, որ գոյություն է ունեցել 4—7-րդ դդ., իսկ երկրորդ խմբի աղբյուրները՝ դրա իրավական արտացոլումը։ Սակայն Գահնամակն ու Զորանամակը մեզ են հասել ամենևին էլ ոչ որպես վավերագրեր, այլ որպես բազմիցս արտագրված ու խմբագրված գրական հուշարձաններ։ Եվ Ադոնցը ենթարկում է դրանք նախապես ամենամանրակրկիտ հիմնագույն աղբյուրագիտական քննության, որի բովում ճշգրտված ու զտված տեքստերն են միայն, որ նա գործի է դնում իր համեմատությունները կատարելու համար։

Վերջապես այդ աշխատանքի արդյունքը Ն. Ադոնցը համադրում է Մովսես Խորենացու «Հայոց պատմության» մեջ հանդես եկող՝ նախարարությունների համակարգի հետ, որը ստեղծվել է պատմահայրը մատչելի բոլոր հնարավոր աղբյուրների տվյալները միաձուլման միջոցով։ Այդ կապակցությամբ Ն. Ադոնցը նշում է. «Ներկայումս «Հայոց պատմությունը» հանդիսանում է հայ հին դպրության հուշարձանների տարիքը և ընդհանրապես նշանակությունը որոշելու փորձաքար (էջ 292)։

Ն. Ադոնցի վեր հանած՝ 4—7-րդ դդ., այսինքն՝ նախարարության ծաղկման շրջանի այս համայնապատկերը մինչև օրս ուժի մեջ է և հազիվ թե էական սրբագրումների ենթարկվի[1]։

---

[1] *Կ. Թումանովը (C. Toumanoff,* Studies in Cristian Caucasian History, Georgetown University Press, 1963) *փորձում է վերանայել այս համայնապատկերը, նշելով, որ Ադոնցը անտեսել է մի քանի նախարարություններ, մի քանիսն էլ ներմուծել է առանց բավարար հիմքերի, և որ նրա եզրակացությունները նախարարների զինվորական ուժերի և գահերի կարգի մասին որոշ ճշգրտում են պահանջում (էջ 147 և հաջորդ)։ Նշենք սակայն, որ Թումանովի դիտողությունները ուշագրավ են, բայց մասնակի բնույթ են կրում։ Առավել հետաքրքրական են նրա փորձերը։*

Ն. Ադոնցն այնուհետև ձեռնամուխ է լինում այդ համայնապատկերին նաև տարածական տեսք տալու, քարտեզի վրա այն տեղադրելու խնդրին («Նախարարությունների տերիտորիալ վերլուծությունը» գլուխը): Այստեղ առավել դժվարին, բայց և, ըստ երևույթին, Ադոնցի համար առավել գրավիչ է եղել նախարարական տների զարգացման և նրանց տիրույթների շարժման պրոցեսի հետազոտությունը: Նախարարական տիրույթները քարացած միավորներ չեն եղել. դարերի ու տասնամյակների ընթացքում դրանք ուռճացել կամ տրոհվել, միավորվել ու տեղաշարժվել են, մի մասին տիրող տոհմերը իսպառ վերացել են պատմության ասպարեզից, դրանց տեղը գրավել են նորածին նախարարական տներ: Ահա այս խայտաբղետ ու պատմական առումով նշանակալից պատկերն է, որն իր ներքին օրինաչափություններով ու պատճառներով հանդերձ, վեր է հանել Ն. Ադոնցը իրեն հատուկ հմտությամբ, ցուցաբերելով նույնպիսի վարպետություն պատմական աշխարհագրության բնագավառում, որպիսին նրան հատուկ է պատմության և բանասիրության մարզերում, և իր ստացած արդյունքը դարձնելով հայկական ֆեոդալիզմի ուսումնասիրման անկյունաքարերից մեկը:

Մենագրության երկրորդ, միջին դրվագն ավարտվում է «Նախարարությունը և հոգևոր իշխանությունը» գլխով: Հեղինակն այստեղ վերացել է կրոնադավանական հարցերից և պարզաբանել հայ եկեղեցու ծագման և սոցիալ-քաղաքական դերի ու նշանակության բարդ խնդիրները: Այս գլխի վրա արժե ավելի հանգամանորեն կանգ առնել, որովհետև, մի կողմից. հայագիտության մեջ այստեղ հետագա քայլեր գրեթե չեն արվել, իսկ մյուս կողմից, նյութը խիստ կարևոր է հայկական վաղ ֆեոդալիզմը մարքսիստորեն ըմբռնելու համար:

Ինչպես և նախարարությունների դեպքում, Ադոնցին նախ և

---

*ա) առանձնացնել նախարարական տների խմբեր ըստ նրանց ծագման (այսպես, նրա կարծիքով, 15 տուն ծագում է Երվանդական Թագավորական տոհմից, 9 տուն՝ Արշակունիներից, 5 տուն ուրարտական ծագում ունեն և այլն, էջ 222), բ) տիպաբանորեն համեմատել հայկական Զորանամակի թվական տվյալները Հռենոսյան կոնֆեդերացիայի իշխանների զինվորական ուժերի հետ՝ 1648 թ. Վեստֆալյան հաշտությունից հետո, երբ Հռոմեական սրբազան կայսրությունն իր վերջնական անկումն էր ապրում (էջ 239—240), գ) բաժանել նախարարական գահերի կարգն արտահայտող ավանդական ցուցակը մի քանի այնպիսի հատվածների, որոնց ներսում էին կատարվում գահերի տեղաշարժերը, այսպիսով էապես չազդելով ողջ ցուցակի ներկայացրած ընդհանուր պատկերի վրա (էջ 247):*

առաջ հետաքրքրում են եպիսկոպոսությունների հետ կապված քանակական և տերիտորիալ հարցերը, որոնց լուծումը շոշափելիություն է հաղորդում հայ եկեղեցու զարգացման պատմությանը: Աղբյուրների քննությունը Ադոնցին հանգեցնում է մի շարք թյուրիմացական կամ չափազանցված թվական տվյալները մերժելուն, հաստատուն կռվաններ ընդունելով 5-րդ դարի կեսի և 6-րդ դարի սկզբի ու կեսի երեք եկեղեցական ժողովների տվյալները, որոնք համապատասխանաբար տալիս են եպիսկոպոսությունների թվական աճի ստույգ պատկերը: Հետևելով եպիսկոպոսությունների տերիտորիալ բաշխմանը, Ադոնցը վեր է հանում Հայաստանի և հարևան երկրների (ուր եպիսկոպոսությունները կապված չէին խոշոր հողատերերի տիրույթների հետ, այլ իրենց կենտրոնները ունեին քաղաքներում) եկեղեցիների կազմակերպման մեջ մի կարևոր տարբերություն. «Եկեղեցական իշխանությունը,— գրում է Ադոնցը,— բաշխվում է առավել ազդեցիկ իշխանական տոհմերի միջև՝ նրանցից յուրաքանչյուրի համար առանձին եպիսկոպոսություն հիմնելու միջոցով: Այստեղ մենք չենք հանդիպում միտրոպոլիտական կազմակերպության <...>, տերիտորիալ սկզբունք չենք գտնում: Եկեղեցական վարչական միավորը համընկնում է իշխանական տիրույթի հետ» (էջ 407): Այս երևույթը Ն. Ադոնցը շատ դիպուկ անվանում է եկեղեցական կազմակերպության նախարարականացում:

Ադոնցն անդրադառնում է հայ եկեղեցու ծագման խնդրին և համոզիչ մեկնաբանելով պահպանված սակավ ու հեղհեղուկ տվյալները, ցուցադրում Հայաստանը 3—4-րդ դարերի ընթացքում ողողած՝ քրիստոնեության երկու ալիք: Առաջին ալիքը գալիս է հարավից՝ Ասորիքից: Որպես իր եզրակացությունների ելակետ, Ն. Ադոնցն ընդունում է մ.թ. 3-րդ դարի կեսերին Հայաստանում գործած հայտնի Մեհրուժան եպիսկոպոսի նստավայրը Ծոփքում գտնվելու հանգամանքը: Ծոփքի այս քրիստոնեական կենտրոնը անմիջականորեն կապված էր Եդեսիայի կենտրոնի հետ, որտեղ դեռևս 2-րդ դարի վերջերին Աբգար 9-րդ թագավորն ընդունել էր քրիստոնեությունը: Այս փաստի վրա է հիմնված Աբգարի մասին հայտնի ավանդությունը, որի մեջ, սակայն, Աբգար 9-րդը փոխարինված է նրա նախնի Աբգար 5-րդ՝ Քրիստոսին ժամանակակից թագավորով, և որը մանրամասն պատմում է Թադեոս առաքյալի քարոզչական գործու-

նեության մասին: Նույն պատմությունը, ինչպես հայտնի է, հայացված տեսքով հանդես է գալիս Մովսես Խորենացու մոտ: Ադոնցը զգուշորեն, բայց վստահաբար արձակում է հայոց եկեղեցու առաքելական ծագում ունենալու ավանդության պատմական հիմքի հանգույցը:

Մեհրուժան եպիսկոպոսի՝ Ծոփքի քրիստոնեական կենտրոնը սերելով Եդեսիայի եկեղեցուց, իր հերթին ժամանակի ընթացքում ծնել է Տարոնի եպիսկոպոսությունը, որտեղ գործել է Աղբիանոսի տոհմը: Տարոնը եղել է Աղբիանոսի և նրա հետնորդների նստավայր 4-րդ դարում, երբ այդ տոհմի ներկայացուցիչները պայքարել են Հայաստանի եկեղեցին գլխավորելու համար: Այսպիսի ընթացք է ունեցել Հայաստանում քրիստոնեության տարածման առաջին ալիքը:

Քրիստոնեության երկրորդ ալիքը եկել է արևմուտքից, Կապադովկիայի և Փոքր Հայքի հունալեզու կենտրոններից, և իր առաքյալն է ունեցել ի դեմս Գրիգոր Լուսավորչի: Այն նախ և առաջ ողողել է Մեծ Հայքի հյուսիս-արևմտյան գավառները՝ Դարանաղի, Եկեղյաց, Դերջան և այլ, ուր Լուսավորչի ու նրա տոհմի կենտրոնն է դարձել ու մնացել Թորդանը: Այնուհետև այն հանգեցրել է քրիստոնեության հաղթանակին ամբողջ Հայաստանում:

Ադոնցը հետևողականորեն վեր է հանում այն կապը, որ նշմարվում է 4-րդ դարի քաղաքական անցքերի և Գրիգորի ու Աղբիանոսի հետնորդների պայքարի ընթացքի միջև: Հայաստանում Հռոմի գերակշռության պահերը, ինչպես հանգեցրել են սկզբում Գրիգոր Լուսավորչի հաղթանակին, այնպես էլ հետագայում պայմանավորել են նրա տոհմի ներկայացուցիչների՝ հայ եկեղեցին գլխավորելը: Ասորական եկեղեցուն նեցուկ կանգնած Իրանի գերակշռությունը օրինաչափ կերպով զուգադիպել է Աղբիանոսյանների իշխանություն գալու պահերին: Համապատասխանաբար Գրիգորի հետնորդները եղել են հռոմեասեր, Աղբիանոսինը՝ պարսկասեր: Ադոնցին ավելի վառ, քան որևէ ուրիշ հետազոտողի, հաջողվել է ցուցադրել վաղ միջնադարյան հայ եկեղեցու քաղաքական դեմքը:

Ահա, այսպես, հայ ժողովրդի կազմավորման ընթացքին հետևելով, նրա հետագա սոցիալ-քաղաքական զարգացման ընթացքը տոհմային կարգերից մինչև դասային հասարակություն՝ ֆեոդալական կարգերի հաղթանակն ու ծաղկումը, ամփոփելով է, որ Ն. Ադոն-

ցը դիմում է իր մենագրության վերնագրում ազդարարած նյութին: Գրքի այս դրվագը, որը ըստ շարադրանքի հերթականության առաջինն է, կոչվում է Արևմտյան Հայաստան: Այն նվիրված է Հռոմեական կայսրությանը միացված հայկական հողերի բազմակողմանի ուսումնասիրությանը՝ սկսած 387 թ. բաժանումից:

Ադոնցն այստեղ մի առ մի հետազոտում է այդ տարածքի քաղաքականապես տարբեր վիճակում գտնված երեք մասերը, այն է. Ծոփքը և նրա շուրջը խմբավորված իշխանությունները, այսպես կոչված սատրապությունները, որոնք ընդհուպ մինչև Հուստինիանոս կայսեր ժամանակը շարունակում էին օգտվել, գոնե ներքին խնդիրներում, ինքնավարության իրավունքից, այնուհետև «Ներքին» կոչված Հայաստանը՝ Մեծ Հայքի հյուսիս-արևմտյան շրջանները, որը թեև այդչափ ինքնավար չէր, բայց և այնպես մինչև նշված կայսեր ռեֆորմները որոշակիորեն զերծ էր մնացել կայսրության վարչական մեքենայի ճամլիչ գործողությունից և, վերջապես, Փոքր Հայքը:

Փոքր Հայքի՝ Ն. Ադոնցի ուսումնասիրությունը առանձնահատուկ կարևորություն ունի: Այդ երկրամասը, հնագույն ժամանակներում հայերի օրրաններից մեկը՝ Հայասան, բավական վաղ դուրս է մնացել հայ պետականության ոլորտից, ընդգրկվել Հռոմեական կայսրության մեջ ու համարակալվել նրա վարչական համակարգին: Ն. Ադոնցը գալիս է այն եզրակացության, որ այսուհանդերձ, հակառակ գոյություն ունեցող կարծիքների, Փոքր Հայքը շարունակել է նշանակալից չափով մնալ հայաբնակ և առնչվել բուն Հայաստանի պատմությանը: Նա գրում է. «Փոքր Հայքի հողերի նշանակությունը հայոց պատմության մեջ ըստ արժանվույն չի գնահատվում: Պատմաբանները Փոքր Հայքը առանց այլևայլության դուրս են հանում հայկական շահերի ոլորտից: ... Հիմք չկա հայոց պատմությունից դուրս հանել ընիկ հայ բնակչություն ունեցող մի ամբողջ շրջան: Իրականում հայոց պատմական կյանքում Փոքր Հայքին վիճակվել է շատ լուրջ առաքելություն...» և այլն (էջ 81—82):

Ցավոք, Ն. Ադոնցի փայլուն նախաձեռնությունը՝ վերագնահատել Փոքր Հայքի պատմությունը «հայկական տեսանկյունից», շարունակողներ գրեթե չի ունեցել, և նրա կատարածը փաստորեն մնում է այս բնագավառում գիտության վերջին խոսք:

Ցուցաբերելով հայկական ու բյուզանդական իրականությունների համապատասխան խոր, պրոֆեսիոնալ իմացություն, Ն. Ադոնցը լուսաբանում է Հուստինիանոս կայսեր (527—565 թթ.) Հայաստանում իրականացրած ռեֆորմների պատճառները, էությունն ու հետևանքները: Այս կայսրը իր առջև անհրաժեշտ նպատակ էր դրել՝ վերականգնել Հռոմեական կայսրության նրա հզորության գագաթնակետին գտնված վիճակում, որի համար անհրաժեշտ էր համարում լարել իր տերության բոլոր ուժերը, այդ թվում նաև լուծել տերության մեջ մտած, բայց տակավին նրա վարչական և հարկային սիստեմին չմերված, կայսրության կողմից կլանված, բայց դեռ չմարսված հողերի վերջնական յուրացման խնդիրը: Նման երկրների մեջ մի շարք առումներով Արևմտյան Հայաստանն առենաերևելին էր: Հուստինիանոսի այստեղ իրագործած ռազմական վերափոխությունների նպատակը կայսրության արևելյան՝ պարսկական սահմանի ամրացումն էր: Նախկինում տրոհված ռազմական իշխանությունը միավորվեց Հայաստանի ստրատեգոսի ձեռքում, ձեռնարկվեց սահմանամերձ շրջաններում նոր հզոր ամրոցների ու քաղաք-ամրոցների կառուցման և եղածների հիմնովին վերակառուցման գործը: Բախտորոշը Հայաստանի համար Հուստինիանոսի ձեռնարկած քաղաքացիական վերակառուցումն էր: Արևմտյան Հայաստանը, ներառյալ Փոքր Հայքը, բաժանվեց չորս մասի՝ Առաջին, Երկրորդ, Երրորդ և Չորրորդ Հայքերի, որոնց միջև տրոհվեցին և կորցրին իրենց ամբողջականությունը բազմաթիվ նախարարական տիրույթներ: Երկիրն անցավ հռոմեական նահանգային կառավարման ու հարկման ոլորտը: Մյուս հայտնի ռեֆորմով հայ իշխանական տներում ընդունված ժառանգականության կարգի մեջ էական փոփոխություններ մտցվեցին ըստ հռոմեական օրինակի. վերացվեց այստեղ ավանդաբար տիրող մայորատը և, որդիներից բացի, դուստրերին ևս ժառանգության բաժին ստանալու իրավունք սահմանվեց: Երկու ռեֆորմներն էլ, յուրաքանչյուրը յուրովի, նույն նպատակն էին հետապնդում, պարզաբանում է Ն. Ադոնցը, քողացնել, կազմալուծել բյուզանդական Հայաստանի նախարարական համակարգը, և այդպիսով իրականացնել երկրամասի կատարյալ հռոմեականացումը:

Գրքույկը եզրափակող գլխում Ն. Ադոնցը բնութագրում է Հուս-

տինիանոսի ռեֆորմների տարբեր բնույթը՝ Հայաստանի բյուզանդական իշխանության տակ գտնվող մասի համար: Նախարարությունների անկումից բացի, սկիզբ առավ կամ էապես ուժեղացավ հայերի արտագաղթը հայրենիքից դեպի կայսրություն: Ճիշտ է, այս վերջին երևույթին հնարավոր չէ միանշանակ բացասական գնահատական տալ, քանի որ այն բեղմնավորեց կայսրության կյանքի տարբեր բնագավառները, ներմուծելով այնտեղ բազմաթիվ ու կարող հայ գործիչների ուժն ու եռանդը և փայլեցնելով նրանց կերպարները համաշխարհային պատմության թատերաբեմում և, բացի այդ, որոշակի վերածնունդ բերեց Փոքր Հայքի հայությանն ու հող նախապատրաստեց հետագայում Կիլիկիայի հայկական պետության առաջացման համար: Վերջապես, Ն. Ադոնցը վերոհիշյալ ռեֆորմների հետ է առնչում նաև Հայաստանում հունաբան հայտնի դպրոցի ծաղկման երևույթը:

Այդպիսով, հանրագումարի բերելով շարադրվածը, կարելի է ասել, որ հանձին Ն. Ադոնցի հայ պատմագիտության մեջ գործել է մի հեղինակ, որը առաջինն է ամփոփել հայ ժողովրդի սոցիալական պատմության հիմնական երևույթները սկզբից մինչև վաղ միջնադարը ներառյալ: Եվ Ադոնցն այդ կատարել է ոչ միայն տալով նյութի պատմաքննասիրական և պատմաաշխարհագրական վերլուծության օրինակելի նմուշներ, այլև միավորելով XIX դարի դասական հայագիտության և եվրոպական քննական պատմագիտական մտքի նվաճումները: Այս ամենը Ն. Ադոնցի երկը դարձրել են հայագիտության մեջ տակավին չգերազանցված մի արժեք:

Ներկայացվող մենագրությունը հատուկ տեղ ունի նաև իրեն՝ Ն. Ադոնցի ստեղծագործության մեջ: Նրա մեջ կուտակված են պատմաբանի նախապես ձեռք բերած նվաճումները, և նրանից են ճառագայթել նրա գիտական հետագա գործունեության կարևորագույն ուղղությունները՝ Հայաստանի պատմության հնագույն շրջանի վերն արդեն հիշատակված մանրամասն հետազոտությունը, վաղ միջնադարի հայ պատմագրության խնդիրներին նվիրված աշխատությունների փայլուն շարքը, հայ-բյուզանդական հարաբերությունները լուսաբանող նրա հիմնարար գործերը, հունաբան դպրոցի ծանրակշիռ ուսումնասիրությունը, հայ գյուղացիության պատմության կարևորագույն էջերից մեկի լուսաբանումը և այլն: Այս էլ պետք է նշել

նաև, որ ինչպիսի հետազոտական բարձունքների էլ հասած լինի Ադոնցը այս աշխատություններով, նրանցից ոչ մեկը ի վիճակի չէ մրցելու իր նշանակությամբ ներկա մենագրության հետ: «Հայաստանը Հուստինիանոսի դարաշրջանում» մենագրությունը հիրավի Ն. Ադոնցի գլուխգործոցն է:

Գ. Խ. ՍԱՐԳՍՅԱՆ
*ՀՍՍՀ ԳԱ ակադեմիկոս*

## ԱՆՁՆԱՆՈՒՆՆԵՐ[1]

### Ա



---

*[1] Անվանի պատմաբան Ն. Ադոնցի «Հայաստանը Հուստինիանոսի դարաշրջանում» աշխատության սույն թարգմանությունը հիմնականում կատարել է Ա. Թ. Խոնդկարյանը։*

*Հրատարակության պատրաստելով թարգմանության ձեռագիրը՝ մենք այն համեմատել ենք ռուսերեն բնագրի հետ, թարգմանել չթարգմանված կամ ձեռագրից ընկած-կորած բազմաթիվ էջեր ու ընդարձակ հատվածներ, գրեթե բոլոր ծանոթագրությունները՝ բնագրերի համեմատությամբ և ամբողջացրել աշխատությունը։*

*Կազմել ենք անունների տեղեկատու ցանկերը՝ դրանք բաժանելով «Անձնանուններ», «Աշխարհագրական անուններ», «Նախարարությունների ու իշխանական տների անուններ», «Ազգերի, ցեղերի ու ժողովուրդների անուններ» բաժինների։*

*Հատուկ անունների ուղեցույցի առաջաբանում հեղինակը վկայում է, որ* «... հատկապես աշխարհագրական անունների տառադարձությունը լուրջ դժվարություն է ներկայացնում. դժվարությունը ոչ այնքան հնչյունները հաղորդելու մեջ է, որքան այն բանում, որ գրականության մեջ և ձեռագրերում հանդիպող անվանումների բազմազանության հետևանքով չի հաջողվում գտնել ինչ-որ ղեկավարող ելակետային ձև: Տերմինները հաճախ հայտնի են հայերեն և ոչ հայերեն, ինչ և

---

ավելի ուշ ժամանակների ձևերով։ Շատ անուններ մինչև օրս էլ պահպանվել և տարբեր են հնչում նաև թուրք ազգաբնակչության շուրթերին և տարբեր են նաև հեղինակների մոտ ու քարտեզներում։

Ընդհանրապես մենք նախապատվությունը տվել ենք քիչ թե շատ հայտնի կամ գրականության մեջ արդեն ընդունված ձևերին... երբեմն էլ տվել ենք նրանց դասական և հայկական զուգահեռ ձևերը. օրինակ՝ Astianena-Հաշտեանք, Balabitena-Բալահովիտ, Σauvía-Սյունիք *և այլն։*

*Հետևելով հեղինակի սկզբունքին՝ անունների ցանկերում մենք ևս տվել ենք նույն անվան բոլոր հանդիպող տարընթերցումները, օրինակ՝* Տարուբերան, Տուրուբերան, Տարոյբերան, Տարբերան *և այլն, որը կարող է բանասիրական հետաքրքրություն ներկայացնել։*

*Նախաբանի վերջում հեղինակը ափսոսանք է հայտնում, որ անունների տեղեկատու ցանկերում տեղ չեն գտել հունարեն, լատիներեն ու հայերեն շատ անուններ, որոնք հանդիպում են աշխատության տարբեր էջերում ու ծանոթագրություններում։*

*Կատարելով հեղինակի ցանկությունը՝ մենք անունների ցանկերում զետեղել ենք նաև այդ անունները երբեմն հայերեն, երբեմն էլ բնագրային տառադարձությամբ, եթե դրանք շատ են տարբերվում հայերեն ձևերից։*

*Անունների տեղեկատու ցանկերը կազմելիս մեզ անգնահատելի օգնություն է ցույց տվել Հայկական ՍՍՀ ԳԱ ակադեմիկոս Սուրեն Տիգրանի Երեմյանը, որը ոչ միայն ճշգրտել է մի շարք անուններ, այլև առհասարակ օգտակար խորհուրդներ է տվել մեզ տեղեկատու ցանկերը կազմելու ընթացքում։ Այդ բոլորի համար ակադեմիկոս Ս. Տ. Երեմյանին հայտնում ենք մեր խորին երախտագիտությունը։*

*Է. Հ. ԽՈՆԴԿԱՐՅԱՆ*

Դ

Ե



Զ

## Է



## Ը



## Թ

Ի



Լ

Կ

## Հ

## Ձ



## Ղ



## Ճ



## Մ

## Շ



## Ո

## Ջ



## Պ

Վ

Ց



ՈՒ



Փ

## ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ ԱՆՈՒՆՆԵՐ

### Ա

Գ

Դ

## Զ

## Է



## Ը



## Թ

Ի



Լ



Խ

## Ծ

## Կ

## Հ

Ջ



Ճ



Մ

Շ



Ո

## Ջ



## Ռ



## Ս

Ց



ՈՒ



Փ

Ք



Օ

## Ֆ

## ՆԱԽԱՐԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ, ԻՇԽԱՆԱԿԱՆ ՏՆԵՐ (ՏՈՀՄԵՐ)

## ՑԵՂԵՐ, ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐ, ԱԶԳՈՒԹՅՈՒՆՆԵՐ

# ՏԵՂԵԿԱՏՈՒ ՄԵՋԲԵՐՎԱԾ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՑ ԵՎ ԱՇԽԱՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻՑ


Ագաթանգեղայ պատմութիւն, *1883 թ., Թիֆլիս. Արաբական թարգմ.* Н. Марръ, *Крещеніе армянъ, грузинъ, абхазовъ и алановъ св. Григоріемъ,* Зап. В. О. Р. Арх. О. т. XVI, 1905. *Հունարէն թարգմանութիւնը* ed. de Lagarde, Abh. Ac. zu Götthingen, 1887.

*Ալիշան Ղ.,* Հայապատում, Մեծ Հայք, Այրարատ, Շիրակ:

Аль-Кисрави.

Ammiani Marcellini *Rerum gestarum libri qui supersunt,* Bib. Teub.

Անանիա Շիրակացի, *Հրատ. Միաբանի, «Արարատ», 1906, փետրվար-ապրիլ:*

Андреасъ, Pauly-Wiss. *Real-Encyclopedie.*

Անանուն, *Սեբէոսի մոտ:*

Appiani A. *Rom. Hist. De rebus Syriacis, De bello Mithridatico.*

Аристотель, *Politica,* Bib. Teub.

*Армянская географія. VII в. Հրատ.* Патканова, 1877, *Հրատ.* Сукри, 1881 Венеція.

Arriani *Peripl.* Geog. Graeci Minoris. *Anabasis.*

*Ասողիկ, Ստեփաննոս Տարօնեցի,* Պատմութիւն տիեզերական, *1885, Ս. Պետերբուրգ:*

Babelon. *Les rois de Syrie, d'Arménie et de Commagène.*

Бар-Эбрей, *Chronicon Syriacum,* ed. 1874.

E. Böcking, *տե՛ս Notitia.*

Belck W.

Бенешевичъ, *Древне-славянская Кормчея XIV титуловъ,* 1907, Приложеніе къ *Каноническому сборнику XIV титуловъ,* 1905, Спб.

Bethman-Hollweg, *Civilprocess.*

Waitz G. *Deutsche Verfassungsgeschicte.*

*Վարդան,* Մեկնութիւն ծննդոց. Աշխարհագրութիւն, *Հրատ.* S.-Martin, въ *Mémoires sur l'Armenie II.*

*Վախուշտ, Description géographique de la Géorgie.* ed Brosset, 1892, S.-P.

Weber Simon, *Die Katholische Kirche in Armenien*, 1903.

*Ռենատոս Վեգետիոս, Epitoma rei militaris:*

Weisbach, *Die Altpersischen Keilinschriften,* 1893, Leipzig.

Виллемсъ, *Римское госуд. право.*

West, *Pahlavi extst.*

Wilson, *Handbook for Travellers in Asia Minor,* 1895, Lond.

Gasarian, *Armenien unter der arabischen Herschaft,* 1903, Marburg.

Gelazii Cyr. *Hist. Cons. Nic.* Migne *Pat.* 85.

Gelzer, *Die Genesis des byzantinischen Themenverfassung,* Abh. d. Sächs. Ges. 1899. *Die Anfänge der armenischen Kirche,* Berichte über die Verh. d. Sächs. Ges. 1895.

Georg. Cypri, *Descriptio orbis Romani,* ed. Gelzer, Bib. Teub.

Heradoti *Historiarum libri* IX. Bib. Teub.

Gibbon, *Decline and Fall of the Roman empire,* ed. Bury, 1898.

Գիրք թղթոց, Թիֆլիս, 1901 թ.:

*Հոմերոս*

Greg. Theol. [*Oratio XLIII*].

*Գրիգոր Խլաթեցի, ըստ Տաշեան ցուցակի ձեռագիր № 167։*

Güterbock, *Romisch-Armenien und die römischen Satrapien in 4 bis 6 Jahr.* 1900.

Gutschmid, *Kleine Schriften* III. 1892, Leipz. *Königreich Osroene,* 1878. *Geschichte Irans und seine Nachbarländer,* 1888, Tübingen.

Harnack, *Mission und Ausbreitung des Christentums in den ersten drei Jahr.* 1906.

Hartmann M., *Bohtan, Mittheilangen* d. Vord.-Asiat. Gesel. 1896—7.

Hofmann G., *Auszüge aus syrischen Akten persischer Märtyrer,* 1886.

Hommel, *Grundriss der Geographie und Geschichte des alten Oriens,* 1904.

Horn P., *Grundriss der neupersischen Etymologie,* 1893.

Hübschmann H. *Die Altarmenischen Ortsname,* 1904, Strassb. *Armenische Grammatik,* 1897, Leipzig.

Huntington, *Zeitschrift für Ethnologie,* 1901.

Darmsteter, *Etudes Iraniennes.*

*Տաշեան, Cataloque der Armenischen Handschriften in Mechith. Bib. zu Wien,* 1898.

Джаваховъ И. *Государственный строй въ древней Грузіи и древней Арменіи,* 1905.

*Dio Cassius,* Rerum romanarum libri 80, Bib. Teub.

Diehl Ch., *Justinien,* 1901, Paris. *L'Afrique Byzantine,* 1896, Paris.

Diodor.

Діонисій, *տե՛ս* Евстафій։

*Evagrii* Eccles. hist. *ed. L. Parmentier,* Lonlon.

Euceb. Caes., *Hist. Ecc.*

Евстафій, Eustath., *Op. cit.*

*Եղիշէ վարդապետի* Վասն Վարդանաց եւ հայոց պատերազմին, *1893, Վենետիկ.*

Ephr. Syr., Carmina Nisibina, ed. Bickell.

*Զարբհանալեան,* Թարգմանութիւնք նախնեաց, *1889, Վենետիկ։*

*Զաքարիա Հռետոր. The Syriac Chronicle known as that of Zachariah of Milylene* 1899.

*Զենոբ Գլակ,* Պատմութիւն Տարօնոյ, *1899, Վենետիկ։*

Zosimi, *Historia noca,* ed. Mendelssohn, 1887. Leip.

Ibn-al-Fakih, ed. de Goje, V.

Ibn Serapion, *Journal Royal Asiatic Society,* 1895.

Ibn-Khordadhbeh, Bib. Geogr. de Goje, VI.

*Ինճիճեան,* Հնախօսութիւն Հայաստանեայց աշխարհի, *1835.* Ստորագրութիւն Հին Հայաստանեայց, *1822.* Աշխարհագրութիւն չորից մասանց աշխարհի, 1806:

Иностранцевъ К. *Матеріалы изъ арабскихъ источниковъ для культурной исторіи Сасанидской Персіи,* 1908.

Исидоръ Харакскій, [Σταθμοί παρθικοί. Mül. Geog. Min. I.

*Իսրայէլ,* Յասմաւուրք:

*Joshua the Stylite,* d. Wright.

Itin. Ant. *Itinerarium Imp. Antonini Augusti,* Recueil des Itinéraires anciens, pub. par De Fortia D'urban.

Ioannes Antioch. *Fragm.* (Müller, Graec. Min. IV, 557).

*Յովհաննու Երզնկացւոյ* Ներբողական գովեստ ի սբ. Լուսաւորիչն, *Սոփերք, Ե.:*

Iohannes von Ephesus, *Die Kirchen-Geschichte,* übers. von Dr. Schönfelder, München, 1862. *De beatis orientalibus,* 1889.

*Յովհաննու կաթողիկոսի* Պատմութիւն Հայոց, *1853, Մոսկվա:*

J. Lydus, *De magistratibus,* ed. Bonn.

*Յովհաննու Մամիկոնենի եպ.* Պատմութիւն Տարօնոյ, *1889, Վենետիկ:*

*Հովսեպոս Փլավիոս:*

Iensen, *Hettiter und Armenier,* 1898, Strassb.

Iusti, *Geschichte Irans,* Grundriss, d. Iran. Phil. IV; *Iranisches Namensbuch.*

Iust<iniani> *Nov<ellae>=Constitutiones Հրատ.* Teub.

*Iustini* Epitoma historiarum, *Teub.*

Camille Jullian, *De la reforme provinciale attribuée à Dioclétian,* Revue Historique, t. XIX, 1882.

du Cange, *Famille Byzantine,* II. Const. Christ.

Карауловъ, *Сборн. Кавк.* 31, 27,

Cuinet, *La Turquie d'Asie,* 1890—2, Paris.

Kiepert, *Karte von Kleinasien in 24 Blatt,* 1902, Berlin.—*Die Landschaften,* Berichte d. Berl. Acad. 1873.

*Կիրակոսի վարդ. Գանձակեցւոյ* Համառօտ պատմութիւն, *1865, Վենետիկ:*

Const. Porphyr. *De Thematibus. De Administrando Imperio,* ed. Bonn.

*Կորիւն,* Վարք Մաշտոցի:

*Կ. Կոստանեան,* Գոոյգ եւ տուայր, *Ազգ. Հանդէս, 1906:*

Koch K. *Reise im Pontischen Gebirge,* 1846.

Xen. *Anabasis, Cyropaedia,* ed. Teub.

Kuhn, *Die Verfassung der Römischen Reiches.*

*Արիստակէսյ վարդ. Լաստիվերտցւոյ* Պատմութիւն, *1844, Վենետիկ:*

Lactantii, *De morte persec.* Migne, *Pat.* VII.

Lagarde, *Ges. Abh.*

*Ղազարայ Փարպեցւոյ,* Պատմութիւն Հայոց, *1904, Թիֆլիս:*

Langlois, *Collection des historiens anciens et modernes de l'Arménie,* 1867, Paris.

Латышевъ, *Извѣстія древнихъ писателей о Скифіи и Кавказе,* 1890, Спб.

Lebeau, *Histoire du Bas-Empire,* ed. de St.-Martin, 1830.

Lehmann C., *Verhand. d. Berl. Anthrop. Geselschaft.* 1900.

Leist B. W., *Graeco-Italische Rechtsgeschichte,* 1884, Iena.

*Ղեւոնդեայ վարդ.* Պատմութիւն Հայոց, *1887, Ս. Պետերբուրգ:*

Lynch, *Armenia, travels and studies,* 1901, Landon.

Лопаревъ, *De s. Theodoro monacho hegumenoque Chorensi,* Зап. Кл. От. И. Р. Арх. Об. 1904.

Luchaire A. *Manuel des Institutions françaises,* 1892, Paris.

Malala, *Chronographia,* ed. Bonn.

Mansi, *Consiliorum amplissima collectio.*

Marquart, *Eranšahr* [*nach der Geographie des Pseudo-Moses Chorenazi.* Abh. d. Göth. Gesel. 1901. Berl.]

Marquardt, J. *Römische Staatsverwaltung,* Hand. d. Röm. Altert. 1873.

Марръ Н.

Масуди.

*Մատթէոսի Ուռհայեցւոյ,* Ժամանակագրութիւն, *1869, Երուսաղէմ։*

*Մելիք-Թանգեան Ն.,* Հայոց եկեղեցական իրաւունքը, *1903, Շուշի։*

Menand Prot. *Fragmenta,* ed. Bonn.

*Chronique de Michel le Syrien patriarche Iakobite d'Antioche* (1166—1199), ed. par. I. B. Chabot, 1899, Paris.

Migne, *Patrologiae cursus completus.*

*Մովսէսի Կաղանկատուացւոյ,* Պատմութիւն Աղուանից աշխարհի, *1860, Մոսկուա.*

*Մովսէսի Խորենացւոյ,* Պատմութիւն Հայոց, *1881, Տփխիս։*

Момсенъ.

*Մովսէսի եւ Դաւթի,* Հարցմունք ընդ երկուքեան չարափառուն, հրատ. *Գ. Սրուանձտեան «Հնոց նորոց», և* Conybeare, *«Հանդէս Ամսօրեայ», 1903, Վիեննա։*

Montesquiéu, *Esprit des Lois.*

Mortet, *Féodalite* въ Grande Encyclopédie.

*Մխիթարայ Գօշի,* Դատաստանագիրք Հայոց, *Հր. Բաստամեան, 1880, Վաղարշապատ։*

Nöldeke, *Geschichte der Perser und Araber aus d. arab. Chronik Tabari,* 1879, Leiden. *Zwei Völker Vorderasiens,* ZDMG, 33.

*Notitia Dignitatum et administrationum omnium tam civilium quam militarium in partibus Orientis et Occidentis,* ed. E. Böcking, 1839, *նաև'* ed. Seek.

Павловъ-Сильванскій, *Феодализмъ въ древней Руси,* 1908, Спб.

Петерманъ.

Petr. Patr. *Fragmenta,* ed. Bonn.

Plinii *Naturali Historia,* ed. Teub.

Плутархъ.

Полибій.

Pompeus Trogus, *տե՛ս* Iustinus.

Procopii *De bello Persico, De bello Gothico, De bello Vandalico, De Aedifciis, Historia Arcana,* ed. Bonn.

Ptolamei *Geogr.* ed. Müller, 1901.

*Սամուէլի քահ. Անեցւոյ* Հաւաքմունք ի գրոց պատմագրաց, *1893, Վաղարշապատ։*

*Սարգիսեան,* Տեղագրութիւնք ի փոքր եւ ի մեծ Հայս, *1864, Վենետիկ.*

*Սերէոսի եպ.,* Պատմութիւն ի Հերակլն, *1879, Ս. Պետերբուրգ։*

Seek, *տե՛ս* Notitia.

Saint-Croix, *Mémoires sur les Parthes,* Acad. des Inscr. t. 50.

*Sempadscher Codex,* ed. Karst, 1905.

St.-Martin, *Mémoires hist. et géogr. sur l'Arménie* 1818—19. *Histoire des Arsacides.*

*Սիմեոն Այպարանցի,* Վիպասանութիւն Պանյատունեաց եւ Մամիկոնեանց, *1870, Վաղարշապատ։*

Simocattes, *տե՛ս* Θеофилактъ.

Spartian.

Suida *Lex.*

*Սրուանձտեան Գ.,* Հնոց նորոց, *1874։*

Стефанъ Византіецъ, Stephan Byzantii.

*Ստեփաննոս Օրբէլեան,* Պատմութիւն տանն Սիսական, *Մոսկուա։*

*Ստեփան Իմաստասէր,* Վասն անապակա-

Նուբեան մարմնոյն, *«Արարատ», 1902, Հրատ. Միաբանի*

Strabon ed. Teub.

*Synodicon Oriental ou Recueil de Synodes Nestoriens*, pub. par. I. A. Chabot, 1902, Paris.

Le Strange, *The lands of the Eastern Calyphate,* 1904.

*Sypische Rechtsbücher,* ed. Sachau, 1907.

*Syrisch-Römisches, Rechtsbuch aus dem V Jahr.* ed. Bruns und E. Sachau, *1880.*

Ramsay W. M., *The Historical Geography of Asia Minor,* 1890, London.

Rawlinson G., *The Seventh Graet Oriental Monarchy,* 1876, London.

Rost, Paul, *Untersuchungen zur Orientalischen Geschichte,* Mith. d. Vorderas. Gesel. 1897.

*Tabula Peutingeriana,* Recueli des itinéraires, pub. par de Fortia D'urban.

Такайшвили Е., *Источники грузинскихъ литописей. Три хроники, 1900, Тифлись.*

*Taciti libri qui supersunt,* ed. Teub.

Taylor J., *Travels in Kurdistan,* Jour. *R. Geog. Soc. 35, Iournal ofa tur in Armenia, Kurdistan and Upper Mesopotamia* (1866), Jour. R. Geogr. Soc. 38, Lond. 1868.

Ter-Mkrtschian, Karapet, *Die Paulikianer im byzantinischen Kaiserreiche und verwandte ketzerische Erscheinungen in Armenien,* Leip. 1893.

Texier et Pullan, *Byzantine Architecture,* 1864.

Tillemont, *Histoire des Empreurs.*

Tomashek, Tomasek, *Sasun und das Quellengebiet des Tigris,* 1895, Wien.— *Euphrat und Ost-Cappadocien,* Kiepert's Festschrift.

*Ուխտանէս եպ.,* Պատմութիւն Հայոց, 1871, *Վաղարշապատ։*

*Փավստոսի Բուզանդացւոյ,* Պատմութիւն Հայոց, *1889, Վենետիկ։*

Фонъ-денъ-Бергъ, *Основныя начала мусульманского права, Թարգմ.* Гиргас-*ի, 1895։*

Халатьянцъ Г., *Армянскій Эпосъ,* 1896, Москва. *Армянскіе Аршакиды,* 1903, Москва.

Սեբեոս, *Ցաամաւուրք։*

*Չամչեան Յ.,* Պատմութիւն Հայոց, 1786, *Վենետիկ։*

Chabot, *Sin. Orien.*

Charmoy.

Շահխաթունեան եպիս., *Ստորագրութիւն էջմիածնի, 1842։*

Spiegel, *Uber die Iranische Stammverfassung,* Abh. d. Bayer. Ak. München, 1855.

*Յակոբ Կարնեցի,* Տեղագիր Վերին Հայոց, 1903, *Վաղարշապատ, Կ. Կոստանեանց։*

Theod. *Hist. Eccles.*

Theoph. *Chronographia,* Bonnae.

Theoph. Contin.

Theophil. Sim. *Historiarum libri VIII,* ed. Bonnae.

*Թովմայի վարդ. Արծրունւոյ,* Պատմութիւն Տանն Արծրունեաց, *1887, Ս. Պետերբուրգ։*

Էմին Մ., *Խորենացու ռուսերէն թարգմանութիւնը, 1853։*

ՆԻԿՈՂԱՅՈՍ ԱԴՈՆՑ

# ՀԱՅԱՍՏԱՆԸ ՀՈՒՍՏԻՆԻԱՆՈՍԻ ԴԱՐԱՇՐՋԱՆՈՒՄ

(Քաղաքական կացությունը ըստ նախարարական կարգերի)

НИКОЛАЙ АДОНЦ

АРМЕНИЯ В ЭПОХУ ЮСТИНИАНА

**(Политическое состояние на основе нахарарского строя)**

(на армянском языке)

Ереван «Айастан» 1987

*Հր. խմբագիր՝* Ի. Ս. Թրուտյան
*Նկարիչ՝* Մ. Մ. Մանասարյան
*Գեղ. խմբագիր՝* Մ. Մ. Բաղդասարյան
*Տեխն. խմբագիր՝* Կ. Գ. Սարգսյան
*Վերստուգող սրբագրիչ՝* Ռ. Բ. Մարգարյան

ИБ—6007

*Հանձնված է շարվածքի՝ 28. 12. 1979 թ.։*
*Ստորագրված է տպագրության՝ 14. 05. 1987 թ.։*
*Ձևաչափ՝ 60×84 1/16։ Թուղթ տպագրական № 1։ Տառատեսակ՝ «Գրքի սովորական»։ Տպագրությունը՝ բարձր։ 37,2 պայմ. տպագր. մամ.։ 35,71 հրատ. մամուլ։ Տպաքանակ՝ 30.000։ Պատվեր՝ 1080։ Գինը՝ 2 ռ. 60 կոպ., քարտեզներով՝ 3 ռ. 80 կոպ.։*

*«Հայաստան» հրատարակչություն, Երևան—9, Իսահակյան 28։*
Издательство «Айастан», Ереван-9, ул. Исаакяна, 28.

*Շարվածքը՝ ՀՍՍՀ հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Դիլիջան քաղ. տպարան։ Դիլիջան, Մյասնիկյան 78։*

Набрано в Дилижанской типографии Госкомитета Арм. ССР по делам издательств, полиграфии и книжной торговли. Дилижан, ул. Мясникяна. 78.

*Տպագրությունը՝ ՀՍՍՀ հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ։ Երևան, Տերյան փող. 91։*

Отпечатано в Полиграфкомбинате им. А. Мегапарта Госкомитета Арм. ССР по делам издательств, полиграфии и книжной торговли. Ереван-9, ул. Теряна, 91.

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



### Արևմտյան Հայաստան



### Արևելյան Հայաստան



### Նախարարության ծագումը